АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

# ЯКОВ МАНАНДЯН

## ТРУДЫ

## II

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1978

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԿՈՂՄԻՑ

Ակադեմիկոս Հ. Մանանդյանի երկերի ժողովածուի երկրորդ հատորում տեղադրված են «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության» Բ հատորի Ա մասը, «Մեսրոպ Մաշտոցը և հայ ժողովրդի պայքարը մշակութային ինքնուրույնության համար», «Հայ գրերի գյուտի տարեթվի հարցի շուրջը», «Արաբական արշավանքները Հայաստանում» և «Ժողովրդական ապստամբություններր Հայաստանում արաբական տիրապետության դեմ» աշխատությունները:

«Քննական տեսություն...» Բ հատորն ընդգրկում է Արշակունիների թագավորության ժամանակաշրջանի պատմությունը սկզբից (66 թ.) մինչև նրա անկումը (428 թ.) և մարզպանության հաստատումը Հայաստանում:

«Մեսրոպ Մաշտոցը և հայ ժողովրդի պայքարը մշակութային ինքնուրույնության համար» աշխատությունը առաջին անգամ հրատարակվել է ռուսերեն՝ Երևանում, 1941 թ., նրա հայերեն ամբողջական թարգմանությունը տպված է Մեսրոպ Մաշտոցին նվիրված հոդվածների ժողովածուում (Երևան, 1962 թ.),

Այս աշխատությունը որոշ մշակմամբ և կրճատումներով մտավ «Քննական տեսություն...» Բ հատորի Ա մասի մեջ և կազմեց աշխատության 13-րդ գլուխը:

«Հայ գրերի գյուտի տարեթվի հարցի շուրջը» հոդվածը Հ. Մանանդյանը գրել է 1951 թ., սակայն նրա մահվան պատճառով այն թերի է մնացել և այդ վիճակում էլ հեղինակի մահից հետո տպագրվել է ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.) 1952 թ., № 7-ում:

«Արաբական արշավանքները Հայաստանում» աշխատությունը առաջին անգամ հրատարակվել է հեղինակի «Մանր հետազոտություններ»-ում, «Ժողովրդական ապստամբությունները Հայաստանում արաբական տիրապետության դեմ» առաջին անգամ հրատարակվել է 1939 թ. «Սասունցի Դավիթ» էպոսի հազարամյակի առթիվ:

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ՏՐԴԱՏ Ա-Ը ԵՎ ՆՐԱ ՀԱՋՈՐԴՆԵՐԸ

**1. Արշակունյաց թագավորության սխալ բնութագրումը։— 2. Արշակունիների թագավորության տևողությունը Հայաստանում։— 3. Տրդատ Ա.— Հռոմի պաշտպանողական միջոցառումներն իր արևելյան սահմաններում.— Հռոմում նախապատրաստվող Կովկասյան արշավանքը։— Հինամյա խաղաղությունը Արևելքում։— 5. Վեսպասիանոսի ձեռք առած նախազգուշական միջոցները։— 6. Ալանների 72 թվի արշավանքը.— Հովսեպոս Փլավիոսի վկայության սխալ մեկնությունը։— 7. Ալանների 75 թվի նոր արշավանքը և պատերազմի վտանգը Հռոմի հետ։— 8. Խորենացու վկայություններն ալանների հարձակման մասին Հայաստանի վրա։— 9. Ենթադրություններ Տրդատ Ա-ի պետական վերանորոգչական գործունեության մասին։— 10. Սանատրուկ.— Մծուրք քաղաքի հիմնումը.— նրա կարևոր ստրատեգիական դիրքը.— Սանատրուկի ամրապինդ շիրիմ-հուշարձանը.— Խորենացու վկայությունը Օսրոյենե-Եդեսիայի նվաճման մասին։— 11. Աշխադար։— 12. Տրդատ Ա-ի թագավորության ժառանգական լինելու խնդիրը։— 13. Աշխադար.— հայկական հին ավանդությունը Շիդար թագավորի մասին։**

*Արշակունիների թագավորությունը Հայաստանում հայ պատմագրության մեջ սովորաբար համարվում է հայ ժողովրդի պատմական անցյալի ամենափառահեղ շրջանը։ Սակայն այս կարծիքը, որ հիմնված է Մովսես Խորենացու Հայոց Պատմության ավանդական տեսակետի վրա, ինչպես ցույց են տալիս նորագույն ուսումնասիրությունները, պարզապես սխալ է։*

*Սույն «Քննական տեսության» առաջին հատորում մենք արդեն տեսանք, որ Հայաստանն աշխարհակալ մեծ պետություն էր դառել և քաղաքական իր հզորության ու փառքի գագաթնակետին էր հասել Արտաշեսյանների և, հատկապես, Տիգրան Մեծի ժամանակ։ Հայաստանի կուլտուրական զարգացումը ևս, ինչպես հայտնի է, առավել բարձր աստիճանի վրա էր գտնվում ո՛չ թե Արշակունի հայ թագավորների իշխանության ժամանակ, այլ գրերի գյուտից հետո՝ մարզպանական և հետագա շրջաններում։ Պարզ է, ուրեմն, որ ավանդական վերոհիշյալ կարծիքը միանգամայն անհիմն է։*

Արշակունիների թագավորությունը Հայաստանում իբրև ինքնուրույն պետություն գոյություն ունեցավ ավելի քան երեք դար՝ մինչև Հայաստանի բաժանումը Սասանյան Պարսկաստանի և Բյուզանդական կայսրության միջև (66 թվից մինչև 384—387 թթ.)։ Նա ավելի երկար ապրեց քան Պարթևական Արշակունիների թագավորությունը, որի բարձումը տեղի ունեցավ 227 թվին։ Հայաստանի բաժանումից հետո էլ Արշակունիները շարունակեցին թագավորել Հայաստանի պարսկական մասում մոտ կես դար՝ 387 թվից մինչև 428 թիվը։ Այսպիսով՝ ընդհանուր տևողությունն այդ թագավորության հաշվում են 362 տարի (66 թվից մինչև 428 թ.)։

Տրդատ Ա-ի մասին, որը հիմնադիրն եղավ Հայաստանի Արշակունիների դինաստիայի՝ մեր ունեցած տեղեկությունները խիստ աղքատիկ են։ Ուշագրավ է նախ և առաջ, որ Տրդատ Ա-ի թագավորության հենց առաջին տարիներում Ներոնը և նրա հաջորդը, Վեսպասիանոսը, միջոցներ էին ձեռք առել ամրացնելու կայսրության արևելյան սահմանները։ Եվ այդ շատ լավ հասկանալի է։ Արշակունիների թագավորության հիմնումը Հայաստանում մի զիջում էր Հռոմի կողմից, որ հետևանք էր, ինչպես տեսանք, նրա ռազմական թուլության և պարտության։

Հռոմեա-պարթևական 54—63 թվերի պատերազմից հետո՝ պարթևները, հասնելով իրենց ցանկացած նպատակին՝ Հայաստանը դարձրել էին Պարթև Արշակունիների երկրորդ թագավորություն։ Հռոմեական քաղաքագետները գիտակցում էին, իհարկե, որ խնդրի այս լուծումը ժամանակավոր է և անբավարար։ Հռոմեական աղբյուրների վկայություններից երևում է, որ դեռևս 64 թվին, երբ Հռոմը խաղաղության բանակցություններ էր վարում պարթևների հետ՝ Ներոնի կառավարությունը ամեն կերպ աշխատել էր ուժեղացնել իր ազդեցությունը և իշխանությունը Հայաստանի սահմանամերձ երկրներում։

Հենց նույն 64 թվին Պոլեմոն Բ-ի Պոնտական թագավորությունը, որի մեջ էր գտնվում նաև ամբողջ Կողքիսը՝ միացվել էր կայսրությանը իբրև հռոմեական նահանգ։ Այս միացումը Հռոմի համար խիստ կարևոր էր, որովհետև Պոնտոսի սեծովյան ծովեզրը ուներ ստրատեգիական մեծ նշանակություն՝ իբրև պարեն հայթայթող թիկունք և անհրաժեշտ բազա պատերազմի դեպքում։ Միացված նոր նահանգում ուժեղացնում էին հռոմեական կայազորները և անց էին կացնում ռազմական ճանապարհներ։

Ուշագրավ է, որ մոտավորապես նույն այս ժամանակ, 66 թվին, Ներոնը պատերազմական պատրաստություններ էր տեսնում

*և ուզում էր ինքը անձամբ ռազմերթի ելնել ալանների դեմ Կովկասում։ Այս արշավանքը տեղի չունեցավ, որովհետև 68 թվին, պրետորյանների ապստամբության պատճառով, Ներոնը ստիպված եղավ փախչել Հռոմից և ճանապարհին ինքնասպանություն գործեց։*

*Նախապատրաստվող արշավանքի նպատակի մասին պատմագիտության մեջ տարբեր կարծիքներ են հայտնված։ Գերմանական պատմաբան Վ. Շուրը կարծում է, որ Ներոնը նախապատրաստում էր պատժական արշավանք ապստամբած աղվանների դեմ։ Բացի այդ, նա նպատակ էր դրել՝ ա) շրջափակել հյուսիսից Արշակունյաց Հայաստանը, ուր զորեղացել էր պարթևական ազդեցությունը, բ) հաստատել մոտիկ հարևանություն դաշնակից Հյուրկանիայի հետ և գ) զարգացնել առևտրական հարաբերությունները Բակտրիայի հետ Կասպից ծովի վրայով*[1]*։ Ընդհակառակը, Մոմզենը, որի կարծիքն այժմ տիրող է հանդիսանում, ենթադրում է, որ Ներոնի ծրագրած արշավանքը ձեռնարկված էր ո՛չ թե աղվանների դեմ դեպի Դերբենտի կիրճը, այլ ալանների դեմ Դարյալի կիրճի ուղղությամբ։ Ներոնի նպատակն էր, Մոմզենի կարծիքով, ջախջախել սարմատական ալաններին, որոնք ասպատակում էին Հռոմեական կայսրության արևելյան սահմանները և ավերիչ արշավանքներ էին սփռում նաև Հայաստանում և Մեդիայում*[2]*։*

*Վերոհիշյալ երկու կարծիքն էլ մանրամասն քննության են ենթարկված վերջերս լույս տեսած ռուսերեն իմ հոդվածում*[3]*: Այս ուսումնասիրության մեջ ես հանգել էի այն եզրակացության, որ Ներոնի ծրագրած կովկասյան արշավանքը սերտ կապ ունենալու էր Հռոմի սեծովյան քաղաքականության հետ։ Սկզբնաղբյուրներում հիշատակված Կասպիական լեռնային նեղուցները կամ կապանը* (claustra Caspiarum *կամ* Caspiae portae)*, որ նկատի էին առնըված իբրև հավաքատեղի հռոմեական զորքերի համար՝ Պևտինգերյան քարտեզում հիշատակված* Caspiae *կայարանի մոտ եղած լեռնային նեղուցներն են, որոնք գտնվում էին այժմյան Խոսպիայի և Ախալքալաքի մոտերքում։ Այստեղից Ներոնը պետք է առաջնորդեր հռոմեական զորքերը այժմյան Ախալցխայի և Արասթումանի վրայով և Մեստիս-Կողքիսյան ճանապարհով* (Caspia via) *դեպի Հյուսիսային Կովկաս, ուր Հռոմի դաշնակից հենիոքների կողքին ապ-*

---

[1] *Տե՛ս* Դr. Վերներ Շուր, *Ներոն կայսեր արևելեան քաղաքականութիւնը, թարգմանեց Մեսրոպ Հապոզյան, Վիեննա, 1930, էջ 96—112։*

[2] *Mommsen Th.*, Römische Geschichte, Bd. V, Berlin, 1886, էջ 393—394։

[3] Տե՛ս *Манандян Я. А.*, Цель и направление потготовлявшегося Нероном кавказского похода, „Вопросы истории“, 1946, № 7, էջ 66—74։

քում էին ալանները։ Ըստ իմ առաջարկած լուսաբանության՝ Ներոնի վերոհիշյալ արշավանքը սերտ կերպով կապակցված էր հռոմեական իշխանության սևծովյան քաղաքականության հետ և նպատակ ուներ ալանների ասպատակություններից ապահովելու Մեոտիս-Կողքիսյան հին ճանապարհը, որն ուներ առևտրական միջազգային նշանակություն։

Ներոնի մահից հետո՝ Փլավիանների դինաստիայի կայսրերի ժամանակ (69—96) ու նաև մինչև 114 թիվը՝ խաղաղությունն Արևելքում մնաց անխախտ։ Ներոնի խաղաղասեր արևելյան քաղաքականությունը հիմք էր դառել Արշակունիների բարեկամական հարաբերությունների կայսրության հետ և Վաղարշ Ա-ը պաշտոնապես դիմել էր Հռոմի ծերակույտին ու խնդրել, որ Ներոնի հիշատակը հարգվի։ Հարաբերությունները լավ էին Հռոմի հետ նաև Վեսպասիանոսի ժամանակ, և երբ վերջինս 69 թվին ընտրվել էր կայսր՝ Տրդատ Ա-ը, ինչպես կարելի է կռահել Տակիտոսի վկայություններից, տվել էր նրան հպատակության երդում[1]։

Չնայած, սակայն, հռոմեա-պարթևական հարաբերությունների խաղաղ կարգավորման՝ Վեսպասիանոս կայսրը (69—79), իր իշխանության առաջին հենց տարում, անհրաժեշտ համարեց Հռոմի արևելյան սահմաններում ուժեղացնել մնայուն զորքի քանակը։ Լեգեոնների թիվը, որ այստեղ ընդամենը չորս էր՝ նա ավելացրեց և դարձրեց յոթ։ Այդ լեգեոններից երկուսին, որ գտնվում էին Մելիտենեում և Սատաղում, հանձնարարված էր Հայաստանի սահմանների վերահսկողությունը։

Հետաքրքիր է նաև, որ դարձյալ Վեսպասիանոսի կարգադրությամբ Կոմագենի թագավորությունը 72 թվին միացվեց կայսրության իբրև հռոմեական նահանգ։ Նույն այս թվին տեղի ունեցավ և Փոքր Հայքի կցումը Հռոմին։

Ինչպես տեսնում ենք, Վեսպասիանոսն առանձին վստահություն չէ ունեցել դեպի դաշնագիր արևելյան պետությունները և նրա վերոհիշյալ կարգադրությունները պարզապես նկատի են ունեցել կայսրության պաշտպանությունը այդ հարևաններից։

Վաղարշ Ա-ը ո՛չ միայն հանդուրժեց հռոմեական զորքերի ավելացումը Կոմագենում, Կապադովկիայում և Փոքր Հայքում, այլև աշխատեց ամրացնել բարեկամական կապերը կայսրության հետ և իր շնորհավորանքը հայտնեց Հռոմին հրեական ապստամբության ճնշման առթիվ։

---

1 *Tacitus*, Hist., II, 81—82.

*Տրդատ Ա-ի թագավորության առաջին իսկ տարիներում, մեր թվականության 72 թվին, Հայաստանի խաղաղությունը վրդովվեց, և ալանները, որոնք այժմյան օսերի նախնիներն էին, ասպատակեցին և ավերեցին Ատրպատականն ու Հայաստանը։ Ալանները, ինչպես մատնանշում է Մ. Ռոստովցևը, մեր թվականության առաջին դարում հիմնել էին Հյուսիսային Կովկասում մեծ և հզոր մի թագավորություն*[1]*։*

*Ալանների այս 72 թվի արշավանքը, որ մանրամասն նկարագրված է ներքև մեջ բերված Հովսեպոս Փլավիոսի կարևոր մի վկայության մեջ, ինչպես ցույց եմ տվել իմ հոդվածներից մեկում*[2]*, կարոտ է առանձին քննության և լուսաբանության, որովհետև սխալ ու խառնաշփոթ է մեկնված պատմագիտական նախորդ երկերում։*

*«Բայց որ ալան ժողովուրդը,—պատմում է Հովսեպոս Փլավիոսը,—որը բնակում է Տանաիսի և Մեոտիդյան ծովի շուրջը, սկյութներ են՝ այդ մենք հայտնել ենք հենց առաջ։ Սակայն նրանք, մտադիր լինելով այդ ժամանակ ներխուժել ավարառության նպատակով Մեդիա և ավելի հեռավոր տեղեր՝ խոսքը մեկ արին հյուրկանների թագավորի հետ։ Սա էր տերը անցքի, որը Աղեքսանդր թագավորը փակել էր երկաթե դռներով։ Արդ՝ երբ վերջինս նրանց տրամադրության տակ դրեց անցքը՝ նրանք հանկարծ միահամուռ հարձակվեցին մեդացիների վրա, ավարի առան բազմամարդ երկիրը, որ լի էր ամեն տեսակ անասուններով. և ոչ ոք չհամարձակվեց նրանց դիմադրել, որովհետև այս երկրի Բակուր թագավորը սարսափած փախել էր դժվարամատույց տեղեր, թողնելով բոլոր մյուսներին բախտի քմահաճույքին։ Հազիվհազ նա կարողացավ ազատել նրանց ձեռից կնոջը և հարճերին, որ գերի էին ընկած, վճարելով հարյուր տաղանդ։*

*Ալանները մեծ հեշտությամբ ու առանց կռվի կողոպուտի մատնեցին երկիրը մինչև Հայաստան և հեռացան, վերցնելով իրենց հետ ամբողջ ավարը։ Հայաստանում թագավորում էր Տրդատը, որը, ռազմերթի ելնելով նրանց դեմ, ճակատամարտ տվեց և քիչ էր մնում, որ կռվի ընթացքում նրանց ձեռքը գերի ընկներ կենդանի։ Ալաններից մեկը հեռվից պարան ձգեց նրա*

---

[1] *Տե՛ս* The Cambridge Ancient History, vol. XI, chap. III, *էջ 111* (Cambridge, 1936):

[2] *Տե՛ս* *Манандян Я. А.*, О местонахождении Caspia via и Caspiae portae, „Исторические записки", вып. 25, *էջ 69—70։*

վրա և նրան արդեն բռնելու էր, սակայն Տրդատն իսկույն իր սրով բ պարանը կտրեց և շտապ փախավ»[1]։

Գերմանական գիտնական Գուտշմիդը ու նաև Խալաթյանցը, որն օգտվել է նրա աշխատությունից, կարծում են, որ ալանները Հյուրկանիայի թագավորի աջակցությամբ ներխուժել էին Մեդիա Դերբենտի կիրճով[2]։ Սակայն նրանց այս կարծիքը չէ կարող, իհարկե, ճիշտ լինել, որովհետև Հյուրկանիան գտնվում էր Կասպից ծովի հարավ-արևելյան ափերի մոտ, իսկ Դերբենտը՝ նույն ծովի արևմտակողմում։

Մեջ բերված վկայության խառնաշփոթ և հակասական լինելը նկատել էր Մոմզենը։ Նա կարծում է, որ այդ վկայության մեջ նկատի է առնված ո՛չ թե Դերբենտի, այլ հին Ռագայի (այժմյան Ռեյի) մոտ գտնվող լեռնանցքը, որն անվանվել է, ինչպես և Դերբենտի անցքը, Կասպից դուռ[3]։

Շատ պարզ է, որ նաև Մոմզենի այս բացատրությունը դժվար է բավարար համարել, որովհետև ալանները, որոնք ապրում էին Կովկասյան լեռների հյուսիս-արևմտյան ստորոտներում, չէին կարող Մեդիա եկած լինել Ռեյի մոտ գտնվող լեռնանցքով։

Ըստ իս Հովսեպոս Փլավիոսի անհասկանալի վկայությունը կարելի է մեկնել այլ կերպ։

Հայտնի է, որ հունա-հռոմեական աղբյուրներում Hyrcanē կամ Hyrcania (=հայ. Վիրք) անվանվել է երբեմն Իբերիա—Վրաստանը[4]։ Միանգամայն պարզ է, ուրեմն, որ Հովսեպոս Փլավիոսի օգտագործած սկզբնաղբյուրը, հաղորդելով ալանների համաձայնության մասին հյուրկանների թագավորի հետ՝ նկատի է ունեցել ո՛չ թե Հյուրկանիայի կամ Վրկանի, այլ Իբերիայի կամ Վիրքի թագավորին։ Կարելի է ըստ այսմ նաև ենթադրել, որ ալանները 72 թվին ներխուժել էին Անդրկովկաս և Մեդիա ո՛չ թե Դերբենտի կամ Ռեյի մոտ եղած Կասպյան դռներով, այլ Caspiae-ի մոտ գտնվող լեռնանցքով և Caspia via ճանապարհով, որ վերև մատնացույց էին արված[5]։

---

1 *Jos. Flav.*, Bel. Jud., VII, 7, 4 (244—246).

2 Տե՛ս *Gutschmid*, Geschichte Irans, Tübingen, 1888, էջ 133։ *Халатьянц*, Армянский Эпос в Истории Армении Моисея Хоренского, 1896, էջ 243—244. Նույնի, Очерк истории Армении, М., 1910, էջ 295։

3 Տե՛ս *Mommsen*, Römische Geschichte, V Band, Berlin, 1886, էջ 394, ծան. 1։

4 Տե՛ս *Markwart*, Beiträge zur Geschichte und Sage von Eran, ZDMG, XLIX, 1895, էջ 633 և նույնի, Eranschahr, Berlin, 1901, էջ 101։

5 Համեմատե՛ նաև Մանանդյան Հ., Քննական տեսություն, հատ. Ա, էջ 315։

Ալանների արշավանքը կրկնվեց, ինչպես վկայում են Սվետոնիուսը և Կասսիուս Դիոնը, նաև 75 թվին[1]։ Այս անգամ Պարթևաց թագավոր Վաղարշ Ա-ը և նրա Բակուր ու Տրդատ Ա եղբայրները դիմեցին Վեսպասիանոսին և խնդրեցին օգնություն ուղարկել կայսերական արքայազններից որևէ մեկի առաջնորդությամբ։ Սակայն Վեսպասիանոսը մերժեց միջամտել, ուստի և այնուհետև հարաբերությունները այս երկու պետությունների միջև խիստ սրվեցին։

«Այնուամենայնիվ,—պատմում է Սվետոնիուսը,—երբ Պարթևաց Վաղարշ թագավորը աղերսալից խնդրեց ալանների դեմ օգնություն ու նաև մի հրամանատար ևս Վեսպասիանոսի որդիներից՝ նա [Դոմետիանոսը] ամեն կերպ աշխատեց, որ ինքն ուղարկվի, և որովհետև այդ բանը գլուխ չեկավ՝ նա նվերներով ու խոստումներով փորձեց դրդել Արևելքի նաև մյուս թագավորներին, որ նրանք ևս նույնը պահանջեն»[2]։

Ուշագրավ է, որ հենց 75 թվի երկրորդ կեսում, ինչպես վկայում է Մցխեթի մոտ գտնված հունարեն արձանագրությունը, Վեսպասիանոս կայսրը և նրա կառավարչակիցները, Տիտոսը և Դոմետիանոսը, «կայսեր և հռոմայեցիների բարեկամ» Իբերիայի Միհրդատ թագավորի և նրա եղբայր Համազասպի համար կառուցել էին ամրություններ Մցխեթ-Հարմոզիկայում։ Իբերիայի մայրաքաղաքի ամրացումը, ինչպես կարծում է Գուտշմիդը, կարևոր էր համարվել բարբարոս ալանների ավերիչ արշավանքների վտանգի պատճառով[3]։ Այս ենթադրությունը, որ ընդունելի է համարվում, ինձ թվում է, որ այնքան էլ հաստատուն չէ։

Մենք արդեն մատնանշեցինք, որ ալանների 72 թվի ներխուժումն Անդրկովկաս և Մեդիա տեղի էր ունեցել, ինչպես և 35 թվին[4],

[1] Գարագաշյանը, Ասատուրյանը և Սանտալճյանը կարծում են, որ Սվետոնիուսի և Դիոնի վկայությունները վերաբերում են նույն արշավանքին, որը մանրամասն նկարագրված է Հովսեպոս Փլավիոսի մոտ։ Ասատուրյանն այդ արշավանքը ենթադրում է 75 թվին, իսկ Սանտալճյանը՝ 73—74 թվերին. տե՛ս Գարագաշյան, Քննական պատմութիւն, մասն Բ, Թիֆլիս, 1895, էջ 241. Ասատուրյան, Քաղաքական վերաբերութիւններ ընդմէջ Հայաստանի և Հռովմայ, Վենետիկ, 1912, էջ 190—191. *Sandalgian*, Histoire documentaire de l'Arménie, Rome, 1917, էջ 537։

[2] Տե՛ս *Suetonius*, Domitianus, 2։ Համեմատե՛ նաև Cass. Dio. LXVI, 15, 3 (75 թ.)։

[3] *Gutschmid*, Geschichte Irans, էջ 133։ Համեմատե՛ նաև Mommsen, Römische Geschichte, V, էջ 396. Ասատուրյան, Քաղաքական վերաբերութիւններ, էջ 191 և ուրիշ.։

[4] Տե՛ս Մանանդյան Հ., Քննական տեսություն, հատ. Ա, էջ 313—315։

Հռոմի դաշնակից իբերների թագավորի հավանությամբ և աջակցությամբ։ Ուստի անհավանական չի լինի ենթադրել, որ վերոհիշյալ ամրությունների կառուցողները կարող էին նկատի ունեցած լինել Հռոմի դաշնակից Իբերիայի պաշտպանությունը, որը դառել էր հյուսիսում հռոմեական ամրացրած շրջան, ո՛չ թե ալանների, այլ Հայաստանի և Պարթևստանի հարձակումներից[1]։ Եվ, իրավի, հենց 75 թվից անմիջապես հետո պարթևներն անչափ գրգռվել էին Հռոմի դեմ, և Արևելքում ստեղծվել էր պատերազմի մոտալուտ վտանգ, որը, սակայն, հնարավոր եղավ հանգցնել։

Հավանորեն, ալանների վերոհիշյալ արշավանքներին և Տրդատ Ա-ին են վերաբերում, ինչպես մատնացույց է արել Գարագաշյանը[2], Խորենացու հաղորդած տեղեկությունները ալանների Հայաստանի վրա հարձակման մասին ու նաև նրանց խնամիության մասին Արտաշես թագավորի հետ, որ հայտնի են եղել Խորենացուն, ինչպես ինքն է հայտնում, վիպասանություններից, որ պատմվում էին Գողթանում։

«Այս ժամանակները,—պատմում է Խորենացին,—ալանները, բոլոր լեռնականների հետ միաբանելով և Վրաց աշխարհի կեսն իրենց կողմը ձգելով՝ մեծ բազմությամբ գալիս սփռվում են մեր աշխարհում։ Արտաշեսն էլ ժողովում է իր զորքերի բազմությունը, և տեղի է ունենում պատերազմ երկու քաջ և աղեղնավոր ժողովուրդների միջև։ Ալանների ցեղը փոքր-ինչ ետ է նահանջում և, մեծ Կուր գետն անցնելով՝ բանակ է դնում գետի ափին հյուսիսային կողմում։ Արտաշեսն էլ գալիս բանակում է գետի հարավային կողմում. գետը բաժանում է երկուսին։

Բայց որովհետև հայոց զորքերն ալանների թագավորի որդուն բռնում և Արտաշեսի մոտ են բերում՝ ալանների թագավորը հաշտություն է խնդրում, խոստանում է տալ Արտաշեսին՝ ինչ որ նա ուզե, և առաջարկում է երդումով մշտական դաշինք կնքել, որպեսզի ալանների երիտասարդներն այնուհետև չասպատակեն Հայոց աշխարհը։ Երբ Արտաշեսը չի համաձայնում պատանուն ետ տալ՝ պատանու քույրը գալիս է գետի ափը մի մեծ բարձրավանդակ տեղ և թարգմանների միջոցով ձայն է տալիս Արտաշեսի բանակը.

[1] Տե՛ս Амиранашвили А., Иберия и римская экспансия в Азии, „Вестник древней истории“, 1938, № 4(5), էջ 171—172։

[2] Տե՛ս «Քննական պատմութիւն Հայոց», Բ, էջ 242—244։

«Քեզ եմ ասում, քաջ տղամարդ Արտաշես,
Որ հաղթեցիր ալանների քաջ ցեղին,
Ե՛կ լսի՛ր ալանների գեղաչյա դստերս խոսքերին
Եվ տուր պատանին։
Որովհետև օրենք չէ, որ քենի համար դյուցազնները
Ուրիշ դյուցազն զարմերի կենդանությունը ջնջեն
Կամ իբրև ծառա ստրուկների կարգում պահեն,
Եվ երկու քաջ ժողովուրդների մեջ
Մշտնջենավոր թշնամություն հաստատեն»։

Արտաշեսն այս իմաստուն խոսքերը լսելով՝ գնաց գետի ափը և, տեսնելով գեղեցիկ կույսին ու լսելով նրանից իմաստուն խոսքեր՝ նրան ցանկացավ։ Նա կանչում է իր դայակ Սմբատին և բաց է անում, որ իր սրտի փափագն է՝ կին առնել ալանների արքայազն օրիորդին, դաշինք և ուխտ դնել քաջերի ազգի հետ և պատանուն խաղաղությամբ արձակել։ Սմբատը հավանություն է տալիս և մարդ է ուղարկում ալանների թագավորի մոտ, որ ալանների արքայազն օրիորդ Սաթենիկին կնության տա Արտաշեսին։ Ալանների թագավորն ասում է.

«Եվ ո՞րտեղից քաջ Արտաշեսը պիտի տա
Հազար հազարներ և բյուր բյուրեր
Քաջերի սերունդ այս կույսի՝
Ալանների արքայազն օրիորդի համար»։

Վիպասաններն երգելիս այս տեղն առասպելաբանում են ասելով.

«Հեծավ արի Արտաշես արքան գեղեցիկ սև ձին,
Եվ հանելով ոսկեօղ շիկափոկ պարանը,
Եվ անցնելով գետն իբրև սրաթև արծիվ,
Եվ նետելով ոսկեօղ շիկափոկ պարանը,
Զգեց մեջքը ալանաց օրիորդի,
Եվ շատ ցավեցրեց փափուկ օրիորդի մեջքը,
Արագաբար իր բանակը հասցնելով»[1]։

Մեջ բերված այս վիպական բնույթ ունեցող քաղվածքում կարող է պատմական հիշողություն լինել ո՛չ միայն Տրդատ Ա-ի և ալանների պատերազմը Կուր գետի ափին, այլև վիպասանքից առնված տեղեկությունն այն մասին, որ ալաններն արշավել էին Հայաստան՝ լեռնականների և Վրաստանի կես մասի հետ միաբա-

---

[1] Տե՛ս Մովսես Խորենացի, Հայոց պատմություն, թարգմ. Ս. Մալխասյանցի, Երևան, 1940, էջ 118—119 (Բ, 50)։

*նած։ Այս փաստական տեղեկությունը կարևոր է ու հետաքրքիր, որովհետև, հիմնվելով Հովսեպոս Փլավիոսի վերոհիշյալ վկայության վրա, մենք վերև հավանական էինք համարել, որ ալանների ներխուժումը Հայաստան և Մեդիա տեղի էր ունեցել իբերների թագավորի (հավանորեն, Փարսման Ա-ի որդի Միհրդատի) գործակցությամբ։*

*Հայ պատմագրական մի քանի երկերում ենթադրում են, որ Տրդատ Ա-ի ժամանակ որոշ պետական բարենորոգումներ էին կատարվել և հիմնադրվել կամ կարգավորվել էին հայ նախարարությունները*[1]*։ Այս ենթադրության միակ հիմքը Խորենացու վկայություններն են Վաղարշակ թագավորի պետական վերանորոգչական գործունեության մասին, որ մանրամասն մեջ են բերված նրա Պատմության երկրորդ գրքի Զ և Է գլուխներում։ Վաղարշակի այդ գործունեությունը վերագրվել է Տրդատ Ա-ին, որովհետև ենթադրվել է, որ Խորենացու Վաղարշակը, որ Արշակունիների դինաստիայի հիմնադիրն էր, իրականում Տրդատ Ա-ն է*[2]*։*

*Իհարկե, հնարավոր և հավանական է, որ Տրդատ Ա-ը կարող էր բարեփոխած լինել իր թագավորության ներքին կարգերը, սակայն այդ մասին մենք ստույգ և արժանահավատ տեղեկություններ չունենք։*

*Որքան ժամանակ է թագավորել Տրդատ Ա-ը ալանների 72—75 թվերի արշավանքներից հետո՝ այդ ևս մեզ հայտնի չէ։ Միանգամայն հավանական կարելի է համարել, որ նրան հաջորդած պիտի լիներ (75-ի և 110 թթ. միջև) Սանատրուկ թագավորը, որի թագավորության ժամանակաշրջանը պատմագետների մեծագույն մասը թյուրիմացաբար տարել է երկրորդ դարի վերջերը։*

*Որ Սանատրուկը, իրապես, Հայաստանի թագավոր է եղել վերոհիշյալ ժամանակամիջոցում՝ այդ մատնացույց էր արել իր ուշագրավ հոդվածում*[3] *ու նաև իր Դիոնի հրատարակության մեջ*

---

[1] *Տե՛ս* Լեո, *Հայոց պատմություն, Ա, Թիֆլիս, 1917, էջ 470—471.* Խ. Սամվելյան *և այլք, Հայ ժողովրդի պատմություն, Երևան, 1943, էջ 74 և ուրիշ.։*

[2] *Տե՛ս* Խ. Սամվելյան, *Հին հայ իրավունքի պատմություն, հատոր Ա, Երևան, 1939, էջ 181, 264, 328.* Կ. Բասմաջյան, *Իսկական պատմութիւն Հայոց, Պոլիս, 1914, էջ 100 և ուրիշ.։*

[3] *Տե՛ս U. Boissevain*, Ein verschobenes Fragment des Cassius Dio, Hermes, Bd. 25, 1890, *էջ 329—339։ Նույն այս խնդիրը մանրամասն լուսաբանված է Մարկվարտի ուսումնասիրության մեջ՝* Untersuchungen zur Geschichte von Eran, II, Leipzig, 1905 *(տե՛ս նաև* Philologus, Supplementband X, Heft 1)։ *Համեմատե՛ «Հանդէս Ամսօրեայ», 1906, փետրվար—«Էջ մը հայ Արշակունեաց հնագոյն պատմութենէն», էջ 33—34։*

(Հատ. Գ, էջ 218/19 ծան.) Boissevain-ը, որն ապացուցել էր, որ Կասսիուս Դիոնի հատակոտորը, որի մեջ հիշատակված են Սանատրուկը և նրա որդին, Վաղարշը, ո՛չ թե Սեպտիմոս Սեվերոս կայսեր (193—211) ժամանակին է վերաբերում, ինչպես պատմագիտության մեջ ենթադրվում էր, այլ Տրայանոս կայսեր (98—117) վերջին տարիներին և, հավանորեն, 116 թվականին։

Սանատրուկ թագավորի մասին մի քանի հետաքրքիր ու կարևոր տեղեկություններ հաղորդում են հունա-հռոմեական և հին հայկական աղբյուրները։

Ուշագրավ է, նախ և առաջ, Սանատրուկի հիշատակությունը Սուիդասի Բառգրքում, որ քաղված է ակներևաբար Արրիանի Պարթևականք գրքից։

«Հայոց թագավոր Սանատրուկը,—վկայում է Արրիանը,— ուներ միջակ հասակ, բայց հակում ուներ դեպի ամեն մի մեծ բան և, մանավանդ, դեպի պատերազմական գործերը։ Նա հավասարիմ պահապան էր արդարադատության և իր կենցաղավարության մեջ զուսպ էր, նաև չափավոր ու ողջամիտ էր, ինչպես լավագույնները հույների և հռոմայեցիների մեջ»[1]։

Նույն այս Սանատրուկին է վերաբերում Կասսիուս Դիոնի վերոհիշյալ հատվածը, որի ժամանակը, ինչպես վերև ասացինք, լուսաբանել ու որոշել է Boissevain-ը։

«Երբ Վաղարշը, Սանատրուկի որդին,—պատմում է Դիոնը,—պատրաստվել էր ճակատամարտ տալու Սեվերոսին և կռիվն սկսելուց առաջ խնդրել էր և կնքել էր հաշտություն՝ [Տրայանոսը] ուղարկեց նրա մոտ պատգամավորներ և խաղաղության հաստատման համար շնորհեց նրան Հայաստանի մի մասը»[2]։

Այս վկայությունից, որ քննելու ենք ներքև Վաղարշի մասին խոսելիս, մենք իմանում ենք, որ Հայաստանում երկրորդ դարի առաջին կեսում թագավորել էր Սանատրուկի որդին՝ Վաղարշը։

Դիոնի վկայության վերոհիշյալ նոր լուսաբանության շնորհիվ ճշտվում են ժամանակագրական տեսակետից և իմաստ են ստանում Սանատրուկի մասին այն աղոտ հիշողությունները, որ պահպանված են հայ մատենագրական երկերում։

Բացառիկ կարևորություն ունի Սանատրուկ թագավորի մասին Փավստոսի վկայությունը, որը նրան վերագրում է Մծուրն քաղաքի

---

[1] Տե՛ս Suidas, ed. Bernhardy, II, col. 668.
[2] Cass. Dio, LXXV, 9, 6.

շինությունը։ Փավստոսը պատմում է, որ Հայր մարդպետը, սուրբ տեղերը, Աշտիշատում, այցելելուց հետո, գնում է այնտեղից Եփրատ-Արածանի գետի ափերը, ուր միախառնվում էր սրա հետ մի այլ գետ և այնտեղ սպանվում է մի ավերված քաղաքավայրի մոտ, որն անվանվում էր Մծուրք։

«Այնուհետև Հայր մարդպետը,—վկայում է Փավստոսը,— գնաց սուրբ տեղերից և իջավ Եփրատ գետի հոսանաց ափը, խիտ անտառի հովիտները երկու գետերի միախառնման տեղում՝ եղեգնուտ տեղերի և վայրի ծառերի խիտ մասում, ուր հին ժամանակներում կառուցված էր մի ինչ-որ քաղաք, որը շինել էր Սանատրուկ թագավորը. և այդ տեղի անունն էր Մծուրք»։

[«Ապա գնայր մարդպետն Հայր ի սուրբ տեղեացն, և էջ յափն գետոյն հոսանացն Եփրատու, հովիտսն թանձրախուռն անտառին, ի գետախառնունսն երկուց գետոցն, ի թաւուտ խարձիցն մամխեացն, որ ի տեղւոջն ի հնոցն իմն շինած քաղաք՝ զոր շինեալ Սանատրուկ արքայի, որում անուն տեղւոյն Մծուրք կոչի»][1]։

Սանատրուկի հիմնած այս Մծուրք քաղաքը, ինչպես երևում է Փավստոսի վկայությունից, հիմնահատակ ավերված է եղել դեռևս հինգերորդ դարից առաջ։ Ուշագրավ է, որ Մովսես Խորենացին, որին հայտնի չէ եղել Մծուրք քաղաքի գոյությունը Հայաստանում, Սանատրուկ թագավորին վերագրել է ո՛չ թե այդ քաղաքի, այլ Մծբին քաղաքի շինությունը[2]։ Խորենացու այս սխալը հեշտությամբ բացատրելի է։ Նրա օգտագործած աղբյուրի մեջ, հավանորեն, տեղեկություն է հաղորդված եղել Սանատրուկի հիմնած Մծուրք կամ Մծուրն քաղաքի մասին, իսկ Խորենացին, շփոթելով իրեն անհայտ Մծուրնը Հյուսիսային Միջագետքի Մծուին կամ Մծբին քաղաքի հետ՝ թյուրիմացաբար համարել է Սանատրուկին շինող ո՛չ թե Մծուրնի, այլ Մծբինի։

Սանատրուկի հիմնած Մծուրք քաղաքի մասին կա կարևոր մի վկայություն նաև «Մարաբայ փիլիսոփայ Մծուրնացւոյ» գրքից քաղված Սեբեոսի Պատմության առաջին գլխում։ Այդ վկայությունից մեզ հայտնի է, որ Մծուրն քաղաքում (Սեբեոսի տպագիր բնագիրն ունի «ի Մծբին քաղաքի», որ պետք է ուղղել և կարդալ «ի

[1] Տե՛ս «Փաւստոսի Բիւզանդացւոյ, Պատմութիւն Հայոց», Վենետիկ, 1832, էջ 118 (IV, 14)։

[2] Տե՛ս «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», Տփղիս, 1913, II, 36, էջ 160։

Մծուրն քաղաքի»), Սանատրուկ թագավորի ապարանքի ավերակների մեջ, արքայական պալատի դռան դիմաց, գտել էին քարի վրա դրոշմված հունարեն մի արձանագրություն, որ պարունակում էր ժամանակագրական տեղեկություններ Արշակունի, Հայ և պարթև, առաջին հինգ թագավորների մասին[1]։ Սեբեոսի Պատմության այս վկայությունը հիմք է տալիս ենթադրելու, որ Մծուրքը եղել է Սանատրուկ թագավորի աթոռանիստ քաղաքը։

Մծուրք քաղաքի տեղը, ինչպես մատնանշել է Մարկվարտը, պետք է ենթադրել Արածանի և Մեղ (այժմ Կարասու) գետերի միախառնման մոտ, Մշո դաշտի արևմտակողմում[2]։ Այս նոր քաղաքը, ասում է Մարկվարտը, շատ կարևոր դիրք ուներ ռազմագիտական տեսակետից։ Նա իշխում էր հաղորդակցության ճանապարհների վրա և կապված էր Բալուի ու Խարբերդի վրայով Մելիտենեի հետ, Խնուսի վրայով՝ Հասանղալայի և Էրզրումի հետ, Տավրոսյան լեռների ու Բատմանսուի հովիտների վրայով՝ Տիգրանակերտի հետ և Մանազկերտի ու Բագավանի վրայով՝ Արտաշատի հետ[3]։ Մծուրք քաղաքի մոտով էր անցնում, ինչպես մանրամասն ցույց է տրված իմ «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» աշխատության մեջ[4], Արտաշատից Տիգրանակերտ տանող առևտրական և ռազմական մեծ ճանապարհը։

Փավստոսը իր Պատմության մեջ տալիս է տեղեկություն Սանատրուկ թագավորի գերեզմանի մասին, որը գտնվում էր Դարանաղի գավառի Անի բերդում։ Երբ 359 թվին Պարսից թագավոր Շապուհի զորքերը առել էին Անի բերդը՝ նրանք կողոպտել էին այստեղ թագավորական գանձերը և մինչև իսկ գերեզմաններից հանել էին Արշակունի հայ թագավորների ոսկորները, որ գերի տանեն Պարսկաստան։ Բայց նրանք, ինչպես վկայում է Փավստոսը, չէին կարողացել քանդել Սանատրուկ թագավորի շիրիմը, որը հոկայաշեն էր, ամրապինդ և գեղեցիկ շինված։

«Շատ բերդեր,—պատմում է Փավստոսը,—նրանք թողնում ու անցնում էին, որովհետև այդ ամրությունների դեմ չէին կարող մարտնչել։ Բայց նրանց ձեռքն ընկավ միայն Անին Դարանաղի գավառում, որովհետև չարագործ Մերուժանը հնարամը-

---

[1] Տե՛ս «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», հրատ. Ս. Մալխասյանցի, Երևան, 1939, էջ 1—2 (գլ. Ա)։

[2] Տե՛ս «Էջ մը հայ Արշակունեաց հնագոյն պատմութենէն», «Հանդ. Ամս.», 1906, փետր., էջ 43։

[3] Նույնը, էջ 43։

[4] Երևան, 1936, էջ 17—114։

տուխյամբ դարանի մեջ էր ձգել ամուր այդ բերդը։ Ապա նրանք վեր ելան, քանդեցին նրա պարիսպը և բերդից իջուցին անթիվ գանձեր։ Եվ նրանք բաց արին հայ առաջին թագավորների, քաջ Արշակունիների, գերեզմանները և թագավորների ոսկորները տարան գերի։ Բայց միայն Սանատրուկ արքայի շիրիմի գերեզմանը նրանք չէին կարողացել բանալ, որովհետև խիստ հրակայաշեն, հաստատպինդ ու ճարտարագործ կառուցվածք էր»։

[«Եւ զբազում բերդօք զանց առնէին, զի ոչ կարէին մարտընչել ընդ ամուրսն, բայց միայն մատնեցաւ ի ձեռս նոցա ամուր բերդն Անի ի Դարանաղեաց գաւառին անդ, զի չարագործն Մերուժանն հնարաւորութեամբ մեքենայէր ամուր բերդին այնմիկ։ Ելանէին ի վեր, և կործանէին զպարիսպ նորա և իջուցանէին անթիւ գանձս ի բերդէն։ Եւ բանային զգերեզմանս զառաջին թագաւորացն Հայոց զարանց քաջաց զԱրշակունոյ, և խաղացուցանէին ի գերութիւն զոսկերս թագաւորացըն։ Բայց միայն զգերեզման շիրմին Սանատրկոյ արքային ոչ կարացին բանալ վասն անհեդեդ սկայագործ հաստաշինած ճարտարագործ արարածոցն»][1]։

Բացի Սանատրուկի մասին վերև բերված տեղեկություններից, որ պատմական են ու արժանահավատ, նրա մասին հայկական աղբյուրները տալիս են մի քանի նաև այլ վկայություններ, որ համարվում են վիճելի ու անվստահելի։

Օրինակ, «Վկայաբանութիւն սրբոյն Թադէոսի առաքելոյն և Սանդխտոյ կուսին» անվավեր, բայց բավական հին, գրվածքի մեջ հիշատակված է նույն այս Սանատրուկ թագավորը, իբրև սպանող իր դուստր Սանդուխտի և Թադեոս առաքյալի[2]։ Առասպելային այս հին ավանդությունը հետաքրքիր է այն տեսակետից, որ այստեղ ևս, ինչպես և հունա-հռոմեական աղբյուրներում, Սանատրուկ թագավորի ժամանակը դրվում է մեր թվականության առաջին դարի երկրորդ կեսում։

Խիստ հետաքրքրական է, որ Մովսես Խորենացին և նրան հետևող հայ պատմագետները մատնացույց են անում, որ Սանատրուկ թագավորը նվաճել և միացրել էր Հայաստանին Օսրոյեն-Եդեսիայի թագավորությունը[3]։ Գուտշմիդը իր «Ուսումնասիրութիւնք Օսրոյենաց թագաւորութեան պատմութեան» աշխատության մեջ, հենվելով Խորենացու վկայության վրա և նկատի առնելով, որ Եդեսիայի թա-

[1] Տե՛ս Փավստոս, IV, 24, էջ 146 (1889)։

[2] Տե՛ս «Սոփերք Հայկականք», Ը, Վենետիկ, 1853։

[3] Խորենացի, II, 35։

գավորների շարքի մեջ 18 տարվա ընդհատություն կա, այն է՝ 91 թվից մինչև 109 թիվը՝ ենթադրում է, որ հենց այս թվերին (91—109) կարող էր եղած լինել Եդեսիայի թագավոր Խորենացու հիշատակած Սանատրուկը, որին նա, անծանոթ լինելով Boissevain-ի և Մարկվարտի ժամանակագրական դիտողություններին, թյուրիմացաբար թագավոր է կարծում ո՛չ թե Հայաստանի, այլ Ադիաբենի[1]։

Այս խնդիրը դեռ պարզ չէ և կարոտ է հատուկ քննության։ Սակայն, եթե Խորենացու վերոհիշյալ վկայությունը հնարավոր լինի հաստատել փաստական նոր տվյալների օգնությամբ, այդ դեպքում հասկանալի կլինի, թե ինչո՛ւ Արրիանը Սանատրուկին մեծ է համարում պատերազմական գործերի մեջ։

Որքան ժամանակ էր թագավորել Սանատրուկը և ե՛րբ էր նա վախճանվել՝ այդ հաստատապես մեզ հայտնի չէ։ Ասատուրյանը, որը համաձայն Գուտշմիդի ընդունում է Սանատրուկի Եդեսիայի թագավոր լինելը մինչև 109 թիվը, կարծում է, որ նա կարող էր վախճանված լինել հենց այդ թվականին, և նրա անմիջական հաջորդն է համարում Աշխադարին, որի թագավորության սկիզբը ենթադրում է 110 թվին[2]։

Հ. Գաթրճյանն իր «Տիեզերական պատմության» մեջ կարծում է, որ այս Աշխադարը Տրդատ Ա-ի որդին էր, իսկ Գարագաշյանը, հիմնվելով Խորենացու վկայությունների վրա (II, 61), Աշխադարին համարում է Տրդատ Ա-ի (Արտաշես Բ-ի) թոռը և ենթադրում է, որ նա թագավորում էր Հայաստանում իր հոր՝ Արտավազդից հետո[3]։

Այս կռահումները, որ հարկավ սխալ են, բացատրվում են նրանով, որ Գաթրճյանն ու Գարագաշյանը կարծել են, որ Տրդատ Ա-ի մահից հետո հայկական թագավորությունը ժառանգաբար անցել էր նրա որդիներին։ Սակայն, իրապես, ամեն անգամ, երբ թագավորական գահը թափուր էր լինում, Պարթև Արշակունիների թագավորական տոհմից ներկայացվելու էր Հռոմեական կայսրության ի հաստատություն հարմար ու ընդունելի թեկնածու։

Ինձ թվում է, այդ է հենց պատճառը, որ Տրդատ Ա-ից հետո մինչև գրեթե երրորդ դարը Հայաստանում թագավորող Արշակունիները, լինելով խորթ ու օտար հայ ժողովրդին՝ չեն վայելել ժողո-

---

[1] Տե՛ս *Gutschmid A.*, Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroëne, St.-Pétersbourg, 1887, էջ 27—28 և 49։

[2] Տե՛ս Ասատուրյան, *Քաղաքական վերաբերություններ*, էջ 198—200։

[3] Տե՛ս Հ. Գաթրճյան, *Տիեզերական պատմութիւն*, հատ. Բ, Վիեննա, 1852, էջ 152. Ա. Մ. Գարագաշյան, *Քննական պատմութիւն*, Թիֆլիս, 1895, էջ 253։

վրդականություն և նյութ չեն ծառայել վիպասանքի և վիպական երգ ու զրույցի։

Աշխադարը (110—113), ինչպես հայտնի է մեզ այժմ հունա-հռոմեական աղբյուրներից, որդին էր ո՛չ թե Տրդատ Ա-ի կամ Արտավազդի, այլ պարթևական Բակուր Բ թագավորի (77—110)։ Նա ստացել էր Հայաստանի գահը Հռոմի համաձայնությամբ, սակայն նրա թագավորությունը երկար չտևեց։

Բակուր Բ-ի հաջորդը, Խոսրովը (110—130?), գտնելով Աշխադարին անհամապատասխան նրա ստանձնած բարձր պաշտոնին՝ ինքնագլուխ, առանց Տրայանոս կայսեր համաձայնության, նրան գահընկեց արեց և Հայաստանի թագավոր կարգեց Բակուր Բ-ի մյուս որդուն, Պարթամասիրին (113 թ.)։ Այս անցքերի մասին հունա-հռոմեական աղբյուրներում պահպանվել են միայն մի քանի պատահական և կցկտուր տեղեկություններ[1]։

Խոսրով թագավորի վերոհիշյալ որոշման բուն դրդապատճառները հայտնի չեն։ Տրայանոսի հետ ունեցած բանակցությունների ժամանակ նա հայտնել էր նրան, որ Աշխադարից գոհ չէին կարող լինել ո՛չ միայն պարթևները, այլև հռոմայեցիները։ Ըստ երևույթին, Աշխադարը անընդունակ է եղել կառավարելու իր թագավորությունը, ինչպես այդ մասին ուշագրավ մի հիշողություն պահպանվել է հայ մատենագրության մեջ։ Ն. Անդրիկյանը մատնանշել է[2], որ, հավանորեն, հենց այս Աշխադար թագավորին է վերաբերում հայկական հին ավանդությունը Արտավազդի որդու՝ Տիգար թագավորի մասին, որին հայրը չէր տվել Հայոց թագավորությունը, որովհետև նա խելագար էր[3]։

---

1 Տե՛ս Cass. Dio, Fragm. LXVIII, 16 և 17, նաև Արրիանի Պարթևականք գրքից քաղվածքներ Սուիդասի Բառգրքում (ἀμφίλογον և γνῶσις բառերի տակ. տե՛ս նույնը C. Müller, Fragm. hist. graec., III, 589, 16):

2 «Բազմավէպ», 1906, էջ 56—59։

3 Այս ավանդությունը մանրամասն մեջ է բերված Հայսմավուրքում, հիշատակված է նաև Ոսկեփորիկում և Գրիգոր Դարանաղցու ժամանակագրության մեջ (Երուսաղեմ, 1915, էջ 208)։

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ՏՐԱՅԱՆՈՍԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՎ ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ ԵՎ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀՌՈՄԱՅԵՑԻՆԵՐԻ ԴԵՄ

**1. Պարթամասիր.— Հռոմեա-պարթևական հարաբերությունների սրումը.— Տրայանոսի նոր քաղաքականությունը:— 2. Խոսրովի և Պարթամասիրի բանակցությունները Տրայանոսի հետ:— 3. Տրայանոսի 114 թվի արշավանքը.— Տրայանոսը Սատաղում.— Տրայանոսի և Պարթամասիրի տեսակցությունը Էլեգեյայում.— Պարթամասիրի սպանությունը:— 4. Հայաստանի նվաճման առթիվ Տրայանոսի դրամները և հաղթական կոթողը:— 5. Կորդուքի և մարդերի երկրի գրավումը.— Հռոմեական Մեսոպոտամիա և Ասիրիա նոր նահանգները.— Բաբելոնիայի և Մեսենեի գրավումը և Տիզբոնի առումը:— 6. Ապստամբությունները Տրայանոսի թիկունքում.— ապստամբությունների ճնշումը:— 7. Տրայանոսի վերադարձը Ասորիք և մահը:— 8. Վաղարշի հաշտությունը հռոմայեցիների հետ.— Դիոնի հատվածի հավանական մեկնությունը:**

*Աշխադարի գահընկեցությունը և Պարթամասիրի նշանակումը Հայաստանի թագավոր, որ խախտումն էր 64—66 թթ. հռոմեա-պարթևական համաձայնության, անշուշտ, գրգռիչ մի ոտնձգություն էր և ոտնահարում Հռոմեական կայսրության իրավունքների, որ չէր կարող անպատասխան մնալ։*

*Պետք է ասել, որ Արշակունիների և Հռոմի քաղաքական հարաբերությունները սկսել էին սրվել դեռևս Բակուր Բ-ի ժամանակ։ Պարթևների դեմ Տրայանոսը խիստ գրգռված էր, որովհետև Բակուր Բ-ը հաստատել էր բարեկամական կապեր Հռոմի թշնամի դակերի Դեկեբալ թագավորի հետ[1]։ Իսկ այժմ, Խոսրովի ինքնագլուխ միջամտությունը Հայաստանի գործերին, որ արդեն դանակը ոսկրին*

[1] *Տե՛ս Plinii Secundi,* Epistolae, *74. Համեմատե՛* Плиний Младший, Переписка с Траяном, „Вестник древней истории", 1946, № 2, էջ *247, տե՛ս նաև Սուիդասի Բառգրքում Արրիանի Պարթևականքից քաղված* ἐπίκλημα *բառը։*

էր հասցնում, առիթ տվեց Տրայանոսին տակնուվրա անելու ամբողջ Արևելքը։

Ներոնի արևելյան քաղաքականությունը և Հայաստանում քաղաքական դրության կարգավորումն ի նպաստ Պարթև Արշակունիների, անշուշտ, ժամանակավոր միայն լուծումն էր հայկական խնդրի, որ Հռոմը չէր կարող հարկավ բավարար համարել։

Տրայանոս կայսրը, որի ժամանակ Հռոմեական կայսրությունը խիստ ուժեղացել էր, հրաժարվեց իր նախորդների քաղաքականությունից և ուզեց, Կրասսոսի և Անտոնիոսի նման, նվաճել ու միացնել Հռոմին թե Հայաստանը և թե Պարթևստանը։ Հռոմի ագրեսիվ քաղաքականությունը, ինչպես հայտնի է, արդեն որոշ հաջողություններ էր ունեցել Արևմուտքում և 107 թվին, երկու արյունահեղ և հաղթական կռիվներից հետո, միացվել էր կայսրությանը Դանուբի հյուսիսակողմում գտնվող դակերի երկիրը։

Հոկտեմբերի 27-ին, 113 թվին[1], Տրայանոս կայսրը մեկնեց Հռոմից և ուղղվեց դեպի արևելք, մտադիր լինելով նվաճել ամբողջ Առաջավոր Ասիան։

Երբ Տրայանոսն Աթենք էր հասել՝ նրան ներկայացան Խոսրովի դեսպանները, խնդրեցին հաշտություն և, հայտնելով որ Աշխադարը չէր կարող հարմար լինել ո՛չ պարթևների և ո՛չ էլ հռոմայեցիների համար՝ առաջարկեցին, որ հայկական գահը տրվի նրա եղբորը՝ Պարթամասիրին։ Կայսրը մերժեց նրանց առաջարկը և չընդունեց նաև Խոսրովի ուղարկած նվերները։ Աթենքից Տրայանոսը Փոքր Ասիայի և Կիլիկիայի վրայով եկավ Ասորիք և ձմեռն անցկացրեց Անտիոք քաղաքում։

Այս բոլոր անցքերը և Տրայանոսի գալը Ասորիք մանրամասն նկարագրված են Կասսիուս Դիոնի հետևյալ վկայության մեջ.

> «Այնուհետև,—պատմում է Դիոնը,—նա [Տրայանոսը] ռազմերթի ելավ հայերի և պարթևների դեմ այն պատրվակով, որ Հայոց թագավորն իր թագը իրենից չէր ստացել, այլ Պարթևաց թագավորից. բայց, իրապես, նա տոգորված էր խիստ փառամոլությամբ։ Իր արշավանքի ժամանակ պարթևների դեմ՝ երբ հասել էր Տրայանոսը Աթենք՝ եկան այնտեղ նրա մոտ Խոսրովի ուղարկած դեսպանները, որոնք եկել էին խաղաղություն

[1] Տրայանոսի պարթևական պատերազմի ժամանակագրությունը դեռ մինչև այժմ համարվում է վիճելի։ Ըստ իս հավանական են ժամանակագրական տվյալները և դիտողությունները ո՛չ թե Մոմզենի, այլ Գուտշմիդի և Լոնգդենի. տե՛ս այդ մասին Լոնգդենի նկատողությունները Cambridge Ancient History աշխատության XI հատորի վերջում, էջ 858—859։

խնդրելու և բերել էին նվերներ։ Արդ՝ որովհետև Խոսրովին հայտնի էր, որ նա հարձակվելու է և պատրաստ է սպառնալիքներն իրագործել՝ խիստ վախեցել էր, և, իր հպարտությունը, չափավորելով՝ ուղարկել էր, որպեսզի աղաչեն նրան, որ պատերազմ չսկսե. Նաև խնդրում էր նրան, որ Հայաստանը տրվի Բակուրի Պարթամասիր որդուն, ու թախանձագին խնդրում էր նույնպես, որ սրան ուղարկվի թագը։ Նա ասում էր, որ Աշխադարին, որը հարմար չէր ո՛չ հռոմայեցիների և ո՛չ էլ պարթևների համար՝ ինքը գահընկեց էր արել։

Իսկ սա [Տրայանոսը] նրա նվերները չընդունեց և նրան ոչ որևէ բանավոր պատասխան տվեց, ոչ էլ նամակ ուղարկեց, այլ հայտնեց միայն, որ բարեկամությունը հայտնի է լինում գործերից և ոչ խոսքերից, ուստի և, երբ ինքը կգա Ասորիք՝ կանե այն ամենը, ինչ որ պատշաճ է։ Եվ այսպիսի խոհեր ունենալով՝ նա գնաց Ասիայի, Լյուկիայի և սահմանակից երկրների վրայով Սելևկիա»[1]։

Երբ Տրայանոսը գտնվում էր արդեն Ասորիքում՝ Պարթամասիրը ևս՝ իբրև Հայաստանի թագավոր՝ ուղարկել էր նրան նամակ։ Սակայն կայսրն այդ նամակին պատասխան չէր ուղարկել։ Այնուհետև Պարթամասիրը երկրորդ անգամ գրել էր նամակ, որի մեջ իրեն չէր անվանել Հայաստանի թագավոր[2]։ Ի պատասխան այս երկրորդ նամակի Պարթամասիրին առաջարկ էր արվել, որ նա ներկայանա Տրայանոսին անձամբ։

114 թվի գարնանը Տրայանոսը Ասորիքից շարժվեց դեպի Հայաստան, նպատակ ունենալով իրականացնելու իր աշխարհակալական ծրագիրները։ Անտիոքից նա եկավ նախ Մելիտենե քաղաքը (այժմյան Մալաթիա)։

Ինչպես հայտնի է, այստեղից դեպի Հայաստան գոյություն ունեին երկու հին ճանապարհներ, մեկը՝ Սատաղի վրայով դեպի Բարձր Հայք, իսկ մյուսը՝ այժմյան Խարբերդի դաշտի միջով դեպի Տիգրանակերտ ու Հարավային Հայաստան։ Տրայանոսը, որը որոշել էր մտնել Հայաստանի հյուսիսային ճանապարհով ու Սատաղի վրայով՝ աշխատեց ապահովել իր թիկունքը հարավակողմից և ուղարկեց Մելիտենեից մի զորաբանակ Խարբերդի կողմերը։ Այս զորամասը գրավեց այնտեղ առանց ճակատամարտի Բալուից հարավ-

---

[1] Տե՛ս Cass. Dio, LXVIII, 17, 1—3։ Համեմատե՛ Fronto, Ad Verum imper., ed. A. Mai, էջ 321։

[2] Նույնը, LXVIII, 19, 1։

արևմուտք գտնվող Արշամաշատ քաղաքը[1]։ Վերջինս ստրատեգիական և պաշտպանողական խիստ կարևոր դիրք էր Մելիտենեի թիկունքում և իշխում էր ռազմական մեծ ճանապարհի վրա, որը գալիս էր Տիգրանակերտից և Ամիդ-Դիարբեքիրից ու Տավրոսյան լեռների վրայով իջնում էր Խարբերդի դաշտը և ապա Մելիտենե։

Մելիտենեից Տրայանոսն առաջ շարժվեց դեպի Սատաղ, ըստ երևույթին, Melitena—Zimara—Satala հին ճանապարհով։ Սատաղում նրան ներկայացան կովկասյան երկրների թագավորները և իշխանները։ Տրայանոսը առատապես պարգևատրեց հենիոքների Անքիալոս թագավորին, հավանորեն, նրա մատուցած ծառայությունների համար հարևան լազերի դեմ տեղի ունեցած կռիվներում։

Ընդառաջ եկած մյուս թագավորները հավատարմության խոստում տվին կայսրին և հաստատվեցին իրենց թագավորություններում։ Ոմանք նրանցից, հատկապես, Իբերիայի, Կողքիսի, Բոսփորականների և Սավրոմատների պետերը, ստացան Տրայանոսից առանձին հրահանգներ[2]։

Այնուհետև Տրայանոսը և նրա զորաբանակը ճանապարհ ընկան և Պևտինգերյան քարտեզի Satala—Artaxata ճանապարհով մտան Հայաստան։ Այստեղ Էլեգեյայում (Էրզրումի մոտ գտնվող այժմյան Իլիջայում) Տրայանոսին ներկայացավ Հայաստանի Պարթամասիր թագավորը։ Կայսրը հանդիսավոր կերպով ընդունեց նրան իր զորքի ներկայությամբ։ Պարթամասիրը, Տրդատ Ա-ի օրինակին հետևելով, արքայական թագը հանեց գլխից և դրեց Տրայանոսի ոտքերի մոտ, հուսալով, որ իր թագը ետ կստանա և կճանաչվի Հայաստանի թագավոր։ Սակայն Տրայանոսը մերժեց նրան տալ Հայաստանի գահը և հայտնեց, որ ինքն արդեն վճռել է Հայաստանը դարձնել հռոմեական նահանգ։

Պարթամասիրի ընդունելությունն Էլեգեյայում, որ մանրամասն

---

[1] Տե՛ս *Cass. Dio*, LXVIII, 19, 2։ Դիոնն ունի Շամշատ, որ պետք է ուղղել, ինչպես մատնացույց է արել Գուտշմիդը (Geschichte Irans, էջ 141), Արշամաշատ։ Մոմզենը (Römische Geschichte, V, էջ 399, ծան. 1), Ասատուրյանը («Քաղաքական վերաբերություններ», էջ 202) և ուրիշները կարծում են, որ հռոմեական զորքերը գրավել էին Կոմագենում Շամշատը։ Այդ ենթադրությունը միանգամայն անհավանական է, որովհետև Շամշատ քաղաքը գտնվում էր այդ ժամանակ ո՛չ թե պարթևների, այլ հռոմայեցիների ձեռին։

[2] Տե՛ս *R. P. Longden*, The wars of Trajan, Cambridge Ancient History, XI, chapter VI, էջ 242—243։ Համեմատե՛ նաև *R. P. Longden*, Notes of the Parthian campaigns of Trajan, Journal of Roman Studies, XXI, 1931.

նկարագրված է Կասսիուս Դիոնի մոտ, ավելորդ չեմ համարում թարգմանաբար մեջ բերել մանրամասն կերպով։

«Հայաստանի մեջ Էլեգեյայում,—պատմում է Դիոնը,— Տրայանոսն ընդունեց Պարթամասիրին։ Կայսրը նստած էր բարձր տեղում պատնեշի ծայրին։ Պարթամասիրը, ողջունելով նրան, թագը գլխից հանեց, դրեց նրա ոտքերի մոտ և լուռ կանգնեց, սպասելով որ նա թագը կվերցնե։

Արդ՝ երբ զինվորները մեծ աղաղակ բարձրացրին և Տրայանոսին, իբր ինչ որ հաղթության տանելու համար որ անարյուն էր՝ կոչեցին իմպերատոր—որովհետև նրանք տեսան, որ Արշակունի թագավորը՝ Բակուրի որդին, Խոսրովի եղբորորդին՝ կայսեր առջև կանգնած է առանց թագի՝ որպես գերի—Պարթամասիրը սարսափեց և կարծեց, որ ինքը ծաղրուծանակի է ենթարկվում ու մատնվելու է կորստի։ Նա շուռ եկավ և ուզեց փախչել, բայց, տեսնելով, որ ինքը շրջապատված է՝ խնդրեց շնորհ անել, որ ամբոխի մեջ չխոսի։ Եվ այնուհետև, երբ նա ներս տարվեց վրանը՝ դարձյալ չհաջողվեց անել այն, ինչ որ ցանկանում էր։ Երբ նա բարկացած դուրս եկավ՝ Տրայանոսը նրան կանչեց դարձյալ նույն տեղը, բանակը, և, բարձրանալով նորից բեմ՝ հրամայեց, որ նա ասե բոլորի ներկայությամբ այն, ինչ որ կամենում է, որպեսզի մարդիկ, անգետ լինելով իրենց երկուսի մեն-մենակ խոսակցությանը՝ այդ մասին չտան զանազան հնարովի տեղեկություններ։

Երբ Պարթամասիրն այս լսեց՝ այլևս չլռեց, այլ խոսեց մեծ համարձակությամբ և ասաց, ի միջի այլոց, որ նա ո՛չ պատերազմի մեջ է հաղթվել, ո՛չ էլ գերի է վերցվել, այլ եկել է կամավոր կերպով, հավատացած լինելով, թե իրեն որևէ վիրավորանք չեն հասցնի և թե ինքը կստանա իր թագավորությունը, ինչպես որ Տրդատը ստացել էր Ներոնից։

Տրայանոսը նրա բոլոր ասածներին պատշաճ կերպով պատասխան տվեց և ասաց, որ Հայաստանը նա ոչ ոքին չէ տալու և որ այդ երկիրը պատկանում է հռոմայեցիներին ու ունենալու է հռոմեական կուսակալ։ Իսկ իրեն նա թույլ կտա, որ գնա՝ ուր որ կամենում է։

Տրայանոսը Պարթամասիրին և նրա հետ եկած պարթևներին բաց թողեց, տալով նրանց ձիավոր ուղեկիցներ, որպեսզի ոչ ոքի հետ չբանակցեն և որևէ թշնամություն չանեն։ Իսկ բոլոր հայերին, որ եկել էին Պարթամասիրի հետ՝ հրամայեց

մնալ իրենց երկրում, որովհետև նրանք այժմ իր հպատակներն էին»[1]։

Հայաստանից հեռանալիս, ինչպես վկայում են սկզբնաղբյուրները, Պարթամասիրն ուզեցել էր փախչել և ազատվել։ Բայց ընդհարման ժամանակ հռոմեական հեծելազորքի հետ բռնվել էր և Տրայանոսի հրամանով գլխատվել էր։ Ըստ այլ տեղեկությունների՝ նա սպանվել էր կռվում, որ տեղի էր ունեցել իրեն ուղեկցող հռոմեական և պարթևական զորագնդերի միջև[2]։

Անգլիական պատմագետ Ռոուլինսոնը, որը մանրամասն կերպով քննություն է առել Պարթամասիրի սպանության մասին բոլոր վկայությունները՝ կարծում է, որ Տրայանոսը, Պարթամասիրին համարելով վտանգավոր հակառակորդ՝ նրան առաջուց որոշած է եղել սպանել[3]։

Այսպիսով Հայաստանը դառավ 114 թվին հռոմեական նահանգ[4], և նրա մեջ հարմար վայրերում, ինչպես վկայում է Դիոնը[5], Տրայանոսը տեղավորեց պահապան զորքեր։ Հայաստանի միացումը կայսրության պատճառ դառավ, որ Կապադովկիան և Փոքր Հայքը անջատվեցին Գալատիայից և Մեծ Հայաստանի հետ միասին կազմեցին մեկ նահանգ։ Լոնգդենը մատնացույց է անում, որ միացյալ այս նահանգի կառավարումը հանձնվել էր Լ. Կատիլիուս Սևերոսին, որը կոնսուլ էր դեռևս 110 թվին[6]։

Տրայանոսի հաջողությունը Հայաստանում, որ ձեռք էր բերվել առանց կռվի, մեծ տպավորություն էր թողել Հռոմում։ 114 թվի նրա

---

1 Տե՛ս Cass. Dio, LXVIII, 19, 3—5. 20, 1—4.

2 Տե՛ս Fronto, Principia historiae, ed Naber, էջ 209. Suidas, γνῶσις և παραβαλών. Eutropius, VIII, 3, 1.

3 G. Rawlinson, The sixth great oriental monarchy, London, 1873, էջ 304—305. տե՛ս Ասատուրյան, Քաղաքական վերաբերութիւններ, էջ 204, ծան. 1։

4 Պատմական մի քանի երկերում (Ասատուրյան, Քաղաքական վերաբերութիւններ, էջ 204, Լեո, Հայոց պատմութիւն, Ա, 473 և ուրիշ.) մատնացույց է արվում, որ Տրայանոսը նվաճել էր Հայաստանի միայն մի մասը, իսկ հյուսիսային մասն ազատ էր մնացել։ Այս խնդիրը հարկավ դեռ կարոտ է հատուկ քննության։

5 Cass. Dio, LXVIII, 21, 1.

6 Տե՛ս Cambridge Ancient History, XI, chap. V և VI, էջ 220 և 243. Նաև H. Dessau, Inscriptiones latinae selectae, 1041 և 1338։ Ասատուրյանը («Քաղաքական վերաբերութիւններ», էջ 205), հիմնվելով այլ աղբյուրների (Corpus inscriptionum latinarum, Berlin, 1863, X, 8291) և գիտական հնագույն ուսումնասիրությունների վրա՝ ենթադրում է, որ Արմենիա նահանգի կուսակալ էր նշանակվել Գ. Ատիլիոս Յուլիանոս Կլավդիոս Ռուփինոսը։

այս հաղթանակի առթիվ հռոմեական ծերակույտի կարգադրությամբ կտրված են և պահպանվել են մինչև այժմ դրամներ, որոնց վրա մի կողմում դրոշմված է Տրայանոսի պատկերը, իսկ մյուս կողմում քանդակված են զանազան խորհրդանիշներ. օրինակ՝ ինքը՝ Տրայանոսը կանգնած նիզակը ձեռին Տիգրիս և Եփրատ գետերի մեջտեղում, իսկ նրա ոտքի տակ՝ կապված ու վայր ընկած մի կին, որ ներկայացնում է Հայաստանը։ Բացի այդ, հավերժացնելու համար Տրայանոսի հաղթանակը՝ Հռոմում կառուցել էին հատուկ մի կոթող, որի վրա քանդակված էին հռոմեական զորքը, ինքը՝ Տրայանոսը և նաև Պարթամասիրը մորուքով, որը կանգնած է Տրայանոսի առջև և զորքի դիմաց[1]։ Այս կոթողը, որ այժմ Կոստանդիանոս Մեծի հաղթական կամարի մի մասն է կազմում, կարելի է հիմա էլ տեսնել Հռոմում։

Հայաստանի նվաճումից հետո՝ Տրայանոսն արշավանքի ելավ պարթևների դեմ և Բարձր Հայքից իջավ Միջագետք։ Հռոմեական զորքի այս ճանապարհը, որ դեռևս լուսաբանված չէ, հավանական է ենթադրել էլեգեյայից խնուսի և Մանազկերտի վրայով դեպի Մշո դաշտը և այնտեղից Տիգրանակերտի վրայով դեպի Մծբին։

Հայաստանի հարավում, Կորդուքի Մանիսար իշխանը, որը Պարթամասիրի ողբերգական մահից ու Հայկական թագավորության վերացումից հետո տիրապետել էր Հայաստանի և Միջագետքի որոշ մասերին՝ անկարող էր, իհարկե, դիմադրություն ցույց տալ հռոմեական զորքերին, ուստի և Տրայանոսն անարգել կերպով գրավեց նրա ամբողջ երկիրը։

Տրայանոսի մեծ զորավարներից մեկը, Լուսիոս Կուիետոսը, ներխուժեց այստեղից Վանա լճի արևելյան կողմերը և նվաճեց այնտեղ Մարաստանի սահմանում ապրող մեդական մարդերի քըրդական ցեղը, որը հռոմեական աղբյուրներում սխալմամբ անվանված է Marcomedi (=Mardomedi)[2]։

Իր 114 թվի արշավանքի ընթացքում Տրայանոսը, առանց մեծ ընդդիմության հանդիպելու, հաղթական կերպով առաջ էր շարժվում, որովհետև Պարթևական թագավորության մեջ հենց այս ժամանակ խիստ սաստկացել էին ներքին երկպառակությունները։ Հռոմեական

---

[1] Տե՛ս Գաբրճյան Հ., Տիեզերական պատմություն, հատ. Բ, էջ 174։

[2] Տե՛ս *Eutropius*, VIII, 3, 1. *Rufus Festus*, 20, 2. Նաև *Markwart J.*, Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, Potsdam, 1919, էջ 24 և Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, Երևան, 1945, էջ 35—36։ Համեմատե՛ Նաև *Themistius*, Orat., ed. Dindorf, XVI, էջ 250 և Սուիդասի Բառգրքում ἀμφίβολοι:

զորքերը Տրայանոսի առաջնորդությամբ Կորդուքից իջան Միջագետք, որի մեծագույն մասը Պարթև Արշակունիների վասալ Ադիաբենի Մեբարսապես թագավորի երկիրն էր։ Այստեղ նրանք գրավեցին առանց կռվի Մծբին և Սինգարա քաղաքները և շարժվեցին դեպի Եդեսիա, որի Աբգար թագավորը նրանց ընդառաջ եկավ և, հպատակվելով Տրայանոսին՝ ճանաչվեց իբրև Օսրոյենի թագավոր։

Հռոմեական կայսրությանը միացվեցին 114 թվին Տիգրիս ու Եփրատ գետերի միջև գտնվող նվաճված շրջանները, որոնք վերածվեցին, ինչպես և Հայաստանը, հռոմեական նահանգի Մեսոպոտամիա կամ Միջագետք անունով։

Այս մեծ հաջողություններից հետո, 114 թվի վերջերը, Տրայանոսը վերադարձավ Անտիոք և ձմեռեց Ասորիքի այս կենտրոնավայրում։

115 թվի գարնան սկզբներին Տրայանոսը նորից եկավ Մծբին և ռազմական գործողությունները պարթևների դեմ վերսկսեց ավելի մեծ թափով։ Հռոմեական զորքերն անցան Կորդվաց լեռների հարավկողմում Տիգրիս գետը և գրավեցին ամբողջ Ադիաբենը, որը նույնպես հայտարարվեց հռոմեական նահանգ Ասսիրիա անունով։

Այնուհետև Տրայանոսն իր զորքերն առաջնորդեց Տիգրիսի հովտով դեպի հարավ և, մտնելով Բաբելոնիա, գրավեց պարթևների մայրաքաղաքը, Տիզբոնը։ Այստեղ հռոմեացիների ձեռքն ընկան Խոսրովի դուստրը և նրա ոսկի գահը, իսկ ինքը՝ Խոսրովը փախել էր հյուսիսարևելյան Հայաստան, որը դեռևս հաստատուն կերպով չէր միացված կայսրությանը։

Այնուհետև, 116 թվին, Տրայանոսը շարունակեց իր արշավանքը դեպի հարավ և նվաճեց ամբողջ Մեսենեն, հասնելով մինչև Խարաքս Սպասինու առևտրական մեծ քաղաքը, որը գտնվում էր Տիգրիսի գետաբերանում ու Պարսից ծոցի ափում։

Հռոմեական կայսրության ձեռքումն էր գտնվում այժմ միջազգային առևտրի ամբողջ հարավային գիծը, որով փոխադրվում էին Արևմուտք Հնդկաստանի թանկարժեք ապրանքները։ Տրայանոսը, անշուշտ, օրորվում էր արդեն երազներով, որ իրեն էր վիճակվել իրագործելու Հռոմի վաղեմի հույսերը և վերականգնելու Աղեքսանդր Մակեդոնացու մեծ աշխարհակալությունը։ Սակայն նրա ուրախությունը երկար չտևեց։

Իր առաջխաղացման ժամանակ լուրջ բախում թշնամու հետ Տրայանոսը գրեթե չէր ունեցել։ Գահակալության առթիվ խռովությունների պատճառով պարթևների դիմադրական կարողությունը անչափ ջլատված էր։ Սակայն այժմ, որովհետև արտաքին վտանգը

*մահ էր սպառնում Պարթևական թագավորությանը՝ իրար դեմ կռվող Արշակունիները ներքին պառակտումները դադարեցրին և իրենց զենքը դարձրին հռոմայեցիների դեմ։*

*Շուտով Տրայանոսի թիկունքում սկսվեցին ուժեղ ապստամբություններ և՛ Ադիաբենում, և՛ Միջագետքում, և՛ Հայաստանում։ Հռոմեական պահապան զորքերը շատ տեղերում կամ ջարդվեցին և կամ վտարվեցին։ Ապստամբության գլուխ էր կանգնել պարթևական թագի թեկնածուներից մեկը, Միհրդատ Չ-ը, որը Խոսրով թագավորի եղբայրն էր։ Սա վերագրավեց ամբողջ Միջագետքը և արշավեց մինչև Կոմագեն, սակայն այս արշավանքի ժամանակ ձիուց վայր ընկավ և մեռավ (116 թվին)։*

*Միհրդատ Չ-ին հաջորդեց իր որդին Սանատրուկը, որին օգնության հասավ Հայաստանից ուղարկված զորքը Խոսրովի որդու, Պարթամասպատի, առաջնորդությամբ*[1]*։ Այս երկու Արշակունիները կռվում էին հռոմայեցիների դեմ մեծ հաջողությամբ։ Տրայանոսը Բաբելոնիայից ուղարկեց սրանց դեմ Ապպիոս Մաքսիմոս և Լուսիոս Կուիետոս զորավարներին։ Սրանցից առաջինը չարաչար կերպով պարտվեց և ճակատամարտում սպանվեց։ Բայց Լուսիոսը, խոստանալով Պարթամասպատին պարթևական գահը, կարողացավ նրան իր կողմը գրավել, ուստի և Սանատրուկը, մենակ մնալով, հաղթվեց և փախչելիս սպանվեց։*

*Ապստամբությունն այնուհետև ճնշվեց դաժան կերպով, և հռոմայեցիները պաշարեցին և վերցրին Մծբինը, Եդեսիան և Տիգրիս գետի ափին գտնվող Սելևկիան, որոնք ապստամբության գլխավոր բներն էին։ Վերջին երկու քաղաքներն ավերվեցին ու այրվեցին։*

*Տրայանոսը համոզվեց սակայն, որ Պարթևական թագավորությունն անհնարին է վերացնել, և որոշեց հյուսիսային Միջագետքը և Հայաստանը պահել իբրև կայսրության կցված նոր նահանգներ, իսկ պարթևական մյուս երկրները դարձնել Հռոմի ենթակա վասալական թագավորություն։*

*Միջագետքի միացումը կայսրության ուներ տնտեսական մեծ*

---

[1] *Անգլիական պատմաբան Լոնգդենը (տե՛ս* Cambridge Ancient History, XI, *էջ 248), հիմնվելով Մաղաղասի ժամանակագրության խառնաշփոթ վկայությունների վրա* (Malalas, XI, *էջ 270—274, հրատ. Դինդորֆի), ենթադրում է, որ Պարթամասպատը որդին էր ո՛չ թե Խոսրովի, այլ Սանատրուկի, որը, նրա կարծիքով, հավանորեն, Հայոց թագավոր Պարթամասիրի եղբայրն էր։ Իսկ Գաթրճյանը (Տիեզ. պատմ., Բ, էջ 174) և Գարագաշյանը (Քննակ. պատմ., Բ, էջ 258) կարծում են, որ Պարթամասպատը եղբայրն էր հայոց Աշխադար թագավորի։ Մեջբերված այս կռահումները համարվում են անհավանական։*

կարևորություն։ Հռոմեական մաքսային սահմաններն Ասորիքում, որ արաբական անապատների մոտ էին՝ վերահսկողության տեսակետից շատ անհարմար էին, ուստի և սահմանների փոխադրումը Եփրատ ու Տիգրիս գետերի կողմերը Հռոմի համար խիստ շահավետ էր, որովհետև Ասորիքի առևտրական մեծ կենտրոնների միջազգային հաղորդակցությունների ամբողջովին կլինեին նրա հսկողության տակ։ Ուշագրավ է այդ տեսակետից, որ Տրայանոսն առանձին կարևորություն էր տվել այս հարցին և կարգադրել էր ապրանքների փոխադրության մաքսերի գանձումը կազմակերպել Եփրատ ու Տիգրիս գետերի մոտ[1]։

116 թվի վերջերին կամ 117 թվի սկզբներին Տիզբոնի մեջ, հռոմեական և պարթևական զորքերի ներկայությամբ, Տրայանոսը Պարթևաց թագավոր պսակեց Խոսրովի Պարթամասպատ որդուն։ Այնուհետև նա վերադարձավ Միջագետք և պաշարեց ապստամբած Հատրա քաղաքը, բայց չկարողացավ առնել և գնաց Ասորիք։ Նա մտադիր էր հետևյալ տարին վերսկսել կռիվը, սակայն ծանր հիվանդացավ և, Հռոմ վերադառնալիս՝ վախճանվեց Կիլիկիայի Սելինում քաղաքում[2] 117 թվի օգոստոսի 7-ին կամ 8-ին։

Տրայանոսի մահից հետո դրությունն Արևելքում սկսեց փոխվել։ Հռոմայեցիների հեռանալուց հետո հարավային Միջագետքից՝ Պարթամասպատը, Հռոմի դրածոն, չկարողացավ իր հորը դիմադրել, և Խոսրովը հեշտությամբ տեր դառավ իր գահին և վերականգնեց իր թագավորության նախկին անկախությունը։

Պատմագետներից շատերը ենթադրում են, որ Պարթամասպատն իր հորից, Խոսրովից, 116 թվին ստացել էր Հայաստանի գահը[3]։ Սակայն այդ կռահումը, ինչպես այժմ պարզված է, ավելի քան անհավանական է[4]։

Կասսիուս Դիոնի վերոհիշյալ հատվածից, որը, ինչպես տեսանք, միանգամայն ճիշտ մեկնել է Boissevain-ը, պարզ երևում է, որ 116 թվին՝ Միջագետքում, Ասորեստանում ու Հայաստանում ծագած ապստամբությունների ժամանակ՝ Հայաստանը վերագրված է եղել Սանատրուկի որդին՝ Վաղարշը։

---

[1] *Fronto*, Princ. hist., էջ 209 (հրատ. Naber-ի), տե՛ս նաև *Mommsen*, Römische Geschichte, V, էջ 402։

[2] *Cass. Dio*, LXVIII, 33, 3.

[3] Տե՛ս *Халатьянц*, Очерк истории Армении, М., 1910, էջ 304, Բասմաջյան Կ. Յ., *Իսկական պատմութիւն Հայոց*, Կ. Պոլիս, 1914, էջ 192 և ուրիշ։

[4] Տե՛ս Ասողիկյան, *Քաղաքական վերաբերութիւններ*, էջ 209, ծան. 1։

«Որովհետև Վաղարշը, Սանատրուկի որդին,—վկայում է Դիոնը,—Սևերոսի բանակի դեմ մարտի պատրաստվելիս՝ ընդհարումից առաջ զինադադար էր խնդրել և կնքել՝ (Տրայանոս կայսրը) նրա մոտ պատգամավորներ ուղարկեց և Հայաստանի մեկ մասը շնորհեց նրան հաշտության պատճառով»[1]։

Այս վկայության մեջ մատնանշված Սևերոսը, ինչպես դժվար չէ որոշել, վերոհիշյալ Լ. Կատիլիուս Սևերոսն է, որը 114 թվին կառավարիչ էր նշանակված Կապադովկիայի, Փոքր Հայքի և Մեծ Հայաստանի։ Բնական է, իհարկե, որ Հայաստանում բռնկված ապստամբությունը նա պետք է ճնշեր։

Դիոնի՝ վերև բերված հատվածի ուղիղ մեկնությունը տվել են Մարկվարտը և Ասատուրյանը։ Սակայն, թվում է ինձ, որ նրանց բացատրությունների մեջ մի քանի կետեր վիճելի և կասկածելի են։ Մենք տեսանք վերև, որ Տրայանոսի ժամանակ, 116 թվի ապստամբությունների ճնշումից հետո, հյուսիսային Միջագետքը և Հայաստանը մնացել էին իբրև հռոմեական նահանգներ։ Ըստ այսմ հասկանալի է դառնում, թե ինչու Վաղարշին տրվեց միայն Հայաստանի մի մասը։

Այդ մի մասը, հավանորեն, ո՛չ թե «Ծոփաց և Կորդվաց նախկին թագավորությունները» էին, ինչպես կարծում է Մարկվարտը[2], այլ, ինչպես հավանական է ենթադրել, հյուսիս-արևելյան Հայաստանն էր, որին հռոմայեցիները չէին կարողացել հաստատուն կերպով տիրապետել։ Դժվար կլինի, անշուշտ, կարծել, որ Տրայանոսը կարող էր զիջել Վաղարշին «Արմենիա» և «Մեսոպոտամիա» նահանգների միջև գտնվող և ստրատեգիական կարևորություն ունեցող Կորդուքն ու Ծոփքը։

Անհավանական է նաև Ասատուրյանի կարծիքը[3], որը ենթադրում է, որ Վաղարշի մոտ պատգամավորներ էր ուղարկել ու նրան շնորհել էր Հայաստանի մի մասը Տրայանոսի հաջորդող Հադրիանոս կայսրը։ Այդ ճիշտ լինել չէ կարող, որովհետև, ինչպես ներքև կտեսնենք, Հադրիանոսը հրաժարվել էր Տրայանոսի գրաված երկրներից և հայերին վերադարձրել էր ո՛չ թե Հայաստանի միայն մի մասը, այլ ամբողջ Հայաստանը։

---

[1] *Cass. Dio*, LXXV, 9, 6.

[2] Տե՛ս «էջ մը Արշակունեաց հնագոյն պատմութենէն», «Հանդէս Ամսօրեայ», 1906, № 2, էջ 33։

[3] «Քաղաքական վերաբերութիւններ», էջ 211—212։

Տրայանոսի աշխարհակալական նոր քաղաքականությունը, որ կրկնողությունն էր Կրասսոսի և Անտոնիոսի ագրեսիվ ու նվաճողական արևելյան քաղաքականության, չտվեց դրական հետևանքներ։ Հռոմեական 114—117 թվերի հաղթական արշավանքները, փաստորեն, ուժերի ու նյութական միջոցների զուր ու անօգուտ վատնումն էին։ Հադրիանոսի ժամանակ, ինչպես կտեսնենք, Հռոմեական կայսրության սահմանն արևելքում նորից դարավ, ինչպես և առաջ, Եփրատ գետը։

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ՎԱՂԱՐՇ Ա, ՍՈՀԵՄՈՍ, ԲԱԿՈՒՐ ԵՎ ՀՌՈՄԵԱ-ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՄԱՐԿՈՍ ԱՎՐԵԼԻՈՍԻ ԺԱՄԱՆԱԿ

**1. Քաղաքական ընդհանուր դրությունը Հադրիանոսի ժամանակ։— 2. Պատմագետների սխալ կարծիքը Պարթամասպատի Հայոց թագավոր կարգվելու մասին։— 3. Հայաստանը նորից Հռոմի ենթակա վասալական թագավորություն։— 4. Երկարատև խաղաղությունն Արևելքում։— 5. Վաղարշ Ա.— Վաղարշապատ քաղաքի հիմնումը.— ալանների արշավանքը։— 6. Դրամներ Հայաստանում նոր թագավորի նշանակման մասին.— Սոհեմոս։— 7. Մարկվարտի կարծիքը Ծոփքի և Կորդուքի անջատման մասին Հայաստանից։— 8. Պարթևների դժգոհությունը.— նրանց արշավանքը Հայաստան և Բակուրի կարճատև թագավորությունը Հայաստանում։— 9. Հայկական պատերազմը և Արտաշատի առումը։— 10. Պարթևական պատերազմը և Սելևկիայի ու Տիզբոնի կործանումը։— 11. Սոհեմոսի վերստին թագավորությունը Հայաստանում.— ապստամբության ճնշումը։— 12. Հաղթությունների առթիվ Ավրելիոսի կոթողը և հռոմեական դրամները։— 13. Բակուրի արձանագրությունը։— 14. Հիշողություններ Սոհեմոսի մասին Խորենացու Պատմության մեջ։— 15. 175 և 185 թվերի լատիներեն արձանագրությունները։**

*Հռոմեական պատմիչները, Եվտրոպիոսը և Ֆեստոս Ռուփոսը, մատնանշում են, որ Հադրիանոսը, նախանձելով Տրայանոսի փառքին՝ հրամայեց, որ հռոմեական զորքերը ետ նահանջեն, և դատարկելով Հայաստանը, Միջագետքը և Ասորեստանը՝ հռոմայեցիների ու պարթևների սահմանը նորից դարձրեց Եփրատ գետը[1]։ Իրապես, Հադրիանոսի քաղաքական գործունեության անաչառ քննությունը ցույց է տալիս, որ նա իր նախորդի գրաված երկրներից հրաժարվել էր ո՛չ թե նախանձից դրդված, այլ, որովհետև գիտակցում էր, որ այդ երկրները, որ թշնամաբար էին տրամադրված դեպի հռոմայեցիները, միացնելը կայսրության նպատակահարմար չէր՝—*

[1] Տե՛ս *Eutropius*, Breviarium, VIII, 6, *Festus Rufus*, Breviarium XX.

անհրաժեշտ էր այնտեղ պահապան ուժեղ զորամասեր պահել ու մեծ ծախսեր անել, որ ձեռնտու չէին։

Տրայանոսի հաղթությունները ցույց տվին Պարթևական թագավորության թուլությունը և Հռոմի համար ունեցան այն դրական հետևանքը, որ բարձրացրին նրա վարկը կայսրության սահմանակից արևելյան ժողովուրդների ու վասալ տերությունների աչքում։ Վերջիններիս կախումը Հռոմից այնուհետև ավելի մեծ եղավ ու իրական, քան առաջ։

Արդեն իր իշխանության առաջին տարիներում Հադրիանոսը (117—138) տվեց Պարթամասպատին, որը գահավեժ էր արվել, Օսրոյեն-Եդեսիայի թագավորությունը։ Գուտշմիդի կարծիքով, այս Պարթամասպատին է վերաբերում Սպարտիանոսի հաղորդած հետևյալ տեղեկությունը.

«Պարթամասպատին [բնագրում սխալմամբ՝ Part<h> amasirin],—վկայում է Սպարտիանոսը[1],—որին Տրայանոսը պարթևների թագավոր էր արել, որովհետև նա, ինչպես պարզըվել էր, պարթևների մոտ մեծ համարում չուներ՝ [Հադրիանոսը] տվել էր իբրև թագավոր մոտակա ժողովուրդներին»։

Պետք է ասել, որ պատմագետներից շատերը, հիմնվելով Սպարտիանոսի այս վկայության վրա՝ թյուրիմացաբար ենթադրել են, որ Պարթամասպատը նշանակված է եղել Հայաստանի թագավոր և Հայաստանում թագավորել է 117 թվից մինչև 135 կամ 140 թիվը[2]։ Իսկ, իրապես, կարելի է միանգամայն հավանական համարել, որ Հադրիանոսը համայն Հայաստանի թագավոր էր ճանաչել Վաղարշին (117—140/3), որը, ինչպես տեսանք, դեռևս 116 թվին ստացել էր Տրայանոսից Հայաստանի մի մասը։

Որ Հադրիանոսի ժամանակ Հայաստանն առաջվա նման դարձել էր Հռոմի հպատակ վասալական թագավորություն՝ այդ երևում է Սպարտիանոսի հետևյալ վկայությունից.

«[Հադրիանոսը] թույլ տվեց, որ հայերն ունենան թագավոր, մինչդեռ Տրայանոսի ժամանակ նրանք ունեցել էին տեղակալ (լեգատ, legatus)»[3]։

---

[1] Scriptores historiae Augustae, ed. E. Hohl, vol. I, Lipsiae, 1927, էջ 7 (Hadr. V, 4).

[2] Տե՛ս Գաբրճյան, Տիեզ. պատմ., Բ, էջ 174. Գարագաշյան, Քննակ. պատմ. Հայոց, Բ, էջ 259. Դոլենս-Խաչ, Պատմ. հին հայերի, թարգմ. Քաջբերունու, Գ, էջ 181. *Kévork Aslan*, Études historiques sur le peuple arménien, Paris, 1909, էջ 128. *Sandalgian*, Histoire documentaire de l'Arménie, II, էջ 549—551 և ուրիշ.։

[3] Scriptores historiae Augustae, vol. I, էջ 23 (Hadr. XXI, 11)։

Նույն այս ժամանակ, ինչպես հաղորդում են հունա-հռոմեական աղբյուրները, վասալական կախում ունեին Հռոմից նաև Ալբանիայի ու Իբերիայի թագավորները և բազմաթիվ ցեղերի իշխանավորները Սև ծովի հարավ-արևելյան ափերի կողմերում[1]։

Որքան մեծ է եղել Հայաստանի կախումը Հռոմից՝ այդ երևում է Փլավիոս Արրիանոսի ուշագրավ մի հաղորդումից, որը վկայում է, որ Կապադովկիայի կուսակալի զորքի մեջ եղել է Հադրիանոսի ժամանակ հատուկ հայ զորամաս[2]։

Հադրիանոսի կայսրության սկզբնական շրջանում պարթևների հետ հարաբերությունները սկսել էին սրվել, որովհետև Պարթամասպատը, որպես Օսրոյեն-Եդեսիայի թագավոր, պարթևական գահի համար վտանգավոր թեկնածու էր և ախոյան։ Սակայն 123 թվին կայսեր հետ բանակցությամբ խաղաղությունն ապահովվեց։ Պարթամասպատը հեռացվեց իր նոր թագավորությունից ևս և Օսրոյեն-Եդեսիայի գահը տրվեց նախկին դինաստիային։

130 թվին Հադրիանոսը ետ դարձրեց Խոսրովին նրա գերի ընկած աղջկանը, և այսպիսով խաղաղությունը պահպանվեց Արևելքում ինչպես Հադրիանոսի (117—138), նույնպես և Անտոնինոս Պիոսի (138—161) ժամանակ։ Երկարատև խաղաղությունը, որ հաստատվել էր Արևելքում թե Ներոնի ու նրա հաջորդների և թե երկու այս կայսրերի ժամանակ, մեծապես նպաստավոր եղավ Մերձավոր Արևելքի տնտեսական ու կուլտուրական զարգացման և, մանավանդ, միջազգային առևտրի բարգավաճման համար։

Սանատրուկի որդին, Վաղարշ Ա-ը, թագավորեց Հայաստանում մոտ քսանհինգ տարի (117—140/3)։ Նրա թագավորության ընթացքում տեղի ունեցած մի քանի կարևոր անցքեր հիշատակված են հունա-հռոմեական աղբյուրներում և Մովսես Խորենացու պատմական երկում։

Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին ռուսերեն իմ աշխատության մեջ մանրամասն բացատրված է[3], որ հենց այս Վաղարշ Ա թագավորն է հիմնադիրը Վաղարշապատ քաղաքի[4], որը հին աղբյուրների մեջ անվանված է նաև «Նոր քաղաք (Καινὴ πολίς)։

---

[1] Տե՛ս *Cass. Dio*, LXVIII, 18, 3. *Arriani*, Perip. Pont., 15 և ն.։

[2] Տե՛ս *Arriani*, Alan., 29.

[3] Տե՛ս *Я. А. Манандян*, О торговле и городах Армении, Ереван, 1930, էջ 91—94։

[4] Տե՛ս *Markwart*, Untersuchungen zur Geschichte von Eran, Philologus, Supplementband, X, erstes Heft, էջ 227. Ասուրյան, Քաղաքական վերաբերությունները, էջ 214։

Ուշագրավ տեղեկություն տալիս է մեզ այդ մասին Խորենացին իր հետևյալ վկայության մեջ.

«Սա [Վաղարշը],—պատմում է Խորենացին,—պարսպով պատեց նաև Վարդգեսի հզոր ավանը, որի մասին առասպելներն ասում են.

«Գաղթական գնաց Վարդգես մանուկը
Տուհաց գավառից, Քասաղ գետի մոտ,
Եկավ ու նստավ Շրեշ բլրի մոտ,
Արտիմեդ քաղքի, Քասաղ գետի մոտ,
Երվանդ արքայի դուռը թակելու»։

Այս Երվանդը առաջինն է, Սակավակյացը, Հայկազուններից, որի քրոջը Վարդգեսը կին առնելով՝ այս ավանը շինեց, որտեղ և Արշակունի Տիգրան Միջինը նստեցրեց հրեա գերիների կեսը, որ և վաճառաշատ քաղաքագյուղ դարձավ։ Այժմ Վաղարշը պատեց նրան պարսպով և ամուր պատվարով և կոչեց Վաղարշապատ, որ (կոչվում է նաև) Նոր քաղաք»[1]։

[«Սա պատեաց պարսպաւ և զհզօր աւանն Վարդգէսի, որ ի վերայ Քասաղ գետոյ. զորմէ յառասպելսն ասեն. «Հատուած գնացեալ Վարդգէս մանուկն, ի Տուհաց գաւառէն, զՔասաղ գետով, եկեալ նստաւ զՇրէշ բլրով, զԱրտիմէդ քաղաքաւ, զՔասաղ գետով, կռել կոփել զդուռնն Երուանդայ արքայի»։ Այս Երուանդ՝ առաջինն է, Սակաւակեացն, որ ի Հայկազանց, զորոյ զքոյրն կին առեալ Վարդգէսի՝ շինեաց զաւանս զայս. յորում և Տիգրան Միջին յԱրշակունեաց նստոյց զհասարակ առաջնոյ գերութեանն հրէից, որ եղև քաղաքագիւղ վաճառօք։ Այժմ այս Վաղարշ պատեաց պարսպաւ և հզօր պատուարաւ, և անուանեաց Վաղարշապատ, որ և Նոր քաղաք»][2]։

Պատմական Վաղարշապատի հիմնման ժամանակի մասին բոլորովին այլ կարծիք է հայտնել Մոմզենը։ Հիմնվելով Կասսիուս Դիոնի մի հատվածի վրա, որը պահպանվել է Սուիդասի Բառգրքում (Μαρτιος բառի տակ)՝ Կայնեպոլիս—Նոր քաղաքի հիմնումը նա վերագրել է հռոմեական զորավար Ստատիոս Պրիսկոսին, որը 163 թվին, պատերազմի ժամանակ պարթևների ու հայերի դեմ, գրավել էր և կործանել Արտաշատ քաղաքը[3]։ Մոմզենի այս կարծի-

---

[1] Տե՛ս Մովսես Խորենացի, Հայոց պատմություն, թարգմ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1940, էջ 134 (II, Կե)։

[2] Մովսես Խորենացի, Տփղիս, 1913 էջ 199—200 (II, Կե)։

[3] Mommsen, Römische Geschichte, V, էջ 407, ծան. 1։

քը, որ ընդունելի է համարվել, մեջ է բերվում նաև բազմաթիվ հայագիտական երկերում[1]։

Ընդհանուր ընդունված այդ կարծիքը, ինչպես այժմ պարզված է, ճիշտ չէ։ Աստուրյանը շատ ուղիղ մատնանշել է, որ Կասսիուս Դիոնի հատվածում, որի վրա հիմնվել է Մոմզենը, ոչինչ չի ասված Ստատիոս Պրիսկոսի մասնակցության մասին Կայնեպոլիսի հիմնարկմանը[2]։ Այդ հատվածում, ինչպես դժվար չէ համոզվել, հիշված է միայն, որ Մարտիոս Վերոսը, հայերի ապստամբությունը ճնշելուց հետո, Կայնեպոլիսը հայտարարել էր իբրև Հայաստանի մայրաքաղաք։

Վաղարշ Ա-ի թագավորության ժամանակ, 134 թվին, ինչպես հաղորդում են Կասսիուս Դիոնը և Փլավիոս Արրիանոսը[3], որն այդ ժամանակ Կապադովկիայի կուսակալ էր, ալանները նորից ներխուժեցին հարավային երկրները Իբերիայի Փարասման Բ թագավորի աջակցությամբ։ Նրանք ավերեցին Հայաստանը, Աղվանքը և Ատրպատականը ու Հայաստանի վրայով անցան նաև Կապադովկիայի կողմերը։ Բայց, ընծաներ ստանալով Վաղարշ Ա-ից[4] և տեղեկություն ստանալով, որ Կապադովկիայի կուսակալ Փլավիոս Արրիանոսը իրենց դեմ զորական մեծ ուժեր է ռազմի պատրաստել, ետ քաշվեցին Հյուսիսային Կովկաս։

Վաղարշ Ա-ը դեսպաններ ուղարկեց Հռոմ և գանգատվեց Փարասման Բ-ի դեմ, որն անձամբ Հռոմ եկավ և ո՛չ միայն կարողացավ կայսեր բարկությունը մեղմացնել, այլև մեծարվեց և ստացավ մեծ նվերներ ու նույնիսկ նոր երկրամասեր[5]։

Վաղարշ Ա-ը թագավորել է Հայաստանում մինչև 140—143 թթ.։ Թեև այդ մասին հունա-հռոմեական աղբյուրները տեղեկություններ չունեն, սակայն այդ պարզորոշ հայտնի է, որովհետև Հայաստանում 140—143 թվերին նոր թագավոր նշանակվելու մասին պահ-

---

1 Տե՛ս *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 311. *Sandalgian*, Histoire documentaire de l'Arménie, II, էջ 558. *Tournebize*, Histoire politique et réligieuse de l'Arménie, էջ 411. *Hübschmann*, Die altarmenischen Ortsnamen և ուրիշ.։

2 Աստուրյան, *Քաղաքական վերաբերություններ*, էջ 214, ծան. 1։

3 Տե՛ս *Cass. Dio*, LXIX, 15, 1—2. *Arrianus*, Alan. (Scripta minora)։

4 Պատմագետներից շատերը ենթադրում են, որ Դիոնի հիշատակած Վաղարշը պարթևների թագավոր Վաղարշ Բ-ն է (130—148), սակայն Գուտշմիդը մատնանշում է, որ այդ Վաղարշը Հայաստանի Վաղարշ թագավորն էր. տե՛ս *Gutschmid*, Geschichte Irans, էջ 147։

5 Տե՛ս *Cass. Dio*, LXIX, 15, 3. Scriptores historiae Augustae, Vita Hadriani, XIII, 9. XVII, 11—12. Anton. Pius, IX. 6.

պանվել են այդ թվականների միջոցում կտրված դրամներ, որոնց մի կողմում դրոշմված է Անտոնինոս Պիոսի գլուխը, որի շուրջը գրված է «Անտոնինոս կոնսուլ երրորդ անգամ Օգոստոս» (Antonius Cos. III. Augustus), իսկ մյուս կողմում՝ կայսերական վերարկու հագած Պիոս կայսրը պսակ է դնում Հայոց թագավորի գլխին, որը կրում է հռոմեական տարազ, իսկ շուրջը գրված է՝ «տրվեց թագավոր հայերին հրամանով Ծերակույտին» (Rex Armeniis datus S. C.)[1]։

Պատմագետներից ոմանք կարծում են, որ Անտոնինոս Պիոսը (138—161) նոր թագավոր էր տվել Հայաստանին նախորդ թագավորի մահվան պատճառով[2]։ Սակայն այլ կարծիք է հայտնել այս խնդրի մասին Ասատուրյանը։ Համաձայն նրա ենթադրության՝ դեպի Հայաստանի թագավոր Վաղարշ Ա-ը Հադրիանոսի հաջորդ Անտոնինոս Պիոսի վերաբերմունքը եղել է թշնամական։ Ասատուրյանը կարծում է, որ Վաղարշ Ա-ի դեմ Պիոսին կարող էր գրգռած լինել Հռոմի մոտ բարեկամ Իբերիայի թագավոր Փարսաման Բ-ը։ Նրա կարծիքով, 140—143 թվերին Վաղարշ Ա-ը դեռևս վախճանված չէր, այլ նրան մեզ անհայտ պատճառով գահընկեց էր արել Անտոնինոս Պիոսը[3]։

Ըստ իս՝ թեև Ասատուրյանի այս կռահումները հնարավոր են, բայց չեն կարող հաստատուն համարվել, մինչև որ չպացուցվեն նոր ու համոզիչ փաստերով։

Վաղարշ Ա-ին, հավանորեն, հաջորդել էր Սոհեմոսը (140/3—161), որ Եմեսայի (այժմ Հոմս) իշխանական տոհմից էր և, ըստ երևույթին, իր երակների մեջ ուներ Արշակունյաց արյուն և ազգական էր նաև Կոմագենեի թագավորների, որոնք իրենց վերագրում էին Աքեմենյան ծագում։ Բայց նա միևնույն ժամանակ հռոմեական հպատակ էր և հռոմեական ծերակույտի անդամ։

Սոհեմոսի մասին խիստ կարևոր մի վկայություն պահպանված է Փոտիոսի Bibliotheca աշխատության մեջ, ուր նա, խոսելով Յամբղիկոսի Բաբելոնականք վեպի մասին, նրան հիշատակում է հետևյալ հատվածում.

«Իր մասին մատենագիրը ասում է, որ բաբելոնացի էր... և ծաղկում էր Աքեմենյան Արշակունյան Սոհեմոսի ժամանակ,

---

1 Տե՛ս Գաբրճյան, Տիեզերական պատմություն, Բ, էջ 174, ծան. 6. Գարագաշյան, Քննական պատմություն Հայոց, Բ, էջ 259—260 և ուրիշները։

2 Տե՛ս Sandalgian, Histoire documentaire, էջ 551. Հ. Տաշյան, Արշակունի դրամներ, Վիեննա, 1919, էջ 126 և ուրիշները։

3 Տե՛ս Ասատուրյան, Քաղաքական վերաբերություններ, էջ 214։

*որը թագավոր էր և հաջորդել էր իր նախնիքներին, որոնք նույնպես եղել էին թագավորներ։ Բայց նա նաև Հռոմի ծերակույտի անդամ եղավ ու նաև հյուպատոս և հետո կրկին անգամ դառավ թագավոր Մեծ Հայաստանի։ Արդ՝ ինքը [Յամբլիքոսը] ծաղկում էր, ինչպես ասում է նա, հենց սրա օրով*[1]*։ Իսկ Հռոմայեցոց թագավորությունը ժառանգեց Անտոնինոսը»*[2]*։*

*Պատմագիտական նորագույն ուսումնասիրություններում, օրինակ՝ Խալաթյանցի, Մարկվարտի և Աստուրյանի երկերում՝ Յամբլիքոսի այս վկայությունը մեկնվում է այն իմաստով, որ Սոհեմոսը թագավոր էր դրվել Հայաստանում երկու անգամ. առաջին անգամ՝ Անտոնինոս Պիոսի ձեռքով 140—143 թվականների ժամանակամիջոցում, իսկ երկրորդ անգամ՝ Մարկոս Ավրելիոս Անտոնինոսի կարգադրությամբ 164 թվին*[3]*։*

*Մարկվարտը կարծում է, որ Տրայանոսից հետո, երբ Մեծ Հայաստանի գահը տրվել էր Վաղարշ Ա-ին՝ Հադրիանոսը քաղաքականապես անջատել էր Մեծ Հայաստանից Ծոփքն ու Կորդուքը և նրանց իշխանությունը հանձնել էր վերոհիշյալ Սոհեմոսին (117 թվին)։ Բայց հետո, երբ այս Սոհեմոսը կարգվել էր Մեծ Հայաստանի թագավոր (140/3 թ.)՝ այդ երկրները հռոմեական վարչության տակ էին առնվել և միացվել էին Կապադովկիային*[4]*։*

*Իմ կարծիքով, Մարկվարտի այս ենթադրությունները չհիմնավորված կռահումներ են, որ չեն հաստատվում փաստական վկայություններով։*

---

[1] **Մոմզենը** (Römische Geschichte, V, *էջ 407, ծան. 2) և* **Մարկվարտը** *(«էջ մը հայ Արշակունեաց հնագոյն պատմութենէն», ՀԱ., 1906, № 2, էջ 37)։ Յամբլիքոսի այս խոսքերից եզրակացնում են, որ նա իր վեպը գրել էր Սոհեմոսի թագավորության ժամանակ Արտաշատում կամ Վաղարշապատում։*

[2] ***Տե՛ս Sandalgian***, Histoire documentaire, ***էջ 552 և* Մարկվարտ, *ՀԱ., № 2, էջ 37։ Համեմատե՛*** Photii Bibliotheca, 94.

[3] ***Տե՛ս Халатьянц***, Очерк истории Армении, ***էջ 309 և 311. Markwart***, Untersuchungen zur Geschichte von Eran, II, Leipzig, 1905, ***էջ 222.* Աստուրյան,** *Քաղաքական վերաբերութիւններ, էջ 210 և 215 և ուրիշները։ Գաթրճյանը (Տիեզ. պատմ., Բ, էջ 175), Գարագաշյանը (Քննակ. պատմ., Բ, էջ 159), Սանտալճյանը* (Histoire documentaire, *էջ 552) և ուրիշները, Յամբլիքոսի վկայության սխալ թարգմանության պատճառով (փխ. «Աքեմենյան Արշակունյան Սոհեմոսի ժամանակ»՝ «Արշակունի Աքեմենիդեսի որդու՝ Սոհեմոսի ժամանակ»), Վաղարշ Ա-ի հաջորդ թյուրիմացաբար համարում են Աքեմենիդեսին, ենթադրելով, որ նա Սոհեմոսի հայրն էր և թագավորել էր Հայաստանում 140 թվից մինչև 159-ը կամ 162 թիվը։*

[4] *Տե՛ս «էջ մը հայ Արշակունեաց հնագոյն պատմութենէն», «Հանդէս Ամսօրեայ», 1906, թ. 2, էջ 35—36։*

Հայաստանի թագավորության հանձնումը Սոհեմոսին, որը Պարթև Արշակունիների տոհմից չէր և որը թագավոր էր կարգվել առանց արքայից արքա Վաղարշ Բ-ի հավանության, չէր կարող, իհարկե, հանդուրժելի լինել պարթևներին։ Նրանք պատրաստվում էին պատերազմ սկսելու և գրավելու Հայաստանը, սակայն Անտոնինոս Պիոսը, ինչպես հաղորդում է Յուլիոս Կապիտոլինուսը, կարողացավ սոսկ նամակներով ետ կանգնեցնել նրանց այդ մտադրությունից[1]։

Դրությունը նորից սրվեց Վաղարշ Բ-ի հաջորդ Վաղարշ Գ-ի (148—191) ժամանակ։ Սրա ավելի քան քառասուն տարվա իշխանության ընթացքում ներքին խռովությունները Պարթևների երկրում բոլորովին դադարել էին և Պարթևական թագավորությունը կարող էր նրա ժամանակ իր ոտնահարված իրավունքները պաշտպանել ավելի վճռականորեն, քան առաջ։

Վաղարշ Գ-ը արդեն 154/5 թվին ուզում էր արշավել Հայաստան, բայց այս անգամ էլ, պատերազմը դեռ չսկսված, խաղաղությունը պահպանվեց շնորհիվ Անտոնինոս Պիոսի ջանքերին, որը Եփրատ գետի մոտ անձամբ տեսակցություն ունեցավ Պարթևաց թագավորի հետ[2]։

Շուտով սակայն, Անտոնինոս Պիոսի մահից (+161) անմիջապես հետո, պարթևական զորքերը Վաղարշ Գ-ի հրամանով և Խոսրով զորավարի առաջնորդությամբ մտան Հայաստան և Սոհեմոսի փոխարեն, որը փախավ Հռոմ, թագավոր դրին Արշակունի Բակուրին (161—163)։

Կապադովկիայի կուսակալ Էլիոս Սեվերիանոսը, որն օգնության էր եկել, հասավ Էլեգյա (այժմյան Իլիջա, Էրզրումի մոտ) և այստեղ, Եփրատ գետի ակունքների մոտ, ծանր պարտություն կրեց Վաղարշ Գ-ի Խոսրով զորավարից։ Հռոմեական զորքն իսպառ ջնջվեց և ինքը Սեվերիանոսը անձնասպան եղավ, ընկնելով իր սրի վրա[3] (161 թ.)։

Այնուհետև պարթևներն անցան Եփրատ գետը և նեղ-խուժեցին Կապադովկիա և Ասորիք, որի Ատտիդիոս Կոռնելիանոս զորավարը նույնպես չարաչար պարտվեց և ստիպված եղավ փախչել։

Սակայն կարճ ժամանակից հետո կռվի բախտը փոխվեց։ Պարթևների հաջողությունների առաջն առնելու համար Մարկոս

---

[1] Տե՛ս Scriptores historiae Augustae, vita Antonini Pii, IX, 6.

[2] Տե՛ս *Aristides*, Orat. sacra I, էջ 453—454 (հրատ. Dindorf-ի)։

[3] Տե՛ս *Lucianus*, De historia recte scribenda, 18, 19, 21, 25, 26. Նաև *Cass. Dio*, LXXI, 2, 1.

Ավրելիոսը (161—180) ուղարկեց Արևելք իր հոգեզավակ գահակից եղբորը, Լուկիոս Վերոս կայսրին (161—169), որը ժամանեց Անտիոք 163 թվի գարնանը։ Նա իր հետ բերել էր նոր ռազմական ուժեր, որոնց հրամանատարությունը հանձնված էր ընդունակ զորավարների՝ Ավիդիոս Կասսիոսին, Ստատիոս Պրիսկոսին և Մարտիոս Վերոսին։

163 թվի ամառը հռոմեական զորքերը իրենք անցան հարձակողական գործողությունների թե Հայաստանում և թե Ասորիքում ու Միջագետքում։ Այս պատերազմը, որ պաշտոնապես կոչվում էր «հայկական և պարթևական», մղվում էր երկու ուղղությամբ՝ Արտաշատի և Տիզբոնի։

Հայաստան ուղարկվեց Կապադովկիայի վրայով հատուկ մի զորաբանակ Ստատիոս Պրիսկոսի առաջնորդությամբ, որը Կապադովկիայի կուսակալն էր։ Սա կարողացավ նվաճել Հայաստանը միայն համառ կռիվներից հետո։ 163 թվի վերջերին հռոմեական զորքերը պաշարումով ու գրոհով վերցրին Արտաշատ մայրաքաղաքը, որը ենթարկվեց կողոպուտի ու ավերմունքի։

Նույն այս ժամանակ հռոմեական մի ուրիշ զորաբանակ, որը Ավիդիոս Կասսիոսի առաջնորդությամբ գործում էր Ասորիքում և Միջագետքում, հաղթեց Վաղարշ Գ-ին Եվրոպոս քաղաքի մոտ Ջեվգմայի հարավակողմում։ Այնուհետև Կասսիոսը մտավ հյուսիսային Միջագետք, ուր մեծ կռիվներից հետո առավ Եդեսիան և Մծբինը։

Վաղարշ Գ-ը ստիպված եղավ թողնել Միջագետքը և անցնել Տիգրիսի մյուս կողմը։ Կասսիոսը, հալածելով նրան՝ հասավ Բաբելոնիա։ Սելևկիա վիթխարի քաղաքը, հելլենական քաղաքակրթության արևելյան պատվարը, որը հոժարակամ անձնատուր էր եղել, հռոմեական զինվորները անխնա կերպով ավարի ու հրդեհի մատնեցին։ Ավերածության ենթարկվեց նաև Տիզբոն մայրաքաղաքը, ուր արքունի դղյակը հողին հավասարեցվեց (164 թվին)։

Վաղարշ Գ-ը հարկադրված եղավ փախչել իր երկրի խորքերը։ Իսկ Կասսիոսը վերադարձավ Ասորիք (165 թվին), որովհետև Սելևկիայի կործանումից հետո Պարթևաստանում բռնկվել էր ժանտախտի համաճարակ, որից մահանում էին հռոմեական զինվորները։

Հայկական և պարթևական վերոհիշյալ պատերազմները, որ հիշատակված են հունա-հռոմեական բազմաթիվ աղբյուրներում, բավական ընդարձակ նկարագրված են Յուլիոս Կապիտոլինուսի և Կասսիոս Դիոնի վկայություններում, որ ավելորդ չեմ համարում մեջ բերել բառացի թարգմանությամբ լատիներենից և հունարենից։

*1. Յուլ. Կապիտ., Կենսագրութ. Մարկոս Ավրելիոսի, գլ. Ը և Թ՝*

*«Այդ ժամանակ տեղի ունեցավ նաև պարթևական պատերազմը, որը Վաղարշը նախապատրաստել էր դեռևս Պիոսի ժամանակ, բայց հայտարարել էր Մարկոս Ավրելիոսի և Վերոսի ժամանակ՝ Ատտիդիոս Կոռնելիանոսին փախցնելուց հետո, որն այդ ժամանակ Ասորիքի կառավարիչն էր։ ...Արդ՝ պարթևական պատերազմն առաջնորդելու համար ծերակույտի հավանությամբ ուղարկվեց Վերոս եղբայրը, իսկ ինքը [Մարկոս Ավրելիոսը] մնաց Հռոմում, որովհետև քաղաքական գործերը պահանջում էին, որ կայսրը ներկա լիներ։ ...Եվ արդ Վերոսը, երբ հասավ Ասորիք, ուրախ կյանք վարեց Անտիոքի և Դափնեի մոտ և զբաղված էր զինավարժությամբ և գլադիատորական ու գազանամարտ խաղերով։ Թեև պարթևական պատերազմը նա վարում էր զորավարների միջոցով՝ ստացավ ինքը իմպերատոր անունը. ...Հայաստանում պատերազմական գործողությունները հաջող կերպով վարում էր Ստատիոս Պրիսկոսը, որը վերցրեց Արտաշատը, ուստի երկու կայսրերը ընդունեցին «Հայկական» անունը։ ...Իսկ երբ պարթևական պատերազմը ևս հաջողությամբ գլուխ բերվեց՝ երկուսն էլ ստացան նաև «Պարթևական» անունը»[1]։*

*2. Կասսիուս Դիոն, Հռոմեական պատմություն,* LXXI, *1, 3 և 2, 1—4՝*

*«Լուկիոսը [Վերոսը] ուժեղ ու ավելի երիտասարդ էր և պատերազմական գործերին ավելի համամետ էր։ Եվ այդ պատճառով Մարկոս Ավրելիոսը նրան ամուսնացրեց իր դստեր՝ Լուկիլլայի հետ և ուղարկեց պատերազմի պարթևների դեմ։ Վաղարշն արդեն պատերազմը սկսել էր և նա, շրջապատելով չորս կողմից մի ամբողջ հռոմեական զորաբանակ զորավարների հետ միասին, որ գտնվում էր Էլեգեյայում, մի ինչ-որ Հայաստանի վայրում, Սեվերիանոսի հրամանատարության տակ՝ նետահար էր արել նրանց և ոչնչացրել։ Նաև Ասորիքի քաղաքների վրա նա շատ անգամ հարձակվել էր ու ահաբեկել։ Արդ՝ Լուկիոսը, գալով Անտիոք, հավաքեց մեծ զորք և ուներ իր իշխանության տակ լավագույն զորավարներ. և ինքը հաստատվեց քաղաքում, կարգավորեց ամեն ինչ, հոգալով պատերազմի կարիքները, և*

---

1 *Տե՛ս* Scriptores historiae Augustae, ed. E. Hohl, vol. I, Lipsiae, 1927, *էջ 54—55։*

զորքը հանձնեց Կասսիոսին։ Սա քաջությամբ դիմադրեց Վաղարշին, որ ներս էր խուժել, և վերջ ի վերջո, որովհետև դաշնակիցները նրան լքել էին՝ նահանջման ժամանակ հալածեց և ետ վանեց մինչև Սելևկիա ու Տիզբոն։ Սելևկիան նա հրդեհեց և ոչնչացրեց ու հիմնահատակ արեց Վաղարշի ապարանքը Տիզբոնում։ Իսկ վերադարձի ժամանակ նա կորցրեց իր զինվորների մեծագույն մասը սովի ու հիվանդության պատճառով, բայց ետ եկավ Ասորիք իր զորաբանակի մնացորդների հետ»[1]։

Հայաստանի նվաճումից և Արտաշատի առումից հետո հռոմեական Մարտիոս Վերոս զորավարը, որ հաջորդել էր Ստատիոս Պրիսկոսին, գահընկեց արված Բակուրի փոխարեն նորից թագավոր դրեց Սոհեմոսին, որին Մարտիոսի հանձնարարությամբ Հայաստան առաջնորդեց Թուկիդիդեսը (164 թվին)։

Փրոնտոյի ուշագրավ մի վկայությունից երևում է, որ հայկական գահի համար այդ ժամանակ կային երեք թեկնածուներ՝ Սոհեմոսին հաջորդած Բակուրը, նախկին թագավոր Սոհեմոսը և Վաղարշը, որը, Մարկվարտի կարծիքով[2], կարող էր թերևս լինել Պարթևաց Վաղարշ Գ-ի համանուն որդին և հետագա հաջորդը։

Փրոնտոյի ասելով՝ Սոհեմոսի հայկական գահի վրա հաստատումը ոմանց կողմից Հռոմում քննադատության էր ենթարկվել՝— թե ինչու գերադասելի է համարվել Հայոց թագավորությունը տալ Սոհեմոսին և ո՛չ Վաղարշին, կամ թե ինչ պատճառով գահից զրկվել է Բակուրը[3]։

Սոհեմոսը, որը հռոմեական ծերակույտի անդամ էր՝ ավելի շուտ հռոմեական պաշտոնյա էր, քան ինքնուրույն թագավոր։ Նա չէր կարող հարկավ հաճելի լինել հայ մեծամեծներին։ Կասսիուս Դիոնին վերագրված մի հատվածից, որը մեջ է բերված Սուիդասի Բառգրքում (Μάρτιος բառի տակ)՝ երևում է, որ Հայաստանում բռնկվել էր մեծ ապստամբություն, որն իր մեղմ վարմունքով կարողացել էր հանդարտեցնել Մարտիոս Վերոսը։ Իր վկայության

[1] Համեմատե՛ նաև Eutropii, Breviarium, VIII, 10, 2, Juli Capitolini, Verus, VII—VIII (Scriptores historiae Augustae, Lipsiae, 1927, vol. I, էջ 79—81). Vulcacii Gallicani, Avidius Cassius, VI (Scrip. hist. Aug., 1927, vol. I, էջ 90). Fronto, Princ. hist. (հրատ. Mai-ի), էջ 318. Նույնի, Ad Verum, էջ 167. Lucianus, De historia recte scribenda, 20, 24, 28, 30.

[2] Տե՛ս «Էջ մը հայ Արշակունեաց հնագոյն պատմութենէն», ՀԱ, 1906, թ. 2, էջ 38, ծան. 3։

[3] *Fronto*, Ad Verum (հրատ. Naber-ի), էջ 127։ Համեմատե՛ Mommsen, Römische Geschichte, V, էջ 407, ծան. 2։

մեջ, որ ավելորդ չեմ համարում մեջ բերել ընդարձակ բովանդակությամբ, Կասսիուս Դիոնը հաղորդում է՝

«որ Մարտիոս Վերոսն ուղարկել էր Թուկիդիդեսին, որպեսզի նա Սոհեմոսին վերստին բերե Հայաստան։ Սա զենքի ահի ազդեցությամբ ու նաև բոլոր իրեն հանդիպողների վերաբերմամբ ցուցաբերած բարեմտության շնորհիվ հաստատուն կերպով առաջանում էր։ Իսկ Մարտիոսն ընդունակ անձնավորություն էր և ո՛չ միայն զենքերով էր զսպում ընդդիմադրողներին կամ կանխում էր վտանգը արագ գործողությամբ և կամ խաբում էր խորամանկությամբ, որ հատուկ պաշտպանության միջոց էր զորավարների՝ այլև հավանեցնում էր համոզիչ խոսքերով և բարեկամություն էր շահում վեհապանծ պարգևներով կամ հրապուրում էր բարի հուսադրմամբ։ ...Արդ՝ գալով Նոր քաղաքը, որը Պրիսկոսի դրած հռոմեական կայազորն էր իր ձեռքում պահում, և ապստամբության փորձ անողներին խոսքով ու գործով հնազանդեցնելուց հետո՝ նա հայտարարեց, որ Նոր քաղաքը կլինի Հայաստանի գլխավոր քաղաքը»[1]։

Ուշագրավ է նաև Կասսիուս Դիոնի մի այլ հատվածը, որի մեջ նա վկայում է, որ Հայաստանում գլխավոր ապստամբներից մեկն էր Տրդատ անունով մի նախարար, որին Մարկոս Ավրելիոսը աքսոր էր ուղարկել Բրիտանիա։

«Եվ Տրդատ սատրապին,—ասում է Դիոնը,—որը Հայաստանում խռովություններ էր առաջ բերել և սպանել էր հենիոքների թագավորին ու նաև սուրը հանել էր, սպառնալով Վերոսին, որն այդ բաների համար նրան հանդիմանել էր՝—Մարկոս Ավրելիոսը փոխանակ սպանել տալու աքսորեց Բրիտանիա»[2]։

Հայկական պատերազմը վերջանալուց հետո հռոմեական զորքերը, ըստ երևույթին, Մարտիոս Վերոսի առաջնորդությամբ մտան Մեդիա-Ատրպատական ու այստեղ ևս հաջողություն ունեցան (165 թվին). ուստի և երկու կայսրերն ընդունեցին նաև «Մեդական» տիտղոսը[3]։ Գուտշմիդն այս առթիվ իրավացի կերպով

---

[1] Տե՛ս *Cass. Dio*, LXXI, 2, 3 (հրատ. Դինդորֆի, հատ. IV, 1864, էջ 171)։

[2] *Cass. Dio*, LXXI, 14. 2.

[3] Հոմոն կարծում է, որ Ատրպատական ներխուժել էր 166 թվին Ավիդիոս Կասսիոսը և ոչ Մարտիոս Վերոսը. տե՛ս Histoire générale Գլոցի, հատ. III, Le Haut-Empire, Paris, 1933, էջ 562։ Համեմատե՛ նաև Mommsen, Römische Geschichte, V, էջ 468։

մատնանշում է, որ Ատրպատականն այդ ժամանակ, հավանորեն, ինքնուրույն պետություն էր[1]։

Վերջապես, ավելի քան չորս տարվա պատերազմից հետո, 165 թվի վերջերին, պարթևների հետ կնքվեց խաղաղության դաշինք։ Պարթևները հարկադրված եղան զիջել հռոմայեցիներին Միջագետքի արևմտյան մասը մինչև Խաբուր գետը, և Օսրոյեն-Եդեսիայի թագավորությունը դառավ Հռոմեական կայսրության վասալ, իսկ Խառան քաղաքը, որը հելլենիստական բնակչություն ուներ՝ հայտարարվեց ազատ քաղաք հռոմեական հովանավորության տակ։

166 թվին Լուկիոս Վերոսը վերադարձավ Հռոմ, և երկու կայսրերը իրենց հաղթությունները տոնեցին փառահեղ կերպով, և Հռոմում կատարվեց մեծ հաղթահանդես (166 թվի օգոստոսի 23-ին)։ Ի հիշատակ հայկական, պարթևական և գերմանական պատերազմների Հռոմում կառուցվեց Մարկոս Ավրելիոսի հրամանով հոյակապ մի կոթող, որի վրա քանդակված էին վերոհիշյալ անցքերը[2]։ Այդ կոթողը, որ գտնվում է այժմ Հռոմում, ունի հետևյալ արձանագրությունը.

«Ավրելիոս կայսրը՝ հայերին, պարթևներին և գերմանացիներին մեծ պատերազմում հաղթելուց հետո՝ հաղթանակի այս կոթողը, իբրև կատարված գործերի հիշատակ, նվիրել է իր հորը՝ Անտոնինոս Պիոս կայսրին»։

Այս ժամանակաշրջանի պատմությանն է վերաբերում նաև մի ուրիշ կարևոր հուշարձան, որ գտնվում է նույնպես Հռոմում։ Հայաստանի Բակուր թագավորը (161—163), որը գահընկեց էր արվել և տարվել Հռոմ ու այնտեղ ընդունվել կայսերական Ավրելյան ազգականության (gens) մեջ, իր եղբոր՝ Միհրդատի համար կառուցել էր Հռոմում դամբարան, որի արձանագրությունը պահպանվել է մինչև մեր օրերը և ունի հետևյալ բովանդակությունը.

«Անդրերկրյա աստվածներին՝ Ավրելիոս Բակուր, թագավոր Մեծ Հայաստանի, գնեցի դամբանը իմ ամենաքաղցր եղբոր՝ Ավրելիոս Միհրդատի համար, որն ինձ հետ ապրեց հիսունվեց տարի և երկու ամիս»[3]։

163—165 թվերի վերոհիշյալ հաղթանակների առթիվ Հռոմում կտրված են եղել մեծ քանակությամբ ոսկե, արծաթե և պղնձե դրամներ, որոնք պահպանվել են մինչև մեր օրերը։ Այդ դրամների

---

[1] *Gutschmid,* Geschichte Irans, էջ 149։

[2] Տե՛ս *Sandalgian*, Histoire documentaire, էջ 554։

[3] Տե՛ս *М. Ростовцев*, Апаранская греческая надпись царя Тиридата, СПб., 1911, էջ 16։ Համեմատե՛ Corpus inscrip. graec. 6559.



4—340

վրա դրոշմված են մի կողմում Մարկոս Ավրելիոսի և Լուկիոս Վերոսի գլուխները, իսկ մյուս կողմում քանդակված են այլևայլ պատկերներ, որոնք Հայաստանի խորհրդանիշներն են. օրինակ՝ հռոմեական դրոշի առջև տխուր ու տրտում նստած է մի կին, որի ներքև կա գրություն Armenia. երբեմն Հայաստանը ներկայացված է իբրև հայ մարդ, որին սպառնում է կայսրը նիզակը ձեռին։ Ուշագրավ են Լուկիոս Վերոսի 164 և 165 թվերի ոսկի ու արծաթ դրամները. սրանց վրա Լուկիոս Վերոս կայսրը նստած է գահի վրա, հռոմեական զինվորներով շրջապատված, և պսակ է դնում Հայոց թագավորի գլխին. պատկերի շուրջը գրված է՝ «տրվեց հայերին թագավոր» (rex Armeniis datus)[1]։

Խիստ հետաքրքրական է, որ Վաղարշ Գ-ի և Մարկոս Ավրելիոսի ժամանակաշրջանի վերոհիշյալ անցքերի մասին որոշ հիշողություններ պահպանվել են Մովսես Խորենացու Պատմության մեջ։ Մ. Չամչյանը և Կ. Կոստանյանցը շատ ճիշտ նկատել են, որ Խորենացու մոտ Սոհեմոս թագավորին համապատասխանում է Տիգրան Վերջինը[2]։ Կարելի է ենթադրել, որ Սոհեմոս թագավորի օտարոտի անունը Հայաստանում փոխված է եղել, և նա հայ անունով կոչվել է Տիգրան։

Խորենացու համապատասխան վկայությունները Սոհեմոս-Տիգրանի մասին կարևոր եմ համարում մեջ բերել գրեթե առանց կրճատումների։

«Տիրանին հաջորդեց,—պատմում է Խորենացին,—նրա եղբայրը, Տիգրան Վերջինը, որը Հայոց վրա թագավորեց Պարսից Պերոզ թագավորի [քսանև]չորրորդ տարում։ Սա մեռավ քառասուն և երկու տարի թագավորելուց հետո. հիշատակի արժանի ոչ մի արության գործ ցույց չտվեց, բայց միայն թե մի հույն աղջկանից բանտարկվեց ճիշտ այն ժամանակ, երբ վախճանվել էր հռոմայեցիների Տիտոս Երկրորդ թագավորը, որն անվանվեց Անտոնինոս Օգոստոս, նաև երբ Պարսից Պերոզ թագավորը հռոմայեցիների տերության վրա արշավեց և այդ պատճառով Պերոզ կոչվեց, որ նշանակում է հաղթող. որովհետև նա առաջ հունարեն կոչվում էր Վաղեգեսոս, բայց թե պարսկերեն նրան ինչ անուն էին տալիս՝ չգիտեմ։

[1] Տե՛ս Գարեգյան, Տիեզերական պատմություն, Բ, էջ 176։

[2] Տե՛ս Չամչյան, Պատմություն Հայոց, հատոր Ա, Վենետիկ, 1784, էջ 355—357. *К. Костанянц*, История Армении (краткий очерк), М., 1911, էջ 42։

Արդ՝ երբ Պերոզն Ասորիքի վրայով պաղեստինացիների կողմերն արշավեց՝ Տիգրանը ևս, նրա հրամանով ու նրան օգնելու համար, ասպատակեց Միջերկրայքը, ուր և գերի բռնվեց մի աղջկանից, որն իշխում էր այդ կողմերում, մինչ Լուկիանոս կեսարը Աթենքում շինում էր մեհյանը։ Սա Պերոզի մեռնելուց հետո մեծ զորքով Միջերկրայք գալով՝ նվաճեց Հայաստանը և ազատեց Տիգրանին։ Կեսարը կին տվեց նրան իր ազգական Ռոփի օրիորդին, որին Տիգրանը Հայաստան վերադառնալուց հետո բաց թողեց և նրանից ծնված չորս պատանիներին առանձին տոհմ դարձրեց ու իրենց Ռոփի մոր անունով Ռոփսյան կոչեց։ Իսկ նրանցից առաջինին նշանակեց գլուխ և նահապետ և դասեց մյուս նախարարների շարքում, որպեսզի Արշակունի չանվանվեն։

Իսկ կրտսեր նախարարական տոհմերը՝ թե այստեղ և թե Կորճայքի կողմերում՝ հաստատել է այս Տիգրանը. սրանք միանգամայն ցած ազգ մարդիկ էին և հեծելազորով աննշան, բայց անձամբ երևելի էին և Տիգրանին փրկելու համար պատերազմել էին հույների հետ»[1]։

[«Փոխանորդէ զՏիրան եղբայր իւր Տիգրան Վերջին, թագաւորեալ Հայոց ի քսաներորդի և ի չորրորդի ամի Պերոզի Պարսից արքայի. և երկայնակեաց եղեալ ամս քառասուն և երկու՝ մեռանի, ոչ ինչ գործ արութեան արժանի յիշատակի ցուցեալ, այլ ի յաղջկանէ միոջէ յունէ ի կալանս ըմբռնեալ, ի ժամանակին յորում վախճանեցաւ Տիտոս երկրորդ թագաւոր Հռոմայեցւոց, որ անուանեցաւ Անտոնինոս Աւգոստոս։ Եւ Պերոզ արքայ Պարսից ի Հռոմայեցւոց իշխանութիւնն արշաւեաց, ուստի և Պերոզ անուանեցաւ, որ է յաղթող. քանզի յառաջ անուանէր Վաղեգեսոս ի յունաց լեզուն. բայց թէ Պարսք զի՞նչ կոչեն զնա՝ ոչ գիտեմ։

Արդ՝ յասպատակելն Պերոզի ընդ Ասորիս ի կողմանս Պաղեստինացւոց, վասն նորա և հրամանաւ նորին՝ և մերն Տիգրան ի Միջերկրեայս ասպատակեալ և ի կալանս ըմբռնեալ յաղջկանէ միոջէ իշխելոյ կողմանցն այնոցիկ, մինչ դեռՂուկիանոս կեսար յԱթէնս զմեհեանն շինէր, որոյ և անցեալ զօրօք բազմօք ի Միջերկրեայսն յետ մեռանելոյն Պերոզի նուաճեաց զՀայս, և արձակեաց զՏիգրան։ Եւ տ զՌոփի զկոյս, զմերձաւոր իւր, նմա կնութեան. զոր եկեալ ի Հայս ի բաց

[1] Տե՛ս Խորենացի, Հայոց պատմություն, 1940, II գլ., էջ 132—133։

*թողու, և զլեալ ի նմանէ պատանիս չորս՝ ազգ սերէ յանուն մօրն իւրեանց Ռոփեայ, Ռոփսեան. և զառաջին մանկանցն՝ գլուխ նահապետ կացուցանէ, և կարգէ ընդ այլ նախարարութիւնս, զի մի՛ անուանեսցին Արշակունիք։*

*Եւ այլ որ ինչ կրտսերագոյն ազգք, եթէ աստ և եթէ զկողմամբք Կորճէից, հաստատէ այս Տիգրան. որք միանգամ անազգիք էին ի վաշտս և անձամբ երևելիք, և վասն նորա փրկութեան պատերազմեալ ընդ Յոյնս»]*[1]։

*Տիգրան Վերջինի այս պատմության համար, ինչպես մատնանշում է ինքը՝ Խորենացին, իրեն աղբյուր է ծառայել, գլխավորապես, Եդեսացի Բարդածանի*[2] *(154—222) պատմական երկը։ Այս տեղեկությունը բացառիկ կերպով կարևոր է ու հետաքրքիր։ Խալաթյանցը, որն այս ցուցումը համարում է կեղծիք, ուշադրության չէ առել, որ վերև բերված տեքստի մեջ, բացի Եվսեբիոսի ժամանակագրությունից քաղված վկայություններից, կան նաև այնպիսի տեղեկություններ, որոնք Խորենացին կարող էր քաղած լինել միմիայն հին աղբյուրից, ինչպիսին էր Բարդածանի երկը*[3]։

*Խորենացու վկայությունների մեջ ճիշտ չեն, անշուշտ, նրա հաղորդագրությունները, որ Տիգրան Վերջինը Պերոզի հրամանով ասպատակել էր Միջերկրյայքը ու այնտեղ գերի էր բռնվել, և որ Լուկիոս կայսրը մեհյան էր շինել Աթենքում։ Սակայն Խորենացին միայն հին արժանահավատ աղբյուրից կարող էր իմանալ, որ Պերոզ-Վաղարշ Գ-ը (148—191), որին նա թյուրիմացաբար նույնացրել է Վաղարշ Բ-ի հետ (130—148)՝ արշավել էր հռոմեական երկիրը ճիշտ այն թվին, երբ վախճանվել էր Անտոնինոս Պիոսը, այսինքն՝ 161 թվին։*

*Ըստ երևույթին, նույն կարևոր աղբյուրից նրան հայտնի է եղել և այն, որ Տիգրան Վերջինը վերադարձել ու վերստին թագավորել էր Հայաստանում Լուկիոս Վերոս կայսեր ժամանակ և վերջինիս օժանդակությամբ։*

*Մինչև երբ է թագավորել Սոհեմոս-Տիգրանը Հայաստանում՝ այդ մասին մենք ոչ մի տեղեկություն չունենք։ Պատմագիտական երկերում, առանց որևէ լուրջ հիմքի, Սոհեմոսի թագավորության վերջին տարին ենթադրում են 169 կամ 178 և կամ 185 թվին։*

---

[1] *Տե՛ս* Խորենացի, *II*, գլ. ԿԴ։

[2] *Տե՛ս A. Baumstark*, Geschichte der syrischen Literatur, Bonn, 1922, *էջ 12—14*։

[3] *Տե՛ս Г. Халатьянц*, Армянские Аршакиды в „Истории Армении" Моисея Хоренского, М., 1903, *էջ 108—111*։

Ուշադրության արժանի է, որ ըստ Խորենացու վկայության, Տիգրան Վերջինը թագավորել էր Հայաստանում քառասուներկու տարի և մեռել էր իր բնական մահով։ Ըստ այս վկայության, Սոհեմոս-Տիգրանը թագավորած պիտի լիներ Հայաստանում մոտավորապես մինչև 185 թիվը (140/3—161 և 164—185?)։

166 թվից հետո մինչև Սեպտիմիոս Սեվերոս կայսրը (193—211) Հայաստանում տեղի ունեցած պատմական անցքերի մասին մենք գրեթե տեղեկություն չունենք։

Այս անհայտ ժամանակաշրջանին են վերաբերում Վաղարշապատում գտնված 175 և 185 թվերի լատիներեն արձանագրությունները, որոնցից հայտնի է մեզ, որ Հայաստանի այդ մայրաքաղաքի մոտ, կամ թերևս հենց իր մեջ, գտնվել է այդ ժամանակ 15-րդ Ապոլլոնյան լեգեոնի մի զորամասը (vexillatio), որը եղել է զինվորական տրիբունի հրամանատարության տակ[1]։ Այդ երկու արձանագրությունները մանրամասն լուսաբանել է Մ. Ռոստովցևը[2]։

---

[1] Տե՛ս *Dessau*. Inscriptiones latinae selectae 9117 և Corpus inscriptionum latinarum, III, 6052.

[2] Տե՛ս *М. И. Ростовцев*, Изв. Арх. Комм., вып. 33, 1909, էջ 1 և հն.։

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՍԵՊՏԻՄԻՈՍ ՍԵՎԵՐՈՍԻ ԵՎ ԱՆՏՈՆԻՆՈՍ ԿԱՐԱԿԱԼԼԱՅԻ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ

**1. Հայաստանի մոտ հարյուր տարվա պատմության խառնաշփոթ լուսաբանումները:— 2. Վաղարշ Բ.— գահակալական կռիվները Հռոմում և Հայաստանի չեզոքությունը.— հայերի հաշտությունը Սևերոսի հետ:— 3. Սևերոսի արշավանքները Արևելքում:— 4. Միջագետքի և Հայաստանի քաղաքական դրության կարգավորումը:— 5. Խորենացու կարևոր տեղեկությունները Վաղարշ Բ-ի և Խոսրով Ա-ի մասին.— այդ տեղեկությունները էությամբ պատմական են:— 6. Վաղարշ Բ-ը հիմնադիր Արշակունիների դինաստիայի Հայաստանում:— 7. Խոսրով Ա:— 8. Կարակալլայի արշավանքը.— Խոսրով Ա-ի բանտարկումը:— 9. Թեոկրիտոս զորավարի պարտությունը Հայաստանում:— 10. Կարակալլայի պարթևական արշավանքը:— 11. Պարթևների հաշտությունը Մակրինոսի հետ և Տրդատ Բ-ի գահակալությունը:**

*Հայաստանի մոտ հարյուր տարվա պատմությունը, սկսած երկրորդ դարի վերջերից մինչև երրորդ դարի վերջերը՝ համարվում է հայ ժողովրդի պատմական անցյալի ամենամութ շրջանը։ Մ. Աբեղյանը, քննության առնելով Խալաթյանցի, Սանտալճյանի, Ասատուրյանի, Տաշյանի, Գևորգ Ասլանի, Մորգանի և Գարագաշյանի այս ժամանակաշրջանի վերաբերյալ գրածները՝ մատնանշում է, որ այս յոթ հեղինակները յոթ տեսակ պատմություն են գրել, որ չհիմնավորված ենթադրություններ են[1]։*

*Այս դատավճիռն այնքան էլ ճիշտ չէ։ Աբեղյանի մատնանշած խառնաշփոթումները, որ հիմնված են, մեծ մասամբ, Կասսիուս Դիոնի վերոհիշյալ սխալ հասկացված վկայության վրա Սանատրուկի որդի Վաղարշի մասին, միանգամայն հասկանալի են և ներելի։ Պետք է ասել, որ ինքը՝ Աբեղյանը ևս, աշխատելով ուղղել նրանց*

---

[1] *Տե՛ս* Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն, I, Երևան, 1944, էջ 591—603։*

*սխալները, արել է մի նոր՝ նույնպես անհաջող ենթադրություն։ Նա թյուրիմացաբար եզրակացրել է, որ Մեծն Խոսրով անունով հայ թագավոր երրորդ դարում գոյություն չէ ունեցել և որ հայկական աղբյուրներում հիշատակված Խոսրով Մեծը վիպական անձ է։*

*Ճիշտ է, իհարկե, որ հունա-հռոմեական հեղինակները, որ հայոց հին պատմության հիմնական աղբյուրներն են, պատմական այս շրջանի մասին տալիս են սակավաթիվ ու կցկտուր տեղեկություններ։ Սակայն, ինչպես կտեսնենք, զուգակցելով և բաղդատելով այդ տեղեկությունները հայկական աղբյուրների պատմական-վիպական վկայությունների հետ՝ հնարավոր է տալ այս ժամանակաշրջանի քաղաքական պատմությունը և լուսաբանել Հայոց թագավորների հաջորդական կարգը ավելի ճշգրիտ և ավելի հիմնավոր կերպով, քան այդ արված է պատմագիտական նախկին աշխատություններում։*

*Սոհեմոս-Տիգրանից հետո Հայաստանում թագավորել են ո՛չ թե Սանատրուկը և ապա նրա որդին՝ Վաղարշը, ինչպես թյուրիմացաբար մատնանշվում է Գաթրճյանի, Գարագաշյանի, Գևորգ Ասլանի, Խալաթյանցի, Լեոյի, Սանտալճյանի և ուրիշների պատմական երկերում*[1]*, այլ, ինչպես շատ ճիշտ վկայում է Մովսես Խորենացին, հիմնվելով Բարդածանի և Փիրմիլիանոսի վկայությունների վրա՝ նախ Վաղարշը, որ Վաղարշ Բ-ն է (գահակալել է երկրորդ դարի 80-ական թվականներին, կամ 90-ական թվականների սկզբներին) և ապա՝ նրա որդին, Խոսրովը, որ Խոսրով Ա-ն է (+216 թ.)։*

*Վաղարշ Բ-ը, որը, Գ. Ասլանի կարծիքով*[2]*, կարող էր լինել պարթևական Վաղարշ Դ թագավորի (191—208) եղբայրը կամ եղբորորդին, ըստ երևույթին, կարողացել էր Հայաստանի գահը գրավել Կոմմոդոս կայսեր (180—192) իշխանության խառնակ շրջանում և կամ գահակալական կռիվների ժամանակ, որ ծագել էին Հռոմեական կայսրության մեջ Կոմմոդոսի սպանությունից հետո, 193—194 թվերին։*

*Ինչպես հայտնի է, երբ Կոմմոդոսի սպանությունից հետո պրետորիանները սպանեցին նաև Պերտինաքս և Դիդիոս Յուլիանոս կայսերին (193 թվին)՝ Հռոմեական կայսրության զանազան կող-*

---

[1] *Տե՛ս* Գաթրճյան, *Տիեզերական պատմութիւն, Բ, էջ 176—177.* Գարագաշյան, *Քննական պատմութիւն Հայոց, Բ, էջ 262—264.* *Aslan K.*, Études historiques sur le peuple arménien, Paris, 1909, *էջ 131—134. Халатьянц*, Очерк истории Армении, *էջ 314—318.* Լեո, *Հայոց պատմութիւն, Ա, էջ 476—477.* *Sandalgian*, Histoire documentaire, *էջ 556—559 և ուրիշները։*

[2] *Aslan K.*, Études historiques, *էջ 133։*

*մերում հայտնվեցին կայսերական գահի երեք նոր թեկնածուներ՝ Նիգերը Ասորիքում, Սեպտիմիոս Սեվերոսը Իլլիրիայում և Ալբինոսը Բրիտանիայում։*

*Գահակալական կռիվների ժամանակ Պեսկեննիոս Նիգերը, որին ճանաչել էին իբրև հռոմեական կայսր Պարթևաց թագավոր Վաղարշ Դ-ը և արևելյան վասալ հռոմեական պետությունները՝ խնդրեց սրանցից ռազմական օգնություն։ Այդ օգնությունը նրան ուղարկեցին Օսրոյեն-Եդեսիայի թագավոր Աբգար Թ-ը և Հադրայի իշխան Բարսեմիոսը։ Սակայն Հայաստանի Վաղարշ Բ թագավորը մնաց չեզոք և հրաժարվեց օգնել Նիգերին։*

*Հայաստանի չեզոքության մասին մանրամասն տեղեկություն է տալիս երրորդ դարի առաջին կեսի պատմիչ Հերոդիանոսը։*

> *«Նիգերը,—վկայում է այս հեղինակը,—մարդ ուղարկեց Պարթևաց, Հայոց և Հադրացոց թագավորների մոտ խնդրելու նրանցից օգնություն։ Արդ՝ Հայոց թագավորը պատասխանեց, որ նա ոչ ոքին չէ օգնելու, սակայն եթե Սեվերոսն իր վրա հարձակվելու լինի՝ ինքը պատրաստ է իր երկիրը պաշտպանել։ Իսկ Պարթևաց թագավորն ասաց, որ կկարգադրե իր կուսակալներին զորք գումարել. այսպես էին նրանք սովորաբար անում, երբ հարկավոր էր զորք հավաքել, որովհետև չունեին վարձկան զորք և մնայուն զինապարտներ։ Հադրացոց թագավորն ուղարկեց օգնության Նիգերին աղեղնավորների մի գունդ»[1]։*

*194 թվի աշնան սկզբներին Նիգերը վերջնականապես պարտվեց Կիլիկիայում Իսսոսի մոտ և փախուստի ժամանակ սպանվեց։ Այնուհետև Սեպտիմիոս Սեվերոսը եկավ Միջագետք, որպեսզի հաշիվ տեսնե Նիգերի դաշնակիցների հետ։ Հայոց թագավոր Վաղարշ Բ-ը, որ չեզոքություն էր պահպանել՝ կարողացավ հաշտություն կնքել նրա հետ, ուղարկելով նրան հարուստ նվերներ և պատանդներ։*

> *«Արդ՝ պատրվակ բռնելով,—վկայում է դարձյալ Հերոդիանոսը,—որ Հադրացոց Բարսեմիոս թագավորը դաշնակից է եղել Նիգերի՝ նա [Սեվերոսը] արշավեց Արևելք։ Գալով այստեղ՝ նա ուզեց ներխուժել Հայաստան։ Բայց Հայոց թագավորը շտապեց թախանձանքով կանխել այդ և ուղարկեց նրան փող, նվերներ ու պատանդներ, խոստանալով նրան զինակ-*

---

[1] *Տե՛ս* *Herodianus*, Ab excessu D. Marci libri VII, ed. K. Stavenhagen, Lipsiae, 1922, III, 1, 2.

*ցություն ու բարեկամություն։ Եվ Սեվերոսը, երբ հայկական գործերը հաջողվեցին ըստ իր ցանկության՝ առաջ շարժվեց Հադրացոց դեմ»*[1]*։*

*Հռոմեական ներքին խռովությունների ժամանակ խորապես խառնակվել էր նաև Մերձավոր Արևելքը։ Նիգերի նախկին դաշնակիցները՝ ադիաբենցիներն ու հադրացիները, որոնք բռնի կերպով գրավել էին Միջագետքի հռոմեական ամրությունները՝ պահանջում էին, որ հռոմեական զորքերը ետ քաշվեն և այդ երկրամասերը վերադարձվեն իրենց։ 195 թվին Սեպտիմիոս Սեվերոսը մտավ Միջագետք և ո՛չ միայն ապստամբներին դուրս վտարեց այստեղից, այլև նվաճեց նոր երկրամասեր։ Շուտով սակայն, երբ Սեվերոսի և Ալբինոսի միջև գահակալության նոր պատերազմ ծագեց, պարթևները վերագրավեցին Միջագետքը և պաշարեցին Մծբին քաղաքը (196 թվին)։*

*Սեվերոսը Ալբինոսին հաղթելուց հետո եկավ 197 թվին Ասորիք և նորից արշավեց Միջագետք։ Նրան ընդառաջ եկավ ապստամբության մասնակից Օսրոյեն-Եդեսիայի թագավոր Աբգար Թ-ը, որը նրան վերստին հպատակություն հայտնեց և ճանաչվեց նորից իբրև վասալ թագավոր։ Պարթևների թագավոր Վաղարշ Դ-ը Մծբինի պաշարումը վերացրեց և ետ քաշվեց։*

*198 թվին հռոմեական զորքերը Սեվերոսի առաջնորդությամբ իջան Եփրատ գետի երկարությամբ Բաբելոնիա և, նավարկելի դարձնելով Եփրատը Տիգրիսի հետ միացնող հին ջրանցքը՝ ուղղվեցին դեպի Տիգրիս գետը, ուր հանկարծակիի բերին պարթևական զորքը և մատնեցին ծանր պարտության։ Նրանք վերցրին այստեղ Բաբելոն և Սելևկիա քաղաքները, որոնք պարթևների կարգադրությամբ արդեն ավերված ու դատարկված էին։ Տիզբոն քաղաքը, որ անձնատուր էր եղել, մատնվեց կողոպուտի ու կոտորածի։*

*Պարթևական այս արշավանքը մանրամասն հիշատակված է Կասսիուս Դիոնի հետևյալ հատվածում.*

*«Այնուհետև,— պատմում է Դիոնը,— Սեվերոսը ռազմի ելավ պարթևների դեմ, որովհետև՝ երբ նա քաղաքացիական կռվով էր զբաղված՝ նրանք, վախ չունենալով, տիրել էին Միջագետքին և արշավել էին այնտեղ մեծ բազմությամբ։ Նրանք քիչ էր մնացել, որ վերցնեին նաև Մծբինը, բայց Լետոսը փրկեց քաղաքը, որի մեջ ինքը պաշարված էր։ Եվ այս քաղաքի*

---

[1] **Տե՛ս** *Herodianus*, Ab excessu D. Marci libri VII, ed. K. Stavenhagen, Lipsiae, 1922, III, 9, 2.

պատճառով մա, Լետոսը, ավելի ևս հռչակվեց, թեև նա գերազանց էր և այլ գործերում՝ թե մասնավոր և թե հասարակային, ինչպես պատերազմների ընթացքում, նույնպես և խաղաղ ժամանակ։ ...Իսկ պարթևները չմնացին մինչև Սևերոսի գալը, այլ ետ քաշվեցին իրենց երկիրը։ Նրանց առաջնորդն էր Վաղարշը, որի եղբայրը [Տրդատը] ուղեկցում էր Սևերոսին։

Արդ՝ Սևերոսը, պատրաստելով նավեր Եփրատ գետի վրա և նավելով ու հետիոտն չվելով նրա երկարությամբ ...արագ կերպով առավ Սելևկիան ու Բաբելոնը, որոնք դատարկված էին։ Այնուհետև, վերցնելով նաև Տիզբոնը՝ թույլ տվեց, որ ամբողջ այդ քաղաքը կողոպտեն զինվորները. և մարդկանց մեծ կոտորած նա գործեց, իսկ կենդանի մնացածներին՝ մոտ 100.000 մարդ գերեց։ Սակայն Վաղարշին նա չհալածեց և Տիզբոնում չմնաց, այլ՝ իբր այդ արշավանքը միայն այն նպատակով էր, որպեսզի կողոպտե քաղաքը՝ ետ եկավ, որովհետև ծանոթ չէր տեղերին ու նաև պարենի պակասության պատճառով»[1]։

Սեպտիմիոս Սևերոսի հաղթական այս արշավանքի հետևանքն այն եղավ, որ Հռոմեական կայսրության արևելյան սահմանն առաջ տարվեց մինչև Տիգրիս գետը։ Կայսրությանը միացված հյուսիս-արևմտյան Միջագետքի ռազմական կենտրոնը դառավ Մծբինը, մինչդեռ Օսրոյեն-Եդեսիան, ինչպես վերև տեսանք, մնաց իբրև Հռոմին ենթակա վասալ թագավորություն։

Ուշագրավ է խիստ, որ Հայաստանը, որի կախումը Հռոմից Սոհեմոս-Տիգրանի ժամանակ շատ մեծ եղած պիտի լիներ՝ Սեպտիմիոս Սևերոսի ժամանակ ձեռք բերեց կարևոր արտոնություններ։ Հռոմեական կայազորը, որ գտնվում էր Վաղարշապատում, դուրս տարվեց Հայաստանից և Հայոց թագավորին թույլ տրվեց ուժեղացնել հայկական զորքերը, որի պահպանության համար կայսրությունը համաձայնել էր վճարել յուրաքանչյուր տարի որոշ դրամական նպաստ[2]։

Մարկվարտի կարծիքով, այդ նպաստը տրվում էր հայ թագավորներին Կովկասյան անցքերին վերահսկելու համար, որպեսզի

---

[1] Տե՛ս *Cass. Dio*, LXXV, 9, 1—4. Համեմատե՛ նաև Aeli Spartiani, Severus, XV—XVI (Scriptores historiae Aug., ed. Hohl, vol. I, Lipsiae. 1927, էջ 147—148). Amm. Marc. XXIV, 6, 1.

[2] Տե՛ս *Mommsen*, Römische Geschichte, V, էջ 411. *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 319. *Tournebize*, Histoire politique et réligieuse de l'Arménie, էջ 798 և ուրիշները։

հյուսիսային բարբարոս ցեղերը չասպատակեն Հայաստանը և հռոմեական երկրները[1]։

Վաղարշ Բ-ի և նրա որդի Խոսրով Ա-ի մասին կարևոր են ու հետաքրքիր նաև այն տեղեկությունները, որոնք մեջ են բերված Խորենացու Պատմության երկրորդ գրքի ԿԵ և ՀԵ գլուխներում։ Թեև այդ գլուխներում մանրամասնություններն իր՝ Խորենացու կռահումներն ու հավելվածներն են, սակայն նրա հաղորդած տեղեկությունների իրական հենքը, որին աղբյուր են ծառայել Բարդածանի և Փիրմիլիանոսի վկայությունները, ըստ էության պատմական է։

Խորենացու Պատմության այդ տեղեկությունները մեջ եմ բերում մանրամասն կերպով։

1. Խորենացի, գիրք Բ, գլուխ ԿԵ՝

«Տիգրանի մահից հետո թագավորում է նրա որդին, Վաղարշը, իր հոմանուն Վաղարշի, Պարսից թագավորի, երեսուներկուերորդ տարում։ Սա մի մեծ ավան է շինում իր ծնման տեղում, ուր նրա մայրը, Այրարատ ձմեռանոցը գնալու ժամանակ, հանկարծ երկունքից բռնվելով, նրան ծնեց ճանապարհի վրա՝ Բասեն գավառի այն տեղում, որտեղ իրար են խառնվում Մուրց և Երասխ գետերը։ Վաղարշն այստեղ ավան շինեց և իր անունով կոչեց Վաղարշավան։ Սա պարսպով պատեց նաև Վարդգեսի հզոր ավանը, որը գտնվում է Քասաղ գետի վրա։ ...Սա, քսան տարի թագավորելով՝ մեռավ։ Թեև ուրիշները ևս սուսկ ապրել են, բայց սրա մասին կասեմ, որ սա մահից հետո ևս շարունակում է ապրել իր բարի անվան պատճառով՝ ավելի քան թույլագույնները թագավորներից։ Որովհետև սրա օրով հյուսիսականների, այսինքն՝ խազիրների և բասիլների, միաբանած բազմությունը Ճորա դռնից դուրս եկավ, իրեն առաջնորդ և թագավոր ունենալով Վնասեպ ոմն Սուրհապին, և, անցնելով Կուր գետը՝ խուժեց այս կողմը։ Նրանց դեմ դուրս եկավ մեծ բազմությամբ և կռվող մարդկանցով Վաղարշը, որը ցրեց, դաշտի երեսը փռեց բազմությունը և, երկար տեղ նրանց հետապնդելով՝ անցավ Ճորա կապանով։ Այստեղ թշնամիները նորից միացան և ճակատամարտ տվին, իսկ Հայոց քաջերը թեև նրանց հաղթեցին և ի փախուստ դարձրին, սակայն Վաղարշը մեռավ կորովի աղեղնավորների ձեռքից։

Եվ թագավորությունն առավ նրա Խոսրով որդին Պարսից Արտավան թագավորի երրորդ տարում։ Նա իսկույն Հայոց զոր-

[1] *Markwart*, Eranschahr, էջ 102։ Համեմատե՛ Cass. Dio, LXXVIII, 27, 4.

քերը հավաքեց և անցավ մեծ լեռը, որպեսզի իր հոր մահվան վրեժն առնե. Նա սրով և տեգով դուրս վանեց այդ հզոր ազգերին, յուրաքանչյուր հարյուր պիտանի մարդկանցից մեկը պատանդ առավ և իբրև իր իշխանության նշան մի արձան կանգնեցրեց հունարեն գրով, որպեսզի հայտնի լինի, որ ինքը հպատակվել է հռոմայեցիներին»։

[«Յետ մահուան Տիգրանայ թագաւորէ Վաղարշ որդի նորին յերեսներորդի և երկրորդի ամի հոմանուանն իւրոյ Վաղարշայ Պարսից արքայի։ Սա շինէ աւան մեծ զտեղի ծննդեան իւրոյ ի վերայ ճանապարհին. ուր ի գնալ մօր իւրոյ ի ձմերոց յԱյրարատ, յանկարծակի պատահեալ երկանց ի գնացան՝ ծնաւ ի վերայ ճանապարհին, ի գաւառին Բասենոյ, ի տեղւոջն, ուր խառնին Մուրց ու Երասխ. զոր շինեաց յիւր անուն և կոչեաց Վաղարշաւան։ Սա պատեաց պարսպաւ և զհզօր աւանն Վարդգէսի...։ Սա, թագաւորեալ ամս քսան՝ մեռաւ։ Թէ լոկ և այլքն կեցին, բայց ասեմ զսա և յետ մահուանն կեալ, յաղագ բարի անուանն քան զթուլագոյնս ի թագաւորացն։ Վասն զի ի սորա աւուրս միաբանեալ ամբոխութիւն հիւսիսականաց, զխազրաց ասեմ և զԲասլաց, արտաքս քան զդուռն Ճորայ ելանեն, առաջնորդ և թագաւոր ունելով ինքեանց զՎնասեպ ումն Սուրհապ. որք անցեալ վտարին այսր զԿուր գետով։ Որոց պատահեալ Վաղարշ ամբոխիւ մեծաւ և արամբք մարտկօք՝ ցիր դիաթաւալ կացուցանէ զամբոխն ընդ երեսս դաշտին, և ձիգ զհետ եղեալ՝ անցանէ ընդ կապպանն Ճորայ։ Ուր միւսանգամ միաբանեալ թշնամեացն՝ յօրինեցին ճակատ. զորս թէպէտ և վանեալ քաջացն Հայոց՝ փախստականս առնէին, սակայն Վաղարշ մեռանի ի ձեռաց կորովեաց աղեղնաւորաց։

Եւ առնու զթագաւորութիւնն Խոսրով որդի նորին յերրորդ ամի Արտաւանայ Պարսից արքայի։ Եւ նոյն հետայն միաբանեալ զզօրս Հայոց, անցանէ ընդ լեառնն մեծ, վրէժս պահանջելով զմահուան հօրն. և վանեալ սրով և գեղարդեամբ զհզօր ազգսն զայնոսիկ, մի ի հարիւրոց յամենեցունց պիտանեացն առնու պատանդս. և զիւրոյ տէրութեանն նշանակ՝ արձան հաստատէ հելլենացի գրով, որպէս զի յայտ լիցի ընդ հնազանդութեամբ լինել Հռոմայեցւոց»]։

2. Խորենացի, գիրք Բ, գլուխ ՀԵ՝

«Նա [Փիրմիլիանոսը] գրում է, որ շատերը նահատակվեցին Խոսրովից նաև մեր աշխարհում և ապա նրանից հետո ուրիշները ուրիշներից։ Բայց որովհետև հավաստի և կարգին չէ

պատմում և չի նշանակում անունները կամ նահատակության տեղերը՝ ուստի և մենք հարկավոր չհամարեցինք կրկնել։ Նմանապես և Սեվերոսի որդու Անտոնինոսի մասին ասում է, որ նա պատերազմել է Պարսից Վաղարշ թագավորի դեմ Միջագետքում և մեռել է Եդեսիայի և Խառանի միջև, իսկ մեր Խոսրովը ոչ մեկի կողմը չէ անցել»։

[«Գրէ զբազումս վկայեալս ի Խոսրովայ, ի մերում աշխարհիս, համայն և յետ նորա օտարք յօտարաց։ Բայց զի ոչ ճշմարտութեամբ և ոճով պատմէ, և ոչ զանուանսն նշանակէ կամ զտեղիս կատարմանցն՝ ոչինչ կարևորագոյն համարեցաք երկրորդել։ Նոյնպէս և զԱնտոնինէ որդւոյ Սևերեայ ասէ՝ պատերազմեալ ընդ Վաղարշայ Պարսից արքայի ի Միջագետս, և մեռանել ի մէջ Եդեսիայ և Խառանու, և մերոյն Խոսրովու ոչ յոք հակամիտեալ»]։

Խորենացու այս վկայությունների մեջ անհավաստի է, հարկավ, նրա հաղորդագրությունը, որ իբր թե Խոսրովի հայր Վաղարշն էր «պատել պարսպով և հզոր պատվարով» Արտիմեդ քաղաքը, որն իր անունով անվանել էր Վաղարշապատ։ Իսկ, իրապես, ինչպես մենք վերև տեսանք, այդ արել էր ո՛չ թե այս Վաղարշը, այլ Սանատրուկի որդի Վաղարշ Ա-ը։ Ավելի քան հավանական է, որ Վաղարշապատը, որը 164 թվին հայտարարվել էր Հայաստանի գլխավոր քաղաք, ունեցած պիտի լիներ և՛ պարիսպ, և՛ պատվար Վաղարշ Բ-ից առաջ։ Խորենացու սխալ ենթադրությունը ծագել է նրանից, որ նրան հայտնի է եղել միմիայն մեկ Վաղարշ, որը Խոսրով Ա-ի հայրն էր։

Տարակուսելի է, իհարկե, Խորենացու հեքիաթային պատմությունը նաև Վաղարշավանի մասին։ Սակայն մեջ բերված վկայությունների մյուս մասերում իրենց հիմքում հավաստի են ու պատմական հյուսիսականների արշավանքը Հայաստան, Վաղարշի սպանությունը, Խոսրովի վրեժխնդրությունը և հունարեն գրով արձանի մասին տեղեկությունը։

Հասկանալի է ըստ ինքյան, որ Խորենացին, օգտվելով իր Պատմության այս մասում Բարդածանի աշխատությունից, սրա վկայությունները, ըստ իր սովորության, մշակել և ընդարձակել էր և շատ բան իրենից էր ավելացրել։ Նրա սեփական ենթադրությունն է, ըստ երևույթին, այն, որ արշավող հյուսիսականները խազիրներն էին ու բասիլները, որոնք ներխուժել էին Հայաստան Ճորա պահակի, այսինքն՝ Դերբենտի կողմով։

Հյուսիսականների արշավանքը, որի ընթացքում սպանվել էր Վաղարշ Բ-ը, Մարկվարտը ենթադրում է 198 թվին, իսկ Խալաթ-

յանցը, որն արշավողներին համարում է ալաններ, 196 թվին[1]։ Նրանց այս ենթադրությունները, որ սոսկ կռահումներ են, չեն կարող ընդունելի համարվել։ Հավանական է, սակայն, որ աշխարհավեր այս արշավանքի պատճառով էր, որ Հռոմեական կայսրությունը Սեպտիմիոս Սևերոսի ժամանակ որոշել էր դրամական նպաստ տալ Հայոց թագավորներին Կասպյան անցքի պաշտպանությունը հոգալու համար։

Վերոհիշյալ մեր դիտողությունները Վաղարշ Բ-ի և Խոսրով Ա-ի մասին, եթե նրանք ընդունելի համարվեն, կունենան մեծ կարևորություն։ Ինչպես հայտնի է, Տրդատ Ա-ի և նրա հաջորդների ժամանակ Հայոց թագավորությունը չդառավ ժառանգական նրանց շառավիղների գծով։ Արշակունյաց հարստության հաստատումը Հայաստանում, այսինքն՝ նրանց թագավորումը որդեցորդի, ինչպես այդ մատնանշել է Գևորգ Ասլանը[2], սկսվել էր միմիայն երկրորդ դարի վերջերում, և Հայ Արշակունիների դինաստիայի հիմնադիրն է Վաղարշ Բ-ը։ Կարելի է, ուրեմն, ենթադրել, որ Խորենացու Պատմության Վաղարշակը, որը Հայ Արշակունիների նախահայրն էր, հիշողություն է ո՛չ թե Տրդատ Ա-ի կամ պարթևական թագավոր Վաղարշ Ա-ի, ինչպես այդ ընդունում են հայագետներից ոմանք[3], այլ Խոսրով Ա-ի հայր Վաղարշ Բ-ի։

Վաղարշ Բ-ին հաջորդել էր նրա որդին՝ Խոսրով Ա-ը։ Ենթադրում են, որ Եգիպտոսում Թեբե քաղաքում գտնված հունարեն արձանագրությունը՝ «Խոսրով հայ տեսեալ զարմացայ»՝ վերաբերում է այս Խոսրով Ա թագավորին[4]։ Այս ենթադրությունը կարող է, իհարկե, վիճելի համարվել։ Սակայն, անկախ այս արձանագրությունից, Խոսրով Ա թագավորի գոյությունը Սեպտիմիոս Սևերոսի (193—211) և Անտոնինոս Կարակալլայի (211—217) ժամանակ միանգամայն անտարակուսելի է, որովհետև նա հիշատակված է

---

[1] Տե՛ս *Markwart*, Eranschahr, էջ 102, ծան. 4. *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 318։

[2] Տե՛ս *K. Aslan*, Etudes historiques sur le peuple arménien, էջ 135։

[3] Տե՛ս «Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Ցէթթէրի», թարգմ. Տաշյանի, Վիեննա, 1895, էջ 124. Աբեղյան Մ., Հայ ժողովրդական առասպելները, Վաղարշապատ, 1901, էջ 489, ծան. 1. *Адонц*, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908, էջ 432. Բասմաջյան Կ., Իսկական պատմութիւն Հայոց, Կ. Պոլիս, 1914, էջ 101 և ուրիշները։

[4] Տե՛ս Corpus inscr. graec. 4821. Նաև *Gutschmid*, Agathangelos, Zeit der Deut. Morg. Gesell., XXXI (1877), էջ 49. Տաշյան, Ագաթանգեղոս առ Գէորգայ սարրի եպիսկոպոսին և ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց, Վիեննա, 1891, էջ 108 և ուրիշները։

Խորենացու վերև բերված վկայություններում, որոնց աղբյուր են ծառայել երրորդ դարի առաջին կեսի հեղինակների, Բարդածանի և Փիրմիլիանոսի գրվածքները։

Խոսրով Ա-ը, ինչպես վերոհիշյալ իր առաջին վկայության մեջ հաղորդում է Խորենացին, կռվել էր հյուսիսային ազգերի դեմ իր հոր, Վաղարշի, վրեժն առնելու համար։ Նա գլխովին ջարդել էր նրանց, հարյուրից մեկին պատանդ էր արել և ի հիշատակ իր հաջողության, իբրև Հռոմեական կայսրության հպատակ ու վասալ, կանգնեցրել էր արձան հունարեն գրով։ Վերև մենք արդեն տեսանք, որ հենց երկրորդ դարի վերջերում և, հավանորեն, առաջին անգամ Վաղարշ Բ-ի կամ Խոսրով Ա-ի թագավորության ժամանակ, Հայաստանը դրամական նպաստ էր ստացել հռոմայեցիներից հյուսիսական բարբարոսներին դիմակայելու համար։

208 թվին վախճանվեց Վաղարշ Դ-ը, և պարթևական գահը ժառանգեց նրա որդին, Վաղարշ Ե-ը, իսկ 211 թվին Սեպտիմիոս Սեվերոսին հաջորդեց Անտոնինոս Կարակալլան (211—217)։ Այս վերջինը, իր հոր, Սեպտիմիոս Սեվերոսի, հաջողություններից քաջալերված, երազում էր Աղեքսանդր Մակեդոնացու նման, որն իր ամենասիրելի հերոսն էր, նվաճել ամբողջությամբ Առաջավոր Ասիան։

215 թվին Կարակալլան մեծ զորքով եկավ Անտիոք և ուզեց պատերազմի պատրվակ դարձնել այն, որ կիլիկեցի Անտիոքոս փիլիսոփան և Տրդատ Արշակունին[1], որը, հավանորեն, Վաղարշ Ե-ի հորեղբայրն էր, դավաճանելով իրեն, փախել էին պարթևական թագավորի մոտ։ Սակայն Վաղարշ Ե-ը, որովհետև գահակալական ներքին կռիվներ էին սկսվել իր և եղբոր, Արտավան Ե-ի միջև, հպատակվեց Կարակալլայի պահանջին և փախստականներին հանձնեց հռոմայեցիներին։

Այսպիսով, 215 թվին պատերազմի վտանգը կանխվեց։ 216 թվի սկզբներին, երբ Կարակալլան Անտիոքում էր գտնվում՝ նա, խարդախ միջոցների դիմելով, ուզեց Հռոմեական կայսրությանը միացնել Օսրոյեն-Եդեսիան ու Հայաստանը և այս երկու վասալ թագավորությունները դարձնել հռոմեական նահանգներ։ Անտիոք հրա-

---

[1] Այս Տրդատ Արշակունուն Մոմզենը ու նաև հայ պատմագետներից շատերը՝ Խալաթյանցը, Լեոն, Սանտալճյանը և ուրիշները, նույնացրել են Խոսրով Ա-ի որդու՝ Տրդատ Բ-ի հետ, որ անապացույց և անհավանական մի ենթադրություն է. տե՛ս *Mommsen,* Römische Geschichte, V, էջ 418. *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 323—324. Լեո, Հայոց պատմութիւն, Ա., էջ 479. *Sandalgian*, Histoire documentaire, էջ 560։

վիրվեց Օսրոյեն-Եդեսիայի Աբգար Ժ թագավորը, որն իսկույն կալանավորվեց և ուղարկվեց Հռոմ։ Այնուհետև Կարակալլայից սիրալիր նամակներ ստացավ նաև Հայաստանի Խոսրով Ա թագավորը։ Կայսրը նրան ևս հրավիրեց իր մոտ, հայտնելով, որ ցանկանում է նրան հաշտեցնել որդիների հետ, որոնց հետ նա վեճի մեջ էր։ Կարակալլայի մոտ միամտաբար գնաց նաև Խոսրով Ա-ը և իսկույն բանտարկվեց։

Հայերը, վրդովված Կարակալլայի ստոր վարմունքից, զենքի դիմեցին, և Թեոկրիտոս զորավարը, որն ուղարկվեց ապստամբությունը ճնշելու, չարաչար հաղթվեց և դուրս շպրտվեց հայկական սահմաններից (216 թվին)։

216 թվի այս անցքերի մասին մանրամասն տեղեկություններ հաղորդում է Կասսիուս Դիոնը, որ ավելորդ չեմ համարում թարգմանաբար մեջ բերել առանց կրճատումների։

1. Կասսիուս Դիոն, LXXVII, 1—3՝

«Արդ՝ խաբելով Օսրոյենի Աբգար թագավորին, որ իր մոտ գա իբրև բարեկամ՝ նրան բռնեց և կալանավորեց, և այսպիսով տիրեց Օսրոյենին, որն անտերունչ էր մնացել։ Իսկ Հայոց թագավորին, որը վեճի մեջ էր իր որդիների հետ՝ բարեկամական նամակներով նույնպես կանչեց, իբրև թե համոզելու որ նրանք խաղաղությամբ ապրեն. և սրանց հետ ևս վարվեց այնպես, ինչպես Աբգարի հետ։ Սակայն հայերը չհպատակվեցին նրան և դիմեցին զենքի. և նրանցից այլևս ոչ ոք և բնավ ոչ մի բանում նրան չէր հավատում, այնպես որ նա փորձով սովորեց, թե որքան վնասակար է ինքնակալ մարդուն խարդախորեն վարվել բարեկամների հետ»։

2. Նույնը, LXXVII, 21, 1՝

«Արդ՝ Թեոկրիտոսը, որին զորքով ուղարկել էր հայերի դեմ՝ մեծ դժբախտության մեջ էր ընկել և նրանց կողմից ծանր պարտության էր մատնվել»։

Հենց նույն այս ժամանակ խիստ ուժեղացել էր հակարքա Արտավան Ե-ը, որը գրավել էր պետության մայրաքաղաք Տիզբոնը։ Անտոնինոս Կարակալլան, որ առիթ էր որոնում Պարթևական թագավորությունը նվաճելու՝ խնդրեց Արտավանից տալ աղջկանը իրեն կին։ Ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը[1], կայսեր դիտավորությունն էր դառնալ պարթևական գահի ժառանգ և տիրել այնուհետև Պարթևական թագավորության։

---

[1] Cass. Dio, LXXVIII, 1, 1.

Մերժում ստանալով Արտավանից՝ Կարակալլան նրան պատերազմ հայտարարեց և արշավեց Պարթևաց երկիր։ Անցնելով Տիգրիս գետը՝ նա ավերեց ամբողջ երկիրը, որ գտնվում էր Մեդիայի շուրջը, առավ Ադիաբենի Արբելա քաղաքը և այնտեղ քանդել տվեց թագավորների գերեզմանները և նրանց աճյունը կարգադրեց ցրիվ տալ։ Պարթևները նրան դիմադրություն ցույց չտվին և ետ քաշվեցին ու աշխատեցին պատրաստել մի ուժեղ զորաբանակ։

216 թվի վերջերին Կարակալլան վերադարձավ Եդեսիա և ձմեռն անցկացրեց այնտեղ։ 217 թվի գարնանը նա նորից արշավանքի ելավ պարթևների դեմ, բայց ապրիլի 8-ին սպանվեց իր զինվորականներից մեկի ձեռքով Եդեսիայի ու Խառանի միջև[1]։

Կարակալլայի հաջորդ Մակրինոսը (217 թ.), երկու անգամ պարտություն կրելով պարթևներից Մծբինի մոտ՝ ստիպված եղավ նահանջել Ասորիք և Արտավան Ե-ի հետ կնքեց խաղաղություն հետևյալ պայմաններով՝ Միջագետքը տրվեց Հռոմին, և Օսրոյեն-Եդեսիան ճանաչվեց իբրև կայսրության ենթակա վասալ թագավորություն, սակայն Մակրինոսը պարտավորվեց վճարել պարթևներին, ի հատուցումն նրանց վնասների, 50 միլիոն դենար[2] (մոտավորապես 50 միլիոն ոսկի ֆրանկ)։

Հենց այդ ժամանակ բանտում մեռել էր Հայաստանի թագավոր Խոսրով Ա-ը, ուստի և Մակրինոսը ոսկե թագ ուղարկեց նրա որդուն, Տրդատ Բ-ին, որն արդեն թագավորում էր Հայաստանում։ Մակրինոսն ազատեց և ետ դարձրեց Հայաստան Տրդատ Բ-ի մորը, որը 11 ամիս բանտումն էր եղել, վերադարձրեց նաև հայերից առնված ավարը և ետ տվեց Տրդատ Բ-ին հայրենի կալվածքները Կապադովկիայում։ Հայոց թագավորը հույս ուներ նույնպես, որ հռոմայեցիներից կստանա տարեկան այն նպաստը, որ տրվում էր իր հորը։

217 թվի այս անցքերը ևս մանրամասն հիշատակված են Կասսիուս Դիոնի մոտ։

1. Կասսիուս Դիոն, LXXVIII, 26, 1—3՝

«Մակրինոսը, տեսնելով որ Արտավանը կրած այս չարիքների պատճառով խիստ զայրացած է և մեծ զորքով ներխուժել է Միջագետք՝ նախ նրան կամովին ուղարկեց գերիներին բարեկամական առաջարկներով հանդերձ և խաղաղության կոչ արեց, վերագրելով պատահած անցքերի պատճառը Կարակալ-

[1] Տե՛ս *Aeli Spart.*, Antoninus Caracallus, 6, 6 (Scriptores historiae Augustae, հրատ. Hohl-ի, 1927, էջ 188)։

[2] Տե՛ս *Zonaras*, 12, 13.

-լային։ Իսկ նա, չընդունելով այդ՝ հրամայեց որ, բացի այդ, Մարկրինոսը վերականգնի քանդված ամրոցներն ու քաղաքները, հրաժարվի բոլորովին Միջագետքից և տա հատուցումն ինչպես մյուս բոլոր վնասների, նույնպես և թագավորական գերեզմանների պղծման համար»։

2. Նույնը, LXXVIII, 27, 4՝

«Եվ, հարկավ, նա [Մակրինոսը], ինչպես ասացի, դադարեցրեց թշնամությունը Հայաստանի նկատմամբ, և Տրդատն ընդունեց թագը, որը նրան ուղարկված էր Մակրինոսի կողմից, նաև իր մորը, որին Կարակալլան տասնմեկ ամիս բանտում էր պահել, ստացավ նաև ավարը, որ տարված էր Հայաստանից, և կալվածքները, որ նրա հայրն ուներ Կապադովկիայում. իսկ փողը, որը ստացվում էր հռոմայեցիներից յուրաքանչյուր տարի՝ նա հույս ուներ, որ կստանա»։

217 թվի Արտավան Ե-ի հաղթությունները Պարթևական թագավորության վերջին հաջողություններն էին։ Շուտով Արևելքում տեղի ունեցան քաղաքական մեծ փոփոխություններ։ Պարթև Արշակունիները, որոնք ներքին անվերջ կռիվների պատճառով խիստ թուլացել էին, չկարողացան թագավորական իշխանությունը պահել իրենց ձեռքում, և նրանց փոխարեն պետության գլուխն անցան Սասանյան տոհմի թագավորները։

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՍԱՍԱՆՅԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՄԱՐ ՍՏԵՂԾՎԱԾ ՆՈՐ ԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ

**1. Սխալ կարծիքներ Պարթև Արշակունիների անկման պատճառների մասին.— Պարթև Արշակունիները նույնքան հավատարիմ էին Իրանի ավանդներին ու կրոնին, ինչպես և Սասանյանները։— 2. Պարթև Արշակունիների պետության թուլացող ու ապակենտրոնացած ներքին կազմակերպությունը։— 3. Ժողովրդի գրգռված տրամադրությունը։— 4. Սասանյանների դինաստիան.— Պապաքի որդու, Արտաշիրի, նվաճումները.— Արտաշիր Ա-ը Սասանյան նոր դինաստիայի հիմնադիր Իրանում։— 5. Սասանյանների ագրեսիվ արտաքին քաղաքականությունը։— 6. Պետության կենտրոնացումը.— զրադաշտական եկեղեցու մեծ դերը։— 7. Սասանյան ժամանակաշրջանի դրամները և նոր լեզուն։— 8. Հայ Արշակունիների մերձեցումը Հռոմին.— Բրյուսովի դիտողությունը հայերի կողմնորոշման մասին պարթևական և սասանյան ժամանակաշրջաններում.— Բրյուսովի դիտողության անհավանականությունը։**

*Պատմագիտական երկերում սովորաբար ենթադրում են, որ դինաստիական փոփոխությունը, որը տեղի ունեցավ Պարթևական թագավորության մեջ Արտավան Ե-ի իշխանության ժամանակ, մի խոր հեղաշրջում էր՝ ժողովրդական բուռն մի հակաշարժում, որի նշանաբանն էր վերականգնումը իրանական տրադիցիաների և զրադաշտական կրոնի։ Մոմզենը, օրինակ, իր «Հռոմեական պատմության» մեջ քաղաքական այդ փոփոխությունը բնորոշել է իբրև «ազգային ու կրոնական» վերանորոգում։*

> *«Սեվերոսի մահից (+211) քիչ տարիներ հետո,—ասում է Մոմզենը,—Իրանում տեղի ունեցավ մի հեղաշրջում, որը ո՛չ միայն նախկին շատ ճգնաժամերի նման վեհապետին տապալեց ու նաև խորտակվող Արշակունիների տեղ իշխանության գլուխ դրեց նոր դինաստիա, այլև, հրահրելով ազգային և կրոնական տարրերը հզոր հեղաշարժման՝ հաստատեց Պարթևական պետության հելլենականությամբ հագեցված խառնածին*

քաղաքակրթության (Bastardcivilisation) փոխարեն պետական կարգ, հավատք, բարոյական վարք և այն երկրամասի իշխանավորներին, որը ստեղծել էր հին պարսիկների տերությունը»[1]։

Նման կարծիքներ են հայտնել նաև Մորգանը, Խալաթյանցը և ուրիշները[2]։ Իմ կարծիքով, ընդհանրացած այս ենթադրությունները ո՛չ միայն վիճելի են, այլև պարզապես անհավանական։

«Քննական տեսության» առաջին հատորում (էջ 305) ես արդեն մատնանշել էի, որ առաջին դարի սկզբներում պարթևական գահը ստացել էր Արտավան Գ-ը (11—40 մեր թվ. հ.), որը, հիմնադիր դառնալով պարթևական թագավորական դինաստիայի նոր գծի՝ մեծ թափով զարգացնում էր և՛ իրանական կուլտուրան, և՛ զրադաշտական կրոնը։ Պետության իրանացումը և հելլենիզմի տեղատվությունը ու թուլացումը անընդհատ շարունակվել էին նաև Արտավան Գ-ի հաջորդների ժամանակ։ Ուստի բոլորովին զուրկ է հիմքից Մոմզենի և նրա հետևորդների պնդումը, որ իբր թե Պարթև Արշակունիների անկման պատճառն այն է եղել, որ նրանք հավատարիմ չէին մնացել իրանական ավանդներին և կրոնին։ Հայտնի է նաև, որ հենց այս հետին շրջանի բարեպաշտ պարթևական թագավորների ժամանակ, հավանորեն, Վաղարշ Ա-ի (51—75/81) կամ Վաղարշ Գ-ի (148—191) հրամանով, սկսել էին հավաքել և խմբագրել Ավեստայի սրբազան տեքստերը։

Հավանական է, ինչպես դժվար չէ համոզվել, ո՛չ թե Մոմզենի վերոհիշյալ կարծիքը, այլ Յուստիի ենթադրությունը, որը Պարթևական թագավորության անկման պատճառ համարում է Արշակունյաց պետության թուլահող ու ապակենտրոնացած ներքին կազմակերպությունը[3]։ Նրանց թագավորական իշխանության այս տկարությանը ու նաև անվերջ կրկնվող ներքին երկպառակություններին պետք է վերագրել, որ երբ Պարսքում սկսվեց Արշակունյաց դինաստիայի դեմ շարժում՝ սրանք չկարողացան իրենց հակառակորդին ցույց տալ պատշաճ դիմադրություն։

Եվ, իրավի, ինչպես հայտնի է, Պարթև Արշակունիներին չէր հաջողվել ստեղծել կենտրոնաձիգ ու սերտ համախմբված միացյալ պետություն։ Պարթևական բուն պետությունը, ինչպես հաղորդում է Պլինիոսը, ուներ իր կազմի մեջ 18 առանձին թագավորություն-

---

1 *Mommsen*, Römische Geschichte, V, էջ 411։

2 Տե՛ս *Morgan*, Histoire du peuple arménien, էջ 97. *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 332 և ուրիշները։

3 Տե՛ս *Justi F.*, Geschichte Irans, Grundriss der Iranischen Philologie, II Band, 5 Lieferung, Strassburg, 1903, էջ 511։

*ներ[1]։ 18 այս երկրների իշխանները, թեև վասալներն էին Պարթևաց թագավորի, սակայն գրեթե անկախ էին և կրում էին «թագավոր» կամ «շահ» տիտղոսը, մինչդեռ իրենց սյուզերենի պաշտոնական տիտղոսն էր «թագավոր թագավորաց», այսինքն՝ «շահնշահ»։*

*Ենթադրում են, որ այդ 18 թագավորությունները Իսիդորոս Խարաքսեցու մոտ հիշատակված այն երկրներն են, որոնք ձգված էին առևտրական ու ռազմական մեծ ճանապարհի երկարությամբ՝ սկսած Եփրատ գետից մինչև Սելևկիա, այնտեղից մինչև Էկբատանա-Համադան ու ապա բուն Պարթևստանի և Հերատի վրայով մինչև Արախոսիա։*

*Ադոնցի կարծիքով, հուզումների ժամանակ Սելևկյանների դեմ հիշյալ երկրներն անջատվել էին և դառել անկախ թագավորություններ՝ ոմանք պարթևների հետ միաժամանակ և ոմանք նույնիսկ ավելի առաջ։ Իբրև արդեն կազմակերպված ինքնակա թագավորություններ՝ նրանք հետագայում մտել էին Պարթևական պետության կազմի մեջ։ Այս վերջինը, ուրեմն, մի սերտ միասնականություն չէր, այլ մի բազմություն էր մանր երկրների, որոնցից յուրաքանչյուրն օժտված էր պետական կարգի իրավունքներով։ Սրանց կապը և կախումը Պարթևական թագավորությունից կայանում էին, Ադոնցի ասելով, նրանում, որ նրանք պարտավոր էին Արշակունիներին վճարել որոշ տուրք և տրամադրելու էին նրանց զինվորական ուժեր[2]։*

*Պարթևական թագավորության անկման պատճառները լուսաբանելիս՝ պետք է, բացի այդ, հատկապես նկատի ունենալ ժողովրդի գրգռված տրամադրությունը Արշակունիների դինաստիայի հանդեպ։ Ինչպես վերև տեսանք, երկրորդ դարի ընթացքում, Պարթևական թագավորության անկումից մի փոքր առաջ, հռոմեական զորքերը Տրայանոսի, Ավիդիոս Կասսիոսի և Սեպտիմիոս Սևերոսի առաջնորդությամբ երեք անգամ (115, 164 և 198 թվերին) ներխուժել էին Պարթևական պետության արևմտյան ու կենտրոնական երկրները և անպատիժ կերպով ավերել էին Միջագետքը, Ադիաբենը և Բաբելոնիան՝ Արշակունյաց թագավորների ապիկարության և նրանց միջև պարբերաբար կրկնվող խռովահույզ պառակտումների պատճառով։ Բնական է, իհարկե, որ վերոհիշյալ երկրների սրի ու կողոպուտի մատնված բնակչությունը պետք է ծայր աստիճան թշնամական վերաբերմունք ունենար դեպի իշխող դինաստիան։*

---

[1] **Տե՛ս** *Plinius*, Nat. Hist., VI, 26.

[2] **Տե՛ս** *Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 387։*

Ինչպես հայտնի է, 224 թվին Պարթև Արշակունիներին փոխարինեց Սասանյանների նոր դինաստիան, որի հիմնադիրը եղավ Արտաշիրը (224—241), որ Պարսքի Ստահր քաղաքի Անահիտի ատրուշանի վերակացու Սասանի թոռն էր։

Պարսքը, որը Աքեմենյան դինաստիայի թագավորների հայրենիքն էր, թեև Արշակունյաց թագավորների գերիշխանության տակն էր գտնվում, սակայն երրորդ դարի սկզբներում գրեթե անկախ էր։ Նա բաժանված էր այդ ժամանակ մի շարք տեղական մանր իշխանությունների, և ամեն մի փոքր ի շատե նշանավոր քաղաք ուներ իր սեփական արքան։ Տեղական այդ իշխաններից ամենից հայտնիներն էին արքայիկները Ստահր քաղաքի, որը Պարսքի հին թագավորների մայրաքաղաքն էր և գտնվում էր Պերսեպոլիսի ապարանքների ավերակների մոտ։

Արտաշիրի պապը, Սասանը, ամուսնացել էր Ստահրի արքունի տոհմից մի աղջկա հետ, և այդ ամուսնությունից ծնվել էր Պապակը, որը հաջորդեց Սասանին։ Օգտագործելով իր ազգակցական կապերը՝ Պապակը հաջողեցրեց, որ իր կրտսեր որդիներից մեկը, Արտաշիրը, ստանա Դարաբկերտ քաղաքում արգապետության բարձր զինվորական պաշտոնը։ Շուտով Արտաշիրը տիրեց այդտեղ բազմաթիվ քաղաքների, իսկ Պապակը ևս ապստամբեց Ստահրի արքայիկի դեմ, նրան սպանեց և նրա տեղ ինքը դառավ այդ քաղաքի իշխան։

Պապակի մահից հետո Ստահրում թագավորեց նրա մեծ որդի Շապուհը։ Սակայն Արտաշիրը, որն ինքն էր ուզում դառնալ Պարսքի թագավոր՝ ապստամբեց իր եղբոր դեմ։ Շուտով Շապուհը մահացավ կասկածելի պատահական մահով, և Արտաշիրը միահեծան տերը դառավ Ստահրի (208 թվին)[1] և ապա նաև ամբողջ Պարսքի։

Այնուհետև նա տիրեց Պարսքի արևելակողմում գտնվող Կրմանին և ենթարկեց իր իշխանությանը նաև Պարսքի հյուսիս-արևմտակողմում գտնվող Շոշաստանը (Սուզիանեն), Իսպահանը և Մեսենեն։

Հաղթական Արտաշիրի դեմ ռազմի ելավ այնուհետև ինքը՝ Արտավան Ե-ը։ Վճռական ճակատամարտը տեղի ունեցավ 224 թվի ապրիլի 28-ին Հորմիզդան դաշտում, որի տեղը դեռևս որոշված չէ։ Նյոլդեկեի կարծիքով, այդ դաշտը, հավանորեն, գտնվել է Շոշաստանում կամ Բաբելոնիայում[2]։ Արտավան Ե-ը այս ճակատամար-

---

[1] Տե՛ս *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, Copenhague, 1944, էջ 87։

[2] Տե՛ս *Th. Nöldeke*, Aufsätze zur persischen Geschichte, Leipzig, 1887, էջ 89.

*տում հաղթվեց և սպանվեց։ Այնուհետև Արտաշիրը մտավ Տիզբոն, և ապա 226 թվին կատարվեց նրա թագադրության հանդեսը, և նա հայտարարվեց «արքայից արքա (շահանշահ) Իրանի»։*

*Թագադրությունից հետո սասանյան Արտաշիր Ա թագավորը (224—241) հարձակվեց Միջագետքում Հատրա քաղաքի վրա, բայց չկարողացավ առնել։ Նա նվաճեց Մեդիան ու Համադան քաղաքը և ապա ուզեց գրավել նաև Ատրպատականն ու Հայաստանը, սակայն այստեղ նա հաջողություն չունեցավ։*

*Այն անցքերը, որ տեղի էին ունեցել Արևմուտքում, հիշատակված են Կասսիուս Դիոնի (+ մոտավ. 235 թ.) և Հերոդիանոսի (+ մոտավ. 240 թ.) մոտ։ Սրանց վկայությունները խիստ կարևոր են, որովհետև այս երկու հեղինակն էլ ժամանակակից էին վերոհիշյալ անցքերին։*

*«Բազմաթիվ ապստամբություններ ծագեցին [Աղեքսանդր Սեվերոսի ժամանակ],—պատմում է Կասսիուս Դիոնը,—զանազան կողմերում. և մի քանիսը թեև խիստ ահեղ էին, սակայն ճնշվեցին։ Այլ այն անցքերը, որոնք տեղի ունեցան Միջագետքում, ավելի ահավոր էին, և խսկապես որ սարսափ էին գցել բոլորի վրա՝ ո՛չ միայն Հռոմի բնակիչների, այլև մյուս տեղերի։ Եվ իրոք՝ մի ոմն պարսիկ Արտաշես, պարթևներին երեք ճակատամարտում հաղթելուց և նրանց Արտավան թագավորին սպանելուց հետո՝ ռազմի ելավ Հատրայի դեմ, որպեսզի այդ քաղաքն իրենց համար հենարան դարձնե ընդդեմ հռոմեացիների։ Նա կործանեց պարիսպը, բայց, կորցնելով իր զինվորներից շատերին, որոնք դարանի մեջ էին ընկել՝ ետ քաշվեց Մեդիա և, գրավելով այս երկրում, ինչպես և Պարթևաստանում, մասամբ բռնությամբ, մասամբ էլ ահաբեկմամբ, մի շարք շրջաններ՝ դիմեց դեպի Հայաստան։ Բայց այստեղ նրան դուրս վանեցին երկրի բնակիչները և մեդացիներից ոմանք ու նաև Արտավանի որդիները, և նա, ինչպես ոմանք ասում են, փախավ։ Իսկ ուրիշներն էլ ասում են, որ ետ քաշվեց, որպեսզի պատրաստե ավելի մեծ զորք։ Արդ՝ նա մեզ համար խիստ ահավոր եղավ, որովհետև դարանակալ էր եղել, սպառնալով ո՛չ միայն Միջագետքին, այլև Ասորիքին։ Եվ նա սպառնում էր, որ վերըստին ձեռք է բերելու ամեն ինչ, որպես նախնիքներից իրեն հասանելիք ժառանգություն, այն բոլորը, ինչ որ մի ժամանակ ունեին հին պարսիկները մինչև Հելլենական ծովը»*[1]։

[1] Տե՛ս Cass. Dio, LXXX, 3, 1—3 և 4, 1. Համեմատե՛ նաև Herodianus, VI, 2, 1—7 և Zonaras, XII, 15.

*Դիոնի այս վկայությունը հետաքրքիր է հատկապես այն տեսակետից, որ նրա մեջ մատնանշված է Սասանյանների արտաքին քաղաքականության նոր ուղղությունը։ Սասանյանները, ինչպես երևում է այս վկայությունից, իրենց հաջորդներ էին համարում Աքեմենյանների և իրենց նպատակ էին դրել վերականգնել հին պարսկական մեծ աշխարհակալությունը, որ գոյություն ուներ Աղեքսանդր Մակեդոնացուց առաջ։*

*Մինչդեռ Արշակունիների քաղաքականությունը Հռոմի հանդեպ ուներ ընդհանուր առմամբ պաշտպանողական բնույթ, Սասանյանները, ընդհակառակը, ինչպես վկայում է Դիոնը, ձգտում էին վերականգնել Կյուրոս Մեծի և Դարեհ Ա-ի ընդարձակ պետությունը և դառնում էին, հետևաբար, Հռոմեական կայսրության վտանգավոր ախոյանները։*

*Պետք է ասել նաև, որ սասանյան մշակույթը, լինելով շարունակությունը Արշակունյաց շրջանի կուլտուրայի, ուներ մի քանի բնորոշ ու ուշագրավ առանձնահատկություններ։*

*Ամենահիմնական փոփոխությունն այն էր, որ Սասանյանների ժամանակ Իրանական պետությունը հետզհետե դառնում էր կենտրոնացած ու միացած թագավորություն։ Իրանի երկրամասերի պետերը, որոնք Արշակունիների ժամանակ գրեթե անկախ արքաներ էին, թեև պահպանեցին իրենց բարձր տիտղոսները, սակայն, իրականորեն, Սասանյան Պարսկաստանի բարձր պաշտոնյաներ էին և համարվում էին «արքայից արքաների» «գործակալներ»։*

*Արշակունյաց շրջանի նախարարական կազմակերպությունը մնաց անխախտ նաև Արտաշիր Ա-ի և նրա հաջորդների ժամանակ։ Բայց Սասանյանները, հետևելով, ըստ երևույթին, Աքեմենյանների հին տրադիցիաներին, ստեղծեցին ֆեոդալական զորեղ մի միապետություն։*

*Սասանյան պետության երկրորդ բնորոշ առանձնահատկությունն էր բացառիկ մեծ դերը մազդայական դրադաշտական կրոնի և ազդեցիկ ու մոլեռանդ հոգևորականության։ Լինելով սերունդ մազդայական բարձր հոգևորականության՝ Սասանյանները, բնականաբար, ամեն կերպ հովանավորեցին իրենց նախնիքների կրոնը ու պաշտամունքը։*

*Մազդայական կրոնը, որը ժողովրդական կրոնն էր Իրանում ու նաև Պարսքում, դավանում էին, հարկավ, և Արշակունիները։ Սակայն Արտաշիր Ա-ի թագավորության ընթացքում մի նոր դարաշրջան սկսվեց դրադաշտական վարդապետության և եկեղեցու աննախընթաց զարգացման համար։*

Ուշագրավ մի վկայություն ունի այդ մասին բյուզանդական հեղինակ Ագաթիասը։

«Արտավանը ինքը,—ասում է Ագաթիասը,—հաղորդակից էր մոգերի սրբազան ուսման և նա ինքը ևս կատարում էր նրանց խորհրդածեսերը։ Սրա ժամանակից սկսած մոգական կղերականները դառել էին հզոր և բարձրամիտ, ինչպես որ նրանք էին և առաջ. և իրենց անունը ևս պահպանել էին հնուց, բայց նրանք առաջ այդքան չէին բարձրացել պաշտոնների ու արտոնությունների մեջ։ Իսկ այժմ բոլորը նրանց պատվում են ու անչափ մեծարում են և պետությունը կառավարվում է նրանց խորհրդով ու նրանց հրամաններով։ Նույնպես նաև մասնավոր կյանքում, երբ խնդիրը իրավունքի հարցերի մասին է, խոսքը նրանց է պատկանում և նրանք են որոշում, թե ինչ պետք է անել, և վճիռ են կայացնում։ Եվ ընդհանրապես՝ պարսիկների մոտ ոչ մի բան չի համարվում օրինավոր և իրավացի, եթե մոգերի կողմից չէ գտել հավանություն»[1]։

Հետաքրքիր է խիստ և Արտաշիր Ա-ի տված հետևյալ խորհուրդը՝ իր որդի Շապուհին, որը մեջ է բերված արաբական պատմագիր և աշխարհագիր Մասուդիի մոտ.

«Իմացի՛ր, իմ որդի, որ կրոնը և թագավորությունը երկու քույրեր են, որոնցից և ոչ մեկը չէ կարող գոյություն ունենալ առանց մյուսի. որովհետև կրոնը թագավորության հիմքն է, իսկ թագավորությունը կրոնի պաշտպանն է»[2]։

Համաձայն զրադաշտական տրադիցիայի, Արտաշիր Ա-ի հանձնարարությամբ կազմվել էր Ավեստայի ցիրուցան եղած տեքստերի կանոնական պաշտոնական ժողովածուն։

Արտաշիր Ա-ի կրոնական ջերմեռանդության մի ցուցանիշը նաև այն է, որ նրա կտրած դրամների վրա մի կողմում դրոշմված է թագավորի պատկերը, իսկ հակառակ կողմում՝ զոհասեղանը, որը զրադաշտական կրակապաշտության խորհրդանիշն է։

Հատկանշական է նույնպես, որ Արտաշիր Ա-ը, հետևելով Աքեմենյանների օրինակին, սկսել էր կտրել ոսկի դրամներ, մինչդեռ Պարթև Արշակունիների ժամանակ գոյություն ունեին միմիայն արծաթի և պղնձի դրամներ։ Մոմզենի կարծիքով, այս ակներև մի

---

[1] Տե՛ս *H. Gelzer*, Eznik und die Entwicklung des persischen Religionssystem, Zeitschrift für armenische Philologie, I, Marburg. 1903, էջ 156։ Համեմատե՛ Agathias, II, 26 (հրատ. Niebuhr-ի, էջ 122)։

[2] Տե՛ս *Masoudi*, Les prairies d'or, Paris, 1861—1877, II, XXIV, էջ 162։

նշան էր, որ Սասանյաններն իրենց հավասարազոր էին կարծում հռոմայեցիներին և իրենց գերիշխանությունը համարում էին բացարձակ ու անսահման[1]։

Պետք է նաև մատնանշել, որ Սասանյանների ժամանակ փոփոխության ենթարկվեց պետական լեզուն։ Պարթև Արշակունիների պաշտոնական լեզուն Արշակունյան կամ հին պարթևական պահլավերենն էր, մինչդեռ Սասանյանների ժամանակ հետզհետե ուժեղացավ և առաջացավ նոր կամ Սասանյան պահլավերենը, որը, ինչպես մատնանշում է Խրիստենսենը, շատ բառեր փոխ էր առել Արշակունյան պահլավերենից[2]։

Սասանյանների իշխանության հաստատումը Իրանում քաղաքական տեսակետից մի խոշոր անցք էր, որ մեծ նշանակություն ունեցավ և Հայաստանի համար։

Արտաշիր Ա-ի վերաբերմունքը դեպի Հայաստանը չէր կարող, իհարկե, թշնամական չլինել, որովհետև Հայաստանն Արշակունիների երկրորդ թագավորությունն էր (Secundogenitur) և այստեղ էին ապավինել Արտավան Ե-ի որդիները և Սասանյան դինաստիայի հակառակորդները։

Հայ Արշակունիները, որոնք սերտ կապված էին պարթևական Իրանի հետ, որովհետև իրենց վտանգ էր սպառնում Սասանյանների կողմից, աշխատեցին այնուհետև մերձենալ ու բարեկամանալ Հռոմեական կայսրության հետ։ Նրանց արևմտյան այս կողմնորոշումը, ինչպես կտեսնենք, Հայաստանի համար ունեցավ ո՛չ միայն քաղաքական, այլև կուլտուրական մեծ հետևանքներ։

Այդ մասին Վ. Բրյուսովը իր «Հայ ժողովրդի պատմական բախտի տարեգրության» մեջ արել է մի քանի հետաքրքիր դիտողություններ, որ ավելորդ չեմ համարում թարգմանաբար մեջ բերել մանրամասն կերպով։

> «Հռոմայեցիները,—ասում է Բրյուսովը,—[Հայաստանում] հաջողություն էին ձեռք բերում կամ զինվորական ուժով և կամ նենգությամբ, իսկ պարթևները՝ ավելի խոր ազդեցությամբ, որը հիմնված էր երկու ժողովուրդների մշակույթների և սովորույթների մերձակցության վրա։ Հայերի համար հռոմայեցիները երկար ժամանակ խորթ ժողովուրդ էին և արտաքին ուժ էին, որին հարկադրված էին հպատակվել։ Իսկ պարթևները հարե-

[1] *Տե՛ս Th. Mommsen,* Römische Geschichte, V, էջ 417։

[2] *Christensen Ar.,* L'Iran sous les Sassanides, Copenhague, 1944, էջ 46 և 94։

վաններ էին և բարեկամներ, ուստի և պարթևական կուսակցությունը համարվում էր Հայաստանում ազգային։ Բայց, որովհետև հայերը ըստ իրենց քաղաքականության ընդհանուր ուղղության Հռոմի թշնամի էին մեծ մասամբ այն դարերում, երբ Հռոմեական կայսրությունն ամենահզոր պետությունն էր աշխարհում՝ նրանք դրանով հենց իրենց ուժերը սպառեցին ապարդյուն կռվում։ Երրորդ դարի կեսերում Հայաստանը դառել էր երկրորդական արևելյան պետություն և կորցրել էր այն բոլորը, ինչ որ ձեռք էր բերել ավելի բախտավոր ժամանակներում։ Սակայն երբ երրորդ դարի կեսում հայերը փոխեցին իրենց քաղաքականությունը և սերտ բարեկամություն հաստատեցին Հռոմի հետ՝ հանգամանքներն արդեն փոխված էին. այդ արդեն մի շրջան էր, երբ կայսրության ուժը սկսել էր նվազել և, ընդհակառակը, Առաջավոր Ասիայում գերակշռող նշանակություն էր ստացել արևելյան պետությունը նոր պարսիկների, որոնց հետ հայերի հարաբերությունները դառել էին նույնպես թշնամական։ Այս ճակատագրական կապը՝ նախ կործանման դատապարտված Պարթևստանի հետ ընդդեմ ուժեղացող Հռոմի և ապա տկարացող կայսրության հետ ընդդեմ զորեղացող Պարսկաստանի—գլխավոր պատճառներից մեկն էր Հայաստանի զրկման իր անկախությունից»[1]։

Բրյուսովի այս ընդհանրացումը, որ հավանական է համարվում, իմ կարծիքով համոզիչ չէ։

«Քննական տեսության» առաջին հատորում ես մատնանշել էի, որ հայերի պարթևական կողմնորոշումը համապատասխանում էր երկրի շահերին, որովհետև պարթևները վտանգավոր չէին Հայաստանի անկախության համար, մինչդեռ հռոմեական «բարեկամությունը» կորուստ էր սպառնում Հայաստանի ո՛չ միայն քաղաքական, այլ նաև կուլտուրական ինքնուրույնությանը[2]։ Վիճելի է, բացի այդ, Բրյուսովի պնդումը, որ իբր թե Հայ Արշակունիները իրենց սխալ կողմնորոշման պատճառով պարթևական ժամանակաշրջանում (66—226) Հայաստանի ուժերը սպառել էին ապարդյուն կռիվների մեջ։ Իրապես, ինչպես վերև տեսանք, Հայ Արշակունիները, մեծ մասամբ, աշխատել էին այդ ժամանակ չեզոքություն

---

1 *Տե՛ս* *В. Брюсов*, Летопись исторических судеб армянского народа, Ереван, 1940, *էջ 42—43։*

2 *Տե՛ս «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության», I, էջ 279—280 և 293։*

պահպանել. օրինակ՝ 116 թվին Կատիլիուս Սեվերոսի դեմ կռվի ժամանակ ու նաև 194—8 և 216 թվերին Սեպտիմիոս Սեվերոսի և Անտոնինոս Կարակալլայի արշավանքների ընթացքում։ Եթե պարթևական ժամանակաշրջանում Հայ Արշակունիները, հակառակ հայ ժողովրդի կենսական շահերին, մասնակից էին դառնում հաճախ հռոմեա-պարթևական պատերազմներին՝ այդ, իհարկե, անխուսափելի էր շնորհիվ Հայաստանի բուֆերական կացության և հռոմայեցիների ագրեսիային։

Ճիշտ է՝ 226—387 թվերին Հայ Արշակունիների քաղաքականությունը Սասանյան Պարսկաստանի հանդեպ բավարարաչափ ճկուն ու հեռատես չէր, սակայն պետք է նկատի ունենալ, որ նրանց հակապարսկական կողմնորոշման շնորհիվ էր, որ Հայաստանը կարողացավ պահպանել իր կուլտուրական ինքնուրույնությունը։

## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

# ՏՐԴԱՏ Բ-Ը ԵՎ ՆՐԱ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՀՌՈՄԵԱԿԱՆ-ՍԱՍԱՆՅԱՆ ԿՌԻՎՆԵՐԻՆ

**1. Պատմագետների սխալ կարծիքը Տրդատ Բ-ի հաջորդ՝ Արտավան Ե-ի եղբայր Խոսրովի մասին։— 2. Ագաթանգեղոսի, Զենոբի և Պրոկոպիոսի համապատասխան վկայությունները և նրանց սխալ բացատրությունները։— 3. Տրդատ Բ-ի երկարատև թագավորությունը։— 4. Արտաշիր Ա-ի ներխուժումը Միջագետք և Ալեքսանդր Սևերոսի արշավանքը.— հակասական կարծիքներ այս արշավանքի հաջողության մասին։— 5. Հայ աղեղնաձիգ գնդեր Մաքսիմինոս Թրակացու՝ գերմանացիների դեմ կռվող բանակում։— 6. Արտաշիր Ա-ի և Շապուհ Ա-ի նոր արշավանքներն արևմուտքում.— Հայաստանն այդ արշավանքների ժամանակ նվաճված չէր։— 7. Գորդիանոս Գ-ի հաղթական արշավանքը և Միջագետքի վերագրավումը։— 8. Փիլիպպոս Արաբացու դաշնագրությունը Շապուհ Ա-ի հետ.— տարբեր կարծիքներ այդ դաշնագրի մասին։— 9. Հայաստանի հպատակումը Սասանյան Պարսկաստանին և Տրդատ Բ-ի փախուստը։— 10. Հայկական ավանդությունը Տրդատ Բ-ի հաղթական պատերազմների մասին.— այդ ավանդության պատմականությունը։— 11. Մամիկոնյանների և Կամսարականների գաղթը Հայաստան։**

*Ինչպես հայտնի է, երրորդ դարի առաջին կեսի պատմական անցքերը, որ տեղի էին ունեցել Հայաստանում, բանասիրական և պատմագիտական գրեթե բոլոր նոր երկերում խճճված են և սխալ են լուսաբանված։ Նրանց մեջ Ագաթանգեղոսի Պատմության՝ Խոսրով Մեծի մասին վիպական-բանաստեղծական պատումները համարվել են ստույգ և արժանահավատ, ուստի և բոլոր այդ երկերի հեղինակները ենթադրել են, որ Տրդատ Բ-ը, որը 217 թվին ստացել էր թագ Մակրինոս կայսրից (217—218), թագավորել է Հայաստանում միայն մինչև 221 կամ 222 թիվը։ Իսկ սրան հաջորդել է Խոսրով Մեծը, որ Պարթևաց թագավոր Արտավան Ե-ի եղբայրն էր[1]։*

[1] *Բացի Տաշյանից, Խալաթյանից, Լեոյից, Աստուրյանից, Սանտալճյանից և ուրիշ հայ բանասերներից, այս ենթադրությունը հավանական են համարել նաև եվրոպական գիտնականներից շատերը. օրինակ՝ Գուտշմիդը, Յուստին,*

Արտավանի մահից հետո, ինչպես վկայում է հայկական վիպական ավանդությունը, Հայոց Խոսրով թագավորը, իր եղբոր վրեժն առնելու համար, ավելի քան տասը տարի կռվում է Արտաշիրի դեմ։ Սա, չկարողանալով հաղթել հայերին զենքի ուժով՝ խաբեությամբ սպանել է տալիս Խոսրովին և, արշավելով Հայաստան, տիրում է նրա երկրին։

Որ Խոսրով Մեծը եղբայրն է եղել Արտավան Ե-ի և թագավորել է Հայաստանում Աղեքսանդր Սեվերոսի (222—235) իշխանության առաջին տարում՝ այդ, ինչպես կարծում են, մատնանշված է ո՛չ միայն հայկական աղբյուրներում, այլև վեցերորդ դարի բյուզանդական պատմագիր Պրոկոպիոսի մի վկայության մեջ։

Նկատի ունենալով այս խնդրի առանձին կարևորությունը՝ ավելորդ չեմ համարում մեջ բերել բոլոր այդ վկայությունները մանրամասն կերպով։

1. Agathangelus (հունարեն թարգմանությունը), հրատ. de Lagarde, Göttingen, 1887, էջ 8՝

«Արդ՝ երբ Արտավանի մահից հետո, որին սպանել էր Սասանի Արտաշիր որդին՝ այդ գույժը հասավ Հայաստանի թագավոր Խոսրովին, Արտավանի եղբորը, որը երկրորդն էր Պարթևական պետության,—որովհետև նա որ Հայոց թագավորն էր՝ Պարթևաց պետության երկրորդն էր,—և թեպետ վաղուց արդեն լսել էր այդ տխուր լուրը, սակայն չկարողացավ նախօրոք բանակ կազմել և ճիշտ ժամանակին զորք տալ ճակատամարտի համար»։

2. Զենոբ Գլակ, տե՛ս «Յովհան Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ», հրատ. Ա. Աբրահամյանի, Երևան, 1941, էջ 66—67՝

«Վաղարշի որդին, Խոսրովը, վրեժխնդիր եղավ իր թագավորության ժամանակ իր եղբոր Արտևանի համար, և երբ երկու թագավորները, Հայոց և Պարսից արքաները, իրար դեմ կռվի էին ելել՝ պատերազմը պարսիկների դեմ սաստկացավ և Հայոց թագավորը զորացավ ու սկսեց ավերել Պարսից երկիրը տասը տարի շարունակ և աշխատեց հիմնահատակ անել սպանմամբ և գերությամբ»։

---

**Մարկվարտը և Քրիստենսենը.** տե՛ս *Gutschmid A.*, Agathangelos, ZDMG, XXXI 1877. *Justi F.*, Geschichte Irans, Grundriss der Iranischen Philologie, II, 5, Strassburg, 1903. *Markwart*, Beiträge zur Geschichte und Sage von Eran, ZDMG, XLIX, 1895. *Christensen*, Sassanid Parsia, Cambridge Ancient History, vol. XII, cap. IV (1939).

3. Procopii Caesarensis, De aedificiis *գիրք* III, *գլ.* I, 4—7՝

*«Մի ժամանակ Հայոց թագավորը նույն իրենց ցեղից էր, ինչպես այդ պատմում են նրանք, որ գրել են նրանց հնագույն պատմությունը։ Բայց երբ Աղեքսանդր Մակեդոնացին իշխանությունից զրկեց Պարսից թագավորին՝ պարսիկները հնազանդվեցին նրան և մնացին հանգիստ։ Իսկ պարթևները ապստամբեցին մակեդոնացիների դեմ, հաղթեցին պատերազմում, նրանց այնտեղից դուրս վտարեցին և երկիրը գրավեցին մինչև Տիգրիս գետը։ Այնուհետև Պարսից պետությունը մոտ 500 տարի մնաց նրանց իշխանության տակ՝ մինչև այն ժամանակը, երբ Մամեայի որդի Աղեքսանդրը [=Աղեքսանդր Սևերոս, 222—235] թագավոր դառավ հռոմայեցիների։ Եվ այն ժամանակ Պարթևաց թագավորներից մեկն իր եղբորը, որի անունն էր Արշակ, կարգեց թագավոր Հայոց, ինչպես այդ ասում է Հայոց պատմությունը։ Թող չկարծե մեկը, որ Արշակունիները ծագումով հայ են։ Ազգականության պատճառով նրանք հինգ հարյուր տարի պահպանել էին իրար հետ խաղաղություն»։*

*Մեջ բերված այս վկայությունները, ինչպես այժմ պարզված է, բնավ չէին կարող կռվան ծառայել պատմագետների վերոհիշյալ եզրակացություններին։ Ագաթանգեղոսի և Զենոբ Գլակի վերև բերված վկայությունների մեջ «եղբայր» բառը գործածված է, ինչպես շատ ճիշտ մատնանշել է Աբեղյանը, ոչ իր իսկական իմաստով, այլ «ազգական, ազգակից» նշանակությամբ*[1]*։ Մենք վերև տեսանք, որ Հայոց Խոսրով Ա թագավորը, իսկապես, մոտ ազգական էր Պարթևաց Վաղարշ Դ թագավորի (191—208), ուրեմն՝ և Արտավան Ե-ի, որը Վաղարշ Դ-ի եղբայրն էր։*

*Պրոկոպիոսի վկայությունը ևս բոլորովին պարզ է*[2]*։ Արշակ թագավորի իշխանությունը Հայաստանում նա դնում է պարզապես Պարթևական թագավորության սկզբներում, ուստի և իր վկայության վերջում ասում է, որ իրենց ազգականության պատճառով Պարթև և Հայ Արշակունիները հինգ հարյուր տարի պահպանել էին*

---

[1] *Տե՛ս* Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն, I, էջ 597։ Համեմատե՛ Փավստոս, I, գլ. Է՝ «Եւ խոյս ետ թագաւորն Հայոց Խոսրով յիւրմէ եղբարցն, նոյն ի Սանէսանայ յարքայէն Մազքթաց»...։ «Իբրև ետես [Խոսրով] ալ սկսաւ. ասէ՝ եղբայր իմ էր, ազգաւ Արշակունի»։*

[2] *Պրոկոպիոսի վկայության ուղիղ մեկնությունը տվել են Տաշյանը և Ադոնցը. տե՛ս Հ.* Տաշյան, *Ագաթանգեղոս, Վիեննա, 1891, էջ 103—104.* Адонц, Начальная история Армении у Себеоса, „Византийский Временник", том VIII, № 1—2, 1901, էջ 292—294։

իրար հետ խաղաղություն։ Պրոկոպիոսի վկայությունից, ինչպես տեսնում ենք, բնավ չի հետևում, որ իբր թե պարթևների թագավորն իր եղբայր Արշակին կարգել էր Հայոց թագավոր Աղեքսանդր Սևերոսի ժամանակ։

Ներքև մենք կտեսնենք, որ Ագաթանգեղոսի Պատմության մեջ, որին աղբյուր է ծառայել հայ ժողովրդական վեպը, կարևոր հիշողություններ են պահպանվել երրորդ դարի պատմական անցքերի մասին։ Սակայն միանգամայն ակներև է, որ նրա մեջ, ինչպես ցույց է տվել Աբեղյանը[1], մեծ տեղ է բռնում վիպական տարրը և տեղ-տեղ պատահում են նաև անունների ու դեպքերի շփոթումներ։

Իմ նախորդ աշխատություններից մեկում ես առանձնապես մատնանշել էի, որ Ագաթանգեղոսը, Սեբեոսը և Խորենացին երրորդ դարում հիշատակում են միայն երկու հայ թագավոր՝ Խոսրով Մեծ և Տրդատ Մեծ, մինչդեռ այդ դարում Հայաստանում իշխել են, իրապես, հինգ թագավոր հետևյալ հաջորդականությամբ՝ Խոսրով Ա, Տրդատ Բ, Արտավազդ, Խոսրով Բ և Տրդատ Գ[2]։ Միանգամայն բնական է, ուրեմն, որ հիշյալ պատմագիրների մոտ սովորական են և՛ ժամանակագրական, և՛ այլ շփոթումներ։ Հատկապես Ագաթանգեղոսի Պատմության մեջ, ինչպես այժմ հունա-հռոմեական աղբյուրների օգնությամբ պարզված է[3], Տրդատ Գ-ի հոր, Խոսրովին են վերագրված այն բոլոր դեպքերը, որ, իրապես, տեղի էին ունեցել Տրդատ Բ-ի ժամանակ, որը Հայաստանում թագավորել էր 216-ից մինչև 252 թիվը։

Երրորդ դարի պատմական անցքերը ներքև մենք տալու ենք համաձայն հունա-հռոմեական աղբյուրների, որոնց օգնությամբ, ինչպես կտեսնենք, նաև որոշվում են Ագաթանգեղոսի վիպական ավանդության մեջ եղած իրական պատմական հիշողությունները։

228 թվին, ինչպես վերև ասացինք, Սասանյան Արտաշիր Ա-ը, իր իշխանությունը Մեդիայի ու Ադիաբենի որոշ շրջանների վրա տարածելուց հետո, հարձակվել էր նաև Հայաստանի վրա։ Սակայն այստեղ նրան հաղթական դիմադրություն էր ցույց տվել ո՛չ թե

---

[1] Տե՛ս «Հայոց հին գրականության պատմություն», I, էջ 165—166 և 591—605։

[2] Տե՛ս Հ. Մանանդյան, Գառնիի հունարեն արձանագրությունը և Գառնիի հեթանոսական տաճարի կառուցման ժամանակը, Երևան, 1946, էջ 12—13։

[3] Տե՛ս Գարագաշյան, Քննական պատմութիւն, Բ, էջ 268 և Գ, էջ 302, 306. *K. Aslan*, Études historiques sur le peuple arménien, էջ 141—143. *A. Аннинский*, Армянские историки как исторические источники, Одесса, 1899, էջ 43 և ուրիշները։

Խսրովը, ինչպես սովորաբար ենթադրվում է, այլ Խոսրով Ա-ի որդի Տրդատ Բ-ը։

Այս անհաջողությունից մեկ տարի հետո, 230 թվին, Արտաշիր Ա-ը սկսեց մի նոր մեծ արշավանք՝ այս անգամ հռոմեական Միջագետքի ուղղությամբ։ Նա պահանջեց հռոմայեցիներից, որ վերադարձնեն իրեն բոլոր այն երկրները, որոնք հին ժամանակներում պատկանել են Աքեմենյան Պարսկաստանին, այն է՝ ամբողջ Առաջավոր Ասիան։

230 թվին պարսկական զորքերն անցան Եփրատ գետը, գրավեցին Միջագետքը և պաշարեցին Մծբինը. պարսկական հեծելազորքի ասպատակություններին ենթարկվեցին նաև Միջագետքի հարևան երկրները՝ Ասորիքը և Կապադովկիան։

Հռոմի կողմից խաղաղության պահպանման ջանքերը մնացին անհետևանք, և Աղեքսանդր Սևերոս կայսրը մի մեծ բանակով եկավ Արևելք՝ Անտիոք քաղաքը։ Պատերազմական գործողությունները Սասանյան Պարսկաստանի դեմ սկսվեցին 232 թվին։

Հռոմեական բանակը, բաժանված երեք մասի, թշնամու վրա հարձակվելու էր երեք ուղղությամբ։ Առաջին զորամասը, հյուսիսայինը, միանալով դաշնակից հայերի հետ, արշավելու էր Հայաստանի վրայով Մեդիա, ըստ երևույթին, Յունիուս Պալմատուսի առաջնորդությամբ[1]։ Երկրորդ զորամասը պետք է գնար դեպի Տիզբոն հարավային ուղղությամբ և Եփրատ գետի երկարությամբ։ Իսկ երրորդ զորամասը, կենտրոնականը, պետք է առաջ շարժվեր Աղեքսանդր Սևերոսի առաջնորդությամբ հյուսիսային Միջագետքի կողմով։

Այս երեք զորամասերից հաջողությամբ կատարեց իրեն տրրված առաջադրանքը միմիայն առաջինը, որը ներխուժեց Մեդիա և այնտեղ ավերածության մատնեց քաղաքներն ու գյուղերը։ Կենտրոնական գլխավոր զորամասը Աղեքսանդր Սևերոսի անվճռականության պատճառով շատ քիչ առաջ շարժվեց։ Իսկ հարավայինը, որի վրա հարձակվել էր ինքը՝ Արտաշիրը, ծանր պարտություն կրեց։

Այնուհետև Աղեքսանդր Սևերոս կայսրը, որի եվրոպական զինվորները չէին դիմանում Միջագետքի կլիմային, կարգադրեց զորամասերին նահանջել Անտիոք, և հռոմեական հյուսիսային զորամասը իր վերադարձի ժամանակ բավական կորուստներ ունեցավ Հայաստանում այնտեղի ձմեռվա ցրտերի պատճառով (233 թ.)։

---

[1] Տե՛ս *Aeli Lampridii,* Alexander Severus, 58, 1 (Scriptores historiae Augustae, ed. Hohl, vol. I, Lipsiae, 1927, էջ 297)։

*Այս պատերազմի ընթացքում, ըստ երևույթին, մեծ կորուստներ էր ունեցել և ետ էր նահանջել նաև Արտաշիր Ա-ը։ Դրանով հենց, հավանորեն, պետք է բացատրել, որ պատերազմն անորոշ ելք ունեցավ, և Միջագետքը մնաց հռոմեացիների ձեռքին։*

*Պետք է ասել, որ Ալեքսանդր Սևերոսի այս արշավանքի մասին հունա-հռոմեական աղբյուրները հայտնում են հակասական կարծիքներ։ Բուն հռոմեական հեղինակները, օրինակ՝ Լամպրիդիոսը, Սևերոսի արշավանքը համարում են հաղթական և փայլուն, սակայն հունական պատմիչները, օրինակ՝ Հերոդիանոսը և Զոնարասը, հռոմայեցիներին համարում են պարտված։*

1. Aeli Lampridii, Alexander Severus, 55, 1—3 *և* 56, 1

*«Արդ՝ այնուհետև նա [Ալեքսանդր Սևերոսը] մեծ պատրաստությամբ արշավեց պարսիկների դեմ և հաղթեց նրանց հզոր թագավոր Արտաշիրին։ Նա հենց ինքը շրջանցում էր իր զորքի թևը, քաջալերում զինվորներին և մոտ էր գալիս, թեև դեռևս խնամակալության տակ էր։ Նա հանդես էր բերում մեծ ուժ և առանձին զինվորներին հորդորում էր խոսքով՝ սխրագործություններ անել։ Հաղթելուց և փախցնելուց հետո ահեղ թագավորին, որ ռազմի էր ելել, բերելով իր հետ յոթ հարյուր փիղ, հազար և ութ հարյուր գերանդազեն կառք և բազմահազար հեծելազոր՝ Ալեքսանդրը իսկույն վերադարձավ Անտիոք և իր զորքը հարստացրեց ավարի շնորհիվ, որ առել էր պարսիկներից. նա հրամայեց, որ զորավարները, գլխավորները ու նաև իրենք զինվորները վերցնեն իրենց, ինչ որ հափշտակել են գյուղերում։ ...Այնուհետև նա եկավ Հռոմ, ուր մեծ շուքով կատարեց հաղթահանդես»*[1]*։*

2. Herodianus, Ab excessu divi Marci libri octo, VI, 5—6՝

*«Երբ այդ գործերը կարգավորվեցին՝ նա [Ալեքսանդր Սևերոսը] բազմաթիվ զորք հավաքեց և, հենց որ համոզվեց, որ իր զորքերն ուժեղ են և համապատասխանում են բարբարոսների մեծ թվին՝ խորհրդակցեց իր բարեկամների հետ և բաժանեց զորքը երեք մասի։ Նա հրամայեց, որ մի մասը գնա հյուսիսային կողմերը և, անցնելով Հայաստանի վրայով, որը համարվում էր հռոմայեցիների բարեկամ, արշավե մեդացիների երկիրը։ Մյուս մասը զորքի նա ուղարկեց, որպեսզի սա շրջադիտե բարբարոսների արևելյան կողմերը, ուր, ինչպես ասում են,*

---

[1] Տե՛ս Scriptores historiae Augustae, ed. E. Hohl, vol. I, Lipsiae, 1927, էջ 295։

խառնվելով իրար հետ Տիգրիսը և Եփրատը՝ կազմում են ընդարձակ ճահճային ծովեզերք և դրա համար էլ այդ առանձին գետերի բերաններն անհետ կորչում են։ Երրորդ մասը զորքի, ամենաընտիրը, որն ինքն էր առաջնորդում՝ նա հույս ուներ, որ կտանե բարբարոսների դեմ միջին ճանապարհով։ ...Արդ՝ թեև Աղեքսանդրը կարծում էր, որ ամենալավ որոշումն է կայացրել, բայց նրա ծրագիրը բախտը անհաջողության մատնեց. Հայաստանի միջով ուղարկված զորամասը (թեպետև ամառ էր, և ճանապարհը տանելի էր), հազիվ-հազ և դժվարությամբ անցնելով երկրի ամենա-անհարթ ու զառիթափ լեռների վրայով՝ ներխուժել էր մեդացիների աշխարհը, ավերել էր երկիրը, այրել էր շատ գյուղեր և ավարը վերցրել տարել էր...։

Ապա Պարսից թագավորի մոտ եկան մի քանի սուրհանդակներ և հայտնեցին, որ արդեն երևացել է հռոմայեցիների մյուս զորքը Պարթևստանի արևելյան կողմերում և ավերում է դաշտային շրջանները։ Ուստի և թագավորը, վախենալով, որ նրանք պարթևական երկիրն ավերելուց հետո, հեշտությամբ կներխուժեն Պարսք՝ թողեց որոշ ուժեր, որոնք, նրա կարծիքով, բավական էին Մեդիան փրկելու համար՝ և ինքն իր ամբողջ զորքով գնաց արևելյան կողմերը։ ...Եվ պարսից թագավորը հռոմեական զորքի համար անսպասելի կերպով եկավ իր բոլոր ուժերով և, շրջանցելով ու շատերին շրջապատելով և չորս կողմից նետահար անելով՝ հռոմաեցիների զորքը կոտորեց...։ Եվ նա [Աղեքսանդր Սեվերոսը] մարդ ուղարկեց ու հրամայեց, որ Մեդիայում եղած զորքը ետ դառնա։ Եվ այդ զորքի մեծագույն մասը վերադարձի ժամանակ փչացավ լեռներում, իսկ բավական մասը ոչնչացավ այդ երկրի ծանր ձմեռվա պատճառով, այնպես որ վերադարձավ բոլոր զորքից միայն ամենափոքր մասը»[1]։

3. Zonaras, Epitome historiarum, XII, cap. XV՝

«Իսկ ինքը [Աղեքսանդր Սեվերոսը], սեփական զորքերը երեք մասի բաժանելով՝ հարձակվեց պարսիկների վրա։ Եվ մեծ կորուստ ունեցան պարսիկները, բայց ոչնչացան շատ շատերը նաև հռոմայեցիներից՝ ոչ այնքան թշնամիներից, որքան Հայաստանի լեռների միջով անցնելու ժամանակ։ Որովհետև այդ լեռներում խիստ ծանր ձմեռ էր՝ փչացան ցրտից, սևացան ու-

[1] Տե՛ս հրատարակությունը K.Stavenhagen-ի, Lipsiae, 1922, էջ 165 և ն.։

ընդարմացան արշավողների ոտքերը, ոմանց էլ նաև ձեռքերը։ Ուստի և այդ բանում մեղավոր ճանաչվեց Ալեքսանդրը»[1]։

233 թվի ամառը Ալեքսանդր Սևերոսը վերադարձավ Հռոմ և 234 թվին նոր արշավանք սկսեց գերմանացիների դեմ։ 235 թվի մարտ ամսին նա սպանվեց Մայնցի մոտ և նրան հաջորդեց Մաքսիմինոս Թրակացին։

Որ հայերը դաշնակից էին հռոմայեցիներին ո՛չ միայն 232—233 թվերի պատերազմի ժամանակ, այլև դրանից հետո՝ այդ պարզ կերպով վկայում են դարձյալ Լամպրիդիոսը և Հերոդիանոսը, որոնք մատնանշում են, որ Մաքսիմինոս Թրակացու զորաբանակի մեջ, որը հաղթական կերպով պատերազմել էր գերմանացիների դեմ՝ կային դաշնակից հայերի աղեղնաձիգ գնդեր։

1. Aeli Lampridii, Alexander Severus, 61, 8՝

*«Իսկ բոլոր բանակը, որը հետագայում Մաքսիմինոսը տարավ Գերմանիա՝ Ալեքսանդրինն էր և ամենազորեղն էր իրոք, որովհետև նրա մեջ կային հայեր, օսրոյենցիներ ու պարթևներ և ամեն ցեղի մարդիկ»*[2]։

2. Herodianus, Ab excessu divi Marci libri octo, VII, 2՝

*«Արդ՝ կարգավորելով վերոհիշյալը՝ նա [Մաքսիմինոսը] վերցրեց ամբողջ զորքը և, անվեհեր կերպով անցնելով կամուրջը, գնաց պատերազմի գերմանացիների դեմ։ Զորքի բազմությունը մեծ էր՝ նա տարել էր այնտեղ գրեթե ամբողջ հռոմեական զորքը, մավրուսացոց նետաձիգներ ամենամեծ թվով ու նաև աղեղնաձիգներ օսրոյենցի և հայ, որոնցից մի մասը հպատակներ էին, մի մասն էլ բարեկամներ էին ու դաշնակիցներ, իսկ ոմանք էլ պարթևներ էին, որոնք կամ փողով վարձվածներ էին և փախստականներ և կամ բռնված գերիներ էին, որ ծառայում էին հռոմայեցիների մոտ։ Զորքի այդ մեծ բազմությունը հավաքել էր դեռ առաջ Ալեքսանդրը, իսկ ավելի ուժեղացրել էր և միացրել ու վարժեցրել էր կռվի համար Մաքսիմինոսը»*[3]։

Գերմանիա տարված հայ աղեղնաձիգների մասին առանձնապես ուշագրավ է նաև հռոմեական հեղինակ Տրեբելլիոս Պոլլիոնի վկայությունը, որը հաղորդում է, որ ներքին մեծ խառնակությունների ժամանակ Հռոմում հայ աղեղնաձիգները կայսր էին հայտարարել Տիտոսին։

---

[1] Տե՛ս հրատարակություն L. Dindorf-ի, vol. III, Lipsiae, 1870, էջ 122։

[2] Տե՛ս Scriptores historiae Augustae, ed. Hohl, vol. I, Lipsiae, 1927, էջ 300։

[3] Տե՛ս հրատարակություն Stavenhagen-ի, Lipsiae, 1922, էջ 130։

> «Ոմանք ասում են,—վկայում է նա,—որ նրան [Տիտոսին] կայսր էին ընտրել հայ աղեղնաձիգները, որոնց Մաքսիմինոսն ատում էր և նեղում իբրև Աղեքսանդրի կողմնակիցների»[1]։

Պարսկական-հռոմեական պատերազմի դադարումը 233 թվին և հաջորդ տարիներին խրիստենսենը բացատրում է նրանով, որ այդ տարիների ընթացքում Արտաշիր Ա-ը նվաճումներ էր անում արևելյան շրջաններում[2]։ Սակայն չորս տարուց հետո, 237—238 թվերին, Արտաշիր Ա-ը նորից եկավ արևմուտք. ներս մտավ Միջագետք և վերագրավեց Մծբինն ու Խառանը[3]։

Մաքսիմինոս Թրակացուն և երկու Գորդիանոսներին (237) հաջորդեց 238 թվին Գորդիանոս Գ-ը (238—244), իսկ Արտաշիր Ա-ին հաջորդեց 241 թվին նրա որդին, Շապուհ Ա-ը (241—272)։ Օգտվելով Հռոմեական կայսրության մեջ շարունակվող ներքին խառնակություններից՝ Շապուհ Ա-ը, հետևելով հռոմայեցիների հանդեպ իր հոր թշնամական քաղաքականությանը՝ 242 թվին առաջ շարժվեց մինչև Անտիոք քաղաքը, իսկ պարսկական հեծելազորն սկսեց նորից ասպատակել Կապադովկիան և Կիլիկիան։ Ըստ երևույթին, հենց այս արշավանքների ժամանակ նվաճված է եղել նաև Օսրոյեն-Եդեսիայի թագավորությունը։

Գարագաշյանը կարծում է[4], որ նույն այս ժամանակ պարսկական զորքերը գրավել էին նաև Հայաստանը և նրանց ձեռքն էր ընկել նույնիսկ Արտաշատ քաղաքը։ Սակայն, ինչպես շատ ճիշտ մատնանշել է Սանտալճյանը[5], Գարագաշյանի այդ կարծիքը, որ հիմնված է Յուլիոս Կապիտոլինոսի սխալ կարդացված մի վկայության վրա՝ արդյունք է ակներև թյուրիմացության։

> «Այնտեղ,—պատմում է Յուլիոս Կապիտոլինոսը,—նա [Գորդիանոս Գ-ը] հաճախակի պատերազմ մղեց և հաղթեց ու մինչև իսկ, դուրս վտարելով Պարսից թագավոր Շապուհին, որը թագավորում էր Արտաշիրից հետո, վերագրավեց Ան-

---

[1] Տե՛ս „Trebelli Pollionis", Tyranni triginta, 32, 3 (Scriptores historiae Augustae, ed. Hohl, vol. II, Lipsiae, 1927, էջ 132)։

[2] Տե՛ս Cambridge Ancient History, vol. XII, էջ 130։

[3] Տե՛ս *Zonaras*, XII, 18. *Georgios Synkellos*, Բոննի հրատ., էջ 683. Նաև *Jul. Capit.*, Gord., 26, 5—6.

[4] Տե՛ս Գարագաշյան, Քննական պատմություն Հայոց, Բ., էջ 272—274։ Համեմատե՛ նաև Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, I, էջ 593 և ուրիշները։

[5] *Sandalgian*, Histoire documentaire, II, էջ 565։

տիոքը, Խառանը և Մծբինը, որոնք բոլորն էլ գտնվում էին պարսիկների իշխանության տակ»[1]։

Այս վկայության մեջ՝ «որը թագավորում էր Արտաշիրից հետո»[2] խոսքերի փոխարեն սխալմամբ կարդացել են «Արտաշատից հետո և Անտիոքը... վերագրավեց»[3]։

242 թվին, երբ ներքին դրությունը Հռոմեական կայսրության բավական խաղաղվել էր, հռոմեական կայսր Գորդիանոս Գ-ը, որը գրեթե դեռ երեխա էր, հանդիսավոր կերպով հայտարարեց Շապուհ Ա-ին պատերազմ և իր աներոջ՝ պրետորյանների պրեֆեկտ Տիմեսիթեոսի, ուղեկցությամբ ու մեծ զորքով եկավ Արևելք։

243 թվին հռոմեական զորքերը հաղթական կերպով մտան Միջագետք, վերագրավեցին Խառանը, հաղթեցին պարսիկներին Ռեշայնայի մոտ, գրավեցին Մծբինը ու ամբողջ Միջագետքը և վերականգնեցին Օսրոյեն-Եդեսիայում Աբգար ԺԱ-ի թագավորական իշխանությունը[4]։

Հռոմայեցիներն արդեն պատրաստվում էին իջնել Եփրատ գետի երկարությամբ Բաբելոնիա և նվաճել Տիզբոն մայրաքաղաքը, բայց հանկարծակի 243 թվի վերջերը հիվանդացավ և վախճանվեց Տիմեսիթեոսը, որը հռոմեական զորքի իրական առաջնորդն էր։

Տիմեսիթեոսին հաջորդեց պրետորյանների պրեֆեկտի պաշտոնում Փիլիպպոս Արաբացին, որն ինքն էր ուզում դառնալ կայսր։ 244 թվի գարնան սկզբներին Գորդիանոս Գ-ը սպանվեց Զաիթայի մոտ՝ Կիրկեսիոմի և Դուրա-Եվրոպոսի միջև, և հայտարարվեց կայսր Փիլիպպոս Արաբացին (244—249)։ Եվ որովհետև հռոմեական զորքի մի մասը չէր ուզում շարունակել կռիվը՝ Փիլիպպոսը կնքեց Շապուհ Ա-ի հետ խաղաղության դաշնագիր և շտապեց վերադառնալ Հռոմ (245 թվին)։

Այդ դաշնադրության մասին, որի մեջ հիշատակված է նաև Հայաստանը, տեղեկություն են տալիս բյուզանդական պատմագիրներ Զոնարասը, Զոսիմոսը և Եվագրիոսը[5], որոնց վկայությունները թարգմանաբար մեջ ենք բերում։

---

[1] *Տե՛ս Juli Capitolini*, Gordiani tres, 26, 5—6 (Scriptores historiae Augustae, ed. Hohl, Lipsiae, 1927, II, էջ 49).

[2] „qui“ post Artaxerxen „regnabat“.

[3] *Համեմատե՛ Gutschmid A.*, Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroëne. St.-Pétersbourg, 1887, էջ 44, ծան. 1։

[4] *Տե՛ս Juli Capitolini*, Gordiani tres, 26—27 (Scriptores historiae Augustae, ed. Hohl, II, էջ 49—50). *Zonaras*, I, 18. *Aurelius Victor*, Caesares 27, 8. *Eutropius*, IX, 2.

[5] Այս պատմագիրները, ինչպես ենթադրում են, ուղղակի կամ անուղղակի կերպով օգտվել են Դեքսիպպոսի պատմական երկից։

1. Zonaras, XII, 19՝

«Ապա հաջորդեց Փիլիպպոսը, որը տեր դառավ Հռոմեական կայսրության։ ...Նա հաշտություն կնքելով Պարսից թագավոր Շապուհի հետ՝ դադարեցրեց պատերազմը պարսիկների հետ և զիջեց նրանց Միջագետքը և Հայաստանը։ Բայց երբ նա տեսավ, որ հռոմաեցիները վշտացած են այդ երկրների կորստի պատճառով՝ մի փոքր հետո դաշնագիրն անվավեր համարեց և երկրները ետ վերցրեց»[1]։

2. Zosimos, III, 32, 4՝

«Շատ ժամանակ անցնելուց հետո՝ Գորդիանոսը պատերազմեց Պարսից թագավորի դեմ և պատերազմի ընթացքում սպանվեց. սակայն նաև այս հաղթությունից հետո պարսիկները ոչ մի բան չգրավեցին հռոմայեցիների հպատակության տակ եղողներից։ Բայց երբ Փիլիպպոսն իշխանության գլուխ անցավ՝ նա պարսիկների հետ կնքեց ամենաամոթաբեր հաշտությունը»[2]։

3. Evagrios, Historia ecclesiastica, V, 7՝

«Մեծ Հայաստանն առաջ հռոմայեցիների հպատակն էր, բայց Փիլիպպոսը, հաջորդելով Գորդիանոսին՝ տվեց այն Շապուհին, որով Փոքր Հայքը հռոմայեցիների ձեռքը մնաց, իսկ մյուս բոլոր մնացածը՝ պարսիկների»[3]։

Այս վկայություններից պատմագիրների մեծագույն մասը՝ Մոմզենը, Նյոլդեկեն, Խալաթյանցը և ուրիշները՝ այն հետևությունն են հանել, որ Միջագետքը ու նաև Մեծ Հայաստանը, որը Հռոմի դաշնակիցն էր և վասալը, թեև դաշնագրությամբ տրվել էին Շապուհ Ա-ին, սակայն դաշնագիրը չէր իրականացվել, և հռոմեական զորքերը շարունակել էին մնալ այդ երկրներում[4]։ Մարկվարտը, որ ընդունում է նույնպես, որ խաղաղության պայմանները մնացել էին թղթի վրա, ուշադրության առնելով հատկապես Եվագրիոսի վկայությունը՝ ենթադրում է, որ համաձայն դաշնագրի Մեծ Հայաստանի հարավային երկրները, Ծոփքը և Կորդուքը, որոնք Եվագրիոսի մոտ անվանված են «Փոքր Հայք», պետք է մնային հռոմայեցիների ձեռքը, իսկ Մեծ Հայաստանի մնացած մասը տրվելու էր պարսիկներին[5]։

---

[1] Տե՛ս հրատարակություն Dindorf-ի, Lipsiae, 1870, vol. III, էջ 130։

[2] Տե՛ս հրատարակություն L. Mendelssohn-ի, Lipsiae, 1887, էջ 154։

[3] Տե՛ս editio H. Valesii, էջ 426։

[4] Տե՛ս *Mommsen*, Römische Geschichte, V, էջ 422. *Nöldeke*, Aufsätze zur persischen Geschichte, Leipzig, 1887, էջ 93. *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 338 և ուրիշները։

[5] Տե՛ս *Markwart*, Untersuchungen zur Geschichte von Eran, zweites

Այլ լուսաբանություն են տալիս հաշտության նույն դաշնագրին Cambridge Ancient History-ի մեջ լույս ընծայած իրենց հոդվածներում Էնսլինը և Խրիստենսենը[1]։ Առաջինը սրանցից, ժխտելով Զոնարասի վկայության ճշտությունը, կարծում է, որ համաձայն 244 թվի դաշնագրի Միջագետքը և Փոքր Հայքը տրվել էին, իրապես, Հռոմեական կայսրությանը, և այնտեղ կուսակալ էր դրվել Փիլիպպոս Արաբացու եղբայրը՝ Պրիսկուսը։ Իսկ Խրիստենսենը ենթադրում է նույնպես, որ ըստ դաշնագրի՝ Հռոմեական կայսրությունը պահպանել էր իր ձեռքում Միջագետքը և Հայաստանը (այսինքն՝ Փոքր Հայքը), իսկ Հայկական թագավորությունը, որ ինքնուրույն պետություն էր, չէր կարող, հարկավ, զիջված լինել Սասանյան Պարսկաստանին և հիշատակված լինել պայմանագրի որևէ կետում։

Ինչպես տեսնում ենք, այս խնդիրը դեռ վերջնականապես չէ մեկնված և բավական մութն է։ Աղբյուրների վկայություններից պարզ երևում է, սակայն, որ Հայաստանը չէր նվաճված Սասանյան Պարսկաստանի կողմից ո՛չ Փիլիպպոս Արաբացու և ո՛չ էլ նրա հաջորդի՝ Դեկոսի, ժամանակ (249—251)։ Նա իր անկախությունը պահպանել էր մինչև Գալլոս կայսեր (251—253) ժամանակը։

Երրորդ դարի կեսերին Հռոմեական կայսրության դրությունը, ինչպես հայտնի է, նորից խիստ կերպով ծանրացել էր թե ներքին խռովությունների և թե գոթերի աշխարհավեր հարձակումների պատճառով։ Հատկապես Գալլոս կայսեր իշխանության ժամանակ նա այլևս չէր կարող ո՛չ միայն օգնել դաշնակից Հայաստանին, այլև պաշտպանել իր արևելյան սահմանները։

Օգտվելով այս բարեհաջող հանգամանքից՝ Շապուհ Ա-ը կարողացավ հաշիվ տեսնել Տրդատ Բ-ի հետ, որը մոտ 25 տարի հաջողությամբ պաշտպանել էր իր երկիրը պարսկական հարձակումներից, և 252/3 թվին գրավեց Հայաստանը։ Տրդատ Բ-ը ստիպված եղավ փախչել և պատսպարվել հռոմայեցիների մոտ, իսկ նրա որդիները մնացին Հայաստանում և հնազանդվեցին Սասանյան Պարսկաստանին։

Հայաստանի հպատակումը Շապուհ Ա-ին և Տրդատ Բ-ի փախուստը պարզ ու որոշ հիշատակված են Զոնարասի հետևյալ վկայության մեջ.

> «Նորից սրա [Գալլոսի] ժամանակ սկսվեցին պարսիկների խլրտումները և նրանք նվաճեցին Հայաստանը. այս երկրի

Heft, Leipzig, 1905, էջ 218—220, ծան. 2 [„Philologus", Supplementband, X, Heft 1].

[1] Cambridge Ancient History, vol. XII, 1939, էջ 88 և 131։

Տրդատ թագավորը փախավ, իսկ նրա որդիները մեկնեցին պարսից կողմերը»[1]։

Զոնարասի այս վկայության մեջ հիշատակված Տրդատը, ինչպես այժմ պատմագետներն ընդունում են, նույն անձն է, որը 217 թվին թագ էր ստացել Մակրինոս կայսրից։ Ինչպես տեսնում ենք, նա թագավորել էր Հայաստանում 36 կամ 37 տարի (216—252/3)։

Շատ պարզ է բստ այսմ, որ հայ պատմիչների մոտ վիպական Խոսրովին վերագրված պարսիկների դեմ պատերազմները հիշողություն են, իրապես, այն երկարատև ու համառ կռիվների, որ պատմական այս Տրդատ Բ-ը, իբրև հռոմայեցիների դաշնակից ու վասալ, վարել էր Արտաշիր Ա-ի և Շապուհ Ա-ի դեմ։

Հայկական ավանդությունը վերոհիշյալ պատերազմների մասին, թեև ենթարկվել է վիպական-բանաստեղծական մշակման, սակայն, այնուամենայնիվ, ունի պատմական արժեք։ Այդ ավանդությունը, որ պահպանվել է Ագաթանգեղոսի պատմական երկում, կարևոր եմ համարում մեջ բերել աննշան կրճատումներով։

«Արդ՝ նաև մյուս տարվա վերջում,—պատմում է Ագաթանգեղոսը,—Հայոց Խոսրով թագավորը սկսեց գունդ կազմել և զորք ժողովել, նաև հավաքեց Աղվանից ու Վրաց զորքերը և բացեց Ալանաց ու Ճորա պահակի դռները, դուրս բերեց հոների զորքերը, որպեսզի ասպատակեն Պարսից շրջանները և արշավեն Ասորեստանի կողմերը մինչև Տիզբոնի դռները։

Ավարի առնելով ամբողջ երկիրը՝ նա ավերածության մատնեց բաղձալի քաղաքների ու ավանների շեն տեղերը և ամբողջ շեն երկիրը դատարկ ու ավերակ դարձրեց։ Նա աշխատեց այդ երկիրը վերացնել մեջտեղից, բոլորովին կործանել, քանդել ու արմատախիլ անել. և մտածում էր նաև վերացնել Պարսից տերության օրենքները։ Նա հաստատաբար ուխտել էր մեծ ոխով վրեժ առնել իրենց տերության անկման համար. և աշխատում էր լիովին վրեժ առնել, նախանձաբեկ լինելով իր մեծ քենի պատճառով։ Մեծապես խրոխտում էր նա, պարծենալով զորքերի բազմությանը և հույսը դնելով նրանց քաջության վրա։

Նրան շուտով օգնության հասան ժիր ու քաջ մարդկանց ու ձիերի մեծ բազմությամբ աղվանները, լփինները, ճիղպերը, կասպերը և ուրիշները ևս, որ այն կողմերից էին, որպեսզի վրեժ առնեն Արտավանի սպանման համար։

Թեպետև նա ինքը մեծ տրտմության մեջ էր ազգականների,

[1] Տե՛ս Zonaras, XII, 21 (ed. Dindorf, vol. III. Lipsiae, 1870, էջ 137)։

եղբայրների վարքի պատճառով, որովհետև նրանք հնազանդվել էին և ծառա էին դառել Ստահրացու բարձրացող թագավորությանը և նրան համակերպվել էին, ու թեպետև Խոսրովը դեսպան էր ուղարկել, որպեսզի տոհմայիններն իրեն օգնության հասնին, նրանց դիմադրեն իր թագավորության հետ միասին և աջակցեն այնտեղից, Քուշանների կողմերից, օգնության հասնեն այն մարզից, իրենց բուն աշխարհից՝ քաջ ժողովուրդների ու մարտիկ զորքերի երկրից, սակայն պարթևների տոհմերը և ցեղապետները, նախարարները և նահապետները իրեն չէին լսել։ Նրանք համաձայնել էին, հավանել էին և հպատակվել էին առավել Արտաշիրի տերության, քան իրենց ազգատոհմի և եղբայրների իշխանության։

Արդ՝ Խոսրովը վերցրեց իր զորքերի բազմությունը ու նաև նրանց, որոնք եկել էին զանազան կողմերից և օգնության էին հասել, իբրև պատերազմական գործի զինակիցներ։ Իսկ Պարսից թագավորը, երբ տեսավ մեծ բազմությունը զորքի, որը մեծ ուժով առաջացել էր և եկել էր նրա դեմ՝ ինքը ևս ընդառաջ ելավ և պատրաստվեց պատերազմի։ Սակայն նա չկարողացավ Խոսրովին դիմադրել և նրանց առջևից փախուստի դիմեց. հետամտելով նրանց՝ սրանք Պարսից ամբողջ զորքը կոտորեցին. ցրեցին, գետին փռեցին դաշտերում և ճանապարհներում, չարաչար ոչնչացրին և սաստիկ հարված հասցրին նրանց։

Եվ Հայոց թագավորը վերադարձավ մեծ կոտորածից մեծ հաղթությամբ, շատ ավարով ու ցնծալից ուրախությամբ. նա վերադարձավ Հայաստանի կողմերը, Այրարատ գավառը, Վաղարշապատ քաղաքը. եկավ մեծ ուրախությամբ, բարի անունով և շատ ավարով։

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Իսկ երբ վրա հասավ մյուս տարին՝ նա հավաքեց խիստ մեծ զորք, կանչեց առաջվա զորքը և ավելի ևս շատ ասպատակություններ ցրեց Ասորեստանի կողմերում, քան առաջ, մանավանդ որ նրան օգնության էին եկել նաև տաճիկների զորքերը։ Նրանք ավարի առան ամբողջ երկիրը և քաջությամբ վերադարձան իրենց տեղերը։

Եվ տասնմեկ տարի շուտ շուտ այսպես ավարի ելնելով՝ նրանք ավերեցին ամբողջ սահմանամերձ երկիրը, որը Պարսից թագավորության և իշխանության տակ էր»։

[«Արդ՝ ի միւս ևս ի գլուխ տարւոյն սկսանէր Խոսրով թագաւորն Հայոց գունդ կազմել և զօր բովանդակել, գումարել զզօրս

Աղուանից և Վրաց, և բանալ զդրունս Ալանաց և զՃորայ պահակին, հանել զզօրս Հոնաց, ասպատակ դնել ի կողմանս Պարսից, արշաւել ի կողմանս Ասորեստանի, մինչև ի դրունս Տիսպոնի։

Աւար առեալ զերկիրն ամենայն՝ յապականութիւն դարձուցանէր զշինանիստ քաղաքացն և աւանացն ցանկալեաց. զշէն երկիրն ամենայն թափուր և աւերակ թողոյր. ջնջել ի միջոյ ի բաց կորուսանել, խլել քակել, հիմն ի վեր ջանայր առնել, համարէր բառնալ՝ զօրէնս տէրութեանն Պարսից։ Ուխտ եդեալ միանգամայն՝ վրէժ խնդրել մեծաւ քինութեամբ զանկանելն իւրեանց ի տէրութենէն. սպառ սպուռ ջանայր զվրէժ խնդրել, մեծաւ քինու նախանձաբեկ լինելով. մեծամեծս փքայր՝ ի բազմութիւն զօրացն ապաստան եղեալ, և ի քաջութիւն զօրացն յուսացեալ։ Վաղվաղակի ի թիկունս հասանէին մեծաւ բազմութեամբ ժիր և քաջ առն և ձիոյ և բուռն կազմութեամբ աղուանք, լփինք և ճիղպք, կասպք և այլ ևս որ ի սմին կողմանց, զի զվրէժ արեան Արտևանայ խնդրեսցեն։

Զի թէպէտ և էր ինքն ի մեծի տրտմութեան վասն բնութեան եղբայրութեան ազգատոհմին, զի հնազանդեցան և ի ծառայութիւն մտին համբարձելոյ թագաւորութեան Ստահրացւոյն, և ընդ նմին միամտեցան. զի թէպէտ և էր Խոսրովու և դեսպան արարեալ, զի իւրեանց տոհմայինքն ի թիկունս եկեսցեն և նոցա ընդդէմ կայցեն ընդ նորա թագաւորութեանն, անտի սմա ձեռն տուեալ ի կողմանց Քուշանաց, և յայնմ մարզէ և յիւրեանց ի բուն աշխարհէն և ի քաջ ազգաց և ի մարտիկ զօրացն զի ի թիկունս հասցեն. սակայն տոհմքն և ազգապետքն և նախարարքն և նահապետքն Պարթևաց ոչ լինէին ունկնդիր. զի միամտեալ և հաւանեալ և նուաճեալ էին ի տէրութիւնն Արտաշրի, քան ընդ տէրութիւն իւրեանց ազգատոհմին և եղբայրութեանն։

Սակայն առեալ Խոսրովու զբազմութիւն զօրաց իւրոց, և որ ուստեք ուստեք եկեալ հասեալ էին ի թիկունս օգնականութեան նիզակակիցք գործոյն պատերազմի։ Իսկ իբրև ետես թագաւորն Պարսից զայն ամբոխ բազմութեան գնդի, զի մեծաւ ուժով դիմեալ եկեալ հասեալ էին ի վերայ նորա՝ ել և նա ընդ առաջ նոցա ի պատրաստութիւն պատերազմի։ Բայց սակայն ոչ կարաց ունել զդէմ նորա, փախստեայ լինէր առաջի նոցա. զհետ մտեալ կոտորէին զամենայն զօրսն Պարսից, և դաշտացն և ճանապարհացն ցիր դիաթաւալ կացուցանէին և չարախտավատ վատնէին և անհնարին հարուածս ի վերայ հասուցանէին։

Եւ թագաւորն Հայոց դառնայր ի մեծ կոտորածէն մեծաւ յաղթութեամբ և բազում աւարաւ և ցնծալից ուրախութեամբ ի կողմանս Հայոց յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, մեծաւ ուրախութեամբ և բարի անուամբ և բազում աւարաւ...

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Բ. Իսկ ի գալուստ ամին միւսոյ զօր բազում կուտէր յոյժ, զումարտակ առնէր, զնոյն զօր կոչէր, և ևս բազում քան զնոյն ասպատակ սփռեալ զկողմամբքն Ասորեստանի. մանաւանդ զի և զօրք տաճկաց ի թիկունս եկեալ էին. աւար առեալ զերկիրն զամենայն՝ քաջութեամբ դառնային յիւրաքանչիւր տեղիս։

Եւ ամս մետասան ստէպ ստէպ զայս օրինակ աւար առեալ՝ աւերէին զամենայն երկիր սահմանացն, որ ընդ Պարսից թագաւորութեամբն և ընդ իշխանութեամբն էր»][1]։

Պատմագետներից շատերը աշխատել են որոշել, թե երբ էին տեղի ունեցել տասնմեկամյա վերոհիշյալ կռիվները։ Գուտշմիդը և ուրիշ շատերը Խոսրովի այդ արշավանքների ժամանակը ենթադրում են Արտաշիր Ա-ի առաջին արշավանքից հետո՝ 228—238 թվերին, Տաշյանը և Ասատուրյանը՝ 238—248 թվերին, իսկ Խրիստենսենը և ուրիշները՝ 242—252 թվերին[2]։

Պատմագետների այս ժամանակագրական ճշտումները, իհարկե, վիճելի կռահումներ են։ Իրապես, հայ ժողովրդական էպոսի մեջ նկարագրված կռիվները տեղի էին ունեցել Արտաշիր Ա-ի ու նաև Շապուհ Ա-ի դեմ ո՛չ թե Խոսրով թագավորի, այլ Տրդատ Բ-ի թագավորության ընթացքում՝ 228 և 252/3 թվականների ժամանակամիջոցում։

Այդ կռիվների տեղը, ինչպես կարելի է եզրակացնել նաև հունա-հռոմեական աղբյուրների վկայություններից, եղել է, գլխավորապես, Մեզիան ու նրա հարևան Ադիաբենը, որը հայկական ավանդության մեջ անվանված է Ասորեստան։

Տաշյանը շատ ճիշտ մատնանշել է, որ վերև բերված Ագաթանգեղոսի պատմվածքները, թեև «ճիշտ և պատմական են», բայց «մթին և հարևանցի» են և նրա մեջ «շատ դեպքեր ի մի են ձուլ-

---

[1] Տե՛ս «Ագաթանգեղեայ Պատմութիւն Հայոց», աշխ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանցի, Տփղիս, 1909, էջ 16—19 (Ա—Բ)։

[2] Տե՛ս Gutschmid, Agathangelos, ZDMG, XXXI, 1877, էջ 48. Տաշյան, Ագաթանգեղոս, էջ 100—101. Ասատուրյան, Քաղաքական վերաբերութիւններ, էջ 242, ծան. 1. Christensen, Cambridge Ancient History, v. XII, էջ 131 և ուրիշները։

*ված»*[1]*։ Այդ, հարկավ, այլ կերպ և չէր կարող լինել, որովհետև Ագաթանգեղոսի Պատմության սկզբի մասը ծագում է, ինչպես տեսցինք, ժողովրդական վեպից, որը, փաստորեն, կիսապատմական բանահյուսական ստեղծագործություն էր։*

*Դինաստիական մեծ հեղաշրջման ու խլրտումների ժամանակ Իրանում, ինչպես երևում է Կասսիուս Դիոնի և Մովսես Խորենացու վկայություններից*[2]*, Հայաստան էին եկել Տրդատ Բ-ի մոտ իրենց զորքերով ու կուսակիցներով Արտավան Ե-ի որդիները և նոր դինաստիայի հակառակորդ պարթև ազնվականությունը։*

*Այս գաղթականության կապակցությամբ, ինձ թվում է, կարելի է միանգամայն հավանական համարել Գ. Ասլանի ենթադրությունը, որը Մամիկոնյանների և Կամսարականների գաղթը Հայաստան դնում է Տրդատ Բ-ի (216—252/3) ժամանակ*[3]*։ Սակայն այդ գաղթը, ինչպես միանգամայն ճիշտ մատնանշել է Կոգյանը, պետք է ենթադրել ո՛չ թե Պարթև Արշակունիների անկումից առաջ, ինչպես այդ ընդունում է Ասլանը, այլ նրանց անկումից, այսինքն՝ 224 թվից հետո*[4]*։*

*Որ նորագույն այս ենթադրությունը, հատկապես Մամիկոնյանների վերաբերմամբ, ավելի քան հավանական է՝ այդ կարելի է հետևցնել Մար-Աբասյան աղբյուրից քաղված Սեբեոսի Պատմության հայտնի հատվածից, որը պարզ վկայում է, որ Մամիկոնյանների նախնիքը, Մամիկն ու Կոնակը, գաղթել էին Հայաստան Ճենաստանից, այսինքն՝ Անդրկասպյան երկրի արևելյան շրջաններից, «յամս Արտաւանայ արքայի Պարթևաց և Մեծին» մատնանշված է եղել նույնպես երրորդ դարի առաջին կեսում, Դժվար չէ նաև կռահել, որ Խորենացու օգտագործած աղբյուրի մեջ ևս Մամիկոնյանների նախնու, Մամկոնի, գաղթը Հայաստան մատնանշված է եղել նույնպես երրորդ դարի առաջին կեսում՝ Շապուհ Ա-ի (241—272) և Տրդատ Բ-ի (216—252/3) ժամանակ։ Սակայն Խորենացին*[6] *հասկանալի պատճառով այդ Տրդատ Բ-ին*

---

[1] *Տե՛ս* Տաշյան, *Ագաթանգեղոս, էջ 92։*

[2] *Cass. Dio,* LXXX, 3—4. Խորենացի. II, *73 («սիրելեօք յարեցելովք»)։*

[3] *K. Aslan,* Études historiques sur le peuple arménien, Paris, 1909, *էջ 139։*

[4] Ս. Կոգյան, *Կամսարականները «տեարք Շիրակայ և Արշարունեաց», Վիեննա, 1926, էջ 13—14։*

[5] *Տե՛ս* «Սեբէոսի եպիսկոպոսի *Պատմութիւն», հրատ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1939, էջ 12 (գլ. Գ)։*

[6] *Տե՛ս* Խորենացի, *II, գլ. ՁԱ։*

*դարձրել է Տրդատ Մեծ, որովհետև նրա Պատմության մեջ Հայաստանի երեք Տրդատ թագավորները՝ Տրդատ Ա-ը, Տրդատ Բ-ը և Տրդատ Գ-ը՝ վերածվել են մեկ Տրդատի։*

*Ադոնցի կարծիքը, որ Մամիկոնյանները Տայքի արևմտակողմում ապրող ճաներից են ծագում՝ միանգամայն անընդունելի մի կռահում է, որից նա հրաժարվել է և ինքը իր վերջին աշխատություններից մեկում*[1]*։*

*Որ Կամսարականները ևս նույն այդ ժամանակ են գաղթել՝ այդ նույնպես երևում է նրանց ծագման մասին Խորենացու մոտ պահպանված ավանդությունից։ Կամսարականների նախահայրն էր, ըստ Խորենացու Պատմության, Արշակունյաց Կարենյան ճյուղի շառավիղ Կամսարը, որը, չկամենալով հնազանդվել Պարսից Շապուհ Ա թագավորին (241—272), իր ամբողջ ընտանիքով գաղթել էր և ապաստանել Հայոց Տրդատ թագավորի մոտ*[2]*։*

*Խորենացու հիշատակած այս Տրդատը, ինչպես մանրամասն ցույց է տվել Կոգյանը*[3]*, ո՛չ թե Տրդատ Մեծն էր, այլ Տրդատ Բ-ը (216—252/3)։ Ուրեմն՝ Կամսարականների գաղթը ևս կարելի է ենթադրել երրորդ դարի առաջին կեսում Պարթև Արշակունիների անկումից հետո։*

*Տրդատ Բ-ի փախուստից հետո հռոմայեցիների մոտ (252/3)՝ Հայաստանը, ինչպես կտեսնենք, դարձավ Սասանյան Պարսկաստանի հպատակ ու վասալ պետություն։*

---

[1] *Տե՛ս Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 403—404. Նաև նույնի* Histoire d'Arménie. Les origines, du Xe au VIe (av. J. C.), Paris, 1946.

[2] **Խորենացի**, *II, գլ.* **Չէ**։

[3] **Ս. Կոգյան**, *Կամսարականները, էջ 1—14*։

## ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՏՐԴԱՏ Բ-ԻՑ ՀԵՏՈ ՄԻՆՉԵՎ ՏՐԴԱՏ Գ-Ի ԳԱՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆԸ

**1. Քաղաքական ընդհանուր դրությունը Հայաստանի նվաճումից հետո.— Շապուհ Ա-ի հաղթական արշավանքները.— Վալերիանոսի պարտությունը.— Արտավազդ Ե.— Արտավազդ Ե-ի նամակը Շապուհ Ա-ին.— Շապուհ Ա-ի արշավանքներն Արևելքում և նրա պարտությունը:— 2. Պալմիրայի քաղաքական մեծ դերը Ոդենատոսի ժամանակ.— Հայաստանի քաղաքական կացությունը.— Զենոբիա և Վաբալլաթ և Պալմիրայի անկումը.— Հայերի գործակցությունը Պալմիրայի հետ:— 3. Հայաստանի հռոմեական կողմնորոշումը 272 թվից հետո.— Խոսրով Բ քաքաղաքական անհաստատ ու հեղհեղուկ դրությունն Արևելքում:—4. Կարոսի հաղթական արշավանքը և Հռոմի գերիշխանության վերահաստատումը Հայաստանում.— Խոսրով Բ-ի սպանությունը.— սպանության տարեթիվն ըստ Սեբեոսի.— Տրդատ արքայորդու փախուստը:— 5. Պարսից Ներսեհ թագավորի հաղթական արշավանքը:— 6. Գալերիոս Մաքսիմիանոսի մեծ հաղթությունը.— այդ հաղթության մասին Փավստոսի վկայությունը:— 7. 298 թվի խաղաղության դաշնադրությունը.— Հայաստանի հարավ-արևելյան սահմանը:— 8. Անդրտիգրիսյան երկրների իրավական դրությունը:— 9. Տրդատ Գ-ի գահակալության մասին հայկական աղբյուրների վկայությունները.— Տրդատ Գ-ի գահակալության ստույգ տարեթիվը:**

*Երրորդ դարի երկրորդ կեսը շատ մութ շրջան է ո՛չ միայն Հայաստանի, այլև Հռոմեական կայսրության քաղաքական պատմության մեջ։ Այս ժամանակաշրջանի գլխավոր հին աղբյուրներն են Հռոմեական կայսրերի կենսագրությունները* (Scriptores historiae Augustae), *որոնց արժանահավատությունը դեռ մինչև այժմ վեճի առարկա է և, ընդհանուր առմամբ, համարվում է կասկածելի*[1]*։ Աղքատիկ են և կցկտուր նաև այս ժամանակաշրջանին վերաբերող չորրորդ դարի հռոմեական պատմության համառոտագրությունների և բյուզանդական ավելի ուշ շրջանի ժամանակագրությունների վկայությունները։*

[1] Տե՛ս *M. Rostovzeff,* Gesellschaft und Wirtschaft im römischen Kaiserreich, Bd. II, übersetzt von L. Wickert, Leipzig, էջ 143—149։

Երրորդ դարի հիսունական թվականներին, ինչպես երևում է այդ աղբյուրների վկայություններից, քաղաքական դրությունը Փոքր Ասիայում բացառիկ կերպով նպաստավոր էր Շապուհ Ա-ի իշխանության ծավալման համար Առաջավոր Ասիայի արևմտյան երկրներում։ Այդ ժամանակ հռոմեական արևելյան նահանգները ենթարկվել էին հարձակումների միաժամանակ թե գոթերի ու բորանների կողմից, որոնք եկել էին հյուսիսից ծովային ճանապարհով և կողոպտում ու ավերում էին Կողքիսի և Փոքր Ասիայի ծովափնյա քաղաքներն ու շրջանները (253—255/6 թվերին), և թե պարսիկների կողմից, որոնք Հայաստանը նվաճելուց հետո ապահովել էին իրենց թիկունքը հյուսիսից և համարձակ կերպով ասպատակում էին և ավարառության մատնում Միջագետքն ու Ասորիքը։ Շապուհ Ա-ը կարողացել էր նվաճել այստեղ Մծբինը, Խառանը ու Անտիոքը և հարձակումներ էր գործում մինչև իսկ Կիլիկիայի ու Կապադովկիայի վրա։

Պատմագետներից ոմանք կարծում են, որ գոթերի ու պարսիկների այդ արշավանքները կապ ունեին իրար հետ և պարսիկների նպատակն էր միանալ Փոքր Ասիայում գոթերի հետ[1]։

Շապուհ Ա-ի հաջողությունները թե այստեղ՝ արևմուտքում և թե արևելքում այնքան մեծ էին, որ նրան այլևս չէր բավարարում իր հոր «շահնշահ Իրանի» բարձր տիտղոսը, և նա իր արձանագրություններում անվանում էր իրեն «շահնշահ Իրանի և Անիրանի», այսինքն՝ «արքայից արքա արիների և ոչ-արիների»։

Պարսիկների հաղթական արշավանքներն արևմուտքում պարբերաբար կրկնվում էին։ Սակայն շուտով, 256 թվին[2], արևելք եկավ հռոմեական կայսր Վալերիանոսը (253—260) ուղեկցությամբ պրետորիանների պրեֆեկտ Բալլիստայի ու Մարկիանոսի, և պարսիկները հարկադրված եղան մաքրել Անտիոքը։

Վալերիանոսը, Անտիոք ժամանելուց հետո, իր զորքը նախ առաջնորդեց Կապադովկիա և խանգարեց պարսիկներին միանալ գոթերի հետ։ Այնուհետև նա, չնայած որ հռոմեական զորքի մեջ

---

[1] Տե՛ս *M. Rostovzeff,* Gesellschaft und Wirtschaft im römischen Kaiserreich, Bd. II, übersetzt von L. Wickert, Leipzig, էջ 152։

[2] Բուդապեշտի համալսարանի պրոֆեսոր Ալֆյոլդին (Alföldi), հիմնվելով հյուսիսային Ասորիքում վերջերս գտնված դրամների վկայությունների վրա, ենթադրում է, որ Վալերիանոսն Անտիոք էր եկել 253/4 թ. ձմեռը, և որ պարսիկներն Անտիոք քաղաքը գրավել էին երեք անգամ՝ 253, 258/9 և 260 թվերին. տե՛ս Cambridge Ancient History, vol. XII (1939), էջ 136, ծան. 3 և 170—172։

ավերածություններ էր գործում ժանտախտ հիվանդությունը, շտապեց գնալ Միջագետք և օգնություն հասնել Եդեսիային, որը պաշարել էին թշնամու զորքերը։ Սակայն Եդեսիայի մոտ Վալերիանոսը շարաչար պարտվեց և գերի ընկավ Շապուհ Ա-ի ձեռքը (260 թ.)։

Սկզբնաղբյուրների վկայություններից երևում է, որ պարսկահռոմեական այս կռիվներին մասնակցել էին և հայերը՝ այժմ իբրև դաշնակիցներ պարսիկների ընդդեմ հռոմայեցիների։

252/3 թվին Հայաստանը, ինչպես վերև տեսանք, գրավել էին պարսիկները։ Եվ հենց այս թվին, ինչպես հավանական է համարվում, Շապուհ Ա-ը թագավոր էր կարգել այնտեղ մի ոմն Արտավազդի, որի ծագման մասին հայտնված են զանազան հակասական կարծիքներ։ Ալիշանը, օրինակ, սրան նույնացրել է Խորենացու մոտ հիշատակված Արտավազդ Մանդակունու հետ, Գ. Ասլանը ենթադրում է սրան Ատրպատականի թագավորների սերունդից, Ասողյանը նույնացրել է նրան Արտավազդ Մամիկոնյանի հետ, իսկ Աննինսկին համարում է նրան Տրդատ Բ-ի որդի[1]։ Այս կռահումներից և ոչ մեկը հիմնավորված ու հաստատուն չէ։ Կարելի է միայն հավանական համարել, որ այս Արտավազդ թագավորը, որը Սասանյան Պարսկաստանի կողմնակից էր և բարեկամ, Հայ Արշակունիների տոհմից չէր։

Տրդատ Բ-ի այս հաջորդը հիշատակված է Վալերիանոս կայսեր կենսագիր Տրեբելլիոս Պոլլիոնի մոտ, որը հաղորդում է, որ Արտավազդը նամակ էր գրել Շապուհ Ա-ին Վալերիանոսի գերումից հետո և խորհուրդ էր տվել նրան ազատություն շնորհել դժբախտ կայսրին։ Հետաքրքիր այդ վկայությունը, որի մեջ Արտավազդն անվանված է Հայոց թագավոր, մեջ եմ բերում ամբողջությամբ։

> «Արտավազդը, Հայոց թագավորը,—ասում է Տրեբելլիոսը,—ուղարկեց Շապուհին հետևյալ նամակը.—«Համակիր եմ քո փառքին, բայց երկյուղ եմ կրում, որ դու ոչ այնքան հաղթել ես, որքան հրահրել ես մոլեգին կռիվը։ Վալերիանոսին այժմ պահանջում են ազատ արձակել և՛ նրա որդին, և՛ թոռը, և՛ հռոմեական զորավարները, և՛ ամբողջ Գալլիան, ամբողջ Աֆրիկան, ամբողջ Սպանիան, ամբողջ Իտալիան, ու նաև բոլոր ժողովուրդները, որոնք ապրում են Իլլիրիկումում, նաև արևելքում ու Պոնտոսում, և որոնք կողմնակից են հռոմայեցիներին

[1] Տե՛ս Ալիշան, *Այրարատ, 1890, էջ 374*. *K. Aslan,* Études historiques, *էջ 143*. Ասողյան, *Քաղաքական վերաբերություններ, էջ 245—246*. *А. Аннинский,* Древние армянские историки, *էջ 44*։

կամ նրանց հպատակ են։ Դու վերցրիր գերի միայն մի ծերունու, իսկ քեզ դեմ խիստ թշնամացրիր երկրագնդի բոլոր ժողովուրդներին. գուցե նաև մեզ դեմ, որ ուղարկել էինք քեզ օգնական զորքեր. մենք որ քո հարևաններն ենք՝ միշտ ծանր դրության մեջ ենք ընկնում, երբ դուք իրար հետ կռվում եք»[1]։

Վալերիանոս կայսրին գերելուց հետո Շապուհ Ա-ը վերանվաճեց Անտիոք քաղաքը, և պարսկական զորքերը, առաջ շարժվելով դեպի Փոքր Ասիա՝ գրավեցին Կիլիկիայում Տարսոն քաղաքը ու Կապադովկիայում՝ Կեսարիա-Մաժաքը և վերցրին ամենուրեք հարուստ ավար և անթիվ քանակությամբ գերիներ։

Շուտով սակայն սրանց առաջխաղացումը կանգ առավ։ Սոլի-Պոմպեյոպոլիս քաղաքի մոտ՝ Կիլիկիայում, նրանց հուժկու հարված հասցրին և ետ մղեցին հռոմեական զորավարներ Մարկիանոսը և Բալլիստան։ Այնուհետև ևս, երբ նրանք ետ էին դառնում իրենց երկիրը և անցնում էին Եփրատ գետը՝ նրանց պարտության մատնեց նաև Պալմիրայի արաբ իշխան Սեպտիմիոս Ոդենատոսը, որը նրանց ձեռքից խլեց ավարը և գերիներին (261 թ.)։ Հետզհետե այս իշխանն առաջնակարգ դեր խաղաց ամբողջ Արևմտյան Ասիայում։

Պալմիրան (կամ ասորերեն Թադմորը), ինչպես հայտնի է, առևտրական մեծ քաղաք էր արաբական անապատում՝ Դամասկոսի ու Եփրատ գետի միջև։ Նա հարստացել էր և բարգավաճում էր, որովհետև այս քաղաքի մոտով էր անցնում միջազգային մեծ առևտրի հարավային ճանապարհներից մեկը։ Պալմիրան մեծ չափով ենթարկվել էր հելլենական և հռոմեական մշակույթների ազդեցության, և նրա մեջ կառուցվել էին գեղեցիկ ու հոյակապ շենքեր։

261 թվին Պալմիրայի Ոդենատոս իշխանը, որը, պարսկական զորքերը Եփրատի մոտ պարտելուց հետո, իրեն հայտարարել էր Պալմիրայի թագավոր, վերջ դրեց Մարկիանոսի որդու, Կվիետոս կայսրի իշխանությանը Հռոմեական արևելքում և նվաճեց հյուսիսային ամբողջ Ասորիքը։ Գալլիենոս կայսրը (260—268) նրան ճանաչեց իբրև կուսակալ Ասորիքի և շնորհեց նրան «դուքս», «իմպերատոր» և «վերականգնող Արևելքի» (corrector Orientis) տիտղոսները։

Հաջորդ տարիների ընթացքում, 262—264 թվերին, Ոդենատոսը, իբրև հավատարիմ վասալ Հռոմեական կայսրության, հաջողությամբ վերսկսեց պատերազմը պարսիկների դեմ։ Նա ազատեց պաշարված Եդեսիան, նվաճեց Մծբինը և Խառանը, վերագրավեց Հռո-

[1] Տե՛ս Trebellius Pollio, Valerianus pater et filius, 6 (Scriptores historiae Augustae, edid. Hohl, v. II).

մեական ամբողջ Միջագետքը և, հաղթական կերպով առաջ շարժվելով՝ հասավ մինչև Տիզբոն։ 266 թվին նա ուղղվի եւավ գոթերի դեմ, որոնք եկել էին ծովով Հերակլեա, և ստիպեց նրանց ետ դառնալ։ Նրա իշխանության տակ էին գտնվում այդ ժամանակ Ասորիքը և սրա շրջակա երկրները՝ Արաբիան, Պաղեստինը, Կիլիկիան և, հավանորեն, նաև Կապադովկիան։

Ոդենատոսի զորեղացման այս ժամանակաշրջանում, ինչպես ենթադրում են Մոմզենը, Խալաթյանցը, Գ. Ասլանը, Սանտալճյանը և ուրիշ շատ պատմագետներ, Հայաստանը ևս ճանաչել էր վերստին Հռոմի գերիշխանությունը[1]։ Սակայն այդ մասին մենք հաստատուն տեղեկություններ չունենք։ Ընդհակառակը, «Կայսրերի կենսագրությունների» (Historiae Augustae) մեջ հայերն այս ժամանակ հիշատակված են այն ժողովուրդների շարքում, որոնք անկախ էին Հռոմից[2]։ Ուստի և ինձ ավելի հավանական է թվում Գաթրճյանի, Գարագաշյանի և Աննինսկու կարծիքը, որոնք մատնանշում են, որ հայերն այդ ժամանակ շարունակում էին մնալ Պարսից գերիշխանության տակ և Հայաստանում, ինչպես ենթադրում են Ադոնցը և Աննինսկին, դեռ թագավորում էր Արտավազդ Ե-ը (252/3 թվից մինչև, հավանորեն, 272/3 թիվը)[3]։

Ոդենատոսին, որը սպանվեց 266/7 թվին, հաջորդեց նրա որդին Վաբալլաթը (266/7—273), սակայն փաստորեն իշխեց նրա մայրը՝ Զենոբիան, որի գեղեցկությունը և քաջարիությունը գովաբանում են հռոմեական աղբյուրները։

Սրանց իշխանության սկզբում Հռոմի և Պալմիրայի հարաբերությունները բավական վատթարացան, որովհետև Գալլիենոս կայսրը ուզեց վերագրավել հռոմեական արևելքը և, պարսիկների դեմ պատերազմելու պատրվակով, ուղարկեց Արևելք մի մեծ զորաբանակ։ Սակայն Զենոբիան հռոմեական այդ զորքը ներս չթողեց Ասորիք։ Եվ ուշագրավ է, որ այս դեպքը, կայսրության ծանր քաղաքական դրության պատճառով, հետևանք չունեցավ, ու շու-

---

[1] Տե՛ս *Mommsen*, Römische Geschichte, V, էջ 435. *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 342. *K. Aslan*, Études historiques, էջ 144. *Sandalgian*, Histoire documentaire, էջ 580 և ուրիշները։

[2] Տե՛ս *Trebellius Pollio*, Valerianus, 6. Նույնի, Tyranni triginta, 30, 7, 18. *Vopiscus*, Avrelianus, 11, 27, 28, 41 (Scriptores historiae Augustae, edid. Hohl, vol. II, Lipsiae, 1927).

[3] Տե՛ս Գաթրճյան, Տիեզեր. պատմութ., Բ, էջ 462. Գարագաշյան, Քննական պատմություն, Բ, էջ 274. *Аннинский*, Древние армянские историки, էջ 44. *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 428։

*տով վերականգնվեցին նախկին հարաբերությունները, և Պալմիրան շարունակեց մնալ իբրև վասալ Հռոմի։*

*Կայսրության խառնակ վիճակը Գալլիենոսի հաջորդ Կլավդիոս Բ-ի ժամանակ (268—270) հնարավորություն տվեց Զենոբիային ավելի ընդարձակելու իր երկրի սահմանները։ Պալմիրայի Զաբդաս զորավարը տիրեց և՛ Եգիպտոսին, և՛ գրեթե ամբողջ Փոքր Ասիային։*

*Հռոմի հանդեպ այս, իհարկե, մի նոր ոտնձգություն էր, և Զենոբիան, գիտակցելով այդ՝ իր որդուն, Վաբալլաթին, հայտարարեց «Օգոստոս»* (Augustus), *այսինքն՝ Պալմիրայի անկախ թագավոր, և բարեկամություն հաստատեց Սասանյան Պարսկաստանի հետ (271 թվին)։*

*Հռոմում այդ ժամանակ Կլավդիոս Բ-ին հաջորդել էր Ավրելիանոսը (270—275), որը, իհարկե, չէր կարող հանդուրժել Հռոմեական արևելքի անջատումը կայսրությունից։ 271 թվի ամառը հռոմեական կայսրը մեծ զորքով եկավ Իտալիայից Ասորիք։ Երկու մեծ ճակատամարտում Անտիոքի և Եմեսայի (այժմյան Հոմսի) մոտ նա ծանր պարտության մատնեց Պալմիրայի զորքերը, գերի վերցրեց Զենոբիային ու Վաբալլաթին և կարճատև պաշարումից հետո գրավեց Պալմիրան (272 թվին)։*

*Կայսեր հեռանալուց հետո Պալմիրայի բնակչությունը ապստամբեց հռոմայեցիների դեմ, ուստի և Ավրելիանոսը շտապ կերպով վերադարձավ Ասորիք և այդ հարուստ առևտրական քաղաքն անխնա կերպով մատնեց սրի, կողոպուտի և ավերածության (273 թվին)։*

*Հռոմեական աղբյուրների վկայություններից մեզ հայտնի է, որ Զենոբիայի դաշնակիցներն էին հռոմայեցիների դեմ պարսիկները և հայերը։ Տրեբելլիոս Պոլլիոնի մոտ բերված է Ավրելիանոսի գրած նամակը հռոմեական ծերակույտին, որի մեջ մատնանշված է, թե որպիսի մեծ երկյուղ էր ներշնչել Զենոբիան արևելցիներին և, մանավորապես, նաև հայերին։*

> *«Կարող եմ ասել,—գրում է Ավրելիանոսը,—որ սրան [Զենոբիային] պետք է վերագրել, որ Ոդենատոսը հաղթեց պարսիկներին և, փախուստի մատնելով Շապուհին՝ հասավ մինչև Տիզբոն։ Ես կարող եմ հավաստիացնել, որ այդ կնոջից այնքան էին ակնածում արևելյան և եգիպտական ժողովուրդները, որ ո՛չ արաբները, ո՛չ սարակինոսները, ո՛չ էլ հայերը չէին համարձակվում ժաժ գալ»*[1]*։*

---

[1] Տե՛ս *Trebellius Pollio,* Triginta tyranni, 30 (Scriptores historiae Augustae, edid. Hohl, vol. II).

Եմեսայի մոտ տեղի ունեցած կռվից հետո, ինչպես հաղորդում է Ֆլավիոս Վոպիսկոսը, Ավրելիանոսը նամակ էր գրել Զենոբիային և առաջարկել էր անձնատուր լինել։ Ուշագրավ է, որ այդ նամակի պատասխանի մեջ, որ գրել էր Զենոբիան, իբրև Պալմիրայի դաշնակիցներ հիշատակված են նաև հայերը։ Զենոբիայի այդ նամակը ես կարևոր եմ համարում մեջ բերել ամբողջությամբ։

«Զենոբիա թագուհի Արևելքի Ավրելիանոս Օգոստոսին։ Ոչ ոք մինչև այժմ բացի քեզանից չէր խնդրել նամակով այն, ինչ որ դու ես պահանջում։ Ելքը պատերազմական գործողությունների լուծվելու է քաջության միջոցով։ Խնդրում ես, որ անձնատուր լինեմ, որպես թե չգիտես, որ Կլեոպատրա թագուհին ուզեցել էր ավելի շուտ մեռնել, քան ապրել որևէ կերպ անարժանավորապես։ Մեզ չեն պակասում օգնական զորքեր պարսիկների կողմից, որոնց արդեն մենք սպասում ենք։ Մեր կողմն են սարակինոսները, մեզ կողմնակից են հայերը։ Ասորի ավազակները քո զորքը հարվածել են։ Ի՞նչ կլինի, եթե գա այն օգնությունը, որն ամեն տեղից սպասվում է։ Մի կողմ կթողնես, իհարկե, քո բարձրահոնությունը, որի պատճառով այժմ հրամայում ես անձնատուր լինել, կարծելով՝ իբր ամենուրեք հաղթող ես»[1]։ Ֆլավիոս Վոպիսկոսը մի փոքր ներքև հաղորդում է նաև, որ Ավրելիանոսը

«բռնել էր այն օգնական ուժերը, որ ուղարկված էին պարսիկների կողմից, իսկ սարակինոսների և հայերի դաշնակից ջոկատները կաշառել էր, նաև իր կողմն էր անցկացրել կամ բռնությամբ, կամ հնարամտությամբ։ Վերջապես, նա մեծ զորքով հզորագույն կնոջը հաղթեց։ Արդ՝ երբ հաղթված Զենոբիան փախչում էր ուղտերով, որ անվանվում են արվայիկներ [միասապատ ուղտեր], և գնում էր Պարսկաստան՝ բռնվեց հեծելազորի կողմից և հանձնվեց Ավրելիանոսի ձեռքը։

Այսպիսով Ավրելիանոսը հաղթող եղավ ու նաև ամբողջ Արևելքի տեր, որովհետև նա Զենոբիային կալանավորել էր և պարսիկների, հայերի ու սարակինոսների հետ[2] ավելի բարձ-

[1] Տե՛ս *Flavius Vopiscus,* Avrelianus, 27 (Scriptores historiae Augustae, edid. Hohl, vol. II).

[2] Տաշյանի մոտ («Ագաթանգեղոս», էջ 117, ծան. 4) թարգմանված է՝ «իբրև ի շղթայս էր Զենոբիա և ընդ նմա (էին) պարսիկք, հայք և սարակինոսք», սակայն Ասատուրյանը («Քաղաքական վերաբերություններ», էջ 248) իրավացի կերպով մատնանշել է, որ Ավրելիանոսը ո՛չ թե գերի էր բռնել հայերին, այլ նրանց հետ համաձայնություն էր եկել։

բամտորեն ու ավելի հպարտ կերպով էր հարդարում, ինչ որ պահանջում էր ժամանակի շահը»[1]։

Հայերն ու հայ զորքը հիշատակված են նաև Վոպիսկոսի հետևյալ հատվածներում.

1. Վոպիսկոս, Ավրելիանոս, 11՝

«Քո [Ավրելիանոսի] ձեռքումն է լինելու զորքի առաջնորդի պաշտոնը։ Դու ունես նետաձիգներ՝ 300 իլյուրիկեցիներ, 600 հայեր [ըստ երևույթին, Փոքր Հայքի], 150 արաբներ, 200 սարակինոսներ և 400 օգնական զորք Միջագետքի»։

2. Նույնը, 30՝

«Այդ [Կարբիական] մականունը [Ավրելիանոսի] համարվեց պակասավոր, որովհետև նա անվանվեց նաև Գոթական, Սարմատական, Հայական, Պարթևական և Ադիաբենական»։

3. Նույնը, 41՝

«Նա [Ավրելիանոսը] պարսիկներին, որոնք մինչև այդ ժամանակ ամբարտավանացել էին Վալերիանոսի կործանման պատճառով, ցաքուցրիվ արեց, ի փախուստ դարձրեց և պարտության մատնեց։ Նրան սարակինոսները... իբերները, աղվանները, հայերը, նաև Հնդկաստանի ժողովուրդները, մեծարում են գրեթե իբրև աստծու»։

Ուշադիր կերպով քննելով մեջ բերված այս վկայությունները, ինձ թվում է, կարելի է հավանական համարել, որ Հայաստանը ինչպես Ոդենատոսի, նույնպես և Զենոբիայի ժամանակ ենթարկված չէ եղել Պալմիրայի իշխանությանը, այլ գտնվել է Սասանյան Պարսկաստանի գերիշխանության տակ և վերջինիս հետ միասին դաշնակից է եղել Զենոբիային։

Բացի այդ, ինչպես մատնանշում են Տուրնեբիզը, Սանտալճյանը և Մորգանը[2], կարելի է ենթադրել, որ Զենոբիայի պարտությունից հետո Հայաստանը, հակառակ Մոմզենի, Խալաթյանցի, Լեոյի և ուրիշների կարծիքի[3], ընկել էր նորից կայսրության ազդեցության շրջանակի մեջ և ճանաչել էր վերստին Հռոմի գերիշխանությունը։ Սրա ապացույց կարող է ծառայել ո՛չ միայն Ավրելիանոսի «Հայական» տիտղոսը, այլև այն, որ վերև բերված վկայություններից մե-

---

[1] *Flavius Vopiscus,* Avrelianus, 28.

[2] *Տե՛ս Tournebize,* Histoire politique et réligieuse de l'Arménie, էջ 432. *Sandalgian,* Histoire documentaire, էջ 581։ *Morgan,* Histoire du peuple arménien, էջ 110։

[3] *Mommsen,* Römische Geschichte, V, էջ 442։ *Халатьянц,* Очерк истории Армении, էջ 344. Լեո, Հայոց պատմություն, Ա, էջ 539 և ուրիշները։

կում նա անվանված է «ամբողջ Արևելքի տեր»։ Եվ, իրոք, Զոսիմոսի մի վկայությունից մեզ հայտնի է, որ 272 թվի իր հաղթություններից հետո Ավրելիանոսը միացրել է Հռոմին Միջագետքը[1]։

Ուշագրավ է նաև, որ Ավրելիանոսի հաղթահանդեսին մասնակցած ժողովուրդների այն շարքում, որ անկախ էին Հռոմից, չեն հիշատակված հայերը[2]։ Այդ, ինչպես կարծում են, կարող է դարձյալ մի նշան համարվել, որ Հայաստանն այդ ժամանակ գտնվում էր Հռոմի հովանավորության տակ[3]։

Կարծում են, որ Հայաստանի ազատագրումը Պարսից գերիշխանությունից քաղաքական բարդություններ առաջ չէր բերել, որովհետև Սասանյան Պարսկաստանն այդ ժամանակ բավական թույլ էր և զբաղված էր իր ներքին գործերով։ 272 թվին մեռել էր Շապուհ Ա-ը, որից հետո թագավորել էին Պարսկաստանում, արագ արագ իրար հաջորդելով, նրա որդիները՝ Հորմիզդ Ա-ը (272—273) և Վահրամ Ա-ը (273—276)։

Փոփոխությունը Հայաստանում, հավանորեն, տեղի էր ունեցել Շապուհ Ա-ի մահից անմիջապես հետո, և կարելի է ենթադրել, որ հեղաշրջման ժամանակ Հայաստանի գահի վրա նորից վերահաստատվել էր Հռոմի բարեկամ Արշակունիների դինաստիան։ Արշակունի հայ թագավորը, որը հաջորդել էր Արտավազդ Ե-ին, ըստ երևույթին, Տրդատ Մեծի հայր Խոսրով Բ-ն էր (272/3 մինչև, հավանորեն, 287 թիվը)։

Այդ մասին հիշողություններ պահպանված են հայկական աղբյուրներում, գլխավորապես՝ Սեբեոսի և Մովսես Խորենացու մոտ, որոնք պարզ ու որոշ վկայում են, որ Տրդատ Մեծից առաջ, որը Հայաստանի թագավոր էր դրվել Դիոկլետիանոս կայսեր ժամանակ (284—305), Հայաստանում իշխել էր նրա հայրը՝ Խոսրովը։

Գ. Ասլանը կարծում է, որ այս Խոսրովը Տրդատ Բ-ի կրտսեր եղբայրն էր[4]։ Սակայն, եթե նկատի ունենանք, որ հայ Արշակունի թագավորներն իրենց որդիներին անվանում էին պապերի անուններով՝ կարող ենք ավելի քան հավանական համարել, որ այս Խոսրով Բ-ը Խոսրով Ա-ի թոռն էր և Տրդատ Բ-ի ո՛չ թե եղբայրն էր, այլ որդին։

Ուշադրության արժանի է այս Խոսրով Բ-ի մասին Աննինսկու

---

[1] *Zosimos*, 60, 1.

[2] *Vopiscus*, Avrelianus, 33.

[3] Տե՛ս Ասատուրյան, *Քաղաքական վերաբերություններ*, էջ 249։

[4] Տե՛ս *K. Aslan*, Études historiques, էջ 144։

հետաքրքիր մի նոր դիտողություն։ Նրա կարծիքով, Տրդատ Մեծի որդի Խոսրով Կոտակի գահակալության վերաբերյալ Խորենացու ժամանակագրական վկայությունը, իրապես, վերաբերում է Տրդատ Մեծի հոր Խոսրով Բ-ին։ Ըստ Խորենացու վկայության՝ Խոսրով Կոտակը գահ էր բարձրացել Պարսից Հորմիզդ թագավորի երկրորդ և Կոստանդիոսի իշխանության (337—361) ութերորդ տարում[1]։ Ժամանակավրիպումը այս վկայության մեջ ակներև է, որովհետև Կոստանդիոսին ժամանակակից էր ո՛չ թե Հորմիզդը, այլ Շապուհ Բ-ը (310—379)։ Որովհետև Խորենացին Հորմիզդին համարում է Շապուհ Ա-ի (241—272) հաջորդ, ուստի և նրա վկայության մեջ, ինչպես շատ ճիշտ մատնանշում է Աննինսկին, վերոհիշյալ Հորմիզդը պարզապես Հորմիզդ Ա-ն է (272—273), որի երկրորդ տարում Հայաստանում գահ էր բարձրացել ո՛չ թե Խոսրով Կոտակը, ինչպես թյուրիմացաբար մատնանշում է Խորենացին, այլ Տրդատ Մեծի հայր Խոսրով Բ-ը (272/3 մինչև, հավանորեն, 287 թ.)[2]։

Խոսրով Բ-ի թագավորության ժամանակ քաղաքական դրությունն Արևելքում խիստ անկայուն էր և փոփոխական։ Սասանյան Պարսկաստանը չէր կարող, իհարկե, հանդուրժելի համարել Հռոմի ազդեցության ու իշխանության վերահաստատումը Հայաստանում և Միջագետքում, ուստի և պարսկա-հռոմեական կռիվները պարբերաբար շարունակվեցին նաև երրորդ դարի վերջին քառորդում։

Պատմական այդ անցքերը, ինչպես և քաղաքական իրադրության տատանումները Հայաստանում, դժբախտաբար, մինչև այժմ դեռ բավարար կերպով պարզված չեն աղբյուրների ու նյութերի աղքատության և անբավարարության պատճառով։

Հավանորեն, դեռևս Ավրելիանոսի մահից անմիջապես առաջ Հռոմեական արևելքում տեղի էին ունեցել ինչ-որ փոփոխություններ։ Վոպիսկոսի վկայությունից երևում է, որ Ավրելիանոսը 275 թվին մեծ զորք էր հավաքել և պատերազմի էր պատրաստվել Սասանյան Պարսկաստանի դեմ, բայց Արևելք գալու ժամանակ ճանապարհին սպանվել էր[3]։ Ուշագրավ է նաև, որ Զոսիմոսը, որի մոտ 272—3 թվերին Միջագետքը հիշատակված է իբրև հռոմեական երկիր, 276 թվի համար տալիս է տարբեր տեղեկություն, վկայելով, որ այդ ժամանակ Պրոբոս կայսեր (276—282) իշխանության տակ են եղել Արևելքում՝ Ասորիքը, Փյունիկիան, Պաղես-

---

[1] **Խորենացի**, *III, գլ. Ը*։

[2] *Տե՛ս А. Аннинский*, Древние армянские историки, **էջ** *54—55*։

[3] *Vopiscus,* Avrelianus, 35.

*տինը և Եգիպտոսը*[1]։ *Նրա վկայության մեջ Միջագետքը և Հայաստանը չեն հիշատակված։*

*Հունա-հռոմեական աղբյուրները հաղորդում են նաև, որ Պրոբոս կայսրը 279 թվին հաշտություն էր կնքել Պարսից թագավոր Վահրամ Բ-ի (276—293) հետ։*

*Այս հաղորդումը, ինչպես մատնանշել է Մոմզենը, կասկածելի է և անհավաստի*[2]։ *Հավանական է միայն այն, որ Պրոբոսը ևս Ավրելիանոսի նման, երբ ռազմի էր գալիս Սասանյան Պարսկաստանի դեմ՝ ճանապարհին սպանվել էր (282 թ.)։*

*Հայաստանի քաղաքական կացության մասին այս ժամանակներում մենք ոչ մի տեղեկություն չունենք։ Ասատուրյանը ենթադրում է, որ Հռոմեական կայսրության թուլացման այս շրջանում Հայաստանը բավական անկախ դիրք էր ստացել և այնտեղ, հավանորեն, մեծ չէր ո՛չ միայն հռոմեական, այլև պարսկական ազդեցությունը*[3]։

*Հռոմայեցիները, իրենց խախտված իրավունքներն Արևելքում վերականգնելու համար, կարողացան պատերազմ սկսել պարսիկների դեմ միայն Կարոս կայսեր ժամանակ (282—283)։ Սա ուզեց վերագրավել Միջագետքը, նաև Հայաստանում վերահաստատել Հռոմի գերիշխանությունը, և մեծ զորքով եկավ Արևելք (282 թվի վերջերին)։ Նա մտավ նախ Հայաստան, և Խոսրով Բ-ը, ըստ երևույթին, վերստին ճանաչեց Հռոմի գերիշխանությունը։*

*Պարսից թագավոր Վահրամ Բ-ը շտապեց դեսպաններ ուղարկել և խնդրեց խաղաղություն կնքել, սակայն Կարոսը ետ ուղարկեց դեսպաններին և իր արշավանքը շարունակեց։ Նա հեշտությամբ վերագրավեց Միջագետքը, հասավ մինչև Տիզբոն և տիրեց Սելևկիային, բայց 283 թվին Տիգրիսի ափերի մոտ հանկարծամահ եղավ*[4]։

*Կարոսի որդին, Նումերիանոսը, որ կայսր էր հայտարարվել, ետ նահանջեց, բայց վերադարձի ժամանակ սպանվեց Նիկոմեդիայի մոտերքում։ 284 թվին նրան հաջորդեց Դիոկլետիանոս կայսրը (284—305), որը դարձավ բացարձակ միապետ Հռոմեական կայսրության։*

---

[1] *Zosimos*, I, 64.

[2] **Տե՛ս** *Mommsen*, Römische Geschichte, V, *էջ 442, ծան. 1։* **Խառնաշփոթ տեղեկություններ խաղաղության կնքման մասին տալիս են՝** *Vopiscus*, Probus, 17 և *Synesius*, De regno, c. 18.

[3] Ասատուրյան, *Քաղաքական վերաբերություններ, էջ 247 և 249։*

[4] **Տե՛ս** *Synesius*, De regno. c. 18. *Vopiscus*, Carus, 8. *Zonaras*, XII, 30. *Eutropius*, IX, 18. *Aurelius Victor*, Caes., XXXVIII. **Համեմատե՛ նաև Խորենացի** (II, գլ. ՀԹ), **որի մոտ դեպքերը խիստ շփոթված են։**

Պատմագիտական ուսումնասիրություններում, օրինակ, Մոմզենի, Տաշյանի, Խալաթյանցի և ուրիշների երկերում, մատնանշվում է, որ 283—286 տարիներում խաղաղության դաշն էր կնքված Վահրամ Բ-ի հետ և ըստ այդ դաշնագրության Հայաստանը տրվել էր Հռոմեական կայսրությանը[1]։ Սակայն այդ պնդումները, որ հիմնված են Դիոկլետիանոսին վերաբերող ներբողական ճառերի կցկտուր ու մութ վկայությունների վրա[2], վիճելի են և դժվար ընդունելի։

Ավելի հավանական կարելի է համարել Ասատուրյանի և Աննինսկու կարծիքը, որոնք ենթադրում են, որ վերոհիշյալ թվերին օրինավոր դաշինք կնքված չէ եղել[3]։ Ըստ երևույթին, մինչև երրորդ դարի վերջերը թե Հայաստանը և թե Միջագետքը տարտամ և անորոշ դրության մեջ են եղել և անցել են ձեռքից ձեռք։ Հայաստանում այս խառնակ ժամանակաշրջանում, ինչպես վերև ասացինք, թագավորում էր Տրդատ Մեծի հայրը, Խոսրով Բ-ը։

Աննինսկին ենթադրում է, որ այս Խոսրով Բ-ն էր մասնակցել Կարոսի վերոհիշյալ արշավանքին և հասել էր մինչև Տիզբոն, ինչպես այդ մատնանշում է Ագաթանգեղոսը[4]։ Հայկական ավանդությունը սրա սպանության մասին Սասանյան Պարսկաստանի թելադրանքով, որ մանրամասն մեջ է բերված Ագաթանգեղոսի Պատմության մեջ, թեպետև ունի իր մեջ վիպական-առեղծական մանրամասնություններ, սակայն ըստ էության կարող է լինել պատմական հիշողություն։ Միանգամայն բնական է և հնարավոր, որ Խոսրով Բ-ի հակապարսկական վարքագիծը առաջ էր բերելու նրա դեմ կատաղի թշնամություն, ուստի և հավանական է, որ նրանից կարող է վրեժ առած լինել Պարսից թագավորը։

Խոսրով Բ-ի սպանության տարեթվի մասին ուշադրության արժանի է Աննինսկու կարևոր ցուցումը։ Նրա կարծիքով, Սեբեոսի Պատմության մեջ ճիշտ են ցույց տրված թե Խոսրով Բ-ի սպանության և թե Տրդատ Գ-ի ու Կոստանդիանոսի գահակալության տարեթվերը։ Եվ, հիրավի, Սեբեոսի եռանուն, աղավաղումներով լի

---

[1] *Mommsen*, Römische Geschichte, V, էջ 443. Տաշյան, *Ագաթանգեղոս* էջ 125. *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 345 և ուրիշները։

[2] Տե՛ս Panegyrici latini XII' II *(289 թ.)*, III *(290 թ.)*, V *(297 թ.)* և XII *(289 թ.)*։ Համեմատե՛ Ասատուրյան, *Քաղաքական վերաբերությիւններ*, էջ 253, ծան. 1։

[3] Տե՛ս Ասատուրյան, *Քաղաքական վերաբերութիւններ*, էջ 253 և *Аннинский*, Древние армянские историки, էջ 45։

[4] Տե՛ս Ագաթանգեղոս, գլ. Ա, 19 (Տփղիս, 1909, էջ 16)։ Համեմատե՛ նաև «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», հրատ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1939, էջ 14—15 (գլ. Գ)։

ցանկը, որ պարունակում է բազմաթիվ ժամանակագրական և սինխրոնիկական կոպիտ սխալներ, հատկապես այս մասում տալիս է պատմական ճիշտ թվեր, որոնք կատարելապես համապատասխանում են պատմագիտական նոր ուսումնասիրությունների տվյալներին։ Ինչպես վկայում է Սեբեոսը՝

«Արտաշիր Պարսից թագավորի քսանմեկերորդ և Դիոկլետիանոս կայսեր չորրորդ տարում մեռել էր Խոսրով Քաջը վատանուն Անակի ձեռքով։ Եվ Հայոց աշխարհի վրա իշխում էր Պարսից Արտաշիր արքան 11 տարի։ Դիոկլետիանոս՝ չորրորդ [տարին]։

Արտաշիրի երեսներորդ, Դիոկլետիանոսի տասնհինգերորդ տարում Տրդատիոսը կայսերակերպ շքեղությամբ ելնում է իբրև ախոյան գոթերի թագավորի դեմ։ Եվ իսկույն, ձերբակալելով ախոյանին, գոթերի վիթխարի թագավորին՝ բերում և ներկայացնում է Դիոկլետիանոս կայսրին։ Եվ Դիոկլետիանոսը նույն այս թվին Տրդատին թագավոր է կարգում Հայոց աշխարհի վրա։ Նա տալիս է սրա ձեռքը մեծ զորք և ուղարկում սեփական նրա իշխանությունը՝ Հայոց աշխարհը։ Սա ամենայն քաջությամբ և բարեպաշտությամբ թագավորում է 70 տարի։ Այսպես, ուրեմն, Արտաշիր՝ 32, Դիոկլետիանոս՝ 15, Տրդատես՝ առաջին [տարին]։

Հայոց Տրդատ արքայի իններորդ տարում թագավորում է Հունական աշխարհում Կոստանդիանոս, որը կառուցել է Բյուզանդիան՝ 9 տարի»։

[«Յամի Ի-երորդի առաջներորդի Արտաշրի Պարսից արքային ի չորրորդում ամի Դիոկղետիանոսի կայսեր՝ մեռանի Քաջն Խոսրով ի վատանուն Անակայ։ Եւ տիրէ ի վերայ աշխարհիս Հայոց Արտաշիր արքայ Պարսից ամս ԺԱ։ Դիոկղետիանոս՝ զչորրորդն։

Յամին Լ-երորդի Արտաշրի, հնգետասանորդի Դիոկղետիանոսի, կայսերակերպ շքեղութեամբ Տրդատիոս ելանէ ախոյեան ընդդէմ արքայի գոթաց։ Եւ անդէն ձերբակալ արարեալ զախոյեանն անարի զթագաւորն գոթաց՝ ածեալ կացուցանէ յանդիման կայսերն Դիոկղետիանոսի. և անդէն ի նմին ամի թագաւորեցուցանէ Դիոկղետիանոս զՏրդատ ի վերայ աշխարհիս Հայոց։ Գումարէ ի ձեռս սորա զաւրս բազումս և արձակէ յիւրական իշխանութիւն յաշխարհին Հայոց։ Որ տիրէ ամենայն քաջութեամբ և բարեպաշտութեամբ ամս Հ։ Եւ է այսպէս. Արտաշիր՝ ԼԲ, Դիոկղետիանոս՝ ԺԵ, Տրդատէս՝ զառաջինն։

*Յամին Թ-երորդի Տրդատայ արքային Հայոց թագաւորէ ի վերայ Յունաց աշխարհին Կոստանդիանոս, որ շինեաց զԲիւզանդիա՝ ամս Թ»]*[1]։

*Սեբեոսի եռանուն ցանկի մեջ, ինչպես դժվար չէ համոզվել, միանգամայն սխալ է այն, որ իբր թե երրորդ դարում Հայաստանում թագավորել են միայն երկու թագավոր՝ Խոսրով Մեծը (51 տարի) և նրա որդի Տրդատ Մեծը (70 տարի), իսկ Պարսկաստանում՝ Սասանի որդի Արտաշիրը (50 տարի) և Արտաշիրի որդի Շապուհը (73 տարի)։*

*Այս սխալն առաջացել է, ըստ երևույթին, նրանից, որ եռանուն ցանկի հեղինակը իր սինխրոնիկական հաշիվների համար հիմք է ընդունել Ագաթանգեղոսի մոտ բերված վիպական ավանդության անհավաստի ժամանակագրությունը։ Իսկ Խոսրով Բ-ի սպանության և Տրդատ Գ-ի ու Կոստանդիանոսի գահակալության թվականները, հավանորեն, նրան հայտնի են եղել թանկարժեք մի այլ աղբյուրից, որի մեջ Խոսրով Բ-ի մահը մատնանշված է եղել Դիոկղետիանոսի չորրորդ տարում, այսինքն՝ 287 թվին, Տրդատ Գ-ի գահակալությունը՝ Դիոկղետիանոսի տասնհինգերորդ տարում, այսինքն՝ 298 թվին, և Կոստանդիանոսի գահակալությունն Արևմուտքում՝ Տրդատի իններորդ տարում, այսինքն՝ 306 թվին։*

*Այս երեք տարեթիվն էլ, որ տարբեր են մյուս հայ պատմագիրների ցուցումներից, ինչպես շատ ճիշտ նկատել է Աննինսկին*[2]*, կարող են լինել պատմական և ճիշտ։*

*Թե ի՛նչ պարագաներում էր սպանված Խոսրով Բ-ը՝ այդ պարզ չէ, որովհետև այդ մասին մենք ունենք տարբեր ավանդություններ։ Ըստ Ագաթանգեղոսի՝ նրան սպանել էր տվել դավով Արտաշիրը Անակ Պարթևի ձեռքով, և Խոսրովի որդիներից ազատվել էր միայն մանկիկ Տրդատը, որին դայակները փախցրել էին Հռոմեական երկիրը*[3]*։ Իսկ Եղիշեի վկայությամբ՝ Տրդատին տղայության հասակում տարել էին Հռոմայեցոց երկիրը, ազատելով նրան «ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն իւրոց»*[4]*։ Եղիշեի այս վկայությունը, որ մեջ է բերված հայերի Թեոդոս կայսրին գրած նամակում, հավանորեն, ավելի մոտ է ճշմարտության, քան Ագաթանգեղոսի վիպական պատմվածքը։ Ուստի և կարելի է թերևս ենթադրել, որ մանկիկ*

[1] «Սեբէոսի եպիսկոպոսի *Պատմութիւն», հրատ. Ստ. Մալխասյանցի Երևան, 1939, էջ 15 (գլ. Գ)։*

[2] *Аннинский,* Древние армянские историки, *էջ 50—51։*

[3] Ագաթանգեղոս, *գլ. Գ, 36 (Տփղիս, 1909, էջ 24)։*

[4] Եղիշե, *Գ, Վենետիկ, 1852, էջ 123։*

Տրդատի փախուստից հետո քաղաքական իշխանությունը Հայաստանում իրենց ձեռքն էին ձգել Խոսրով Բ-ի եղբայրները։

Ինչպես հայտնի է, պատմական այս անցքերը ժամանակագրական տեսակետից բոլորովին այլ կերպ են լուսաբանված Մովսես Խորենացու Պատմության մեջ։ Խոսրով Մեծի մահը նրա մոտ ցույց է տրված Վալերիանոս կայսեր (253—260) ժամանակներում, իսկ Տրդատ Մեծի գահակալությունը՝ Դիոկղետիանոս կայսեր երրորդ տարում (286 թ.)։ Պետք է նկատի ունենալ սակայն, որ Խորենացու Պատմության այս մասում նրա արհեստական ժամանակագրական սխեման, որ կազմված է, գլխավորապես, Ագաթանգեղոսի վկայությունների և Սեբեոսի սխալաշատ ժամանակագրական ցանկերի հիման վրա՝ նրա պատմական երկի ամենաթույլ կողմն է։ Ուստի և Խորենացու այդ տվյալները մենք կարող ենք անտեսել։

Պարսից Վահրամ Բ-ին 293 թվին հաջորդեց Շապուհ Ա-ի որդի Ներսեհը (293—302), որը, հետևելով իր հոր օրինակին, ուժեղ կերպով վերսկսեց պայքարը կայսրության դեմ։ 295 կամ 296 թվին նա պատերազմ հայտարարեց Հռոմին և ուզեց իր իշխանությանը ենթարկել ո՛չ միայն Միջագետքն ու Հայաստանը, այլև ամբողջ Փոքր Ասիան։ Ամմիանոսի վկայությամբ, նա վերագրավեց Հայաստանը, որն այդ ժամանակ գտնվում էր Հռոմի գերիշխանության տակ[1]։ Նրա դեմ ռազմի ելավ Դիոկլետիանոսի զորավար Գալերիոս Մաքսիմիանոսը։

Գլխավոր ու վճռական ընդհարումը պարսիկների հետ տեղի ունեցավ Միջագետքում՝ Խառանի և Կալլինիկումի միջև, մոտավորապես այն տեղերում, ուր հռոմեական զորքի 53 թվի (մեր թվականությունից առաջ) սոսկալի պարտությունից հետո սպանվել էր Կրասսոսը։ Այս ճակատամարտում Գալերիոս Մաքսիմիանոսը ծանր պարտություն կրեց պարսկական հեծելազորից, որն իր թվով ու որակով ավելի ուժեղ էր, քան հռոմեականը (296 թ.)։ Հաղթված Գալերիոսը վերադարձավ Դիոկլետիանոսի մոտ Անտիոք, որը նրան խիստ կշտամբեց և, ի նշան արհամարհանքի, հրամայեց ամբողջ զորքի ներկայությամբ գնալ հետիոտն նրա առջևից։

Այս կռվին, հավանորեն, մասնակցել էր հռոմայեցիների մոտ ապաստանած Խոսրով Բ-ի որդին, Տրդատը, որն այնտեղ ապրել ու մեծացել էր Գալերիոս Մաքսիմիանոսի ընկերոջ՝ Լիկինիոս Լիկինիանոսի մոտ[2]։ Ագաթանգեղոսի պատմելով, նա, ծանր վիրավոր-

---

[1] Amm. Marc., XXIII, 5, 11.

[2] Այս Լիկինիոս Լիկինիանոսը, որը 307 թվին Գալերիոսի կողմից նշա-

ված լինելով կռվում, իր զենքերն ու ձիու սարքը մեջքին կապած՝ լողալով անցել էր իր ձիու հետ միասին լայն ու խոր Եփրատ գետը և անվնաս հասել էր Լիկինիանոսի մոտ[1]։

Պատերազմը պարսիկների հետ շարունակվեց նաև 297 թվին։ Այս անգամ ևս հռոմեական զորքի առաջնորդն էր Գալերիոս Մաքսիմիանոսը։ Սակայն նա այժմ պատերազմի վայր ընտրեց Հայաստանի լեռնային շրջանները, որոնք նպաստավոր չէին պարսկական հեծելազորի ռազմական գործողությունների համար։ Հայաստանը շատ հարմար էր իբրև պատերազմի թատերավայր նաև այն տեսակետից, որ այնտեղ կարող էին իրեն օգնել Տրդատի կողմնակից հայերը։

Գալերիոսի այս հաշիվները շատ ճիշտ էին։ Ներսեհի բանակը Հայաստանում գլխովին ջարդվեց (297 թ.)։ Գալերիոսի ձեռքն ընկան Պարսից թագավորի կանայք, քույրերն ու երեխաները, մեծամեծներից շատերը, նաև հարուստ ռազմական ավար։ Սասանյան Պարսկաստանն այս անգամ բոլորովին հուսաբեկ եղավ, և Ներսեհ թագավորը շտապեց խաղաղության դաշն կնքել և հանձն առավ ամենածանր պայմանները։

Կնքված այդ խաղաղությունը տևեց քառասուն տարի, և Հայաստանն այդ ժամանակաշրջանում, գտնվելով Տրդատ Գ-ի և նրա որդի Խոսրով Գ-ի իշխանության տակ, խաղաղ կյանք ունենալով՝ առաջադիմեց կուլտուրապես և տնտեսապես։

Գալերիոս Մաքսիմիանոսի 297 թվի հաղթությունը, որ խիստ մեծ նշանակություն ունեցավ Հայաստանի համար , նկարագրել են և՛ հունա-հռոմեական, և՛ հայ պատմագիրները։ Ավելորդ չեմ համարում այդ վկայություններից ամենակարևորները մեջ բերել ընդարձակ բովանդակությամբ։

1. Eutropius, Breviarium, IX, 24—25՝

«Բայց շուտով նա [Գալերիոսը] Իլլիրիկումի ու Միզիայի օժանդակությամբ զորք հավաքեց և նորից Մեծ Հայքում կռվի բռնվեց Հորմիզդի ու Շապուհի պապ Ներսեհի հետ ամենամեծ հնարամտությամբ և ոչ պակաս խորհրդածությամբ ու նաև քաջությամբ. նա մինչև իսկ կատարեց լրտեսի դեր երկու կամ երեք ձիավորի հետ միասին։ Պարտության մատնելով Ներսե-

---

նակվել էր Իլլիրիայի կուսակալ և անվանվել էր Կեսար, իսկ 313 թվին դառել էր Արևելքի միահեծան տիրակալ, ինչպես հաղորդում է Եվտրոպիոսը (X, 4), մասնակցել էր 296 և 297 թվերի պարսկա-հռոմեական կռիվներին։

[1] Տե՛ս Ագաթանգեղոս, գլ. ԺԹ (Տփղիս, 1909, էջ 108—109)։ Համեմատե՛ K. Aslan, Études historiques, էջ 147։

հին՝ նա կողոպտեց նրա բանակատեղը. վերցրեց նրա կանանց, քույրերին, երեխաներին և, բացի այդ, անթիվ քանակությամբ պարսիկ ազնվականներ ու պարսկական հարստագույն գանձեր։ Իրեն [Ներսեհին] նա քշեց Պարսից թագավորության ամենահեռավոր ամայի տեղերը»։

2. Rufus Festus, Breviarium, գլ. XXV՝

«Ինքը հրամանատարը [Գալերիոսը] երկու ձիավորի հետ լրտեսեց Մեծ Հայքում թշնամուն. և ապա, քսանհինգ հազար զորքով անսպասելիորեն հարձակվելով թշնամական բանակատեղերի վրա՝ նա իսկույն Պարսից անթիվ զորքերի վրա ընկավ և նրանց կատարյալ ջարդ տվեց։ Պարսկաստանի թագավոր Ներսեհը փախավ. նրա կինը և աղջիկները գերի ընկան, բայց մեծագույն հսկողությամբ նրանց ողջախոհությունը պահպանեցին։ Այդ բանի վրա զարմացած պարսիկները խոստովանում էին, որ հռոմայեցիներն իրենց գերազանցում են ո՛չ միայն զենքով, այլև բարքով։ Եվ նրանք վերադարձրին Միջագետքը հինգ Անդրտիգրիսյան նահանգների հետ միասին։ Խաղաղությունը կնքվեց և ի նպաստ կայսրության հարատևեց մինչև մեր օրերը»։

3. Aurelius Victor, Caesares, XXXIX՝

«Նախ նա [Գալերիոսը] ծանր պարտություն կրեց նրանցից, բայց իսկույն կազմակերպեց զորք վետերաններից ու նորակոչիկներից և դիմեց թշնամիների վրա Հայաստանի վրայով, որն ամուր հենարան է և հաղթության համար ավելի հեշտ ճանապարհ է։ Վերջապես, նա այնտեղ իրեն հնազանդեցրեց Ներսեհ թագավորին, նաև միաժամանակ նրա զավակներին, կանանց և թագավորական արքունիքը։ Հաղթությունն այնքան մեծ էր, որ եթե Վաղերիոսը [այսինքն՝ Դիոկլետիանոսը][1], որի հրամանով ամեն ինչ կատարվում էր, մի ինչ-որ անհայտ պատճառով չհակառակեր, հռոմեական իշխանությունը կհաստատվեր նոր նահանգում»[2]։

Ներսեհի 297 թվի այս պարտությունը մանրամասն նկարագրված է նաև Փավստոսի Պատմության մեջ, որի մոտ, ինչպես ցույց է տվել Ադոնցը[3], Գալերիոս Մաքսիմիանոսի ժամանակ տեղի ունեցած անցքերը թյուրիմացաբար վերագրված են Հայոց Տիրան

[1] Դիոկլետիանոսի անունն էր՝ Ավրելիոս Վալերիոս Դիոկլետիանոս։

[2] Համեմատե՛ նաև Orosios, VII, 25, 9 են.։

[3] Տե՛ս Адонц, Фауст Византийский как историк, Христианский Восток, 1917—1920, т. VI, вып. III, Петроград, 1922, էջ 247։

*թագավորի ժամանակներին։ Ինչպես հայտնի է, Փավստոսին աղբյուր է ծառայել այս մասում հայ ժողովրդական վեպը[1]։ Ուստի և միանգամայն բնական է, որ նրա մոտ պատմական իրադարձությունները այլափոխված են և նրանց ավելացվել են վիպականստեղծական շինծու տարրեր։*

*Այնուամենայնիվ, Փավստոսի մոտ բերված ավանդությունն այնքան հետաքրքիր է, որ կարևոր եմ համարում մեջ բերել մանրամասն կերպով։*

> *«Արդ՝ մինչ դեսպանները,—պատմում է Փավստոսը,—որոնք Հայոց երկրից կայսերական պալատն էին գնացել, դեռևս չէին վերադարձել իրենց երկիրը՝ արևելքի կողմից ճանապարհ ընկավ ու եկավ ինքը Պարսից թագավոր Ներսեհը, որպեսզի գա, առնե, այրե ու ավերե, փչացնե և միանգամայն իրեն վերցնե Հայաստան երկիրն իր սահմաններով։ Նա եկավ հասավ Հայաստանի սահմանները իր ամբողջ զորքով, իր բուն աղխով, ամբողջ մեծ կարավանով, փղերի մեծ բազմությամբ, անթիվ ապրանքներով, բուն մաշկապաճյանով [թագավորի կանանոցի վրանով], բոլոր կանանցով հանդերձ տիկնանց տիկնով. եկավ և լցրեց ու բռնեց ամբողջ երկիրը։*
>
> *Այդ ժամանակ Հայոց նախարարների ազատազորքերը վերցրին իրենց ընտանիքները, փախան գնացին Հունաց կողմերը և գույժը հայտնեցին կայսեր բազմազոր բանակի նախարարներին։ Այնուհետև, երբ Հունաց թագավորն այս բոլորը լսեց՝ նույն ձևով նաև ինքը իր զորքը հավաքեց և չվեց ու եկավ հասավ Հայոց աշխարհը՝ Պարսից թագավորի դեմ։ Նա իր բանակը թողեց Սատաղ քաղաքի մոտերքը և ընտրեց ինքը Հայաստանի բանակից երկու ականավոր ու իմաստուն մարդ, այն է՝ Արշավիրին և Անդովկին, որոնք մի փոքր առաջ եկել էին նրա մոտ իբրև դեսպաններ։ Եվ այսպիսով նրանց հետ միասին նաև ինքը կայսրը շինականի կերպարանքով, իբրև կաղամբ վաճառող, մտավ Պարսից բանակը։*
>
> *Եվ նա [Պարսից թագավորը] բանակել էր Բասեն գավառում՝ Ոսխա կոչվող գյուղում։ Նրանք եկան, մտան Պարսից թագավորի բանակը, դիտեցին, քննեցին, իմացան թիվն ու ույժը նրանց զորքերի։ Եվ այստեղից նրանք վերադարձան իրենց բա-*

[1] *Համեմատե՛* **Կ. Մելիք-Օհանջանյան**, *Տիրան-Տրդատի վեպը ըստ Փավըստոս Բուզանդի. «Տեղեկագիր», Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի, հաս. գիտ., 1947, № 6, էջ 59—74 և № 7, 59—77։*

նակը, կազմակերպվեցին, պատրաստվեցին և եկան նորից ու գտան Պարսից թագավորի բանակը, նույն տեղում, ուր բանակել էին անփույթ ու անհոգ, խաղաղ ու առանց կասկածանքի։ Ապա երբ լույսը բացվեց, նրանք հարձակվեցին Պարսից թագավորի վրա, սրի անցկացրին ամբողջ բանակը և ոչ մեկին կենդանի չթողին։ Եվ նրանք կողոպտեցին ու թալանեցին բանակը, վերցրին թագավորի կանանց ու բամբիշին և նրանց հետ միասին նաև տիկիններին, վերցրին նույնպես նրանց բոլոր գույքը և ունեցվածքը. նրանք գերի տարան թե նրանց կանանց և թե նրանց զանձերը, պաշարեղենը ու կահ-կարասիքը։

Բայց միայն թագավորը հազիվհազ ազատվեց, նաև պզտիկ ձիու վրա նստած մի սուրհանդակ առջևից. նա դուրս պրծավ, փախավ և հազիվ կարողացավ հասնել ու ընկնել իր աշխարհը։ Իսկ կայսրը մեծ շքեղությամբ պերճացած երևելի եղավ բանակի մեջ։ Բոլոր չափահասներին նրանք կոտորեցին, իսկ մյուս բոլորին գերի տարան Հունաց աշխարհը»։

[«Արդ մինչ դեռ դեսպանքն երթեալք յերկրէն Հայոց ի կայսերական պաղատն չև էին անդրէն յիւրեանց աշխարհն դարձեալ, ի կողմանց արևելից խաղաց գնաց ինքն Ներսեհ արքայն Պարսից, գալ առնուլ այրել և աւերել, կորուսանել և միահաղոյն իսկ յիւր վտարել զսահմանս Հայաստան երկրին։ Եւ առեալ զամենայն զօրս իւր բնիւ աղխիւ և ամենայն մեծաւ կարաւանաւ, փղակոյտ բազմութեամբ հանդերձ, անթիւ վաճառօք և բնիւն մաշկապաճենօքն, և ամենայն կանանօքն, և հանդերձ տիկնանց տիկնաւն, եկն եհաս ի սահմանս Հայոց. խճողեաց ելից զերկիրն առ հասարակ։

Յայնմ ժամանակի ազատազօրքն նախարարացն Հայոց առեալք զիւրաքանչիւր ընդանիս, լինէին փախստականք, ի կողմանս Յունաց անգանէին, գոյժ տային կայսերն բազմագունդ բանակին նախարարացն։ Ապա իբրև զայս ամենայն լսէր թագաւորն Յունաց, նոյնօրինակ և նա զիւր զօրսն գումարէր. և չու արարեալ գայր հասանէր յերկիրն Հայոց ընդդէմ թագաւորին Պարսից։ Եւ եթող զիւր բանակն զՍատաղ քաղաքաւն. և ինքն ընտրեաց իւր արս երկուս զլխաւորս, արս իմաստունս Հայաստան բանակէն, այս ինքն զԱրշաւիրն և զԱնդովկն. զի այս արք էին, որ չոգան առ նա դեսպանութեամբ յառաջնում նուագին։ Եւ այսպէս հանդերձ նոքօք ինքն իսկ կայսրն ի շինականութեան կերպարանս, ի կաղամբավաճառի օրինի, մտանէր ի բանակն Պարսից։

Իբրև էր նա բանակեալ ի գաւառին Բասենոյ, ի գեւղն՝ որ անուանեալ կոչի Ոսխայ, եկին մտին ի բանակն արքային Պարսից, դիտեցին քննեցին զչափ առին զնոցա զօրութիւն զօրացն։ Եւ անտի դարձան յիւրեանց բանակն, կազմեցան պատրաստեցան. գային, հասանէին, գտանէին զբանակն արքային Պարսից ի նմին տեղւոջ բանակեալ ի պղերգութեան յանհոգութեան յանկասկած խաղաղութեան։

Ապա հասեալ ի տուրնջէն ժամուն, անկանէին ի վերայ թագաւորին Պարսից, ընդ սուր զամենայն բանակն հանէին, և ոչ զմի ոչ ապրեցուցանէին։ Եւ առին զկապուտ զաւար բանակին, և զկանայս թագաւորին և զբամբիշն, և զբանսկան ընդ նոսին, և զինչս և զստացուածս նոցին ընդ նմին ի գերութիւն վարէին, զկանայս նոցա և զգանձս և զկեանս և զկազմած նոցա։

Բայց միայն թագաւորն պրծեալ մազապուր, պէշասպիկ մի սուրհանդակ առաջի, պրծեալ ելանէր փախստական. հազիւ ուրեմն կարէր անկանել, հասանել յաշխարհ իւր։ Իսկ կայսրն մեծաւ շքեղութեամբ անուանի պերճացեալ ի մէջ բանակին երևեալ. զայր ի չափ հասեալ առ հասարակ կոտորէին, և զայլ ամենայն ի գերութիւն վարէին յերկիրն Յունաց»][1]։

Մեջ բերված Փավստոսի այս պատմվածքից երևում է, որ 297 թվին հռոմեական-հայկական զորքերը պարսիկների հետ ընդհարում և կռիվ չէին ունեցել, այլ նրանք վաղ առավոտյան հանկարծակի հարձակվել էին Ներսեհի բանակի վրա, երբ պարսիկները դեռևս անհոգաբար հանգստանում էին իրենց բանակատեղում, և անխնա կոտորել ու գերել էին նրանց ու մեծ ռազմական ավար էին վերցրել։ Փավստոսի մոտ կարող է պատմական և ստույգ լինել նաև այն, որ այդ կոտորածը տեղի էր ունեցել Հայաստանի Բասեն գավառում։

Այս աղետալի պարտությունից հետո Պարսից Ներսեհ թագավորը դեսպաններ ուղարկեց Դիոկղետիանոս կայսեր մոտ և խնդրեց ազատել գերիներին, հանձն առնելով խաղաղության դաշն կնքել ծանր պայմաններով։ Դիոկղետիանոսը Ներսեհի մոտ ուղարկեց հռոմեական բարձր պաշտոնյա (magister memoriae) Սիկորիոս Պրոբոսին, որը 298 թվին պարսիկների հետ կնքեց հաշտություն։

Ըստ այդ դաշնադրության Սասանյան Պարսկաստանը զիջեց Հռոմեական կայսրությանը ո՛չ միայն Միջագետքը, այլև Անդրտիգրիսյան երկրները (Regiones Transtigritanae)՝ Ծոփքը, Անգեղ տունը, Աղձնիքը, Կորդուքը, Մոկքը, Ծավդեքը և Ռեհիմենան[2]։

---

[1] Փավստոս, III, գլ. ԻԱ (Վենետիկ, 1889, էջ 55—56)։

[2] Տե՛ս Կ. Գյուտերբոգ, Հռովմեական Հայաստան և հռովմեական սատրապու-

Հայաստանը ճանաչվեց իբրև Հռոմի վասալ պետություն, և նրա հարավ-արևելյան սահմանը Ատրպատական-Մարաստանի կողմից որոշվեց Զինթա ամրոցը։

Խաղաղության այս պայմանները հիշատակված են վեցերորդ դարի բյուզանդական պատմագիր Պետրոս Պատրիկիոսի պատմական երկում, որից պահպանվել են սակավաթիվ հատվածներ։

«Արդ՝ դեսպանության առաջադրած գլխավոր կետերը,— վկայում է Պետրոս Պատրիկիոսը,—հետևյալներն էին. արևելյան երկրամասում հռոմայեցիներին են պատկանելու Ինգիլենեն Սոփքի, Աղձնիքի, Կորդուքի և Ծավդեքի հետ միասին. Արմենիա սահմանը լինելու է Զինթա ամրոցը, որը գտնվում է Մեդիայի սահմանում. Իբերիայի թագավորն իր թագավորական նշանները պետք է ստանա հռոմայեցիներից»[1]։

Մեջ բերված այս վկայության մեջ հիշատակված Զինթա ամրոցը, որ Հայաստանի սահմանն էր լինելու հարավ-արևելքում, ինչպես մանրամասն ցույց է տրված իմ աշխարհագրական աշխատություններից մեկում, թե իր անունով և թե իր տեղադրությամբ կարող է համապատասխան լինել սասրեստանյան արձանագրությունների Իզիրտուին կամ Զիրտային, որը գտնվում էր Ռեվանդուզից Ատրպատական-Մեդիա գնացող ճանապարհի վրա՝ Զագրոս լեռների կամ Զարասպի արևելակողմում[2]։ Համաձայն իմ այս լուսաբանության՝ 298 թվի դաշնագրությունից հետո Արշակունյաց Հայաստանի հարավ-արևելյան սահմանը պետք է լիներ Զագրոս լեռների այն մասում, որը գտնվում էր Ուրմիա լճի հարավ-արևմուտքում։

Անդրտիգրիսյան վերոհիշյալ երկրները՝ Սոփքը, Անգեղ տունը, Աղձնիքը, Մոկքը, Կորդուքը, Ծավդեքը և Ռեհիմենան, որ հռոմեական աղբյուրներում անվանվում են նաև սատրապություններ, թեև կախում ունեին Հռոմից, սակայն իրավական իրենց դրությամբ փաստորեն կիսանկախ դաշնակից երկրներ էին, որոնց մեջ շարունակում էին իշխել նախարարական հին տոհմերը։ Ուշագրավ

---

թիւնները Դ—Զ դարերում, թարգմ. Մ. Նորշուանի, Վիեննա, 1914, էջ 7—8, Հ. Հյուբշման, Հին հայոց տեղւոյ անունները, թարգմ. Բ. Պիլեզիկճյան, Վիեննա, 1907, էջ 30—31, *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 43 և ուրիշները։

[1] Տե՛ս *Petr. Patric.*, fragm. 14 (Dindorf, Historici graeci minores, I, էջ 443)։ Համեմատե՛ նաև Amm. Marc., XXV, 7, 9. Aurel. Victor, Caes., 39, 35—37 և ուրիշ.։

[2] Տե՛ս Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, Երևան, 1945, էջ 15—18։

է նաև, որ նույն այս երկրները, ինչպես երևում է հայկական աղբյուրների վկայություններից, լինելով քաղաքականապես գրեթե անկախ իշխանություններ, 298 թվից հետո ևս, իբրև նախարարություններ ու բդեշխություններ, սերտ կապված էին մնում Մեծ Հայաստանի հետ, և, ըստ երևույթին, որոշ չափով գտնվում էին նաև Հայ Արշակունիների գերիշխանության տակ։

Համաձայն 298 թվի խաղաղության դաշնագրի՝ Հայաստանն ազատագրվեց Պարսից իշխանությունից և դառավ նորից վասալական թագավորություն Հռոմեական կայսրության հովանավորության տակ։ Հայաստանի գահը տրվեց Խոսրով Բ-ի որդուն՝ Տրդատ Գ-ին, որն անձամբ մասնակցել էր 296—297 թվերի կռիվներին և հռոմեական բանակին մատուցել էր կարևոր ծառայություններ։

Տրդատ Գ-ի գահակալության մասին հայկական աղբյուրները տալիս են մանրամասն տեղեկություններ, որոնք թեև համարվում են խառնակ ու իրար հակասող, սակայն իրապես, ինչպես կտեսնենք, հիմնականում իրար հետ գրեթե համերաշխ են։

1. Ագաթանգեղոս, գլ. Դ, 46—47՝

«Այն ժամանակ [գոթերի թագավորի հետ մենամարտից հետո] թագավորը [Հունաց] խիստ մեծարեց Տրդատին և նրան տվեց մեծամեծ պարգևներ։ Նրա գլխին թագ կապեց և, ծիրանի զգեստներ հագցնելով, նրան բարձրացրեց և, կայսերակերպ զարդով շքեղացնելով՝ նրան մեծարեց. և հավաքեց ու նրա ձեռքը տվեց մեծ զորք, որպեսզի նրան օգնեն, և արձակեց սեփական աշխարհը՝ Հայաստան։

Ապա՝ հաղթական մարտում կատարած քաջություններից հետո՝ Մեծ Հայքի թագավոր Տրդատը Հունաց կողմերից ետ դարձավ։ Նա ճանապարհ ընկավ և գնաց Հայաստանի կողմերը. եկավ ու գտավ այնտեղ պարսկական շատ զորքեր, որոնք երկիրը գրավել էին և իրենց էին ծառայեցնում։ Շատերին նա կոտորեց, շատերին ի փախուստ դարձրեց և քշեց Պարսից կողմերը. իրեն նվաճեց հայրենի տերությունը և տիրեց նրա սահմաններին»։

[«Յայնժամ մեծացոյց յոյժ թագաւորն զՏրդատիոս, և մեծամեծ պարգևս ետ նմա. թագ կապեաց ի գլուխ նորա և ծիրանեօք զարդարեալ մեծացոյց զնա, և կայսերակերպն զարդու շքեղացուցեալ մեծարեաց զնա. և գումարեաց ի ձեռս նորա զօրս բազումս յօգնականութիւն նմա, և արձակեաց յիւրական աշխարհն Հայոց։

Եւ յետ մարտին յաղթութեան քաջութեանցն զոր արար՝ դար-

ձեալ լինէր ի կողմանցն Յունաց Տրդատ արքայ Հայոց Մեծաց։ Խաղաց գնաց թագաւորն ի կողմանս Հայոց, և եկն եգիտ անդ զօրս բազումս Պարսից, զի զաշխարհն յինքեանս գրաւեալ էին ի ծառայութիւն. զբազումս կոտորէր, և զբազումս փախստական արարեալ ի կողմանս Պարսից արկանէր. և զհայրենեացն տէրութիւն յինքն նուաճեաց, և զօրացաւ ի վերայ սահմանաց նորա»][1]։

2. Մովսես Խորենացի, II, գլ. ՁԲ՝

«Որովհետև պատմությունն առանց ժամանակագրության ստույգ չէ, ուստի և, մանրամասն քննելով՝ գտանք, որ Տրդատ թագավորել է Դիոկլետիանոսի երրորդ տարում և եկել է այս կողմերը մեծ զորքով»։

[«Քանզի ոչ է պատմութիւն ճշմարիտ առանց ժամանակագրութեան, վասն որոյ և մանրախուզիւ քննեալ՝ գտաք զթագաւորելն Տրդատայ յերրորդ ամի Դիոկղետիանոսի, և գալ այսր հանդերձ մեծաւ զօրու»]։

3. Սեբեոս, գլ. Գ՝

«Արտաշիրի երեսներորդ, Դիոկլետիանոսի տասնհինգերորդ տարում Տրդատիոսը կայսերակերպ շքեղությամբ ելնում է իբրև ախոյան գոթերի թագավորի դեմ։ Եվ իսկույն, ձերբակալելով ախոյանին՝ գոթերի վիթխարի թագավորին, բերում և ներկայացնում է Դիոկլետիանոս կայսրին։ Եվ Դիոկլետիանոսը նույն այս թվին Տրդատին թագավոր է կարգում Հայոց աշխարհի վրա»։

[«Յամին Լ-երորդի Արտաշրի, հնգետասաներորդի Դիոկղետիանոսի, կայսերակերպ շքեղութեամբ Տրդատիոս ելանէ ախոյեան ընդդէմ արքային գդաց։ Եւ անդէն ձերբակալ արարեալ զախոյեանն անարի զթագաւորն գդաց՝ ածեալ կացուցանէ յանդիման կայսերն Դիոկղետիանոսի և անդէն ի նմին ամի թագաւորեցուցանէ Դիոկղետիանոս զՏրդատ ի վերայ աշխարհիս Հայոց»][2]։

4. Ուխտանես, I, ՀԸ՝

«Մեր պատմության մեջ մենք մի անգամ և կրկին անգամ գրել ենք Տրդատի թագավոր դառնալու մասին, թե ե՞րբ և ո՞ր ժամանակ այդ տեղի էր ունեցել։ Սակայն այդ մասին իրար

---

[1] Տե՛ս «Ագաթանգեղեայ. Պատմութիւն Հայոց», աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանցի, Տփղիս, 1909, էջ 29։

[2] Տե՛ս «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», հրատ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1939, էջ 15։

*հետ համաձայն չէին Զենոբը և Մովսեսը. որովհետև Զենոբն ասում է, որ Տրդատին Պռոբոսն էր թագավոր դրել, երբ սա ձերբակալել էր գոթերի թագավորին, և նա երախտահատույց լինելով Տրդատին՝ թագ էր կապել և նրան թագավորեցրել էր ու ուղարկել էր իր զորքով Հայաստան։ Իսկ Մովսեսն ասում է, որ նա թագավոր էր կարգվել Դիոկլետիանոսից և նույնը վկայում է նաև Կայսերաց գիրքը»։*

*[«Գրեցաք ի մերումս Պատմութեան միանգամ և երկիցս յաղագս Տրդատայ թագաւորելոյն, թե ե՞րբ և յորո՞ւմ ժամանակի եղև։ Բայց ոչ միաբանէին ընդ միմեանս Զենոբ և Մովսէս վասն նորա. զի Զենոբ ի Պռոբայ ասէ թագաւորեալ Տրդատայ. և թագաւորեալ յորժամ զգթացն արար ձերբակալ զթագաւորն. և նա երախտահատոյց լեալ Տրդատայ՝ թագ եդեալ թագաւորեցոյց զնա, և առաքեաց զօրօք իւրովք ի Հայս։ Իսկ Մովսէս ի Դիոկղետիանոսէ ասէ թագաւորեալ. վկայէ և այսմ գիրք Կայսերացն»]*[1]։

*Ուխտանեսի այս վերջին կարծիքը Զենոբի ու Խորենացու վկայությունների անմիաբանության մասին, ինչպես այժմ պարզված է, արդյունք է ակներև թյուրիմացության։ Աննինսկին միանգամայն ճիշտ մատնանշել է, որ Ուխտանեսի օգտագործած աղբյուրի մեջ հիշատակված Պռոբոսը, որ թագավոր էր պսակել Տրդատին և ուղարկել էր նրան զորքով Հայաստան, Պռոբոս կայսրը չէ, այլ Սիկորիոս Պռոբոսն է, որը Դիոկլետիանոսի կողմից ուղարկված էր Ներսեհի մոտ խաղաղության դաշն կնքելու և որին, ինչպես դժվար չէ կռահել, հանձնարարված է եղել նաև Հայաստանի գահը տալ Տրդատ Գ-ին*[2] *(298 թ.)։*

*Տրդատ Գ-ի գահակալության ճիշտ տարեթիվը (298 թ.), որը համապատասխանում է հունա-հռոմեական աղբյուրների ցուցումներին, ինչպես վերև ասացինք, մատնացույց է արված Սեբեոսի վերև բերված վկայության մեջ։ Նաև ըստ Ագաթանգեղոսի Պատմության՝ Տրդատը գահ էր բարձրացել Գալերիոս Մաքսիմիանոսի զորագլուխ Լիկինիոս Լիկինիանոսի ժամանակ, որը, ինչպես վկայում է Եվտրոպիոսը*[3]*, 296—297 թվերի կռիվների ընթացքում մեծ ծառայություններ էր մատուցել և արել էր խիզախ սխրագործություններ։*

---

[1] *Տե՛ս* Ուխտանէս եպիսկոպոս, *Պատմութիւն հայոց, Վաղարշապատ, 1871, էջ 111։*

[2] *Տե՛ս Аннинский,* Древние армянские историки, *էջ 60։*

[3] *Eutropius*, X, 4.

Մովսես Խորենացին ևս, որն օգտվել էր վերոհիշյալ հայ աղբյուրներից, Տրդատ Գ-ի գահակալությունն ընդունում է նույնպես Դիոկղետիանոսի ժամանակ, սակայն նա, համաձայն իր սխալ ժամանակագրական սխեմայի, ենթադրում է, որ «Տրդատը թագավորել էր Դիոկղետիանոսի երրորդ տարում», այսինքն՝ 286 թվին։ Աննինսկին կարծում է, որ այս վկայությունը ևս որոշ չափով ճիշտ է, բայց ոչ այն իմաստով, ինչպես այդ հասկացել է ինքը՝ Խորենացին։ Խոսրով Բ-ի մահից (287 թ.) հետո նրա անմիջական հաջորդն էր լինելու, իրապես, Տրդատ Գ-ը, որը սակայն գահ էր բարձրացել ո՛չ թե այդ թվին, այլ ավելի ուշ՝ 298 թվին[1]։

Ինչպես տեսնում ենք, նորագույն պատմագիտական ուսումնասիրությունների շնորհիվ Հայ Արշակունիների երրորդ դարի պատմության խճճված ու մութ խնդիրները ստանում են բոլորովին նոր ու արժանահավատ լուսաբանություն։

---

[1] *Տե՛ս Аннинский,* Древние армянские историки, *էջ 51։*

## ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

# ՏՐԴԱՏ Գ ԵՎ ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅԱՆ ՏԱՐԱԾՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**1. Տրդատ Գ-ի հաստատումը հայրենի գահի վրա.—Հայաստանը «դաստակերտ կայսերաց»։— 2. Տրդատ Գ-ի ժամանակաշրջանի պատմության հիմնական աղբյուրներն են Ագաթանգեղոսը և Մովսես Խորենացին.— Տրդատ Գ-ի անվանը կապակցվել են հիշողություններ, որ վերաբերում են Տրդատ Ա-ին և Տրդատ Բ-ին։— 3. Տրդատ Գ-ի կռիվները Պարսկաստանի կողմնակից հայ իշխանների դեմ։— 4. Նրա վերադարձի ու թագավորման մասին Ծարկին-Տիգրանակերտի հունարեն արձանագրության վկայությունները.— Լեման-Հաուպտի սխալ ենթադրությունն այդ արձանագրության ժամանակի մասին։— 5. Աբարանի 208 թվի հունարեն արձանագրությունը.— նախարարական տոհմերի զահերեցության խնդիրը։— 6. Քրիստոնեության հաստատումը Հայաստանում.— Ագաթանգեղոսի վկայությունները.— Քրիստոնեության մուտքը Հայաստան Ասորիքի և Կապադովկիայի ու Փոքր Հայքի կողմերից։— 7. Հայերի քրիստոնեության դարձի թվականի ճշտումը.— Մաքսիմինոս Դայան պատերազմ էր մղել քրիստոնեության դեմ ո՛չ թե Մեծ Հայաստանի, այլ հռոմեական Հայաստանի.— հայերի դարձի մասին Սոզոմենոսի վկայությունը.— Քրիստոնեությունը Հայաստանում հաստատվել էր իբրև պետական կրոն, հավանորեն, 314—316 թվերին.— նախնական քրիստոնեության կերպարանափոխումը 3-րդ և 4-րդ դարերում։— 8. Հայաստանի դաշնակցությունը Հռոմեական կայսրության հետ.— դաշինքի կնքման ժամանակի և տեղի խնդիրը.— «Դաշանց թղթի» անվավերականությունը։— 9. Տրդատ Մեծի մասին առասպելական զրույցները։— 10. Գառնիի հունարեն արձանագրությունը.— Տրդատ Մեծի անունը և տիտղոսն ըստ այդ արձանագրության.— Խորենացու վկայությունն այդ արձանագրության մասին.— Տրդատ Մեծի քույրը, Խոսրովիդուխտը, պատմական անձ է.— Գառնիի արձանագրության ժամանակի խնդիրը։ 11. Տրդատ Գ-ի սպանության մասին հայ աղբյուրների վկայությունները կասկածելի են։**

*298 թվի խաղաղության դաշինքից հետո, Հռոմի և Սասանյան Պարսկաստանի երկուստեք համաձայնությամբ՝ Տրդատ Գ-ը հաստատվեց իր հայրենի գահի վրա Հռոմեական կայսրության պաշտպանության և հովանավորության ներքո։ Որ Հայաստանը 298 թվից հետո դառել էր, իրոք, Հռոմին հպատակված վասալ պետություն՝ այդ երևում է այսպես կոչված Վերոնյան երկրացուցակի վկայու-*

*թյունից, որի մեջ իբրև Հռոմեական կայսրության Պոնտական շըրջանի երկրամաս, բացի Փոքր Հայքից, հիշատակված է նաև Մեծ Հայաստանը՝* «Armenia minor, nunc et maior addita», *այսինքն՝ «Փոքր Հայք, այժմ նաև Մեծ Հայաստան ավելացած»*[1]։

*Ուշագրավ է նմանապես, որ Պոլեմիոս Սիլվիոսը ևս իր երկրացանկի* (Laterculus-*ի*) *մեջ Հռոմեական կայսրության պոնտական ութ երկրամասերի շարքում Փոքր Հայքից* (Armenia minor) *հետո մատնացույց է անում դարձյալ նաև Մեծ Հայաստանը* (Armenia maior)[2]։

*Կ. Գյուտերբոկի և Ն. Ադոնցի կարծիքը, որ իբր թե վերոհիշյալ վկայությունների մեջ Փոքր ու Մեծ Հայքի տակ պետք է հասկանալ Հռոմեական կայսրության կազմի մեջ գտնվող Առաջին և Երկրորդ Հայքը*[3], *ինչպես մատնացույց է արված իմ նախորդ աշխատություններից մեկում, բավարարաչափ հիմնավորված չէ և չէ կարող հարկավ համարվել համոզիչ*[4]։

*Մեծ Հայաստանի անձուկ միացումը և վասալական սերտ կապը Հռոմեական կայսրության հետ առանձնապես շեշտված է նույնպես և Ագաթանգեղոսի պատմական երկում, որի մեջ Մեծ Հայաստանն անվանված է «դաստակերտ կայսերաց»։*

> *«Քաջութիւն հասցէ ձեզ,—ասված է Տրդատ արքայի ազատներին ու շինականներին ուղղված հրամաններից մեկում,—ի քաջէն Վահագնէ ամենայն Հայոց աշխարհիս. իմաստութիւն Յունաց հասցէ դաստակերտիդ կայսերաց, և ի մեր դիցախառն Պարթևաց հասցէ այցելութիւն, ի փառաց թագաւորաց և ի քաջ նախնեաց»*[5]։

*Հայաստանի սերտ միացումը և բախտակցությունը կայսրության հետ պետք է առանձնապես նկատի ունենալ, որովհետև, ինչպես ներքև կտեսնենք, քաղաքական այդ մերձեցման հետևանքով էր, որ Տրդատ Գ-ի ժամանակ Հայաստանում տեղի ունեցավ*

---

1 **Տե՛ս** Codex Veronensis, II, 8, Seeck-*ի մոտ*՝ Notitia dignitatum, 1872, *էջ 248։*

2 **Տե՛ս** *Laterculus Polemii Silvii*, IX (Seeck, Notitia dignitatum, *էջ 251 և հետ.)։*

3 *Տե՛ս* Կ. Գյուտերբոկ, *Հռովմէական Հայաստան և հռովմէական սատրապութիւնները Դ—Զ դարերուն, թարգմ. Հ. Մկրտիչ, Վ. Նորշուանի, Վիեննա, 1914, էջ 36—38 և Адонц,* Армения в эпоху Юстиниана, *էջ 87։*

4 **Տե՛ս** *Я. А. Манандян*, Месроп Маштоц и борьба армянского народа за культурную самобытность, Ереван, 1941, **էջ** *5։*

5 «Ագաթանգեղայ *Պատմութիւն Հայոց», 1909, էջ 73 (գլ. ԺԲ, 127)։*

մեծ հեղաշրջում, և քրիստոնեությունն այնտեղ ճանաչվեց իբրև պետական կրոն։

Տրդատ Գ-ի ժամանակաշրջանի պատմության համար (298—շուրջ 330 թ.) հիմնական աղբյուր է համարվում Ագաթանգեղոսի Հայոց Պատմությունը, որից մեծ չափով օգտվել էր Մովսես Խորենացին։ Ագաթանգեղոսի մոտ Տրդատ Գ-ի պատումը ծագում է հին հայ ժողովրդական վեպից և, անշուշտ, վեպի ազդեցությանը պետք է վերագրել, որ հայկական հին պատմագրության մեջ Տրդատ Ա-ը, Տրդատ Բ-ը և Տրդատ Գ-ը միաձուլվել և դառել են մի անձ՝ Տրդատ Մեծ, որի անվանը կապակցվել են պատմական հիշողություններ, որ վերաբերում են Տրդատ Ա-ին և Տրդատ Բ-ին։

Օրինակ, Ագաթանգեղոսի Պատմության 11-րդ գլխում ասված է, որ Տրդատն իր թագավորության ընթացքում անընդհատ պատերազմել էր պարսիկների դեմ և ավերել էր Պարսից երկիրը և Ասորեստան աշխարհը[1]։ Հայտնի է սակայն, որ 298 թվի դաշնագրից հետո խաղաղությունն Արևելքում մնացել էր անխախտ ու տևել էր մոտ քառասուն տարի (298—337), և Տրդատ Գ-ը խաղաղ թագավորել էր Հայաստանում մինչև իր մահը (շուրջ 330 թ.)։ Ագաթանգեղոսի վերոհիշյալ վկայությունը, ինչպես մատնանշել է Մ. Աբեղյանը[2], հիշողություն է երկարատև պատերազմների ընդդեմ պարսիկների ո՛չ թե Տրդատ Գ-ի, այլ Տրդատ Բ-ի ժամանակ, որը, ինչպես վերև տեսանք, մոտ 25 տարի, մինչև 252 թիվը, հաջողությամբ պաշտպանել էր Հայաստանը պարսկական հարձակումներից։

Մի այլ օրինակ՝ Խորենացու երկրորդ գրքի 85-րդ գլխում նկարագրված է Տրդատ Գ-ի կռիվը հյուսիսականների դեմ Աղվանքում, ուր բասիլների թագավորը ձգում է իր «քեմիտապատ պարանը», որ թագավորին բռնե, բայց Տրդատը կտրում է պարանը, իր սրի հարվածով երկու կտոր է անում նրան և, պարտության մատնելով նրա զորքը, հալածում է մինչև Հոնաց աշխարհը։ Գարագաշյանի կարծիքով՝ Տրդատ Գ-ի մասին նաև այս վկայությունը, որ հին զրույցներից է վերցված, հիշողություն է հյուսիսականների դեմ պատերազմի ո՛չ թե Տրդատ Գ-ի, այլ Տրդատ Ա-ի, որը, ինչպես պատմում է Հովսեպոս Փլավիոսը (տե՛ս վերև էջ 9—10), պատերազմել էր ալանների դեմ, և երբ սրանք պարանը ձգել ու բռնել էին նրան՝ կտրել էր պարանը և կարողացել էր փրկվել[3]։

---

[1] «Ագաթանգեղեայ Պատմութիւն Հայոց», 1909, գլ. ԺԱ, 123, էջ 71։

[2] Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, Ա, Երևան 1944, էջ 605։

[3] Տե՛ս Գարագաշյան, Քննական պատմութիւն Հայոց, մասն Գ, Թիֆլիս,

Զանց առնելով Տրդատ Մեծի մասին նման անստույգ տեղեկությունները՝ մենք կբերենք ներքև նրա մասին հայկական աղբյուրների միայն այն կարևոր վկայությունները, որոնց հավաստիությունը հաստատվում է հունա-հռոմեական աղբյուրների օգնությամբ։

Տրդատ Գ-ի մասին Ագաթանգեղոսը հաղորդում է, որ նա, օգնական զորք ստանալով հռոմեական կայսրից՝ գալիս է Հայաստան և, որովհետև իր երկիրը Պարսից տիրապետության տակ էր գտնվում, հաղթում է նրանց և հաստատվում հայրենի գահի վրա։

«Այն ժամանակ,—պատմում է Ագաթանգեղոսը,—թագավորը [Հունաց] խիստ բարձրացրեց Տրդատիոսին և տվեց նրան մեծամեծ պարգևներ. նա թագ դրեց նրա գլխին և, ծիրանե զգեստով զարդարելով՝ բարձրացրեց նրան և, կայսերական զարդերով շքեղցնելով՝ մեծարեց նրան։ Հավաքեց ու նրա ձեռքը հանձնեց մեծ զորք, որպեսզի նրան օգնեն, և արձակեց Հայոց աշխարհը սեփական։ Եվ հաղթության մարտի քաջությունններից հետո, որ արել էր՝ վերադարձավ Մեծ Հայաստանի Տրդատ արքան Հունաց կողմերից. թագավորը ճանապարհ ընկավ, գնաց Հայաստանի կողմերը և եկավ գտավ այնտեղ Պարսից շատ զորքեր, որովհետև սրանք այն աշխարհը գրավել էին ու հպատակեցրել էին իրենց։ Նա կոտորեց շատերին, շատերին էլ փախուստի մատնեց և քշեց Պարսից կողմերը. և հայրենի տերությունը նա ինքը նվաճեց ու զորացավ նրա սահմանների մեջ»։

[«Յայնժամ մեծացոյց յոյժ թագաւորն զՏրդատիոս, և մեծամեծ պարգևս ետ նմա. թագ կապեաց ի գլուխ նորա և ծիրանեօք զարդարեալ մեծացոյց զնա, և կայսերակերպն զարդու շքեղացուցեալ մեծարեաց զնա. և գումարեաց ի ձեռս նորա զօրս բազումս յօգնականութիւն նմա, և արձակեաց յիւրական աշխարհն Հայոց։

Եւ յետ մարտին յաղթութեան քաջութեանցն զոր արար՝ դարձեալ լինէր ի կողմանցն Յունաց Տրդատ արքայ Հայոց Մեծաց։ Խաղաց գնաց թագաւորն ի կողմանս Հայոց, և եկն եգիտ անդ զօրս բազումս Պարսից, զի զաշխարհն յինքեանս գրաւեալ էին ի ծառայութիւն. զբազումս կոտորէր, և զբազումս փախստական արարեալ ի կողմանս Պարսից արկանէր.

1895, էջ 351։ Համեմատե՛ նաև Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք Ա, էջ 605։

և զՀայրենեացն տէրութիւն յինքն նուաճեաց, և զօրացաւ ի վերայ սահմանաց նորա»][1]։

Ագաթանգեղոսի այս վկայությունը, թեև ծագում է վիպական հայկական ավանդությունից, սակայն ըստ էության կարող է համարվել պատմական։ Աննինսկին իր «Հին հայկական պատմիչները իբրև պատմական աղբյուր» աշխատության մեջ մատնանշում է, որ Տրդատ Գ-ը, իր գահի վրա հաստատվելուց առաջ, կռիվ էր մղել հռոմեական օգնական զորքի աջակցությամբ հայ ապստամբ նախարարների դեմ[2]։ Նրա կարծիքով, այդ կռիվների պատճառով էր, որ Գալերիոսը, որը 297 թվի հաղթություններից հետո մնացել էր Արևելքում մինչև 302 թիվը, իր 311 թվի հրովարտակի մեջ անվանում է իրեն վեց անգամ հաղթող հայերի[3]։

Աննինսկու այս դիտողությունները, որ ուշադրության արժանի են, ինչպես տեսնում ենք, կարող են նեցուկ ծառայել Ագաթանգեղոսի վերոհիշյալ վկայության հավաստիության։ Այդ դիտողությունները, որ հավանական են, ցույց են տալիս, որ Տրդատ Գ-ը Հայաստանին տիրել էր, կռիվներ մղելով ո՛չ թե Պարսից զորքերի դեմ, ինչպես այդ վկայում է Ագաթանգեղոսը, այլ Պարսկաստանի կողմնակից հայ իշխանների դեմ։ Հայտնի է մեզ, օրինակ, Պետրոս Պատրիկիոսի մի վկայությունից, որ Պարսկաստանի ջերմ կողմնակից է եղել այդ ժամանակ Սյունիքի Վարազշապուհ իշխանը, որին Պարսից Ներսեհ թագավորը, Գալերիոսի 297 թվի հաղթությունից հետո, ուղարկել էր իբրև պատգամավոր խաղաղության դաշնագրի կնքման համար[4]։

Տրդատ Գ-ի վերադարձի ու թագավորման մասին Հայաստանում հայտնի է խիստ կարևոր մի նոր աղբյուր՝ Ցարկին-Տիգրանակերտ քաղաքի պարսպի վրա գտնված հունարեն արձանագրությունը։

Այս արձանագրությունը, որ 1899 թվին գտել էր Լեման-Հաուպտը, լրիվ չէ և, դժբախտաբար, դժվար է վերծանվում, որովհետև նրա ընդարձակ բնագրից պահպանվել են ընդհատումներով իրար անհարիր ու հատուկտոր հատվածներ միմիայն ութ քարի վրա[5]։ Սակայն բովանդակությունը մոտավորապես որոշվում է։

---

[1] Տե՛ս Ագաթանգեղոս, գլ. Դ, 46—47, էջ 29 (Տփղիս, 1909)։

[2] А. Аннинский, Древние армянские историки, Одесса, 1899, էջ 60—61.

[3] Տե՛ս Եվսեբիոս, Պատմ. եկեղ., գիրք VIII, գլուխ 17։

[4] Տե՛ս Տաշյան, Ագաթանգեղոս, Վիեննա, 1891, էջ 128—129։

[5] Տե՛ս C. F. Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, Berlin, 1910 էջ 411—419։

Ցարկինի արձանագրությունը կարևոր մի հրաման է ու հայտարարություն՝ ուղղված Տիգրանակերտ քաղաքի բնակչությանը։ Արձանագրության սկիզբը պակասում է, ուստի և նրա հեղինակը, որ պարզապես Հայ Արշակունի թագավորներից մեկն է, ճշտիվ որոշ չէ։ Հայաստանի այդ թագավորը, ինչպես երևում է արձանագրության բովանդակությունից, բարեկամաբար էր տրամադրված թե դեպի հռոմայեցիները և թե դեպի Պարսից թագավորը, որին նա անվանում է «աստված թագավոր թագավորաց»։ Նա հիշատակում է փաստաթղթեր ու նամակներ, որ ինքը ստացել է հռոմայեցիներից և Պարսից թագավորից։

«Ձեր քաղաքաբնակչությունը,—մատնանշված է արձանագրության մեջ,—պատրաստ էր և պարսիկների հետ միասին պատերազմ էր մղել մեր հոր դեմ»։

Արձանագրության վերջում ասված է՝

«և որպեսզի ամենքը ինձ ավելի լավ ճանաչեն, մենք հրամայեցինք, որ այս գրությունը զետեղվի դարբասի մոտ՝—և ինչպես որ փաստաթղթի մեջ է հայտնված՝ հենց այնպես էլ փորագրված է ու ամրացված։ Մենք կարգադրել ենք նույնպես, որ գրությունը փորագրվի ու կցվի ամեն մի դարբասի մոտ նաև մյուս քաղաքների, որոնց իշխանությունը մենք ստանձնել ենք հաճությամբ և օգնությամբ աստվածների»։

Լեման-Հաուպտը, հիմնվելով արձանագրության հունարեն տառերի ձևերի և հունարեն լեզվի քերականական առանձնահատկությունների վրա՝ նրա ժամանակը ենթադրում է մեր թվականության երկրորդ դարից հետո, իսկ նկատի ունենալով նաև նրա վերոհիշյալ բովանդակությունը՝ վերագրում է արձանագրությունը Հայոց Պապ թագավորին (368—374)։

Լեման-Հաուպտի վերջին այս եզրակացությունը, ինչպես մատնանշել է Մարկվարտը, միանգամայն անհավանական է ու անհամոզիչ, որովհետև Պապ թագավորը քրիստոնյա էր, իսկ արձանագրության մեջ ասված է, որ թագավորն իր իշխանությունը ստանձնել էր «աստվածների հաճությամբ ու օգնությամբ», նաև Պարսից թագավորն անվանված է «աստված թագավոր թագավորաց»[1]։

Ինձ թվում է, որ հիմնավոր է Մարկվարտի կարծիքը, որը արձանագրությունը վերագրում է ո՛չ թե չորրորդ, այլ երրորդ դարի Արշակունի հայ թագավորներից մեկին և ենթադրում է, որ արձանագրության մեջ ակնարկված հայ թագավորը Տրդատ Գ-ն է, որը

---

[1] Տե՛ս J. Markwart, Südarmenien und die Tigrisquellen, էջ 134—135։

վերահաստատվել էր իր գահի վրա հռոմայեցիների և պարսիկների երկուստեք համաձայնությամբ։

Մարկվարտը ցույց է տվել նաև, որ Տրդատ Գ-ը վերանվաճել էր իր թագավորությունը, ինչպես մատնանշված է արձանագրության մեջ, հռոմեական օժանդակ զորամասի օգնությամբ, որի պահակային կայանը գտնվում էր Նեկրայում՝ այժմյան Մալաթիայի հարավ-արևմուտքում և Ալբիստանի արևելակողմում[1]։

Ցարկին-Տիգրանակերտի հունարեն արձանագրության ժամանակի խնդիրը, համաձայն նոր այս լուսաբանության, որոշվում է առանց դժվարության։ Տրդատ Գ-ի այս արձանագրության ժամանակը պետք է ենթադրել երրորդ դարի վերջերում, հավանորեն, 298 թվին։

Տրդատ Մեծի հունարեն մի ուրիշ արձանագրություն, որը գտնված է Ապարանում, կարդացել ու մեկնել է ռուս գիտնական Ռոստովցևը[2]։ Այս արձանագրության բովանդակությունից մենք գիտենք, որ Տրդատ Գ-ը նվեր էր տվել Գնթունիների տոհմի իշխաններից մեկին կալվածքներ Նիգ գավառում, ամենայն հավանականությամբ Սելևկյան տոմարի 620 թվի փետրվար ամսին (620—312=308), այսինքն՝ 308 թվին (մեր թվ. հ.)։

Ռոստովցևը կարծում է, որ Ապարանի արձանագրության վերագրումը Տրդատ Գ-ին հավանական է և այն պատճառով, որ ըստ հայկական ավանդության այս թագավորն էր վերաբաժանման ենթարկել իշխանական շրջանները նախարարական առանձին տոհմերի միջև, և նրա ժամանակ տեղի էր ունեցել տեղաշարժ նախարարական կալվածատիրության մեջ[3]։

Անհավանական չէ, բացի այդ, որ դեռևս Տրդատ Գ-ի ժամանակ որոշ փոփոխություն կարող էր կրած լինել նախարարական տոհմերի գահերեցությունը կամ բարձերեցությունը նրանց հզորության կամ կարևորության համեմատ, ինչպես այդ վկայում են Թովմա Արծրունին և Ստեփանոս Օրբելյանը[4]։

Տրդատ Գ-ի թագավորությունը Հայաստանի կուլտուրական կյանքի համար ունեցավ հեղաշրջող նշանակություն։ Նրա ժամա-

---

[1] Տե՛ս J. Markwart, Südarmenien und die Tigrisquellen, էջ 124, 158 175 և 184։

[2] М. Ростовцев, Апаранская греческая надпись царя Тиридата, СПб., 1911.

[3] Նույնը, էջ 28։

[4] Տե՛ս Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, III, գլ. ԻԴ, էջ 384 (Թիֆլիս, 1917) և Ստեփանոս Օրբէլյան, Պատմութիւն նահանգին Սիսական, գլ. Է, էջ 24 (Թիֆլիս, 1910)։

նակ մերժվեց հեթանոսական նախկին կրոնը և իբրև պետական կրոն հաստատվեց քրիստոնեությունը։

Հայոց քրիստոնեության դարձի պատմության համար ամենակարևոր աղբյուրն է Ագաթանգեղոսի Պատմությունը, որը, ինչպես ասացինք, սկսվում է 224 թվից և բովանդակում է իր մեջ, գլխավորապես, Տրդատ Գ-ի ժամանակաշրջանի անցքերը։ Այս երկի մեջ, ինչպես բանասիրական քննությունները ցույց են տվել, չափազանց մեծ տեղ են բռնում վկայաբանական-առասպելական և վիպական-բանաստեղծական տարրերը, իսկ հայերի դարձի իրական պատմության մասին նրա մեջ պահպանվել են պատմական աղոտ հիշողություններ, որոնց հիմք են ծառայել բանավոր հին ավանդությունները։

Ագաթանգեղոսի մոտ հայերի դարձի պատմության համառոտ բովանդակությունը հետևյալն է։ Տրդատը, որ Հունաց կողմերում մեծամեծ քաջություններ էր գործել, պսակվում է այնտեղ արքայական թագով և վերադառնում է Հայաստան։ Այստեղ Եկեղյաց գավառի Երիզա ավանում զոհեր են մատուցանում Անահիտ դիցուհուն, և Տրդատը հրամայում է Գրիգոր անունով իր սպասավորին, որը հավատարմությամբ ծառայում էր իրեն, որ նա նվեր տանի Անահիտի արձանին ծաղկե պսակներ և կանաչ ոստեր։

Գրիգորը հրաժարվում է այդ անել և հայտնում է, որ ինքը քրիստոնյա է։ Տրդատը ենթարկում է նրան անտանելի տանջանքների, բայց սա տոկունությամբ կրում է այդ չարչարանքները և շարունակում է անարգել կուռքերին։ Այդ միջոցին նախարարները հայտնում են Տրդատին, որ Գրիգորը նրա հորը՝ Խոսրով թագավորին սպանող պարթև Անակի որդին է։ Տրդատը, այս լսելով, ավելի ևս զայրանում է և հրամայում է, որ Գրիգորին տանեն Արտաշատ և ձգեն մութ ու սողուններով լի բանտը, որ կոչվում էր Խոր-Վիրապ։

Այնուհետև Ագաթանգեղոսի Պատմության մեջ ընդարձակ կերպով պատմվում է Հռիփսիմյան կույսերի Հայաստան գալը և նահատակությունը, Տրդատի մոլեգին խելագարությունը, Գրիգորի Խոր-Վիրապից դուրս գալը տասնհինգ տարվա բանտարկությունից հետո և հայոց դարձն ի քրիստոնեություն։

Քննության առնելով Տրդատի ու Գրիգոր Լուսավորչի մասին Ագաթանգեղոսի վերոհիշյալ պատումները՝ բանասերները և պատմագետները հավաստի են համարում, գլխավորապես, այն, որ քրիստոնեությունն ընդունվել ու տարածվել էր Հայաստանում Տրդատ թագավորի ժամանակ (298—շուրջ 330) քարոզությամբ Գրիգոր Լուսավորչի։ Իսկ Ագաթանգեղոսի հաղորդած առասպելա-

*խառն ու չափազանցված տեղեկությունները Գրիգոր Լուսավորչի չարչարանքների, Հռիփսիմյան կույսերի նահատակության և Տրդատի հիվանդության մասին նրանք համարում են կասկածելի և պատմական տեսակետից անվստահելի։*

*Ինչպես հայտնի է, քրիստոնեությունը սկսել էր մուտք գործել Հայաստան դեռ Տրդատ Գ-ից և Գրիգոր Լուսավորչից առաջ Եդեսիայի և Մծբինի ու նաև Կապադովկիայի և Փոքր Հայքի կողմերից։ Նա սկսել էր տարածվել Հարավային Հայաստանում և Տարոնում, հավանորեն, երրորդ դարի սկզբներում կամ թերևս արդեն երկրորդ դարի վերջերում։*

*Հենց երրորդ դարի սկզբներում, ինչպես հաղորդում է Մովսես Խորենացին*[1], *Հայաստան էր եկել քրիստոնեություն տարածելու նպատակով հռչակավոր գնոստիկյան աղրի գիտնական Բարդածանը։ Իսկ երրորդ դարի կեսերում, ինչպես վկայում է Եվսեբիոս Կեսարացին*[2], *Մեհրուժան եպիսկոպոսի հետ, որը, հավանորեն, քարոզիչ էր Ծոփքում*[3], *գրագրություն էր ունեցել Աղեքսանդրիայի Դիոնիսիոս եպիսկոպոսը (248—265)։ Նույն այդ ժամանակներում քրիստոնեությունը լայնորեն տարածվել էր նաև Կապադովկիայում և Փոքր Հայքում, ուր քրիստոնեական նշանավոր կենտրոններ էին Կեսարիա և Մելիտենե քաղաքները։*

*Վերոհիշյալ տեղեկությունները ցույց են տալիս, որ քրիստոնեության տարածման համար որոշ չափով արդեն հող էր պատրաստված դեռ երրորդ դարում։ Թե ո՛ր թվականին քրիստոնեությունը վերջնականապես հաստատվել էր Հայոց թագավորության մեջ իբրև պաշտոնական կրոն՝ այդ հարցը մինչև այժմ բավարար կերպով դեռ չէ որոշված և վեճի առարկա է։*

*Դեռևս Չամչյանի ժամանակներից սկսած այդ մասին գերիշխող կարծիքն այն է եղել, որ Տրդատ Գ-ի և հայերի քրիստոնեության դարձը տեղի էր ունեցել 301—304 թվականներին։ Բայց կան նաև զանազան այլ ենթադրություններ։*

*Տուրնեբիզը, որը մանրամասն քննել է այս խնդիրը իր «Քաղաքական և կրոնական պատմություն Հայաստանի» գրքի հատուկ հավելվածում, բերում է հայերի դարձի մասին ականավոր եվրոպացի և հայ գիտնականների նաև այլ կարծիքները*[4]*։ Ըստ այդ ենթադ-*

---

1 **Խորենացի,** *գիրք II, գլ. ԿԶ, էջ 201 (Տփղիս, 1913)։*

2 **Եվսեբիոս,** *Պատմ. եկեղ., Զ, 46, 2։*

3 *Տե՛ս Адонц,* Армения в эпоху Юстиниана, *էջ 347։*

4 *Tournebize,* Histoire politique et religieuse de l'Arménie, Appendice I, „Étude sur la conversion de l'Arménie au christianisme", *էջ 428—444։*

րությունների քրիստոնեությունն ընդունվել էր Հայաստանում իբրև պետական կրոն 276—311 թվականների միջև. օրինակ, ըստ Սեն-Մարտենի՝ 276 թվին, ըստ Հարնակի՝ 285—290 թվերին, ըստ Տուրնեբիզի՝ 290—295 թվերին, ըստ Գաթրճյանի՝ 305—310 թվերին[1]։

Վերջերս լույս տեսավ նույն խնդրի մասին «Էջմիածին» ամսագրում Ստ. Մալխասյանի հոդվածը։ Վերջինս, հիմք ընդունելով Խորենացու Պատմության ժամանակագրական ցուցմունքները, որ նա թյուրիմացաբար համարում է հայերի դարձի թվականի ճշտման միակ ապահով աղբյուրը, քրիստոնեության հաստատումը Հայաստանում որոշել է 279 թվին[2]։

Վերոհիշյալ բոլոր կարծիքները հիմնված են, գլխավորապես, Ագաթանգեղոսի, Խորենացու և պատմական մյուս հայ աղբյուրների ժամանակագրական խառնաշփոթ տեղեկությունների վրա, որ վերաբերում են երրորդ դարի պատմական անցքերին։ Բացի այդ, պատմագետների և բանասերների մեծագույն մասը սխալ են հասկացել Եվսեբիոս Կեսարացու հայտնի վկայությունը Մաքսիմինոս Դայայի (305—313) արշավանքի մասին հայերի դեմ։

Եվսեբիոսի կարևոր այս վկայությունը հետևյալն է՝

«Բացի այդ,—ասում է Եվսեբիոսը,—բռնակալի [Մաքսիմինոս Դայայի] ձեռով պատերազմ հարուցվեց արմենների դեմ՝ այն մարդկանց դեմ, որոնք հենց սկզբից բարեկամ էին ու դաշնակից հռոմայեցիների. բայց որովհետև քրիստոնյա էին նաև նրանք և եռանդով ու բարեպաշտությամբ երկրպագում էին աստծուն՝ այս աստվածատյացը փորձեց նրանց ստիպել, որ զոհ բերեն կուռքերին ու դևերին. ուստի և դարձրեց նրանց, որ բարեկամ ու դաշնակից էին՝ թշնամի ու մարտնչող։ ...Արդ՝ նա հենց ինքը իր բանակի հետ՝ արմենների դեմ պատերազմելիս ջախջախվեց»[3]։

Հիմնվելով Եվսեբիոսի այս վկայության վրա՝ պատմագետները կարծում են, որ Մաքսիմինոս Կեսարը 311/312 թվին պատերազմել էր քրիստոնեություն ընդունած Տրդատ Գ-ի դեմ և կամեցել էր վերահաստատել Մեծ Հայաստանում հեթանոսությունը։

[1] Տե՛ս *Lebeau,* Histoire du Bas-Empire, t. I, էջ 46 (Սեն-Մարտենի ծանոթագրությամբ). *A. Harnack,* Mission und Ausbreitung des Christentums in den drei ersten Jahrhunderten, Leipzig, 1902. *Tournebize,* Histoire politique et réligieuse de l'Arménie, էջ 428. Գաթրճյան Հ., Տիեզերական պատմութիւն՝ Բ, էջ 477։

[3] Եվսեբիոս, Պատմութ. եկեղ., գիրք Թ, գլ. Ը։

[2] Տե՛ս Ստ. Մալխասյան, «Ե՞րբ են հայերն ընդունել քրիստոնեություն», «Էջմիածին», 1944, № 1, էջ 22—26։

Սակայն, իրապես, ինչպես իրավացի կերպով ենթադրում են այժմ[1], նա պատերազմ էր մղել ո՛չ թե քրիստոնեության դեմ Մեծ Հայաստանի, այլ Հռոմեական Հայաստանի, այսինքն՝ Անդրտիգրիսյան երկրներից մեկի դեմ, որ Դիոկլետիանոսի զորավար Գալերիոսի 297 թվի հաղթությունից հետո միացվել էին կայսրությանը։

Միանգամայն պարզ է, հետևաբար, որ Եվսեբիոսի վերոհիշյալ վկայությունը չէ կարող կռվան ծառայել Տրդատ Գ-ի ու նրա երկրի քրիստոնեության դարձի թվականը որոշելու համար։

Ուշագրավ է ու կարևոր քրիստոնեության հաստատման մասին Մեծ Հայաստանում ո՛չ թե Եվսեբիոսի, այլ հինգերորդ դարի եկեղեցական պատմագիր Սոզոմենոսի հետևյալ վկայությունը.

«Ես տեղեկայա,—վկայում է Սոզոմենոսը,—որ հայերն ընդունել են քրիստոնեությունն ավելի առաջ [քան վրացիներն ու ուրիշները]։ Ասում են, որ Տրդատը, որն այս ժողովրդի առաջնորդն էր, մի ինչ-որ աստվածանշան հրաշքի պատճառով, որ նրա տան մեջ պատահել էր, իսկույն դառել էր ինքը քրիստոնյա ու նաև հրամայել էր, որ քարոզության միջոցով այդ կրոնն ընդունեն բոլոր իր հպատակները»[2]։

Սոզոմենոսի այս կարևոր վկայությունը, որը կարծես թե արձագանք է Ագաթանգեղոսի Պատմության մեջ հաղորդված վերոհիշյալ տեղեկությունների, հետաքրքիր է այն տեսակետից, որ նա հայերի քրիստոնեության դարձը դնում է իբերներից առաջ, որոնք քրիստոնեություն էին ընդունել մոտավորապես 337 թվին[3]։ Եվ այս կապակցությամբ ուշադրության արժանի է նաև այն, որ Եվսեբիոս Կեսարացու մոտ, որի «Եկեղեցական Պատմությունը» պարունակում է քրիստոնեական եկեղեցու պատմությունը սկզբից մինչև Լիկինիոսի վերջնական պարտությունը, այսինքն՝ մինչև 324 թիվը, չեն հիշատակված ո՛չ Տրդատ Գ-ը և ո՛չ էլ Գրիգոր Լուսավորիչը։

Իմ նախորդ աշխատությունների մեջ[4] ես մատնանշել էի, որ Տրդատ Գ-ի ժամանակ Մեծ Հայաստանը սերտ կերպով միացված էր

---

[1] Տե՛ս *Duchesne L.*, Histoire ancienne de l'Église, vol. II, էջ 32, ծան. 2։ Համեմատե՛ նաև Tournebize, Histoire politique et réligieuse de l'Arménie. էջ 443։

[2] *Sozom.*, Hist. Eccles., II, 8.

[3] Տե՛ս *Н. Бердзенишвили, И. Джавахишвили, С. Джанашиа*, История Грузии, часть I, Тбилиси, 1946, էջ 92 և 451։

[4] Տե՛ս *Манандян*, Краткий обзор истории древней Армении, М., 1943, էջ 20. նաև Հ. Մանանդյան, Գառնիի հունարեն արձանագրությունը և Գառնիի հեթանոսական տաճարի կառուցման ժամանակը, Երևան, 1946, էջ 15։

Հռոմեական կայսրության, ուստի շնորհիվ հենց այդ կապի՝ քրիստոնեությունը, որը կայսրության մեջ հայտարարվել էր իբրև թույլատրելի պետական կրոն՝ հաստատվել էր որպես պաշտոնական կրոն նաև Հայաստանում։ Ագաթանգեղոսի Պատմության վկայությունների ուշադիր քննությունը ցույց է տալիս, որ հալածանքները քրիստոնեության դեմ Մեծ Հայաստանում արձագանք էին հալածանքների, որ տեղի էին ունեցել Հռոմեական կայսրության մեջ Դիոկղետիանոս կայսեր ժամանակ (284—305)՝ նրա իշխանության վերջին տարիներում[1]։ Վերաբերմունքը դեպի քրիստոնյաները Հայաստանում ևս, հավանաբար, փոխվել էր 313 թվից հետո, երբ համաձայն Միլանի հրովարտակի՝ քրիստոնեությունը ճանաչվել էր Հռոմեական պետության մեջ որպես ազատ և իրավահավասար կրոն։

Պետք է ասել, որ Կոստանդիանոսի և Լիկինիոսի հրապարակած այդ հրովարտակից առաջ ևս, արդեն 311 թվին, հրատարակված էր կրոնական համբերատարության Գալերիոսի հրովարտակը, սակայն նույն այդ ժամանակ, ինչպես մենք վերև տեսանք, Ասիական արևելքում իշխում էր Մաքսիմինոս Դայան, որը թշնամի էր ու հալածիչ քրիստոնեության։

Որ Տրդատ Գ-ի և հայերի քրիստոնեության դարձը պետք է ենթադրել 313 թվից հետո՝ այդ որոշ չափով հաստատվում է նաև նրանով, որ Գրիգոր Լուսավորչի եպիսկոպոսական ձեռնադրությունը Կեսարիայում և հայերի մկրտությունը Ագաթանգեղոսի մոտ մատնացույց են արված Կեսարիայի մետրոպոլիտ Ղևոնդիոսի ժամանակ, որը հիշատակված է իբրև Կեսարիայի արքեպիսկոպոս 314 և 325 թվերին։

Ըստ այս դիտողությունների կարող է թերևս ճիշտ լինել Խորենացու Պատմության մեջ պահպանված ավանդությունը[2], որ Գրիգոր Լուսավորիչը քահանայապետ էր կարգվել և Թադեոս առաքյալի աթոռն էր նստել Տրդատի թագավորության (298—շուրջ 330) տասնևյոթերորդ տարում, այսինքն՝ ճիշտ և ճիշտ Միլանի հրովարտակից անմիջապես հետո [298+17] 314/315 թվին։ Նույն այս ավանդությունը պահպանվել է նաև «Պատմութիւն սրբոյն Ներսիսի Պարթևի» գրվածքում, որի մեջ Լուսավորչի քահանայապետ կարգվելը ցույց է տրված Տրդատ Գ-ի թագավորության ո՛չ թե տասնևյոթերորդ, այլ տասնևութերորդ տարում, այսինքն՝ [298+18] 315/316 թվին[3]։

---

[1] Տե՛ս Ագաթանգեղոս, Գ, 38, էջ 25. ԺԲ, 129, էջ 75. ԺԴ, 154, էջ 87 և ԺԵ, 161, էջ 90 (Տփղիս, 1909)։

[2] Տե՛ս Մովսես Խորենացի, գիրք II, գլ. ՂԱ, էջ 242 (Տփղիս, 1913)։

[3] Տե՛ս «Սոփերք Հայկականք», Զ, Վենետիկ, 1853, էջ 9։

*Պատմագիտական նորագույն աշխատություններում արդեն պարզված է, որ Միլանի 313 թվի հրովարտակից հետո ո՛չ թե առաջնություն էր տրվել քրիստոնեական եկեղեցուն կայսրության մեջ, այլ քրիստոնեությունը ճանաչվել էր այնտեղ իբրև ազատ ու իրավունակ կրոն և իրավունք էր ստացել օրինականապես զարգանալու և բարգավաճելու։ Նա գերիշխող ու պետական կրոն էր դառել Հռոմեական կայսրության մեջ միմիայն չորրորդ դարի վերջերում Թեոդոս Մեծի (379—395) ժամանակ*[1]*։*

*Ըստ այսմ զուրկ չէ հիմքից Սեն-Մարտենի, Գելցերի և ուրիշների կարծիքը, որ քրիստոնեությունն առաջին անգամ պետական կրոն էր հայտարարվել ո՛չ թե Արևմուտքում, այլ Հայաստանում*[2]*։*

*Քրիստոնեությունը, ինչպես հայտնի է, ծագել էր Հրեաստանում առաջին դարում, երբ Հռոմեական կայսրության դաժան կեղեքումների պատճառով հուսահատության էին հասցվել ամենուրեք ժողովրդական շահագործվող մասսայի ստորին խավերը։ Ինչպես Էնգելսը շատ ճիշտ մատնանշել է, ծագման իր առաջին շրջանում քրիստոնեությունը ճնշված դասակարգերի կրոնն էր՝ ստրուկների, ստրկությունից արձակվածների, աղքատների, իրավազուրկների և կամ նվաճված ու ճնշված ժողովուրդների*[3]*։ Սկզբնական այս ժամանակ ժողովրդական այդ լայն խավերը, որոնք ո՛չ մի ելք չէին տեսնում իրենց ծանր դրությունից, սկսել էին հավատալ, որ իրենց կարող է փրկել միայն մեսիան, Հիսուս Քրիստոսը, որը կպատժե հարստահարողներին և կհաստատե աստծու արդար թագավորությունը։*

*Իր զարգացման ավելի ուշ շրջանում, 3-րդ և 4-րդ դարերում, քրիստոնեությունն արագ կերպով կերպարանափոխվեց։ Նա հաշտվեց պետական իշխանության և իշխող դասակարգերի հետ, և քրիստոնեական եկեղեցին, որը եպիսկոպոսական իշխանության տակ կազմակերպվել էր որպես ուժեղ նվիրապետություն՝ կոչ էր անում քրիստոնյաներին հնազանդվել իրենց տերերին։*

*Հատկանշալի է, որ հետագա շրջանի այս քրիստոնեությունը*

---

1 Տե՛ս *A. A. Vassiliev*, Histoire de l'empire byzantin, I, Paris, 1932, էջ 52, 62, 63 և 70։

2 Տե՛ս *Lebeau*, Histoire du Bas-Empire, I, էջ 76—77. Հ. Գելցեր, Համառոտ պատմութիւն Հայոց, թարգմ. Գալեմքյարյանի, Վիեննա, 1897, էջ 37 և ուրիշները։

3 Տե՛ս *Энгельс*, К истории раннего христианства, նաև Бруно Бауэр и раннее христианство, Сочинения Маркса и Энгельса, т. XVI, ч. II, стр. 41 и т. XV, стр. 603—610.

կարող էին ընդունել հեշտությամբ իբրև թույլատրելի կամ պաշտոնական կրոն թե Հռոմեական կայսրությունը և թե Արշակունիների թագավորությունը։

Քրիստոնեության մուտքը Հայաստան իբրև պետական կրոն, անշուշտ, խիստ մեծ կարևորություն ունեցող մի փաստ է։ Հայաստանն այնուհետև սերտ հարաբերությամբ կապվեց Հռոմեական կայսրության հետ ո՛չ միայն քաղաքականապես, այլև կուլտուրապես։

Հայաստանի դաշնակցությունը Հռոմեական կայսրության հետ, ըստ երևույթին, ձևակերպված է եղել հատուկ պայմանագրում, որ կնքված էր, ինչպես հաղորդում են հայ պատմագիրները, Կոստանդիանոս Մեծի և Տրդատ Գ-ի մեջ։

«Նույնպես և Տրդատ արքային,—վկայում է Ագաթանգեղոսը,—իբրև սիրելի եղբոր իր սերը հայտնեց [Կոստանդիանոս Մեծը] մեծ ուրախությամբ, մանավանդ նրա աստվածածանոթության պատճառով, ավելի ևս, նրա հետ դաշինք կնքեց, միջնորդ դարձնելով իրենց առ տեր Քրիստոս հավատքը, որպեսզի հաստատուն պահեն միշտ հավատարիմ բարեկամությունն իրենց թագավորությունների միջև»։

[«Նոյնպէս և արքային Տրդատայ, իբրև եղբօր սիրելւոյ, սէր ցուցեալ ուրախութեամբ մեծաւ, մանաւանդ վասն աստուածածանօթութեան նորա՝ առաւել դաշինս կռէր ընդ նմա, միջնորդ կալեալ զհաւատսն որ ի տէր Քրիստոսն էր, զի անշուշտ մինչ ի բուն զհաւատարիմ սէրն ի մէջ թագաւորութեանցն պահեսցեն»][1]։

Փավստոսը ևս, մատնանշելով, որ հայ դեսպանություն էր եկել Կոստանդիոս (337—361) կայսեր մոտ և խնդրել էր, որ իրենց օգնե վրեժխնդիր լինելու Պարսից թագավորից, վկայում է, որ՝

«Կայսրը, բոլոր հանգամանքները լսելով՝ մեծ փութով ու պատրաստությամբ հանձն առավ նրանց խնդիրը կատարել, թիկունք և օգնական եղավ Հայոց աշխարհին, մանավանդ որ հիշում էր այն ուխտի դաշինքը, որ երդումով հաստատապես կնքել էին միջնորդությամբ Կոստանդիանոս կայսրը Տրդատ թագավորի հետ»[2]։

[«Զոր իբրև լուաւ կայսրն զիրսն զայնոսիկ, մեծաւ փութով և բազում պատրաստութեամբ ի խնդիր ելանէր իրին հասելոյ.

---

[1] Տե՛ս Ագաթանգեղոս, գլ. ՃԻԶ, 877, էջ 462—463 (Տփղիս, 1909)։

[2] Տե՛ս Փավստոս Բուզանդ, Հայոց պատմություն, թարգմ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1947, էջ 127։

և օգնական և թիկունք լինէր աշխարհին Հայոց։ Մանաւանդ, զի զուխտ յիշեալ զդաշանցն կռեալց զերդմանցն հաստատութեան, միջնորդութեամբ ի մէջ կայսերն Կոստանդիանոսի և ի մէջ թագաւորին Տրդատայ եղեալ էր»][1]։

Մեջ բերված այս վկայությունները, ինչպես իրավացի կերպով ընդունում են պատմագետները, կարելի է համարել պատմական և վավերական։ Դաշնադրության ժամանակը Գաթրճյանը և Տաշյանը ենթադրում են 312 թվին, Մաքսիմինոս Դայայի հայերի դեմ պատերազմից անմիջապես հետո[2]։ Գելցերը, հիմնվելով Թեոդոսյան օրենսգրքի մեջ պահված Կոստանդիանոսի հրովարտակի վրա, կարծում է, որ դաշնագիրը կապված էր, հավանորեն, 315 թվին Սարդիկիայում[3]։ Իսկ Աստուրյանը հավանական է համարում, որ այդ դաշինքը կարող էր կնքված լինել 324 թվին Արևելքում, երբ Կոստանդիանոս Մեծը լիակատար տեր էր դառել Արևմուտքի և Արևելքի[4]։

Պետք է ասել, որ այս կարծիքներից առաջինը թյուրիմացության արդյունք է, որովհետև, ինչպես վերև տեսանք, Մաքսիմինոս Դայան պատերազմ էր մղել քրիստոնյա հայերի դեմ ո՛չ թե Մեծ Հայաստանի, այլ հռոմեական Հայաստանի։ Անընդունելի է նույնպես Գելցերի ենթադրությունը, որովհետև Թեոդոսյան օրենսգրքի վերոհիշյալ վկայությունը, ինչպես միանգամայն ուղիղ մատնացույց է արել Գաթրճյանը[5], վերաբերում է Արշակ Բ-ին և ո՛չ Տրդատ Գ-ին։ Դժվար է նույնպես ընդունել և Աստուրյանի կարծիքը, որը սոսկ մի կռահումն է, զուրկ պատմական ու փաստական որևէ հիմքից։

Ինձ թվում է, հավանական է Տաշյանի մի ուրիշ ենթադրությունը։ Ընդունելով, որ վերոհիշյալ դաշինքը, իրոք, գոյություն է ունեցել՝ Տաշյանը իրավացի կերպով նշում է[6], որ աղբյուրների վկայություններից չէ երևում, որ Տրդատ Գ-ը անձամբ էր գնացել դաշինք կնքելու, այլ, ինչպես Փավստոսի վերև բերված վկայության մեջ ասված է, դաշնագիրը կնքել էր «միջնորդութեամբ», այսինքն՝ միջնորդների աջակցությամբ։

[1] Տե՛ս Փավստոս, III, գլ. 21, էջ 55, Վենետիկ, 1889։ Համեմատե՛ «Եղիշէի վարդապետի, Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին», Վենետիկ, 1864 էջ 124, նաև Խորենացի, III, գլ. Ե, էջ 261 (Տփղիս, 1913)։

[2] Տե՛ս Գաթրճյան, Տիեզերական պատմութիւն, Բ, էջ 479 և Տաշյան, Ագաթանգեղոս, էջ 146։

[3] *Gelzer H.*, Die Anfänge der armenischen Kirche, Sitzungsberichte der Kgl. Sächs. Gesellschaft der Wissenschaften, Leipzig, 1895, էջ 168—169։

[4] Աստուրյան, Քաղաքական վերաբերութիւններ։

[5] Տե՛ս Գաթրճյան, Տիեզ. պատմ., Բ, էջ 490, ծան. 1։

[6] Տե՛ս Տաշյան, Ագաթանգեղոս, էջ 147։

Իմ այս «Քննական տեսության» առաջին հատորում ես նս մատնացույց էի արել, որ Ագաթանգեղոսի Պատմության 126-րդ գլխում նկարագրված Տրդատ Գ-ի ճանապարհորդությունը Կոստանդիանոսի մոտ խառնաշփոթ ու անստույգ մի ավանդություն է և, ըստ երևույթին, արձագանք է ուղևորությանը Հռոմ Տրդատ Ա-ի[1]։

Պետք է առանձնապես նշել, որ Ագաթանգեղոսի անունով մեր ձեռքը հասել է «Դաշանց թուղթ» վերնագրով մի գրություն, որը իբր թե այն դաշինքն է, որ կնքված է եղել Տրդատ Գ-ի և Կոստանդիանոս Մեծի միջև։ Այդ գրությունը, ինչպես պարզված է, տգետ գրչի մի կոպիտ կեղծիք է և շարադրված է 12—13-րդ դարում։

Ավելորդ է, իհարկե, կանգ առնել Տրդատ Գ-ի քաջագործությունների մասին Ագաթանգեղոսի և Խորենացու հաղորդագրությունների վրա, որ պարզապես ժողովրդական զրույցներ են։ Ագաթանգեղոսի ասելով՝ Տրդատը բարձր էր ու լայն հասակով, հաղթ էր մարմնով և անսահման քաջ էր, ուժեղ էր ու պատերազմող։

Երբ Հռիփսիմեի և մյուս կույսերի նահատակման տեղերում վկայարաններ էին շինվում Վաղարշապատում՝ Տրդատը, ինչպես վկայում է Ագաթանգեղոսը, յոթ օրվա ճանապարհ է գնում, բարձրանում է Մասիս սարը և Հռիփսիմեի վկայարանի համար բերում է ութ ահռելի մեծության քարեր.

«քարեր կարծր՝ պինդ, անտաշ, չկոկած, ահագին, ծանր, երկայն, հաստ և մեծամեծ՝ որոնցից ոչ ոք չէր կարող որևէ մեկը շարժել, նույնիսկ եթե ձեռնամուխ լինեին շատ մարդիկ։ Արդ՝ ուժեղ հսկան վերցրեց հսկաբար ութ մեծ քարերը, դրեց բոլորն իր մեջքի վրա և շալակած բերեց նահատակության տաճարավայրերը»[2]։

[«Եւ անտի ի գլխոյ լեռնէն առեալ վէմս արաստոյս, անտաշս, անկոփս, յաղթս, ծանունս, երկայնս, ստուարս և մեծամեծս, որ զմի մի ոչ ումեք լինէր հնար, թէ և դիպելոյ բազմութեան ի մարդկանէ՝ զայն շարժել. արդ՝ առեալ սկայազօրն հսկաբար զութ արձանսն՝ ի վերայ իւրոյ թիկանցն զայն դնէր և ըստանձնեալ բերէր ի վկայարանս տաճարացն»]։

Տրդատի մասին թե այս և թե այլ նման առասպելական զրույցները, որ ունեն բանաստեղծական-վիպական բնույթ, հորինված են եղել, անշուշտ, ուշ ժամանակներում։

Տրդատ Գ-ին է վերագրվելու, բացի վերոհիշյալ Ցարկին-Տիգ-

---

[1] Տե՛ս Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 354։

[2] Ագաթանգեղոս, գլ. ՃՁ, 767, էջ 398 (Տփղիս, 1909)։

րանակերտի և Ապարանի հունարեն արձանագրություններից, նաև Գառնիի հունարեն արձանագրությունը, որն անակնկալ կերպով գտնվեց Գառնիում 1945 թվին։

Այս արձանագրությունը, որ բավական վնասված է և դժվար է կարդացվում, ունի մոտավորապես հետևյալ բովանդակությունը.

«Տիրան-Տրդատ Մեծը, իշխելով Մեծ Հայաստանին որպես գերագույն տեր՝ կառուցեց տաճար-մատուռը, անհաղթելին, իր քրոջ արքայադստեր համար՝ դուրս թագավորական մեծ ոստանից։ Շենքի հովանու ներքո սպասավորողը թող մեծին..... նաև գոհություն ավետարանման համար»[1]։

Իմ «Գառնիի հունարեն արձանագրությունը և Գառնիի հեթանոսական տաճարի կառուցման ժամանակը» (Երևան, 1946) նախորդ աշխատության մեջ ես ենթադրել էի, որ արձանագրության առաջին տողի մեջ Հելիոս բառը, որ նշանակում է արև, կարող է նաև հասկացվել իբրև Էլիոս (Aelius) անձնական անուն։ Ես կարծում էի, որ այդ անունը Տրդատ Գ-ը կարող էր ստացած լինել հռոմայեցիների երկրում, ուր նա սնվել էր ու մեծացել։

Ինձ թվում է այժմ, որ այս խնդրին ավելի հավանական է տալ բոլորովին այլ մեկնություն։ Կ. Մելիք-Օհանջանյանը կարևոր իր հոդվածում՝ «Տիրան-Տրդատի վեպը ըստ Փավստոս Բուզանդի»[2], մատնանշել է, որ Տիրան թագավորը հայկական սովորության համեմատ իր պապի Տրդատ Գ-ի անունով կոչվել է Տրդատ և անվանվել Տիրան-Տրդատ[3]։ Իմ կարծիքով, կարելի է հավանական համարել, որ Տիրան-Տրդատ կրկնակի անուն կարող էր ունեցած լինել նաև ինքը՝ Տրդատ Գ-ը։

Ըստ այս ենթադրության՝ Գառնիի արձանագրության մեջ Հելիոսը պարզապես Տիրան անվան թարգմանությունն է։ Հայտնի է արդեն, որ հայերի Տիր աստվածը համապատասխանում էր Ապոլլոնին և Հելիոսին[4], ուստի և շատ լավ հասկանալի է, թե

---

[1] Տե՛ս *Я. А. Манандян*, Новые заметки о греческой надписи и языческом храме Гарни, „Известия" Академии Наук Арм. ССР, 1951, № 4, էջ 18 և 21։

[2] Տե՛ս «Տեղեկագիր» Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի, հաս. գիտ., 1947, № 6 և № 7։

[3] Նույնը, № 7, էջ 60—61։ Երվանդ Տեր-Մինասյանը, ինչպես մատնանշում է Մելիք-Օհանջանյանը, հայտնել է իրեն, որ Եղիշեի մի քանի ձեռագրերի մեջ Տիրան թագավորն անվանված է «Տիրան-Տրդատ»։

[4] Տե՛ս *H. Gelzer*, Zur armenischen Götterlehre, Sonderabdruck a. d. Berichten der Königl. Sächs. Gesellschaft der Wissenschaften, Sitzung vom

ինչո՛ւ Տիրան-Տրդատ Գ-ը հունարեն արձանագրության մեջ անվանված է Հելիոս-Տիրիդատես։ Նոր այս բացատրությունն ուշագրավ մի ապացույց է, որ վերոհիշյալ արձանագրությունը չէ կարող վերագրվել Տրդատ Ա-ին, ինչպես այդ թյուրիմացաբար ենթադրում են հայագետներից շատերը։

Երկրորդ կարևոր փոփոխությունը, որ անհրաժեշտ էր մտցնել իմ 1946 թվի նախնական թարգմանության մեջ, վերաբերում է Տրդատ Գ-ի տիտղոսին[1]։ Նկատի առնելով տարածությունը մինչև առաջին տողի վերջը՝ ես կարծում եմ այժմ, որ Տրդատ Գ-ն արձանագրության մեջ անվանված է եղել ո՛չ թե «Տրդատ թագավոր», այլ «Տրդատ Մեծ»։

Խալաթյանցը իր «Հայոց պատմության ուրվագծի» մեջ ասում է, որ Տրդատ Գ-ին հին հայ պատմագիրներն անվանել են Մեծ, որովհետև նա ջերմ պաշտպան է եղել քրիստոնեության և աջակցել է Գրիգոր Լուսավորչին քրիստոնեությունը տարածելու Հայաստանում[2]։ Այս կարծիքը ավելի քան վիճելի է։ Տրդատ Գ-ը «Մեծ» է անվանված ո՛չ թե մեր հնագույն պատմագիրների երկերում, այլ առաջին անգամ Սեբեոսի Պատմության երկրորդ գլխում և Մովսես Խորենացու մոտ[3]։ Խորենացին, ինչպես մատնանշված է վերոհիշյալ իմ աշխատություններում, ինքը տեսել էր Գառնիի հունարեն արձանագրությունը, ուստի և անհավանական չէ, որ նա Տրդատ Գ-ին Մեծ է անվանում, նկատի ունենալով արձանագրության մեջ Տրդատի «Մեծն» (ὁ Μέγας ) տիտղոսը։

Ուշագրավ է ու հետաքրքիր, որ նորագյուտ արձանագրության մեր լուսաբանությունը ճշտիվ համապատասխանում է Խորենացու ցուցմանը, որ Գառնիի հունարեն արձանագրությունը պատկանում է Տրդատ Մեծին։ Պատմահոր այդ կարևոր վկայությունը, որ կարոտ է քննության, մեջ եմ բերում աշխարհաբար թարգմանությամբ և գրաբար.

> «Այս ժամանակ [Արիստակեսի Նիկիայից վերադառնալուց հետո] Տրդատը վերջացնում է Գառնիի ամրոցի շինությունը, որը որձաքար ու տաշած քարերից էր, որոնք իրար էին կցպ-

---

7 December, 1895, էջ 137, նաև իմ աշխատությունը՝ «Արմավիրի հունարեն արձանագրությունները նոր լուսաբանությամբ», Երևան, 1946, էջ 14—17։

[1] Այդ մասին ինձ մասնավոր նամակով (30 մարտի 1947 թվի) հայտնել էր Ա. Բ. Ռանովիչը։

[2] Տե՛ս Халатьянц, Очерк истории Армении, М., 1910, էջ 349։

[3] Խորենացի, գիրք II, գլ. Ա և գլ. ԽԲ։

ցրված երկաթե գամերով և կապարով։ Նրա մեջ նա շինեց նաև տուն հովանոց, մահարձաններով, սքանչելի դրվագներով ու բարձրաքանդակներով՝ իր Խոսրովիդուխտ քրոջ համար, և նրա վրա գրեց իր հիշատակը հունարեն գրերով»։

[«Զայսու ժամանակաւ կատարէ Տրդատ զշինուած ամրոցին Գառնւոյ զոր որձաքար և կոփածոյ վիմօք, երկաթագամ և կապարով մածուցեալ, յորում շինեալ և տուն հովանոց, մահարձանօք, սքանչելի դրոշուածովք, բարձր քանդակաւ, ի համար քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ, և գրեալ ի նմա զյիշատակ իւր հելլենացի գրով»][1]։

Խորենացու այս վկայությունից, որի մեջ կարևոր ու ճշգրիտ տեղեկություններ են հաղորդված Գառնիի ամրոցի և նրա մեջ գտնըվող շենքի մասին՝ դժվար չէ կռահել, որ պատմահայրն ինքն անձամբ եղել է Գառնիում և տեսել ու կարդացել է հունարեն արձանագրությունը։ Նա միանգամայն ճիշտ է որոշել, որ իր տեսած հունարեն արձանագրությունը, որը պարզապես այժմյան նորագյուտ արձանագրությունն է՝ պատկանում է Տրդատ Մեծի ժամանակին։ Նա նմանապես նաև ուղիղ մատնանշել է, որ Տրդատը Գառնիի ամրոցը կառուցել էր իր քրոջ համար, որին ինքը, հավանական ենթադրություն անելով, նույնացրել է Ագաթանգեղոսի մոտ հիշատակված Խոսրովիդուխտի հետ։

Խորենացին Գառնիի տաճարը համարել է «հովանոց», այսինքն՝ ամառանոց, որ Տրդատ Գ-ը կառուցել էր իր քրոջ՝ Խոսրովիդուխտի համար։ Նորագյուտ հունարեն արձանագրության ընթերցումը այժմ մեզ ցույց է տալիս, որ այդ հուշարձանը չէ կարող համարվել Խոսրովիդուխտի «հովանոց», ինչպես այդ ենթադրել է Խորենացին։ Ճիշտ պետք է համարել, անշուշտ, այն գիտնականների և ճարտարապետների կարծիքը, որոնք այդ շենքը համարում են հեթանոսական տաճար, մեհյան։

Նորագյուտ արձանագրության մեջ հիշատակված է, համաձայն իմ առաջարկած ընթերցման, Տրդատ Մեծի քույրը։ Դժվար չէ, ուրեմն, որոշել, որ սա Ագաթանգեղոսի մոտ հիշատակված «մեծ օրիորդ Խոսրովիդուխտն» է, որը Հայաստանում ականավոր դեր էր կատարել քրիստոնեության տարածման ընթացքում։

Տրդատ Մեծի քրոջ հիշատակությունը հունարեն արձանագրության մեջ՝ կարևոր մի մատնանշում է, անշուշտ, որը ցույց է տա-

[1] **Խորենացի**, *գիրք II, գլ. Ղ, էջ 241—242 (Տփղիս, 1913)։*

լիս, որ Խոսրովիդուխտի մասին Ագաթանգեղոսի և Խորենացու վըկայությունները, ըստ էության, պատմական են և ոչ վիպական։

Գառնիի հունարեն արձանագրությունը, որը վերագրվելու է Տրդատ Մեծին, ինչպես մանրամասն մատնանշված է այդ արձանագրության վերաբերյալ առաջին իմ աշխատության մեջ[1], գրված է, հավանորեն, Տրդատի թագավորության այն ժամանակաշրջանում, երբ Հայաստանում արդեն հաստատվել էր քրիստոնեությունը և ինքը՝ Տրդատն ընդունել էր նոր կրոնը։ Արձանագրության ժամանակը որոշվում է 315—330 թվերի միջոցում, այսինքն՝ հայերի քրիստոնեության դարձից հետո և Տրդատ Մեծի մահից՝ մոտավորապես 330 թվից, առաջ։

Ուշագրավ է, որ նաև Մովսես Խորենացին վկայում է, որ Տրդատ Մեծի «հելլենացի գրով» արձանագրությունը գրված է մոտավորապես այն ժամանակներում, երբ Գրիգոր Լուսավորչի Արիստակես որդին վերադարձել էր Նիկիայի ժողովից, այսինքն՝ 325 թվից հետո։

Վերոհիշյալ իմ աշխատությունների մեջ ես նաև կարծիք էի հայտնել, որ Գառնիի ամրոցը և, հավանորեն, նաև հեթանոսական տաճարը գոյություն են ունեցել, ինչպես վկայում է Տակիտոսը[2], Արշակունիների Հայաստանում հաստատվելուց առաջ և, ըստ երևույթին, Հայաստան մուտք գործած հելլենիստական կուլտուրայի մի մնացորդ են։

Տրդատ Գ-ը թագավորել է Հայաստանում ո՛չ թե 70 կամ 56 տարի, ինչպես մատնացույց են անում Սեբեոսը և Խորենացին[3], այլ մոտ 32 տարի (298—շուրջ 330) և վախճանվել է մոտավորապես 330 թվին։

Խորենացին իր Պատմության երկրորդ գրքի վերջին գլխում վկայում է, որ Տրդատ Մեծին թունավորել և սպանել էին հայ նախարարները։ Մի անվավեր գրվածքի մեջ[4] մատնանշված է, որ Ծա-

---

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Գառնիի հունարեն արձանագրությունը և Գառնիի հեթանոսական տաճարի կառուցման ժամանակը, Երևան, 1946, էջ 13—16։

[2] Տե՛ս Tacitus, Annales, XII, 45.

[3] Սեբեոս, գլ. Գ, էջ 16 (Երևան, 1939) և Խորենացի, II, գլ. ՂԲ, էջ 250 (Տփղիս, 1913)։

[4] Տե՛ս «Յաղագս մահուան Տրդատայ թագաւորի՝ հզօրի, քաջի և առաքինոյ», «Բազմավէպ», 1851, էջ 69—75 և Միաբան (Գ. Տեր-Մկրտչյան), Խորենացու պատմութեան ուսումնասիրութիւն, Վաղարշապատ, 1896, էջ 33—34։

*պուհ Բ-ի (309/10—379) հրամանով Տրդատ Գ-ին նետով վիրավորել էին որսի ժամանակ Եկեղյաց գավառում Սյունիքի ազատները և, որովհետև վերքը վտանգավոր չէր՝ թագավորին թունավորել էր հետո նրա սենեկապետը։*

*Տրդատ Գ-ի սպանության մասին ոչինչ չգիտեն և չեն հաղորդում հայոց հին պատմիչները, ուստի և վերոհիշյալ տեղեկությունները, ինչպես շատ ճիշտ մատնանշել է Խալաթյանցը*[1], *կասկածելի են և, ըստ երևույթին, չունեն պատմական արժեք։*

---

[1] **Տե՛ս** *Г. Халатьянц*, Армянские Аршакиды, Москва, 1903, *էջ 180 և ն.*

## ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

# ԽՈՍՐՈՎ Գ. ՏԻՐԱՆ ԵՎ ՊԱՐՍԿԱ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ԿՌԻՎՆԵՐԻ ՎԵՐՍԿՍՈՒՄԸ

1. Խոսրով Գ.— Հայաստանի խաղաղ դրությունը նրա թագավորության առաջին տարիներում.— «Տանար մայրի» և «Խոսրովակերտ» անտառների տնկումը:— 2. Պայքար ընդդեմ կենտրոնախույս նախարարությունների.— Մանավազյան և Որդունի նախարարությունների խիստ բնաջնջումը.— «մարտ պատերազմի առանց իրաւանց».— բնաջնջված նախարարությունների կալվածքների հանձնումը հոգևորականության:— 3. Պարսկական հարձակումները հռոմեական Միջագետքի վրա:— 4. Մազքութների Սանեսան թագավորի արշավանքը Հայաստան.— Սանեսանի պարտությունը և սպանությունը:— 5. Կոստանդիանոս Մեծի խորթ եղբոր որդու, Աննիբալիանոսի, նշանակումը բարձրագույն իշխող հռոմեական վասալական երկրների Արևելքում.—հույն-հռոմեական աղբյուրների վկայությունները նրա մասին:— 6. Բզնունյաց Դատաբեն նահապետի դավաճանությունը և Աղձնյաց Բակուր բդեշխի ապստամբությունը.— Դատաբենի քարկոծումը և Բակուր բդեշխի ու նրա տոհմի մահապատժումը.— նախազգուշական միջոցներ մեծամեծ ավագանու նկատմամբ:— 7. Մծբինի պաշարումը և պարսկական զորքերի հարձակումը Հայաստանի վրա:— 8. Պարսկական կուսակցության իշխանությունը Հայաստանում:— 9. Տիրանի գահակալությունը Կոստանդիոս կայսեր աջակցությամբ:— 10. Տիրան թագավորի մասին Փավստոսի և Խորենացու կասկածելի վկայությունները.— հայերի և հռոմայեցիների բարեկամությունը Տիրան թագավորի ժամանակ:— 11. Հայկական ծանր զրահավոր հեծելազորի վճռական դերը Մուրսայի մոտ կռվում:— 12. Տիրանի պայքարը կենտրոնախույս նախարարությունների դեմ.— Արծրունիների և Ռշտունիների տոհմերի բնաջնջումը:

Տրդատ Գ-ին հաջորդում է նրա որդին՝ Խոսրով Գ-ը (շուրջ 330—338), որին անվանում են Կոտակ, այսինքն՝ փոքր կամ փոքրահասակ։ Սրա թագավորության ժամանակաշրջանի համար կարևորագույն աղբյուրն է Փավստոս Բուզանդի Պատմությունը, որից կարելի է վստահությամբ օգտվել։ Հարկավոր է, իհարկե, նախապես վերացնել սրա միտումնավոր գունավորումներն ու չափազանցությունները, ուղղել ժամանակավրիպումները և որոշել պատմական փաստերի կատարման ճիշտ ժամանակը, դիմելով, որքան այդ հնարավոր է, օտար աղբյուրների օգնության։

Խոսրով Գ-ի ժամանակ, ինչպես հաղորդում է Փավստոսը, հայ եկեղեցու եպիսկոպոսապետն էր Գրիգոր Լուսավորչի երեց որդի Վրթանեսը՝ Արիստակեսի եղբայրը։ Պետք է ասել, որ թե Տրդատ Գ-ի և թե նրա հաջորդների ժամանակ քրիստոնեական եկեղեցին և նրա առաջնորդները մեծ դեր էին խաղում ո՛չ միայն երկրի կրոնական, այլև քաղաքական կյանքում։

Խոսրով Գ-ի թագավորության առաջին տարիներում Հայաստանը գտնվում էր անդորր ու բարգավաճ վիճակի մեջ շնորհիվ այն երկարատև խաղաղության, որ հաստատվել էր Արևելքում 298 թվի դաշնադրությունից հետո։ Հայաստանի այդ խաղաղ ու բարեկեցիկ ներքին դրությունը մատնանշված է Փավստոսի ուշադրավ մի վկայության մեջ, որը պատմական ճիշտ հիշողություն է։

«Սրանից [Տրդատ Մեծից] հետո,—պատմում է Փավստոսը,—թագավորեց Խոսրով Կոտակը, [Մեծն] Խոսրովի թոռը, քաջ և առաքինի Տրդատ թագավորի որդին։ Սրա ժամանակ քահանայապետ եղավ և իր հոր ու եղբոր աթոռը նստեց Վրթանեսը, Գրիգորի երեց որդին։ Սրանց տարիներում աճեցին ու բազմացան խաղաղություն և շինություն, մարդաշատություն և առողջություն, պտղաբերություն, առատություն և գործի հաջողություն, և աստվածային մեծ պաշտամունքը և աստվածային բարի վարքը։ Սուրբ Վրթանեսը իր հոր ու եղբոր նման նրանց լուսավորում էր ու առաջնորդում։ Այն դարում ծաղկած էին իրավունքն ու արդարությունը»[1]։

[«Ապա յետ այսորիկ թագաւորեաց Խոսրով Կոտակ, թոռն Խոսրովու, որդի քաջի և առաքինւոյն Տրդատայ արքայի։ Յաւուրս սորա եկաց և եղև քահանայապետ յաթոռն հօրն, փոխանակ հօրն իւրոյ և եղբօրն իւրոյ, երէց որդին Գրիգորի Վրթանէս։ Խաղաղութիւն և շինութիւն, մարդաշատութիւն և առողջութիւն, պտղաբերութիւն և ստացուածաշատութիւն և շահեկանութիւն, և մեծն աստուածասէր պաշտօն ի հաճոյակատարն բարութիւն յամս յաւուրս սոցա աճեալ բազմացաւ։ Լուսաւորէր և առաջնորդէր նոցա սուրբն Վրթանէս իբրև զհայր իբրև զեղբայր իւր. իրաւունք և արդարութիւն ծաղկել էին ի դարուն յայնմ»][2]։

Խաղաղ այս ժամանակաշրջանի շինարարական կարևոր գործերից Փավստոսի մոտ առանձնապես հիշատակված են «Տաճար մայ-

[1] Տե՛ս Փավստոս Բուզանդ, Հայոց պատմություն, թարգմ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1947, էջ 87 (III, գլ. Գ)։

[2] Փավստոս, Վենետիկ, 1889, էջ 6—7 (III, գլ. Գ)։

րի» և «Խոսրովակերտ» արհեստական անտառների տնկումը, որոնցից առաջինը տարածվում էր Գառնիից մինչև Դվին կոչված բլուրը, իսկ երկրորդը՝ այդ բլրից մինչև Արտաշատ քաղաքը և Արաքս գետը։

Այս անտառներում, որոնք թագավորի ու ազնվականության համար որսորդության վայր էին լինելու, կառուցվել էին արքունական ապարանքներ։ Ինճիճյանի կարծիքով, Հայաստանում անտառները ո՛չ միայն որսի ու զվարճության համար էին կառուցվում, այլ, գլխավորապես, նաև ազնվական դասի զինվորական ուսուցման ու ռազմական պատրաստության համար[1]։

«Եվ թագավորը [Խոսրով Գ-ը],—պատմում է Փավստոսը,— հրաման տվեց իր զորավարին՝ հավաքել երկրից բազմաթիվ աշխատապարտ մարդիկ, բերել անտառներից վայրի կաղնի և տնկել այդ Այրարատյան գավառում. և սկսած արքունի ամուր բերդից, որի անունն է Գառնի, մինչև Մեծամորի դաշտը և բլուրը, որը կոչվում է Դվին ու գտնվում է Արտաշատ մեծ քաղաքի հյուսիսակողմում՝ գետի ընթացքով տնկեցին կաղնին դեպի Ներքև մինչև Տիկնունի ապարանքը. և այս անտառի անունը նա դրեց Տաճար մայրի։

Մի ուրիշ անտառ ևս տնկեցին սրանից դեպի հարավ, եղեգնուտի եզերքով, և դաշտը լցրին կաղնատու տնկերով, սրա անունն էլ դրին Խոսրովակերտ։ Այստեղ ևս շինեցին արքունական ապարանքներ։ Եվ երկու տեղերն էլ պարիսպներով պատեցին, բայց իրար չմիացրին, որովհետև այդտեղ էր գտնվում հաղորդակցության մեծ ճանապարհը։ Այնուհետև անտառն աճեց ու բարձրացավ։

Ապա թագավորը հրամայեց հավաքել ամեն տեսակ էրեներ ու գազաններ և լցնել պարսպապատված տեղերը, որպեսզի սրանք իրենց համար լինեն նրա թագավորության որսի, զըվարճության ու ուրախության տեղեր։ Եվ Վաչե զորավարը իսկույն կատարեց թագավորի ասածները»։

[«Եւ ետ հրաման թագաւորն զօրավարին իւրոյ՝ հանել խաշար յաշխարհէն բազում, և բերել զվայրենի կաղին մայրեաց, և տնկել զայն յԱյրարատեան գաւառին. և առեալ յամուր բերդէն արքունի, որում կոչեն Գառնի, մինչև ի դաշտն Մեծամօրի ի բլուրն՝ որ անուանեալ կոչի Դուին, որ կայ ի հիւսիսոյ կողմանէ քաղաքին մեծի Արտաշատու, զգետն խոնարհ մինչև

[1] Ղ. Ինճիճյան, Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, հատ. Գ, Վենետիկ, 1835, էջ 137—139։

յապարանսն Տիկնունի՝ տնկեցին զկաղինն։ Եւ կոչեաց զանուն նորա Տաճար մայրի։

Եւ միւս ի մայրեացն յեղեգնաբերանին ի նմանէ ի հարաւակողմ լցին զդաշտն կաղնատուն տնկով. և կոչեցին զանուն նորա Խոսրովակերտ։ Եւ անդ շինեցին զապարանսն արքունականս, զերկոսեան տեղիսն պարսպեալ փակեցին. և ոչ կցեցին ի միմեանս վասն պողոտայի ճանապարհին։ Եւ անեաց բարձրացաւ. և ապա զամենայն էրէս և զգազանս հրամայեաց ժողովել թագաւորն և լնուլ զքաղաքորմսն, զի լիցին նոցա տեղիք որսոց զբօսանաց ուրախութեան թագաւորութեան նորա։ Եւ զօրավարն Վաչէ կատարէր վաղվաղակի զասացեալսն արքայի»][1]։

Խոսրով Գ-ի ժամանակ, ինչպես երևում է Փավստոսի վկայություններից, հին հեթանոսական կրոնը դեռ ուներ Հայաստանում բազմաթիվ հետևողներ։ Քրիստոնեության մուտքը Հայաստան այնպես արագ տեղի չէր ունեցել, ինչպես այդ նկարագրված է Ագաթանգեղոսի Պատմության մեջ։ Փավստոսը հաղորդում է, որ քրմական կուսակցությունը Տարոնում, Խոսրով Գ-ի կնոջ սադրանքով, ուզեցել էր սպանել Վրթանես քահանայապետին Աշտիշատի եկեղեցում։ Դավադրությանը, Փավստոսի ասելով, մասնակից են եղել մոտ երկու հազար մարդ։ Սակայն սպանության փորձը հաջողություն չէր ունեցել[2]։

Ավելի վտանգավոր էին Խոսրով Գ-ի ժամանակ նախարարական ապստամբությունները, որոնք վտանգավոր ու համառ բնույթ էին ստացել նրա թագավորության երկրորդ կեսում։

Ինչպես հայտնի է, Արշակունյաց Հայաստանի քաղաքական պատմության էական կողմերից մեկը կազմում էր կենտրոնական իշխանության արյունահեղ պայքարն ընդդեմ կենտրոնախույս ու ապստամբ նախարարությունների։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ Արշակունյաց Հայաստանում ևս, ինչպես և միջնադարյան Եվրոպայի ֆեոդալական միապետություններում, թագավորական իշխանության ու ֆեոդալական հզոր ու ինքնուրույն տերությունների քաղաքական ձգտումները հաճախ իրար ընդդեմ էին ու հակադիր։ Հայ Արշակունիները, որոնց գերիշխանության տակ գտնվում էին բդեշխությունները և մյուս նախարարությունները, պետք է, անշուշտ, ամեն կերպ ձգտեին ընդլայնելու իրենց թագավորական իշխանությունն ու իրա-

---

[1] Փավստոս, III, գլ. Ը, էջ 18 (Վենետիկ, 1889)։

[2] Նույնը, III, գլ. Գ։

վունքները և ստեղծելու կենտրոնացած ու զորեղ մի պետություն, իսկ ֆեոդալական իշխանությունները շահագրգռված էին, ընդհակառակը, ո՛չ միայն պահելու, այլև ընդարձակելու իրենց անջատ ու անկախ իրավունքները։

Հայաստանի սահմանակից մեծ պետություններն օգտվում էին, բնականաբար, Արշակունիների թագավորական իշխանության ու հայ նախարարությունների միջև եղած ներքին երկպառակություններից և աջակցում ու հովանավորում էին խռովարարներին։ Սասանյան Պարսկաստանը և Հռոմեական կայսրությունը չէին կարող, հարկավ, հանդուրժել Հայաստանի միացումն ու զորեղացումը, ուստի և իրենք էին հաճախ երկպառակում երկիրը և պաշտպանում իրենց քաղաքականության հլու ու հաճելի, խռովարար ու ըմբոստ իշխաններին։

Շատ պարզ է, որ Հայ Արշակունիներին դժվար պիտի լիներ քաղաքական այս պայմաններում ստեղծել զորեղ ու կենտրոնացած մի պետություն։

Առաջին երեք դարերում Քրիստոսից հետո Արշակունիների ու նախարարությունների փոխհարաբերությունները մեզ միանգամայն անհայտ են աղբյուրների բացակայության պատճառով։ Արշակունյաց հայ թագավորության քաղաքական ներքին անցքերը հայտնի են մեզ միայն Խոսրով Գ-ից սկսած։

Սրա թագավորության ժամանակ տեղի էր ունեցել, ինչպես վկայում է Փավստոսը, Մանավազյան և Որդունի նախարարությունների արյունահեղ կռիվը, որն ինքնին արդեն մի ապացույց է Խոսրով Գ-ի հեղինակության և թագավորական իշխանության թուլության։

«Եվ այն ժամանակները,—պատմում է Փավստոս Բուզանդը,—մեծ խռովություն ծագեց Հայոց աշխարհում, որովհետև երկու մեծ նախարարներ ու իշխաններ, գավառակալներ ու աշխարհատերեր, իրար հետ ընդհարվեցին, մեծ ոխակալությամբ կռիվ սկսեցին և իրար դեմ պատերազմ էին մղում առանց իրավունքի։ Հայոց մեծ աշխարհը պղտորում էին Մանավազյան տոհմի իշխանը և Որդունյաց տոհմի նահապետը։ Սրանք իրար դեմ մեծ պատերազմ վարեցին և շատ մարդիկ կոտորվեցին ու ոչնչացան։

Ապա Խոսրով թագավորը և Վրթանես մեծ եպիսկոպոսապետը նրանց մոտ ուղարկեցին պատվական մեծ եպիսկոպոս Աղբիանոսին, որպեսզի սա խոսե ու հաշտեցնե նրանց։ Եվ երանելի Աղբիանոսը եկավ նրանց մոտ, որ նրանց ուղղե ու

հնազանդեցնեն և իրար հետ հաշտեցնեն։ Բայց նրանք անարգեցին նրան և նրա միջնորդությանը ականջ չդրին։ Նրանք արհամարհեցին նաև նրան ուղարկողներին ու եպիսկոպոսին արձակեցին մեծ թշնամանքով և արքունական երկիրը վերցրին ու ավերեցին»։

[«Եւ զայն ժամանակաւ յարեաւ խռովութիւն մեծ յաշխարհին Հայոց, զի մեծ նախարարք և իշխանք երկու, գաւառակալք աշխարհատեարք անկանէին ընդ միմեանս, մեծաւ ոխութեամբ յարուցին կռիւ և տային ընդ միմեանս մարտ պատերազմի առանց իրաւանց։ Եւ պղտորէին զմեծ աշխարհն Հայոց իշխանն Մանաւազեան տոհմին և միւս ևս նահապետն Որդունւոց տոհմին։ Կռուեցան ընդ միմեանս մեծաւ պատերազմաւ և բազում մարդկան լինէր ծախումն կոտորածոյ։

Ապա առաքեցին թագաւորն Խոսրով և մեծ եպիսկոպոսապետն Վրթանէս զպատուական զմեծ եպիսկոպոսն Աղբիանոս ի մէջ նոցա, խօսել ի հաշտութիւն խաղաղութեան։ Երթեալ հասանէր ի մէջ նոցա երանելին Աղբիանոս, զնոսա ուղղել նուաճել՝ ընդ միմեանս հաշտեցուցանել։ Անարգեցին զնա և ոչ լուան բարեխօսութեանն եկելոյն. անգոսնեցին զպղելին և մեծաւ թշնամանօք արձակեցին զեպիսկոպոսն, և առնուին աւերէին զտունն արքունի»][1]։

Փավստոսի պատմելով, նախարարական հին այդ տոհմերը թագավորի հրամանով սրի է անցկացրել և իսպառ բնաջինջ արել Մամիկոնյան Վաչե զորավարը։

«Եվ [թագավորը],—ասում է Փավստոսը,—տվեց Աղբիանոս եպիսկոպոսին եկեղեցու համար Մանավազյանների նահապետի ավանը և բուն աթոռանիստ գյուղը՝ Մանավազակերտն իր բոլոր սահմաններով ու նրանց շուրջը գտնվող գավառակով, որ Եփրատ գետի կողմերումն էր։ Եվ Բասենի եպիսկոպոս Եվտաղիոսին [՞] տվին Որդունիների բուն գյուղը, որի անունն էր Որդորու, իր բոլոր սահմաններով, որ գտնվում է հենց Բասենի երկրում»։

[«Եւ ետ [Խոսրով] զաւանն և զբուն գահոյից գեւղն նահապետին Մանաւազենից եպիսկոպոսին Աղբիանոսի յեկեղեցի՝ զՄանաւազակերտ ամենայն սահմանօքն և գաւառակաւն հանդերձ, որ շուրջ զնովաւ էր, որ կայ ի կողմանս գետոյն Եփրատայ։ Եւ ետուն զբուն գեւղն Որդունւոց, որոյ անուն էր Որդո-

[1] Փավստոս, III, գլ. Դ, էջ 9 (Վենետիկ, 1889)։

րու, ուստի [Մարկվարտն ուղղել է «Եւտաղի» փխ. «ուստի»][1] եպիսկոպոս Բասանու ամենայն սահմանօքն հանդերձ, որ ինքն իսկ է յերկրին Բասանու»][2]։

Մանավազյանների և Որդունիների տոհմերի մասին Փավստոսի վկայությունից, ինչպես մատնանշված է «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» իմ աշխատության մեջ[3], կարելի է կռահել, որ նախարարությունները, լինելով կենտրոնական իշխանությունից գրեթե անկախ, ըստ երևույթին, մասնավոր պատերազմների վարումը համարել են իրենց օրինական իրավունքը, իսկ թագավորական իշխանությունը համարել է այդ «մարտ պատերազմի առանց իրաւանց»։ Մասնավոր կռվի հենց նույն իրավունքը, ինչպես հայտնի է, իրենց արտոնությունն են համարել ֆեոդալական իշխանությունները նաև միջնադարյան Եվրոպայում և Անգլիայում, և այստեղ ևս թագավորական իշխանությունը, իրեն զորեղ զգալով, չէ ճանաչել ֆեոդալների այդ իրավունքը։

Սկսած, հավանորեն, 335 թվից դրությունը Հայաստանում սկսեց խիստ ծանրանալ, որովհետև մոտավորապես այդ ժամանակներում Սասանյան Պարսկաստանը վերսկսեց թշնամական գործողությունները Հռոմեական կայսրության դեմ, նպատակ ունենալով վերանվաճել թե Անդրտիգրիսյան գավառները, որ Ներսեհը 298 թվին զիջել էր կայսրությանը, և թե նաև ամբողջ Հայաստանը։

Պատմագիտության մեջ ընդհանրացած է այն կարծիքը, որ իբր թե պարսկական առաջին հարձակումները հռոմեական Միջագետքի վրա սկսվել էին 337 թվին։ Ինձ ավելի հավանական է թվում Մարկվարտի նոր ենթադրությունը։ Վերջինս, հենվելով Թեոփանեսի կարևոր մի վկայության վրա[4], մատնացույց է արել, որ Պարսից հարձակումը Ամիդ քաղաքի վրա տեղի էր ունեցել, հավանորեն, 335 թվին և որ նույն այս թվին Ամիդի ու Տիգրանակերտի միջև, Նարարրայում (Nararra), Կոստանդիանոս Մեծի որդի, Կեսար Կոստանդիանոսը, պարտության էր մատնել արքայազըն Ներսեհին, որը սպանվել էր[5]։

---

1 Տե՛ս *Markwart,* Die Entstehung der armenischen Bistümer, Rom, 1932, էջ 165։

2 Փավստոս, *III, գլ. Դ, էջ 10 (Վենետիկ, 1889)։*

3 Երևան, *1934, էջ 269։*

4 *Theophanes,* p. 20, 21 ևն., ed. De Boor.

5 Տե՛ս *Markwart,* Südarmenien und die Tigrisquellen, Wien, 1930, էջ 265—268 և նույնի, Die Entstehung der armenischen Bistümer, էջ 96=Orientalia Christiana, vol. XXVII, 2, էջ 232։

*Ուշագրավ է, որ, հավանորեն, նույնպես 335 թվին, ինչպես մասնացույց է արել դարձյալ Մարկվարտը, մազքութների Սանեսան թագավորի առաջնորդությամբ արշավել էին Հայաստան հյուսիսային լեռնականները։*

*«Այս ժամանակ,—պատմում է Փավստոսը,—մազքութների Սանեսան թագավորը, անհուն բարկությամբ լցված, թշնամացավ իր ազգակից՝ Հայոց Խոսրով թագավորի հետ, և հավաքեց ու գումարեց բոլոր զորքերը՝ հոներ, փոխեր, թավասպարներ, հեճմատակներ, իժմախներ, գաթեր, աղվարներ, գուգարներ, շղբեր, ճղբեր, բաղասիճներ,—եգերսվաններ և այլ խառնիճաղանջ թափառակյաց վաչկատուն ուժեր անթիվ բազմությամբ՝ այն մեծ զորքերը, որոնց հենց ինքն էր իշխում։ Եկավ իր սահմաններից դենը, անցավ մեծ Կուր գետը և սփռվեց ու լցրեց Հայոց աշխարհը։ Եվ թիվ չկար նրա հեծելազոր գնդերի բազմության և հաշիվ չկար նրա տիգավոր հետևակ զորքերի, ուստի և նրանք իրենք չէին կարող իրենց զորքը համարել...։ Նրանք եկան և լցին ու ծածկեցին Հայոց ամբողջ երկիրը՝ քանդեցին, գերեցին, խպառ ավերեցին. սփռվեցին, տարածվեցին նրա սահմանների չորս կողմը, ծայրե ի ծայր ցրիվ եկան մինչև Սատաղ փոքրիկ քաղաքը և մինչև Գանձակ սահմանն Ատրպատականի։ Բերին (ամեն ինչ) մեկ տեղ հավաքեցին, նախորոշված կողմերը Այրարատյան գավառում մեծ բանակ գցեցին»։*

*[«Յայնմ ժամանակի թագաւորն մազքթաց Սանէսան անհնարին նիւթեաց զսրտմտութիւն ոխութեան ընդ իւրում ազգակցին Խոսրովու արքային Հայոց, և գումարեաց ժողովեաց զամենայն զօրս հոնաց և փոխաց, թաւասպարաց, հեճմատակաց, իժմախաց, գաթաց, և աղուարաց, գուգարաց, շղբաց և ճղբաց, և բաղաճաց, և եգերսուանացն, և այլոց խառնաղանճ բազմութեամբք անթիւ անբնակն վաչկատուն զօրութեանց, որում միանգամ ինքն իշխէր զօրացն բազմաց։ Եկն անց ընդ իւր սահմանն ընդ գետն մեծ ընդ Կուր, և եկն տարածեցաւ ելից զերկիրն Հայոց աշխարհին։ Եւ չգոյր թիւ բազմութեան հեծելազօր գնդացն, և ոչ համար շերտաւոր հետևակ զօրուն. զի և ինքեանք զինքեանս զիւրեանց զօրսն թուել ոչ կարէին։ . . . . . Եւ ելին լցին ծածկեցին զամենայն երկիրն Հայոց՝ քանդեցին, գերեցին, առ հասարակ աւերեցին. սփռեցան տարածեցան զսահմանօքն, լի և լի ծաւալեցան մինչև ի փոքր քաղաքիկն Սատաղու, և մինչև ի Գանձակ սահմանս Ատրպատական. խա-*

ղացուցին ի մի վայր ժողովեցին, ի ժամադիր կողմանս յԱյ-
րարատեան գաւառին բանակ մեծ լինէր»]¹։

Փավստոսի պատմելով՝ այս աշխարհավեր արշավանքի ժամանակ խոսրով թագավորը և Վրթանես եպիսկոպոսապետը փախել էին և ապաստանել Կոգովիտ գավառի Դարոյնք բերդը, իսկ Մամիկոնյան Վաչե զորավարը գնացել էր այդ ժամանակ Հունաց կողմերը։ Մարկվարտը կարծում է, որ Վաչեն ուղարկված է եղել հռոմայեցիների մոտ խնդրելու նրանցից օգնական զորք, և որ Հայաստանի ազատագրումը հյուսիսականներից տեղի էր ունեցել հռոմեական զորքի աջակցությամբ[2]։

Սանեսանը, որը Վաչեի հարձակման ժամանակ իր բուն գնդի հետ գտնվում էր Վաղարշապատ քաղաքում, փախչում է Օշականի կողմերը։ Սակայն Վաչե Մամիկոնյանը և իր նիզակակիցները՝ Մեհունդակ ու Գարեգին Ռշտունիները, Բագրատ Բագրատունին, Ամատունյաց տոհմի նախարար Վահանը և Վարազ Կամինականը՝ վրա հասնելով, կոտորում են թշնամու խաժամուժ զորքերը և սպանում են նաև իրեն՝ Սանեսանին[3] (336 թ.)։

Հյուսիսային ցեղերի այս արշավանքի մասին հունա-հռոմեական աղբյուրները ո՛չ մի տեղեկություն չեն տալիս։ Սակայն նրանց մեջ, ինչպես մատնանշել է Մարկվարտը[4], ուշագրավ վկայություններ կան այն մասին, որ 335 թվի աշնանը, այսինքն՝ Սանեսանի արշավանքի հենց ժամանակ, Կոստանդիանոս Մեծի խորթ եղբոր՝ Դալմատիոսի որդին, Աննիբալիանոսը, որին տրված է եղել «թագավորների թագավոր» տիտղոսը, ուղարկվել էր Կեսարիա իբրև պոնտական ժողովուրդների կառավարիչ։

Աննիբալիանոսը, ըստ երևույթին, համարվել է բարձրագույն տեր և իշխող հռոմեական վասալական շրջանների՝ Հայաստանի, Վրաստանի և Դիոկղետիանոսի ժամանակ կայսրությանը միացված Անդրտիգրիսյան երկրների։ Ինչպես ենթադրում է Մարկվարտը, նրան հանձնարարված է եղել այս բոլոր ծայրամասային մարզերի պաշտպանությունն ու վերահսկողությունը հենց կովկասյան լեռնաբնակների վտանգավոր առաջխաղացման կապակցությամբ։

Աննիբալիանոսի մասին հունա-հռոմեական աղբյուրների տեղեկությունները, որ խիստ կարևոր են ու հետաքրքիր, անհրաժեշտ

---

¹ **Փավստոս,** *III, գլ. է, էջ 15—16 (Վենետիկ, 1889)։*

² **Տե՛ս** *Markwart,* Die Entstehung der armenischen Bistümer, էջ 77։

³ **Փավստոս,** *III, գլ. է, էջ 16—17 (Վենետիկ, 1889)։*

⁴ **Տե՛ս** *Markwart,* Die Entstehung der armenischen Bistümer, էջ 77—78=Orientalia Christiana, XXVII, 2, էջ 213—214։

եմ համարում մեջ բերել բառացի թարգմանությամբ լատիներենից և հունարենից։

1. Անոնիմուս Վալեզիանուս, «Կոստանդիանոս կայսեր ծագումը», 6, 36[1].

«Դալմատիոսին, իր եղբոր՝ Դալմատիոսի որդուն, նա [Կոստանդիանոս Մեծը] հայտարարեց Կեսար. նրա եղբորն Աննիբալիանոսին, ամուսնացնելով իր Կոնստանդինա աղջկա հետ՝ կարգեց թագավորների թագավոր ու պոնտական ժողովուրդների կառավարիչ»։

2. Ավրելիոս Վիկտորին վերագրված՝ «Քաղվածքներ Կեսարների» մասին, գլ. 41, 20 (Epitome de Caesaribus).

«Այս թագավորներն էին կառավարելու այդ երկրամասերը՝ Աննիբալիանոսը, Դալմատիոս Կեսարի եղբայրը, Հայաստանը և շրջակա դաշնակից ազգերը»։

3. «Զատկական ժամանակագրություն», I, 531, 16—532, 3 (335 թ.)[2].

«Եվ Դալմատիոսին, իր եղբոր՝ Դալմատիոսի որդուն, նա [Կոստանդիանոս Մեծը] հայտարարեց Կեսար... և Աննիբալիանոսին, ընտրելով թագավոր, հագցրեց ծիրանի վերնազգեստ և ուղարկեց Կեսարիա Կապադովկիայի»[3]։

Կայսերական երկրի այս բաժանումը, ինչպես մատնանշում է Մարկվարտը, տեղի էր ունեցել 335 թվի սեպտեմբերի 18-ին[4]։

Շապուհ Բ-ի թշնամական գործողությունները հռոմեական Միջագետքում, որ սկսվել էին արդեն 335 թվին, հռոմայեցիները չէին կարող, հարկավ, թողնել անպատասխան։ Կոստանդիանոս կայսրը պատրաստվում էր անձամբ գալ Արևելք, բայց 337 թվի գարնանը, մայիսի 22-ին, վախճանվեց Նիկոմեդիայում։

Նրա երեք որդիները՝ Կոստանդիանոս Բ-ը, Կոստանդիոսը և Կոստասը՝ բաժանեցին պետությունն իրար մեջ, և Կոստանդիանոս Բ-ը ստացավ Գալլիայի կուսակալությունը (praefectura), Կոստանդիոսը՝ Արևելքի և Կոստասը՝ Իլլիրիայի ու Իտալիայի։

Այնուհետև Կոստանդիոսը, իր եղբայրների հետ Պաննոնիայում հանդիպելուց հետո՝ շտապեց գալ Մերձավոր Արևելք (338 թ.),

---

[1] *Anonymus Valerianus*, 6, 36. տե՛ս Chron. min. I, p. 11, ed. Mommsen.

[2] Chronicon Paschale, Corpus scriptorum historiae Byzantinae, Bonn, 1832.

[3] Համեմատե՛ նաև Zosimos, II, 39, 2։

[4] Տե՛ս *Markwart*, Die Entstehung der armenischen Bistümer, էջ 78։

ուր շարունակում էին հարձակումներ գործել Միջագետքի ու Հայաստանի վրա պարսկական զորքերը։

Եվ ինձ թվում է, կարելի է միանգամայն հավանական համարել, որ Փավստոսի վկայությունները ներքին խռովությունների ու ապստամբությունների մասին Հայաստանում, որ ծագել էին Խոսրով Գ-ի դեմ Շապուհ Բ-ի դրդմամբ, վերաբերում են հենց այս ժամանակներին։

Խոսրով Գ-ը, ինչպես դժվար չէ եզրակացնել Փավստոսի վկայություններից, գտնվում էր Վրթանես եպիսկոպոսապետի, Մամիկոնյանների և նախարարական այն խմբի ազդեցության տակ, որ համակրող էր ու կողմնակից Հռոմեական կայսրության։ Սասանյան Պարսկաստանը չէր կարող, իհարկե, հանդուրժել Հայաստանի քաղաքականության այդ ուղղությունը։ Եվ անշուշտ, հենց նրա դրդմամբ տեղի էին ունեցել Բզնունյաց Դատաբեն նահապետի դավաճանությունը և Աղձնյաց Բակուր բդեշխի ապստամբությունը, որ մանրամասն հիշատակված են Փավստոսի Պատմության մեջ։

Այս դավաճանությունն ու ապստամբությունը, որ տեղի էին ունեցել պարսկական արշավանքների հետ միաժամանակ, Խոսրով Գ-ը կարողացել էր ճնշել, ինչպես վկայում է Փավստոսը, իր սեփական ուժերով։ Փավստոսի համապատասխան վկայությունները, որ ներքև մեջ եմ բերում, թեև խիստ գունավորված ու չափազանցված են, բայց թվում են ըստ իրենց էության պատմական։

1. Փավստոս, III, գլ. Ը, էջ 19—20 (Վենետիկ, 1889)՝

«Եվ դրանից հետո [Խոսրով Գ-ը] շտապեց իր մոտ հավաքել զորքերը, մոտ երեսուն հազար, Վաչե զորավարի հետ։ Նա գնաց թշնամուն ընդառաջ և մոտ հասավ իր բոլոր ավագախումբ մեծամեծ նախարարների հետ միասին։

Եվ իրար հանդիպեցին Բզնունյաց ծովի ափին Առեստ ավանում, փոքր գետի վրա արքունական ձուկ որսալու տեղում։ Եվ տեսան Պարսից զորքը, որն անթիվ էր իր բազմությամբ՝ ինչպես երկնքի աստղերը և ինչպես ավազը ծովի ափին. եկել էին նրանք անթիվ փղերով ու անհամար զորքով։ Իսկ սրանք հասան ու հարձակվեցին նրանց բանակի վրա, հույս դնելով աստծու վրա։ Սրանք խփեցին, սպանեցին, կոտորեցին ու նրանցից և ո՛չ մեկին չթողին կենդանի. մեծ ավար վերցրին ու նաև փղերըն ու նրանց ամբողջ ուժն ու զորությունը։ Դատաբենին ձերբակալեցին Վաչե սպարապետը և քաջ Վահան Ամատունին. նրան բերին Խոսրով մեծ թագավորի առաջ և քարկոծե-

ցին քարերով իբրև մի մարդու, որ դավաճանել էր իր տիրոջ երկրին, գնդին ու զորքերին»։

[«Եւ յետ այսորիկ աճապարէր կուտէր զօրսն առ ինքն իբրև երեսուն հազար հանդերձ զօրավարաւն Վաչէիւ. գայր հասանէր ընդ առաջ նոցա ամենայն աւագախումբ մեծամեծ նախարարօք իւրովք։

Եւ դիպեցան միմեանց առ ափն ծովուն Բզնունեաց, յԱռեստն աւանի, ի ձկնատեսանսն արքունի ի վերայ գետակին։ Եւ տեսին զօրսն Պարսից, զի ոչ գոյր թիւ բազմութեանն. զի էին իբրև զաստեղս երկնից, և իբրև զաւազ առ ափն ծովու. զի եկեալ էին անթիւ փղօք և անչափ զօրօք։ Եւ սոքա հասին անկան ի վերա. բանակին, յուսացեալք առ աստուած. հարին, սատակեցին, կոտորեցին և ոչ թողին ի նոցանէ և ոչ մի։ Եւ թափէին աւար բազում, և զփիղսն և զամենայն ոյժ զօրութեան նոցա։ Ձերբակալ արարեալ զԴատաբէնն Վաչէ սպարապետն և քաջ Վահան Ամատունի, ածէին զնա առաջի մեծի թագաւորին Խոսրովու, և քարկոծ առնէին զնա քարամբք իբրև զայր, որ աշխարհի և գնդի և զօրաց տեառն իւրոյ դաւաճան լեալ իցէ»]։

2. Փավստոս, III, գլ. Թ, էջ 21 (Վենետիկ, 1889).

«Այդ ժամանակները ապստամբեց Հայոց թագավորից նրա ծառաներից մեկը, Աղձնիքի մեծ իշխանը, որը բդեշխ էր կոչվում և որը արքունի պալատի չորս բարձերեց ու գահերեց իշխաններից մեկն էր։ Նա ձեռք մեկնեց Պարսից թագավորին և մատնեց նրան արքունի երկիրը, որն իրեն կից էր։ Նա զորք բերեց Պարսից թագավորից իրեն օգնության, անջատվեց Հայոց երկրից ու իշխանությունից և պատերազմ մղեց Հայոց թագավորի դեմ Պարսից թագավորության ուժերով. և պատերազմն ու մարտը սաստկացավ։

Ապա Հայոց թագավորը նրա դեմ մեծ զորքով ուղարկեց իր հավատարիմ ծառաներին՝ Կորդուքի Ջոն իշխանին, Մեծ Ծոփքի Մար իշխանին, Շահեի Ծոփքի Ներսեհ իշխանին, Այունիքի Վաղինակ իշխանին, Հաշտենքի Դատ իշխանին և Բասենի Մանակ իշխանին։ Սրանք եկան հաղթեցին Պարսից զորքերին և բոլորին առհասարակ սրի քաշեցին. սպանեցին նույնպես բդեշխին իր եղբայրների ու որդիների հետ միասին»։

[«Զայնու ժամանակաւ ապստամբեաց յարքայէն Հայոց մի ի ծառայից նորա մեծ իշխանն Աղձնեաց, որ անուանեալ կոչէր բդեաշխն, որ էր մի ի չորից գահէրեց, բարձէրէց տաճարին

արքունի։ Եւ ձեռս յարքայն Պարսից և մատնեաց զարքունի տունն, որ յեց յինքն էր։ Եւ էած զօրս արքային Պարսից ի թիկունս իւր, և հատաւ յերկրէն յիշխանութենէն Հայոց, և տայր պատերազմ ընդ արքային Հայոց՝ ուժով Պարսից թագաւորութեանն. և սաստկանայր մարտ պատերազմին։

Ապա առաքէր թագաւորն Հայոց զբարեկիր զծառայս իւր, զիշխանն Կորդուաց զՋոնն, և զիշխանն Մեծի Ծոփաց զՄար, և զիշխանն Ծոփաց Շահէի Ներսեհ, և զիշխանն Սիւնեաց զՎաղինակ, և զիշխանն Հաշտենից զԴատ, և զիշխանն Բասենոյ զՄանակ, հանդերձ բազում զօրօք։ Ապա չոգան հաղթեցին զօրացն Պարսից, և առ հասարակ ընդ սուր հանին զամենայն. և սպանին զբդեաշխն եղբարբք և որդւովք իւրովք հանդերձ»։

Մարկվարտը Դատաբենի ու Բակուրի ապստամբությունների ժամանակը ենթադրում է 335 թվին[1], սակայն հնարավոր է և մինչև անգամ հավանական է, որ այդ անցքերը կարող էին տեղի ունեցած լինել 336 կամ 337 թվերին։

Փավստոսի վկայությամբ՝ Խոսրով Գ-ը, վախենալով որ նաև մյուս մեծ նախարարությունները կարող են դավաճանություն գործել կամ ապստամբել, հատուկ օրենք էր սահմանել, որ մեծամեծ ավագանին, որոնց զինվորական ուժը 10.000-ի չափ էր կամ 1000-ից պակաս չէր, մնան ու շրջեն իր հետ և նրանցից ոչ ոք չգնա արքունի զորքի հետ։

«Բայց դրանից հետո,—վկայում է Փավստոսը,—պարսիկները չէին դադարում պատերազմ մղել Խոսրով թագավորի դեմ։ Եվ նա օրենք սահմանեց, որ մեծամեծ ավագանին՝ աշխարհակալ ու աշխարհատեր նախարարները, որոնք 10.000 կամ 1000 զինվորի տեր էին՝ մնան թագավորի մոտ և նրա հետ շրջեն, և նրանցից ոչ մեկը չգնա արքունի զորքի հետ։ Որովհետև նա երկյուղ էր կրում նրանց երկդիմությունից, միգուցե Դատաբենի նույն արարմունքը գործեն և իրենից ապստամբեն։ Բայց նա վստահ էր ծերունի Վաչեի, Մեծ Հայքի բուն սպարապետի ու զորավարի և քաջ Վահան Ամատունու վրա»։

[«Բայց յետ այսորիկ ոչ դադարէին Պարսք ի տալ պատերազմ ընդ Խոսրովու արքային. և նա դնէր օրէնսն, զի մեծամեծ աւագանին, նախարարքն աշխարհակալքն աշխարհատեարքն՝ որ էին բիւրաւորքն և հազարաւորքն, կայցեն առ արքային և ընդ նմա շրջեսցին, և մի՛ ոք երթիցէ ի նոցանէ ընդ զօրս

1 Տե՛ս Markwart, Die Entstehung der armenischen Bistümer, էջ 96։

արքունի։ Զի երկնչէր նա յերկմտութենէ նոցա, զի գուցէ զնոյն գործ Դատաբենայն գործիցեն և ապստամբ լինիցին ի նմանէ։ Բայց վստահ լինէր ի ծերունին Վաչէ, ի բուն սպարապետն ի զօրավարն Հայոց Մեծաց և ի քաջ Վահան յԱմատունի»[1]։

Խոսրով Գ-ի այս կարգադրությունը, անշուշտ, մի ապացույց է նրա թագավորական իշխանության թուլության և նախարարությունների կենտրոնախույս ու խռովարար տրամադրությունների։

338 թվի գարնանը, երբ Կոստանդիանոս Մեծի մահից հետո կայսրությունը դեռևս գտնվում էր տարտամ ու խառնակ դրության մեջ, Շապուհ Բ-ը պաշարել էր Մծբինը, բայց ապարդյուն։ Հավանորեն, նույն այս թվին պարսկական զորքերը նոր հարձակում էին գործել նաև Հայաստանի վրա, և այնտեղ տեղի էր ունեցել այն մեծ պատերազմը, որ հիշատակված է Փավստոսի մոտ։

«Այնուհետև,—պատմում է Փավստոսը,—նորից դաժան կերպով պատերազմ սկսվեց միմյանց դեմ պարսիկների ու հայերի միջև, որովհետև պարսիկները հավաքվեցին ու մեծ բազմությամբ եկան, որ գրավեն Հայաստան աշխարհի երկրները։ Ապա Մեծ Հայքի սպարապետ և զորավար Վաչեն ժողովեց նախարարական զորքերի ազատներից կազմված բանակը և եկավ պատերազմ տալու Պարսից զորքերին։ Երկու կողմից էլ սոսկալի կոտորած եղավ և մեծամեծ ավագանիներից շատերը կոտորվեցին ու ոչնչացան։ Այս պատերազմում սպանվեց նաև Վաչեն, Հայոց մեծ սպարապետը, և ամբողջ երկիրն անասելի սգի մեջ ընկավ, որովհետև նրա ձեռքով էր շատ անգամ ազատված փրկել հայերին»։

[«Եւ յետ այսորիկ յաւել ևս լինել մարտ խստութեամբ պատերազմի ի մէջ Պարսից և Հայոց ընդ միմեանս. զի ժողովեցան հասին կուտեցան առնուլ զաշխարհն Հայաստան երկրին։ Ապա ժողովէր սպարապետն զօրավարն Հայոց Մեծաց Վաչէ զազատախումբ բանակ նախարարակոյտ զօրացն։ Եւ ելանէր տայր ընդ զօրսն Պարսից պատերազմ, և լինէր անհնարին կոտորուած յերկոցունց կողմանցն, և բազում ծախ մեծամեծ աւագանւոյն կոտորելոցն։ Անկանէր ի պատերազմին յայնմիկ մեծ սպարապետն Հայոց Վաչէ. և լինէր ամենայն աշխարհին սուգ անհնարին, զի բազում անգամ էր տեսեալ փրկութիւն տուեալ Հայոց ի ձեռն նորա»][2]։

---

[1] Փավստոս, III, գլ. Ը, էջ 20 (Վենետիկ, 1889)։

[2] Նույնը, գլ. ԺԱ, էջ 26։

Այս պատերազմից հետո, հավանորեն, նույնպես 338 թվին[1], վախճանվել էր նաև Խոսրով Գ-ը, որին թաղել էին իր նախնիքների մոտ՝ Դարանաղի գավառի Անի ամրոցում։

338 թվին, ինչպես դժվար չէ եզրակացնել Փավստոսի վկայությունից, հայերը ո՛չ միայն մեծ կորուստներ էին ունեցել, այլ պարզապես մատնվել էին ծանր պարտության։ Հայերի այս պարտության դաժան հետևանքները, որ Փավստոսի աղբյուրը, վիպական հայկական ավանդությունը, լռության է տվել՝ մեզ հայտնի են ժամանակակից աղբյուրից, Կոստանդիանոս Մեծի եղբորորդու, Հուլիանոսի, ճառից, որ նա արտասանել էր Կոստանդիոսի առջև։

Այդ ճառից մենք գիտենք, որ 338 թվի հայերի պարտությունից հետո Հայաստանում իշխանության գլուխ էր անցել պարսկական կուսակցությունը, իսկ Խոսրով Գ-ի որդի Տիրանը և հռոմեական կուսակցությունը ստիպված են եղել փախչել Հայաստանից և ապաստան էին դտել հռոմեական սահմաններում։

338 թվի աշնանը Կոստանդիոսը վերադարձել էր Պաննոնիայից Արևելք, և հենց նրա միջամտությամբ է, որ Հայաստանը վերստին խաղաղեցվել էր, և Տիրանը, հաջորդելով իր հորը, կարգվել էր Հայաստանի թագավոր (339—շուրջ 350 թ.)։

Հուլիանոսի կարևոր վկայությունը մեջ եմ բերում ներքև բառացի թարգմանությամբ։

«Կոստանդիանոսի վախճանվելուց հետո,—ասում է Հուլիանոսը,—բյուրավոր այլևայլ անտեղիություններ ու դժբախտություններ, որ ամեն կողմից վրա հասան, պատերազմի վրա դրված հույսերը դժվարագույն էին դարձնում։ Ապստամբել էին հայերը, մեր վաղեմի դաշնակիցները, և բավական ստվար մասը նրանց հարել էին պարսիկներին ու ավազակաբար ասպատակում էին իրենց սահմանների մոտ գտնվող արվարձանները»։... [Սակայն Կոստանդիոսի Պաննոնիայից վերադառնալուց հետո] «հայերից նրանք, որոնք հարել էին պարսիկներին, իսկույն ետ կեցան. իսկ դու դրանց, որ այն երկրի իշխանավորի փախուստի պատճառն էին, մեզ մոտ բերիր, և նրանց, որոնք փախել էին, հնարավորություն տվիր անվախ կերպով վերադառնալ իրենց սեփական երկիրը։ Եվ այսպիսով դու մարդասիրաբար վարվեցիր նրանց հետ, որոնք մի փոքր առաջ եկել էին մեզ մոտ, և հեզաբար վերաբերվեցիր նաև

[1] Տե՛ս Markwart, Die Entstehung der armenischen Bistümer, էջ 96։

նրանց, որոնք իշխանավորի[1] հետ միասին փախուստի տեղերից վերադարձել էին։

Ոմանք նրանցից խիստ զղջացել էին, որ առաջ ապստամբել էին, ոմանք էլ այժմյան դրությունը նախամեծար էին համարում առաջվա իշխանությունից։ Իսկ նրանք, որ առաջ փախել էին, ասում էին, որ իրենք գործնականապես սովորեցին զգաստ լինել, իսկ ուրիշներն էլ ասում էին, որ իրենք ապստամբության մասնակցելու համար արժանի վարձ էին ստացել։

Վերադարձողներին դու այնքան շատ նվերներ ու պատիվներ տվիր, որ նրանք չեն չարանենգում ու նախանձում նույնիսկ իրենց ամենամեծ թշնամիներին, որոնք բարեբախտ են ու արժանապես մեծարված են։ Այս բոլորը կարգավորվեց կարճ ժամանակում»...[2]։

Տիրան թագավորի մասին թե Փավստոսի և թե Մովսես Խորենացու վկայությունները, մեծ մասամբ, վիպական-ստեղծական պատմվածքներ են և չեն կարող հավաստի ու պատմական համարվել։

Պատմագիտական երկերում, հիմնվելով հենց այս պատմագիրների վկայությունների վրա՝ սովորաբար մատնանշում են, որ Տիրան թագավորը, փոխելով իր հոր ու պապի քաղաքականությունը, բարեկամություն էր հաստատել Շապուհ Բ-ի հետ[3]։ Բայց այս կարծիքը, ակներևաբար, թյուրիմացության արդյունք է։

Ինչպես այժմ անժխտելի կերպով պարզված է, Փավստոսի Պատմության երրորդ դպրության վերջին երկու գլուխներում (Ի և ԻԱ) նկարագրված արտաքին քաղաքական անցքերը՝ Տիրանի բարեկամությունը Պարսից թագավորի հետ, նրա գերեվարությունն ու կուրացումը, հոռմայեցիների ու պարսիկների միջև պատերազմը և Պարսից Ներսեհ թագավորի աղետալի պարտությունը՝ մասամբ վիպական-ստեղծական պատմվածքներ են, մասամբ էլ հիշողություններ են պատմական իրադարձությունների, որ տեղի էին ունեցել Մեծն Տրդատի գահակալության ժամանակ 297—298 թվերին[4]։

---

[1] Ուշագրավ է, որ Հուլիանոսի ճառի մեջ Հայոց թագավորն անվանված է ἄρχων՝ «իշխանավոր»։

[2] Տե՛ս Julianus, Oratio I.

[3] Տե՛ս Հ. Ասատուրյան, Քաղաքական վերաբերություններ, էջ 276. Գարագաշյան, Քննական պատմություն, Գ, էջ 37. Լեո, Հայոց պատմություն, Ա, էջ 590. K. Aslan, Études historiques, էջ 189 և ուրիշները։

[4] Տե՛ս Н. Адонц, Фауст Византийский как историк, „Христианский Восток“, 1917—1920, т. VI, вып. III, Петроград, 1922, էջ 235—272։

*Որ պատմագետների վերոհիշյալ ենթադրությունը ճիշտ չէ՝ այդ երևում է նաև Հուլիանոսի առաջին ճառի վերև բերված վկայությունից։ Մենք վերև տեսանք, որ Հուլիանոսն իր այդ ճառի մեջ, որ գրված էր հավանորեն Տիրան թագավորի (339—շուրջ 350 թ.) մահից հետո, մատնանշում է հայերի և հռոմայեցիների բարեկամությունը 339 թվից հետո։ Ավելի քան հավանական է, ուրեմն, որ Տիրանը ևս, ինչպես և նրա հայր Խոսրով Գ-ը, մինչև իր կյանքի վերջը հավատարիմ էր մնացել Հռոմեական կայսրությանը։*

*Հենց Տիրանի թագավորության ժամանակ Կոստանդիոս կայսրը կազմակերպել էր, ըստ երևույթին, դաշնակից հայերի օժանդակությամբ, ծանր զրահավոր հեծելազոր, որն ուժեղագույն մարտիկ զորամասն էր հռոմեական արևելյան բանակի։ Հայտնի է նույնպես, որ 351 թվին, Մագնենտիոսի ապստամբությունը ճնշելիս, Կոստանդիոսը մեծ հաղթություն էր տարել Պաննոնիայում Մուրսայի մոտ, գլխավորապես, շնորհիվ հայկական հեծելազորի, որն այս ճակատամարտում գրեթե վճռական դեր էր կատարել*[1]*։ Նույն այս հեծելազորը, ինչպես վկայում է Ամմիանոսը, անչափ մեծ տպավորություն էր թողել ժողովրդի վրա Հռոմում 357 թվին*[2]*։*

*Տիրանի հռոմեական կողմնորոշման անուղղակի մի ապացույց կարելի է համարել նաև այն, որ նրա հրամանով Վրթանեսի որդին՝ Հուսիկը, և ապա Փառեն Աշտիշատեցին ուղարկվել էին հայ նախարարների ուղեկցությամբ Կեսարիա և հանդիսավոր կերպով ձեռնադրվել էին այնտեղ կաթողիկոս։ Հուսիկը, ինչպես վկայում է Փավստոսը, բրածեծ էր արվել և սպանվել Մեծ Ծոփք գավառի Բնաբեղ բերդում՝ թագավորին հանդիմանելու պատճառով*[3]*։*

*Տիրանի թագավորության առաջին իսկ տարիներում թե պարսկական և թե հռոմեական առանձին զորամասեր ժամանակ առ ժամանակ ավազակաբար ասպատակում էին սահմանամերձ շրջանները, սակայն Կոստանդիոսը խուսափում էր վճռական ընդհարումից։ Բայց շուտով Շապուհ Բ-ը պատրաստվեց նորից պատերազմի և 345 թվին*[4]*, անցնելով Տիգրիս գետը, բանակ դրեց Հիլեյայում*

---

[1] *Տե՛ս* Zosimos, II, 51, 4, 52, 1—2. *Համեմատե՛ նաև Հուլիանոս, ճառ Ա և Բ։*

[2] *Տե՛ս V. Chapot,* La frontière de l'Euphrate de Pompée à la conquête arabe, Paris, 1907, *էջ 139, ծան. 2։ Համեմատե՛* Amm. Marc., XVI, 12, 22.

[3] Փավստոս, *III, գլ. ԺԲ, էջ 32 (Վենետիկ, 1889)։*

[4] *Ինչպես ցույց են տվել Բյուրին և Ադոնցը, Սինգարայի ճակատամարտը տեղի էր ունեցել ո՛չ թե 348 թվին, ինչպես առաջ ենթադրում էին, այլ 345 թվին. տե՛ս J. B. Bury,* The date of the Battle of Singara, Byzantinische

Սինգարայի մոտ։ Հենց այստեղ տեղի ունեցավ մեծ ճակատամարտ։ Հռոմեական զորքը, որ սկզբում հաղթող էր հանդիսանում, ճակատամարտի վերջում, պարսիկների գիշերային կատաղի հարձակման ժամանակ, չարաչար պարտվեց։

Սինգարայի կռվին, հավանորեն, մասնակցել էր նաև Հռոմի դաշնակից Հայաստանը։ Սակայն այդ մասին հստատուն տեղեկություններ չկան։

Ադոնցը կարծում է, որ Տիրան թագավորը գերի էր ընկել պարսիկների ձեռքը նախքան այդ ճակատամարտը և իբր թե խաղաղություն կնքելուց հետո, 345 թվին, հաջորդել էր Տիրանին նրա որդին՝ Արշակը[1]։ Ադոնցի այս կռահումը, որ բավարար կերպով փաստարկված ու հիմնավորված չէ, ըստ իս անհավանական է և անընդունելի։

Հայ Արշակունիների պայքարը կենտրոնախույս նախարարությունների դեմ շարունակվել էր նաև Տիրանի ժամանակ։

Տիրանի թագավորության շրջանում (339—շուրջ 350 թ.), որը եկեղեցու ու Մամիկոնյանների հանդեպ բռնել էր անկախ դիրք և աշխատում էր պահպանել թագավորական իշխանության հեղինակությունը, ներքին խռովությունները այնքան սաստկացել էին, որ երկիրը հետզհետե մատնվել էր ծանր դրության։

Փավստոսի մոտ, որ կուսակցական պատմիչն է Գրիգոր Լուսավորչի տոհմի և Մամիկոնյանների, պատմական այս շրջանի անցքերը ներկայացված են այլայլված ձևով, իսկ պատմական խոշոր դեմքերը, որ հակառակորդ էին այդ տոհմերի, նկարագրված են ամենամռայլ ու քստմնելի գույներով։

Տիրանի ժամանակ քաղաքական խոշոր դեր է կատարել, ինչպես երևում է Փավստոսի վկայություններից, «մարդպետության» մեծ իշխանը, որը վերակացու էր արքունիքի ու թագավորի կանանոցի և վերահսկող էր թագավորական ամրությունների ու բերդերի, նաև արքունի գանձերի ու կալվածքների։ Փավստոսը շանթ ու թույն է թափում այս իշխանի վրա և, գլխավորապես, նրան է վերագրում թագավորության խանգարումը Տիրանի ժամանակ։

«Բայց այն անմիտ թագավորության ժամանակ,—պատմում է Փավստոսը,—սկսվել էին դավաճանություններ ու մատնություններ անել Հայոց երկրում ոչ միայն թշնամիները թշնամիների դեմ, այլ նաև բարեկամները բարեկամների և ընկեր-

Zeitschrift, V, 1896, էջ 302—305. *Адонц*, Фауст Византийский, „Христианский Восток", 1917—1920, VI, 3, էջ 254—255։

[1] *Адонц*, Фауст Византийский, էջ 255։

*ները ընկերների դեմ և անում էին անհաշիվ ու ամեն տեսակ թշնամություններ։ Որովհետև տերը նրանց մեջ առաջացրեց խռովություն և հրահրեց դիվային պղծություն և ոգի մոլության, այդ պատճառով էլ նրանք, մեկը մյուսին խորտակելով, կործանվեցին իրենց անօրենության պատճառով։*

*Բայց գերազանցում էր մյուս բոլորին մի անօրեն ու դիվային մարդ, որը Տիրան թագավորին գրգռում էր, գլխավորապես. նախարարական տոհմերի դեմ։ Սա այն մարդն էր, որն ուներ մեծ մարդպետության պատիվը. սա ներքինի էր՝ չարասիրտ, չարամիտ ու չարագործ մի մարդ էր, որին Հայր էին անվանում։ Սա քսությամբ կոտորել տվեց շատ նախարարներ, որոնք վնաս չէին տվել, և խանգարեց այսպիսով մեծ թագավորության իշխանությունը։*

*Առավելապես նա իր չարախոսությամբ սրի անցկացնել տվեց ու բոլորովին անզավակ դարձրեց երկու ավագ տոհմերը՝ Ռշտունիների տոհմերը և Արծրունիների տոհմը. սրանց բնաջինջ արին առանց որևէ մեղքի ու հանցանքի, կոտորեցին նույնիսկ էգերին»։*

*[«Բայց յայնմ յանմիտ թագաւորութեանն ժամանակի ոչ միայն թշնամիք թշնամեաց և բարեկամք բարեկամաց և ընկերք ընկերաց դաւաճանութիւնս մատնութիւնս սկսան յարուցանել ի մէջ Հայաստան երկրին, և բեւր ազգի թշնամութիւնս գործէին։ Վասն զի անկաւ ի նոսա խռովութիւն ի տեառնէ, այս պղծութեան և ոգի մոլորութեան. զի նախ միմեամբք քանդեալք աւերեցան վասն անօրէնութեան իւրեանց։*

*Բայց քան զամենեսին աւելի այր մի անօրէն և այսամուտ, որ աւելի ընդ ազգս նախարարացն գրգռէր զթագաւորն Տիրան։ Այս ինքն որ ունէր զպատիւն մեծի մարդպետութեանն, այր ներքինի՝ չարասիրտ, չարախորհուրդ, չարագործ, որում Հայր կոչէին։ Զբազումս ի նախարարացն եա քսութեամբ առանց վնասու կոտորել, և խանգարեաց զմեծ տէրութիւն թագաւորութեանն։*

*Մանաւանդ ավելի զերկու տոհման զաւագս տայր իւրով չարախօսութեամբն հանել ընդ սուր, և անուանդ առնել միահաղոյն զտոհմն Ռշտունեաց և զտոհմն Արծրունեաց. բառնային ի միջոյ առանց ամենայն վնասու և յանցման, մինչ անգամ և զէգսն կոտորեցին ազգացն»]*[1]։

---

[1] Փավստոս, *III, գլ. ԺԸ, էջ 46—47 (Վենետիկ, 1889)։*

Քննության առնելով «մարդպետության» մասին Փավստոսի թե այս և թե մյուս վկայությունները, Մարկվարտը միանգամայն ճիշտ ենթադրում է[1], որ մարդպետները պետական նշանավոր անձնավորություններ էին, որոնք նպատակ էին դրել իրենց վերականգնել Արշակունիների թագավորության հին փայլը և թուլացնել բարձր ազնվականության ու եկեղեցու ուժը։ Իրենց այդ նպատակին հասնելու համար նրանք արքունիք էին գրավում նախարարական խոշոր կալվածքները և իրագործում այդ ամենադաժան վճռականությամբ։

Արծրունիների ու Ռշտունիների տոհմերի բնաջնջումը, որ նկարագրված է Փավստոսի վկայության մեջ, Մարկվարտը բացատրում է նրանով, որ նախարարական այդ տոհմերի երկրները, գտնվելով Ատրպատականի, Աղիաբենի և Մոկքի սահմանների մոտ, ունեին ռազմական մեծ կարևորություն, ուստի և այդ շրջաններն անհրաժեշտ է համարվել ենթարկել Արշակունիների անմիջական իշխանության[2]։

345 թվի Սինգարայի ճակատամարտից հետո մեծ կռիվներ Մերձավոր Արևելքում չեն հիշատակված մինչև 350 թիվը։ Հավանորեն, Հայաստանը ևս այդ ժամանակաշրջանում համեմատաբար խաղաղ վիճակի մեջ էր։

Տիրանը թագավոր էր Հայաստանում, ինչպես ենթադրվում է, մոտավորապես մինչև 350 թիվը[3]։ Նրա գերեվարության ու կուրացման մասին հայկական ավանդությունը, ինչպես վերև ասացինք, վիպական-ստեղծական պատմվածք է, և մենք նրա մահվան մասին ևս չունենք ոչ մի տեղեկություն։

---

[1] *Markwart,* Südarmenien und die Tigrisquellen, *էջ 155—156 և 61*—62*։*

[2] *Նույնը, 59*—60*։*

[3] **Տե՛ս Լեո,** *Հայոց պատմություն, Ա, էջ 588.* **Ասողյան,** *Քաղաքական վերաբերությիւններ, էջ 276.* *Morgan,* Histoire du peuple arménien, **էջ 110.** *K. Aslan,* Études, *էջ 189, 203 և ուրիշները։ Հայ Արշակունիների ժամանակագրության մասին ուշագրավ է և արժեքավոր Մ. Օրմանյանի կարևոր հոդվածը՝ «Տրդատէ Արտաշէս ժամանակագրական դիտողութիւններ», «Հանդէս Ամսօրեայ», 1909, № 7 և 8, էջ 197—201 և 241—246։*

# ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

# ՊԱՐՍԿԱ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ԿՌԻՎՆԵՐՆ ԱՐՇԱԿ Բ-Ի ԺԱՄԱՆԱԿ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԾԱՆՐ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԱՎԵՐՈՒՄԸ

1. Պարսկա-հռոմեական կռիվները 350 թվին: —2. Արշակ Բ.—նրա գլխավոր գործակիցները՝ Ներսես կաթողիկոսը և Մամիկոնյան Վասակ սպարապետը:— 3. Հատուկ պատգամավորության ուղարկումը Կոստանդիոսի մոտ.— Ոլիմպիայի առաքումը Հայաստան և Արշակի ամուսնությունը նրա հետ:— 4. Աշտիշատի ժողովը և բարեգործական հիմնարկների հաստատումը Հայաստանում:— 5. Արշակավան քաղաքի հիմնումը.— հայկական աղբյուրների վկայություններն Արշակավանի կործանման մասին.— Մարկվարտի ենթադրությունը:— 6. Գնելի սպանությունը և Արշակ Բ-ի ամուսնությունը Փառանձեմի հետ:—7. Կամսարականների տոհմի կոտորածը.— Մարդպետների պայքարը եկեղեցական կալվածատիրության դեմ:— 8. Պարսկա-հռոմեական պատերազմի վերսկսումը.— Հայաստանի կողմնորոշման մեծ նշանակությունը կռվող կողմերի համար.— Պարսկաստանի անհաջող ջանքերը Հայաստանը գրավելու իր կողմը:— 9. Շապուհ Բ-ի արշավանքը Միջագետք և Ամիդ քաղաքի գրավումն ու ավերումը:—10. Պարսկական զորքերի ավերածությունները Ծոփքում և Արևմտյան Հայաստանում.— Անգեղ բերդի պաշարումը.— Անի բերդի առումը Դարանաղի գավառում.— գերի վերցված և ազատված Արշակունի թագավորների ոսկորների թաղումը Աղձք գյուղում:— 11. Շապուհ Բ-ի 360 թվի արշավանքը և Սինգարա ու Բեզաբդե բերդերի գրավումը.— Արշակ Բ-ի և Կոստանդիոս կայսեր տեսակցությունը Կեսարիայում և նրանց դաշնակցության ամրապնդումը.— պատերազմի նախապատրաստությունները և Կոստանդիոսի մահը:— 12. Հուլիանոսը միահեծան տեր Հռոմեական կայսրության.— Ոլիմպիայի սպանությունը.— Հուլիանոսի արշավանքը Պարսկաստան.— նրա նամակը Արշակ Բ-ին, որ կեղծ է: —13. Հռոմեական ու դաշնակից զորքերի ներխուժումը Պարսկաստան երկու ուղղությամբ:— 14. Հուլիանոսի մահը և Հովիանոս նոր կայսեր Շապուհ Բ-ի հետ կնքած ամոթալի դաշինքը.— Անդրտիգրիսյան երկրների միացումը Պարսկաստանին.— դաշնադրության անազնիվ ու կործանարար կետը Հայաստանի նկատմամբ.— Խիլիոկոմի ավերումը:— 15. Արշակ Բ-ի չորս տարվա համառ դիմադրությունը Պարսկաստանին:— 16. Պարսկական կուսակցության զորեղացումը Հայաստանում.— Արշակ թագավորի և Վասակ սպարապետի անձնատուր լինելը պարսիկներին.— Արշակ Բ-ի բանտարկումը և ենթարկումը մահապատժի.— Վասակ սպարապետի տանջալից սպանությունը.— Արշակ թագավորի սպանության մասին հայկական ավանդության վիպական-ստեղծական մանրամասնությունները:— 17. Հայաստանի հարավային, արևելյան և հյուսիսային սահմանների անջատումը Արշակունյաց թագավորությունից:

350 թվին Շապուհ Բ-ը նորից մեծ զորքով արշավեց Միջագետք, ավերածության մատնեց այնտեղ մի շարք տեղեր և, առաջ շարժվելով, երրորդ անգամ պաշարեց Մծբին քաղաքը։ Բայց Պարսից զորքերը, շնորհիվ կայազորի ու պաշարված բնակիչների համառ դիմադրության, այս անգամ ևս ստիպված եղան, մեծ կորուստներ կրելուց հետո, վերադառնալ Պարսկաստան։

Պետք է ասել, որ Կոստանդիոս կայսրը, որ թույլ էր ու անվճռական արտաքին թշնամու հանդեպ, ինքը ոչ մի հաջողություն չունեցավ նաև այս կովի ընթացքում։ Շապուհ Բ-ի առաջշարժման ու վճռական հաջողության գլխավոր արգելառիթը սահմանային այն անառիկ բերդերն էին, որ պատշաճ կերպով ամրացրել էին Դիոկլետիանոսը և Կոստանդիանոս Մեծը։

Նույն այս 350 թվին վերսկսվել էին խլրտումները նաև Հռոմեական կայսրության մեջ։ Դեռևս 340 թվին Կոստանդիանոս Մեծի կրտսեր որդին, Կոստասը, պարտության մատնելով իր մեծ եղբայր Կոստանդիանոս Բ-ին (+340), տեր էր դառել Հռոմեական կայսրության արևմտյան բոլոր շրջաններին, սակայն 350 թվին սրան սպանել էր և Արևմուտքի կայսր էր իրեն հայտարարել նրա անձնապահանորդ զորքի առաջնորդ Մագնենտիոսը։

Կոստանդիոսը շտապ կերպով վրա խաղաց վտանգավոր այս ախոյանի դեմ, հաղթեց նրան Պաննոնիայում (351 թ.) և, Մագնենտիոսի ինքնասպանությունից հետո (353 թ.), դառավ միահեծան ինքնակալ և տնօրեն ամբողջ Հռոմեական կայսրության։

Տիրանի որդի Արշակ Բ-ի գահակալության ժամանակը պատմագետների մեծագույն մասը ենթադրում է նույն այս ժամանակաշրջանում՝ մոտավորապես 350 թվին[1]։ Սակայն այս թվականը, որ հավանական է համարվում, հաստատուն ու վերջնական չէ։

Արշակ Բ-ի թագավորության առաջին շրջանում, սկսած 351 թվից մինչև 359 թիվը, պատերազմական մեծ գործողությունները Հռոմի ու Պարսկաստանի միջև գրեթե դադարել էին։ Շապուհ Բ-ը

---

[1] Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, Ա, էջ 599. *Markwart,* Untersuchungen zur Geschichte von Eran, I, էջ 53. *Morgan,* Histoire du peuple arménien, էջ 110. Ասատուրյան, Քաղաքական վերաբերություններ, էջ 282. *Aslan,* Études histoiques, 1928, էջ 203 և ուրիշները։ Ադոնցն Արշակ Բ-ի թագավորության սկիզբը դնում է 345 թվին, իսկ Մարկվարտն իր նորագույն աշխատություններից մեկում՝ 356 թվին. տե՛ս „Христианский Восток", 1917—1920, էջ 255 և Entstehung der armenischen Bistümer, էջ 96։

այդ ժամանակ պատերազմ էր վարում Պարսկաստանի հյուսիսարևելյան կողմերում ընդդեմ խիոնիտների, քուշանների և այլ ցեղերի։ Սակայն նույն այս ժամանակ պարսիկ զորավարները, որ գտնվում էին արևմուտքում, մերթ ընդ մերթ ասպատակում էին Միջագետքը, երբեմն նաև Հայաստանը, ավազակային թալանի ու կողոպուտի նպատակով[1]։

Հավանորեն, մեծ կռիվների ընդհատման այս ժամանակաշրջանին է վերաբերում Փավստոսի վկայությունը, որ Արշակ Բ-ի թագավորության սկզբներում Հայոց աշխարհը

«բարեկարգվեց, կազմակերպվեց, վերականգնեց ու խաղաղացավ երկու թագավորների միջև, և այնուհետև բոլորը խաղաղ ապրում ու վայելում էին՝ յուրաքանչյուրն իր ունեցվածքը»։

[«Ապա կարգեցան կազմեցան յօրինեցան խաղաղացան աշխարհն Հայոց ի մէջ երկուց թագաւորացն. և յայնմ հետէ բնակեալք խաղաղութեամբ վայելեալք յիւրաքանչիւր յարարս իւրեանց»][2]։

Արշակ Բ-ի գլխավոր գործակիցներն են եղել նրա թագավորության ժամանակ Հուսիկ կաթողիկոսի թոռ Ներսես կաթողիկոսը և արքունի ու նախարարական զորքերի վերին հրամանատար Մամիկոնյան Վասակ սպարապետը։ Երիտասարդ Ներսեսը, որը զինվորական էր ու Արշակ թագավորի սենեկապետն էր՝ մեծամեծ իշխանների ուղեկցությամբ ուղարկվեց Կեսարիա և ձեռնադրվեց այնտեղ Հայաստանի կաթողիկոս, հավանորեն, 353 թվին։

Նույն այս 353 թվին, ինչպես վերև տեսանք, Կոստանդիոսը, հաղթելով Մագնենտիոսին, միացրել էր իր իշխանության տակ ամբողջ Հռոմեական կայսրությունը։ Եվ շատ պարզ է, որ Կոստանդիոսի վարկը և հեղինակությունն առանձնապես մեծ էին լինելու նրա այս հաղթանակից հետո։ Ուստի և հավանական է, որ հենց այս ժամանակներում պետք է ենթադրել Ներսես կաթողիկոսի առաջնորդությամբ հատուկ պատգամավորության ուղարկումը Կոստանդիոսի մոտ, որի նպատակն էր, ինչպես վկայում է Փավստոսը[3], միաբանության դաշինքի ամրապնդումը Հայաստանի ու կայսրության մեջ։

Այս պատգամավորությունը, ինչպես ցույց է տալիս Փավստոսի վկայությունների ուշադիր քննությունը, կայսերական պալա-

---

[1] Տե՛ս Ammianus Marcellinus, XIV, 3. XV, 13 և XVI, 9.

[2] Փավստոս, IV, գլ. Ա, էջ 67 (Վենետիկ, 1889)։

[3] Նույնը, IV, գլ. Ե, էջ 81։

տում շատ լավ էին ընդունել։ Կոստանդիոս կայսրը թանկագին նվերներ էր ուղարկել Արշակ Բ-ին և ազատ էր արձակել Արշակունի պատանդներին, Տիրիթին ու Գնելին, որ Արշակ Բ-ի եղբորորդիներն էին[1]։ Մարկվարտը հավանական է համարում, որ հենց այս պատգամավորության խնդիրքով Կոստանդիոսը Հայաստան էր ուղարկել և տվել էր Արշակ Բ-ին իբրև ամուսին իր մեռած եղբոր՝ Կոստասի (337—350) նշանած Ոլիմպիային, որը պրետորյանների պրեֆեկտ Աբլաբիոսի դուստրն էր[2]։ Պատգամավորության առաքումը և վերադարձը Հայաստան, որ Մարկվարտը դնում է 357 թվին[3], ավելի ճիշտ կլինի ենթադրել 353 և 357 թվերի միջև։

Ներսես կաթողիկոսի ժամանակ սկսել էր մեծ չափով աճել քրիստոնեական եկեղեցու կուլտուրական ու քաղաքական հեղինակությունը։ Նրա նախագահությամբ տեղի ունեցավ Աշտիշատում առաջին եկեղեցական օրենսդիր ժողովը, որի կանոնական որոշումները վերաբերում էին ո՛չ միայն կրոնական-եկեղեցական խնդիրներին, այլև աշխարհական կյանքին ու հասարակական-սոցիալական հարաբերություններին։

Համաձայն այս ժողովի որոշումներին, Հայաստանում բացվեցին ամենուրեք բարեգործական հիմնարկներ։ Բորոտների, ընկնավորների ու ախտավորների համար կառուցվեցին հիվանդանոցներ և անկելանոցներ, հաշմանդամների, անաշխատունակների և աղքատների համար՝ ապաստարաններ ու աղքատանոցներ, հիմնվեցին նաև վանքեր, դպրոցներ ու իջևաններ։ Այս հաստատությունները պահվում էին եկեղեցական կալվածքների եկամուտներով ու նաև ժողովրդից գանձվող առանձին տուրքերով։

Սոզոմենոսի ուշագրավ մի վկայությունից հայտնի է[4], որ նույն այս ժամանակներում (մոտավորապես 356 թվին և 376 թվից հետո) վանքերի ու կուսակրոնության հիմնադիրն էր Փոքր Հայքում, Պոնտոսում և Պափլագոնիայում Սեբաստիայի Եվստա-

---

[1] Ստույգ և պատմական չէ Փավստոսի երկար ու ձիգ պատմությունը, որ իբր թե արիոսական աղանդին հետևող կայսրը հալածել էր Ներսեսին, աքսորել էր նրան մի անմարդաբնակ կղզի, և Արշակ թագավորը, կայսեր վրա զայրացած, վեց տարի շարունակ ավերել էր տվել Հռոմեական երկիրը։ Մարկվարտը համոզիչ կերպով ցույց է տվել, որ Փավստոսի մոտ Բարսեղ Կեսարացուն վերաբերող ավանդությունը վերագրվել է Ներսես Մեծին. տե՛ս Untersuchungen zur Geschichte von Eran, I, էջ 53—54 (221—222)։

[2] Տե՛ս *Markwart*, Die Entstehung der armenischen Bistümer, էջ 88 (224)։

[3] Նույնը, էջ 96—97 (232—233)։

[4] *Sozom.* Hist. Eccl., III, 14, 31.

*թիոս եպիսկոպոսը, որը համարվում է նաև առաջին հիմնադիրներից մեկը բարեգործական հիվանդանոցների։ Մարկվարտը ենթադրում է, որ Ներսես կաթողիկոսը, որն իր կրթությունը ստացել էր Կապադովկիայի Կեսարիա քաղաքում*[1], *Հայաստանում վանքեր ու բարեգործական հիմնարկներ էր հաստատել, հետևելով Եվստաթիոս եպիսկոպոսի օրինակին*[2]*։*

*Արշակ Բ-ի թագավորության սկզբնական խաղաղ շրջանում, ինչպես վկայում են Փավստոսը (IV, գլ. ԺԲ) և Խորենացին (III, գլ. ԻԷ), թագավորի հրամանով հիմնվել էր Մասիսի հարավային ստորոտների կողմերում, Կոգովիտ գավառում, ըստ երևույթին, Արտաշատից Պարսկաստան գնացող առևտրական մեծ ճանապարհի մոտ, Արշակավան քաղաքը։*

*«Այդ ժամանակ [Ներսես կաթողիկոսի հռոմեական կայսեր մոտ գնալուց հետո],—պատմում է Փավստոսը,—թագավորն իր համար մի դաստակերտ շինեց Կովիտ կոչվող տեղում Կոգ գավառի մեջ։ ...Իսկ այդ տեղը ավան դարձավ և ապա քաղաք՝ մեծացավ, բազմամարդացավ ու ամբողջ Կովիտը բռնեց։ Արշակ թագավորը այնուհետև հրաման տվեց այդ դաստակերտը կոչել իր անունով Արշակավան, և այնտեղ շինեցին նաև թագավորական պալատ»։*

*[«Զայնու ժամանակաւ շինեաց իւր արքայն դաստակերտ մի ի Կովիտն անուանեալ ի Կոգ գաւառի։ ...Իսկ տեղին աւանանայր, քաղաքանայր. մեծացաւ բազմացաւ և ելից զԿովիտն ամենայն։ Ապա տայր հրաման արքայն Արշակ դնել անուն դաստակերտին յիւրակից անունն Արշակաւան. և շինեցին ևս անդ ապարանս արքունի»]*[3]*։*

*Փավստոսի և Խորենացու ասելով, որպեսզի քաղաքը բազմամարդ բնակչություն ունենա, Արշակ թագավորը հրաման էր տվել իր երկրի բոլոր տեղերում, որ գան այնտեղ ամեն տեսակ ոճրագործներ և հանցավորներ, որոնք ազատ կմնան դատից ու պատասխանատվությունից։*

*Գարագաշյանի և Սամվելյանի կարծիքով՝ այս տարօրինակ ու անհասկանալի հրամանը մի ակնարկ է, որ հին Հայաստանում ևս*

---

[1] Տե՛ս Փավստոս, *IV, գլ. Գ, էջ 69։*

[2] Տե՛ս *Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, էջ 130, ծան. 2 և էջ 149, ծան. 1 նաև Die Entstehung der armenischen Bistümer, էջ 93 և 96—97։

[3] Փավստոս, *IV, գլ. ԺԲ, էջ 109—110։*

գոյություն է ունեցել ապաստանի իրավունքը[1]։ Ավելի հավանական է սակայն, որ Փավստոսի և Խորենացու վկայությունները Արշակ թագավորի հրամանի մասին խիստ գունավորված են ու չափազանցված։ Լեոն և Մարկվարտը ենթադրում են, որ Արշակավան էին փախել, հավանորեն ո՛չ միայն հանցապարտները, այլև, գըլխավորապես, ճորտ գյուղացիները, «շինական»-ները, որոնց այնտեղ տրվել էին որոշ արտոնություններ[2]։ Ուշագրավ է այս տեսակետից Խորենացու հետևյալ վկայությունը։

«Եվ Հայոց նախարարները,—ասում է Խորենացին,—ժողովվելով դիմեցին արքունական դաստակերտ Արշակավանի վրա և սրի անցկացրին տղամարդկանց ու մինչև իսկ կանանց, բացի ծծկեր երեխաներից. որովհետև նրանք բոլորը կատաղած էին իրենց ծառաների ու հանցավորների վրա»։

[«Եւ նախարարացն Հայոց ժողովեալ դիմեցին ի վերայ արքունական ձեռակերտին Արշակաւանի, և հարին զնա սրով սուսերի յառնէ մինչև ցկին, բաց ի տղայոց ստնդիացաց. քանզի դառնացեալք էին իւրաքանչիւր ի վերայ ծառայից իւրեանց և յանցաւորաց»][3]։

Ուշագրավ է սակայն, որ բոլորովին այլ կերպ է նկարագրված Արշակավանի կործանումը Փավստոսի մոտ։ Ըստ այս պատմագրի վկայության՝ Ներսես կաթողիկոսի անեծքի պատճառով Արշակավանի ամբողջ բնակչությունը, «մոտ քսան հազար ընտանիք», կոտորվել էին երեք օրվա ընթացքում ժանտախտ հիվանդությունից[4]։

Արշակավանի կործանման մասին հետաքրքիր մի ենթադրություն է արել Մարկվարտը։ Վերջինս, նկատի առնելով 358 թվի օգոստոսի 24-ի ահեղ երկրաշարժը Փոքր Ասիայում և Պոնտոսում[5], որը մեծ ավերածություններ էր արել բազմաթիվ քաղաքներում և հիմնովին քանդել էր Նիկոմեդիա քաղաքը՝ հավանական է համարում, որ Արշակավանը ևս կարող էր կործանված լինել նույն այդ մեծ երկրաշարժի ժամանակ 358 թվին[6]։

---

[1] Գարագաշյան, *Քննական պատմութիւն Հայոց*, Բ, էջ 11—12. Խ. Սամվելյան, *Արեան վրէժ և փրկանք*, տե՛ս «Ազգագրական Հանդէս», Թիֆլիս, 1903, X, էջ 278—280։

[2] Տե՛ս Լեո, *Հայոց պատմություն*, Ա, էջ 623 և *Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, էջ 62*։

[3] Մովսես Խորենացի, *III*, գլ. *ԻԷ*, էջ 289 (Տփղիս, 1913)։

[4] Փավստոս, *IV*, գլ. *ԺԳ*, էջ 114—115։

[5] Տե՛ս *Ammianus Marcel.*, XVII, 7.

[6] Տե՛ս *Markwart*, Die Entstehung der armenischen Bistümer, էջ 90 (226) և 97 (233)։

Ներքին անդուսպ խռովությունններն ու պառակտումները մեծ չափեր էին ընդունել Հայաստանում Արշակավանի կործանումից հետո։ Իր հիմքում, ինչպես ենթադրվում է, պատմական է համարվելու Փավստոսի վիպական-բանաստեղծական պատմությունը Արշակ թագավորի եղբորորդի Գնելի սպանության մասին, որ Մարկվարտը, հիմնվելով Փավստոսի վկայության ու ռոմարագիտական իր դիտողությունների վրա, դնում է Նավասարդի տոնին՝ կիրակի 359 թվի օգոստոսի 29-ին[1]։

Փավստոսի պատմելով՝ Արշակ թագավորի եղբորորդի Տիրիթը սիրահարվել էր իր հորեղբորորդի Գնելի կնոջ, գեղեցկուհի Փառանձեմի վրա, որը Սյունիքի Անդովկ նահապետի դուստրն էր։ Նա, որպեսզի Փառանձեմին ինքն առնե, նենգությամբ քսություն էր անում ու գրգռում թագավորին, որ իբր թե Գնելը ուզում է նրան սպանել և թագավորությունը հափշտակել։

Գնելը հրավեր է ստանում գալ Նավասարդի տոներին թագավորի մոտ Շահապիվան, և այստեղ Արշակ Բ-ը հրամայում է դահճապետին նրան սպանել։ Բայց հետո հայտնի է դառնում, որ անմեղ Գնելի մահվան պատճառը Տիրիթն է, և թագավորը հրամայում է սպանել նաև սրան[2]։ Այնուհետև Արշակը Փառանձեմին առնում է իրեն կին, կամ ավելի ճիշտ՝ իրեն հարճ, որովհետև, ինչպես վերև տեսանք, նա արդեն ամուսնացած էր Ոլիմպիայի հետ։

Փավստոսը մանրամասն հաղորդում է, բացի այդ, որ նախարարությունների ոչնչացման քաղաքականությունը վարել էր Հայր մարդպետը նաև Արշակ Բ-ի թագավորության ժամանակ։

> «Եվ Հայր մարդպետը,—պատմում է Փավստոսը,—չար էր ու ժանտաբարո և ավելի անօրեն ու անիրավ էր, քան նախկին Հայր կոչվող մարդպետները։ Սա էր, որ Տիրանի թագավորության ժամանակ կոտորել էր տվել բոլոր նախարարական տոհմերը. Նմանապես և Արշակի թագավորության ժամանակ նա ավելի էր չարություններ գործել, քան առաջ բոլոր մարդկանց նկատմամբ»։

> [«Եւ էր մարդպետն Հայր այր չար և ժանտաբարոյիք անօրէն և անիրաւ քան զառաջին Հայր անուն մարդպետսն։ Սա կոտորեաց զամենայն ազգս նախարարացն ի ժամանակս թագաւորութեանն Տիրանայ արքային. և սոյնպէս առ թագաւո-

---

[1] Նույնը, էջ 95 և 97։

[2] Փավստոս, IV, գլ. ԺԵ, էջ 119—127։

րությամբն Արշակայ՝ ևս չար քան զառաջինն գործել չար առ ամենայն մարդ»]¹։

Հավանորեն, հենց նույն այս Հայր մարդպետի ներշնչումներին պետք է վերագրել նաև Կամսարականների տոհմի կոտորածը, որ հիշատակված է Փավստոսի հետևյալ վկայության մեջ։

«Իսկ հենց այն ժամանակ,—ասում է Փավստոսը,—երբ Ներսես սուրբ եպիսկոպոսապետը հեռացել էր արքունական բանակից և ոչ ոք չկար հակառակող թագավորին, որ նրան հանդիմաներ ու խրատեր՝ նա [Արշակը] այնուհետև սկսեց գործել ըստ իր չար կամքի՝—նախարարներից շատերին նա կոտորեց, շատերին նա աքսորեց ու բնաջինջ արեց և շատերի կալվածքները արքունիք գրավեց։ Իսկ Կամսարականների տոհմերը, որոնք Շիրակի և Արշարունիքի տերերն էին՝ ազգահատեց և այդ գավառները միացրեց արքունի երկրին»։

[«Այլ ահա ի ժամանակին՝ յորժամ մերժեցաւ յարքունական բանակէն սուրբ եպիսկոպոսապետն Ներսէս, և ոչ ոք գոյր ընդդիմացեալ թագաւորին, որ տայր նմա զյանդիմանութեան զխրատն, այնուհետև ըստ կամաց չարութեանն իւրոյ գնացեալ լինէր նա՝ և զբազումս ի նախարարացն կոտորեաց, զբազումս ազգատ արարեալ անճիտեաց, և զբազմաց տունս հատանէր յարքունիս։ Բայց զտոհմս Կամսարականացն, որ էին գաւառաց տեարք, Շիրակայ և Արշարունեաց, ազգատ առնէր և զգաւառսն առնէր յոստան»]²։

Մարդպետները պայքար էին մղել, ինչպես երևում է Փավստոսի վկայություններից, նաև կաթողիկոսական իշխանության և եկեղեցական կալվածատիրության դեմ։ Հայտնի է, օրինակ, որ Հայր մարդպետը սպառնացել էր Ներսես կաթողիկոսին, որ նա ամեն կերպ աշխատելու է արքունիք գրավել Աշտիշատը, որը եկեղեցական կալվածք էր³։

Մինչդեռ Հայաստանի մեջ այս դեպքերն էին տեղի ունենում՝ Հռոմեական կայսրության ու Պարսկաստանի միջև հարաբերությունները արդեն խիստ լարվել էին, և պատերազմը վերսկսվել էր ավելի մեծ կատաղությամբ, քան առաջ։

357 թվին պրետորյանների պրեֆեկտ Մուսոնիանոսը, իմանալով լրտեսների միջոցով, որ Շապուհ Բ-ը դժվարությամբ է արևել-

¹ Նույնը, գլ. ԺԴ, էջ 116—117։

² Փավստոս, IV, գլ. ԺԹ, էջ 133։

³ Նույնը, IV, գլ. ԺԴ, էջ 117—118։

քում կռիվ մղում Թշնամի ցեղերի դեմ՝ ուզեց օգտվել նրա այդ նեղ դրությունից և նրան խաղաղության առաջարկ արեց միջնորդությամբ Դենշապուհի, որը պարսկական զորքերի առաջնորդն էր կայսրության սահմանամերձ երկրամասերում[1]։ Շապուհ Բ-ը, որը գտնվում էր այդ ժամանակ իր թագավորության ամենահեռավոր արևելյան շրջաններում, հռոմայեցիների առաջարկը ստացավ շատ ուշ, երբ արդեն նա խաղաղության դաշն էր կնքել խիոնիտների ու թշնամի մյուս ցեղերի հետ (358 թվի գարնանը)։

Նա ուղարկեց Կոստանդիոսի մոտ հատուկ դեսպան և առաջարկեց նրան խաղաղության ամենածանր պայմաններ, պահանջելով, որ Պարսկաստանին վերադարձվեն Հայաստանն ու Միջագետքը, որոնք նենգությամբ խլված են եղել իր պապ Ներսեհից 298 թվին[2]։ Նա սպառնաց նաև, որ իր առաջարկության մերժման դեպքում ինքը կվերսկսե պատերազմն իր բոլոր ուժերով։

Կոստանդիոսը, իհարկե, չէր կարող ընդունել վերոհիշյալ ամոթալի պայմանները և ամեն կերպ աշխատեց, որ կնքվի պատվավոր հաշտություն։ Սակայն նրա ջանքերն ապարդյուն մնացին, և 359 թվին պատերազմը վերսկսվեց։

Այս պատերազմի ժամանակ Արշակունիների թագավորության բարեկամական կամ թշնամական դիրքը դեպի կռվող կողմերը ստանում էր բացառիկ մեծ կարևորություն։ Հայաստանը, լինելով բուֆեր պետություն, թեև փոքր էր ու թույլ Սասանյան Պարսկաստանի և Հռոմեական կայսրության համեմատությամբ, սակայն զորական իր ուժերով և երկրի ռազմական դիրքերով մեծ նշանակություն ուներ պատերազմող կողմերի համար։

Աղբյուրների վկայություններից երևում է, որ 358—360 թվերին թե Պարսկաստանը և թե Հռոմեական կայսրությունն ամեն կերպ աշխատել էին գրավել Հայաստանն իրենց կողմը։

Փավստոսի վկայությունները Շապուհ Բ-ի բանակցությունների մասին Արշակ Բ-ի հետ՝ թեև իրենց մանրամասնություններով, մեծ մասամբ, վիպական-բանաստեղծական պատմվածքներ են և պատմական արժեք չունեն, սակայն, ինչպես վկայում է նաև Ամմիանոսը, Շապուհ Բ-ը, իրապես, մի քանի անգամ փորձեր էր արել գրավելու Արշակին իր կողմը, դիմելով «խաբեության, սպառնալիքների և նենգության» (fallaciis et minis et dolis)[3]։

---

1 *Ammianus Marcel*, XVI, 9.

2 *Ammianus Marcel.*, XVII, 5.

3 *Նույնը, XX, 11, 2։*

Հռոմեական կայսրությունը ևս իր հերթին ամեն կերպ ձգտել էր սիրաշահել Հայաստանի թագավորին և նրան հաճոյանալ։ Մենք արդեն տեսանք վերև, որ Կոստանդիոսն Արշակին կին էր տվել Կոստաս եղբոր նշանածին՝ Ոլիմպիային։ Ուշագրավ է նաև, որ 358 թվին, այսինքն՝ հենց Պարսկաստանի հետ խաղաղության բանակցությունների ժամանակ, հատուկ օրենքով Կոստանդիոս կայսրը հարկերից ազատել էր Արշակ թագավորի կալվածքները, որ գտնվում էին կայսրության սահմաններում[1]։

Փավստոսը մանրամասն պատմում է, թե ինչպես Արշակ թագավորը գնացել էր Շապուհի մոտ Տիզբոն և նրան հավատարմության երդում էր տվել, բայց հետո, երդման ուխտը ստելով՝ փախել էր։ Փավստոսի այս վկայությունը[2] պարզապես վիպական-ստեղծական բնույթ ունի և, ըստ երևույթին, հավաստի չէ։ Ամմիանոսը, որ ինքը մասնակցել էր 359—363 թվերի պատերազմներին, ո՛չ միայն այդ մասին ոչինչ չգիտե, այլ, ընդհակառակը, Արշակին անվանում է հռոմեացիների «մշտական և հավատարիմ բարեկամ»[3]։

Հայաստանը, ինչպես վերև տեսանք, Տրդատ Մեծից սկսած կապված էր Հռոմեական կայսրության հետ և՛ քաղաքական, և՛ կրոնական կապերով։ Եվ, իհարկե, միանգամայն հասկանալի է, որ Սասանյան Պարսկաստանի ջանքերը Հայաստանը գրավելու իր կողմը՝ վերջ ի վերջո հանդիպելու էին անհաջողության։

359 թվի գարնանը Շապուհ Բ-ը մեծ զորքով անցավ Նինուեի մոտ Տիգրիս գետը և մտավ Միջագետք։ Նրա հետ էին իր դաշնակիցները՝ խիոնիտների Գրումբատես թագավորը ու նաև Աղվանքի թագավորը, հավանորեն՝ Ուռնայրը։ Անտոնինոս անունով դասալիք հռոմեական մի սպա խորհուրդ էր տվել Շապուհին փոխանակ Միջագետքի քաղաքները պաշարելու արագ կերպով անցնել Եփրատը և արշավել Ասորիքի հարուստ ու պտղավետ շրջանները։

Պարսից զորքերը, համաձայն այդ ծրագրի, մի կողմ թողին Մծբինը և դիմեցին դեպի Եփրատ գետը, սակայն, տեղեկություն ստանալով, որ Եփրատը ներքևում անանցանելի է վարարման պատճառով՝ գնացին դեպի հյուսիս, մտադիր լինելով Եփրատն անցնել Ծոփքի կողմերում։

---

1 *Տե՛ս* Աստուրյան, *Քաղաքական վերաբերութիւններ, էջ 288, ծան. 2։ Համեմատե՛* Codex Theodosianus, *XI, 1. նաև* Գաբրճյան, *Տիեզերական պատմութիւն, Բ, էջ 490։*

2 Փավստոս, *IV, գլ. ԺԶ, էջ 128—130։*

3 *Ammianus Marc*., XXV, 7, 12.

Ճանապարհին նրանք կանգ առան Ամիդ քաղաքի մոտ։ Բայց այստեղ, երբ խիոնիտների թագավորն իր որդու ու հեծյալ ջոկատի հետ մոտեցել էին քաղաքի պարիսպներին և ուզում էին բանակցել քաղաքի անձնատվության մասին՝ բերդապահ զինվորներից մեկը, խախտելով պատերազմական ընդունված իրավունքը, նետ արձակեց և սպանեց Գրումբատեսի երիտասարդ որդուն։ Զայրացած Շապուհը վճռեց վրեժխնդիր լինել և քաղաքը հիմնահատակ կործանել։

73 օրվա պաշարումից հետո պարսկական զորքերը գրավեցին Ամիդը 359 թվի հոկտեմբերի 6-ին։ Նրանք իսպառ ավերեցին քաղաքը, իսկ բազմաթիվ բնակչությունը և հռոմեական կայազորը, որ բաղկացած էր ավելի քան վեց լեգեոնից՝ անխնա կոտորեցին կամ գերի վերցրին։ Ամմիանոս Մարկելլինոսը, որն իբրև ականատես նկարագրել է բոլոր վերոհիշյալ դեպքերը[1], մեծ դժվարությամբ կարողացել էր գիշերը քաղաքից փախչել և իր կյանքը հազիվհազ փրկել էր։

359 թվի աշնան վերջերին Շապուհ Բ-ը վերադառնում է Պարսկաստան, իր հետ տանելով հարուստ ավար ու բազմաթիվ գերիներ։

Գարագաշյանը, Տուրնեբիզը և Մարկվարտը[2], հիմնվելով Փավստոսի վկայությունների վրա (IV, գլ. Ի), ենթադրում են, որ այս պատերազմի ժամանակ Արշակ Բ-ը, դաշնակից լինելով պարսիկներին, օգնել էր Շապուհ Բ-ին։ Նա մեծ զորքով ներխուժել էր Արվաստան մինչև Շապուհի Միջագետք գալը, հարձակվել էր հռոմեական զորքի վրա Մծբին քաղաքի կողմերում և մեծ հաղթություն էր տարել։

Ինձ թվում է, Փավստոսի հաղորդումների ուշադիր քննությունը ցույց է տալիս, որ այս դեպքը, եթե ունի պատմական որևէ հիմք, տեղի ունեցած պիտի լիներ պարսկա-հռոմեական պատերազմների նախորդ տարիներում։ Հայտնի է, որ ինքը՝ Փավստոսը այս դեպքը դնում է պարսկա-հռոմեական «երեսնամյա» պատերազմների (338—368) սկզբներում և կամ «ութնամյա» զինադադարից (351—359) առաջ[3]։

359 թվի արշավանքի ժամանակ, ինչպես երևում է Ամմիանոս Մարկելլինոսի վկայություններից, պարսկական զորքերը գրավել ու

---

[1] *Ammianus Marc.*, XIX, 1—9.

[2] Տե՛ս Գարագաշյան, Քննական պատմություն, Գ, էջ 75, 76. *Tournebize*, Histoire politique et réligieuse de l'Arménie, էջ 807. *Markwart*, Die Entstehung der armenischen Bistümer, էջ 94—95, ծան. 2 և էջ 97։

[3] Տե՛ս Փավստոս, IV, գլ. Ի, էջ 139 և IV, գլ. ԻԱ, էջ 140։

ոչնչացրել էին Հարավային Հայաստանում և Ծոփքում բացի Ամիդից նաև բազմաթիվ այլ ամրություններ, որոնց թվում և Զիատա բերդը (ըստ Մարկվարտի՝ Ներքին Անձիտը, այժմյան Այմանեն), որը գտնվում էր Անգեղ բերդի (այժմյան Էգիլ) հարավ-արևելյան կողմում՝ Արղանա-սուի և Դիբենե-Տիգրիսի միախառնման տեղում[1]։

«Հետևյալ օրը լուսաբացին,—պատմում է Ամմիանոսը,— բերդի [Ամիդի] բարձունքից մենք տեսանք անթիվ ժողովուրդ, որը Զիատա ամրոցի առումից հետո քարշ էր տրվում թշնամու բանակատեղը. այս տեղը խիստ ընդարձակ էր ու ամրացված և ուներ տասը ստադիոն երկարությամբ շրջապատ և հենց այդտեղ էին փախցնում բերում խառնամբոխ բազմությունը։ Նրանք առել էին և այրել վերջին օրերը նաև այլ ամրություններ և բոլոր տեղերից բյուրավոր մարդիկ դուրս էին հանված և տարվելու էին ստրկական ծառայության համար. սրանց մեջ կային շատ զառամյալ թույլ տղամարդիկ ու նաև խիստ ծեր կանայք և, եթե սրանք այս կամ այն պատճառով ետ էին մնում և ճանապարհի երկարությունից ուժասպառ լինում ու ապրելու ցանկությունը կորցնում՝ նրանք կտրում էին դրանց սրնքամսերը ու ոտակոճերը և թողնում էին վերընկած»[2]։

Մարկվարտը կարծում է, որ 359 թվի նույն այս ավերածությունների մասին Ծոփաց աշխարհում՝ որոշ հիշողություններ պահպանվել են նաև Փավստոսի Պատմության հետևյալ հատվածներում։

1. Փավստոս, IV, գլ. ԻԴ՝

«Եվ մինչդեռ նա, Հայոց Արշակ թագավորը, իր զորքերով Ատրպատականի սահմաններին էր հսկում, որովհետև այնտեղ էր սպասում Պարսից զորքերին՝ նրանք, առաջնորդ վերցնելով Մերուժանին, Հայոց աշխարհն ասպատակեցին ուրիշ ուղղությամբ։

Նրանք մտան Աղձնիքի միջով, Մեծ Ծոփքով, Անգեղտնով, Անձիտ գավառով, Շահունի Ծոփքով, Մզուր գավառով, Դարանաղիով, Եկեղիքով՝ Պարսից Շապուհ թագավորը եկավ ասպատակելու այդ գավառների կողմերը անթիվ զորքով, որը ջրառատ հեղեղի նման տարածվեց մեծ բազմությամբ։

Նրանք կրակի ու ավերածության մատնեցին երկիրը և անթիվ մարդիկ կոտորեցին իրենց սրերով, կանանց և երեխա-

---

[1] Տե՛ս *Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, էջ 95—101. *Ernst Honigmann*, Die Ostgrenze des Byzantinischen Reiches, Bruxelles, 1935, էջ 35 և 37։

[2] Տե՛ս *Ammianus Marcel*, XIX, 6, 1—2.

ներին սայլերի ցցերի վրա հանեցին, մի մասն էլ, կամերի տակ ձգելով՝ կալսեցին. տղամարդկանց շատերին տրորեցին փղերի ոտքերի տակ և անթիվ քանակությամբ փոքր երեխաներ տարան գերի։ Նրանք քանդեցին բազմաթիվ ամրոցներ և ավերեցին շատ ամուր բերդեր։

Առան և ավերեցին Տիգրանակերտ մեծ քաղաքը, որ գտնվում էր Աղձնիք գավառում բդեշխի իշխանության տակ. այդտեղից անմիջապես գերի վերցրին քառասուն հազար երդ և իրենք արշավեցին Մեծ Ծոփք։ Այս տեղում մի մասը բերդեր առան, բայց մի մասը չկարողացան առնել։ Եկան պաշարեցին Անգեղ ամուր բերդը, որ գտնվում էր Անգեղտուն գավառում. այնտեղ էին Հայոց շատ Արշակունի թագավորների գերեզման-դամբարանները. նույն տեղը հին ժամանակներից սկսած հավաքված էին նախնիքներից մնացած շատ գանձեր։ Նրանք գնացին պաշարեցին բերդը, բայց, որովհետև տեղի ամրության պատճառով չկարողացան առնել՝ թողին ու հեռացան։ Նաև ուրիշ շատ բերդերի մոտով անցան, որովհետև անկարող էին այդ ամրությունների դեմ մարտնչել։ Բայց նրանց ձեռքն անցավ միմիայն Անի ամուր բերդը Դարանաղի գավառում, որովհետև չարագործ Մերուժանը հնարամտություն գործադրեց այդ ամուր բերդի նկատմամբ։ Նրանք վեր բարձրացան, նրա պարիսպները կործանեցին և բերդից ցած իջուցին անթիվ գանձեր։ Ապա բաց արին Հայոց նախկին թագավորների, քաջ Արշակունիների, գերեզմանները և թագավորների ոսկորները գերի տարան»։

[«Եւ մինչ նա դեռ զգուշացեալ Արշակ արքայն Հայոց հանդերձ իւրովք զօրօքն զԱտրպատական սահմանօքն, զի անդ սպասէր զօրացն Պարսից, նոցա առաջնորդ կալեալ զՄերուժանն՝ ընդ այլ կաթել ասպատակ յաշխարհն Հայոց առնէին։

Զի ընդ Աղձնիս և ընդ Ծոփս Մեծ, ընդ Անգեղ տունն և ընդ գաւառն Անձտայ, ընդ Ծոփս Շահունոց, ընդ Մզուր գաւառն և ընդ Դարանաղէ, ընդ Եկեղեաց, զկողմանս այնց գաւառացն Շապուհ թագաւորն Պարսից հանդերձ անթիւ զօրօքն ասպատակել հեղեալ ծաւալէր բազմութեամբ իբրև զջուրս բազումս։

Այրացուցեր առնէին, և զանթիւ մարդիկ արկանէին ի սուր սուսերի իւրեանց. զկանայս և զմանկտի հանէին ընդ ցից

*սայլից, զկէսս զոր ի ներքոյ կամացն արկեալ կասուին։ Եւ զարանց բազմութիւնս տային ի կոխումն փղաց. և զառանց թուոյ զմատաղ մանկտոյն՝ զայն ի գերութիւն վարէին. և զբազում ամուրս քանդէին և զբերդս աւերէին զամուրս։*

*Եւ առին աւերեցին զմեծ քաղաքն Տիգրանակերտ, որ էր ի գաւառին Աղձնեաց յիշխանութեան բդեշխին. քառասուն հազար երդ. զայն նոյնհետայն ի գերութիւն խաղացուցին. և ինքեանք ի Ծոփս Մեծ արշաւեցին։ Եւ անդ էին բերդք, զոր առին. և էր, զոր ոչ կարացին առնուլ։ Եւ գային պահ արկանէին շուրջ զԱնգեղ զամուր բերդաւն, որ է յԱնգեղ տանն գաւառին. զի անդ էին բազում Հայոց թագաւորացն գերեզմանք շիրմացն արացն Արշակունեաց. բազում գանձք մթերեալ մնացեալ կային ի նախնեացն ի հնոց ժամանակաց հետէ։ Զուան պահ արկին զբերդաւն. ապա իբրև ոչ կարէին առնուլ վասն ամրութեան տեղւոյն՝ թողուին և գնային։*

*Եւ զբազում բերդօք զանց առնէին, զի ոչ կարէին մարտնչել ընդ ամուրսն. բայց միայն մատնեցաւ ի ձեռս նոցա ամուր բերդն Անի ի Դարանաղեաց գաւառին անդ, զի չարագործն Մերուժանն հնարաւորութեամբ մեքենայէր ամուր բերդին այնմիկ։ Ելանէին ի վեր, և կործանէին զպարիսպ նորա, և իջուցանէին անթիւ գանձս ի բերդէն։ Եւ բանային զգերեզմանս զառաջին թագաւորացն Հայոց զարանց քաջաց զԱրշակունւոյ, և խաղացուցանէին ի գերութիւն զոսկերս թագաւորացն»]*[1]։

*2. Փավստոս, IV, գլ. ԻԴ՝*

*«Որովհետև նրանք ըստ իրենց հեթանոսական կրոնի ասում էին՝—«Մենք նրա համար ենք առել Հայոց թագավորների ոսկորները և տանում ենք մեր աշխարհը, որպեսզի թագավորների փառքը և այս աշխարհի բախտն ու քաջությունը գնան այստեղից և թագավորների ոսկորների հետ փոխադրվեն մեր աշխարհը»։*

*Ապա Վասակն ազատեց Հայաստան աշխարհի բոլոր գերիներին, և Հայոց թագավորների ոսկորները, որ նա ազատել էր, տարան թաղեցին Այրարատ գավառի մեջ Աղձք կոչվող ամուր գյուղում, որը գտնվում է նեղ և դժվարամատույց խորշերում՝ գոգում ու ծոցում մեծ լեռան, որի անունն է Արագած»։*

*[«Զի ասէին ըստ իւրեանց հեթանոսութեանն ըստ օրինացն, թէ վասն այսորիկ բարձեալ տանիմք զոսկերս թագա-*

---

[1] *Տե՛ս Վենետիկի 1889 թվի հրատարակությունը, էջ 145։*

տորացն Հայոց յաշխարհն մեր, գի փառք թագաւորացն և բախտքն և քաջութիւն աշխարհիս աստի գնացեալ ընդ ոսկերս թագաւորացն յաշխարհն մեր եկեսցեն։

Ապա թափէր Վասակ զգերութիւնն ամենայն զՀայաստան աշխարհին. և զոսկերս թագաւորացն Հայոց, զորս թափեաց Վասակ, հանեալ թաղեցին յամուր ի գեւղն՝ որ Աղձքն անուանին, յԱյրարատ գաւառին՝ որ կայն ի խինձս, ի գոգս, ի ծոցս յանձուկս ի դժուարս լերինն մեծի, զոր Արագածն կոչեն»][1]։

Ինչպես շատ ճիշտ նկատել են Սեն-Մարտենը և Մարկվարտը, Փավստոսի վերոհիշյալ վկայությունները կարող են վերաբերել Ամմիանոսի նկարագրած 359 թվի Պարսից արշավանքներին[2]։ Հունա-հռոմեական աղբյուրներից հայտնի է մեզ, իրապես, որ մինչև Հովիանոս կայսեր հետ կնքված 363 թվի դաշնագիրը Սասանյան Պարսկաստանի զորքերը կարողացել էին հասնել և ոտք կոխել Անդրտիգրիսյան գավառների ու Հայաստանի արևմտյան շրջանները միմիայն 359 թվին։ Իսկ 363 թվից հետո, ինչպես իրավացի կերպով մատնանշում է Մարկվարտը, Մեծ Ծոփքը, Անգեղտունը, Անձիտը և հավանորեն, նաև Շահունոց Ծոփքը տրվել էին հռոմայեցիներին, և եթե Պարսկաստանը խախտած լիներ 363 թվի դաշնագիրը և արշաված լիներ այդ շրջանները՝ այդ մասին կլինեին, անշուշտ, հաղորդագրություններ Ամմիանոսի մոտ կամ ժամանակակից այլ աղբյուրներում։ Մարկվարտը մատնացույց է անում նաև, որ այն դավաճանական դերը, որը Փավստոսը վերոհիշյալ Պարսից արշավանքի ժամանակ վերագրել է դավաճան Մերուժան Արծրունուն, 359 թվի արշավանքի ընթացքում կատարել էր, ըստ Ամմիանոսի, հռոմեական դասալիք սպա Անտոնինոսը[3]։

360 թվին Շապուհ Բ-ը նորից մեծ զորքով արշավեց Միջագետք և այս անգամ գրավեց այստեղ Սինգարան և ապա՝ Բեզաբդեն[4], որն ամուր բերդ էր և գտնվում էր Ծովդեք երկրում (Կորդուքի արևմտակողմում Տիգրիս գետի ափին)։ Այս ամուր բերդը պաշտպանում էին Երկրորդ Փղավյան, Երկրորդ Հայկական, Երկ-

---

[1] Նույնը, էջ 148։

[2] Տե՛ս *Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, էջ 95—96։ Պետք է ասել, որ դեռ Մարկվարտից առաջ Սեն-Մարտենը ևս ենթադրել էր, որ Փավստոսի վերև նկարագրված անցքերը, հավանորեն, տեղի էին ունեցել 358 թվին. տե՛ս *Lebeau*, Histoire du Bas-Empire, nouvelle édition par M. de Saint-Martin, t II, Paris, 1824, էջ 236—238։

[3] Տե՛ս *Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, էջ 115։

[4] Տե՛ս *Ammianus Marc.*, XX, 6, 1—6 և 7, 1—16.

րորդ Պարթևական լեգեոնները և մի մեծ զորամաս Ծավդեքի աղեղնաձիգների, որոնք, մեծ մասամբ, գերի տարվեցին։

Ավելի առաջ շարժվելով, Շապուհի զորքերը պաշարեցին Վիրտա հին բերդը[1]։ Այս անառիկ ամրությունը Հոնիգմանը նույնացնում է Պրոկոպիոսի մոտ հիշատակված Բիրթոնի հետ[2], որը գտնվում էր Բեզաբդեի ու Ամիդի միջև, հավանորեն, Բատման-սուի և արևմտյան Տիգրիսի գետախառնուրդի դիմաց[3]։ Պարսկական զորքերը չկարողացան առնել այս բերդը և, մեծ կորուստներ կրելուց հետո, ստիպված եղան ետ քաշվել Պարսկաստան։

Հռոմեական կայսրության քաղաքական ներքին դրությունն այս ժամանակ նորից խիստ ծանրացել էր։ Դեռևս 359 թվի պարսկական արշավանքի ժամանակ հռոմեական զորքերն ունեցել էին, ինչպես վերև տեսանք, մարդկային մեծ կորուստներ։ Այս կորուստները լրացնելու համար Կոստանդիոսը պահանջեց Կեսար Հուլիանոսից, որն այդ ժամանակ հռոմեական զորքերի հրամանատարն էր Գալլիայում, ուղարկել օգնական զորամասեր։ Սակայն զինվորները, որոնք չէին ուզում գնալ Մերձավոր Արևելք, ապստամբեցին և հայտարարեցին Հուլիանոսին Օգոստոս, այսինքն՝ անկախ ու ինքնակալ կայսր։

Կոստանդիոսը պետք է այժմ պատերազմեր և՛ Շապուհ Բ-ի, և՛ Հուլիանոսի դեմ։ Պարսկական վտանգը, անշուշտ, ավելի մեծ էր։ Ուստի Կոստանդիոսը վճռեց ուժեղացնել իր զորաբանակը և կռվել նախ Պարսկաստանի դեմ։

360 թվի գարնանը Կոստանդիոսը եկավ Մերձավոր Արևելք և այստեղ, Կապադովկիայի Կեսարիա քաղաքում, նախապատրաստում էր իր արևելյան երկրների ռազմական պաշտպանությունը։ Հայաստանի բարեկամությունն ուներ Կոստանդիոսի համար, որը գտնվում էր այժմ երկու հզոր թշնամիների միջև, բացառիկ մեծ կարևորություն։

Հռոմեական կայսրը, ինչպես վկայում է Ամմիանոսը, իր մոտ հրավիրեց Կեսարիա Հայոց Արշակ թագավորին, ցույց տվեց նրան փառահեղ ընդունելություն և ամեն կերպ սիրաշահեց հարուստ ընծաներով ու խոստումներով։ Արշակը, հրապուրված այս սիրալիրությամբ, խոսք տվեց, որ այսուհետև ևս կլինի հավատարիմ դաշնակից հռոմայեցիների։

---

[1] Նույնը, XX, 7, 17։

[2] *Procop.*, De aedificiis, II, 4, 20.

[3] Տե՛ս *E. Honigmann*, Die Ostgrenze des byzantinischen Reiches, էջ 14, ծան. 2։

«Կոստանդիոսը,—պատմում է Ամմիանոսը,—իր մոտ կանչեց Հայոց թագավոր Արշակին, ընդունեց նրան ամենամեծ սիրալիրությամբ և ամեն կերպ հորդորեց նրան, որ հավատարիմ բարեկամ մնա մեզ։ Որովհետև նա լսել էր, որ Պարսից թագավորը բազմիցս փորձեր էր արել, դիմելով խաբեության, սպառնալիքների և նենգության, որպեսզի նրան հարկադրե հրաժարվել Հռոմի հետ դաշնակցությունից և սերտ կերպով կապե իրեն հետ։

Արշակը կրկին ու կրկին հավաստիացրեց, որ ավելի շուտ վերջ կտա իր կյանքին, քան կփոխե իր մտադրությունը։ Եվ նա վերադարձավ իր երկիրը, ստացած լինելով իր շքախմբի հետ առատաձեռն ընծաներ, և այնուհետև չհամարձակվեց որևէ կերպ դրժել իր խոստումները։ Չէ՞ որ Կոստանդիոսը նրան բազմապան շնորհումներ էր արել, որոնցից ամենամեծը, ի միջի այլոց, այն էր, որ կայսրը տվել էր նրան կին Ոլիմպիային, պրետորականների նախկին պրեֆեկտ Աբլաբիոսի աղջկան, որն առաջ Նրա Կոստաս եղբոր նշանածն էր»[1]։

Արշակ թագավորի Հայաստան վերադառնալուց հետո՝ Կոստանդիոսը Կեսարիայից եկավ Եդեսա և այստեղից մեծ զորքով գնաց Բեզաբդե, բայց այս բերդը չկարողացավ ետ առնել և նահանջեց Անտիոք, ուր և անցկացրեց ձմեռը։

Հռոմայեցիները սպասում էին, որ 361 թվին Շապուհ Բ-ը կհարձակվի Միջագետքի վրա ավելի մեծ ուժերով, ուստի ձմեռվա ընթացքում Կոստանդիոսը եռանդուն կերպով պատրաստվում էր կռվի։

«Այս բոլորով հանդերձ,—պատմում է Ամմիանոսը,—[Անտիոքում] անարգել կերպով շարունակում էին զինվել ինչպես արտաքին, նույնպես և ներքին պատերազմի համար՝ ավելացնում էին քանակը ձիավոր զորամասերի և բուռն եռանդով լրացնում էին պակասը նաև լեգեոնների, հավաքելով գավառներից նորակոչիկներին. ծանր կերպով հարկվեցին բոլոր դասակարգերի և բոլոր զբաղմունքների մարդիկ՝ բոլորը պետք է հայթայթեին հանդերձանք, զենք, նույնպես ոսկի ու արծաթ և, բացի այդ, զանազան պարենեղենի պաշարներ ու ամեն տեսակ փոխադրական միջոցներ։ Եվ որովհետև վախենում էին, որ Պարսից թագավորը, որը պատերազմական գործողությունները դադարեցրել էր միայն ձմեռվա

[1] *Ammianus Marc.*, XX, 11, 1—3.

դժվարությունների պատճառով, գարնան սկզբներին անհեղ հարձակում կգործե՝ ուղարկեցին անդրտիգրիսյան թագավորների ու սատրապների մոտ դեսպաններ հարուստ ընծաներով, որպեսզի սրանց հօգուտ մեզ տրամադրեն ու գրավեն և զգուշացնեն, որ մեզ չխաբեն ու ուխտադրուժ չլինեն։

Բայց ամենից առաջ նրանք աշխատեցին փառահեղ հագուստներով ու բազմազան ընծաներով գնել Հայաստանի ու Իբերիայի թագավորներին, Արշակին և Մերիբանեսին [Միրիան], որովհետև սրանք, անշուշտ, կարող էին վտանգավոր լինել հռոմայեցիների համար, եթե այդ ժամանակվա դժվարին պարագաներում անցնեին պարսիկների կողմը»[1]։

361 թվի գարնանը Կոստանդիոսը նորից եկավ Եդեսա, կարծելով, որ Շապուհն արշավելու է Միջագետք։ Սակայն նա այստեղ իմացավ մեծ գոհունակությամբ, որ Շապուհ Բ-ն իր զորքերով ետ է քաշվել և մտադիր չէ պատերազմ մղել ներկա տարում։

Հնարավորություն ստանալով ուղղելու իր զենքը ներքին թշնամու դեմ՝ Կոստանդիոսը որոշեց գնալ Արևմուտք Հուլիանոսի դեմ, բայց ճանապարհին ծանր հիվանդացավ և 361 թվի նոյեմբերի 3-ին մեռավ Կիլիկիայի Մոպսուկրենե քաղաքում։

Կոստանդիոսի մահից հետո Հուլիանոսը (361—363), որը նրա հորեղբոր որդին էր, դառավ միահեծան տերը Հռոմեական ամբողջ կայսրության։ Քրիստոնեական պատմական ավանդության մեջ այս կայսրն անվանվում է Հուլիանոս Ուրացող, որովհետև սա իրեն նպատակ էր դրել բարեփոխել հեթանոսությունը և վերականգնել նրա գերիշխող դիրքը։

Ամմիանոսի ասելով՝ Հուլիանոսի մասին բոլոր ժողովուրդների մեջ լուր էր տարածվել, որ նա արտակարգ կերպով քաջ է, զգաստ է, լավ գիտե ռազմական արվեստը և ունի նաև ուրիշ շատ արժանիքներ։ Ուստի և ինչպես այլ ժողովուրդներից, նույնպես և Հայաստանից ու Անդրտիգրիսյան երկրներից պատգամավորություններ եկան նրա մոտ, որոնք շնորհավորեցին Հուլիանոսին և վերանորոգեցին իրենց բարեկամությունը կայսրության հետ[2]։

Հուլիանոսը, դառնալով կայսր, սկսեց բուռն թափով պատրաստություններ տեսնել մեծ արշավանքի և վճռեց պաշտպանողական

[1] Նույնը, XXI, 6, 5—8։
[2] *Ammianus Marc.*, XXII, 7, 9—10.

*պատերազմ վարելու փոխարեն մղել Պարսկաստանի դեմ Հար-ձակողական պատերազմ և առաջ շարժվել ու գրավել Տիզբոնը։*

*Մարկվարտը Հավանական է Համարում, որ այս մեծ պատե-րազմի նախօրյակին, 362 թվին, տեղի էր ունեցել Արշակ Բ-ի կին Ոլիմպիայի սպանությունը։ Փառանձեմը, նախանձով ու չարու-թյամբ լցված դեպի Ոլիմպիան՝ զազրելի կերպով սպանել էր տվել թագուհուն, թունավորելով նրան Մրջյունիկ անունով քահանայի ձեռքով Հաղորդության ժամանակ։ Մարկվարտն իրավացի կերպով մատնանշում է*[1]*, որ այս ոճիրը չէր կարող կատարված լինել Կոստանդիոս կայսեր կենդանության ժամանակ՝ 360 կամ 361 թվերին և կամ առաջ։*

*363 թվի մարտի 5-ին Հուլիանոս կայսրը դուրս եկավ Ան-տիոքից և մեծ զորքով առաջ շարժվեց դեպի Միջագետք։ Ամմիա-նոսի վկայությամբ՝ արշավանքի սկզբում նա պատվիրել էր Ար-շակ թագավորին, որ նա Հավաքե իր զորքերը, պատրաստ լինի և սպասե իր Հրամաններին, և որ ինքը կկարգադրե Հետո՝ թե ո՛ւր պետք է նա գնա և ի՛նչ պետք է անե*[2]*։*

*Գաթրճյանի, Գարագաշյանի, Աղոնցի և մի քանի այլ պատ-մագետների երկերում մեջ է բերված Հուլիանոսի Հետևյալ նա-մակը Արշակին, որը, ինչպես կարծում են, անվավեր է։*

*«Հայաստանի սատրապ Արշակին։ Պատրաստվի՛ր, Արշակ, անմիջապես կռվի թշնամիների դեմ, զենք ա՛ռ ձեռքդ Պար-սից մոլեգնության դեմ։ Մեր նախապատրաստության և ցան-կության կետ նպատակն է երկուսից մեկը՝ կամ կատարել մեր պարտքը և մեռնել պարթևների երկրում, գործելով մե-ծամեծ սխրագործություններ և պատճառելով Հակառակորդին ամեն Հնարավոր չարիքները, և կամ, նրանց պարտության մատնելով աստվածների օգնությամբ, վերադառնալ տուն փառքով պսակված և բերել թշնամուց ռազմական ավար։*

*Արդ՝ թոթափի՛ր քո անփութությունը, թո՛ղ քո խաբեու-թյունները։ Մոռացի՛ր այն երանելի Հանգուցյալին, ինչպես և բարեաղնիվ մարդկանց լիառատ Հարստությունները՝ այն որ առատորեն տալիս էր քեզ և քեզ նման բարբարոսներին մեղկ ու շռայլ Կոստանդիոսը։ Նկատի ունեցի՛ր, որ այժմ գործ ունես Հուլիանոսի Հետ՝ բարձրագույն քրմապետի, Կե-սարի, Օգոստոսի, աստվածների ու Մարսի սպասավորի,*

---

[1] *Markwart,* Die Entstehung der armenischen Bistümer, *էջ 95 և 97։*

[2] *Տե՛ս Ammianus Marc.,* XXIII, 2, 2.

*ֆրանկների ու բարբարոսների կործանողի և գաղղիացիների ու իտալացիների ազատարարի։*

*Թերևս դու որևէ ա՞յլ մտադրություն ունես՝ ես գիտեմ, որ դու նենգամիտ ես, անարի զինվոր ես և պարծենկոտ, ինչպես ինձ այդ ցույց են տալիս ներկա անցքերը, որովհետև դու փորձում ես թաքցնել ու պահել քո մոտ հասարակական օգտի մի թշնամու և ուզում ես սպասել մինչև այն ժամանակ, երբ կպարզվի այս պատերազմի ելքը։*

*Աստվածների օգնությունը մեզ բավական է, որպեսզի ջախջախենք մեր թշնամիներին։ Իսկ եթե ճակատագիրը, որի վճիռը աստվածների ցանկությունն է, այլ կերպ որոշե՝ ես կընդունեմ այդ անվեհեր ու արիաբար։ Իսկ դու իմացի՛ր, որ պարսիկների ձեռքի զոհը կլինես և քեզ հետ միասին իսպառ կկործանվի նաև քո տունը և Հայաստանի թագավորությունը։ Մծբին քաղաքը հաղորդակից կլինի նույնպես ձեր դժբախտությանը. վաղուց ի վեր երկնքի աստվածները մեզ այդ հայտնի են արել»[1]։*

Այս նամակը, որ վավերական են համարել Սեն-Մարտենը և Գաթրճյանը[2], ինչպես շատ ճիշտ նկատել է Գարագաշյանը, պարզապես մի կեղծիք է, հավանորեն, մոլեռանդ քրիստոնյայի, և հորինված է ուրացող կայսրին նախատելու և վարկաբեկելու նըպատակով[3]։ Պարզ է, որ Հուլիանոսը չէր կարող գրած լինել իր դաշնակցին անվայել ու անքաղաքավարի ոճով այս նամակը։ Ուշագրավ է, որ նամակի մեջ նախագուշակված են Արշակի գերի բռնվելը, Արշակունիների թագավորության կործանումը և Մծբինի վերադարձը պարսիկներին։ Կեղծիքը, ըստ երևույթին, բավական հին է, որովհետև Հուլիանոսի Արշակին գրած նամակը հիշատակված է նաև Սոզոմենեսի մոտ[4], որն իր եկեղեցական պատմությունը գրել էր հինգերորդ դարում։

Հասնելով Խառան քաղաքը, որը գտնվում էր Եդեսայի հարավակողմում, Հուլիանոսը իր մեծ բանակը բաժանեց երկու մասի։ Իր զորքի գրեթե կես մասը, մոտ 30.000 հոգի, նա հանձնեց Պրոկոպիոս

---

[1] Տե՛ս Juliani opera, vol. I, epistola 66, էջ 589—590։ Համեմատե՛ Адонц, Фауст как историк, „Христианский Восток", том VI, вып. III, Петроград, 1922, էջ 269—270։

[2] Տե՛ս *Lebeau,* Histoire du Bas-Empire, t. III, էջ 40—41 և Գաթրճյան, Տիեզերական պատմութիւն, Բ, էջ 496։

[3] Գարագաշյան, Քննական պատմութիւն Հայոց, Գ, էջ 84։

[4] *Sozomenes*, Historia ecclesiastica, VI, 1.

և Սեբաստիանոս զորավարներին և ուղարկեց Տիգրիս գետի կողմերը, կարգադրելով, որ նրանք, եթե հնարավոր է, միանան Արշակ թագավորի հետ ու նրա հետ միասին, Կորդուքի և Մոկքի միջով անցնելով, ավերեն Մեդիայի Խիլիոկոմ պտղավետ երկրամասը և ուրիշ շրջանները և ապա գան ու միանան իր հետ Ասորեստանում[1]։

Բանակի երկրորդ՝ բուն մասը, որին ուղեկցում էր հռոմեական նավատորմիղը, Հուլիանոսի առաջնորդությամբ առաջ շարժվեց Խաբուրի ու Եփրատի գետախառնուրդի մոտ գտնվող Կիրկեսիումից Եփրատ գետի հոսանքով դեպի ցած։ Ճանապարհին Հուլիանոսն ավերածության մատնեց պարսկական երկիրը, գրավեց շատ քաղաքներ և ապա Եփրատը Տիգրիսի հետ միացնող ջրանցքի հոսանքով եկավ Սելևկիա և Տիզբոն, որոնք գտնվում էին Տիգրիս գետի ափերին։ Տիզբոն քաղաքի մոտ Հուլիանոսը պարտության մատնեց Պարսից զորքը, բայց տեսավ, որ հարձակվել ու առնել Տիզբոնը, որը խիստ ամրացված էր, գրեթե անհնարին է։

Նա վճռեց ետ նահանջել Տիգրիս գետի ձախ ափով Ադիաբեն ու ապա Կորդուք, հույս ունենալով, որ շուտով կգան ու կմիանան իր հետ Արշակ թագավորի և Պրոկոպիոսի զորքերը[2]։ Սակայն այս հույսերը զուր էին։ Շապուհ Բ-ը, որը, հավանորեն, իր զորքերի հետ սպասելիս է եղել Հուլիանոսին Տիգրիս գետի հյուսիսակողմում, Պարսկահայքի մոտերքում, ըստ երևույթին, կտրած է եղել Պրոկոպիոսի ու Արշակի զորքերի կապը գլխավոր բանակի հետ[3]։

Հռոմեական զորքերի նահանջի ժամանակ հյուսիսից հարավ եկավ մեծ բանակով ինքը՝ Շապուհը, որն աշխատեց դժվարացնել նրանց պարենավորումը և մերթ ընդ մերթ հարձակվում էր նրանց վրա ու վարում պարտիզանական փոքր պատերազմ։ Հուլիանոսը կկարողանար, այնուամենայնիվ, առանց մեծ կորուստի իր զորքը ետ տանել հռոմեական շրջանները, սակայն նա անզգուշաբար, առանց զրահի, կռվի ելավ թշնամու դեմ զորքի առաջին շարքերում և, ծանր վերք ստանալով, մեռավ Սումերեի հարավարևելակողմում (26 հունիսի 363 թ.)։

---

[1] Տե՛ս Ammianus Marcel., XXIII, 3, 5. Համեմատե՛ Zosimi, Historia nova, III, 12, 3—5.

[2] Տե՛ս Amm. Marc., XXIV, 8, 6.

[3] Այդ մասին կան ակնարկներ Մագնոս Խառանցու և Եվտիկիանոս Կապադովկացու մոտ, որոնք Հուլիանոսի հետ մասնակցել էին այս պատերազմին. տե՛ս Աստուրյան, Քաղաքական վերաբերությիւններ, էջ 292, ծան. 4։ Համեմատե՛ Fragm. hist. graec., ed. C. Müller, Paris, IV, 5—6.

Հուլիանոսի մահից հետո ընտրվեց կայսր Հովիանոսը (363—364)։ Հռոմեական զորքը գտնվում էր ծանր դրության մեջ սննդամթերքների պակասության պատճառով, բայց բարոյալքված էր և ուժասպառ էր եղած նաև պարսկական զորքը, որը կռիվների ընթացքում ունեցել էր մեծ կորուստներ։

Հովիանոսի կայսր ընտրվելուց մոտ մեկ շաբաթ հետո Շապուհ Բ-ը հռոմայեցիների մոտ ուղարկեց հատուկ դեսպանություն և առաջարկեց հաշտություն կնքել։ Եվ Հովիանոսը, որը շտապում էր վերադառնալ Արևմուտք և պահպանել իր կայսերական իշխանությունը, ընդունեց խաղաղության այն ծանր ու ստորացուցիչ պայմանները, որ առաջարկել էր Շապուհ Բ-ը։

Համաձայն այդ պայմանագրի, որ Ամմիանոսն անվանում է «ամոթալի»[1], Անդրտիգրիսյան գավառներից հինգը՝ Աղձնիքը, Մոկքը, Ծավդեքը, Ռեհիմենեն և Կորդուքը տասնհինգ ամրոցների հետ, նաև Սինգարան, Մծբինը և Կաստրա-Մավրորումը (=մավրերի բանակատեղ), տրվեցին Սասանյան Պարսկաստանին։ Մծբինի ու Սինգարայի բնակչությանը թույլ տրվեց, որ նրանք գաղթեն հռոմեական շրջանները։

Հայաստանի ու Արշակունիների թագավորության համար ծանր ու աղետալի էր դաշնագրության այն հատուկ կետը, որով կայսրությունը հրաժարվում էր օգնել ու պաշտպանել իր հավատարիմ դաշնակից Արշակ Բ-ին, եթե պարսիկները հարձակվեին նրա վրա։ Ամոթալի այս դաշնագիրը, որ երեսուն տարի ժամանակով էր կնքված, երդումով հաստատվեց 363 թվի հուլիսի սկիզբներին։

Ամմիանոսի և Փավստոսի վկայություններն այս դաշնագրի մասին, որ բոլորովին իրար համաձայն են և իրար լրացնում են՝ ավելորդ չեմ համարում մեջ բերել ընդարձակ բովանդակությամբ։

1. Ամմիանոս, XXV, 7, 9—12՝

«Թագավորը [Շապուհ Բ-ը] համառորեն պահանջում էր, որ իրեն վերադարձվեն, ինչպես նա ասում էր, այն իր երկրները, որ իրենից խլել էր Մաքսիմիանոսը [=Գալերիոս Վալերիոս Մաքսիմիանոս], և պահանջում էր, ինչպես բանակցության ընթացքում իրոք պարզվեց, մեր ազատման համար իբրև փրկանք հինգ գավառներ Տիգրիսի մյուս կողմում՝ Աղձնիքը, Մոկքը, Ծավդեքը, նաև Ռեհիմենեն ու Կորդուքը հանդերձ 15 ամրոցներով, իսկ, բացի այդ, Մծբինը, Սինգարան

[1] Տե՛ս Amm. Marc., XXV, 7, 13.

ու Կաստրա-Մավրորումը, որն իր դիրքի պատճառով խիստ կարևոր ամրություն էր։

Ավելի լավ կլիներ տասն անգամ կռվել, քան հանձն առնել այդ պահանջներից որևէ մեկը։ Սակայն վեհերոտ կայսրի վրա ազդեցություն ուներ քծնողների խումբը. սրանք տալիս էին հարևանցիորեն Պրոկոպիոսի անունը, իբրև վտանգավոր մարդու, որը, եթե կայսրը շուտ չվերադառնա, կարող կլինի, անշուշտ՝ իմանալով Հուլիանոսի մահվան մասին, թարմ զորամասերի օգնությամբ, որ իր հրամանատարության տակ են, առանց դիմադրության հանդիպելու իրերի նոր դրություն առաջացնել։

Այս վտանգավոր խորհրդածությունները այնքան հաճախ էին կրկնվում, որ նա առանց վարանման, դրանով դրդված, տվեց ամեն բան, ինչ որ պահանջում էին պարսիկները, և դժվարությամբ միայն պայման կապվեց, որ գոնե Մծբինը և Սինգարան պարսիկների իշխանության տակ անցնեն առանց բնակիչների և որ հռոմայեցիներին թույլ տրվի զիջված ամրություններից ետ քաշվել ու լինել մեր պաշտպանության տակ։

Բացի այդ, նաև կործանարար ու անաստված (exitiale et impium) մի հավելում արվեց, որ այս կնքված համաձայնությունից հետո այլևս չտրվի օգնություն մեր մշտական ու հավատարիմ բարեկամ Արշակին Պարսից դեմ, եթե նա այդ մեզանից խնդրելու լինի։ Այստեղ կրկնակի դիտավորություն կար, նախ՝ պատժել սրան, որովհետև կայսրի հանձնարարությամբ ավերել էր Խիլիոկոմը[1], և, բացի այդ, հարմար առիթ սպասել ու անվախ կերպով հարձակում գործել Հայաստանի վրա։

Եվ հենց դրա հետևանքով էր, որ հետագայում այս Արշակը կենդանի գերի վերցվեց և պարսիկները երկպառակությունների ու խռովությունների ժամանակ Հայաստանից խլեցին ընդարձակ երկրամաս, որ սահմանակից էր Մեդիային, ու նաև Արտաշատ քաղաքը»։

2. Փավստոս, IV. գլ. ԻԱ՝

«Եվ երբ խաղաղություն հաստատվեց Հունաց թագավորների և Պարսից թագավոր Շապուհի միջև՝ Հունաց թագավորը դաշինքի թուղթ գրեց ու կնքեց և տվեց Պարսից թագավորին։ Եվ

[1] Խիլիոկոմը, ինչպես երևում է Ամմիանոսի այլ վկայություններից (XXIII, 3, 5 և XXIV, 8, 4), Կորդուքի ու Մոկքի մոտակա շրջանն էր և գտնվում էր, հավանորեն, այդ երկրների արևելակողմում։

դաշինքի այդ թղթի մեջ գրված էր այսպես. «Ես քեզ տալիս եմ Մծբին քաղաքը, որը գտնվում է Արվաստանում, ու Ասորոց Միջագետքը, և Հայաստանի միջնաշխարհից էլ ձեռք եմ քաշում. եթե կարողանաս նրանց հաղթել ու քեզ հպատակեցնել՝ ես նրանց օգնություն չեմ գա։

Այսպիսով՝ որովհետև Հունաց թագավորը նեղն էր ընկել և ծանր ճգնաժամի մեջ էր՝ այդ բովանդակությամբ դաշնագիր էր կնքել և տվել էր Պարսից թագավորին ու այս կերպով ազատվել էր նրա ձեռքից»։

[«Այլ իբրև եղև խաղաղութիւն ի մէջ թագաւորացն Յունաց և ի մէջ թագաւորին Պարսից Շապհոյ, ուխտից նամակ գրեալ և կնքեալ տայր թագաւորն Յունաց թագաւորին Պարսից։ Եւ գրեալ էր յուխտից նամակին այսպէս. Ետու քեզ, ասէ, ՆՄծբին քաղաք՝ որ է յԱրուեստանի, և Միջագետս Ասորոց, և մէջաշխարհին Հայոց ձեռնթափ եմ, ասէ, թէ կարասցես յաղթել նոցա և արկանել ի ծառայութիւն, ես ի թիկունս ոչ եկից նոցա։

Արդ՝ ի նեղ ուրեմն անգեալ թագաւորն Յունաց, և ի նեղին վշտի՝ զայս ձև օրինակի բանիցն կնքէր մուրհակ, և տայր թագաւորին Պարսից. և ապա ճողոպրէր ի նմանէ»][1]։

Խաղաղությունը կնքելուց հետո Հովիանոսը զորքի հետ վերադարձավ հռոմեական Միջագետք և եկավ Անտիոք։ Բայց նա երկար չապրեց։ Երբ նա Անտիոքից գնում էր Պոլիս՝ ճանապարհին հանկարծամահ եղավ Բիթանիայի Դադաստանա քաղաքում (364 թվի փետրվարի 16-ին)։

Հովիանոսին հաջորդեց Վալենտիանոս Ա-ը (364—375), որը Հռոմեական կայսրության արևելյան մասի կառավարությունը հանձնեց իր եղբայր Վաղեսին (364—378)։

363 թվի դաշինքը Շապուհին հնարավորություն էր տալիս անարգել կերպով հաշիվ տեսնելու Արշակ Բ-ի հետ, և պարսիկներն արդեն 364 թվին պատերազմ սկսեցին Հայաստանի դեմ։ Արշակ Բ-ը կարող էր այժմ հենվել միայն իր երկրի ներքին ուժերի վրա։

Արշակունյաց թագավորությունը համառ կերպով դիմադրեց հաղթական ու հզոր Պարսկաստանին չորս տարի։ Սակայն պատերազմի բախտը կանխորոշված էր, որովհետև կռիվն անհավասար էր, և Շապուհ Բ-ը Հայաստանում հենված էր Պարսկաստանին կողմնակից հայկական ուժեղ նախարարությունների վրա։

---

[1] Տե՛ս Վենետիկի 1889 թվի հրատարակությունը, էջ 140։

Փավստոսի մոտ, որին աղբյուր էր ծառայել «Պարսից պատերազմ» վեպը, 364—367/8 թվերի կռիվները նկարագրված են հեքիաթային ոճով ու չափազանցություններով և այնքան խառն ու հախուռն, որ շատ դժվար է որոշել, թե նրա պատմած ո՛ր դեպքերը կարող են համարվել հիշողություններ այս ժամանակվա անցքերի։

Մենք արդեն վերև տեսանք, որ Փավստոսի վկայությունները (IV, գլ. ԻԴ) Պարսից ապստամբությունների մասին Աղձնիքում, Մեծ Ծոփքում, Անգեղտնում, Անձիտում և հարևան այլ գավառներում հիշողություններ են ո՛չ թե այս ժամանակաշրջանի անցքերի, ինչպես այդ թյուրիմացաբար մատնանշվում է պատմագիտական երկերում, այլ Շապուհ Բ-ի 359 թվի մեծ արշավանքի։

Դժվար չէ նույնպես կռահել, որ Փավստոսի նաև հետևյալ գլխի վկայությունները (IV, գլ. ԻԵ) Արշակ թագավորի արշավանքի մասին Թավրիզ ու Ատրպատական՝ չեն վերաբերում 364—367/8 թվերի կռիվներին, այլ, հավանորեն, հիշողություն են Ամմիանոսի մատնանշած Արշակի 363 թվի արշավանքի Խիլիոկոմի[1]։ Ըստ իս միանգամայն անհավատալի է, որ Հովիանոսի դաշնագրից հետո հուսալքված հայերը Պարսկաստանի դեմ վարած լինեին հարձակողական պատերազմ։

Փավստոսի մոտ պահպանված հայկական ավանդությունը, որ կարող է կապ ունենալ Խիլիոկոմի (=«Հազարագյուղ») մասին Ամմիանոսի վերոհիշյալ վկայությունների հետ, մեջ ենք բերում ընդարձակ բովանդակությամբ։

«Այնուհետև,—պատմում է Փավստոսը,—Հայոց Արշակ թագավորը զորք հավաքեց և իր մոտ քաշեց ավագի բազմությամբ մեծ զորք ու ռազմերթի ելավ Պարսից աշխարհի դեմ։ Ապա և Վասակը վերցրեց Հայոց զորքը, օգնություն կանչեց նաև հոներին ալանների հետ միասին և հասավ Հայոց թագավորությանն օգնության պարսիկների դեմ։ Բայց, որովհետև նույն այդ ժամանակ Պարսից թագավորը ևս, երթի ելնելով, եկել էր Հայաստան աշխարհի վրա սրանց դեմ՝ ուստի և սրանք շտապ կերպով հասան Ատրպատական և Պարսից թագավորի զորքը գտան բանակ դրած Թավրիզում։

[1] Այս ճիշտ ենթադրությունն արել է Սեն-Մարտենը. տե՛ս Lebeau, Histoire du Bas-Empire, III, Paris, 1825, էջ 276—279։ Սեն-Մարտենը, հենվելով Փավստոսի այս վկայության վրա՝ Խիլիոկոմի տեղը ենթադրում է Ուրմիա լճի արևելակողմում՝ Թավրիզի ու նրա մոտակա շրջաններում. տե՛ս Histoire du Bas-Empire, t. III, էջ 63, ծան. 4 և էջ 126, ծան. 2։

Վասակ սպարապետը հասավ քսան բյուրով և հարձակվեց Պարսից բանակի վրա։ Թագավորը մի ձիով փախավ ազատվեց և սրանք ավարի առան պարսիկների բոլոր կարավանը. Պարսից զորքերի ամբողջ բազմությունը կոտորեցին և բանակից ևս հաշվից դուրս շատ ավար առան։ Սրանք ասպատակեցին ու առան ամբողջ Ատրպատական աշխարհը, քանդեցին, բրեցին երկիրը, հիմքից կործանեցին և երկրից գերիներ տարան աստղերի չափ շատ։ Երկրի բոլոր տղամարդկանց սրի քաշեցին և իրենք իրենց երկրի սահմաններին հսկեցին և, պահակ կանգնելով, մեծ զգուշությամբ պահպանում էին»։

[«Ապա զօրաժողով լինէր Արշակ արքայ Հայոց, և կուտէր առ ինքն զօրս բազումս իբրև զաւազ բազմութեամբ, և խաղայր ի վերայ աշխարհին Պարսից։ Ապա առնոյր Վասակ զզաւրն Հայոց, և զհոնսն հանդերձ ալանօքն կոչել յօգնականութիւն, և հասանէր դիմէր յօգնականութիւն թագաւորութեանն Հայոց ի վերայ Պարսից։ Այլ թագաւորն Պարսից հանդերձ ամենայն իւրովք զօրօքն ի ժամանակի անդ յայնմիկ. քանզի և նա խաղացեալ գայր ի վերայ Հայաստան երկրին ընդդէմ սոցա, ապա սոքա փութացեալք հասանէին յԱտրպատական. և գտանէին զբանակն արքային Պարսից ի Թաւրէշ բանակեալ։ Հասանէր Վասակ սպարապետն հանդերձ քսան բիւրուքն, անկանէր ի վերայ բանակին Պարսից։ Միաձի ճողոպրեալ թագաւորն փախչէր, և առնուին յաւարի զամենայն կարաւանն Պարսից. և զամենայն զօրսն Պարսից բազմութեանն կոտորեցին, և առին աւար բազում ի բանակէն, զի ոչ գոյր նոցա թիւ։ Ասպատակ տուեալ առնուին զամենայն Ատրպատական երկիրն. քանդեալ բրէին զերկիրն, մինչև ի հիմանց կործանէին. և խաղացուցանէին զգերութիւն երկրին քան զաստեղս բազմութեամբ։ Եւ զամենայն զայր երկրին հանէին ընդ սուր. և ինքեանք ղգուշացեալք սահմանօք երկրին իւրեանց, պահ արկեալ պահէին մեծաւ զգուշութեամբ»][1]։

363 թվի պայմանագիրը, որով կայսրությունը հրաժարվում էր օգնել ու պաշտպանել Արշակ Բ-ին և որով հայերը թողնվում էին իրենց բախտին, բնականաբար, Հայաստանում առաջ էր բերելու անասելի խոր հուզմունք։ Շատ պարզ է, որ այդ մահացու հարված էր Արշակունյաց թագավորության համար և որ դա-

---

[1] Փավստոս, IV, գլ. ԻԵ, էջ 149։

շինքից հետո անխուսափելի էին Հայաստանի քաղաքական ու կուլտուրական արևմտյան կողմնորոշման վարկաբեկումը և հռոմեական կուսակցության հեղինակության անկումը։

Փավստոսի վկայություններից, իրոք, պարզ երևում է, որ 363 թվից հետո Հայաստանում մեծ դեր էր կատարում պարսկական կուսակցությունը, որի առաջնորդն էր Մերուժան Արծրունին՝ Մամիկոնյան Վասակ սպարապետի քրոջ որդին։ Այս կուսակցությունը կռվում էր այժմ ո՛չ միայն Արշակունիների ու հռոմեական կուսակցության պատկանող նախարարությունների դեմ, այլև քրիստոնեական եկեղեցու ու կրոնի դեմ, նպատակ դնելով իրեն Սասանյան Պարսկաստանի հետ սերտ բարեկամություն հաստատել, տարածելով Հայաստանում Պարսից մազդեզական կրոնը և ուժեղացնելով իրանական արևելյան կուլտուրան։

Թե որքա՛ն զորեղ է եղել այս շարժումը՝ այդ երևում է նրանից, որ պարսկական կուսակցությանն էր հարել մինչև իսկ Վահան Մամիկոնյանը, Վասակ սպարապետի եղբայրը։

Շապուհ Բ-ը, հենվելով հայ ապստամբների վրա և դիմելով մերթ զենքի ուժի ու մերթ դիպլոմատիկական նենգ միջոցների, ինչպես վկայում են Ամմիանոսը և Փավստոսը, հաջողություն ունեցավ Հայաստանում, և Արշակ թագավորն ու Մամիկոնյան Վասակը անձնատուր եղան նրան, հավատալով թագավորական երդումին։

Փավստոսի հաղորդած տեղեկությունները 364—367/8 թվերի անցքերի մասին, թեև լի են վիպական-ստեղծական մանրամասնություններով ու չափազանցություններով, բայց որոշ կետերում ճշտիվ համաձայնում են Ամմիանոսի վկայությունների հետ, ուստի և այս երկու հեղինակների համապատասխան հատվածները, որ պայծառ լույս են սփռում վերոհիշյալ չորս տարիների իրադարձությունների վրա, անհրաժեշտ եմ համարում մեջ բերել մանրամասն կերպով։

1. Ամմիանոս, XXVII, 12, 1—4՝

«Պարսից Շապուհ թագավորը, որն արդեն ծերացել էր և որն իր թագավորության սկզբից քաղցր հակում ուներ թալանի, թեև Հուլիանոսի մահից և ամոթալի դաշինքը կնքելուց հետո առժամանակ յուրայինների հետ մեր վերաբերմամբ պահում էր բարեկամություն, սակայն այժմ, ոտնատակ տալով Հովիանոսի հետ կնքած դաշնագրերի անձեռնմխելիությունը, ձեռքը երկարացրեց Հայաստանին, որպեսզի սրան—կարծես թե պայմանագրի ուժն արդեն վերացվել էր—ենթարկե իր իշխանության։

Սկզբում նա գործ դրեց ամեն տեսակ խաբեություններ, բայց, որովհետև ամբողջ ազգաբնակությունը դիմադրում էր, սկսեց նախ մի շարք թեթև ճնշումներ գործել և մեծամեծներից ու սատրապներից ոմանց հավատարմությունը խախտեց, իսկ ոմանց էլ հանկարծակի հարձակումներով նվաճեց։

Այնուհետև նա իր ձեռքը ձգեց իրեն՝ Արշակ թագավորին, գործադրելով գայթակղանության ամենաընտիր միջոցները երդմնազանցության հետ միասին. հրավիրելով սրան խրնջույքի՝ հրամայեց նրան դուրս տանել ետևի թաքուն դռնով, հանել աչքերը, շղթայել արծաթյա շղթաներով—որ նրանց մոտ պատժի ժամանակ պատվավոր անձերի համար համարվում էր ունայն մի մխիթարություն—և աքսորեց Ագաբանա անունով բերդը, ուր նա զանազան տանջանքներից հետո ենթարկվեց մահապատժի։

Հետո, որպեսզի իր երդմնազանցությունը լրիվ լինի, նա վռնդեց Սավրոմակեսին, որը Հռոմի կողմից Իբերիայի պետ էր դրված, և նույն այս ժողովրդի ղեկավարությունը հանձնեց ոմն Ասպակուրասին, որին շնորհեց թագ, որպեսզի մեր հեղինակության կամայական այպանումն ավելի աչքի ընկնի»։

2. Փավստոս, IV, գլ. ԾԲ՝

«Ապա Պարսից Շապուհ թագավորը մեծ աղաչանքով, ընծաներով ու հրովարտակներով սիրալիր կերպով կանչեց Արշակ թագավորին իր մոտ, որպեսզի այնուհետև իրար մեջ սեր և խաղաղություն և մեծ բարեկամություն հաստատեն։ Իսկ Արշակ թագավորը, թեև ուզում էր պատերազմել, սակայն Հայոց աշխարհի ամբողջ զորքը չկամեցավ այդ հանձն առնել։ Ուստի և նա կամա-ակամա սիրտ արավ ու խոնարհությամբ հրովարտակ ուղարկեց Պարսից Շապուհ թագավորին, ինչպես վայել է ծառային տիրոջ նկատմամբ։ Եվ նա նաև իր կողմից նրան հաշտության ընծաներ ուղարկեց»։

[«Ապա Շապուհ արքայ Պարսից մեծաւ աղաչանօք և պատարագօք և հրովարտակօք և սիրով զԱրշակ առ ինքն կոչէր, զի յայնմ հետէ արասցեն ի մէջ իւրեանց սէր և խաղաղութիւն և բարեկամութիւն մեծ։ Իսկ Արշակ արքայ թէպէտ պատերազմ կամէր տալ, այլ ոչ կամէին յանձն առնուլ այսմիկ ամենայն զօրքն աշխարհին Հայոց։ Ապա թէ կամաւ կամաւ՝ թէ ոչ կամաւ, սակայն եդ սիրտ՝ խոնարհութեամբ հրովարտակս առ Շապուհ արքայ Պարսից, որպէս վայելէ ծառայի

*առ տէր իւր, տալ։ Եւ առաքէր յիւրմէ նմա պատարագս հաշտութեան»]*[1]։

*3. Փավստոս, IV, գլ. ԾԴ՝*

*«Դրանից հետո Պարսից Շապուհ թագավորը նորից մարդ ուղարկեց Հայոց Արշակ թագավորի մոտ և ասաց. «Բայց եթե ես և դու իրար բարեհաշտ ենք՝ եկ, միմյանց տեսություն անենք ու ապա միմյանց իբրև հայր ու որդի լինենք։ Իսկ եթե դու չես գա ինձ տեսության, նշանակում է՝ պատերազմ ես ուզում իմ և քո մեջ»։*

*Արշակը նրանից խնդրեց ուխտի հավատարիմ երդում, որպեսզի դրանից հետո նրա մոտ գնա առանց կասկածանքի։ Եվ սա Պարսից թագավորության վստահելի երդումների կարգով բերել տվեց աղ, կնքեց վարազագիր մատանիով և ուղարկեց, (հայտնելով), որ եթե այդ երդումից հետո էլ չգա՝ ապա թող պատրաստ լինի պատերազմի իրար հետ։*

*Իսկ երբ Հայոց երկրի բոլոր մարդիկ այդ էլ տեսան ու լսեցին՝ ստիպեցին ու հարկադրեցին իրենց Արշակ թագավորին և շտապեցրին նրան, որ վեր կենա գնա, ներկայանա Պարսից Շապուհ թագավորին։ Այնուհետև Հայոց Արշակ թագավորը կամա-ակամա վեր կացավ, առավ իր հետ Հայոց սպարապետ զորավարին, որ իր դայակն էր, ճանապարհ ընկավ ու գնաց Հայոց երկրից Պարսից երկիրը՝ Պարսից Շապուհ թագավորի մոտ, և եկավ ներկայացավ Պարսից Շապուհ թագավորին։*

*Երբ սրանց տեսան՝ վերցրին երկուսին էլ, Արշակ թագավորին ու Վասակ սպարապետին, ու նրանց պահում էին արձակ ազատագունդ թիկնապահ զորքերի մեջ։ Եվ Շապուհ թագավորը կանչեց Արշակ թագավորին և խիստ պատուհասեց նրան իբրև իր ծառային, իսկ սա իրեն նրա առաջ հանցավոր ու մահապարտ ճանաչեց։ Այնուհետև Արշակ թագավորին նորից տվին նույն թիկնապահների գնդին, որ պահեն»։*

*[«Ապա յետ այսորիկ դարձեալ առաքեաց առ Արշակ արքայ Հայոց Շապուհ արքայ Պարսից և ասէ. Իսկ եթէ հաճ եմք ես և դու ընդ միմեանս, եկ տեսցուք զմիմեանս, և յայսմ հետէ, իբրև զհայր և զորդի լիցուք ընդ միմեանս։ Ապա թէ ոչ տեսանես դու զիս, խնդրես զպատերազմ ի մէջ իմ և ի մէջ քո։*

*Իսկ Արշակ խնդրէր հաւատարիմ երդումն ուխտիւ ի նմա-*

---

[1] Փավստոս, *էջ 167*։

*նէն, զի յայսմ հետէ անկասկած երթիցէ առ նա։ Եւ նա եւ բերել՝ ըստ օրինացն հաւատարիմ երդմանց թագաւորութեանն Պարսից՝ աղ, կնքել վարազ նկարագիր մատանեաւ, և յղեաց։ Զի թէ իցէ և զայն երդման ևս զհետ ոչ եկեսցէ, ապա կազմ լիցի տալ ճակատս պատերազմի ի մէջ իւրեանց։*

*Իսկ զայն ևս յորժամ տեսին և լուան ամենայն մարդիկն երկրին Հայոց, ստիպեցին բռնադբօսեցին զիւրեանց թագաւորն զԱրշակ և շտապեցին, զի յարիցէ գնասցէ երթիցէ յանդիման լիցի թագաւորին Պարսից Շապհոյ։ Յայնմ հետէ, թէ կամաւ կամաւ՝ և թէ ոչ կամաւ, յարեաւ թագաւորն Հայոց Արշակ, առ ընդ իւր զզօրավարն սպարապետն Հայոց զդաւյեակն իւր, խաղաց գնաց յերկրէն Հայոց յերկիրն Պարսից առ Շապուհ արքայ Պարսից. չոգաւ յանդիման եղև թագաւորին Պարսից Շապհոյ։*

*Իբրև տեսին զնոսա, արկին զերկոսեանն զարքայն Արշակ և զսպարապետն Վասակ, և պահէին զնոսա արձակ ի մէջ ազատագունդ փուշտիպան զօրացն։ Եւ կոչեաց արքայ Շապուհ զարքայ Արշակ, և իբրև զծառայ իւր պատուհասեաց զնա. և նա յանցաւոր և մահապարտ զանձն իւր առ նա համարեցաւ։ Դարձեալ անդրէն ի նոյն գունդ փուշտիպանայ եառուն զԱրշակ արքայ ի պահեստ»]*[1]*։*

*4. Նույնը, IV, գլ. ԾԴ՝*

*«Ապա Պարսից Շապուհ թագավորը հրաման տվեց բերել շղթաներ և շղթայել Արշակի պարանոցը, ոտքերը և ձեռքերը երկաթով ու տանել նրան Անդմըշն, որն անվանում են Անհուշ բերդ, և նրան այնտեղ կապած պահել մինչև որ մեռնի։..... Այնուհետև Պարսից թագավորը հրամայեց մորթել Հայոց Վասակ զորավարին, մորթը հանել, լցնել խոտով և տանել նույն Անդմըշն բերդը, որ Անհուշ է կոչվում, որտեղ բանտարկել էին նույնպես և Արշակ թագավորին»։*

*[«Ապա տայր հրաման Շապուհ արքայ Պարսից բերել շղթայս և արկանել ի պարանոցն Արշակայ և յոտս և ի ձեռս նորա երկաթս, և խաղացուցանել զնա ի յԱնդմըշն՝ զոր Անյուշ բերդն կոչեն, և պնդեալ զնա մինչև անդէն մեռցի։.... Ապա ետ հրաման թագաւորն Պարսից մորթել զզօրավարն Հայոց*

---

[1] Փավստոս, *էջ 168—169։*

Վասակ, և զմորթն հանել և լնուլ խոտով, և տանել ընդ նոյն բերդ յԸնդմըշն՝ որ Անյուշն կոչեն, ուր արգելին իսկ զթագաւորն Արշակ»]¹։

Ամմիանոսի և Փավստոսի այս վկայությունները, ինչպես տեսնում ենք, ո՛չ միայն իրար չեն հակասում, այլ իրար լրացնում են։ Հիմնական տարբերությունն այդ երկու հաղորդագրությունների, գլխավորապես, այն է, որ Արշակ թագավորի մահը հայկական ավանդությունը զարդարել է վիպական-ստեղծական մանրամասնություններով², որ չեն կարող, հարկավ, պատմական լինել։

Ըստ Փավստոսի՝ Արշակ Բ-ի Դրաստամատ անունով ներքինին, որը մեծ քաջագործություններ էր գործել պարսկական պատերազմում քուշանների դեմ, Շապուհից թույլտվություն էր ստացել մի օրով գնալ Խուժաստանի Անհուշ բերդը իր տիրոջ՝ Արշակի մոտ։ Դրաստամատը, մտնելով բերդը, արձակում է Արշակի կապանքները, լվանում է նրան, ազնիվ զգեստներ հագցնում և պատրաստում է նրա համար ճոխ սեղան։ Խնջույքի ժամանակ Արշակ Բ-ը, հիշելով առաջվա իր փառքը, վերցնում է սեղանի վրայից մրգի դանակը և վերջ է տալիս իր թշվառ կյանքին։ Այնուհետև նույն այդ դանակով իրեն սպանում է և նրա հավատարիմ ծառան՝ Դրաստամատը։

Արշակ թագավորի եղերական մահվան մասին հավանական է, անշուշտ, ժամանակակից պատմագիր Ամմիանոսի վերև բերված վկայությունը, համաձայն որի Արշակն Ագաբանա բերդում ենթարկվել էր մահապատժի։

Հայոց թագավորի պարսիկներին անձնատուր լինելու գլխավոր պատճառը Փավստոսը համարում է այն, որ 363 թվի դաշինքից ու երկար կռիվներից հետո Արշակունյաց թագավորությունը սկսել էր քայքայվել, որովհետև խախտվել էր նախարարական Հայաստանի քաղաքական միությունը, իսկ այդ, բնականաբար, վհատություն էր առաջ բերել զորքերի մեջ արքունի երկրում։ Ինչպես մանրամասն ու միանգամայն ճշգրիտ պատմում է Փավստոսը, Արշակունյաց ընդարձակ պետությունն այդ ժամանակ չափազանց փոքրացել էր, և հայերի թիվն էլ թագավորության մեջ խիստ պակասել էր³։

---

¹ Փավստոս, էջ 172—174։

² Տե՛ս Փավստոս, V, գլ. Է։

³ Տե՛ս Փավստոս, IV, գլ. Ծ։

Փավստոսի վկայությամբ՝ այս աղետալի ժամանակաշրջանում Արշակունյաց թագավորությունից անջատվել էին և միացել Հարևան պետություններին Հայաստանի հարավային, արևելյան և հյուսիսային բոլոր ծայրամասերը։

«Եվ սկսեցին,—վկայում է Փավստոսը,—անջատվել ու հեռանալ Հայոց թագավորի բանակից՝ թողին իրենց Արշակ արքային։ Բայց այս հեռանալուն ամենից առաջ սկիզբ դրին մեծամեծ ավագանին։ Նախ Աղձնիքի բդեշխը, և Նոշիրականի բդեշխը, և Մահկերտանը, և Նիհորականը, և Դասընտրեին, ու նաև Աղձնիքի բոլոր նախարարությունները։ Աղձնիքի կողմերի տոհմի զորքն ու երկիրը ապստամբեցին Հայոց Արշակ թագավորից և գնացին անցան Պարսից Շապուհ թագավորի կողմը։ Նրանք պարիսպ շինեցին Հայաստանի դիմաց, Զորա կոչված տեղում, ղոներ դրին և իրենց աշխարհը Հայաստանից բաժանեցին։

Սրանից հետո Գուգարքի բդեշխը, իսկ հետո Զորա գավառի տերը, Կողբի գավառի տերը և նրանց հետ Գարդմանաձորի տերը։ Եվ նրանք, որոնք մոտ էին նրանց ձեռին գտնվող կողմերին և նրանց շուրջն էին՝ ապստամբեցին միասին Հայոց Արշակ թագավորից և գնացին անցան Պարսից Շապուհ թագավորի կողմը։ Ապստամբեցին, անջատվեցին Հայոց Արշակ թագավորից Հայոց ամուր գավառը Արցախի, ամուր գավառը Տմորիքի, ամուր գավառը Կորդիքի. այնուհետև նաև Կորդուք գավառի տերը գնաց անցավ Պարսից թագավորի կողմը։

Սրանից հետո անջատվեց Հայոց թագավորից նաև Հայոց թագավորի տան ձեռական իշխանությունից Ատրպատական աշխարհի մոտ գտնվող երկիրը, եւ կանգնեց Հայոց թագավորից ամուր աշխարհը Մարաց. եւ կանգնեց Հայոց թագավորից և Կազբից աշխարհը. Թողեց Հայոց թագավորին և անջատվեց Անձիտի տեր Սաղամուտը և նրա հետ Մեծ Ծոփքի իշխանը. նրանք անցան Հունաց թագավորի կողմը»։

[«Եւ սկսան սորսորել գնալ ի բանակէն Հայոց թագաւորին, թողին զկիւրեանց արքայն Արշակ։ Բայց նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին։ Նախ բդեաշխն Աղձնեաց, և Նորշիրական բդեաշխն, և Մահկերտանն, և Նիհորականն, և Դասընտրէին, և ամենայն նախարարութիւն Աղձնեաց. և զօրն և տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապստամբեցին յարքայէն Հայոց Արշակայ և չոգան կացին առաջի

*արքային պարսկաց Շապհոյ. և պարիսպ ածէին ի Հայոց կուսէ՝ որ Ձորային կոչեն, դրունս դնէին. և զատուցին զիւրեանց աշխարհն ի Հայոց։*

*Եւ յետ սորա Գուգարաց բդեաշխն, և յետ սորա Ձորայ գաւառին տէրն, և Կողբայ գաւառին տէրն, և ընդ նոսա Գարդմանաձորոյ տէրն։ Եւ որք մօտ էին ի նոսա կողմն այնր ձեռին, որ շուրջ էին զնոքօք, միահաղոյն ապստամբեցին ի թագաւորէն Հայոց Արշակայ. և չոգան գնացին առաջի կացին թագաւորին Պարսից Շապհոյ։ Ապստամբեցին յԱրշակայ արքայէն Հայոց ամուր գաւառն Արձախայ, և ամուր գաւառն Տմորեաց, և ամուր աշխարհն Կորդեաց. ապա և տէր գաւառին Կորդուաց չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից։*

*Յետ այսորիկ ապստամբեաց ի թագաւորէն Հայոց և ձեռին իշխանութեանն տանն Հայոց թագաւորին, որ էր զԱտրպայական աշխարհաւն, յետս եկաց ի թագաւորէն Հայոց ամուր աշխարհն Մարաց. յետս եկաց յարքայէն Հայոց և աշխարհն Կազբից. եթող զարքայն Հայոց և գնաց Սաղամուտ տէր Անձտեայ, և ընդ նմա իշխանն Մեծի Ծոփաց. և գնացին առ թագաւորն Յունաց»]*[1]*։*

*Պատմական Հայաստանի ծայրամասերի այս անջատումը և նրա պետական նախկին հզորության քայքայումը Արշակունյաց թագավորությանը ծանր ու անբուժելի մի հարված հասցրին, որից հետո նա, ինչպես կտեսնենք, այլևս չկարողացավ ուշքի գալ և վերականգնել քաղաքական իր նախկին ազդեցիկ դրությունը։*

---

[1] **Փավստոս,** *IV, գլ. Ծ, էջ 162—163 (Վենետիկ, 1889)։*



13—340

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՊԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿ ԵՎ ՆՐԱ ՎԱՐԱԾ ԱՐՏԱՔԻՆ ՈՒ ՆԵՐՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

1. Հայաստանի առանձին շրջանների դիմադրությունը Պարսկաստանին Արշակ Բ-ի բանտարկությունից հետո:— 2. Արտագերք բերդի պաշարումը.— Գլակ ներքինու և Արտավանի բանակցությունները Փառանձեմ թագուհու հետ և Արտագերքը պաշարող պարսկական զորքերի կոտորածը.— թագաժառանգ Պապի փախուստն Արտագերքից:— 3. Հռոմեական կայսրության անհաստատուն քաղաքականությունն Արևելքում:— 4. Պապի վերադարձը և պարսիկների նոր ավերածությունները Հայաստանում.— Արտագերքի առումը և Փառանձեմ թագուհու բանտարկումը:— 5. Փավստոսի վկայությունների հակապատմական մանրամասնությունները:— 6. Մարկվարտի կարծիքով՝ սպարապետ Արտավանը, հավանորեն, Վասակ Մամիկոնյանի հաջորդն էր:— 7. Հեքիաթային, առեղծական և խրատական տարրերը Փավստոսի վկայություններում:— 8. Արժեքավոր պատմական հիշողությունները Փավստոսի մոտ.— Զիկ և Կարեն.— Արտագերքի պաշարման 13 ամիս տևողությունը:— 9. Հայաստանի քաղաքների ավերումը և նրանց բնակչության բռնի գաղթեցումը Ասորեստան և Խուժաստան:— 10. Շապուհ Բ-ի միջամտությունը Վրաստանի գործերին:— 11. Հռոմեական զորքի առաքումը Հայաստան Արինթեոս կոմսի հրամանատարությամբ և Պապի թագավորեցումը.—Պապը, հավանորեն, որդին էր Գնելի և Փառանձեմի:—12 Պապի և Շապուհ Բ-ի բանակցությունները.— Գլակի ու Արտավանի սպանությունը.— պարսկական կայազորների վտարումը հայկական շրջաններից.—հռոմեական զինված ուժերի գործողությունները Վրաստանում:— 13. Պարսկական զորքերի վերստին ներխուժումը Հայաստան.— հռոմեական-հայկական միացյալ զորքերի հաղթությունը Բագավանի մոտերքում.— Մուշեղ Մամիկոնյանի հաղթական արշավանքները և Հայաստանի ծայրագավառների վերանվաճումը:— 14. Պապ թագավորի վերանորոգչական գործունեությունը.—պայքար անչափ զորեղացած եկեղեցականության դեմ.—տասանորդի և պտղի վերացումը.— գյուղական հոգևորականությանը տրված յոթ հողաբաժիններից հնգի գրավումը հօգուտ արքունիքի.—երեցների և սարկավագների ընտանիքների անդամների զինվորական պարտադիր ծառայությունը:— 15. Հոգևորականության անհաշտ ատելությունը դեպի Պապը.— Պապի մասին հերյուրված անհեթեթ առասպելները.— Ներսես կաթողիկոսի թունավորման սուտ ամբաստանությունը:— 16. Հուսիկ-Շահակի նշանակումը կաթողիկոս և հայ եկեղեցու

անկախությունը:— 17. Պապի ձերբակալությունը Տարոնում.— նրա փախուստը և վերադարձը Հայաստան.— Ամմիանոսի հաղորդած հետաքրքիր տեղեկություններն այդ մասին:— 18. Պապի ձգտումը հաշտվելու Պարսկաստանի հետ:— 19. Նրա եղեռնական սպանությունը Վաղես կայսեր հրամանով:— 20. Հայ իշխանների մասնակցությունն այդ ծանր հանցագործությանը:— 21. Պապ թագավորի իշխանության տևողությունը:

*Արշակ Բ-ի և Վասակ Մամիկոնյանի ձերբակալությունից հետո Շապուհ Բ-ը աշխատեց վերջնականապես տիրել Հայաստանին և այս երկիրը սերտ կերպով կապել Պարսկաստանի հետ։ Բայց նվաճել Հայաստանը, ինչպես շատ ճիշտ մատնանշել է Նյոլդեկեն[1], հեշտ չէր։ Շնորհիվ իր աշխարհագրական դիրքի նա բաժանված էր բազմաթիվ բնական ու անջատ մասերի, որոնց մեջ իշխում էին գրեթե անկախ առանձին նախարարությունները։ Հայաստանի այս շրջանների մի մասը նաև Արշակ Բ-ի բանտարկությունից հետո ցույց տվեց Պարսից զորքերին համառ դիմադրություն։*

*368 թվին Շապուհ Բ-ը Հայաստան ուղարկեց պարսկական զորքով երկու հայ իշխանների՝ Գղակ ներքինուն և Արտավան զորավարին, որոնք Մերուժան Արծրունու ու Վահան Մամիկոնյանի նման փախել էին և անցել Պարսկաստանի կողմը։ Կարելի է ենթադրել, որ 368 թվի հենց այս արշավանքի ժամանակ պարսկական զորքերը գրավել էին արքունի երկրի հարավ-արևելյան շրջանները, ինչպես այդ վկայում է Ամմիանոսը[2]։*

*Նույն 368 թվի աշնանը պարսկական զորքերը Գղակի ու Արտավանի առաջնորդությամբ պաշարեցին Արտագերք բերդը, ուր ամրացել էին Փառանձեմ թագուհին և թագաժառանգ Պապը։ Այս բերդը, որ գտնվում էր Արշարունիք գավառում (այժմյան Կաղզվանի կողմերում), դժվար էր վերցնել թե սրա բնական ամրությունների և թե ձմեռվա ցրտերի պատճառով։ Գղակը և Արտավանը որոշեցին բանակցել Փառանձեմի հետ և համոզել նրան, որ անձնատուր լինի։ Նրանք մոտեցան պարսպին և, ներս մտնելով բերդ իբրև պատգամավորներ, հորդորում էին թագուհուն դադարեցնել ապարդյուն դիմադրությունը և մեղմացնել դրանով Շապուհի բարկությունը։ Բայց Փառանձեմի լաց ու կոծը և թշվառ վիճակը նրանց վրա այնպիսի խոր տպավորություն գործեցին, որ նրանք ամեն կերպ օգնեցին պաշարվածներին և, դավաճանելով Շապուհ Բ-ին, իրենք հենց կո-*

[1] *Nöldeke,* Aufsätze zur persischen Geschichten, Leipzig, 1887, էջ 101։
[2] *Ammianus Marc.,* XXV, 7, 12.

տորել տվին պարսկական զորքերը գիշերվա ընթացքում, երբ սրանք հանգիստ ու անդորր քնած էին։

Պարսկական կենդանի մնացած զորքերի փախուստից ու պաշարման վերացումից հետո՝ Փառանձեմ թագուհու խորհրդով թագաժառանգ Պապն ուղարկվեց հռոմեական երկիրը։ Վաղես կայսրը նրան ընդունեց պատվով և բնակության տեղ հատկացրեց Պոնտոսի Նեոկեսարիա քաղաքում, ուր նա ապրեց կայսերական ծախքով։

Գղակը և Արտավանը, որոնք այժմ Փառանձեմի գլխավոր խորհրդատուներն էին, աշխատեցին հռոմեական օգնությամբ Արշակունիների գահի վրա նստեցնել Փառանձեմի որդի Պապին։ Լինելով Հայոց թագավորության խնամակալների դերում՝ նրանք պատգամավորություն ուղարկեցին Վաղեսի մոտ և խնդրեցին, որ նա թագավորեցնե Հայաստանում Պապին և տա օգնական զորք[1]։

Հռոմեական կայսրությունը չէր կարող, իհարկե, չգիտակցել, որ Սասանյան Պարսկաստանի իշխանության հաստատումը Հայաստանում ո՛չ միայն վարկաբեկիչ էր իր հեղինակության համար արևելյան երկրներում, այլև մշտական ու անհանդուրժելի մի վտանգ էր Հայաստանին սահմանամերձ Հռոմեական Միջագետքի, Կապադովկիայի և Պոնտոսի համար։ Կայսրության քաղաքական շահերի հենց տեսակետից Վաղեսը, բնականաբար, պետք է աշխատեր վերականգնել այն քաղաքականությունը,՝ որ Արշակունյաց թագավորության հանդեպ վարել էին Կոստանդիանոս Մեծը և Կոստանդիոսը։

Պետք է ասել, որ դեռևս Արշակ Բ-ի թագավորության վերջին տարիներում, 365 թվին, Վաղեսը Պոլսից եկել էր Բիթանիա և արդեն գալիս էր Անտիոք, որովհետև որոշել էր անմիջական հսկողություն ունենալ արևելյան գործերի վրա, բայց Պրոկոպիոսի ապստամբությունը և վեստգոթերի մեծ վտանգը հարկադրել էին նրան վերադառնալ Արևմուտք։ Այս կայսեր քաղաքականությունը Հայաստանի նկատմամբ բավական տատանվող էր ու անհաստատուն, և այդ բացատրվում է պարզապես նրանով, որ Հռոմեական կայսրությունն ինքը ևս այդ ժամանակ գտնվում էր ծանր ու դժվարին կացության մեջ և Վաղենտիանոսն ու Վաղեսը շարունակ զբաղված էին Արևմուտքում, ուր նրանց գլխավոր նպատակն էր կայսրության պաշտպանությունը ներխուժող բարբարոս ժողովուրդների հարձակումներից։

369 թվի գարնանը Վաղեսը հրամայեց Տերենտիոս դքսին տանել Պապին (368—374) Հայաստան և դնել նրան հայկական կառավա-

[1] *Ammianus Marc.*, XXVII, 12, 9.

րուԹյան գլուխ առանց Թագավորական տիտղոսի[1]։ Այն դիտավորու-Թյամբ էր այդ արվում, որպեսզի Պարսկաստանը չմեղադրե Հռո-մայեցիներին դաշինքը խախտելու մեջ։ Բացի այդ, համաձայն Հռո-վիանոսի դաշնագրի՝ Պապին չտրվեց զինվորական օգնուԹյուն։

Հռոմեական կայսրուԹյան այս զուսպ ու զգուշավոր միջամտու-Թյունը հայկական գործերին, որ միանգամայն անօգուտ էր ու ան-բավարար Պապի համար, խիստ աղետալի հետևանքներ ունեցավ Հայաստանի համար։

Շապուհ Բ-ը, տեղեկուԹյուն ստանալով այս միջամտուԹյան մա-սին, ինչպես ասում է Ամմիանոսը, գազանի նման կատաղեց և, հավաքելով մեծ զորք, մտավ Հայաստան և մատնեց երկիրը նոր ավերածուԹյան։ Սարսափահար եղած Պապը ու նաև նրա հետ Գղա-կը և Արտավանը փախան Լազիկեի կողմերի լեռնային շրջանը, ուր նրանք հինգ ամիս Թաքնվեցին Թավ անտառների ու լեռնային կիր-ճերի մեջ[2]։

Պարսկական այս մեծ արշավանքի ժամանակ Շապուհի զորքե-րը նորից պաշարեցին Արտագերքը, ուր ապաստանել էր և դեռ մնում էր Փառանձեմը։ Այս անգամ պաշարող բանակի առաջնորդ-ներն էին, ինչպես երևում է Փավստոսի վկայուԹյուններից, Պարսից զորավարներ Զիկը և Կարենը։ Պարսիկներն ուժեղ պաշարումից հե-տո, երբ բերդի կայազորը բոլորովին ուժասպառ էր եղել, կարողա-ցան Արտագերքն առնել (հավանորեն, 369 Թվի դեկտեմբեր ամ-սին[3])։ Նրանց ձեռքն ընկան այստեղ ԱրշակունիՆերի գանձերը ու նաև Փառանձեմ Թագուհին, որը, եԹե հավատանք Փավստոսի վկա-յուԹյանը (IV, գլ. ԾԵ), նախատալից կերպով մահապատժվեց Շա-պուհի հրամանով։

Արտագերքի առումը և Փառանձեմի գերի բռնվելը հանգամանո-րեն նկարագրված են Թե ժամանակակից Ամմիանոսի և Թե Փավստո-սի մոտ, բայց այդ դեպքերը նրանց մոտ տեղ-տեղ պատմված են միանգամայն տարբեր կերպով։ ՏարբերուԹյունները խիստ հետա-քրքիր են և առանձնապես ուսանելի են, որովհետև պարզ ցույց են տալիս, որ Թեև Փավստոսի նկարագրուԹյունները կարևոր պատմա-կան հիշողուԹյուններ են, սակայն ենԹարկվել են վիպական-բա-նաստեղծական մշակուԹյան և ունեն շինծու և հակապատմա-կան մանրամասնուԹյուններ ու նույնիսկ միտումնավոր աղավա-ղումներ։

---

[1] Նույնը, 12, 10։

[2] *Ammianus Marc.*, XXVII, 12, 11.

[3] *Տե՛ս Markwart*, Untersuchungen zur Geschichte von Eran, I, էջ 220։

Արտագերքի պաշարման ու առման մասին Ամմիանոսի և Փավստոսի վկայությունները, որպեսզի հասկանալի լինեն Փավստոսի Պատմության առանձնահատկությունները, մեջ եմ բերում թարգմանաբար ընդարձակ բովանդակությամբ։

1. Ամմիանոս, XXVI, 12, 5—8՝

«Նա [Շապուհ Բ-ը] հանձնեց Հայաստանը ներքինի Գղակին (Cylaces, Gylaces) և Արտավանին (Artabannes), որոնց առաջներում նա ընդունել էր իր մոտ իբրև փախստականների։ Սրանցից մեկը, ինչպես ասում են, եղել էր առաջ ցեղի պետ (gentis preafectus), իսկ մյուսը՝ զորքերի առաջնորդ (magister armorum)։

Նա հանձնարարեց սրանց, որ մեծ ջանք գործ դնեն և ոչընչացնեն Արտագերք բերդաքաղաքը, որն ամուր պարիսպ ուներ ու ռազմական հզոր ուժեր և ուր պահվում էին Արշակի գանձերը և գտնվում էին նրա կինը որդու հետ։

Համաձայն այդ կարգադրության առաջնորդները սկսեցին պաշարումը։ Բայց, որովհետև չէր կարելի մոտենալ այդ ամրությանը, որ տեղավորված էր լեռան զառիվայրում, մանավանդ որ այդ ժամանակ գետինը ծածկված էր ձյունով ու սառույցով՝ ներքինի Գղակը, որն ընդունակություն ուներ կանանց փաղաքշանքով հրապուրելու՝ Արտավանի ուղեկցությամբ եկավ համարձակ բերդաքաղաքի պարսպի մոտ, ստացած լինելով երաշխավորություն իր անձի ապահովության համար։ Եվ երբ նա համաձայն իր խնդիրքի թույլտվություն ստացավ ուղեկցի հետ ներս մտնելու բերդ՝ նա թագուհուն և կայազորին սպառնալից զգուշացումներ արեց, որպեսզի նրանք շուտ անձնատուր լինեն և դրանով մեղմացնեն Շապուհի հուզմունքը, որի վայրագությունն անսահման է։

Մինչդեռ նրանք երկար խոսում էին այդպես և թագուհին իր ամուսնու սոսկալի վիճակն էր ողբում՝ սրանք, բերդաքաղաքի անձնատրության ամենաբուռն ջատագովները, խղճահարվեցին և իրենց մտադրությունը փոխեցին։ Հույս ունենալով, որ ապագայում առատ վարձատրություն կստանան [հռոմայեցիներից]՝ նրանք գաղտնի համաձայնության եկան, որ գիշերվա որոշ ժամին բերդաքաղաքի դռները հանկարծակի բաց արվեն և բավական ուժեղ մի զորամաս, մահաբեր զենքերը ձեռին, անսպասելի կերպով հարձակվի թշնամու բանակի վրա։

Սրանք հանձն էին առնում նպաստել իրենց մոտ դավաճանությանը և աշխատել, որ դավադրությունը գաղտնի մնա։

համաձայնությունը երդումով հաստատելուց հետո՝ սրանք հեռացան բերդից և պաշարող զորքին հավաստիացրին, որ բերդաքաղաքի մեջ պաշարվածները խնդրել են իրենց տալ երկու օր խորհրդածելու ժամանակ, և այսպիսով առաջացրին կատարյալ անփութություն։

«Արդ՝ գիշերվա ժամին, երբ բոլորն անվրդով խոր քնի մեջ էին՝ բերդաքաղաքի դռները բացվեցին և խիզախ դուրս եկավ այնտեղից զորամասը. սրանք, սրերը հանած, գաղտագողի մոտեցան կամացուկ քայլերով, հարձակվեցին թշնամու բանակի վրա, որը վտանգը չէր զգում, և կոտորեցին, առանց դիմադրության հանդիպելու, քնած թշնամիների մի մեծ բազմություն»։

2. Նույնը, XXVII, 11—12՝

«Լուր ստանալով այս անցքերի մասին՝ Շապուհը գազանի նման կատաղեց, հավաքեց ավելի մեծ զորք և սկսեց Հայաստանը բացահայտ կերպով կողոպտել ու ավերել։ ....Բայց երբ նա նկատեց, որ ձմեռվա ծանր եղանակների պատճառով իզուր աշխատանք է վատնելու՝ պտղատու ծառերը այրեց, ամրացրեց բերդերն ու ամրոցները, որ վերցրել էր ուժով կամ դավաճանության շնորհիվ, և այնուհետև իր զորքերի ամբողջ բազմությունը կենտրոնացրեց Արտագերքի շուրջը։

Եվ երբ մի շարք կռիվներից հետո պաշտպանվողներն ուժասպառ եղան՝ բաց անել տվեց դռները և բերդաքաղաքը այրեց։ Այդ տեղից դուրս հանվեց Արշակի կինը, որին նա տարավ իր հետ գանձերի հետ միասին»։

3. Փավստոս, IV, գլ. ԾԵ՝

«Այնուհետև Պարսից թագավոր Շապուհը Հայոց աշխարհի դեմ ուղարկեց իր իշխաններից երկուսին՝ մեկի անունը Զիկ, մյուսինը Կարեն՝ հինգ հարյուր բյուր զորքով, որ գան և Հայոց աշխարհը քանդեն ու խորտակեն։ Նրանք եկան հասան Հայոց աշխարհը։ Երբ Հայոց աշխարհի տիկինը, Հայոց Արշակ թագավորի կին Փառանձեմը, տեսավ, որ Պարսից թագավորի զորքերը եկել լցվել էին Հայոց աշխարհը՝ վերցրեց իր հետ մոտ տասնմեկ հազար մարդ՝ ընտիր սպառազեն պատերազմող ազատներ և, Պարսից զորքերից խույս տալով, գնաց մտավ նրանց հետ միասին Արտագերք բերդը, որը գտնվում էր Արշարունիք երկրում։

Ապա Պարսից զորքերը եկան հասան, նստեցին բերդի շուրջը՝ պահակներ դրին, շրջապատեցին ու պաշարեցին։ Նրանք

ամրացան ներսում, հույս դնելով տեղի ամրության վրա, իսկ սրանք բանակ դրին և նստան դուրսը ձորերի շուրջը. բայց բերդը չկարողացան առնել, որովհետև տեղը խիստ ամուր էր։ Ամբողջ երկիրն ավերեցին, քանդեցին. դուրս էին գալիս և ամբողջ երկիրն ավարի էին առնում և, գերելով շրջակա գավառներից ու աշխարհներից մարդիկ ու անասուններ՝ բերում էին իրենց բանակատեղը։ Կենսամթերք բերում էին ուրիշ տեղերից, ուտում էին և բերդը պաշարման մեջ էին պահում։

Իսկ Պապը, Արշակի որդին, այդ ժամանակ Հայոց աշխարհում չէր, որովհետև Հունաց թագավորի մոտ էր։ Արդ՝ երբ Հայոց ազատագունդ բանակն այս ամենը լսեցին՝ գնացին խնդրելու իրենց համար թիկունք ու օգնություն. նրանց զորագլուխն էր Մուշեղը, Վասակ սպարապետի որդին։ Նրանք գնացին իրենց արքայորդու մոտ և բանակցում էին Հունաց թագավորի հետ ու համոզում նրան, որ իրենց թիկունք լինի։ Իսկ Հայոց երկիրը, Հայոց աշխարհի տիկնոջ Փառանձեմի մոտ, նրանք շարունակ ուղարկում էին դեսպաններ, որ նա դիմանա և բերդը պարսիկներին չտա։ Եվ դեսպաններ էին գալիս շուտշուտ միմյանց հետևից, շաբթե շաբաթ, նրա Պապ որդու կողմից և գաղտնի կերպով գաղտնի դռնով մտնում էին բերդը մի ինչոր հնարքով ու քաջալերում էին տիկնոջը. և բերդի պաշարումը տևեց տասներեք ամիս։ ........ Եվ տասնչորսերորդ ամսվա հարվածներից հետո, բերդում եղած գաղթականների վրա հասան աստծուց՝ բերդում գտնվողների մեջ մահ տարածվեց, որն իբրև պատուհաս աստծուց էր ղրկված։ Նրանք, որոնք պալատումն էին, Փառանձեմ տիկնոջ առաջ ուտում, խմում և ուրախանում էին՝ և հանկարծ մի ժամում մեռնում էին հարյուր մարդ, մյուս ժամում երկու հարյուր, և պատահում էր, որ հինգ հարյուր մարդ էին մեռնում հանդիսականներից սեղան նստած ժամանակ։ Եվ այսպես օրեցօր կոտորվում էին։ Մահը սկսվելուց մի ամիս չքաշեց, որ բոլորը կոտորվեցին, այն է՝ մոտ տասնմեկ հազար մարդ և մոտ վեց հազար կին. մի ամիս չանցավ, որ բերդում եղածները բոլորը կոտորվեցին։

Բայց բերդում մնաց Փառանձեմ տիկինը երկու նաժիշտով։ Այպա գաղտնի կերպով եկավ մտավ բերդը Հայր մարդպետ ներքինին և տիկնոջը խիստ նախատեց իբրև մի բոզի։ Նա սկըսեց թշնամաբար անարգել Արշակունիների տոհմը, թե չարամիտ են ու վատթար, իրենց աշխարհն էլ կործրին։ Տեղն է,

ասում է, ինչ որ ձեզ պատահեց, ու նաև այն, ինչ որ ձեզ պատահելու է։ Դուրս ելավ գաղտագողի և փախավ։

Իսկ տիկին Փառանձեմը, երբ տեսավ, որ մենակ է մնացել՝ բերդի դուռը բացեց և թողեց, որ Պարսից զորքը մտնե բերդ։ Սրանք եկան, տիկնոջը բռնեցին ու բերդից իջուցին։ Վեր ելան բարձրացան բերդը Պարսից զորավարները, ավար առան Հայոց թագավորի գանձերը, որ գտնվում էին բերդում. և սկսեցին կրել ու ցած իջեցնել բոլոր գանձերը։ Ինն օր ու ինը գիշեր անընդհատ իջեցնում էին՝ ինչ որ գտան Արտագերք բերդի մեջ, և տիկնոջ հետ միասին հետները տարան»։

[«Ապա արձակեաց արքայն Պարսից Շապուհ ի վերայ աշխարհին Հայոց երկուս ոմանս յիշխանաց անտի իւրոց, միումըն Զիկ անուն և միումն Կարէն, հինգ հարեր բիւրով. զի եկեսցեն բռեսցեն քանդեսցեն զաշխարհն Հայոց։ Եւ եկին հասին ի վերայ երկրին Հայոց։ Ապա իբրև ետես տիկին աշխարհին Հայոց կինն Արշակայ թագաւորին Հայոց Փառանձեմ զզօրս թագաւորին Պարսից, եթէ եկին լցին զաշխարհս Հայոց, առեալ ընդ իւր մարդիկ իբրև մետասան հազար՝ ազատս ընտիրս սպառազէնս պատերազմողս, և հանդերձ նոքօք դիմեաց եմուտ ի բերդն Արտագերից, որ ի յերկրին Արշարունեաց՝ յերեսաց զօրացն Պարսից։

Ապա եկին հասին ամենայն զօրքն Պարսից, շուրջ զբերդաւն նստէին, պահ արկանէին, պատեցին պաշարեցին։ Իսկ նոքա ի ներքս ամրացեալք, յուսային ի տեղւոյն ամրութիւնն. և նոքա լակիշ ածեալ, նստէին արտաքուստ շուրջ զձորօքն։ Եւ նստան շուրջ զբերդաւն ամիսք երեքտասան, և առնուլ զբերդն ոչ կարացին, զի կարի ամուր էր տեղին։ Աւերեցին քանդեցին զերկիրն ամենայն. ելանէին առնուին աւար զերկիրն ամենայն, շուրջ ի գաւառացն և յաշխարհացն ածէին զգերի մարդկանն և զանասունս ի լակիշն իւրեանց. այլուստ բերէին համբարս, և ուտէին. և զբերդն պաշարեալ պահէին։

Իսկ Պապ որդին Արշակայ ոչ դիպեցաւ անդ ի Հայոց աշխարհին, զի առ թագաւորն Յունաց դիպեցաւ։ Զի թէպէտ և զայս ամենայն լուան ազատագունդ բանակն Հայոց, չոգան իւրեանց խնդրել թիկունս օգնականութեան. և էր նոցա զօրագլուխ Մուշեղ որդին Վասակայ սպարապետին։ Եւ չոգան նոքա առ իւրեանց արքայորդին. մինչ դեռ նոքա ընդ թագաւորին Յունաց խօսէին, հաւանեցուցանէին զնոսա թիկունք լինել

*իւրեանց։ Իսկ յերկիրն Հայոց ստէպ առաքէին դեսպանս առ տիկին աշխարհին առ Փառանձեմ, զի ժուժկալ լինիցի բերդին և մի՛ ձեռս տացէ ի պարսիկս։ Եւ դեսպանս ստէպ ստէպ յորդւոյ նորա ի Պապայ զմիմեանց զկնի ի շաբաթու շաբաթու եկեալ հասանէին. և գաղտ ընդ գաղտնի դուռն ուրեմն մեքենաւորութեամբ ի բերդն մտանէին տային քաջալերս տիկնոջն. և յերկարեաց ի բերդին ամիսս երեքտասան պաշարումն։ ......*

*Եւ եղև յետ չորեքտասաներորդ ամսեանն հարուածոյ, որ յԱստուծոյ հասին ի վերայ զաղթականին բերդնորդեացն. զի մահ անկաւ ի վերայ նոցա, որք ի բերդին էին, զի ի տեառնէ հասին պատուհասք։ Առաջի տիկնոջն Փառանձեմայ ուտէին և ըմպէին և ուրախ լինէին որք էին ի տաճարին. յանկարծակի ի միում ժամու հարիւր այր, և ի միւսում երկերիւր, և էր՝ զի հինգ հարիւր այր մեռան ի բազմականին՝ յորժամ բազմեալ կային. և օր ըստ օրէ սատակէին։ Յորժամ սկսան, զամիս մի ոչ յերկարեաց՝ զի սատակեցան առ հասարակ. զի էին արք իբրև մետասան հազար, և կանայք իբրև վեց հազար. զի ամիս մի ոչ կացին, զի ամենեքեան որ էին ի բերդին՝ առ հասարակ սատակեցան։*

*Բայց մնաց ի բերդին Փառանձեմ տիկին, երկու նաժշտօք։ Ապա եկն եմուտ գաղտ ի ներս ի բերդն Հայր մարդպետ ներքինին, և թշնամանեաց զտիկինն մեծապէս իբրև զբոզ մի։ Սկսաւ ղնել թշնամանս ազգին Արշակունեաց, զի վատախորհուրդք են վատանշանք, կորուսին զաշխարհս ես. իրաւի անց ընդ ձեզ այդ, և այլ զի անցցէ։ Ել գաղտուկ և փախեաւ։*

*Իսկ տիկինն Փառանձեմ իբրև ետես՝ եթէ միայն մնացի, եբաց զդուռն բերդին, և թողացոյց զօրսն Պարսից մտանել ի բերդն։ Եւ եկին կալան զտիկինն և իջուցին ի բերդէն։ Ելանէին ի բերդն ի վեր զօրավարն Պարսից, գերէին զգանձս թագաւորին Հայոց, որ կային ի բերդին. և սկսան կրել իջուցանել զամենայն զանձն, որ կայր ի բերդին։ Զինն տիւ և զինն գիշեր համակ իջուցին զոր գտին յԱրտաբագէրսն բերդին, հանդերձ տիկնաւն խաղացուցին]*[1]։

*4. Փավստոս, IV, գլ. ԾԵ՝*

*«Եվ երբ նրանք գնացին տարան Փառանձեմ տիկնոջը Պարսից աշխարհը և Հայաստանի բոլոր գերիներին, գանձերն ու*

---

[1] *Տե՛ս* Փավստոսի *պատմություն Վենետիկի 1889 թվի հրատարակությունը, էջ 174—176։*

Փառանձեմ տիկնոջը թագավորի առաջ բերին՝ Պարսից թագավորը մեծ շնորհակալություն հայտնեց իր զորավարներին։ Եվ որովհետև Պարսից Շապուհ թագավորը ուզեց թշնամաբար անարգել Հայոց աշխարհի ազգն ու թագավորությունը՝ հրաման տվեց ժողովել իր բոլոր զորքերը, իր մեծամեծներին ու փոքրերին՝ բոլոր իր աշխարհի մարդկանց, որ իր իշխանության տակն էին, ու հրամայեց նաև բերել այս բազմության մեջ Հայաստանի Փառանձեմ տիկնոջը։ Նա հրամայեց շինել հրապարակում տանջանքի գործիք, որը հրամայեց ձգել տիկնոջը վրա և ենթարկել Փառանձեմ տիկնոջը անասնական պղծության պոռնկական խառնակության։ Այս կերպ սպանեցին Փառանձեմ տիկնոջը»։

[«Եւ եղև իբրև չոգան տարան զտիկինն Փառանձեմ յերկիրն Պարսից, և զայլ ամենայն գերութիւնն Հայոց և զգանձսն կալան առաջի թագաւորին և զտիկինն Փառանձեմ, շնորհ մեծ ունէր թագաւորն Պարսից իւրոց զօրավարացն։ Եւ իբրև կամեցաւ թագաւորն Պարսից Շապուհ թշնամանս առնել ազգին աշխարհին Հայոց և թագաւորութեանն, ետ հրաման ժողովել զամենայն զզօրս իւր և զմեծամեծս իւր և զփոքունս և զամենայն մարդիկ աշխարհին իւրոյ, որ ինքն իշխէր, և ի մէջ ամբոխին ածել զտիկինն Հայոց զՓառանձեմն։ Եւ հրամայեաց ի հրապարակին իմն առնել հրապոյրս մեքենայից, որով հրամայեաց զկինն արկանել, և արձակել տիկնոջն Փառանձեմայ ի խառնակութիւն պոռնկութեանն անասնական պղծութեանն։ Այսպէս սատակեցին զտիկինն Փառանձեմ»][1]։

Արտագերքի պաշարումը և առումը և Փառանձեմ թագուհու գերի բռնվելը, ինչպես տեսնում ենք, Ամմիանոսի և Փավստոսի մոտ պատմված են տարբեր կերպով։ Ամմիանոսի վկայությունից երևում է, որ Արտագերքը պաշարված է եղել երկու անգամ, իսկ Փավստոսի մոտ այդ երկու պաշարումը դառել է մի անընդհատ շարունակվող պաշարում, որը տևել է տասնչորս ամիս։ Ճիշտը, իհարկե, Ամմիանոսի հաղորդած տեղեկությունն է։

Ուշագրավ է, որ Գղակի ու Արտավանի կարևոր դերն Արտագերքի առաջին պաշարման ժամանակ և այդ պաշարումից հետո Փավստոսի մոտ բոլորովին լռության է մատնված։

Մանրամասն այս խնդիրը քննության է առնված Մարկվարտի

---

[1] Տե՛ս Փավստոս, Վենետիկ, 1885, էջ 178։

աշխատություններում[1]։ Ամմիանոսի մոտ հիշատակված Գողակը (Cylaces, Gylaces), ինչպես միանգամայն ճիշտ մատնանշել է Մարկվարտը, Փավստոսի մոտ հիշված Հայր մարդպետ Գղակն է (Վենետիկյան տպագրի մեջ «Դղակ» ընթերցվածը պետք է ուղղել և կարդալ «Գղակ»)։ Իսկ «զորքերի առաջնորդ» (magister armorum) կամ սպարապետ Արտավանը (Artabannes), որը Փավստոսի մոտ բնավ չէ հիշատակված, Մարկվարտի կարծիքով, հավանորեն, Պարսկաստանում մահապատժի ենթարկված սպարապետ Վասակ Մամիկոնյանի անմիջական հաջորդն էր, որն իր ազգական Վահան Մամիկոնյանի հետ անցել էր պարսիկների կողմը։

Մարկվարտի ենթադրությունը, որ այս Արտավանը կարող է թերևս նույնացվել Մամիկոնյան Վաչե սպարապետի որդի Արտավազդի կամ Մանուել Մամիկոնյանի հայր Արտաշիրնի հետ[2], իմ կարծիքով, վիճելի է և չէ կարող հաստատուն համարվել։ Մարկվարտը մատնացույց է արել նաև, որ Արտավանի գործունեությունը և նրա ու Գղակի 369 թվի բանակցությունները Վաղեսի հետ Փավստոսի մոտ թյուրիմացաբար վերագրված են սպարապետ Մուշեղ Մամիկոնյանին[3]։

Առանձնապես ուշագրավ է այն, որ Փավստոսի Պատմության վերոհիշյալ վկայությունների մեջ, որոնց աղբյուրը վիպական-բանաստեղծական ավանդությունն էր, մեծ տեղ են բռնում հեքիաթային, առեղծական և խրատական տարրերը, որոնք ոչ մի առնչություն չունեն գիտական պատմության հետ։ Օրինակ, միանգամայն հեքիաթային բնույթ ունի Արտագերքի անկումն իբրև հետևանք աստվածային պատուհասի, որի պատճառով բերդի բոլոր պաշտպաններն ու բնակիչները, թվով 17.000 հոգի, ամենակարճ ժամանակում կոտորվել էին և կենդանի էր մնացել միմիայն Փառանձեմ թագուհին երկու նաժիշտով։ Առեղծական բնույթ ունի, անշուշտ, նաև ներքինի Հայր մարդպետի գաղտնի կերպով բերդ մտնելը ու թագուհուն հայհոյելը և Արշակունիներին նախատելը։

Ամմիանոսը, ինչպես տեսանք, վկայում է, ընդհակառակը, որ ներքինի Գղակը և Արտավանը, զգացվելով թագուհու ողբալի վիճակից, անցել էին նորից Արշակունիների կողմը։ Թեև պատմական բոլոր հին և նոր երկերում հավանական է համարվել Փավստոսի վերոհիշյալ վկայությունը Փառանձեմ թագուհու նախատալից մա-

---

[1] Տե՛ս *Markwart,* Untersuchungen zur Geschichte von Eran, I, էջ 212—214, նաև Südarmenien und die Tigrisquellen, 69, էջ 154—155։

[2] Տե՛ս *Markwart,* Untersuchungen, I, էջ 213—214։

[3] Նույնը, էջ 212։

հապատժման մասին Շապուհ Բ-ի հրամանով՝ այդ ևս դժվար է պատմական համարել։ Փառանձեմի անարգ մահը, ըստ երևույթին, նույնպես վիպական-ստեղծական պատմվածք է խրատական նպատակով։ Ամմիանոսը, ինչպես տեսանք, այդ մասին ոչինչ չգիտե։ Նա հաղորդում է միայն, որ Փառանձեմին գերի էին վերցրել և տարել Պարսկաստան։

Մեր այս դիտողությունները պարզ ցույց են տալիս, որ Փավստոսի Պատմությունը, որը, մեծ մասամբ, վիպական-բանաստեղծական գրվածք է, պետք է գործածել իբրև չորրորդ դարի պատմության աղբյուր ամենամեծ զգուշավորությամբ։

Արժեքավոր ու պատմական են համարվում Փավստոսի վերև բերված վկայություններից երկուսը։ Համաձայն Փավստոսի վկայության՝ Արտագերքը պաշարող պարսկական զորքի առաջնորդներն էին ո՛չ թե Գղակը և Արտավանը, այլ Զիկը և Կարենը։ Այս պարսիկ զորավարները, ինչպես վկայում է դարձյալ Փավստոսը[1], կառավարիչ էին կարգվել Հայոց աշխարհում Արտագերքի առումից հետո։ Ուստի և Մարկվարտն իրավացի կերպով ենթադրում է, որ Զիկը և Կարենը պարսկական զորքի առաջնորդներն են եղել Արտագերքի երկրորդ պաշարման ժամանակ[2]։

Պատմական ճիշտ հիշողություն կարող է լինել, Մարկվարտի կարծիքով, նաև Արտագերքի պաշարման 13 ամիս տևողությունը և նրա անկումը տասնչորսերորդ ամսում։ Բայց Փավստոսի այս վկայությունը վերաբերում է, հավանորեն, առաջին և երկրորդ պաշարումների ժամանակին՝ առաջին պաշարման սկզբից մինչև Արտագերքի անկումը (ըստ Մարկվարտի՝ հոկտ. 368 թ.—դեկտ. 369 թ.)[3]։

Պարսկական 368—369 թվերի արշավանքների ժամանակ, ինչպես երևում է Փավստոսի վկայություններից, բացի Արտագերքից, Հայաստանում ավերվել էին գրեթե բոլոր նշանավոր քաղաքները՝ Արտաշատը, Վաղարշապատը, Երվանդաշատը, Զարեհավանը, Զարիշատը, Վանը և Նախիջևանը։ Փավստոսի մոտ մանրամասն մեջ են բերված այդ քաղաքներից գերի տարված «երդ»-երի թվերը. Արտաշատից՝ 9.000 երդ կամ տուն հրեա և 40.000 տուն հայ, Վաղարշապատից՝ 19.000 տուն, Երվանդաշատից՝ 30.000 տուն հրեա և 20.000 տուն հայ, Զարեհավանից՝ 8.000 տուն հրեա և 5.000 տուն հայ, Զարիշատից՝ 14.000 տուն հրեա և 10.000 տուն հայ, Վանից՝ 18.000

---

1 Տե՛ս Փավստոս, IV, գլ. ԾԸ, էջ 182։

2 *Markwart,* Untersuchungen zur Geschichte von Eran, I, էջ 212։

3 Նույնը, էջ 220

*տուն հրեա և 5.000 տուն հայ և Նախիջևանից՝ 16.000 տուն հրեա և 2.000 տուն հայ*[1]*։ Այս թվերը, թեև Փավստոսի մոտ կարող են չափազանցված լինել, բայց, ինչպես մատնանշել եմ իմ նախորդ աշխատություններում*[2]*, խիստ ուշագրավ են, որովհետև ցույց են տալիս, որ Հայաստանի քաղաքների բնակչության մեծագույն մասը կազմել են հրեաները։*

*Այս մեծ գաղթականությունը Շապուհ Բ-ը բնակեցրել էր մասամբ Ասորեստանի, մասամբ Խուժաստանի քաղաքներում. այս վերջինում, հավանորեն, Շոշ կամ Սուզա քաղաքում, որը, ապստամբած լինելով Շապուհ Բ-ի դեմ, մատնվել էր կոտորածի ու ավերածության և վերականգնվել էր Էրան-Խվառեհ-Շապուհ նոր անունով։ Խրիստենսենի ասելով՝ քաղաքների առման ժամանակ Պարսից թագավորները բնակչությունը, սովորաբար, չէին կոտորում, այլ որակյալ աշխատավորներին և արհեստավորներին գերի էին վերցնում և օգտագործում պարսկական արհեստների ու արդյունագործության զարգացման համար*[3]*։*

*Հայաստանի համար քաղաքային վերոհիշյալ կենտրոնավայրերի ամայացումը, անշուշտ, խիստ ծանր մի հարված էր, որով երկիրն իր տնտեսական առաջավոր դիրքերից շպրտվում էր դեպի ետ։*

*Չհանդիպելով լուրջ դիմադրության՝ Շապուհ Բ-ը նույն 369 թվին, չբավականանալով Հայաստանի ավերածությամբ՝ միջամտեց նաև Վրաստանի գործերին և, ոտնատակ տալով հռոմայեցիների իրավունքները, որ որոշված էին երկուստեք համաձայնությամբ, գահընկեց արեց հռոմեական գերիշխանությանը ենթարկված Սավրմակին* (Saurmakes) *և նրա փոխարեն Վրաց թագավորության գահին նստեցրեց Վարազ-Բակուրին (*Aspakuras*)։*

*Շապուհ Բ-ի 369 թվի գրգռիչ գործողություններն արդեն մի պարզ ոտնձգություն էին և խախտումն հռոմեական իրավունքների։ 363 թվի դաշնագիրը Սասանյան Պարսկաստանը մեկնաբանում էր այն իմաստով, որ իբր թե նա իրավունք ունի տեր ու տնօրեն դառնալու Հայաստանի և նույնիսկ Վրաստանի։ Այդ, իհարկե, այդպես չէր։*

*Ճիշտ է, համաձայն դաշնագրի հռոմայեցիները պարտավորվել էին չօգնել Արշակ Բ-ին, սակայն դաշնագրում չէր ասված, որ Հա-*

---

[1] *Տե՛ս* Փավստոս, *IV, գլ. ԾԵ, էջ 176—178 (Վ. 1889)։*

[2] „О торговле и городах Армении", *էջ 95 և «Ֆեոդալիզմը հին Հայաստանում», էջ 218—219։*

[3] *Տե՛ս Christensen*, L'Iran sous les Sassanides, Copenhague, 1944, *էջ 126—127 և 251։*

յաստանը տրվում է Սասանյան Պարսկաստանին։ Հռոմեական կայսրությունը դաշնագիրը մեկնում էր այլ կերպ։ Պարսկաստանի ակնկալությունները Հայաստանի նկատմամբ նա համարում էր ապօրինի և պնդում էր, որ հայ ժողովուրդը պետք է լինի ինքնուրույն։

370 թվին Վաղես կայսրը, որն արդեն վերջացրել էր պատերազմը գոթերի դեմ, հնարավորություն ունեցավ միջամտելու հայկական գործերին ավելի բացահայտ համարձակ կերպով։ Պարսկաստանի իշխանության հաստատումը Հայաստանում և Վրաստանում Հռոմեական կայսրության համար խիստ վտանգավոր էր և վարկաբեկիչ էր նաև նրա պրեստիժի համար։

Այս անգամ Վաղես կայսրը Արինթեոս կոմսի հրամանատարությամբ, որը Փավստոսի մոտ անվանված է «Ադէ» (ըստ Մարկվարտի՝ պետք է ուղղել «Արէ»[1]), ուղարկեց Հայաստան հռոմեական զորք և հրամայեց թագավորեցնել Պապին և պաշտպանել հայերին պարսիկների հարձակումներից[2]։ Պապն այդ ժամանակ, 370 թվին, ինչպես կարելի է հետևցնել Ամմիանոսի կարևոր մի վկայությունից, անչափահաս պատանի էր[3]։

Պետք է ասել, որ Պապի տարիքի խնդիրը մինչև այժմ վեճի առարկա է և դեռևս վերջնական կերպով պարզված չէ։ Միանգամայն սխալ պետք է համարել, իմ կարծիքով, Օրմանյանի ենթադրությունը, որը Պապին համարում է ո՛չ թե Փառանձեմի, այլ Օլիմպիայի որդի, ծնված 351 թվին[4]։ Օրմանյանի պնդումը, որ արտաքին պատմիչները Պապին ճանաչում են իբրև հույն մոր զավակ, պարզապես թյուրիմացության արդյունք է։ Այդ մասին ոչինչ չեն հաղորդում ո՛չ Ամմիանոսը, ո՛չ էլ մյուս օտար պատմիչները։

Պապը, ինչպես պարզ կերպով վկայում են Փավստոսը և Մովսես Խորենացին, Փառանձեմի որդին էր[5]։ Մարկվարտը կարծում է նույնիսկ, որ Արշակ Բ-ն ամուսնացել էր Փառանձեմի հետ, որովհետև իր Օլիմպիա կնոջից զավակ չուներ[6]։ Բոլորովին անընդունելի է, սակայն Մարկվարտի մի ուրիշ կարծիքը։ Նա ենթադրում է, որ

---

1 Տե՛ս *Markwart,* Untersuchungen, I, էջ 214։

2 Տ՛ես *Amm. Marc.*, XXVII, 12, 13 և Փավստոս, V, գլ. Ա։

3 Նույնը, XXX, 1, 2։ Ամմիանոսի այս վկայությունից երևում է, որ Պապը արդեն չափահաս էր դառել 373 թվին (etiam tum adultum)։

4 Տե՛ս Մ. Ա. Օ., «Տրդատ Արտաշէս ժամանակագրական դիտողութիւններ», «Հանդ. Ամս.», 1909, № 8, էջ 241 և 245։

5 Փավստոս, IV, գլ. ԺԵ և Խորենացի, III, գլ. ԻԴ։

6 *Markwart,* Die Entstehung der armenischen Bistümer, էջ 95։

Պապը ծնվել էր 360 թվին և, ուրեմն, թագավոր էր կարգվել տասը տարեկան հասակում և սպանվել էր տասնչորս տարեկան հասակում։ Այս ենթադրությունը, անշուշտ, սխալ է և հակասում է ինչպես Ամմիանոսի, նույնպես և հայ աղբյուրների վկայություններին։

Ինձ թվում է, որ այս մութ խնդիրը հավանական լուծում կարող է ստանալ, եթե ենթադրենք, որ Պապը, լինելով Փառանձեմի ու Գնելի որդին, Արշակ Բ-ի ո՛չ թե հարազատ, այլ խորթ որդին էր։

Ըստ երևույթին, Արինթեոս կոմսի Հայաստան ժամանելուց դեռ առաջ Պապը բանակցություններ էր սկսել Շապուհ Բ-ի հետ, հույս ունենալով, որ իր թագավորությունը կկարողանա ստանալ արքաների արքայից։ Շատ պարզ է, որ պատանի թագաժառանգը, որին Վաղեսը Հայաստան էր ուղարկել առանց օգնական զորքի և որն ամբողջ հինգ ամիս թափառել ու թաքնվել էր Լազիկեի մոտակա լեռնային շրջաններում, այլևս չէր կարող հավատ ընծայել Հռոմեական կայսրության խոստումներին ու հավաստիացումներին։

Շապուհի ու Պապի բանակցությունների մասին ուշագրավ տեղեկություն է տալիս Ամմիանոսը հետևյալ իր վկայության մեջ։

> «Մինչ այդ,—ասում է Ամմիանոսը,—Շապուհը, որն անչափ խորամանկ էր և որը, նայելով իր օգտին, կամ ստորաքարշ էր և կամ ամբարտավան՝ ապագայում հաշտություն կնքելու պատրվակով կշտամբում էր Պապին թաքուն լրաբերների միջոցով, որ նա անփույթ է դեպի ինքը և թագավորական վեհության քողի տակ ստրուկն է դառել Գղակի ու Արտավանի»[1]։

Շապուհ Բ-ի խոստումը բարեկամության դաշն կնքելու Պապի հետ, բնականաբար, մեծ տպավորություն պիտի գործեին ո՛չ միայն պատանի թագաժառանգի վրա, այլև նրան շրջապատող այն հայերի վրա, որոնք գիտակցում էին, որ Հայաստանի դժբախտության պատճառն ինքը՝ Հռոմեական կայսրությունն էր, որը 363 թվի խայտառակ դաշնագրությամբ դավաճանել էր դաշնակից հայերին։ Դժվար չէր նաև հասկանալ, որ Սասանյան Պարսկաստանի հետ բարեկամական մերձեցումը, որը Արշակունյաց թագավորության փրկության համար մի մեծ երաշխիք էր, թերևս կարող էր գլուխ գալ Գղակի ու Արտավանի զոհաբերությամբ, որոնք Արտագերքի պաշարման ժամանակ դավաճանել էին պարսիկներին։

Ինչպես վկայում է Ամմիանոսը, հրապուրվելով Շապուհ Բ-ի

---

1 *Ammianus Marc.*, XXVII, 12, 14.

2 Նույն տեղում։

*գրավիչ խոստումներով՝ Պապը սպանել տվեց Գլակին ու Արտավանին և նրանց գլուխներն ուղարկեց արքայից արքային ի նշան իր հնազանդության Պարսկաստանին[1]։ Այս սպանության լուրը, ասում է Ամմիանոսը, լայնորեն տարածվեց և Հայոց երկիրը մեզ համար կորած կլիներ, եթե պարսիկները Արինթեոսի ժամանման պատճառով չհետաձգեին իրենց ներխուժումը Հայաստան։ Շապուհ Բ-ը բավականացավ միայն նրանով, որ կայսեր մոտ դեսպանություն ուղարկեց և պահանջեց, որ նա չպաշտպանե հայերին, ինչպես այդ պայմանավորված էր Հովիանոսի դաշնագրով[2]։*

*Հայր մարդպետ Գլակի սպանությունը հիշատակված է նաև Փավստոսի Պատմության մեջ, բայց սպանության պատճառը նրա մոտ այլափոխված է և բոլորովին զուրկ է պատմական հիմքից։ Ըստ Փավստոսի՝ Պապը հրամայել էր մահապատժի ենթարկել Գլակին, որովհետև նա թշնամանել ու անարգել էր Արտագերքում իր մորը և անվանել էր Փառանձեմին բոզ։ Պապի այս հրամանը, Փավստոսի ասելով, ի կատար էին ածել Մուշեղ Մամիկոնյանի կարգադրությամբ սրա զորավարները Տարոն գավառի Ողական բերդում[3]։*

*Արինթեոս կոմսի և հռոմեական օժանդակ զորքի Հայաստան ժամանելուց հետո՝ հետզհետե հայկական շրջաններից դուրս վտարվեցին պարսկական կայազորները և Պապը, համախմբելով իր շուրջը ապստամբած հայերին՝ ձեռնամուխ եղավ նորոգելու և կազմակերպելու իր ավերված թագավորությունը (370 թ.)։ Կաթողիկոսության գլուխն անցավ դարձյալ Ներսեսը, իսկ սպարապետությունը հանձնվեց Վասակ սպարապետի որդի Մուշեղ Մամիկոնյանին։*

*Արշակունյաց թագավորության ռազմական ուժը, ինչպես երևում է Փավստոսի վկայությունից, վերջին յոթ տարիների աղետալի անցքերից հետո (364—370 թ.) այնքան էր նվազել, որ Պապի թագավորության սկզբնական շրջանում Մուշեղ Մամիկոնյանը կարողացել էր իր հրամանատարության տակ հավաքել ընդամենը մոտ տասը հազար զորք[4]։*

*370 թվին Հռոմեական կայսրության և Սասանյան Պարսկաստանի միջև փաստորեն վերսկսվել է Հայաստանում պատերազմական դրությունը, որովհետև հռոմեական զորքերը հայերի հետ միասին կռվում էին այստեղ պարսկական պահապան զորամասերի և Պարսկաստանի հայ համախոհների դեմ։*

---

[1] Ammianus Marcel,, XXVII, 12, 14.

[2] **Նույնը,** XXVII, 12, 15։ *Համեմատե՛ նաև* Themistii orationes, XI, 149 B (Paris, 1684)։

[3] **Փավստոս,** *V, գլ. Գ, էջ 195—196։*

[4] *Նույնը, V, գլ. Ա, էջ 190։*

370 կամ 371 թվին Վաղես կայսեր կարգադրությամբ հռոմեական Տերենտիոս զորավարը տասներկու լեգեոններով մտավ Վրաստան, որպեսզի վերստին թագավորեցնե Սուրմակին, որը, ինչպես վերև տեսանք, գահընկեց էր արվել Շապուհ Բ-ի հրամանով։ Բայց շուտով այստեղ Վաղես կայսեր հավանությամբ գահաթեկնածուներ Սուրմակի և նրա ազգական Վարազ-Բակուրի միջև համաձայնություն կայացավ և որոշվեց, որ Սուրմակը թագավոր լինի Վրաստանի հարավային ու արևմտյան շրջաններում, որոնք սահմանակից էին Հայաստանին և Լազիկեին, իսկ Վարազ-Բակուրը՝ հյուսիսային ու արևելյան շրջաններում, որոնք սահմանակից էին Աղվանքին և պարսկական երկրամասերին[1]։

Հռոմեական կայսրության զինված ուժերի թշնամական գործողությունները Հայաստանում և Վրաստանում, բնականաբար, մեծ զայրույթ առաջացրին Պարսկաստանում, և Շապուհ Բ-ը, որն անչափ վրդովված էր, աշխատեց օգնություն ստանալ հարևան ժողովուրդներից և նախապատրաստեց նաև իր զորքը արշավանքի, որպեսզի գարնանը մեծ ուժերով հարձակում սկսե հռոմայեցիների և հայերի դեմ[2] (371 կամ 372 թ.)։ Պատերազմի վտանգը Մերձավոր Արևելքում այնքան մեծ էր, որ արդեն 371 թվի մայիս ամսին ինքը՝ Վաղես կայսրը Պոլսից շտապել էր գալ Կապադովկիա և, միաժամանակ այստեղ մնալուց հետո, եկել էր Անտիոք (371 թվի նոյեմբերին կամ 372 թվի ապրիլին)[3]։

371 կամ 372 թվի գարնանը Շապուհ Բ-ը ռազմերթի ելավ Հռոմեական կայսրության դեմ, և պարսկական զորքերը ներխուժեցին Հայաստան։ Սրանց դեմ Վաղեսն ուղարկեց մի մեծ զորաբանակ Տրայանոս կոմսի և ալամանների իշխան Վադոմարի առաջնորդությամբ և հրաման տվեց վարել պարսիկների դեմ ո՛չ թե հարձակողական, այլ, գլխավորապես, պաշտպանողական պատերազմ։

Սակայն երբ հռոմեական այս զորքերը միացել էին Հայաստանում Մուշեղ սպարապետի զորքի հետ և հասել էին Բագավան՝ սրանք, Պարսից հեծելազորի բուռն գրոհի պատճառով, ստիպված եղան կռվի բռնվել թշնամու հետ։ Այս մեծ ընդհարման ժամա-

[1] Տե՛ս Amm. Marc., XXVII, 12, 16—17.

[2] Նույնը, XXVII, 12, 18։

[3] Ըստ Մաղաղասի ժամանակագրության՝ Վաղեսն Անտիոք էր հասել նոյեմբերի 10-ին 14-րդ ինդիկտիոնի, այսինքն՝ 371 թվին։ Իսկ Սեն-Մարտենը, հենվելով այլ հաշիվների վրա՝ Վաղեսի ժամանումն Անտիոք մատնացույց է անում ապրիլի 13-ին 372 թվի. տե՛ս Lebeau, Histoire du Bas-Empire, nouvelle édition par M. de Saint-Martin, t. III, Paris, 1825, էջ 428, ծան. 1 և էջ 436, ծան. 3։

նակ Հռոմեական-Հայկական միացյալ զորքերը հաղթություն տարան, և պարսիկները կրեցին զգալի պարտություն։

Ճակատամարտը տեղի էր ունեցել ո՛չ թե Ձիրավ դաշտում, ինչպես հաղորդում է Մովսես Խորենացին[1], այլ Բագրևանդ գավառի Բագավան ավանի մոտերքում՝ Նպատ լեռան հյուսիսակողմում, ինչպես այդ որոշակի վկայում են Ամմիանոսը և Փավստոսը։

Որովհետև այս ճակատամարտի մասին, Խորենացու Պատմության ազդեցությամբ, սխալ և խառնաշփոթ տեղեկություններ են հաղորդված պատմագիտական նորագույն երկերում՝ ավելորդ չեմ համարում թարգմանաբար մեջ բերել Ամմիանոսի և Փավստոսի համապատասխան վկայությունները, որոնք իրար համապատասխանում են և իրար լրացնում են։

1. Ամմիանոս, XXIX, 1, 1—3՝

«Ձմեռն անցնելուց հետո Պարսից թագավոր Շապուհը, որը չափազանց ամբարտավանացել էր նախկին կռիվներում իր ունեցած հաջողությունների պատճառով՝ իր զորքերը համալրեց, խիստ ուժեղացրեց և ուղարկեց, որպեսզի ներխուժեն մեր կողմերը, զրահավորված հեծելազորը ու նաև նետաձիգները և վարձկան զորքը։

Այս զորքերի դեմ խիստ ուժեղ զորաբանակով երթի ելան Տրայանոս կոմսը և ալամանների նախկին թագավոր Վադոմարը, բայց սրանք կայսրի հրամանով պարսիկների դեմ պետք է վարեին ավելի շուտ պաշտպանողական գործողություններ, քան հարձակողական։

Երբ սրանք հասան Բագավան (Vagabanta), որը հարմար էր լեգեոնների տեղավորման համար, մի քանի անգամ ենթարկվեցին թշնամու հեծելազորի ուժգին գրոհումներին։ Սակայն, չկամենալով ընդունել մարտը՝ սրանք արիաբար նրանց ետ մղեցին և նույնիսկ դիտավորյալ կերպով ետ քաշվեցին, որպեսզի իրենք առաջին հերթին թշնամուն վնաս չհասցնեն և հաշտության դաշինքի խախտման համար չամբաստանվեն։ Սակայն վերջ ի վերջո, ծայրահեղ անհրաժեշտության պատճառով, նրանք մարտի բռնվեցին և հաղթություն տարան և թշնամուց շատերին կոտորեցին։

2. Փավստոս, V, գլ. Դ՝

«Ապա այնուհետև Պարսից թագավորը նորից զորաժողով արեց բոլոր իր ուժով ու զորությամբ։ Նա ճանապարհ ընկավ

---

[1] Տե՛ս Խորենացի, III, գլ. Լէ։

իր բոլոր զորքերով և գնաց հասավ Ատրպատական աշխարհը։ Ինքը քիչ զորքով մնաց այնտեղ, իսկ զորքերի ամբողջ բազմությունը պատերազմի ուղարկեց Պապ թագավորի դեմ։

Ապա Պարսից զորքը եկավ և ասպատակեց մինչև իսկ Հայաստանի միջնաշխարհը։ Այնուհետև Հայոց Պապ թագավորը ևս հրամայեց զորաժողով անել Բագավանում։ Նաև Հունաց զորքերը, որոնք գտնվում էին Եռանդում ու Բախիշում, հավաքվեցին միևնույն տեղում Պապ թագավորի մոտ և իրենց բանակի շուրջը փոս փորեցին Նպատ լեռան դիմաց և Եփրատ գետի մոտ։ Նրանք կազմակերպվեցին և պատրաստվեցին ճակատամարտ տալու»։

[«Ապա յետ այսորիկ թագաւորն Պարսիցն կրկնէր լինէր զօրաժողով ամենայն ուժով և ամենայն զօրութեամբն իւրով. խաղայր գնայր ամենայն զօրօքն իւրովք հասանէր յաշխարհն Ատրպայականի։ Եւ ինքն անդր դադարէր սակաւուք, և զամենայն զօրացն զբազմութիւն առաքէր ի վերայ թագաւորին Պապայ ի պատերազմ։

Եւ եկեալ զօրքն Պարսից ասպատակ առնէին և ի միջնաշխարհն Հայոց. ապա և թագաւորն Հայոց Պապ զօրաժողով առնել հրամայէր ի Բագաւանն։ Եւ զօրքն Յունաց, որ էին յԵռանդին ի Բախշանն, ի մի վայր ժողովեցան առ թագաւորն Պապ, և ածին փոս զբանակաւն իւրեանց մօտ ի լեռան ի Նպատ մերձ ի գետն Եփրատ, և կազմեալ պատրաստեալ կային գործոյ ճակատուն»][1]։

3. Փավստոս, V, գլ. Դ՝

«Իսկ պատերազմի ընթացքում ստոծու օգնությունը հասավ հույներին և հաղթող հանդիսացավ Հայոց գունդը։ Եվ Պարսից գունդը պարտության մատնվեց, փախուստի դիմեց և ցրվեց ու սփռվեց դաշտերում, լեռների բարձունքներում և խոր ձորերում։ Ապա նրանց հետապնդեցին Հունաց և Հայոց զորքերը, հետևներից հասան և թե մեծերին ու թե փոքրերին՝ բոլորին կոտորեցին։ Միայն շատերից քչերը, որոնք լավ ձիեր ունեին՝ կարողացան փախչել։

Այնուհետև ևս փախստականներին հետամուտ եղան Հայոց զորքերը և նրանք մինչև Գանձակ Ատրպատականը, Հայաստանի սահմանները, հալածեցին Պարսից զորքերին և փախստականներից շատերին ճանապարհին կոտորեցին»։

---

[1] Տե՛ս Փավստոս, էջ 196։

*[«Այլ ի պատերազմին օգնական աստուծոյ հասանէր ի վերայ Յունացն, և Հայաստան գնդին լինէր յաղթութիւն, և ի պարտութիւն մատնեցաւ գունդն Պարսից, դարձան ի փախուստ, ցրուեցան սփռեցան դաշտաց, լերանց բարձանց, խորոց ձորոց։ Ապա զհետ նոցա լինէին զօրքն Յունաց և Հայոց. հասանէին, զմեծ և զփոքր առ հասարակ սատակէին. բայց սակաւք ի բազմաց քաջաձիք փախստեայք լինէին։*

*Ապա զհետ լինէին փախստէիցն զօրքն Հայոց, և մինչև ի Գանձակ յԱտրպայական ի սահմանս Հայոց հալածէին զզօրսն Պարսից. ընդ փախուցեալսն զբազումս սատակէին զճանապարհայն»]*[1]։

Բագավանի մոտ տեղի ունեցած այս կռվից հետո, ինչպես վկայում է Ամմիանոսը, հռոմեական և պարսկական զորքերը խույս էին տալիս պատերազմական վճռական գործողություններից և միայն մի քանի անգամ իրար հետ բախումներ էին ունեցել տարբեր ելքերով։ Բայց հետո փոխադարձ համաձայնությամբ զինադադար էր կնքվել, և կռվող զորքերի գերագույն հրամանատարները զանազան ուղղությամբ ետ էին նահանջել, թեև մնում էին իրար թշնամի[2]։

Հռոմեական-պարսկական վերոհիշյալ կռիվներից հետո, ինչպես մանրամասն պատմում է Փավստոս Բուզանդը, Մամիկոնյան Մուշեղ սպարապետը հետզհետե միացրել էր Հայաստանին, կռիվ մղելով ապստամբների դեմ, այն շրջանները, որոնք անջատվել էին Արշակունյաց թագավորությունից։ Փավստոսի ասելով՝ Մուշեղ սպարապետը վերագրավել էր հետևյալ երկրներն ու գավառները՝ Արշակունյաց Հայաստանի մաս կազմող Ատրպատականը, Նոշիրականը, Կորդուքը, Կորդիքը, Տմորիքը, Մարերի երկիրը, Արցախը, Ուտին, Շակաշենը, Գարդմանաձորը, Կողթը, Կասպից երկիրը, Գուգարքը, Աղձնիքը, Մեծ Ծոփքը, Անգեղտունը և Անձիտը[3]։

Վերանվաճված երկրների այս ցանկը, անշուշտ, շատ կետերում վիճելի է ու անընդունելի։ Միանգամայն պարզ է, որ Մուշեղը չէր կարող նվաճած լինել Աղձնիքը և Կորդուքը, որոնք, համաձայն 363 թվի դաշինքի, տրվել էին Սասանյան Պարսկաստանին, և չէր կարող արշաված լինել նաև Մեծ Ծոփք, Անգեղտուն և Անձիտ, որոնք, ըստ նույն դաշինքի, միացվել էին Հռոմեական կայսրությանը։ Սակայն միանգամայն հավանական է, որ Փավստոսի վկայությունները Մուշեղ Մամիկոնյանի նվաճումների մասին իրենց հիմքում պատ-

[1] Նույնը, էջ 202։

[2] Տե՛ս Amm. Marc. XXIX. 1, 4.

[3] Փավստոս, V, գլ. Ը—ԺԹ, էջ 213—217։

մական են, թեև մենք չենք կարող այժմ ճշտիվ որոշել ու թվարկել այն ծայրագավառները, որ վերստին միացվել էին Արշակունյաց Հայաստանին։

Հռոմեական կայսրության ու Սասանյան Պարսկաստանի միջև զինադադարի կնքումից հետո (371/2 թ.)՝ Հայաստանում ևս հաստատվեց խաղաղությունը, և երիտասարդ Պապ թագավորը հնարավորություն ունեցավ զբաղվելու իր կիսավեր ու խախտված պետության ներքին գործերով։

Նա վճռական ու կտրուկ միջոցներ ձեռք առավ եկեղեցականության դեմ, որը քաղաքականապես և տնտեսապես անչափ զորեղացել էր Ներսես կաթողիկոսի ժամանակ։ Վերջինիս հիմնած բարեգործական ու վանական անթիվ հաստատությունները, որոնց պահպանության համար հարկավոր էին հսկայական միջոցներ, Պապի թագավորության ժամանակ ծանր բեռ էին դառել հայ ժողովրդի համար, որը երկարատև կռիվների ընթացքում տնտեսապես հյուծվել էր և խիստ աղքատացել։ Պապը անհրաժեշտ էր համարել փակել այդ հաստատությունները։

Անհանդուրժելի էին համարվել սնանկացած երկրի համար նաև եկեղեցական աճող կալվածատիրությունը և պտղի, տասանորդի ու եկեղեցական մյուս եկամուտները։

> «Նաև պտղիի ու տասանորդների կարգը,—վկայում է Փավըստոսը,—որ նախնյաց ժամանակներից սովորություն էր դարձած տալ եկեղեցուն՝ դրա մասին էլ հրաման տվեց երկրին, ոչ ոք չտա»։
>
> [«Եւ զկարգս պտղոյն և տասանորդացն, որ ի նախնեացն կարգեալ սովորութիւն էր տալ յեկեղեցին, վասն այնորիկ հանէր հրաման ընդ աշխարհ՝ զի մի՛ ոք տացէ»][1]։

Ագաթանգեղոսի ուշագրավ մի վկայությունից մեզ հայտնի է[2], որ Տրդատ Մեծը, գյուղական հոգևորականությունը տնտեսապես ապահովելու համար, նրան հատկացրել էր ավաններում «եօթն եօթն հողս երդոյ», այսինքն՝ յոթ երդի կամ ծխի հողամասեր[3]։ Պապ թագավորը, ինչպես վկայում է Փավստոսը, այդ յոթ հողաբաժիններից հինգը գրավել էր հօգուտ արքունիքի։

---

[1] Տե՛ս Փավստոս, V, գլ. ԼԱ, էջ 235։

[2] Ագաթանգեղոս, գլ. ՃԺԹ, 837, էջ 436 (Տփղիս, 1909)։

[3] Տե՛ս իմ աշխատությունները՝ «Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում», Երևան, 1925, էջ 13—17 և «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», Երևան, 1934, էջ 133—135, 197, 277 և 313—314։

*«Եվ, բացի այդ,—ասում է Փավստոսը,—Պապ թագավորը բռնագրավեց եկեղեցու հողերը, որ Մեծն Գրիգոր քահանայապետի ժամանակ Տրդատ թագավորը տվել էր եկեղեցուն Հայոց ամբողջ երկրում պաշտամունքի սպասավորության համար, որովհետև յոթ հողից հինգը գրավեց արքունիք և միայն երկու հող թողեց։ Եվ հողի համեմատ յուրաքանչյուր գյուղում թողեց երկուական անձ՝ մի երեց և մի սարկավագ, իսկ մյուսներին՝ երեցների ու սարկավագների եղբայրներին ու որդիներին վերցրեց իրեն մոտ սպասակալական ծառայության համար»։*

*[«Եւ հատ ևս յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ Մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ի սպաս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց։ Զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, և զերկուսն միայն թողոյր երկուս հողս։ Եւ ըստ հողոյն թողոյր երկուս-երկուս առ գիւղ մի երէց և սարկաւագ, և զայն ի սպասու կացուցանէր յիւր ի ծառայութեան զեղբարս և զորդիս երիցանցն և սարկաւագացն»]*[1]։

*Համաձայն Պապ թագավորի այս կարգադրության, ո՛չ միայն բռնագրավվում էր գյուղական հոգևորականությանը տրված հողերի մեծագույն մասը, այլև, ինչպես շատ ճիշտ նկատել է Աննինսկին*[2], *սահմանափակվում էր նաև եկեղեցականների դասի ազատությունը զինվորական ծառայությունից և պահանջվում էր, որ երեցների ու սարկավագների եղբայրներն ու որդիները մտնեն արքունի ծառայության մեջ։*

*Պապի վերոհիշյալ կարգադրությունները, որ մեծ կարևորություն ունեին նրա քայքայված ու կողոպտված թագավորության վերականգնման ու ուժեղացման համար, ուղղված լինելով հոգևորականության դեմ՝ առաջացնելու էին, հարկավ, եկեղեցականների կատաղի ու անհաշտ ատելությունը դեպի Պապը։ Այդ անսահման ատելությունը լիուլի արտահայտված է Փավստոսի գրվածքում, որի մեջ Պապը ներկայացված է ամենամռայլ գույներով, իբրև զզվելի մի հրեշ։*

*Փավստոսը, ավելի ճիշտ՝ նրան հիմք ծառայած աղբյուրները, երիտասարդ թագավորին վերագրում են զգալի արատներ, չարունակ նրան զրպարտում են և մինչև իսկ նրա մասին հերյուրում են*

---

1 **Փավստոս**, *V, գլ. ԼԱ, էջ 237։*

2 *Аннинский,* История армянской церкви, Кишинев, 1900, **էջ 31։**

անհեթեթ առասպելներ, որ իբր թե Փառանձեմը նորածին արքայորդուն նվիրել էր դևերին, որոնք օձերի կերպարանքով ապրում էին նրա ծոցում և վարում էին նրան ըստ իրենց կամքի[1]։

Միանգամայն պարզ է, որ Պապ թագավորի կերպարը հայկական ավանդության մեջ չարամիտ կերպով խեղաթյուրված է[2]։ Ժամանակակից Ամմիանոս Մարկելլինոսի մոտ, որը երիտասարդ այս թագավորի մասին տալիս է մանրամասն ու վստահելի տեղեկություններ, ո՛չ միայն մատնանշված են Պապի ողջամտությունն ու խիզախ քաջությունը, այլև պարզ կերպով ցույց է տրված, որ նա զոհ էր եղել խարդավանքների ու ստոր դավերի[3]։

Փավստոսը խիստ պախարակում է Պապի նաև մի քանի այլ արարքները, որոնք, ըստ երևույթին, պետական միջոցառումներ էին նրա ամայացած և խռովալից երկրի խաղաղեցման ու բնակչության շատացման համար։ Պապը, փակելով կուսանոցները, ինչպես կարելի է հետևցնել Փավստոսի վկայություններից, հրամայել էր, որ կույսերն ամուսնանան, թույլատրել էր ամուսնալուծությունը, չէր արգելել մեռելների վրա կոծ ու սուգ անելը, իսկ ամենագլխավոր նրա հանցանքն այն էր, որ հեթանոս հայերի նկատմամբ եղել էր հանդուրժամիտ[4]։

Ամենածանր զրպարտությունը Պապ թագավորի դեմ այն մեղադրանքն էր, որ իբր թե նա Ներսես կաթողիկոսին իր ապարանքն էր հրավիրել Եկեղյաց գավառի Խախ ավանում և ընթրիքի ժամանակ իր ձեռքով տվել էր նրան ըմպելիք և թունավորել էր[5]։

Թունավորման այս ամբաստանությունը, ինչպես այժմ արդեն բավարարաչափ պարզված է, ո՛չ միայն կասկածելի է, այլև բոլորովին անհիմն է։ Այս սուտ հերյուրանքը հերքված է թե նորագույն պատմագիտական երկերում և թե եկեղեցական պատմության մեջ[6]։

---

[1] Տե՛ս Փավստոս, *IV, գլ. ԽԴ և V, գլ. ԻԲ։*

[2] *Համեմատե՛* Գարագաշյան, *Քննական պատմութիւն Հայոց, Գ, էջ 124, 146 ևն. Լեո, Հայոց պատմություն, Ա, էջ 644—645.* Ն. Մուրադյան, *Քննական պատմութիւն Արշակ Երկրորդի և անոր Պապ որդւոյն, Աղեքսանդրիա, 1900, էջ 126—183 և ուրիշները։*

[3] *Amm. Marc.*, XXX. 1, 1—23.

[4] *Տե՛ս* Փավստոս, *V, գլ. ԼԱ։*

[5] *Նույնը, V, գլ. ԻԴ։*

[6] *Տե՛ս* Գարագաշյան, *Քննական պատմութիւն Հայոց, Գ, էջ 144—145. K. Aslan,* Etudes historiques, *էջ 196.* Ն. Մուրադյան, *Քննական պատմութիւն Արշակ Բ-ի և անոր Պապ որդւոյն, էջ 143—147.* Մ. Ա. Օրմանյան, *Ազգապատում, Կ. Պոլիս, 1912, էջ 218 և ուրիշները։*

Ինչպես շատ ճիշտ մատնանշել է նաև Մարկվարտը, Ներսես կաթողիկոսի թունավորման մասին տեղեկություն չէ ունեցել Ամմիանոսը, որը Պապ թագավորի միակ հանցանքը համարում է Գնելի և Արտավանի սպանությունը։ Բացի այդ, եթե Պապը, իրապես, թունավորած լիներ Ներսեսին, Կեսարիայի մետրոպոլիտ Բարսեղն իրեն ընթակա քահանայապետի սպանության համար Հայոց թագավորին պատասխանատվության կհրավիրեր[1]։

Ներսեսի մահից հետո Պապը կաթողիկոս նշանակեց Մանազկերտի եպիսկոպոս Հուսիկ-Շահակին[2], որն Աղբիանոսի տոհմից էր։ Ինչպես հայտնի է, Ներսեսի այս հաջորդը չէր ուղարկվել Կեսարիա ձեռնադրություն ստանալու Կեսարիայի մետրոպոլիտից։ Շնորհիվ դրան հայկական եկեղեցին խզեց այնուհետև իր հարաբերությունները Կեսարիայի հունական եկեղեցու հետ և կարողացավ դառնալ անկախ եկեղեցի։

Եկեղեցականների ու հռոմեասեր կուսակցության թշնամությունը դեպի Պապը, որը բուռն կերպով արտահայտված է Փավստոսի Պատմության մեջ, այնքան մեծ էր ու անհաշտ, որ վերջ ի վերջո երիտասարդ թագավորի կյանքի դեմ կազմվեց նողկալի դավադրություն, որի պարագլուխը դառավ հռոմեական զորավար Տերենտիոսը։

Հայաստանում գտնվող հռոմեական զորքերի այս հրամանատարը, ինչպես վկայում է Ամմիանոսը, «թեև արտաքուստ խոնարհ էր երևում և միշտ լուրջ կերպարանք ուներ, սակայն իր ամբողջ կյանքի ընթացքում խանդավառությամբ գրգռել էր երկպառակություններ»[3]։ Սա Վաղեսին գրած իր զեկույցների մեջ շարունակ հիշատակում էր Գնելի ու Արտավանի սպանությունը և առանձնապես շեշտում էր, որ երիտասարդ թագավորն ունի հակում դեպի ամբարտավան արարքներ և իր հպատակների վերաբերմամբ չափից դուրս անգութ է։

Այս գաղտնի զեկույցների պատճառով Պապը հրավիրվեց Վաղես կայսրի մոտ իբր թե կարևոր խորհրդակցության համար։ Սա-

---

[1] *Markwart,* Südarmenien und die Tigrisquellen, *էջ 157։*

[2] *Այս եպիսկոպոսը, ինչպես ենթադրում է Սեն-Մարտենը (տե՛ս* Lebeau, Histoire du Bas-Emprie, III, ***էջ 444, ծան. 3), Մեծ Հայաստանի «Իսակոկիս»*** *եպիսկոպոսն է, որը Սոկրատի Եկեղեցական պատմության մեջ հիշատակված է **364** թվի Անտիոքի ժողովի մասնակիցների թվում* (Socr., III, 25)*։ Ինձ հավանական է թվում, որ Փավստոսի մոտ «Յուսիկ» անունը աղավաղված ընթերցված է փոխանակ «Իսահակ»-ի։*

[3] ***Տե՛ս*** *Amm Marc.*, XXX, 1, 2.

կայն Կիլիկիայի մայրաքաղաք Տարսոնում պատվո պահակի պատըրվակով նա փաստորեն կալանքի տակ առնվեց։ Նա ո՛չ տեսակցություն կարողացավ ունենալ կայսրի հետ, ո՛չ էլ կարողացավ իմանալ իր շտապ հրավիրման պատճառը։ Բայց վերջապես նա ծածուկ տեղեկություն ստացավ, որ Տերենտիոսը նամակ էր գրել կայսրին և խնդրել, որ նա անմիջապես Հայաստան ուղարկե մի ուրիշ թագավոր։

Պապն իսկույն հասկացավ, որ իրեն մեծ վտանգ է սպառնում և որոշեց առանց ժամանակ կորցնելու փախչել Հայաստան։ Նա հավաքեց իր շքախումբը, երեք հարյուր սպառազեն ձիավոր զորքը և անվեհեր կերպով իրիկնապահին քաղաքից դուրս սլացավ, կազմելով իր ջոկատը սեպի ձևով։

Երկրի հրամանատարը, հենց որ այս մասին լուր ստացավ դարբասի մոտ պահակ կանգնած սպահից՝ նրա հետևից հասավ քաղաքի արվարձանում և աղաչեց ետ դառնալ, բայց հազիվհազ կարողացավ իր կյանքը փրկել։ Այնուհետև իսկույն նրա հետևից ուղարկվեց մի ամբողջ լեգեոն։ Սակայն երբ սրանք մոտեցել էին նրանց՝ Պապը ետ դարձավ և իր ամենաքաջ զինվորների հետ հարձակվեց հռոմեական զորքի վրա, կայծակի պես նետեր տեղալով այնպես, որ նրանց չդիպչեն. ուստի նաև այս զորքը սարսափած փախավ ու վերադարձավ քաղաք։

Այնուհետև այլևս վտանգ չկար, և Պապը երկու օր ու գիշեր ծանր երթից հետո հասավ Եփրատ գետի ափը։ Չգտնելով այստեղ նավեր՝ նրանք մեծ դժվարության մեջ ընկան, բայց շուտով միջոց գտան դուրս գալու իրենց ծանր դրությունից։ Թագավորն ու ավագները վերցրին գյուղերից գահավորակներ, ամրացրին տիկերի վրա և, նստելով դրանց մեջ ու քաշելով իրենց հետևից ձիերին՝ անցան մյուս ափը։ Իսկ մյուսները ձի նստան և անցան գետը լողալով։

Հայոց թագավորի փախուստի մասին լուրը, ասում է Ամմիանոսը, ապշեցրեց կայսրին և նա, վախենալով, որ Պապը կարող է այժմ դրժել իր հավատարմության երդումը, ուղարկեց իսկույն հազար թեթևազեն նետաձիգ հեծյալներ Դանիել կոմսի և Բարզիմեր տրիբունի հրամանատարությամբ, որ հետապնդեն փախստականներին ու ետ բերեն։

Սրանք երկրի այս տեղերին լավ ծանոթ լինելով՝ կարողացան առաջ անցնել և գրավեցին երկու իրար մոտ գտնվող ճանապարհները, որոնցով պետք է անցներ Պապը։ Բայց նրանց այս ծրագիրը չհաջողվեց բախտավոր մի դիպվածի պատճառով։

Հենց այդ ժամանակ մի ուղեոր էր գալիս, որը, տեսնելով, որ երկու ճանապարհը գրավել են զինվորները, շուզեց նրանց հանդիպել և ծածուկ կերպով գնաց շրջանցիկ ճանապարհով, որը ծածկըված էր մացառուտներով ու փշաթփերով, և դեմ դիպավ հոգնած հայերին։

Ուղևորին տարան Պապի մոտ, և նա գաղտնի կերպով պատմեց, ինչ որ տեսել էր։ Թաքցնելով վտանգը, թագավորը իր ձիավորներից մեկին ուղարկեց ծածուկ աջ ճանապարհով, որ նա նախապատրաստե օթևան և ուտելիք։ Սրա մեկնելուց հետո՝ նա ուղարկեց մի ուրիշ ձիավոր էլ ձախ ճանապարհով նույն նպատակի համար։

Այս երկու ձիավորը, որ ուղարկված էին հռոմեական զորքը մոլորեցնելու համար, ձերբակալվեցին, և Դանիելն ու Բարզիմերն ուրախ էին, որ Պապը շուտով կընկնի իրենց ձեռքը։ Բայց մինչդեռ նրանք սպասում էին այնտեղ՝ Պապն իր շքախմբի հետ գնաց ուղևորի առաջնորդությամբ այն արահետով, որը ծածկված էր մացառներով ու որով դժվար էր անցկացնել բարձած ձիերը, և խույս տալով, ազատվեց ու հասավ Հայաստան, ուր նրան երկրացիներն ընդունեցին ցնծալից ուրախությամբ։

Դանիելն ու Բարզիմերը, որ խաբված էին, վերադարձան կայսրի մոտ և շարունակ ենթարկվում էին ծաղրի ու հեգնանքի իրենց անշնորհքության ու անփույթության համար։ Եվ նրանք, որպեսզի իրենց մեղքը թեթևացնեն, աշխատեցին սուտ մեղադրանքներ բարդել Պապի վրա և համոզել կայսրին, որը խիստ դյուրահավատ էր, որ Պապը զարմանալի կերպով գիտե Կիրկեայի հմայությունների միջոցով մարդկանց մարմինները կերպարանափոխել ու ուժից գցել և որ նա կարողացել էր իրենց մշուշով պատել, իսկ իր ու իր մարդկանց կերպարանքները փոխել։ Ուստի եթե նա անպատիժ մնա՝ կարող է պատճառել մեծ չարիքներ[1]։

Պապ թագավորի ձերբակալության ու փախուստի մասին Ամմիանոսի հաղորդած տեղեկությունները, որ վերև բերված են համառոտ բովանդակությամբ, հետաքրքիր են մի քանի տեսակետից։ Նրանք պատկերավոր կերպով ներկայացնում են մեզ Պապի ու նրա հեծելազորի խիզախությունն ու անվեհերությունը, տալիս են կարևոր ցուցումներ չորրորդ դարի կենցաղի մասին և պարզում են նաև Պապի կախարդության ու դիվահարության մասին այն անհե-

---

[1] Տե՛ս *Amm. Marc.*, XXX, 1, 3—17.

*թեթ առասպելի ծագումը, որը, ինչպես վերև տեսանք, տարբեր բովանդակությամբ կրկնված է Փավստոսի Պատմության մեջ։*

*Մարկվարտը կարծում է, որ եթե հավանական համարվեն Փավստոսի հաղորդած տեղեկությունները Պապի երես դարձնելու մասին Հռոմեական կայսրությունից և նրա բարեկամության մասին Պարսկաստանի հետ՝ այդ անցքերը պետք է տեղի ունեցած լինեին, ինչպես այդ մատնանշված է Փավստոսի մոտ, Հայոց թագավորի Տարոնից վերադառնալուց հետո և նրա սպանությունից առաջ*[1]*։*

*Փավստոսի համապատասխան վկայությունները կարևոր ենք համարում մեջ բերել։*

*«Եվ Պապ թագավորը,—պատմում է Փավստոսը,—իր միտքը շուռ տվեց և իր սիրտը շեղեց Հունաց թագավորից և ուզեց սեր ու միաբանություն հաստատել Պարսից թագավորի հետ։ Նա սկսեց իրեն թիկունք դարձնել Պարսից թագավորին և ուղարկեց այնուհետև պատգամավորներ միաբանություն հաստատելու համար։ Պատգամավորներ ուղարկեց նա նաև Հունաց թագավորի մոտ, թե «բացի Կեսարիայից տասը քաղաք էլ մերն են՝ ետ տուր. նաև Ուռհա քաղաքը մեր նախնիքներն են շինել, ուստի եթե չես ուզում որ խռովություն լինի՝ տուր մեզ. եթե չտաս՝ մեր մեջ պատերազմ կծագի»։*

*Իսկ Մուշեղը և բոլոր Հայոց իշխանները շատ հորդորեցին թագավորին, որ իր ուխտը Հունաց թագավորության ու երկրի հետ չխզե, բայց նա չլսեց նրանց և երևան հանեց իր թշնամությունը, որ ուներ Հունաց թագավորի դեմ»։*

*[«Եւ շրջեաց զմիտս իւր թագաւորն Պապ և խոտորեաց զսիրտ իւր ի թագաւորէն Յունաց, և կամեցաւ խառնել զսէր իւր և առնել միաբանութիւն ընդ թագաւորին Պարսից։ Եւ սկսաւ թիկունս իւր առնել զարքայն Պարսից, և արձակել անդրէն հրեշտակս յաղագս միաբանութեան։ Եւ առաքէր հրեշտակս առ թագաւորն Յունաց, եթէ Կեսարիաւ հետ և տասն քաղաք մեր լեալ է, արդ ի բաց տուր. և զՈւռհա քաղաք շինեալ է նախնեացն մերոց. արդ եթէ ոչ կամիս խանգար ինչ առնել՝ տուր ի բաց. ապա թէ ոչ, կռուիմք մեծաւ պատերազմաւ։*

*Այլ Մուշեղ և ամենայն իշխանքն Հայոց շատ եդին ի մտի արքային, զի մի՛ քակեսցէ զուխտ յերկրէն թագաւորութենէն*

[1] *Տե՛ս Markwart,* Südarmenien und die Tigrisquellen, *էջ 152։*

Յունաց. և ոչ անսաց նոցա, և յայտնեաց զթշնամութիւն իւր՝ զոր ունէր ընդ թագաւորին Յունաց»]^1^։

Փավստոսի այս վկայությունների այն մասը, որ իբր թե Պապը Հռոմեական կայսրությունից ետ էր պահանջել Կեսարիան, Ուռհան և ուրիշ բազմաթիվ քաղաքներ, ինչպես դժվար չէ համոզվել, անհեթեթ ու խիստ միամիտ ամբաստանություններ են։ Որ վիճելի և կասկածելի է նաև Փավստոսի հաղորդած հիմնական տեղեկությունը, որ իբր թե Պապը, երես դարձնելով Հռոմից, ուզեցել էր անցնել Պարսկաստանի կողմը՝ այդ կարելի է հետևցնել Ամմիանոսի վկայությունից, որը պարզ ու որոշ մատնանշում է, որ Պապը, Տարսոնից Հայաստան վերադառնալուց հետո՝

«մեծ ուրախությամբ ընդունված լինելով իր հայրենակիցներից՝ անխախտելի կերպով հավատարիմ էր մնացել Հռոմին և ոչ մի խոսք ոչ մեկին չէր ասել վիրավորանքների մասին, որ ինքը կրել էր»[2]։

Միանգամայն հնարավոր է սակայն, ինչպես այդ կարելի է կռահել Ամմիանոսի ուրիշ ակնարկներից[3], որ Պապը, հավատարիմ լինելով Հռոմեական կայսրությանը, կարող էր, իր թագավորությունը փրկելու համար, աշխատած լինել լեզու գտնելու նաև Սասանյան Պարսկաստանի հետ։

Պապի այս ձգտումը չէր կարող, իհարկե, ընդունելի լինել կայսրության համար, որը, ինչպես շատ ճիշտ մատնանշել է Նյոլդեկեն, նպատակ էր դրել իրեն տիրապետելու Հայաստանին և Պապին իր ձեռքին գործիք էր դարձրել իր այդ նպատակին հասնելու համար[4]։

Պապի փախուստը Տարսոնից անհետևանք չմնաց։ Վաղես կայսրը, որ չէր կարող ներել Պապին նրա հանդուգն ազատումը ձերբակալությունից, գաղտնի հրաման ուղարկեց Հայաստանում գտնվող հռոմեական զորքերի հրամանատար Տրայանոսին, որը Տերենտիոսի հաջորդն էր, որ Հայոց թագավորին բռնությամբ կամ նենգությամբ ենթարկե մահապատժի։

Պապի սպանությունը, որ կատարվեց հայկական հողի վրա և հայ իշխանների ու մեծամեծների ներկայությամբ, ժամանակակից պատմագիր Ամմիանոսն անվանում է «գարշելի ոճրագործություն»։ Հռոմայեցիների գործած այս ոճիրը, որ մանրամասն նկարագրված է Ամմիանոսի և Փավստոսի պատմական երկերում, հարկ եմ հա-

---

1 **Փավստոս,** *V, գլ. լԲ, էջ 237—238։*

2 *Amm. Marc.*, XXX, 1, 15.

3 *Նույնը, XXX, 1, 11 և 2, 1։*

4 *Տե՛ս Th. Nöldeke,* Aufsätze zur persischen Geschichte, *էջ 102։*

մարում թարգմանաբար մեջ բերել ընդարձակ բովանդակությամբ։
1. Ամմիանոս, XXX, 1, 18—23՝

«Այսպիսով սաստկացավ կայսեր անհաշտ ատելությունը [դեպի Պապը] և օրավուր նոր նենգություններ էին դարբնվում, որպեսզի բռնությամբ կամ գաղտնի կերպով նրա կյանքը կարճվի։ Այս բանը ծածուկ գրությամբ հանձնարարվեց Տրայանոսին, որն այդ ժամանակ պաշտոնյա էր Հայաստանում և ղեկավարում էր ռազմական գործերը։

Սա, աշխատելով թագավորին խաբել գայթակղիչ խարդավանքներով՝ մերթ նրան հանձնում էր Վաղեսի նամակներն ի նշան սրա բարեմիտ տրամադրության և մերթ ինքը նրա մոտ խնջույքի էր գալիս առանց հրավերի. վերջ ի վերջո, երբ դավադրությունն արդեն կազմված էր՝ խոնարհաբար նրան հրավիրեց ճաշի։

Եվ թագավորը, ոչ մի վտանգ չզգալով, գնաց աներկյուղ և նստեց իրեն տրամադրված պատվավոր տեղում։ Երբ մատուցվեցին ընտիր քաղցրեղեններ և ընդարձակ դահլիճը դղրդում էր լարավոր ու փողավոր գործիքների հնչյուններից ու նաև երգերից, և երբ գինին արդեն գլուխները տաքացրել էր՝ ճաշկերույթի հրավիրողը [Տրայանոսը] ինքը դուրս գնաց ինչ-որ բնական կարիք բավարարելու պատրվակով և ներս եկավ ահեղատես բարբարոսներից մեկը, որ կոչվում էին սուպրեր։ Սուրը պատյանից հանած՝ նա իր շուրջն էր նայում դաժան ու վայրենի հայացքով, որպեսզի սպանե երիտասարդ թագավորին, որին նախապես բոլոր հնարավորություններից զրկել էին դուրս պրծնելու։

Թագավորը, որը հենց այդ ժամանակ իր բազմոցից մի փոքր կռացել էր դեպի մյուս կողմը, երբ նրան տեսավ, վեր կացավ և հանեց դաշույնը, որպեսզի իր կյանքը որքան հնարավոր է պաշտպանե, սակայն նա վայր ընկավ կրծքից խոցված, որպես ամոթալի մի զոհ, և նողկալի կերպով հոշոտվեց հաճախակի հարվածներով։ Այսպիսի անարգ նենգությամբ դյուրահավատությունը խարդավանվեց. օտարականի արյունը փրփրելով թափվեց շքեղ սեղանածածկոցների վրա դեմ հանդիման հյուրասիրության սաստուծո հյուրընկալության ժամանակ, որը նույնիսկ Եվքսինյան Պոնտոսի կողմերում խղճամիտ երկյուղածություն է արժանանում, և այնուհետև ճաշկերույթի մասնակիցները, չափից դուրս հագեցված, բոլորովին սարսափահար եղան և փախան»։

2. Փավստոս, V, գլ. ԼԲ՝

«Իսկ Հունաց իշխանները և նրանց զորքը դեռևս Հայոց երկրումն էին. իշխաններից մեկի անունն էր Տերենտ, մյուսինը՝ Ադե։ Եվ Հունաց թագավորը մի դեսպան ուղարկեց թաքուն կերպով իր զորքերի իշխանների մոտ Հայաստան ու հրաման տվեց Հայոց Պապ թագավորին սպանել։

Երբ Հայաստանում գտնվող Հունաց իշխանները թագավորի այդ հրամանը ստացան՝ հարմար մահացնելու դեպքի էին սպասում, որ Հայոց Պապ թագավորին սպանեն։ Արդ՝ մի հարմար ժամանակ պատահեց, երբ Հունաց զորքերի զորավարները, Տերենտն ու Ադեն, իմացան, որ Հայոց թագավոր Պապը մենակ է, իսկ բոլոր մեծամեծները և Հայոց զորքն այնտեղ չեն. և Հայոց Պապ թագավորը բանակ էր դրել Բագրևանդ գավառի դաշտում, Խու կոչված տեղում, իսկ Հունաց զորքերի բանակը գտնվում էր նույնպես այնտեղ՝ Հայոց թագավորի բանակի մոտ։ Ապա Հունաց զորավարները մեծ խնջույք սարքեցին և Հայոց մեծ թագավոր Պապին հրավիրեցին մեծ շքով ընթրիքի համաձայն նրա արժանավորության, ինչպես ընդունված էր հրավիրել հանդիսավոր խնջույքի թագավոր մարդկանց. և ամեն ինչ նրանք պատրաստել ու կազմել էին։

Պապ թագավորը եկավ ընթրիքի և մտավ ու նստավ կերուխում անելու։ Եվ երբ թագավորը մտավ Հունաց Տերենտ զորավարի խորանը՝ լեգեոնական վահանակիր հետևակները, վահանները ձեռներին և սակրերը գոտիներում, կանգնեցին ներսում ու խորանի պատերի չորս կողմը շրջապատեցին. նույնպես կազմ ու պատրաստ կանգնեցին և դուրսը՝ ներսից լավ զինված և վրայից շորեր հագած։

Իսկ Պապ թագավորն այնպես էր կարծում, որ այդ անում են իրեն պատվելու համար։ Եվ մինչդեռ նա ընթրիքի ժամանակ ուտում էր, սակրավոր զորքը չորս կողմը հետևում շարված՝ նրան շրջապատել էին։ Երբ սկսեցին գինի խմել՝ ուրախության առաջին բաժակը հրամցրին Պապ թագավորին. և իսկույն նվագեցին թմբկահարները, սրնգահարները, քնարահարները և փողահարները՝ ամեն մեկն իր արվեստով ու զանազան ձայներով։

Վահանավոր զորքին հրաման տվին. և երբ Պապ թագավորն ուրախության գինին ուներ իր ձեռքում և նայում էր գուսանների զանազան խմբերին, երբ նա ձախ ձեռքի մեջ, որը հենված էր արմունկին, բռնած ուներ մատներում ոսկե թասը, իսկ

աջ ձեռքը դրել էր Թրի կոթին, որ կապած ուներ աջ ազդրին, և երբ նա բաժակը բերանին էր տարել, որ խմե, իսկ աչքերը դեպի առաջ էր հառել և նայում էր գուսանների զանազան խմբերին՝ Հունաց զորքերին հրաման տրվեց աչքի ակնարկով։

Եվ լեգեոնական երկու սակրավորներ, որոնք ոսկեպորտ վահանները ձեռքերին հետևում կանգնած էին իբրև սպասավորներ՝ հանկարծ երկուսն էլ սակրերը բարձրացրին և հարվածեցին Պապ թագավորին. մեկը սակրով խփեց ուղիղ վզին, իսկ մյուս սակրավորը՝ աջ ձեռքի թաթին, որ Թրի կոթի վրա էր դրված. կտրեց և դեն ձգեց։ Պապ թագավորն անմիջապես ընկավ երեսը վար և թասով գինին ու նրա հետ խառնված վզի արյունն ընկան միասին բաժակակալ սկուտեղի վրա։ Պապ թագավորն անմիջապես մեռավ։

Երբ շփոթվեց տակնուվրա եղավ դահլիճը՝ Անձևացյաց գավառի տեր Գնելը վեր կացավ իր բազմած տեղից, հանեց իր սուրը և զարկեց ու սպանեց լեգեոնականներից մեկին, որոնք խփել էին թագավորին։ Ապա Հունաց Տերենտ զորավարը, հանելով իր սուրը, խփեց և Գնելի գլխից ցած գցեց գանգը աչքերի վրա։ Եվ ուրիշ ոչ մեկը ոչինչ նրանց չհանդգնեց ասել և ոչ մի խոսք»։

[«Այլ իշխանքն Յունաց և զօրքն նոցին տակաւին էին յերկրին Հայոց. և անուն իշխանացն՝ միումն Տէրէնտ, միւսումն Ադէ։ Եւ յղեաց դեսպան մի գաղտուկ թագաւորն Յունաց առ իշխանսն զօրացն իւրոց՝ որ էին յերկրին Հայոց, և հրաման տայր սպանանել զթագաւորն Հայոց զՊապ։

Եւ եղև իբրև ընկալան զայս հրաման ի թագաւորէն Յունաց իշխանքն իւր՝ որ էին ի Հայոց երկրին, սպասէին մահու ի դէպ՝ սպանանել զթագաւորն Հայոց զՊապ։ Եւ եղև ի դիպան ժամանակի իբրև գիտացին Տէրէնտն և Ադէն զօրավարքն զօրացն Յունաց՝ թէ միայն է թագաւորն Հայոց Պապ, և ամենայն մեծամեծքն և զօրքն Հայոց չէին անդ, և էր թագաւորն Հայոց Պապ բանակեալ ի դաշտին ի Բագրաւանդ գաւառի ի Խու անուն տեղւոյն, և բանակ զօրացն Յունաց բանակեալ էր անդէն մօտ առ բանակին Հայոց արքային. ապա զօրավարն Յունաց հաց մեծապէս գործեալ՝ յընթրիս հրաւիրեալ կոչեցին զմեծ թագաւորն Հայոց զՊապ մեծապէս ըստ արժանաւորութեան նորա, որպէս օրէն էր զայր թագաւոր ի հաց մեծ կոչել. և առնէին կազմութիւն պատրաստութեան։

*Եւ եկեալ թագաւորն Պապ յընթրիս, մտեալ բազմեցաւ յուտել և յըմպել։ Եւ իբրև մտանէր արքայն ի խորանն Տէրէնտի զօրավարին Յունաց, և լէգէոն սպարակիր հետևակն վահան ի ձեռն, սակուր զգօտւոյ, շուրջ ի ներքոյ զորմովք խորանին պատեալ պսակէին. սոյնպէս և արտաքոյ կազմէին ի ներքոյ կուռ վառեալք, և ի վերոյ հանդերձք զգեցեալք պատրաստէին։*

*Իսկ թագաւորն Պապ համարէր ի միտս իւր թէ ի պատիւ ինչ նորա զայն առնիցեն։ Եւ մինչ դեռ յընթրիսն ուտէր, սակրաւոր զօրքն ի թիկանց կուսէ նորա կարգեալք պսակեալք կային շուրջ զնովաւ յամենայն կուսէ։ Իբրև ընդ գինիս մտին, որպէս զառաջին ուրախութեանցն նուագն մատուցին արքային Պապայ, և առ հասարակ թմբկահարք, և սրնգահարք, քնարահարք և փողահարք իւրաքանչիւր արուեստօք պէսպէս ձայնիւք բարբառեցան։*

*Եւ վահանաւոր լեգէոնին հրաման ետուն. և մինչ դեռ թագաւորն Պապ զուրախութեան գինին ունէր ի մատունս իւր, և նայէր ընդ պէսպէս ամբոխ գուսանացն, ահեակ ձեռամբն յարմուկն՝ յոր յեցեալ բազմեալ էր՝ ունէր տաշտ ոսկի ի մատունս իւր, իսկ աջ ձեռնն եդեալ էր ի դաստապան նրանին՝ զոր կապեալն էր յաջու ազդերն իւրում, և մինչ դեռ բերանն ի բաժակին էր յըմպելն, և աչօքն յառաջ կոյս պշուցեալ հայէր ընդ պէսպէս ամբոխս գուսանացն, հրաման լինէր ակնարկելով զօրացն Յունաց։*

*Եւ լեգէոն սակրաւորքն երկու ի թիկանց կուսէ կային ի սպասու ոսկիկմբէ վահանօքն՝ յանկարծօրէն կից ի վեր առեալ զսակուրսն, զարկանէին թագաւորին Պապայ. մին կշիռ զուլն հարկանէր սակրաւն, և միւսն ևս սակրաւորն զաջ թաթ ձեռինն՝ որ կայր ի վերոյ դաստապանի նրանին՝ հարկանէր, կտրէր և ի բաց ընգենոյր։ Անդէն ի բերանս տապալէր թագաւորն Պապ. և գինին տաշտիւն և արիւնն պարանոցին նովաւ հանդերձ ի վերայ բաժակալ սկըտեղն անկանէր առ հասարակ. և անդէն սատակէր թագաւորն Պապ։*

*Ընդ շփոթելոյ տաճարին խռովութեան՝ Գնէլ տէր գաւառին Անձևացեաց յոտն կացեալ յիւրմէ բազմականէն, հանեալ զիւր սուսերն՝ հարկանէր զմի ի լեգէոնաց անդի սպանանէր, յայնցանէ՝ որ հարին զթագաւորն։ Ապա Տէրէնտ զօրավարին Յունաց զիւր սուսերն հանեալ ածէր, տարակաց ի գլխոյն Գնե-*

լոյ զսկաւառակն գլխոյն ի վերայ աչացն ի բաց ընգենոյր։ Եւ այլ ինչ որ ոչ կարաց յանդըգնել ասել ինչ ընդ նոսա և ոչ ինչ»][1]։

Ինչպես տեսնում ենք, Փավստոսի մոտ Պապ թագավորի եղեռնական սպանության նկարագրությունը մոտավորապես նույնն է, ինչ որ Ամմիանոսի մոտ։ Տեղ-տեղ հայկական ավանդությունն ունի նույնիսկ ուշագրավ մանրամասնություններ, որոնք, ըստ երևույթին, պատմական են։ Սակայն, ինչպես վկայում է Ամմիանոսը, Պապի սպանությունը տեղի էր ունեցել ոչ թե Տերենտիոս զորավարի, այլ Տրայանոսի դավադրությամբ, որը այդ ժամանակ հռոմեական կորքերի հրամանատարն էր Հայաստանում և այդ պաշտոնում հաջորդել էր Տերենտիոսին։

Հռոմեական կայսրության թելադրանքով կատարված վերոհիշյալ ծանր հանցագործությանը, որ տեղի էր ունեցել 374 թվի երկրորդ կեսում, սադրիչ էին հանդիսացել և գործակից, ինչպես հաղորդում է Ամմիանոսը, Հայաստանի «տեղական բնակիչներից մի քանիսը»[2] և, հավանորեն, նաև Հայաստանի սպարապետ Մուշեղ Մամիկոնյանը, ինչպես այդ պարզ ակնարկված է Փավստոսի Պատմության մեջ[3]։

Որ Արշակունիների թագավորության վարկը և հեղինակությունը այդ ժամանակ խիստ թուլացել էին նախարարական Հայաստանի բարձր խավերում՝ այդ պարզ երևում է դարձյալ Փավստոսի վկայությունից հայ մեծամեծների ժողովի մասին Պապի սպանությունից հետո։

«Եվ Հայոց բոլոր մեծամեծ իշխանները,—պատմում է Փավստոսը,—եկան հավաքվեցին միասին։ Թե Մուշեղ սպարապետը, թե Հայր մարդպետը և թե բոլոր իշխաններն ասում էին՝ «Ի՞նչ անենք, ինչպե՞ս վարվենք, մեր թագավորի համար վրեժխնդիր լինե՞նք թե ոչ»։ Վերջը խորհրդի մեջ ընդունվեց այս կարծիքը. «Մենք չենք կարող, ասացին, հեթանոս պարսիկների ծառայության տակ մտնել և Հունաց թագավորին թշնամի անել, նաև չենք կարող երկուսին թշնամի դարձնել, ո՛չ էլ կարող ենք ապրել առանց որևէ մեկի օգնության»։

Ապա խորհրդի մեջ որոշվեց այսպես. «Ինչ որ եղավ՝ եղավ. ավելի լավ է, որ մենք Հունաց թագավորին ծառայենք և Հունաց թագավորության իշխանությանը հնազանդվենք. ինչպես

[1] Տե՛ս Փավստոս, էջ 238—240։
[2] Amm. Marc., XXX, 1, 3.
[3] Փավստոս, V, գլ. Լե։

որ Հունաց թագավորության կամքն է, թող այնպես էլ մեզ հետ վարվի»։ Այլևս չմտածեցին վրեժ խնդրել կամ ուրիշ որևէ բան անել, այլ լուռ մնացին և գնացին»։

[«Եւ ժողովեցան եկին ամենայն իշխանքն Հայոց մեծամեծք ի մի վայր ի միասին, և Մուշեղ սպարապետն, և Հայր մարդպետ, և ամենայն իշխանքն ասէին. «Զի՞նչ արասցուք կամ զի՞նչ գործեսցուք, խնդրեսցո՞ւք զվրէժ թագաւորին մերոյ, թէ ոչ»։ Եւ ապա հաստատեցաւ այս բան ի խորհրդեանն, և ասեն. «Ոչ կարեմք հեթանոսաց ի պարսկաց ի ծառայութիւն մտանել և թշնամի առնել զթագաւորն Յունաց, և ոչ զերկոսեան թշնամի առնել, և ոչ առանց միոյ թիկանց կարեմք կեալ»։

Ապա եկաց այս բան ի խորհրդին, թէ զինչ եղև՝ ահա եղև, թող ծառայեսցուք թագաւորին Յունաց, կացցուք ի հնազանդութեան իշխանութեան թագաւորութեանն Յունաց. զիարդ և կամք իցեն թագաւորութեան Յունաց, արասցեն մեզ։ Եւ ոչ ինչ արկին ի միտ, կամ վրէժ խնդրել, կամ այլ ազգ ինչ իրս առնել. այլ անցին կացին լուռ»][1]։

Փավստոսի այս վկայությունից երևում է, որ Մուշեղ Մամիկոնյանը և մեծամեծ հայ իշխանները, որոնք լքել էին և չէին պաշտպանել Պապ թագավորին, այլևս չէին կարող հաստատուն նեցուկ համարվել Արշակունյաց թագավորության։

Պապը, ինչպես վերև տեսանք, թագավորել էր Հայաստանում ընդամենը հինգ տարի՝ 370—374 թ., սակայն եթե մենք նրան թագավորած համարենք Արշակ Բ-ից անմիջապես հետո՝ նրա թագավորության տևողությունը կարող ենք ընդունել յոթ տարի (367/8—374), ինչպես որ այդ մատնանշված է Խորենացու Պատմության մեջ։

Պապի անպատիժ սպանությունից հետո Արշակունյաց թագավորությունն արդեն մոտ էր իր մահվան ճգնաժամին և արագ կերպով գնում էր դեպի վերջնական կործանում։

---

[1] Փավստոս, V, գլ. ԼԴ, էջ 240։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ՎԱՐԱԶԴԱՏ, ԱՐՇԱԿ Գ, ԽՈՍՐՈՎ Դ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲԱԺԱՆՈՒՄԸ

**1. Վարազդատ։— 2. Բանակցությունները Պարսկաստանի և Հռոմեական կայսրության միջև Հայաստանի և Վրաստանի առթիվ։— 3. Ներքին խռովությունները Հայաստանում.— Մուշեղ Մամիկոնյանի և հռոմեական կուսակցության քաղաքական ծրագիրը.— մեղադրանքներ Մուշեղ Մամիկոնյանի դեմ.— Մուշեղի սպանությունը։—4. Հռոմեական կայսրության ծանր դրությունը վեստգոթերի ներխուժման պատճառով։—5. Պարսկաստանի հետ կնքված նոր դաշինքը, որ աննպաստ էր, Հայաստանի հռոմեասեր կուսակցության համար։— 6. Մանուել Մամիկոնյանի վերադարձը Հայաստան Շապուհ Բ-ի հանձնարարությամբ.— Վարազդատի պարտությունը Կարինի դաշտում և փախուստը։—7. Արշակ Գ-ի թագավոր կարգվելը Մանուել Մամիկոնյանի խնամակալության տակ.— Հայաստանը Սասանյան Պարսկաստանի գերագույն իշխանության ներքո։—8. Մանուել Մամիկոնյանի մասին Փավստոսի Պատմության վիպական-առեղծական վկայությունները։— 9. Հայաստանի խաղաղ վիճակը Պարսկաստանի ներքին խռովահույզ դրության պատճառով։— 10. Շապուհ Բ-ի բանակցությունները Թեոդոսիոս կայսեր հետ Հայաստանի բաժանման մասին։— 11. Հայաստանի բաժանումը։— 12. Խոսրով Դ.— Հայաստանի քաղաքական դրությունը 378 թվից մինչև 387 թիվը։— 13. Հայաստանը 387 թվի բաժանումից հետո.—Արշակ Գ և Խոսրով Դ՝ իբրև Հայաստանի անվանական թագավորներ։— 14. Հայաստանի բաժանման մասին Պրոկոպիոսի և Ղազար Փարպեցու վկայությունները։— 15. Արևմտյան կամ Հռոմեական Հայաստանի և Արևելյան կամ Պարսկական Հայաստանի սահմանները։— 16. Նորագույն պատմագետների կարծիքը Թեոդոսիոս Ա-ի արևելյան սխալ քաղաքականության մասին։— 17. Հայաստանի հետագա վիճակը։**

*Պապի սպանությունից հետո Վաղես կայսրը Հայաստանի թագավոր կարգեց պատանի Վարազդատին (374—378), որը հայ Արշակունիների տոհմից էր։ Փավստոսը նրան համարում է Պապի եղբորորդի[1]։ Վարազդատի թագավորության ժամանակ ևս Հայոց զորքերի սպարապետության պաշտոնը շարունակում էր վարել Մուշեղ Մամիկոնյանը։*

[1] Փավստոս, *V, գլ. լէ, էջ 248։*

Ամմիանոսի պատմելով՝ երբ Շապուհ Բ-ը իմացավ Պապի մահվան մասին, որին նա ամեն կերպ աշխատել էր գրավել իր կողմը՝ սաստիկ վշտացավ։ Նա խիստ վրդովված էր իր զորքերի պարտությունների և հռոմեական զորքի գործուն արիության պատճառով և, վախենալով, որ հետագայում դրությունն ավելի վատ կարող է լինել՝ ուղարկեց կայսեր մոտ դեսպան և հանձնարարեց համոզել Վաղեսին, որպեսզի Հայաստանը, որը մշտական աղետների պատճառ էր, բոլորովին վերացվի ու ոչնչացվի։ Իսկ եթե այդ չընդունվեր՝ պետք է ուրիշ պահանջ դրվեր, այն է՝ վերացնել Իբերիայի երկու մասի բաժանումը, դուրս հանել այնտեղից հռոմեական մասի զորքերը և տալ թագավորական իշխանությունը միմիայն Վարազ-Բակուրին, որին Իբերիայի թագավոր էր նշանակել Շապուհ Բ-ը։

Վաղես կայսրը, ասում է Ամմիանոսը, պատասխան տվեց, որ նա չէ կարող որևէ փոփոխություն մտցնել դաշնագրերի մեջ, որոնք ընդունված են երկուստեք համաձայնությամբ, ուստի և ինքը այդ դաշնագրերը պաշտպանելու է մեծ ուշադրությամբ։ Ի պատասխան կայսեր այս վճռին՝ Պարսից թագավորից ստացվեց նամակ ձմեռվա միայն վերջերին (376 թվի սկզբին), որը պարունակում էր մեծամիտ պահանջանքներ[1]։

Այնուհետև հարաբերությունները երկու պետությունների միջև սկսել էին դառնալ խիստ տագնապալի, ուստի և Վաղես կայսրը հրամայեց, որ անհապաղ Պարսկաստան գնան հեծելազորի առաջնորդ Վիկտորը և Միջագետքի դուքս Ուրբիկիոսը և հայտնեն Շապուհ Բ-ին կայսեր պարզ ու աներկդիմի վճիռը հետևյալ բովանդակությամբ՝

> «որ եթե թագավորն արդարության կողմն է և բավականանում է իր ունեցածով, ինչպես այդ անընդհատ նա կրկնում է՝ այդ դեպքում նա հանցանք է գործում, աչք դնելով Հայաստանին, որի բնակչությանը թույլ է տրված ապրել ըստ իր բարեհայեցողության։ Իսկ եթե, ինչպես այդ պայմանավորված է, հետևյալ տարվա սկզբին չվերադառնան անարգել Սուրմակին տրված օգնական զորքերը՝ նրան [թագավորին] կհարկադրեն կատարել այն, ինչ որ հրաժարվում է անել կամավոր կերպով»[2]։

Դեսպանությունը, ինչպես վկայում է Ամմիանոսը, գործել է հաստատապես և համարձակ, բայց, առանց որևէ հանձնարարական ունենալու, Հայաստանի մասերից ընդունել էր մի քանի փոքր գավառներ, որ իրեն առաջարկել էին։

[1] Տե՛ս Amm. Marc., XXX, 2, 1—3.

[2] Նույնը, XXX, 2, 4։

Երբ այս դեսպանությունը վերադարձավ՝ Վաղեսի մոտ եկավ Սուրենը, որն ըստ իր դիրքի թագավորից հետո երկրորդ անձն էր Պարսից պետության մեջ։ Սա առաջարկեց կայսրին նույն գավառները, որ ընդունել էին առանց երկար մտածելու Հռոմեական դեսպանները։ Թեև Սուրենին ընդունեցին սիրալիր կերպով և մեծ շքով, սակայն ետ ուղարկեցին ձեռնունայն ու չտվին այն, ինչ որ պահանջում է, և այնուհետև իսկույն սկսեցին մեծ պատրաստություններ տեսնել պատերազմական գործողությունների։ Նրանք նկատի ունեին, որ գարնան սկզբներին Վաղես կայսրը ունենալով երեք զորաբանակ, կներխուժե Պարսկաստան, ուստի և շտապ կերպով վարձում էին սկյութական օժանդակ զորքեր[1]։

Երբ տեղի էին ունենում վերոհիշյալ բանակցությունները (375 և 376 թթ.), որոնց ընթացքում առաջին անգամ քննության էր դրվել Հայոց թագավորության բաժանման խնդիրը՝ Հայաստանում վերսկսվել էին, ինչպես վկայում է Փավստոսը, ներքին խռովությունները, որոնց զոհը եղավ սպարապետ Մուշեղ Մամիկոնյանը։

Սկսած արդեն Պապ թագավորից Հայ Արշակունիները, ինչպես տեսանք, անունով էին միայն թագավորներ, չունեին նախկին հզորությունն ու հեղինակությունը և պարզապես խաղալիք էին Հռոմեական կայսրության ձեռին։

Պատմագիտական նորագույն երկերում բավարարաչափ ուշադրության չեն առնվել այն նոր մտայնությունն ու ձգտումները, որ այդ ժամանակ ունեցել է Հայաստանում հռոմեասեր կուսակցությունը։

Մուշեղ Մամիկոնյանը, որը պարագլուխն էր այդ կուսակցության, ըստ երևույթին, այլևս վստահություն չուներ Արշակունյաց թագավորության կենսունակության վրա, ուստի և, Հայաստանը պարսկական տիրապետության վտանգից փրկելու համար, նպատակահարմար էր համարում նրա պաշտպանությունն ապահովել Հռոմեական կայսրության միջոցներով ու օգնությամբ, դարձնելով նրան ամրացված ու անմատչելի մի պատվար կայսրության թիկունքում։

Եթե այս ծրագիրը իրագործվեր, ավելի քան հավանական է, որ Մեծ Հայաստանը ևս կմիացվեր կայսրությանը գրեթե նույն հիմունքներով, ինչպես Անդրտիգրիսյան նախարարական երկրները՝ Ծոփքը և Անգեղտունը, որոնք Հովիանոսի դաշնագրով տրվել էին կայսրությանը։

Մուշեղ Մամիկոնյանի և հռոմեասեր կուսակցության քաղա-

---

[1] Տե՛ս Amm, Marc., XXX, 2, 5—6.

քական այս նոր կողմնորոշումը, որ արժանի է հատուկ ուշադրության, պարզ ու որոշ մատնացույց է արված Փավստոսի մոտ։ Կարևոր նրա հատվածը անհրաժեշտ եմ համարում մեջ բերել ընդարձակ բովանդակությամբ։

«Հայոց Պապ թագավորի մահից հետո,—վկայում է Փավստոսը,—Հունաց թագավորը Հայոց աշխարհի վրա թագավորեցրեց Արշակունիների նույն տոհմից մի ոմն Վարազդատի։ Սա մեծ շքով եկավ Հայոց երկիրը և թագավորեց Հայոց երկրում։ Նա տարիքով մանուկ էր, լի արիությամբ, կորովի ձեռքերով, քաջ սրտով, բայց թեթև մտքի տեր էր, մանկաբարո, տղայահանճար ու մանկամիտ էր։ Բայց և այնպես, երբ նրան տեսան, հավաքվեցին նրա մոտ բոլոր հայ տոհմերը՝ մեծամեծներն ու նախարարները, որոնք ընդունեցին նրան և ուրախացան, որ նա իրենց թագավորն է։

Իսկ Հայոց սպարապետ Մուշեղը հայերին առաջնորդում էր, լավ պահպանում էր Հայաստանի սահմանները, ինչպես որ մեծապես վարժ էր բարեկարգ պահել աշխարհը, և բարի խրատներ էր տալիս մանուկ Վարազդատ թագավորին։ Նա միշտ հոգում էր Հայոց աշխարհի թագավորության համար, թե ի՛նչ եղանակով կամ ինչպե՛ս կարող կլինի երկիրը շեն մնալ, և միշտ բարեմտորեն աշխատում էր, որպեսզի թագավորությունը կարողանա հաստատուն լինել։

Նա խորհրդակցում էր Հունաց իշխանների հետ և նրանց միջոցով նաև կայսեր հետ, թե անհրաժեշտ է շինել Հայոց երկրում, ամեն մի գավառում, ամուր պարիսպներով շրջապատված քաղաքներ՝ յուրաքանչյուր գավառի մեջ կամ մի-մի քաղաք, կամ երկ-երկու, և հարկավոր է դրանք հաստատել Հայոց ամբողջ երկրում, իբրև զորանիստ կայաններ, մինչև Գանձակ սահմանային երկիրը, որը գտնվում է Պարսից կողմում ու Հայաստանի սահմանում. հարկավոր է նաև Հայոց բոլոր ազատներին դարձնել զինվոր կայսերական ծախքով, ինչպես և Հայոց աշխարհի զորքերը, որպեսզի այսպիսով բոլորովին ապահով լինեն իրենց թշնամիներից՝ Պարսից զորքերից։

Եվ Հունաց թագավորը մեծ ուրախությամբ հանձն առավ այդ անել, որպեսզի բոլոր այս միջոցառումներով աշխարհը հաստատուն մնա ու անխզելի կերպով ենթարկվի իրեն և որպեսզի Պարսից թագավորը չկարողանա Հայոց աշխարհն իրեն գրավել»։

[«Եւ եղև յետ մահուն Պապայ թագաւորին Հայոց, թագաւորեցոյց թագաւորն Յունաց զՎարազդատ ումն ի նմին տոհմէն Արշակունի ի վերայ աշխարհին Հայոց։ Եկն բազում շքով եմուտ յերկիրն Հայոց, և թագաւորեաց յերկրին Հայոց։ Եւ էր նա մանուկ յաւուրց, լի արութեամբ, կորովի ձեռօք, քաջ սրտիւ, և ի մտաց թեթև, մանկաբարոյ, տղայահանճար, մանկամիտ։ Բայց սակայն իբրև տեսին զնա ժողովեցան առ նա ամենայն ազգք Հայոց՝ մեծամեծք, նախարարք, և կամեցեալ խնդացին զթագաւորելն նորա ի վերայ իւրեանց։

Եւ սպարապետն Հայոց Մուշեղ առաջնորդէր Հայոց. և զգուշանայր զսահմանօքն Հայոց, որպէս սովոր էր կարգել զաշխարհ մեծապէս. և խրատ բարեաց թագաւորին մանկանն Վարազդատայ մատուցանէր։ Եւ հոգայր հանապազ վասն թագաւորութեան աշխարհին Հայոց, և զիարդ կամ որպէս չէն լինել մարթասցէ. և հանապազ երկս արկանէր բարեխորհուրդն, զի հաստատուն կալ կարասցէ թագաւորութիւնն։

Խորհէր ևս ընդ իշխանսն Յունաց, և նոքօք ընդ կայսերն, թէ պարտ է նոցա քաղաք մի շինել յերկրին Հայոց. ի մի մի գաւառսն, որ մին մի քաղաքս, որ երկուս երկուս ամուր պարսպաւորս զօրանիստս հաստատել ընդ ամենայն երկիրն Հայոց, մինչև ի Գանձակ սահման երկիրն, որ Պարսից կուսէ էր, Հայոց սահման էր. և զամենայն ազատսն Հայոց կայսերական թոշակօքն զինուորել, սոյնպէս և զօրաց երկրին Հայոց, զի այսպէս ամենայն զգուշութիւն լիցի առ ի թշնամեաց իւրեանց ի զօրացն Պարսից։

Եւ թագաւորն Յունաց յանձին ունէր մեծաւ խնդութեամբ առնել զայս. զի այսու ամենայնիւ աշխարհն հաստատուն լիցի և անշարժ ի նմանէն, զի մի՛ կարասցէ թագաւորն Պարսից յիւր վարել զաշխարհն Հայոց»][1]։

Փավստոսի Պատմության այս հատվածը, թեև վիպական բընույթի պատմվածք է, սակայն իր հիմքում պատմական է և արժանահավատ։ Հատվածի բովանդակությունից միանգամայն պարզ երևում է, որ Հայաստանի անկախության և Արշակունյաց թագավորության վերականգնման ու զորեղացման տեսակետից Մուշեղ Մամիկոնյանի և հռոմեական կուսակցության քաղաքական կողմնորոշումը նույնքան անբարենպաստ ու վտանգավոր է եղել, ինչպես Մերուժանի և պարսկական կուսակցության կողմնորոշումը։ Այս

[1] Փավստոս, V, գլ. ԼԴ, էջ 240—241։

*երկու կուսակցությունն էլ, զոհաբերելով Հայաստանի պետական ինքնակայությունը, տրամադիր են եղել հանձնել երկիրը հարևան հզոր պետություններին։*

*Իհարկե, իրենք՝ Արշակունիները, Պապը և Վարազդատը, որոնք ունեին մտերիմ կողմնակիցներ ու խորհրդատուներ, չէին կարող հանդուրժել իրենց թագավորական իշխանության նվազեցումը կամ ոչնչացումը և ձգտելու էին վերականգնել Արշակունյաց թագավորության հին վարկը և փայլը։ Հայոց թագավորության պահպանման ու ուժեղացման այս քաղաքականությունը, անշուշտ, ավելի էր համապատասխանում հայ երկրի իրական շահերին, քան քաղաքական վերոհիշյալ ընթացքը Մուշեղ Մամիկոնյանի։*

*Փավստոսի պատմելով՝ Սահառունյաց տոհմի Բատ նահապետը, որը Վարազդատի դաստիարակն էր, ամեն կերպ աշխատել էր գրգռել մանուկ թագավորին Մուշեղ Մամիկոնյանի դեմ։ Նրա հարուցած մեղադրանքները Մուշեղի դեմ, ինչպես մատնանշել է Մարկվարտը, անհիմն չէին[1]։*

*Ամենածանր մեղադրանքն այն էր, որ իբր Մուշեղ սպարապետի դրդումով ու խորհրդով էին սպանել ավել Վաղես կայսրը և հռոմեական զորավարները Վարազդատի հորեղբորը, Պապ թագավորին։ Բացի այդ, Բատ Սահառունին հասկացրել էր Վարազդատին, որ Մուշեղի ծրագրած կայսերական ծրագրով զինվորական վերակազմությունը և Հայոց երկրում քաղաք-ամրությունների կառուցումը, որոնք զորանիստներ էին լինելու հայկական ու հռոմեական զորքերի, կարող են ունենալ այն հետևանքը, որ Հայաստանը փաստորեն կդառնա անկցված ու անքակտելի մաս Հռոմեական կայսրության։*

*Վարազդատը, վրեժխնդիր լինելով իր հորեղբոր սպանության համար՝ դավադրություն կազմեց Մուշեղ Մամիկոնյանի կյանքի դեմ, և վերջինս սպանվեց ճշտիվ նույն եղանակով, ինչպես և Պապ թագավորը։ Մուշեղ սպարապետը, հրավիրված լինելով Վարազդատի մոտ խնջույքի, սրախողխող արվեց կերուխումի և ուրախության ժամանակ[2]։*

*Հայաստանում տեղի ունեցած այս ծանր անցքից հետո քաղաքական դրությունն Արևելքում հիմնապես փոխվեց ի նպաստ Սասանյան Պարսկաստանի։ Շապուհ Բ-ը, ինչպես վկայում է Ամմիանոսը[3], լուր ստանալով, որ Վաղես կայսրը պատերազմի նախապատրաստություններ է տեսնում և մտադիր է արշավել Պարս-*

---

1 *Տե՛ս Markwart,* Südarmenien und die Tigrisquellen, *էջ 69*—71*։*

2 Փավստոս, *V, գլ. Լե, էջ 242—244։*

3 *Amm. Marc.,* XXX, 2, 7—8.

*կաստան՝ խիստ զայրացավ և հրամայեց Սուրենին ետ վերցնել այն գավառները, որ ընդունել էին Վիկտորը և Ուրբիկիոսը։ Այդ փոքր գավառները, որ 376 թվի բանակցությունների ժամանակ ստացել էր Հռոմեական կայսրությունը, ինչպես մատնանշել է Ադոնցը*[1], *հավանորեն, Հաշտյանքը և Բալահովիտն էին, որոնք գտնվում էին Տավրոսյան լեռների և Արածանի գետի հյուսիսակողմում։*

*Համաձայն Շապուհ Բ-ի հրամանի, Սուրենն այս գավառները ետ վերցրեց առանց պատերազմի։ Հռոմեական կայսրությունը չկարողացավ հակահարված տալ և վրեժ առնել, որովհետև հենց նույն այս ժամանակ ապստամբել էին վեստգոթերը, որոնք ներխուժել էին Թրակիա և սպառնում էին կայսրության մայրաքաղաք Կոստանդնուպոլսին (377 թ.)։*

*Բարբարոսական ժողովուրդների հեղեղանման այդ առաջխաղացումը հարկադրեց Վաղեսին դուրս հանել Հայաստանից հռոմեական զորքերը և ուղարկել Թրակիա։ Նա նորից բանակցություններ սկսեց Շապուհ Բ-ի հետ և, ուղարկելով Պարսկաստան հեծելազորի հրամանատար Վիկտորին, հանձնարարեց նրան, ինչ գնով էլ լինի, համաձայնության գալ Հայաստանի խնդրում*[2]*։*

*Համաձայնությունը, ինչպես վկայում են Զոսիմոսը և Եվնապիոսը*[3], *կայացել էր, և խաղաղությունը պահպանվել էր, սակայն, դժբախտաբար, նրանք չեն հաղորդում այդ դաշինքի պայմանները։ Ենթադրում են, որ հռոմայեցիները, ընդունելով Պարսից դեսպան Սուրենի նախկին առաջարկը, հրաժարվել էին Հայաստանից և համաձայնել էին ստանալ վերոհիշյալ երկու գավառները՝ Հաշտյանքը և Բալահովիտը*[4]*։*

*378 թվի ապրիլ ամսին Վաղես կայսրն Անտիոքից գնաց մայրաքաղաք և մի քանի ամսից հետո Ադրիանուպոլիս քաղաքի մոտերքում ծանր պարտություն կրեց վեստգոթերից և սպանվեց (9 օգոստոսի 378 թ.)։*

*Վաղեսի մահից հետո Հռոմեական Արևմուտքի կայսր Գրատիանոսն իրեն կառավարչակից դարձրեց Թեոդոսիոսին (379—395), որը շարունակեց պատերազմը վեստգոթերի դեմ։ Կայսրության ճգնաժամային դրությունը տևեց մինչև 382 թիվը, և որովհետև*

---

[1] *Տե՛ս Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 44—45։*

[2] *Amm. Marc.*, XXXI, 7, 1—2.

[3] *Տե՛ս Zosimi,* Historia nova, IV, 21 *և Eunap.*, Exc. de leg., p. 21:

[4] *Տե՛ս Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 44.* Գարբճյան, *Տիեզերական պատմութիւն, Բ, էջ 514։*

*Թեոդոսիոսը հնարավորություն չուներ միջամտելու Մեծավոր Արևելքի գործերին՝ Հայոց թագավորությունը և Վարազդատը, բնականաբար, թողնվեցին բախտի քմահաճույքին։*

*Մուշեղ Մամիկոնյանի սպանությունից հետո Հայաստանի սպարապետ էր դառել Բատ Սահառունին, իսկ Մամիկոնյան տոհմի նահապետ՝ Վաչե Մամիկոնյանը։ Բայց նրանք իրենց այդ իշխանություններում երկար չմնացին։ Հռոմեական կայսրության և Սասանյան Պարսկաստանի միջև կայացած 377 թվի պայմանագրության համաձայն, որով որոշվել էր Հայաստանի քաղաքական ապագա վիճակը, Հայոց աշխարհի մեծագույն մասում նորից հաստատվեց պարսկական իշխանությունը։ Եվ այսպիսով, ինչպես տեսնում ենք. հռոմեասեր նախարարների ու եկեղեցականների բոլոր վերոհիշյալ հույսերն ի դերև ելան։*

*Քաղաքական դրության այս արմատական փոփոխման ժամանակ Պարսկաստանից Հայաստան եկավ, հավանորեն, Շապուհ Բ-ի համաձայնությամբ ու հանձնարարությամբ, Արտաշեն Մամիկոնյանի որդի Մանուել Մամիկոնյանը, որին գերի էին տարել Պարսից զորքերը։ Սա, լինելով Մամիկոնյան տոհմի ավագագույն անդամը՝ստացավ Վաչեի համաձայնությամբ իր տոհմի նահապետության իշխանությունը և շուտով՝ նաև Հայաստանի սպարապետության պաշտոնը։*

*Փավստոսի պատմության մեջ Մանուել Մամիկոնյանին վերաբերյալ մասը ևս[1], որ ունի վիպական-բանաստեղծական բնույթ, հիմնված է, մեծ մասամբ, պատմական հիշողությունների վրա։ Հավանորեն, պատմական պետք է համարել այն, որ Մանուել Մամիկոնյանը, ժամանելով Հայաստան, առաջարկել էր Վարազդատին, որը թագավոր էր նշանակված հռոմեական կայսեր կարգադրությամբ, հեռանալ Հայաստանից։*

*Փավստոսը պատմում է, որ Վարազդատի և Մանուել Մամիկոնյանի միջև տեղի ունեցավ պատերազմ Կարինի դաշտում, ուր Հայոց թագավորի զորքը մատնվեց պարտության։ Վարազդատն այնուհետև փախչում է Հռոմայեցոց երկիրը, իսկ Բատ Սահառունին գերի է բռնվում և Մանուելի հրամանով գլխատվում է[2]։*

*Այս հաղթությունից հետո Հայաստանում անվանական կերպով թագավորեց Մանուել Մամիկոնյանի և իր մոր՝ Զարմանդուխտի խնամակալության տակ Պապ թագավորի անչափահաս որդի*

[1] Փավստոս, V, գլ. Լէ—ԽԴ։

[2] Նույնը, V, գլ. Լէ։

*Արշակ Գ-ը (378—389), որին անվանական կերպով իշխանակից էր նրա փոքր եղբայր Վաղարշակը։*

*Մանուելի խնամակալության մասին կարևոր տեղեկություններ է հաղորդում Փավստոսը հետևյալ իր վկայության մեջ, որը համարվում է էապես ստույգ և պատմական։*

*«Իսկ Հայոց սպարապետ Մանուել զորավարը,—պատմում է Փավստոսը,—նվաճեց աշխարհը, ժողովեց իր շուրջը Հայոց բոլոր մեծամեծներին ու նախարարներին և դառավ նրանց առաջնորդն ու գլուխը։ Նա վարում էր իշխանությունը, հրամաններ էր տալիս աշխարհին թագավորի փոխարեն և պահում էր աշխարհը շեն վիճակում։*

*Եվ նա, վերցնելով Պապ թագավորի կին Զարմանդուխտ տիկնոջը և նրա Արշակունի որդիներին՝ պահում էր նրանց իբրև թագավոր և շրջեցնում էր պատվով։ Մեծ իմաստությամբ ու մեծ հաջողությամբ նա ղեկավարեց Հայոց աշխարհը ամբողջ իր կյանքի ընթացքում։ Արշակունի փոքր երեխաների անուններն էին՝ մեծինն Արշակ և փոքրինը Վաղարշակ։ Մանուել սպարապետը նրանց պահում ու մեծացնում էր իբրև սաներ, իսկ նրանց Զարմանդուխտ մորը մեծ շքեղությամբ պահում ու պատվում էր իբրև տիկնոջ»։*

*[«Եւ սպարապետն զորավարն Հայոց Մանուէլ նուաճեաց զաշխարհս, և զամենայն մեծամեծս և զնախարարսն Հայոց առ ինքն ժողովէր, և էր նա առաջնորդ և գլուխ նոցա. և վարէր զիւր իշխանութիւնն և տայր հրաման աշխարհի փոխանակ թագաւորի. և ունէր զաշխարհ ի շինութեան։*

*Եւ զկինն Պապայ արքայի զԶարմանդուխտ տիկին հանդերձ որդւովք Արշակունովք, առեալ զնոսա ի տեղի թագաւորի կալեալ ի պատիւ շրջեցուցանէր։ Մեծաւ իմաստութեամբ և բազում յաջողութեամբ աշխարհին Հայոց մեծապէս առաջնորդէր, որչափ եկաց ժամանակս։ Բայց անուանք պատանեկացն Արշակունեացն, անուն երիցուն՝ Արշակ, և կրտսերուն՝ Վաղարշակ։ Զնոսա առեալ Մանուէլն սպարապետն իբրև զսան սնուցանէր, և զմայրն նոցա զԶարմանդուխտ ի մեծի շքի տիկնութեան պատուէր»]*[1]։

*Սկզբնաղբյուրների ուշադիր քննությունը ցույց է տալիս, որ իր իշխանության սկզբից (378 թ.) մինչև իր մահը (շուրջ 384/5 թ.) Մանուել Մամիկոնյանը խաղաղ կերպով կառավարել էր Հայաս-*

---

[1] Փավստոս, *V, գլ. Լէ, էջ 251։*

տանը, գտնվելով Սասանյան Պարսկաստանի գերագույն իշխանության ներքո։ Հայաստան էր եկել, ինչպես, հաստատելով Ամմիանոսի հաղորդած տեղեկությունը[1], վկայում է նաև Փավստոսը, Սուրեն մարզպանը տասը հազար պարսկական հեծելազորով։

«Հայոց աշխարհը,— ասում է Փավստոսը,— տվին Սուրենի ձեռքը և հնազանդ էին Պարսից թագավորի հրամաններին. և սահմանեցին Հայոց աշխարհից Պարսից թագավորին հարկեր, որոշելով տալ ընծաներ ու նվերներ։ Նույնպես և Սուրեն մարզպանին սահմանեցին տուրքեր, ընծաներ ու ապրուստի համար մթերքներ, այսպես և տասը հազար հեծելազորին՝ դարման և կերակուր, որքան պետք էր»։

[«Տային զաշխարհն Հայոց ի ձեռն Սուրենայ, և հնազանդէին հրամանաց թագաւորին Պարսից. և կարգէին թագաւորին Պարսից յաշխարհէն Հայոց հարկս՝ տալ ընձայս և պատարագս։ Սոյնպէս և մարզպանին Սուրենայ հասս և կօշիկս և զպիտոյս զռճկացն. սոյնպէս և տասն հազարացն դարման և կերակուր ըստ պիտոյիցն»][2]։

Փավստոսի այս թանկարժեք վկայությունից պարզ երևում է, որ արդեն Մանուել Մամիկոնյանի խնամակալության ժամանակ Հայաստանը հարկատու երկիր էր դառել Պարսից թագավորության։

Պետք է մատնանշել սակայն, որ, հակառակ այս եզրակացությունների, պատմագետներից ոմանք ստույգ ու արժանահավատ են համարել Մանուելի մասին նաև Փավստոսի այն պատմվածքները, որոնք պարզապես վիպական ստեղծումներ են և հորինված են Մամիկոնյան Մանուելին փառաբանելու համար։

Փավստոսը պատմում է, որ Մանուելը, որը սկզբում բարեկամացել էր պարսիկների հետ՝ հետո, Մերուժան Արծրունու նենգամիտ դրդումով, նրանց թշնամացել էր և, հարձակվելով Սուրեն մարզպանի բանակի վրա՝ ամբողջ նրա զորքը կոտորել էր։ Այնուհետև մեծ պատերազմ էր սկսվել Պարսկաստանի հետ, և Մանուելը երեք մեծ ճակատամարտում հաղթել ու բնաջինջ էր արել իր դեմ ուղարկված պարսկական ահռելի բանակները, նաև կոտորել էր Մերուժանի ամբողջ զորքը և սպանել էր իրեն՝ Մերուժանին։ Փավստոսի պատմելով՝ այս մեծ հաղթություններից հետո՝ Հայաստանը, թոթափած լինելով Պարսից լուծը, յոթ տարի ապրել էր խաղաղ ու անդորր Մանուելի իշխանության ներքո[3]։

---

[1] Amm. Marc., XXX, 2, 7—8.

[2] Փավստոս, V, գլ. ԼԸ, էջ 253։

[3] Նույնը, V, գլ. ԼԸ—ԽԳ։

Փավստոսի Պատմության վիպական-ստեղծական այս հատվածները, որ պատմական են համարել հայ պատմագետներից շատերը[1], չեն ստուգվում հունա-հռոմեական աղբյուրների վկայություններով և ունեն հեքիաթային բնույթ։ Շատ պարզ է, որ անդամատված և քայքայված Հայաստանը, որի ռազմական ուժն այդ ժամանակ շատ փոքր էր, չէր կարող պատերազմ վարած լինել հզոր Պարսկաստանի դեմ։

Կարելի է ճիշտ համարել միայն այն, որ Մանուել Մամիկոնյանի խնամակալության ժամանակ Պարսկաստանը վարել էր Հայաստանում զգուշավոր ու մեղմ քաղաքականություն, և հայ ժողովուրդը ազատ շունչ էր քաշել արտաքին ու ներքին կռիվների ծանր ցնցումներից հետո։

Մանուելի իշխանության հենց սկզբում, 379 թվին, Պարսկաստանում վախճանվել էր Շապուհ Բ-ը (309 կամ 310—379 թ.)։ Նրան հաջորդել էր ծերունի Արտաշիր Բ-ը (379—383/4), որին գահընկեց արին մեծամեծները։ Այնուհետև թագավորեցին Շապուհ Բ-ի որդիները՝ Շապուհ Գ-ը (383/4—388/9) և Վռամ Դ-ը (388/9—399), որոնց երկուսին էլ սպանեցին ազնվականները։

Հավանորեն, Սասանյան Պարսկաստանի խառնակ ու խռովահույզ ներքին այս դրությունն էր գլխավոր պատճառներից մեկը, որ 379 թվից հետո հայ ժողովուրդը համեմատաբար խաղաղ կյանք ունեցավ, իսկ չորրորդ դարի վերջերում հայերեն նշանագրերի գյուտով հզոր մի զենք ձեռք բերեց իր ինքնապաշտպանության և ինքնուրույն կուլտուրական զարգացման համար։

382 թվին Թեոդոսիոս Ա-ը (379—395) պարտության մատնեց ապստամբած վեստգոթերին, որոնք այնուհետև հավատարիմ մնացին կայսրությանը մինչև Թեոդոսիոսի մահը։ Շատ պարզ է, որ այս հաղթությունից հետո Հռոմեական կայսրությունն աշխատելու էր կարգավորել քաղաքական խճճված դրությունը նաև Մերձավոր Արևելքում։ Եվ ուշագրավ է, որ արդեն 383 թվին հռչակավոր հույն ճարտասան ու փիլիսոփա Թեմիստիոսը Թեոդոսիոս կայսեր ներկայությամբ արտասանած իր ճառում ասել էր, որ հայերին, որոնք Թեոդոսիոսի իշխանության սկզբներին զենքը ձեռներին թշնամի են եղել Հռոմեական կայսրության՝ Թեոդոսիոս կայսրը, ինչպես հույս

---

[1] Տե՛ս Գարագաշյան, Քննական պատմութիւն Հայոց, Գ, էջ 172—179. Լեո, Հայոց պատմութիւն, Ա, էջ 663—666. K. Aslan, Études historiques sur le peuple arménien, էջ 198 և ուրիշները։

կա, կկարողանա, ինչպես նա սովոր է, քաղցրությամբ ու առանց արյունհեղության գրավել հռոմայեցիների կողմը[1]։

Եվ, իրավ, Հայաստանի խնդիրը լուծվեց առանց բարդությունների 384—387 թվերին։

Ինչպես հաղորդում են հունա-հռոմեական աղբյուրները, 384 թվին Կոստանդնուպոլիս եկավ Շապուհ Գ-ի ուղարկած դեսպանությունը, որն իր հետ բերել էր կայսեր համար հարուստ նվերներ՝ թանկագին քարեր, մետաքս ու նույնիսկ փղեր, և որը ծանուցել էր կայսրին, ինչպես այդ սովորություն էր երկու պետությունների մեջ, Շապուհ Գ-ի գահակալության մասին[2]։ Ենթադրում են, որ այս դեսպանությունը նաև որոշ առաջարկություններ էր արել խաղաղության կնքման ու Հայաստանի բաժանման մասին։

Այնուհետև, 386 թվին Պոլիս եկավ պարսկական երկրորդ պատգամավորությունը, իսկ ապա, ինչպես հաղորդում է Կլավդիանոս բանաստեղծը, Թեոդոսիոս կայսրը Տիզբոն ուղարկեց իբրև դեսպան Ստիլիքոնին, որի միջնորդությամբ, ինչպես կարծում են, 387 թվին կնքվեց խաղաղության դաշինքը և համաձայնություն կայացավ Հայաստանի մասին[3]։

Պետք է ասել, որ Հայաստանի բաժանման տարեթվի մասին ուրիշ կարծիք ունեն Սեն-Մարտենը, Նյոլդեկեն, Մարկվարտը և ուրիշները, որոնք Հայաստանի վերջնական բաժանումը ենթադրում են 389 կամ 390 թվին[4]։ Սակայն հավանական կարելի է համարել առաջին ենթադրությունը, որովհետև, ինչպես մանրամասն ցույց է տվել Գյուտերբոկը, այդ կարծիքը համապատասխանում է հայկական աղբյուրների և, գլխավորապես, Ղազար Փարպեցու ճշգրիտ վկայություններին[5]։

---

[1] *Տե՛ս Themistios,* Oratio XVI. *Համեմատե՛* Գարբճյան, *Տիեզերական պատմություն, Բ, էջ 519։*

[2] *Տե՛ս Orosius,* VII, 34. *Socrates,* Eccles. hist., V, cap. XII (Oxford, 1893). *Marcellinus,* Chron. a. 384 *և ուրիշ.։*

[3] *Տե՛ս* Կ. Գյուտերբոկ, *Հռովմեական Հայաստան և հռովմեական սատրապություններ Դ—Զ դարերում, թարգմ. Մ. Նորշուանի, Վիեննա, 1914, էջ 16—17. Norman H. Baynes,* The Cambridge Medieval History, vol. I, 1936, *էջ 240* Հ. Գելցեր, *Համառոտ պատմություն Հայոց, թարգմ. Գր. Գալեմքյարյանի, Վիեննա, 1897, էջ 10.* Հ. Հյուբշման, *Հին Հայոց տեղվոյ անունները, թարգմ. Բ. Պիլեզիկճյանի, Վիեննա, 1907, էջ 34 և ուրիշները։*

[4] *Տե՛ս Lebeau,* Histoire du Bas-Empire, t. IV, Paris, 1824, *էջ 265. Nöldeke,* Aufsätze zur persischen Geschichte, Leipzig, 1887, *էջ 103. Markwart,* Südarmenien und die Tigrisquellen, *էջ 126 և ուրիշները։*

[5] *Տե՛ս* Կ. Գյուտերբոկ, *Հռովմեական Հայաստան, էջ 22—27։*

Հայկական մատենագիրները, Փավստոսը և Ղազար Փարպեցին, նույն այս ժամանակաշրջանի պատմությունը տալիս են ընդարձակ ու հանգամանորեն։

Մանուել Մամիկոնյանը, որը վախճանվել էր մոտավորապես 384/5 թվերին, ինչպես հաղորդում է Փավստոսը, իր մահից առաջ, Հայոց աշխարհի վրա թագավորեցրել էր Արշակ Գ-ին, որը դեռևս անչափահաս երեխա էր, և հատուկ գրությամբ Հայաստանը և Հայոց թագավորին «հանձնել էր» հռոմեական կայսրին[1]։

Մենք արդեն վերև մատնանշել էինք, որ Արշակ Գ-ի թագավորությունը Հայաստանում ավելի անվանական էր, քան իրական։ Եվ ուշագրավ է այս տեսակետից, որ «Նշանագիր կարգաց բանից Եզնկանն երիցու» յոթերորդ դարի հայտնի գրվածքում Մանուել Մամիկոնյանի խնամակալության և Արշակ Գ-ի թագավորության ամբողջ ժամանակաշրջանը համարվում է Պարսից տիրապետության շրջան և անվանված է՝ «օտարակալութիւն»։

Ինչպես վկայում է Եզնիկը, Արշակ Բ-ից հետո Հայաստանում թագավորել էր նրա որդին Պապը, իսկ

«յետ նորա Վարազդատ նմին թագաւորութեանն տոհմէ, որ ապա օտարակալութիւն։ Ապա Խոսրով ոմն ի նմին տոհմէ թագաւորացն Հայոց. առ սովաւ բաժանեցին զերկիրն Հայոց ընդ երկու՝ թագաւորն Յունաց և թագաւորն Պարսից. Պարսից կողմանն Խոսրով թագաւորէ, մասինն Յունաց աշխարհին՝ Արշակ ոմն ի նմին տոհմէ ի թագաւորէ, հրամանաւ Յունաց թագաւորին»[2]։

Մանուել Մամիկոնյանի մահից հետո (384/5), որը տեղի էր ունեցել պարսկական-հռոմեական վերոհիշյալ բանակցությունների ժամանակ, Սասանյան Պարսկաստանը նպատակահարմար համարեց Հայաստանի թագավորությունը տալ անվանական կերպով ո՛չ թե Արշակ Գ-ին, այլ պատանի Խոսրով Դ-ին (385—388), որն Արշակունիների հայ թագավորական տոհմից էր։

Այդ մասին ուշագրավ են ու հետաքրքիր Փավստոսի ու Փարպեցու վկայությունները, որոնցից դժվար չէ հետևցնել, որ Խոսրով Դ-ին Հայաստանի թագավոր էր կարգել Շապուհ Գ-ը (383/4—338/9) Մանուելի մահից անմիջապես հետո և պարզապես 387 թվի դաշնագրությունից առաջ։ Այդ վկայությունները, որ խիստ կարևոր են հայ վերջին Արշակունիների մութ ու խճճված ժամանակա-

[1] Փավստոս, V, գլ. ԽԴ, էջ 264։

[2] Տե՛ս «Սամուէլի քահանայի Անեցւոյ, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», հրատ. Ա. Տեր-Միքելյանի, Վաղարշապատ, 1893, ծան. 22, էջ 267։

գրության ճշտման համար՝ անհրաժեշտ եմ համարում մեջ բերել ընդարձակ բովանդակությամբ։

1. Փավստոս, VI, գլ. Ա՝

«Ապա Հայոց Մանուել զորավարի մահից հետո՝ Արշակի թագավորությունը ոչ մի կերպ չկարողացավ հաստատվել երկրում, այլ Հայոց նախարարներից շատերը նրանից անջատվեցին ու գնացին Պարսից թագավորի մոտ և Հայոց աշխարհը հանձնեցին նրան ու խնդրեցին նրանից Արշակունի թագավոր։

Եվ նա մեծ ուրախությամբ հանձն առավ իր ձեռքով ու կարգադրությամբ տալ Հայոց թագավորության միևնույն տոհմից Արշակունի թագավոր, որպեսզի Հայոց աշխարհը նրա միջոցով ինքը գրավե։ Ապա նա գտավ նույն տոհմից Խոսրով անունով մի մանուկ, թագ դրեց նրա գլխին և նրան կին տվեց իր Զրվանդուխտ քրոջը. նա ուղարկեց նրա հետ իրեն ենթակա բոլոր զորքերը և Խոսրով թագավորին տվեց իբրև դաստիարակ Զիկ նվիրակին։ Եվ նրանք եկան հասան Հայոց աշխարհը։

Երբ Արշակ թագավորը սրանց տեսավ՝ հեռացավ տեղի տըվեց և գնաց Հունաց սահմանները, որ թիկունք էին Հայոց Արշակ թագավորին. իսկ Խոսրովին թիկունք էր Պարսից թագավորը։

Այնուհետև Հունաց զորքերն օգնության եկան թագավորին և Արշակ թագավորը Եկեղյաց գավառի կողմերումն էր. իսկ Պարսից զորքը և Խոսրով թագավորն Այրարատ գավառումն էին։ Ապա Հունաց և Պարսից երկու թագավորների դեսպաններն ու պատգամավորները իրար մոտ երթևեկեցին ու այնուհետև Հունաց թագավորը և Պարսից թագավորը խորհուրդ արին և իրար հետ համաձայնության եկան»։

[«Ապա յետ մահուն Մանուէլի զօրավարին Հայոց ոչ իմն կարաց հաստատել ի վերայ աշխարհի թագաւորութեանն Արշակայ. այլ բազումք ի Հայոց նախարարացն անտի ելին զատեան գնացին առ թագաւորն Պարսից, և մատնեցին նմա զաշխարհն Հայոց. և խնդրեցին ի նմանէ թագաւոր Արշակունի։

Եւ նորա յանձին կալեալ մեծաւ խնդութեամբ ընդ իւր ձեռն տալ իւրով բանիւ ի նմին տոհմէ ի թագաւորութենէն Հայոց Արշակունի, և նովաւ յինքն գրաւել զաշխարհն Հայոց։ Ապա գտանէր ի նմին տոհմէ մանուկ մի անուն Խոսրով, և կապեաց թագ ի գլուխ նորա. և ետ նմա կին զքոյր իւր զԶրուանդուխտ, և արար ընդ նմա զամենայն զզօրս զօրութեան իւրոյ. և Զիկ

նուիրակ դաստիարակ ետ արքային Խոսրովայ. և եկին Հասին յաշխարհն Հայոց։ Իբրև ետես Արշակ արքայ զնոսա, մերժեցաւ տեղի ետ չոգաւ գնաց ի սահմանս Յունաց. և էին թիկունք Արշակայ թագաւորին Հայոց. և Խոսրովու՝ թագաւորն Պարսից։

Ապա եկին զօրքն Յունաց թագաւորին ի թիկունս. և թագաւորն Արշակ զԵկեղեաց գաւառաւ, և զօրքն Պարսից և արքայն Խոսրով յԱյրարատ գաւառին։ Ապա դեսպանք և հրեշտակք երկուց թագաւորացն՝ Յունացն և Պարսից, միմեանց առ միմեանս երթևեկէին։ Եւ այնուհետև առնէ խորհուրդ միաբանութեան հաւանութեան ընդ միմեանս թագաւորն Յունաց և թագաւորն Պարսից»][1]։

2. Ղազար Փարպեցի, I, գլ. Զ՝

«Երբ Արշակունիների թագավորությունը բաժանվեց երկու մասի և Հայոց աշխարհի արևմտյան կողմը հնազանդեցվեց Հունաց թագավորին և դրվեց նրա տերության իշխանության տակ, իսկ արևելյան կողմը ենթարկվեց դառն ու բռնակալական ծառայությամբ Պարսից թագավորին՝ այնուհետև Պարսից թագավորին բաժին ընկած մասի Հայոց նախարարները գնացին և խնդրեցին իրենց թագավոր համաձայն բնիկ նախնի կարգի Արշակունիների ազգից։

Եվ Պարսից Շապուհ թագավորը, կատարելով նրանց խնդիրքը՝ տվեց Արշակունիների ազգից նրանց թագավոր, որի անունն էր Խոսրով։ Իսկ մինչ այդ նախկին Հայոց թագավոր Արշակը միահեծան թագավորում էր Հայոց ամբողջ աշխարհի վրա»։

[«Եւ ի բաժանելն զթագաւորութիւն Արշակունւոյն յերկուս, առ ի հնազանդեցուցանել զկողմն արևմտից աշխարհիս Հայոց՝ թագաւորին Յունաց ընդ իշխանութեամբ իւրոյ տէրութեանն, և զկողմն արևելից խոնարհեցուցանելով դառն և բռնաւոր ծառայութեամբ՝ արքային Պարսից՝ երթեալ այնուհետև նախարարքն Հայոց ի վիճակէ մասին արքային Պարսից՝ խնդրէին իւրեանց թագաւոր ըստ բնիկ նախնի կարգին յազգէն Արշակունեաց։

Եւ արքային Պարսից Շապհոյ կատարեալ զհայցուածս նոցա՝ շնորհէր նոցա թագաւոր Խոսրով անուն յազգէն Արշակունեաց։ Քանզի նախզոյն թագաւորն Հայոց Արշակ ունէր միահեծան զթագաւորութիւնն ի վերայ ամենայն աշխարհիս Հայոց»][2]։

---

[1] Տե՛ս Փավստոս, էջ 269—270։

[2] Տե՛ս Ղազար Փարպեցի, Տփղիս, 1904, էջ 8։

*Մեզ բերված այս երկու վկայություններից ավելի հավանական է, իմ կարծիքով, առաջինը։ Խոսրով Դ-ը թագավոր էր դրվել Հայոց աշխարհի ո՛չ թե Հայաստանի վերջնական բաժանումից հետո, որը, ինչպես տեսանք, տեղի էր ունեցել 387 թվին, այլ 384 թվի բանակցություններից և Մանուել Մամիկոնյանի մահից (384/5 թ.) հետո, ինչպես այդ վկայում է Փավստոսը։*

*Սակայն Փարպեցու վկայությունը, որին հիմք է ծառայել մեզ անհայտ մի հին աղբյուր, տալիս է մեզ երկու խիստ կարևոր տեղեկություններ։ Ինչպես շատ ճիշտ մատնանշել է Գյուտերբոկը*[1]*, Փարպեցու վերոհիշյալ վկայությունից մենք գիտենք այն Պարսից թագավորի անունը, որի հետ կնքված է եղել Հայաստանի բաժանման դաշինքը։ Պարսից այդ թագավորը, ինչպես վկայում է Փարպեցին, Շապուհ Գ-ն էր (383/4—388/9), իսկ դաշնագրի կնքումը, ինչպես տեսանք, տեղի էր ունեցել 387 թվին։*

*Ոչ պակաս կարևոր է Փարպեցու հաղորդած նաև մի այլ տեղեկությունը, որ բաժանումից առաջ Արշակ Գ-ը թագավոր է եղել ամբողջ Հայաստանի։ Նրա այդ վկայությունից երևում է, որ հռոմեական զորքերի ու Վարազդատի Հայաստանից հեռանալուց հետո մինչև Հայաստանի բաժանումը, այսինքն՝ 378 թվից մինչև 387 թիվը, Հայոց ամբողջ երկիրը, բացի Ծոփքից, Հանձիթից և Անգեղտուն գավառից, թերևս նաև Բալահովիտից ու Հաշտյանքից, որոնք 363 և 376 թվերին տրվել էին Հռոմեական կայսրությանը, եղել են Պարսից տիրապետության տակ։*

*Հասկանալի է դառնում այսպիսով, թե ինչու 385 թվին, պարսկա-հռոմեական բանակցությունների ժամանակ, Արշակ Գ-ը, ինչպես վկայում է Փավստոսը, գնացել էր ո՛չ թե Կարին, այլ «Հունաց սահմանները» ու «Եկեղյաց գավառի կողմերը»։*

*Ինչպես տեսնում ենք, միանգամայն անընդունելի է Ասատուրյանի կարծիքը*[2]*, որ իբր թե 378 թվին, համաձայն Վաղեսի ու Շապուհ Բ-ի միջև կնքված դաշինքի, Հայաստանի արևմտյան շրջանները՝ Եկեղյաց գավառը, Դերջանը, Խորձյանը և Կարինը՝ տրվել էին Հռոմեական կայսրությանը։*

---

1 *Տե՛ս* Գյուտերբոկ, *Հռովմեական Հայաստան, էջ 22։*

2 *Տե՛ս* Ասատուրյան, *Քաղաքական վերաբերություններ, էջ 313։ Նման սխալ ենթադրություններ են արել Խորենացու ազդեցությամբ նաև՝* Գաբրճյան, *Տիեզերական պատմություն, Բ, էջ 519.* Լեո, *Հայոց պատմություն Ա, էջ 668.* *K. Aslan,* Études historiques sur le peuple arménien, *էջ 198 և ուրիշները։*

Հայաստանի բաժանման մասին ուշագրավ տեղեկություններ ու դիտողություններ, որ միանգամայն պատմական են ու արժանահավատ, մեջ են բերված նույնպես Փավստոսի վերոհիշյալ վկայության (VI, գլ. Ա) շարունակության մեջ։

«Եվ նրանք [Հունաց ու Պարսից թագավորները],—ասում է Փավստոսը,— լավ համարեցին ամենից առաջ Հայոց աշխարհը բաժանել իրենց մեջ երկու մասերի։ Նրանք ասում էին՝ թե «Մեր միջև գտնվում է այս հզոր ու հարուստ թագավորությունը. լավ կլինի, որ այս միջոցով կարողանանք վերացնել ու խորտակել այս թագավորությունը. նախ երկու մասի բաժանենք այս երկու Արշակունի թագավորներով [Արշակ Գ և Խոսրով Դ թագավորներով], որոնց մենք թագավոր կարգեցինք, իսկ հետո կաշխատենք նրանցից էլ ազատվել՝ կաղքատացնենք և կենթարկենք ծառայության, որպեսզի չկարողանան մեր մեջ գլուխ բարձրացնել»։

Նրանք իրենց այս դիտավորությունը կատարեցին և աշխարհը բաժանեցին երկու մասի։ Պարսից կողմի բաժինը մնաց Խոսրով թագավորին, իսկ Հունաց կողմի բաժինը՝ Արշակ թագավորին։ Բայց դրանցից էլ շատ գավառներ այս ու այն կողմում գզվեցին ու պոկվեցին և երկուսի երկրներից մնաց երկու թագավորներին սակավ մասը։

Բայց երկու Հայոց թագավորները, Արշակը և Խոսրովը, Հայոց թագավորության ծայր գավառների երկու կողմում, որ մնացել էին իրենց միջև, սահմաններ որոշեցին երկու բաժինների միջև, և այնտեղ խաղաղությամբ հաստատվեցին երկու Արշակունի թագավորները։ Եվ Հայոց աշխարհի երկու մասերը հնազանդում էին երկու թագավորներին՝ յուրաքանչյուր բաժինն իր թագավորին. բայց Խոսրովի բաժինն ավելի մեծ էր, քան Արշակինը։

Եվ երկուսից էլ շատ գավառներ պոկվեցին, և այն ժամանակ ու այնուհետև Հայոց թագավորությունը նվաղեց և, բաժան-բաժան ու ցիրուցան լինելով՝ իր նախկին մեծությունից ընկավ»։

[«Եւ լաւ համարեցան զաշխարհն Հայոց նախ ընդ երկուս ի մէջ իւրեանց բաժանել. զի ասէին՝ թէ ի միջի մերում բնակեալ է այս հզօր և հարուստ թագաւորութիւն, լաւ է զի այսու եղծանել և խանգարել կարասցուք զայս թագաւորութիւնս նախ ընդ երկու բաժանել երկու թագաւորօքս Արշակունեօք՝ զորս կացուցաք, ապա և ընդ նոսա կրծել ջանասցուք, աղքատա-

ցուցանել, ի մէջ արկանել ի ծառայութիւն, զի մի՛ կարասցեն ի մէջ մեր ամբառնալ զգլուխ։

Եւ հաստատեցին զայս խորհուրդ. ընդ երկու զաշխարհն բաժանեցին։ Բաժին կողմանն Պարսից էր թագաւորին Խոսրովու, և բաժին մասինն Յունաց էր թագաւորին Արշակայ։ Բայց և ի նոցանէ բազում գաւառք կրճեալք հատեալք այսր անդր, և մնաց սակաւ մասն յաշխարհաց երկոցունց առ երկոսեան թագաւորսն։

Բայց սակայն երկոքեան թագաւորքն Հայոց՝ Արշակ և Խոսրով, որ սիւնքն գաւառքն մնացին թագաւորութեանն Հայոց երկոցուն կողմանց ի մէջ իւրեանց, և երկոքեան թագաւորքն Արշակունիքն ի մէջ երկու բաժնացն սահմանս արկեալ հաստատէին խաղաղութեամբ, և երկիրն Հայոց երկոքեան բաժինքն՝ երկուց թագաւորացն հնազանդէին իւրաքանչիւր բաժնի իւրաքանչիւր թագաւորի. բայց սակայն մեծ էր Խոսրովու բաժին նորա քան զԱրշակայ։

Եւ բազում գաւառք յերկոցունցն հատան. նուազեաց բաժանեցաւ ցրուեցաւ թագաւորութիւնն Հայոց, պակասեաց յիւրմէ մեծութենէն յայն ժամանակն և յապայ»][1]։

Փավստոսը, ինչպես տեսնում ենք, պարզ ու որոշ վկայում է, որ Հայաստանի երկու մասի բաժանումից և այդ մասերի սահմանորոշվելուց հետո՝ Արշակ Գ-ը և Խոսրով Դ-ը խաղաղությամբ հաստատվել էին իրենց մասերում։

Ինքնըստինքյան, իհարկե, հասկանալի է, որ այնուհետև այդ երկու թագավորները, որոնք գտնվում էին Հռոմեական կայսրության ու Սասանյան Պարսկաստանի իշխանության տակ, այլևս չէին կարող ինքնիշխանաբար պատերազմ վարել իրար դեմ, ինչպես այդ, հիմնվելով Խորենացու անստույգ ու անարժանահավատ վկայությունների վրա, մատնանշում են Տուրնեբիզը, Լեոն և ուրիշները[2]։ Եվ ուշագրավ է, որ այդ պատերազմի մասին ոչինչ չգիտե Ղազար Փարպեցին, որը գրել է հայ ժողովրդի պատմությունը սկսած Հայաստանի բաժանումից մինչև 485 թիվը։

Փավստոսի վերև բերված վկայությունից երևում է նաև, որ 387 թվի Հայաստանի բաժանման ժամանակ Հայաստանից կտրվել էին ամբողջ գավառներ, որոնք կցվել էին Հռոմեական կայսրու-

---

[1] Փաւստոս, VI, գլ. Ա, էջ 270—271։

[2] Տե՛ս Tournebize, Histoire politique et réligieuse de l'Arménie, էջ 69—70 և 500. Լեո, Հայոց պատմութիւն, Ա, էջ 671 և ուրիշները։

թյան ու Սասանյան Պարսկաստանի երկրամասերին։ Թե որո՛նք էին այդ կտրատված գավառները, դժբախտաբար, մեզ մանրամասն հայտնի չէ։ Ավելի քան հավանական է, իմ կարծիքով, որ 387 թվին էին անջատվել արևմտյան ու արևելյան Հայաստանից Բալահովիտը, Հաշտյանքը, ըստ երևույթին, նաև Հեր և Զարևանդն ու սրանց հարևան մի քանի այլ շրջանները։

Հայաստանի 387 թվի բաժանումը հիշատակված է նաև Պրոկոպիոսի մոտ[1], որը վկայում է, որ Պարսկաստանը ստացել էր Հայաստանի մեծագույն մասը, մոտ $^4/_5$-ը, իսկ Հռոմեական կայսրությունը՝ փոքրագույն մասը, մոտ $^1/_5$-ը։ Նույնպես և Ղազար Փարպեցին մատնանշում է, որ

«Հայոց աշխարհի մեծ մասը՝ լավը, պիտանին և արգավանդը՝ բաժին էր ընկել Պարսից թագավորին։ Որովհետև, թեև բազմաթիվ ուրիշ գավառներ իբրև ժառանգություն բաժին էին ընկել Հունաց թագավորին, դրանք համաչափ էին միմիայն Այրարատյան գավառին»։

[«Եւ դարձեալ՝ զմեծ մասն, զլաւն և զպիտանին և զարգաւանդն աշխարհիս Հայոց ունել ի բաժին արքային Պարսից. քանզի թէպէտև հասեալ բազում գաւառք այլ ի ժառանգութիւն մասին թագաւորին Յունաց, սակայն համեմատէին այն միայն յԱյրարատեան գաւառին»][2]։

Հայաստանի թագավորության Հռոմեական կայսրությանը տրրված մասը հռոմեական աղբյուրներն անվանում են Մեծ կամ Ներքին Հայաստան։ Արևմտյան կամ Հռոմեական այդ Հայաստանը, ինչպես պատմական-աշխարհագրական ուսումնասիրություններից հայտնի է[3], բաղկացած էր հետևյալ գավառներից՝ Կարին, Եկեղիք, Դերջան, Մանանաղի, Դարանաղի, Խորձյան, Մզուր ևն.։

Գյուտերբոկի կարծիքով՝ Հռոմեական Մեծ Հայաստանը Սև ծովից բաժանված էր Պոլեմոնյան Պոնտոս գավառով, Փոքր Հայքից Եփրատով, Պարսկական Հայաստանի կողմից՝ Երասխ գետի ջրաբաշխով, իսկ հարավից՝ Արածանի գետով և Ծոփք Շահունոց, Բալահովիտ ու Հաշտյանք նախարարական երկրներով, որոնք կցված էին Հռոմեական կայսրությանը։

Արևելյան կամ Պարսկական Հայաստանի սահմաններն էին,

[1] *Procopios,* De Aedificiis, III, 1.

[2] Ղազար Փարպեցի, *I, գլ. Զ, էջ 8*։

[3] *Տե՛ս* Գյուտերբոկ, *Հռովմեական Հայաստան, էջ 30 ևն, Адонц,* Армения в эпоху Юстиниана, *էջ 46 ևն.*։

ինչպես մանրամասն ցույց է տվել Ադոնցը[1], հյուսիսից՝ Կանգարք գավառը՝ որը Գուգարքի մեջ էր, արևմուտքից՝ Տայքը, որն ամբողջությամբ Արևելյան Հայաստանի մաս էր, Աղվանքի կողմից՝ Սևանի լճի հյուսիս-արևելյան կողմի լեռները, արևելքից՝ Հեր և Զարևանդ գավառները, որոնք կցված էին Սասանյան Պարսկաստանին, հարավից՝ Աղբակը, Անձևացիքը և Մոկքը, որոնք Արևելյան Հայաստանի մեջ էին։ Դուրս էին մնացել Արշակունյաց թագավորության նախկին երկրամասերը՝ Աղձնիքը, Կորդուքը, Կորդիքը, Տմորիքը, Նոշիրականը, Մահկերտունը, Նիհորականը, Դասնը, Կորճեքը, հյուսիսային Ատրպատականը, Գուգարքը, Ուտիքը, Արցախը, Փայտակարանը և թերևս նաև մի քանի այլ շրջաններ։

Թեոդոսիոս Ա-ի քաղաքականությունն Արշակունյաց թագավորության վերաբերմամբ և նրա կնքած Հայաստանի բաժանման դաշինքը, ինչպես միանգամայն ճիշտ մատնանշել են նորագույն պատմագետներից շատերը[2], խիստ ծանր սխալ էին և չէին համապատասխանում կայսրության քաղաքական իրական շահերին։

Կնքված դաշնադրությունը բնավ չնպաստեց խաղաղության պահպանմանը։ Արշակունյաց մեծ թագավորությունը, որ նրանք համարում էին վեճերի ու կռիվների մշտական պատճառ, թեև միջտեղից վերացվեց, սակայն Հայաստանը դարձյալ մնաց երկու մեծ պետությունների մեջ։ Սասանյան Պարսկաստանի անմիջական սահմանակցությունը կայսրության համար ավելի ևս վտանգավոր դառավ, որովհետև տևական առիթ եղավ չարադեպ շփումների ու նկրտումների, բարդությունների ու պատերազմների։

Մրցությունը երկու մեծ պետությունների մեջ և ընդհարումները ավելի հաճախակի դառան և վեցերորդ դարում ու յոթերորդ դարի սկզբներում արյունահեղ պատերազմները ստացան կատաղի բնույթ։ Այդ կռիվներն այնքան ուժասպառ արին նրանց, որ յոթերորդ դարի երկրորդ քառորդում ո՛չ Բյուզանդիան, ո՛չ էլ Սասանյան Պարսկաստանը չկարողացան կասեցնել արաբական հաղթական արշավանքները։

387 թվի դաշնադրությունից հետո Հայ Արշակունիները միաժամանակ անվանական կերպով շարունակեցին թագավորել անդա-

---

[1] *Տե՛ս Абонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 222—225։*

[2] *Տե՛ս* Գելցեր, *Համառօտ պատմութիւն Հայոց, էջ 10. նույնը,* Abriss der byzantinischen Geschichte, *էջ 916 (տե՛ս K. Krumbacher*, Geschichte der byzantinischen Literatur, München. 1897). Գյուտերբոկ. *Հռովմեական Հայաստան, էջ 19.* Լեո. *Հայոց պատմութիւն, Ա, էջ 672. K. Aslan,* Études *էջ 199 և ուրիշները։*

մատված Հայաստանի երկու բաժիններում։ Նրանք թագավորեցին Պարսկական Հայաստանում ավելի քան քառասուն տարի (387—429 թ.) սակայն Արշակ Գ-ի մահից հետո (շուրջ 389/390 թ.) Թեոդոսիոս կայսրը նրա տեղ այլևս նոր թագավոր չնշանակեց, այլ Հռոմեական Հայաստանն այնուհետև կառավարեցին կայսեր կողմից նշանակված կուսակալները, որոնք համարվում էին կայսրերի փոխանորդներ և անվանվում էին կոմեսներ։

Արշակունյաց թագավորության անդամահատումից հետո, թեև Հայոց աշխարհի միությունն ու անկախությունը վերացվեց, սակայն Հայաստանի նախարարական կազմակերպությունը և նախարարական ներքին կարգերը մնացին անփոփոխ ինչպես Պարսկական, նույնպես և Հռոմեական Հայաստանում։ Զգուշավոր ու մեղմ այս քաղաքականությունը նախարարությունների հանդեպ բացատրվում է նրանով, որ երկու պետություններն էլ նկատի էին ունեցել Հայաստանի ստրատեգիական ու ռազմական մեծ նշանակությունը և նպատակահարմար էին համարել, պահպանելով նախարարությունների իրավունքներն ու արտոնությունները, օգտագործել նրանց զինվորական ուժերն իրենց նոր սահմանների պաշտպանության համար։

Հռոմեական կայսրության ու Սասանյան Պարսկաստանի դարավոր պայքարը, ինչպես վերև ասացինք, հարկավ, չէր վերացվել Հայաստանի բաժանմամբ։ Վերջինս ծառայելու էր դարձյալ իբրև ռազմադաշտ համառ ու երկարատև պատերազմների։ Հայ ժողովրդի բախտը, նրա կուլտուրական ու տնտեսական զարգացումը դարձյալ մեծապես կախված էին արտաքին անցուդարձից՝ երկու մեծ պետությունների քաղաքական փոխհարաբերություններից։

Եվ այս ծանր պայմաններում՝ մասնատված ու իր քաղաքական անկախությունը կորցրած Հայաստանը, ինչպես կտեսնենք, համառ կերպով մաքառեց և աշխատեց պահպանել իր ներքին ինքնուրույնությունը և կուլտուրական անկախությունը։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ՎՌԱՄՇԱՊՈՒՀ ԵՎ ՀԱՅ ԳՐԵՐԻ ԳՅՈՒՏԸ

Խոսրով Դ-ի և Վռամշապուհի թագավորությունների թվականները.— Օրմանյանի կարծիքը:— Խաղաղություն Արևելքում Վռամ Դ-ի և Հազկերտ Ա-ի ժամանակ:— Հայ գրերի գյուտը:— Մեսրոպ Մաշտոցի հանճարեղ գործի կուլտուրական և քաղաքական մեծ նշանակությունը:— Գրերի գյուտի մասին հիմնական հայ աղբյուրները:— Մեսրոպ Մաշտոցի կենսագրությունը:— Նրա սոցիալական ծագումը:— Նրա պաշտոնը Վաղարշապատի արքունի դիվանում:— Մարկվարտի սխալ կարծիքը Առավանի հազարապետության ժամանակի մասին:— Մաշտոցի քարոզչական գործունեությունը Գողթն գավառում:— Նրա վերադարձը Վաղարշապատ և խորհրդակցությունը Սահակ կաթողիկոսի հետ:— Դանիել ասորի եպիսկոպոսի նշանագրերը:— Մաշտոցի ուղևորությունը Ասորիք:— Այբուբենի գյուտը Եդեսիայում և նրա գծագրումը Սամոսատում:— Դանիելյան գրերի աղբյուրների տարբեր վկայությունները:— Դանիելյան տառերի մասին նորագույն կարծիքները:— Նախամաշտոցյան հայկական գրականության գոյության խնդիրը:— Դանիելյան այբուբենի անբավարարությունը:— Մաշտոցի այբուբենի կատարելիությունը:— Գրերի գյուտի թվականն ըստ Կորյունի վերջաբանի:— Կորյունի բնագրի մեջ եղած հակասությունները:— Գ. Տեր-Մկրտչյանի բացատրությունը. այդ բացատրության անհավանականությունը:— Ն. Ադոնցի կարևոր նոր բացատրությունը:— Գրերի գյուտի տարեթիվը ըստ Ադոնցի:— Կորյունի և Ղազար Փարպեցու արժանահավատ ցուցումները:— Կորյունի վերջաբանն ընդմիջարկություն է:— Գրերի գյուտի հավանական թվականը:— Նշանագրերի հորինումը վրացերեն և աղվաներեն լեզուների համար:—Կորյունի և Խորենացու վկայությունները:— Այդ վկայությունների պատմական արժանահավատությունը:— Մաշտոցի լուսավորական լայն անդրկովկասյան գործունեության նպատակը:— Նորաստեղծ գրերի տարածումը Արևմտյան Հայաստանում:— Թեոդոսիոս Բ-ի հրամանը:—Խորենացու վկայություններն այդ մասին:— Թեոդոսիոս կայսեր բարեհաճ համաձայնության պատճառը:— Արևմտյան Հայաստանում մայրենի լեզվով դպրության հաստատման տարեթիվը:

*Խոսրով Դ-ի և Վռամշապուհի թագավորությունների տարեթվերը, ինչպես և գրերի գյուտի ճշգրիտ թվականը հայ պատմագիտական ուսումնասիրություններում բոլորովին խճճված ու խեղաթյուրված են, գլխավորապես, Խորենացու ժամանակագրական սխալ տվյալների ազդեցությամբ:*

*Խոսրով Դ-ը (385—387/8 թ.) թագավորել է ո՛չ թե հինգ տարի, ինչպես մատնանշում է Խորենացին*[1], *այլ երեք տարի, ինչպես վկայում են Սեբեոսը, Ասողիկը*[2] *և ուրիշները։*

*Այս վերջին վկայությունները պետք է ճիշտ լինեն, որովհետև համապատասխանում են Փարպեցու Պատմության արժանահավատ ցուցումներին։*

*Ղազար Փարպեցին հաղորդում է, որ Պարսկական Հայաստանի հայ նախարարները, գնալով Շապուհ Գ-ի մոտ (383/4—388/9 թ.), ամբաստանել էին Խոսրով Դ-ին, որ նա գաղտնի կերպով բանակցություններ է վարում հռոմեական կայսրի հետ*[3]*։ Խորենացին ևս վկայում է, որ Շապուհ Գ-ը նեղացած էր Խոսրով Դ-ի վրա, որովհետև նա անձնական բարեկամություն էր հաստատել հռոմեական կայսրի հետ և առանց իր հրամանի կաթողիկոս էր կարգել Սահակ Մեծին, որը Ներսես Մեծի որդին էր*[4]*։ Ղազար Փարպեցու ու Խորենացու այս վկայություններից պարզ երևում է, որ Խոսրով Դ-ը Հայաստանում թագավորել էր Շապուհ Գ-ի (383/4—388/9 թ.) թագավորության սկզբի տարիներում (385—387/8 թ.), իսկ Վռամշապուհը Հայոց թագավոր էր նշանակվել Շապուհ Գ-ի կողմից սրա թագավորության վերջերում (387/8 թ.)։ Ուշագրավ է, որ ժամանակագրական այս հաշիվները կատարելապես համապատասխանում են Խորենացու ցուցումներին, որը Սահակ Մեծի կաթողիկոսության տևողության մասին իր ձեռքի տակ ունեցել է վավերական ու արժանահավատ տվյալներ։ Ըստ Խորենացու՝ Սահակ Մեծը կաթողիկոս էր կարգվել Խոսրով Դ-ի թագավորության երրորդ տարում, այսինքն՝ 388 թվին և իր պաշտոնը վարել էր 51 տարի, ուրեմն՝ 388 թվից մինչև 439 թիվը։ Ըստ իս այս բոլոր թվերը մենք կարող ենք ճշտված ու հաստատուն համարել, որովհետև Դյուլորիեի տոմարագիտական ճշգրիտ հաշիվներից ևս մեզ հայտնի է, որ Սահակ Մեծը, վախճանվել էր 439 թվի սեպտեմբերի 7-ին*[5]*։*

*Ժամանակագրական այս դիտողություններից, որ հիմնված են Ղազար Փարպեցու արժանահավատ ցուցումների վրա՝ կարելի է վստահորեն հետևցնել, որ Վռամշապուհը հաջորդել էր իր եղբորը՝ Խոսրով Դ-ին, 387/8 թվին։*

---

1 *Խորենացի, III, գլ. Ծ։*

2 **Սեբեոս**, *գլ. Գ, էջ 19 (Երևան, 1939)* և **Ասողիկ**, *II, գլ. Ա, էջ 73 (Ս.-Պետերբուրգ, 1885)։*

3 **Փարպեցի**, *I գլ. Թ, էջ 12։*

4 **Խորենացի**, *III, գլ. Ծ։*

5 ***Տե՛ս*** *Ed. Dulaurier*, Recherches sur la chronologie arménienne, Paris, 1859, *էջ 135—136, ծանոթ. 40։*

Պետք է ասել, որ Վռամշապուհի թագավորության սկիզբը բոլոր պատմագիտական երկերում, բացի Օրմանյանի և Լեոյի աշխատություններից[1], դրվում է կամ չորրորդ դարի իննսունական թվականներին և կամ հինգերորդ դարի սկզբներին։

Մենք կտեսնենք ներքև, որ սխալ այդ ժամանակագրությունը բացատրվում է, գլխավորապես, նրանով, որ Վռամշապուհի թագավորության տարիները պատմագիտական երկերում աշխատել են համաձայնեցնել ժամանակագրական տվյալների հետ Կորյունի վերջաբանում, որը պարզապես ընդմիջարկություն է ուշ ժամանակաշրջանի։

Օրմանյանը, իմ կարծիքով, ճիշտ է որոշել նաև Վռամշապուհի թագավորության տևողությունը (389—414 թ.)։ Նրա այս եզրակացությունը հիմք է ծառայել Ղազար Փարպեցու ցուցումը[2]։ Վռամշապուհը, ինչպես վկայում է Փարպեցին, հասել էր խորին ծերության և գրերի գյուտից հետո, որ տեղի էր ունեցել, ինչպես կտեսնենք, մոտավորապես 393 թվին՝ ապրել էր քսան և մեկ տարի։ Ըստ այսմ Վռամշապուհի թագավորության տևողությունը հավանական կլինի ենթադրել մոտ 26 տարի (387/8—շուրջ 413/4 թ.), և նրա մահը կարելի կլինի դնել մոտավորապես 414 թվին։

Վռամշապուհի ժամանակ, որը թագավորեց Հայաստանում բավական երկար, Մերձավոր Արևելքում տիրում էր կատարյալ խաղաղություն։ Շապուհ Գ-ին հաջորդել էր Վռամ Դ Կրմանը (388/9—399 թ.), որը բարեկամական հարաբերություններ էր պահպանում կայսրության հետ և ուներ բարեհաճ վերաբերմունք նաև դեպի քրիստոնյաները։ Նաև Վռամ Դ-ից հետո Պարսկաստանում թագավորում էր բարյացակամ Հազկերտ Ա-ը (399—420 թ.), որն անհաշտ պայքար էր մղում Պարսից բարձր ազնվականության ու կղերականության դեմ, իսկ քրիստոնյաների վերաբերմամբ համբերատար էր և բարեմիտ։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ խաղաղության հաստատման այս տարիները հայ երկրների համար, որոնք կորցրել էին իրենց անկախությունը, ազգի ու հուսահատման ժամանակաշրջան էին։ Թե Վռամշապուհը և թե Սահակ Մեծը, որոնք թագավոր ու կաթողիկոս էին դառել Արևելյան Հայաստանում Արշակունյաց թագա-

---

[1] Օրմանյանը, ինչպես և Լեոն Վռամշապուհի թագավորության սկիզբը համարում են 389 թվականը. տե՛ս Մ. Ա. Օ., «Տրդատ Արտաշէս ժամանակագրական դիտողութիւններ», «Հանդ. Ամս.», 1909, № 8, էջ 243—245. Լեո, Հայոց պատմություն, Ա, էջ 674, ծան. 3։

[2] Փարպեցի, I, գլ. ԺԱ, էջ 18, ծանոթ. 10։

վորության 387 թվի բաժանումից մեկ տարի հետո՝ չէին կարող, իհարկե, չգիտակցել, որ իրենց վիճակվել է կառավարել Հայոց երկիրն ու եկեղեցին հայ ժողովրդի քաղաքական կյանքի ամենածանր ժամանակամիջոցում։ Եվ խիստ ուշագրավ է, որ Հայաստանի բաժանումից անմիջապես հետո, երբ կազմալուծված ու ցաքուցրիվ արված հայությանը սպառնում էր հուսալքման ու այլասերման վտանգը՝ Սահակ կաթողիկոսը և Մեսրոպ Մաշտոց վարդապետը, Վռամշապուհ թագավորի աջակցությամբ, գտան հայ ժողովրդի պահպանման ու ինքնուրույն զարգացման համար հզոր ու անհաղթելի մի զենք և ստեղծեցին հայկական գիրն ու դպրությունը։

Հայ գրերի գյուտը անշուշտ, Հայաստանում ևս, ինչպես և գոթերի ու սլավոնների մոտ, ամենից առաջ նպատակ ուներ ստեղծելու քրիստոնեական գրականություն տեղական լեզվով։ Այդ անհրաժեշտ էր, որովհետև հայ եկեղեցու լեզուն ասորերեն էր կամ հունարեն, որոնք հայ ժողովրդի լայն խավերի համար բոլորովին անհասկանալի էին։ Ակներև է, սակայն, որ այդ գյուտն ունեցավ նաև քաղաքական մեծ նշանակություն, որովհետև սեփական հայ գրի ու գրականության ստեղծումը մտցրեց հայությունը հին կուլտուրական ժողովուրդների շարքը և, զարթեցնելով նրա ազգային ինքնագիտակցությունը՝ արգելք եղավ հայ ժողովրդի ապազգայնացման ու միաձուլման քաղաքականությանը, որ հինգերորդ ու վեցերորդ դարերում վարում էին Հայաստանում Սասանյան Պարսկաստանը և Բյուզանդական կայսրությունը։

Ինչպես հայտնի է, Մեսրոպ Մաշտոցի հանճարեղ գործը՝ նրա հայերեն գրերի գյուտը՝ շատ բարձր գնահատության է արժանացել պատմագիտական թե հայ և թե օտար երկերում։ Գերմանական գիտնական Մարկվարտը, որն առանձին մի ուսումնասիրություն է գրել հայերեն նշանագրերի գյուտի մասին՝ հիացմունքով նշել է Մաշտոցի մեծ գործի արտասովոր վեհությունը։ Եթե մենք, ասում է Մարկվարտը, նկատի առնենք պատմական այն բացառիկ ծանր իրադրությունը, որի մեջ Մաշտոցը կարողացավ զարթեցնել հայ ժողովրդի ազգային գիտակցությունը, և նրա այդ գործը համեմատենք Պիպինի և նրա զինակիր Վինֆրիդի գործունեության հետ՝ այս վերջինները «խեղճ թզուկներ կերևան» համեմատությամբ մտքի այդ հսկայի[1]։

Պետք է ասել, որ նույնիսկ ամենաէական խնդիրներից շատերը հայերեն գրերի գյուտի մասին, չնայած որ դրանց մասին գրված են

---

[1] Տե՛ս Մարկվարտ. Պատմութիւն հայերէն նշանագրերու և վարուց ս. Մաշտոցի, թարգմ. Ա. Վարդանյանի, Վիեննա, 1913, էջ 8։

բազմաթիվ ուսումնասիրություններ, մինչև այժմ դեռ պարզված չեն և մնում են վիճելի։ Այդ խնդիրների լուսաբանության համար հիմնական աղբյուրներ են համարվում Կորյունի, Ղազար Փարպեցու և Մովսես Խորենացու պատմական աշխատությունները, որոնցից վերջին երկուսը հիմնվում են մեծ մասամբ Կորյունի վրա։ Մի քանի մանրամասնություններ նույն այդ խնդիրների մասին կան և ուրիշ հեղինակների մոտ, որոնք օգտվել են ոչ միայն վերոհիշյալ երկերից, այլև մեզ անհայտ այլ աղբյուրներից։

Մեսրոպ Մաշտոցի աշակերտ Կորյունի փոքրածավալ աշխատությունը[1], որը գրված է հինգերորդ դարի կեսերին, գրերի գյուտի պատմության ամենագլխավոր աղբյուրն է։ Սակայն այս ամենահին աղբյուրի մեջ անգամ, ինչպես մատնացույց են արել բանասերները, հաճախ պատահում են թերասություններ ու մինչև իսկ ակներև հակասություններ[2]։ Ադոնցը միանգամայն ճիշտ դիտել է, որ մեր ձեռքը հասած Կորյունի աշխատության բնագիրը չի կարող համարվել նախնական, որովհետև հետագա դարերում այս երկը ենթարկվել է խմբագրական վերամշակման[3]։ Եվ, իրոք, այս եզրակացությանը դժվար չէ հանգել, եթե նկատի ունենանք այն հատվածները, որոնք Ղազար Փարպեցին քաղել է Կորյունից։ Փարպեցին, ըստ երևույթին, իր ձեռքի տակ ունեցել է Կորյունի աշխատությունը նախնական հին խմբագրությամբ։

Մեսրոպ Մաշտոցի մասին կենսագրական տեղեկություններ, դժբախտաբար՝ բավական աղքատիկ, տալիս է, գլխավորապես, Կորյունը, որի երկը՝ «Պատմութիւն վարուց և մահուան առն երանելւոյն սրբոյն Մաշտոցի վարդապետի, մերոյ թարգմանչի», ամբողջովին նվիրված է իր ուսուցչի կյանքին ու գործունեությանը։

Կորյունը, ինչպես և բոլոր հին հեղինակները, հայերեն գրերի հնարողին անվանում է Մաշտոց[4]։ Սրա վիճելի Մեսրոպ անունն առաջին անգամ հանդիպում է ավելի ուշ շրջանի երկերում՝ «Պատ-

---

[1] Այս աշխատության մեր ձեռքը հասած երկու խմբագրություններից հինը և իսկականը ընդարձակ խմբագրությունն է. տե՛ս Նորայր Բյուզանդացի, Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւնք, Տփղիս, 1900, էջ 12 և 397—401։

[2] Տե՛ս *Н. Марр*, Тексты и разыскания по армяно-грузинской филологии, СПб. 1903, էջ 32 և *Месроп Тер-Мовсесян*, История перевода Библии армянский язык, СПб., 1902, էջ 1—27։

[3] *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 341։

[4] Գրվում է նաև Մաշդոց, Մաշթոց, Մաժդոց. տե՛ս *Г. Халатьянц*. Армянские Аршакиды, М., 1903, էջ 315։

մութիւն սրբոյն Ներսիսի Պարթևի» գրվածքում[1] և Խորենացու Պատմության մեջ։ Համաձայն Կորյունի վկայության՝ Մաշտոցը Տարոն գավառի Հացեկաց գյուղից էր և այդ գյուղի բնակիչ Վարդանի որդին էր։ Մ. էմինը, նկատի առնելով Մաշտոցի հոր Վարդան անունը և նրա ծննդավայր Տարոնը՝ կարծում է, որ Մաշտոցը ծագում էր Մամիկոնյանների նախարարական տոհմից[2]։ Ինչպես հայտնի է, մի շարք նորագույն ուսումնասիրություններում հատուկ մի ձգտում կա հայկական գրականության ու կուլտուրայի մշակներին համարել բարձր ազնվականության ներկայացուցիչներ։ Այդ ոչ միայն վիճելի է, այլև անպայմանորեն սխալ է։ Իմ նախորդ աշխատություններից մեկում ես արդեն պարզել էի, որ հայ պատմագիր Ղազար Փարպեցին, որին նույնպես համարել էին ազնվական և ազգական Մամիկոնյանների տոհմի, իրապես «անազատ» շինական էր Փարպի գյուղից[3]։ Թեպետև յոթերորդ դարի «Անանուն ժամանակագրության» մեջ ասված է, որ «Մեսրովբ Երանելի և Հացեկաց Տարաւնոյ, յազատ տանէ»[4], սակայն այդ մասին տեղեկություններ չեն տալիս ո՛չ Կորյունը, ո՛չ էլ Փարպեցին։ Ուշագրավ է, որ Փավստոսի կարևոր մի վկայության մեջ Հացեկացն անվանված է «կարճազատների» գյուղ[5]։ Ինձ թվում է, որ այս վերջին վկայությունից կարելի է հետևցնել, որ Մաշտոցը ոչ թե մանր ազնվական «ազատ» էր, այլ արտոնյալ այն ազատ գյուղացիների դասից էր, որոնք պարտավոր էին ծառայել ռամիկ հեծելազորքի շարքերում[6]։

Բանասերները սովորաբար մատնանշում են, որ Մաշտոցն աշակերտել էր Ներսես կաթողիկոսին (+373 թ.)։ Այս տեղեկությունը, որ գտնվում է «Պատմութիւն սրբոյն Ներսիսի» երկում և Խորենացու Պատմության մեջ[7], ինչպես միանգամայն ճիշտ նկատել է Խալաթյանցը, չէ կարող ստույգ լինել, որովհետև այդ մասին ևս հիշատակություն չունեն Կորյունը և Ղազար Փարպեցին[8]։ Այս

---

[1] Տե՛ս «Սոփերք Հայկականք», Զ, Վենետիկ, 1853, էջ 83 և 110։

[2] Տե՛ս „Исследования и статьи Н. О. Эмина“, М., 1896, էջ 206։

[3] Տե՛ս իմ աշխատությունը՝ «Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում», Երևան, 1925, էջ 34։

[4] Տե՛ս **Ա. Աբրահամյան**, *Անանիա Շիրակացու մատենագրությունը*, Երևան, 1944, էջ 389։

[5] **Փավստոս**, III, գլ. ԺԹ։

[6] Տե՛ս իմ աշխատությունը՝ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», էջ 118—119։

[7] Տե՛ս «Սոփերք Հայկականք», Է Վենետիկ, 1853, էջ 28 և **Խորենացի**, IV, գլ. ԽԷ։

[8] *Халатьянц*, Армянские Аршакиды, էջ 317։

վերջիններս հաղորդում են միայն, որ մանկական հասակում Մաշտոցը կրթություն էր ստացել հելլենական դպրությամբ։

Խոսրով Դ-ի թագավորության ժամանակ (385—387/8 թ.), ինչպես վկայում են Կորյունը և Ղազար Փարպեցին, Մաշտոցը եկավ Արշակունիների մայրաքաղաքը, Վաղարշապատ, և ծառայում էր այստեղ արքունի դիվանում Առավան հազարապետի ձեռքի տակ[1]։ Կորյունի և Ղազար Փարպեցու համապատասխան վկայությունները, որ ըստ իս սխալ են մեկնված պատմագիտական ու բանասիրական երկերում, ավելորդ չեմ համարում թարգմանաբար մեջ բերել մանրամասն կերպով։

1. Կորյուն [Գ], էջ 36—37, հրատ. և թարգմ. Մ. Աբեղյանի, (Երևան, 1941)՝

«Ապա [Մաշտոցը] եկավ, հասավ Մեծ Հայաստանի Արշակունի թագավորների արքունիքը, մնաց արքունի դիվանում և եղավ արքայի տված հրամանների սպասարկող՝ Հայոց մեր աշխարհում ոմն Առավանի հազարապետության ժամանակ։ Նա տեղյակ ու հմուտ դառավ աշխարհական կարգերի և իր զինվորական արվեստով հաճելի եղավ իր զորականներին։ Եվ այնտեղ ուշի-ուշով հետևեց աստվածային գրքերի ընթերցանությանը, որով կարճ ժամանակում լուսավորվեց և համակվեց, խորամուխ եղավ աստվածային հրամանների էությանը, նաև ամեն նախապատրաստություններով զարդարեց իր անձը և պաշտոնավարեց իշխանների մոտ»։

[«Եկեալ հասեալ ի դուռն Արշակունեաց թագաւորաց Հայոց Մեծաց, կացեալ յարքունական դիւանին, լինել սպասաւոր արքայատուր հրամանացն առ հազարապետութեամբն աշխարհիս Հայոց՝ Առաւանայ ուրումն։ Տեղեկացեալ և հմուտ եղեալ աշխարհական կարգաց, ցանկալի եղեալ զինուորական արուեստին իւրոց զօրականացն։ Եւ անդէն ուշ եդեալ փութով ընթերցուածոց աստուածեղէն գրոց, որով առժամայն լուսաւորեալ և թեամուխ միջամուխ եղեալ յաստուածատուր հրամանացն հանգամանս, և ամենայն պատրաստութեամբ զանձն զարդարեալ, հարկանէր զիշխանացն սպասաւորութիւնն»]։

2. Ղազար Փարպեցի, I, գլ. Ժ, էջ 13։

«Իր մանկության օրերում նա [Մաշտոցը] ուսում ստացավ հույն դպրությամբ. նա զինվորություն արեց Հայոց Խոսրով

[1] Տե՛ս իմ աշխատությունը՝ „Месроп Маштоц и борьба армянского народа за культурную самобытность", Ереван, 1941, էջ 12։

*թագավորի արքունիքում, կարգվելով արքունի գրագիր դպիրների խմբում. այդ ժամանակ արքունի դպիրները ասորի ու հույն գրով էին վարում Հայոց թագավորների գործերը՝ վճիռներն ու հրովարտակները»։*

*[«Ի տիւ մանկութեան իւրոյ ուսեալ դպրութիւն զյոյն, զինուորեալ ի դուռն Հայոց արքային խոսրովայ, կարգեալ յերամ մատենագիր արքունի դպրացն. վասն զի ասորի և յոյն գրով վարէին յայնժամ զգործ թագաւորացն Հայոց՝ արքունի դպիրքըն, զվճռոցն և զհրովարտակացն»]։*

*Ոմանք կարծում են, որ Կորյունի ու Ղազար Փարպեցու այս վկայություններում կա մի որոշ հակասություն։ Ըստ Կորյունի՝ Մաշտոցը պաշտոն էր վարել արքունի դիվանում Առավանի հազարապետության ժամանակ, իսկ համաձայն Փարպեցու՝ Հայոց խոսրով Դ թագավորի ժամանակ։ Այս հակասությունը մատնանշել է Մարկվարտը և սխալ ենթադրություն է արել, որ իբր թե խոսրով Դ-ից հետո և Վռամշապուհից առաջ Հայաստանում իշխել է հազարապետ Առավանը[1]։ Մարկվարտի այս կարծիքը պարզապես թյուրիմացության արդյունք է։ Առավանը, ինչպես դժվար չէ կռահել, Հայոց աշխարհի հազարապետ էր խոսրով Դ-ի ժամանակ, ուստի և կարելի է վստահորեն ենթադրել, որ Կորյունի նախնական բնագրում, հավանորեն, մատնանշված է եղել, որ Մաշտոցը ծառայել էր Հայոց խոսրով թագավորի արքունիքում Առավան հազարապետի ձեռքի տակ[2]։*

*Կորյունի և Ղազար Փարպեցու վերևում բերված վկայություններից երևում է նաև, որ Մաշտոցը, ընդունված լինելով «մատենագիր դպիր»-ների խմբի մեջ, ծառայել էր արքունի դիվանում իբրև զինվոր ու հասարակ գրագիր։ Ինչպես հայտնի է, հայագետ գիտնականները[3], գրեթե բոլորն առանց բացառության, հիմնվելով խորենացու սխալ վկայության վրա՝ կարծել են, որ Մաշտոցը թագավորական պալատում վարել էր դիվանապետի կամ քարտուղարի բարձր պաշտոնը։ Այս պնդումը, որ հակասում է Կորյունի և Փարպեցու վկայություններին, ճիշտ չէ։ Մաշտոցի պաշտոնը, ինչպես դժվար չէ համոզվել, համապատասխանում է այն զինվոր-գրագիրների պաշտոնին, որոնք սորրին ծառայողներ էին հռոմեական բարձր պաշտոն-*

---

[1] *Տե՛ս* Մարկվարտ, *Պատմութիւն հայերէն նշանագրերու, թարգմ. Ա. Վարդանյանի, Վիեննա, 1913, էջ 12—13 և 58։*

[2] *Տե՛ս իմ աշխատությունը՝* „Месроп Маштоц“, *էջ 12։*

[3] *Տե՛ս* „Исследования и статьи Н. О. Эмина“. *էջ 206. K. Aslan,* Études historiques, *էջ 212.* Լեո, *Հայոց պատմություն, Ա, էջ 679,* Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն, Երևան, 1944, Ա., էջ 72 և ուրիշները։*

յաների դիվաններում և անվանվում էին «գրասենյակայիններ» (officiales կամ scrinarii)[1]։ Այս զինվոր-գրագիրները, ինչպես մատնացույց է արել Ադոնցը, զինվորական շորերով էին և համարվում էին զինվորական ծառայության մեջ, թեև չէին կցված գործող զորաբանակին[2]։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ Մեսրոպ Մաշտոցը, լինելով «կարճազատ» գյուղացի, պետք է վարած լիներ արքունիքում գործակալական ստորին պաշտոն[3]։

Մաշտոցի ծառայությունը Վաղարշապատում երկար չտևեց։ Կարճ ժամանակից հետո նա դառավ կուսակրոն հոգևորական և իր աշակերտների հետ գնաց Գողթն գավառը և, զբաղվելով այնտեղ քարոզչական գործով՝ աշխատեց տարածել հեթանոս գողթնեցիների մեջ քրիստոնեական կրոնը։ Իր այս քարոզչական գործունեության ժամանակ, ինչպես հաղորդում են վերոհիշյալ աղբյուրները, Մաշտոցը մեծ դժվարությունների հանդիպեց, որովհետև եկեղեցու պաշտամունքը կատարվում էր Հայաստանում հունարեն և ասորերեն լեզուներով և դեռևս չկային Աստվածաշնչի ու եկեղեցական գրքերի հայերեն թարգմանություններ։ Համաձայն Փավստոսի վկայության՝ քրիստոնեական կրոնը Հայաստանում ընդունեցին

«Ոչ թե գիտակցաբար, հուսով կամ հավատով, ինչպես որ հարկավոր էր, այլ ընդունեցին քչերը, որոնք ծանոթ էին հունարեն կամ ասորերեն գրագիտական տարերքին՝ միայն սրանք փոքր ի շատե հասկանում էին այդ կրոնը։ Իսկ նախարարների և շինականների մյուս խառնաղանջ բազմությունը, որոնք այդ գրագիտության արվեստին ծանոթ չէին՝ եթե վարդապետները, գիշեր ու ցերեկ նստած, ամպերի նման այդ ուսմունքը նրանց վրա հոսեցնեին ինչպես հորդահեղեղ սաստիկ անձրև, նրանցից ոչ մեկը ոչնչից ոչինչ և ոչ մի խոսք, ոչ կես խոսք, ոչ չնչին մի բան և ոչ մի նշույլ իրենց լսածներից չէին կարող հասկանալ և մտքերը պահել»։

[«Ոչ եթէ որպէս պարտն էր գիտութեամբ յուսով կամ հաւատով, բայց միայն սակաւ ինչ որք զհանգամանս գիտէին հելլէն կամ ասորի դպրութեանց, որք էին հասու ինչ այնմ փոքր ի

[1] Տե՛ս П. Виллемс, Римское государственное право, перевод Бодянского, Киев. 1888, էջ 510, 663—667. E. Kuhn, Die städtische und bürgerliche Verfassung des Römischen Reichs, Erster Teil, Leipzig, 1864, էջ 156 և հետ.։

[2] Տե՛ս Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 137։

[3] Տե՛ս իմ աշխատությունը՝ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», էջ 120—122։

շատէ։ Իսկ որք արտաքոյ քան զգիտութիւն արուեստին էին այլ խառնաղանձ բազմութիւն մարդկան ժողովրդոց նախարարացն և կամ շինականութեանն, եթէ զցայգ և զցերեկ նստեալ վարդապետացն և ըստ նմանութեան ամպոցն իբրև զյորդահեղեղ ինչ անձրևաց սաստկութիւն զվարդապետութիւնն ի վերայ հոսէին, ոչ ոք ի նոցանէն և ոչ մի ոչ, և ոչ մի բան, և ոչ կէս բանի, և ոչ դոյզն յիշատակ ինչ, և ոչ նշմարանս ինչ զոր լսէինն, և ոչ կարէին ինչ ունել ի մտի»][1]։

Ինչպես երևում է Կորյունի վկայություններից, հենց Գողթնում եղած ժամանակ Մաշտոցը միտք հղացավ, որ հեթանոսության ու մազդեականության դեմ կռվելու միակ հաստատուն միջոցն է հայերեն դպրությունը և քրիստոնեական եկեղեցու պաշտամունքի կատարումը հայերեն լեզվով։ Գողթնից Մաշտոցը վերադարձավ Այրարատյան գավառը Սահակ կաթողիկոսի մոտ[2], որին նա պատրաստակամ ու հավան գտավ իր մտածմունքին։ Երբ նրանք, հարցուփորձ ու որոնումներ անելիս, այս մեծ խնդրի մասին տեղեկացրին Վռամշապուհ թագավորին՝ սա պատմեց նրանց, որ հայոց լեզվի նշանագրեր, ինչպես իրեն հայտնել են, պատահաբար գտել է Դանիել անունով ասորի եպիսկոպոսը։ Սահակի և Մաշտոցի խնդիրքով թագավորն ուղարկեց Վահրիճ անունով մի պաշտոնյայի Աբել քահանայի մոտ, որը Դանիել եպիսկոպոսի ազգականն էր։ Աբելը, ստանալով թագավորի հրովարտակը, գնաց Դանիելի մոտ և, տեղեկանալով խնդրին, ուղարկեց նշանագրերը Հայոց թագավորին ու կաթողիկոսին (ըստ Կորյունի՝ Վռամշապուհի թագավորության հինգերորդ տարում)։

Սահակն ու Մաշտոցը, պատմում է Կորյունը, ստանալով պատահական կերպով գտնված («զյանկարծագիւտն») նշանագրերը՝ հավաքեցին թագավորի կարգադրությամբ մանկահասակ մանուկներ և մոտ երկու տարի նրանց սովորեցրին դրանցով գրագիտություն։ Բայց շուտով համոզվեցին, որ Դանիելյան գրերը, ծագած լինելով ուրիշ դպրություններից՝ չեն կարող ճշտությամբ արտահայտել հայերեն լեզվի վանկերն ու կապող հնչյունները։ Ուստի և Մաշտոցը, որն այդ ժամանակ ստացել էր վարդապետական աստիճան, թագավորի հրամանով և Սահակ կաթողիկոսի համաձայնությամբ գնաց մանուկների մի խմբի հետ Ասորիք (ըստ Կորյունի՝ դարձյալ Վռամշապուհի թագավորության հինգերորդ տարում)։

---

[1] Փավստոս, *III, գլ. ԺԳ, էջ 33*։

[2] *Ըստ Ղազար Փարպեցու վկայության՝ Մաշտոցը Գողթնում մնացել էր մինչև Վռամշապուհի թագավորության հինգերորդ տարին (I, գլ. Ժ)*։

Կորյունի վկայությունների մեջ, անշուշտ, ժամանակագրական անճշտություն կա։ Կորյունի ասելով՝ Դանիելյան նշանագրերը Հայաստան էին ուղարկվել Վռամշապուհի թագավորության հինգերորդ տարում։ Այդ տառերով Մաշտոցն ու Սահակը մանուկներին գրագիտություն էին սովորեցրել երկու տարի։ Իսկ այնուհետև Վռամշապուհի դարձյալ հինգերորդ տարում Մաշտոցը գնացել էր Ասորիք։

Կորյունի այս ակներև սխալն ուղղելու համար տարբեր ենթադրություններ են արված։ Մարկվարտը կարծում է, որ Կորյունի հատվածը՝ «Իբրև ամս երկու կարգեալ զվարդապետութիւն իւր»՝ հետին սխալ լուսանցագրություն է[1]։ Ոմանք «ամս երկու»-ն ուղղում և կարդում են «ամիսս երկու»։ Իսկ Աճառյանը ենթադրում է, որ Կորյունի մոտ առաջին «հինգերորդ»-ը պետք է կարդալ «երրորդ»։ Նրա կարծիքով՝ Կորյունի ձեռագրում գրված է եղել «երդ» պատվի նշանով, որը փոխանակ «երրորդ» կարդացվելու թյուրիմացաբար կարդացվել է «հինգերորդ»[2]։

Ըստ խս բոլոր այս ուղղումներն էլ հնարավոր են և միանգամայն հավանական կարելի է համարել, որ վերոհիշյալ երկու «հինգերորդ»-ներից անփոփոխ պետք է պահել երկրորդը։

Գալով Ամիդ և Եդեսիա՝ Մաշտոցը ներկայացավ տեղական Ակակիոս և Բաբիլաս եպիսկոպոսներին, որոնք նրան ընդունեցին սիրով և մեծարանքով։ Իր հետ տարած աշակերտներին նա բաժանեց երկու խմբի, որոնցից մեկը պետք է սովորեր Եդեսիայում ասորական դպրություն, իսկ մյուսը Սամոսատում՝ հունական դպրություն։

Ինքը՝ Մաշտոցը, շարունակելով աշխատել հայերեն այբուբենի վրա՝ վերջապես հնարեց հայոց լեզվի նշանագրերը։ Համաձայն Կորյունի՝ նա այդ տառերին անուններ տվեց, դասավորեց որոշ կարգով և հորինեց վանկերով ու կապերով կարդալու համար։

Այբուբենի գյուտը Եդեսիայում անելուց հետո՝ Մաշտոցը գնաց Սամոսատ, որը գտնվում էր Եփրատ գետի ափին, և այնտեղ, Հռոփանոս հույն գեղագրի աջակցությամբ, ճշտորեն ու վերջնական կերպով որոշեց նշանագրերի գծագրությունները։ Այնուհետև իր աշակերտներ Հովհան Եկեղեցացու և Հովսեփ Պաղնացու հետ նա

[1] Մարկվարտ, Պատմութիւն հայերէն նշանագրերու, թարգմ. Վարդանյանի, էջ 26, ծան. 1։

[2] Աճառյան, Երկու ուղղում Կորյունի մէջ, «Տեղեկագիր Արմֆանի», 1941, № 1 (6), էջ 169—170։

ձեռնարկեց Աստվածաշնչի թարգմանությանը, սկսելով Սողոմոնի առակների գրքից, որն արտագրվեց Հովհաննեսի ձեռքով։

Վռամշապուհի թագավորության վեցերորդ տարում Մաշտոցն իր աշակերտների հետ վերադարձավ Ասորիքից Վաղարշապատ, ուր նրան մեծ ցնծությամբ ընդունեցին թագավորը, կաթողիկոսը և նախարարների բազմությունը։

Այնուհետև Մաշտոցն իրեն ամբողջովին նվիրեց լուսավորական գործունեության։ Սահակ կաթողիկոսի հետ նա բաց արեց դպրոցներ, որոնց մեջ երեխաներին սովորեցնում էին հայերեն այբուբենը։ Միաժամանակ նա թարգմանում էր Աստվածաշնչի գրքերը ու նաև ուրիշ երկեր։

Հայերեն նշանագրերի գյուտի մասին, բացի Կորյունի ու Ղազար Փարպեցու աղքատիկ վկայություններից, կան մի քանի տեղեկություններ նաև Մովսես Խորենացու և ուշ ժամանակաշրջանի ուրիշ հեղինակների գրվածքներում։ Սակայն այդ տեղեկությունները, դժբախտաբար, մեծ մասամբ կասկածելի են և քիչ հավանական։

Հայերեն այբուբենի խնդրի ուսումնասիրման ժամանակ, նախ և առաջ, հարց է առաջանում նախամաշտոցյան գրերի մասին, որոնք անվանվում են Դանիելյան, և ծագում է նույնպես ընդհանուր մի խնդիր նախամաշտոցյան հայկական գրականության գոյության մասին, որի համար օգտագործվել են այդ գրերը։

Այդ հարցերի մասին ինչպես հայտնի է, գրել են և գրում են խիստ շատ, բայց, այնուամենայնիվ, դրանք դեռ մինչև այժմ վեճերի ու հակաճառությունների առարկա են։ Բացատրվում է այդ նրանով, որ այս հարցերի մասին մեր ձեռքը հասել են կամ աղքատիկ և կամ մութ ու անստույգ տեղեկություններ։

Անբավարար են, ամենից առաջ, աղբյուրների վկայություններն այսպես կոչված Դանիելյան գրերի մասին։ Մաշտոցի աշակերտ Կորյունը Դանիելյան գրերն անվանում է «նշանագիրս աղփաբետաց հայերէն լեզուի»։ Իր աշխատության մի ուրիշ տեղում նա մատնացույց է անում, որ այդ գրերը երկար ժամանակ մոռացության են եղել տրված և երևան են եկած պատահական կերպով,

> «Երբ նրանք [Սահակը և Մաշտոցը],—ասում է Կորյունը,— հասկացան, որ այդ նշանագրերը բավական չեն հայերեն լեզվի վանկերն ու կապերն ամբողջությամբ արտահայտելու համար,—մանավանդ որ, իրապես, նշանագրերը, որ ուրիշ լեզվից էին առնված՝ անտեսված էին և պատահաբար նորից էին գտնված»...

[«Իսկ իբրև ի վերայ հասեալ, թէ չեն բաւական նշանագիրքն

*ողջ ածել զհիւղոբայս և զկապս հայերէն լեզուոյն, մանաւանդ զի և նշանագիրքն իսկ յայլոց դպրութեանց թաղեալք և յարուցեալք դիպեցան»]*[1]։

*Ղազար Փարպեցին ևս վկայում է, ինչպես և Կորյունը, որ բարեպաշտ այր Դանիել եպիսկոպոսի մոտ գտնվում էին «նշանագիրքն հայերէն»*[2], *իսկ Մովսես Խորենացին մատնացույց է անում, որ թագավորի պատվիրակ Վահրիճը Հաբել քահանային հետն առած՝ միասին գնացին Դանիելի մոտ և նրանից տեղեկություն ստացան «վաղընջուց գրված» նշանագիր տառերի մասին։*

*«Սահակը և Մաշտոցը,—ասում է Խորենացին,—ծանոթանալով դրանց, մի քանի տարի սովորեցրին նրանցով տղաներին, բայց տեղեկացան ու իմացան, որ այն նշանագրերը, մուրացված գծագրումները, բավական չեն և չեն կարող ճշգրիտ կերպով արտահայտել առանձին առանձին հայերեն բառերի հնչյունները»։*

*[«Որոց ուսեալ, և թեածելով ընդ նոսա տղայոց զամս սակաւս, տեղեկացեալ գիտացին՝ ոչ լինել բաւական այնու նշանագրօք ստոյգ հոլովել զհեգենայ բառից հայկականաց հագներգաբար, մուրացածոյին այնուիկ գծագրութեամբ»]*[3]։

*Հայ մյուս հեղինակները ո՛չ միայն մատնանշում են այդ այբուբենի պակասավորությունը, այլև ճշտիվ որոշում են նրա տառերի թիվը։ Օրինակ, Վարդան պատմագիրը, որ ապրում էր 13-րդ դարում, հաղորդում է, որ*

*«Սրա [Վռամշապուհի] հինգերորդ տարում և Շապուհի որդի Արտաշիրի առաջին տարում՝ սուրբ Մեսրոպը ստեղծեց հայերեն դպրությունը՝ քսաներկու գիր, հին ժամանակներից մնացած, որ գտնված էին Դանիել Ասորու մոտ, իբրև մեր լեզվի հնչյունների պարզաբանման համար անբավարար մեր նախնիքներից անտեսվել էին. Նրանք բավարարվել էին, գործածելով հույն, ասորի և պարսիկ գրերը»։*

*[«Ի հինգերորդ ամին սորա և յառաջին ամին Արտաշրի որդւոյ Շապհոյ՝ սուրբն Մեսրոպ յօրինէ դպրութիւն հայերէն. քսան և երկու գիր առ Դանիէլի Ասորւոյ գտեալ ի հին ժամա-*

[1] *Տե՛ս* Կորյուն, *Վարք Մաշտոցի, հրատ. և թարգմ. Մ. Աբեղյանի, Երևան, 1941, էջ 46։*

[2] Փարպեցի *I, գլ. Ժ, էջ 14։*

[3] Խորենացի, *III, գլ. ՄԲ։*

նակաց, որ վասն ոչ պարզելոյն զընդարձակութիւն լեզուիս, անհոգացեալ եղև յայսաջնոցն, յոյն և ասորի և պարսիկ գրով շատացեալք»]¹։

Ուրիշ ավելի հին աղբյուրներում, «Անանուն ժամանակագրության» մեջ² և «Իմաստութիւն Դաւթի քերդողի» հատվածում³, որը վերագրվելու է 7-րդ դարի մատենագիր Դավիթ Հարքացուն, մատնանշվում է, որ Դանիելյան այբուբենն ուներ 29 կամ 24 տառ։

Ինչպես տեսնում ենք, մեջ բերված այս աղբյուրների վկայությունները հաստատում են, որ դեռ Մեսրոպ Մաշտոցից առաջ գոյություն են ունեցել այսպես կոչված Դանիելյան նշանագրերը, որոնք, ըստ երևույթին, օգտագործել էր Մաշտոցը հայերեն լեզվի հնչյունական առանձնահատկություններին համապատասխանող իր լրիվ այբուբենը կազմելու ժամանակ։ Աղբյուրների մեջ, թե հին և թե նոր, չկան ուղղակի ու ճշտորոշ ցուցումներ⁴, որ իբր նախամաշտոցյան նշանագրեր հնարել է Դանիել ասորի եպիսկոպոսը, ինչպես այդ առանց բավարար հիմքի պնդում են գիտնականներից ոմանք⁵։

Եվ ինձ թվում է, որ կարող է իրավացի լինել Ն. Մառը, որը կարծում էր, թե Մաշտոցից դեռ առաջ հայերեն նշանագրերը հնարել էին անհայտ ասորի միսիոներները Հայաստանի հարավ-արևելքում⁶։ Պետք է սակայն նաև մատնանշել, որ Հ. Աճառյանը «էջմիածին» ամսագրում լույս տեսած իր հոդվածում Դանիելյան գրերի մասին հայտնել է ուշագրավ մի նոր կարծիք։ Աճառյանը ենթադրում է, որ Դանիելյան տառերը «ուրիշ բան չէին, եթե ոչ ինչ որ արամեական հնացած տառեր», որոնք թյուրիմացաբար հայերեն տառեր էին համարվել «արամեական և արամյան (հայ) բառերի շփոթությունից»⁷։

Դանիելյան կոչված գրերի գոյության փաստի հետ սերտ կապ

¹ Վարդան, *Հաւաքումն պատմութեան*, Վենետիկ, 1862, էջ 49 (գլ. ԻԵ)։

² *Տե՛ս* Ա. Աբրահամյան, *Անանիա Շիրակացու մատենագրությունը*, էջ 389։

³ *Տե՛ս* Գալուստ Տեր-Մկրտչյան, *Դավիթ Հարքացի*, Վաղարշապատ, 1903, էջ 30—31։

⁴ *Բացառություն է կազմում վերոհիշյալ «Անանուն ժամանակագրութիւն»-ը, որի մեջ, հակառակ մյուս աղբյուրների, ասված է, որ Հայոց Սահակ հայրապետի ժամանակ «դպրութիւն հայերէն լեզուի քան և ինն գրով ի Դանիէղէ փիղիսոփայէ Ասորւոց կարգեցաւ»։* *Տե՛ս* Աբրահամյան, *Անանիա Շիրակացու մատենագրությունը*, էջ 389։

⁵ *Տե՛ս Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 351. Մարկվարտ, *Պատմութիւն հայերէն նշանագրերու*, էջ 43—46 և ուրիշ.։

⁶ *Марр,* Кавказский культурный мир и Армения, Петроград. 1915, էջ 34։

⁷ *Տե՛ս* Հ. Աճառյան, *Երեք հարց Մեսրոպյան այբուբենի շուրջը*, «էջմիածին», 1946, օգոստոս—հոկտեմբեր, էջ 38—39։

*ունի մի այլ կարևոր խնդիր. թե արդյոք գոյություն ունեցե՞լ է նաև նախամաշտոցյան հայ գրականություն, որն օգտվել է Դանիելյան այդ հին այբուբենից։*

*Ինչպես հայտնի է, գիտնականների մեծագույն մասն այս խնդիրը լուծել է այն իմաստով, որ Մեսրոպ Մաշտոցի գրերի գյուտից առաջ Դանիելյան կամ այլ նշանագրերով հայ դպրություն գոյություն չէ ունեցել։ Նրանք, գլխավորապես, մատնանիշ են անում, որ այդ գրականությունից չէ պահպանվել և ոչ մի հետք և չկան այդ մասին նաև պարզորոշ գրավոր տեղեկություններ։ Ընդհակառակը, աղբյուրները պարզ ու աներկմիտ ասում են, որ Մեսրոպյան այբուբենի գյուտից առաջ ժամասացությունը կատարվել է Հայաստանում օտար լեզուներով և հայ երիտասարդությունը ասորական կամ հունական դպրոցներում սովորել է ասորերեն կամ հունարեն լեզուները։*

*Սակայն, հակառակ այս գերիշխող կարծիքի, գիտնականներից ոմանք պնդում են*[1]*, որ հայ գրականության գոյությունը մինչև հինգերորդ դարը, այսինքն՝ մինչև Մեսրոպյան գրերի գյուտը, ավելի քան հավանական է։*

*Հօգուտ այս ենթադրության ամենահամոզիչ ապացույցը նրանք համարում են այն, որ հինգերորդ դարի հայ գրական լեզուն և թարգմանական գրականությունն ունեն այնպիսի կատարելություն ու գեղեցկություն, որոնք, նրանց կարծիքով, չէին կարող ստեղծված լինել մի քանի տասնամյակների ընթացքում։*

> *«Հինգերորդ դարի սկզբում,—ասում է Մ. Տեր-Մովսեսյանը,—չկային հայ գրականություն ու հայերեն այբուբեն, գոյություն չուներ նաև Աստվածաշնչի ամբողջական կամ մասնակի թարգմանությունը. հետևապես՝ չկար նաև մշակված լեզու, և հանկարծ, կարծես թե կախարդական ձեռքի շարժումով, միայն 20—30 տարվա ընթացքում՝ այդ բոլորն առաջանում է և հասնում է ամենաբարձր կատարելության։...... Մի՞թե կարող է այդ մեզ բավարարել»*[2]*։*

*Մեջ բերված այս նկատառումը, որ ամենալուրջ ապացույցն է համարվում հօգուտ հայ գրականության գոյության չորրորդ դարում*

---

[1] *Տե՛ս* Գարագաշյան, *Քննական պատմութիւն Հայոց, Գ, էջ 39 և 69—71.* *М. Тер-Мовсесян,* История перевода Библии на армянский язык, СПб., **1902**, *էջ 17—27.* **Ս. Արրահամյան,** *Նախամեսրոպյան հայկական գրականության հարցը, Պետական Մատենադարանի գիտական նյութերի ժողովածու, № 1, Երևան, 1941, էջ 41—52 և ուրիշ.։*

[2] **Տե՛ս** *Месроп Тер-Мовсесян,* История перевода Библии на армянский язык, *էջ 15։*

կամ նաև առաջ՝ չէ կարող ընդունվել իբրև անվիճելի ու անվիճելի մի փաստարկ։ Պետք է, ամենից առաջ, նկատի ունենալ, որ լեզուն ու կուլտուրան մարզպանական Հայաստանի, որը նախորդ յոթ դարերի ընթացքում ունեցել էր պետական ինքնուրույնություն և հասել էր տնտեսական ու սոցիալական զարգացման բավական բարձր աստիճանի, չէ կարելի, հարկավ, համեմատել լեզվի ու կուլտուրայի հետ նախնադարյան հետամնաց ժողովուրդների։ Ինչպես հայտնի է, հայերը դեռ մինչև Մեսրոպյան այբուբենի գյուտը ունեցել են բերանացի հարուստ բանահյուսություն, որի լեզուն, ինչպես ընդունում են գրականագետները, բոլորովին նման է հինգերորդ դարի գրականության լեզվին։ Այդ երկու լեզուների նույնությունը որոշել են բանասերները, որոնք ուսումնասիրել են Փավստոսի Պատմությունը, որի մեջ, ինչպես հայտնի է, լայն կերպով օգտագործվել էր պատմական բովանդակություն ունեցող ժողովրդական բանահյուսությունը[1]։

Ինչ վերաբերում է գիտնականների ցուցումներին հայերեն Աստվածաշնչի լեզվի մասին, որի մեջ, իբրք, ճշտորեն ու լիապես վերարտադրված են ասորական կամ հունական բնագրերի նրբությունները ու առանձնահատկությունները՝ թարգմանական այդ լեզվի կատարելությունը, ինչպես դժվար չէ կռահել, բացատրվում է ո՛չ թե նրանով, որ գրականությունը գոյություն է ունեցել հինգերորդ դարի սկզբից շատ առաջ, այլ, ըստ երևույթին, նրանով, որ քրիստոնեությունը Հայաստանում հաստատվելուց հետո Աստվածաշընչի մասնակի թարգմանություններ գրեթե ամբողջ մեկ դարի ընթացքում գոյություն են ունեցել հայերի մոտ բերանացի հաղորդմամբ։

Ինձ թվում է, որ նախամեսրոպյան հայ գրականության օգտին արտահայտվող գիտնականները խիստ չափազանցնում են Դանիելյան այբուբենի դերն ու նշանակությունը։ Նրանք բոլորովին աչքաթող են անում, որ այդ այբուբենը, ինչպես որոշակի մատնանշում են աղբյուրները, անբավարար էին և պիտանի չէին գրականությունը սպասարկելու համար։

Ավելի քան հավանական է, անշուշտ, որ քրիստոնեությունը Հայաստանում հաստատվելու ու տարածվելու հենց ընթացքում այնտեղ առաջանալու էր միաժամանակ հայերեն այբուբենի և քրիստոնեական պաշտամունքի գրքերի թարգմանման պահանջը։ Եվ միանգամայն հավանական կարելի է համարել, որ քրիստոնեության սկզբից հենց, ինչպես այդ երևում է աղբյուրների որոշ ակնարկ-

---

[1] Տե՛ս Ստ. Մալխասյան, Ուսումնասիրութիւն Փաւստոս Բուզանդի պատմութեան, Վիեննա, 1896։

ներից, կարող էին փորձ արած լինել ստեղծելու հայերեն դպրություն, գլխավորապես, սեմական լեզուների այբուբենների օգնությամբ հարավային Հայաստանում։ Ասորական միսիոներների, կամ թերևս իր՝ Դանիելի, այս առաջին փորձը ո՛չ թե այն էր, որ նրանք այբուբեն էին հնարել հայերեն լեզվի հնչյունաբանությանը համապատասխանող, այլ միայն այն, որ նրանք օտար լեզվի նշանագրերը աշխատել էին կիրառել հայերեն լեզվի համար։

Նրանց կազմած այբուբենը, որը թերակատար էր և անգործադրելի, չէ կարելի, իհարկե, իբրև համարժեք գործ համեմատել Մեսրոպ Մաշտոցի գյուտի հետ, որն առաջին անգամն էր պարզաբանել հայկական հնչյունաբանության դժվարին ու բարդ առանձնահատկությունները։ Որոշած լինելով հայերեն լեզվի բոլոր ձայնավոր ու բաղաձայն հնչյունները՝ հայ ֆոնետիկայի այս հանճարեղ հիմնադիրը ստեղծել է ո՛չ թե մեռելածին, այլ կենսական ու անմահ այբուբեն, որը պիտանի էր գրականությունը սպասարկելու համար։

Եվ միանգամայն ակներև է, որ հենց շնորհիվ Մաշտոցի մեծ գյուտին հնարավոր եղավ ստեղծել և լայնորեն զարգացնել հայ գրականությունը և գիտությունը։

Մեսրոպ Մաշտոցի այբուբենի գյուտի ժամանակի մասին սկզբնաղբյուրների հաղորդած ժամանակագրական տեղեկությունները, ինչպես հայտնի է, խիստ հակասական են ու խճճված։

Սկսած դեռ Չամչյանից, որն իր եռահատոր պատմությունը գրել է 18-րդ դարում, այս հարցը բազում անգամ ենթարկվել է հատուկ քննության, սակայն մինչև այժմ վերջնական կերպով լուծված չէ։

Պետք է ասել, որ ընդհուպ մինչև վերջին ժամանակները գիտնականների մեծագույն մասը միանգամայն անտարակուսելի էին համարում, որ Մեսրոպյան այբուբենի գյուտի ժամանակը ճշտիվ որոշվում է հինգերորդ դարի սկզբում՝ 404—406 թվերին։ Այս թվականը ստացվում է, իբրև, ժամանակագրական այն ցուցումների հիման վրա, որոնք գտնվում են Կորյունի պատմական երկի վերջում։ Կորյունի այս վկայությունը մեջ եմ բերում ամբողջությամբ։

«Եվ արդ,—ասված է Կորյունի պատմության վերջաբանում,— Երանելիի հավատքի տարիների հաշիվը լինում է քառասունհինգ տարի, և Հայոց դպրությունից մինչև սրբի վախճանը՝ երեսունհինգ տարի, որ այսպես են համարվում. Պարսից արքա Կրմանը թագավորել է վեց տարի և Հազկերտը՝ քսանմեկ տարի [և Վռամը տասնութ տարի], և Վռամի որդի երկրորդ Հազկերտի առաջին տարում վախճանվեց Երանելին։

Եվ արդ՝ սուրբ հավատքի տարիների հաշիվն սկսվում է Կըրմանի արքայի չորրորդ տարուց մինչև Վռամի որդի երկրորդ Հազկերտի առաջին տարին, և Հայոց դպրությունն սկսվել է Հազկերտի ութերորդ տարուց»։

[«Եւ արդ լինի համար ամաց հաւատոյ երանելւոյն ամք քառասուն և հինգ, և ի դպրութենէն Հայոց մինչև ցվախճան սրբոյն՝ ամք երեսուն և հինգ, որք համարին այսպես. թագաւորեալ Կրմանայ Պարսից արքայի ամս վեց, և Յազկերտի ամս քսան և մի [և Վռամայ ութ և տասն] և յառաջնումն ամի երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ վախճանեցաւ երանելին։ Եւ արդ առնու համար ամաց սրբոց հաւատոց ի չորրորդում ամէն Կրմանայ արքայի մինչև ցառաջին ամն երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ, և դպրութեանն Հայոց յութերորդ ամէ Յազկերտի առեալ սկիզբն»][1]։

Կորյունի պատմության այս վերջաբանում հայ դպրության սկիզբը, ինչպես տեսնում ենք, ցույց է տրված Հազկերտ Ա-ի (399—420) ութերորդ տարում և 35 տարի Մաշտոցի մահից առաջ, որը, ինչպես հայտնի է[2], վախճանվել է հայոց մեծական ամսի տասներեքին՝ Սահակ կաթողիկոսի մահից վեց ամիս հետո։ Հայ և օտար պատմագետներն ու բանասերները կարծում են, որ Կորյունի վերջաբանի ժամանակագրական այս տվյալների հիման վրա Մեսրոպ Մաշտոցի գյուտի թվականը որոշվում է լիակատար ճշտությամբ։

Հիմնվելով տոմարական անվիճելի հաշիվների վրա՝ Մեսրոպ Մաշտոցի, ինչպես և Սահակ կաթողիկոսի, մահվան տարեթիվը, ամսաթիվը և օրը ճշտիվ որոշել է ֆրանսիական գիտնական Դյուլորիեն։ Մեսրոպ Մաշտոցը, ինչպես նա պարզել է, վախճանվել է 440 թվի փետրվարի 17-ին, շաբաթ, իսկ Սահակ կաթողիկոսը՝ 439 թվի սեպտեմբերի 7-ին, հինգշաբթի[3]։ Այսպիսով, հայերեն այբուբենի գյուտը, որ Կորյունի վերջաբանում մատնացույց է արված Մեսրոպ Մաշտոցի մահվանից 35 տարի առաջ՝ պետք է ենթադրել 406 թվին։ Այս թվականի ճշտությունը հաստատվում է նաև նրանով, որ նույն տարեթիվը ստացվում է Կորյունի վերջաբանի նաև բստ մի ուրիշ վկայության, որը հայոց դպրության սկիզբը մատնանշում է Հազ-

---

1 Տե՛ս Կորյուն, Վարք Մաշտոցի, հրատ. և թարգմ. Մ. Աբեղյանի, էջ 98—101։

2 Տե՛ս նույնը, էջ 82։

3 Տե՛ս Édouard Dulaurier, Recherches sur la chronologie arménienne, Paris, 1859, էջ 135—136, ծան. 40։

կերտ Ա-ի թագավորության (399—420 թ.) ութերորդ տարում, այսինքն՝ դարձյալ 406 թվին[1]։

Հայկական գրերի գյուտի այս տարեթիվը, որ հիմնված է Կորյունի վերջաբանի սինխրոնիզմների վրա, ինչպես հայտնի է, գրեթե բոլոր գիտնականները համարում են նաև այժմ հաստատուն և անդրդվելի։ Սակայն Ղազար Փարպեցու ժամանակագրական ցուցումները, ինչպես և իր՝ Կորյունի հաղորդած տեղեկություններն իր աշխատության մյուս հատվածներում, ինչպես դժվար չէ համոզվել, ուշադիր կերպով քննելով բոլոր այդ վկայությունները, անհաշտելի կերպով հակասում են վերոհիշյալ վերջաբանի տվյալներին։

Կարևոր այս փաստը, որ անտարակուսելի է, պարզ ցույց է տալիս, որ գրերի գյուտի տարեթվի խնդիրը կարոտ է վերստուգման ու նոր ուշադիր քննության։

Կորյունի պատմության բնագրի մեջ եղած կարևոր մի քանի հակասությունները մատնանշված են Գ. Տեր-Մկրտչյանի և Ն. Ադոնցի հոդվածներում, որոնք տպագրված են «Արարատ» և «Հանդէս Ամսօրեայ» ամսագրերում[2]։

Ինչպես տեսանք, Կորյունը, պատմելով գրերի գյուտի մասին, հաղորդում է, որ Վռամշապուհի (387/8—շուրջ 413/4) թագավորության հինգերորդ տարում Մաշտոցը գնացել էր ասորական Ամիդ և Եդեսիա քաղաքները, ուր նրան մեծարանքով ընդունել էին տեղական Ակակիոս և Բաբիլաս եպիսկոպոսները։ Մինչդեռ՝ հակառակ Կորյունի այս վկայության, մեզ հայտնի է, որ Ակակիոսն Ամիդի եպիսկոպոս էր սկսած 419/420 թվականից, իսկ Բաբիլասը, կամ ավելի ճիշտ՝ Ռաբուլասը[3], Եդեսիայի եպիսկոպոս էր 412—435 թվերին[4]։

Արդ՝ ինչպե՞ս բացատրել Կորյունի այս ակներև հակասությունը։ Վերոհիշյալ վերջաբանի մեջ հայկական գրերի գյուտը մատնա-

---

[1] Հայ և օտար գիտնականները, որոնք հայկական գրերի գյուտը դնում են 404, 405 կամ 407 թվերին, անծանոթ լինելով Դյուլորիեի տոմարական ճշգրիտ հաշվին, մեծ մասամբ, սխալ են որոշել Մաշտոցի մահվան տարեթիվը։

[2] Տե՛ս Գալ. Տեր-Մկրտչյան. Հայ գրերի 1500-ամեակի առթիւ, «Արարատ», 1912, մայիս-հունիս, էջ 499—514. Ն. Ադոնց, Անծանօթ էջեր Մաշթոցի և նրա աշակերտների կեանքից ըստ օտար աղբիւրների, «Հանդէս Ամսօրեայ», 1925, № 5—12։

[3] Կորյունի պատմության բնագրում, ինչպես մատնացույց է արել Գ. Տեր-Մկրտչյանը։ Բաբիլաս անունը պետք է ուղղել և կարդալ Րաբիլաս (=Ռաբուլաս)։ Տե՛ս «Հայ գրերի 1500-ամեակի առթիւ», «Արարատ», 1912, մայիս—հունիս, էջ 508։

[4] Տե՛ս Chabot, Synodicon orient, Paris, 1902, էջ 276 և J. Labourt, Le Christianisme dans l'empire, perse, Paris, 1904, էջ 101։

ցույց է արված 406 թվականին, իսկ բուն բնագրի վկայություններից կարելի է հետևցնել, որ այդ գյուտը պետք է եղած լիներ 412 կամ մինչև իսկ 419/420 թվականներից հետո և ոչ ուշ քան 435 թիվը։

Գ. Տեր-Մկրտչյանն իր վերևում նշված հոդվածի մեջ աշխատել է այդ հակասությունը վերացնել և ենթադրել է, որ վերջաբանում հիշատակված 406 թվականը ո՛չ թե Մեսրոպյան տառերի գյուտի թվականն է, այլ Դանիելյան տառերի Վաղարշապատ բերվելու թվականն է և սկիզբը հայ տառերի գյուտի աշխատությունների[1]։ Նրա կարծիքով, Մեսրոպյան այբուբենը չէր կարող հնարված լինել 412 թվականից, այսինքն՝ Ռաբուլասի Եդեսիայի եպիսկոպոս ձեռնադրվելուց առաջ։ Ուստի նա Մաշտոցի հանդիպումը Ռաբուլասի հետ և նրա գործունեությունն Ասորիքում ենթադրում է 412—416 թվերին, իսկ Մեսրոպյան գրերի գյուտը՝ այդ քառամյակի սկզբներում։ Կորյունի բնագրի մեջ, ասում է Տեր-Մկրտչյանը, ներս է սպրդել գրչագրական ակներև մի սխալ։ Մաշտոցն Ասորիքից վերադարձել էր Վաղարշապատ ո՛չ թե Վռամշապուհի թագավորության վեցերորդ տարում («ի Զ ամի Վռամշապհոյ արքային»), այլ տասնվեցերորդ տարում («ի ԺԶ ամի»)։ Կորյունի բնագրում «վեց» կամ Զ թիվը նա առաջարկում է ուղղել և կարդալ ԺԶ կամ «տասնվեց»։

Կարծելով, որ հակասությունը Կորյունի մոտ կարելի է վերացնել իր առաջարկած այդ ուղղումով՝ Տեր-Մկրտչյանը հանգում է բոլորովին նոր եզրակացությունների և տալիս է հետևյալ ժամանակագրությունը.

1. 405 թ.—Սկիզբն հայ տառերի գյուտի աշխատությունների, այսինքն՝ Դանիելյան տառերի Վաղարշապատ բերվելը.

2. 412—416 թթ.—Մեսրոպյան գրերի գյուտը և կատարելագործումը.

3. 412—416 թվերի սկիզբը—Մեսրոպյան գրերի գյուտը։

Մեջ բերված այս նոր եզրակացությունները, ինչպես դժվար չէ նկատել, ո՛չ միայն համոզիչ չեն, այլև խիստ վիճելի են։ Նախ և առաջ՝ դժվար է, իհարկե, ենթադրել, որ իբր Կորյունի աշխատության վերջաբանում, որն ամբողջովին նվիրված է Մեսրոպ Մաշտոցի կենսագրությանը, ժամանակագրական ցուցումները վերաբերում են ո՛չ թե Մեսրոպ Մաշտոցի այբուբենի գյուտին, այլ Դանիելյան գրերի Վաղարշապատ բերվելուն։ Կասկածելի է, բացի այդ, Տեր-Մկրտչյանի նաև մի ուրիշ պնդումը, որ իբր թե Մեսրոպ Մաշտոցը հնարել և կատարելագործել էր այբուբենը Դանիելյան տառերի

[1] Տե՛ս «Արարատ», 1912, մայիս—հունիս, էջ 512։

ստացվելուց 7—11 տարի հետո և վերադարձել էր Վաղարշապատ Վռամշապուհի թագավորության տասնվեցերորդ տարում։ Անընդունելի է նույնպես Տեր-Մկրտչյանի վերոհիշյալ ուղղումը՝ «ի ԺԶ ամի» փոխանակ «ի Զ ամի», որովհետև Կորյունի տպագրված բնագրի ճշտությունը հաստատվում է բոլոր ուշ շրջանի պատմագիրների ու ժամանակագիրների վկայություններով։ Իսկ ամենամեծ պակասությունը Տեր-Մկրտչյանի առաջարկած ժամանակագրության այն է, որ Կորյունի բնագրի մեջ եղած վերոհիշյալ հակասությունները բնավ չեն վերանում նրա նոր ենթադրություններով։

Ինչպես արդեն հիշված է, Կորյունը պարզ և որոշ վկայում է, որ Մեսրոպին Ասորիքում օգնել էր ո՛չ միայն Ռաբուլասը, այլև Ակակիոսը, որը Ամիդ քաղաքի եպիսկոպոս էր ձեռնադրվել մոտավորապես 419/420 թվականին։ Ըստ այսմ, համաձայն Կորյունի այդ ցուցման, Մեսրոպ-Մաշտոցյան այբուբենի գյուտը և կատարելագործումը հավանական կլիներ ենթադրել ո՛չ թե 412—416 թվականներին, այլ ավելի ուշ՝ 419/420 թվից ոչ առաջ։

Գ. Տեր-Մկրտչյանի հոդվածը Մեսրոպյան տառերի գյուտի թվականի քննական ուսումնասիրության առաջին փորձն էր և այդ հոդվածի գլխավոր արժանիքն այն է, որ նրա ականավոր հեղինակը չէ հետևել ավանդական տեսակետին, որը, ինչպես տեսանք, համարվում էր հաստատուն ու անառարկելի։

Բոլորովին նոր ու հետաքրքիր լուսաբանություն է տվել նույն այս խնդրին Ն. Ադոնցը վերոհիշյալ իր հոդվածում, որը տպված է «Հանդէս Ամսօրեայ» ամսագրում։ Հիմնվելով հունա-հռոմեական աղբյուրների վրա՝ Ադոնցը մեջ է բերում իր հոդվածում անծանոթ նոր փաստեր, որոնք վկայում են, որ Մեսրոպ Մաշտոցը մասնակից է եղել կրոնական պայքարին նեստորականության դեմ։ Նա մատնանշում է, ի միջի այլոց, որ հայ գրերի հորինողը մոտ ծանոթ է եղել Նեստորիոսի ուսուցիչ Թեոդորոս Մոպսուեստացու կամ Մամուեստացու հետ։ Թեև Ադոնցը նպատակ չէ ունեցել լուսաբանելու գրերի գյուտի խնդիրը, սակայն նրա հոդվածը զուգընթացորեն տալիս է ցուցումներ, որոնք պարզապես նոր հունի մեջ են դնում նաև այդ պրոբլեմը։

Ինչպես շատ ճիշտ կռահել է Ադոնցը, հայ գրերի հորինման ժամանակ Մաշտոցին աջակցել և օգնել էին ոչ թե Ակակիոս և Ռաբուլաս եպիսկոպոսները, այլ, հավանորեն, վերոհիշյալ Թեոդորոս Մոպսուեստացին, որի հերձվածողական գրվածքները դատապարտվել էին Եփեսոսի 431 թվի տիեզերական ժողովում։

«Կորիւնը,— ասում է Ադոնցը,— հասարակ կենսագիր չէ, նա և եկեղեցական գործիչ է և իբր այդպիսին պէտք է իր գրիչը համակերպէր հետ-եփէսոսեան տրամադրութեան։ Հայոց կապերը Ասորիքի հետ այժմ պիտի խորշելի թվէր»[1]։

Սրանից պարզ հետևում է, որ Կորյունի հաղորդումների մեջ նկատվող թերասությունները, անորոշությունները և նույնիսկ խեղաթյուրումները կարող են բացատրվել ո՛չ միայն Կորյունի աշխատության խմբագրական վերամշակումով, այլ մասամբ նաև դավանական նկատառումներով հենց իր՝ հեղինակի, որը Մաշտոցի Վարքը գրել էր համապատասխան փոփոխված կրոնական տրամադրությունների հինգերորդ դարի կեսերում։

Ադոնցը հավանական է համարում, որ հայկական այբուբենը Մաշտոցը պետք է հորինած լիներ չորրորդ դարի վերջում Թեոդորոս Մոպսուեստացու և սրա աշակերտ՝ Ռուփինոս[2] անունով քահանայի աջակցությամբ, որը 399 թվին Ասորիքից մեկնել էր Հռոմ և այնտեղ խսկական հիմնադիրը դառել Պելագիական կոչված վարդապետության[3]։ Ըստ Ղազար Փարպեցու, բացատրում է Ադոնցը, Վռամշապուհին թագավոր էր կարգել Շապուհ Գ-ը (383/4—388/9 թ.), ուրեմն՝ պարզ է, որ Մեսրոպ-Մաշտոցյան գրերի գյուտը, որոնք Վաղարշապատ էին բերվել Վռամշապուհի վեցերորդ տարում՝ կարելի է ենթադրել չորրորդ դարի վերջերում Վռամ Դ-ի (388/9—399 թ.) թագավորության ժամանակ։ Հենց այս ժամանակաշրջանում, ասում է Ադոնցը, Մեսրոպ Մաշտոցը նամակագրություն էր ունեցել Թեոդորոս Մոպսուեստացու հետ սրա քահանա եղած ժամանակ (383—392 թ.), և, հավանորեն, հենց այս վերջինը կարող էր աջակցություն ցույց տված լինել Մաշտոցին գրերի գյուտի ժամանակ։

«Սրանով,— եզրակացնում է Ադոնցը,— ընդգծվում է գրերի գյուտի համար որոշ և դրական տարեթիվ՝ 388—392 տարիների տասնամյա միջոցը»[4]։

Ադոնցի դիտողությունները, անշուշտ, խիստ հետաքրքրական են և արժանի են հատուկ ուշադրության։ Սակայն կարող են թերևս առարկելի լինել նրա մատնանշած ժամանակագրական տարեթվերը,

---

[1] «Հանդէս Ամսօրեայ», 1925, սեպտեմբեր—հոկտեմբեր, էջ 439։

[2] Մաշտոցի Վարքի ընդարձակ խմբագրությունը փոխանակ «Ռուփինոսի» ունի «Հռոփանոս», իսկ համառոտ խմբագրությունը և Խորենացու Պատմությունն ունեն նաև՝ «Ռուփինոս», «Ռուփանոս» և «Հռուփանոս» ընթերցվածները։

[3] «Հանդէս Ամսօրեայ», 1925, թ. 9—10, էջ 441։

[4] Նույնը, 11—12, էջ 531։

որովհետև Մեսրոպ-Մաշտոցյան այբուբենը կարող էր հորինված լինել Թեոդորոս Մոպսուեստացու ո՛չ միայն քահանայության, այլև նրա եպիսկոպոսության ժամանակ, այսինքն՝ 391/2 թվից հետո։

Մեսրոպ-Մաշտոցյան գրերի գյուտի տարեթիվը, ինչպես ցույց է տալիս սկզբնաղբյուրների վկայությունների ուշադիր համեմատական քննությունը, պետք է որոշել ո՛չ թե Կորյունի վերջաբանի, այլ Կորյունի և Ղազար Փարպեցու վերևում մատնանշված ցուցումների հիման վրա։ Կորյունի ցուցումներից, ինչպես տեսանք, երևում է, որ Մեսրոպ Մաշտոցը հայ գրերի գյուտն արել է Վռամշապուհի թագավորության հինգերորդ կամ վեցերորդ տարում։ Ուշագրավ է, որ ուշ շրջանի հայ մատենագիրները[1] հենվում են հենց այդ վկայության վրա և բոլորովին անտեսում են Կորյունի վերջաբանը։ Պետք է նաև նշել, որ նույն այդ հեղինակները Վռամշապուհի թագավորության հինգերորդ կամ վեցերորդ տարին որոշել են հիմնվելով, գլխավորապես, Մովսես Խորենացու Պատմության սխալ ժամանակագրության ու շփոթ սինխրոնիզմների վրա։ Ուստի և հասկանալի է, թե ինչու նրանք չէին կարող ճշտել գրերի գյուտի տարեթիվը։

Խոսրով Դ-ի, Վռամշապուհի, ինչպես և, ընդհանրապես, վերջին Հայ Արշակունի թագավորների թվականները, որ քննված ու ճշտված են մեր այս աշխատության մեջ, ինչպես ասացինք, սխալ ու քմահաճորեն են որոշված նաև նորագույն ուսումնասիրություններում։ Պատմագետները և բանասերները, դժբախտաբար, աչքաթող են արել Ղազար Փարպեցու ժամանակագրական արժանահավատ ցուցումները, որոնք վճռական նշանակություն ունեն այս խնդրում։ Նրա այդ ցուցումներից մենք արդեն վերև եզրակացրինք, որ թե Խոսրով Դ-ը (385—387/8) և թե նրա եղբայր Վռամշապուհը (387/8—շուրջ 413/4 թ.) թագավոր էին կարգվել Պարսկական Հայաստանի՝ Շապուհ Գ-ի (383/4—388/9 թ.) հրամանով։ Սխալ տարեթվերն երկու այս թագավորների, որ շարունակ մեջ են բերվում պատմագիտական ու բանասիրական ուսումնասիրություններում, բացատրվում են, ինչպես տեսանք, Խորենացու Պատմության և կամ Կորյունի վերջաբանի ժամանակագրական սխալ տվյալների ազդեցությամբ, որ, իմ կարծիքով, վճռականորեն պետք է մերժվեն։

Որ Խորենացու մոտ «Հայ Արշակունիների աղյուսակի մեջ ամե-

---

[1] Տե՛ս «Ստեփաննոսի Տարօնեցւոյ, Ասողկան, *Պատմութիւն տիեզերական*», Ս. Պետ., 1885, II, գլ. Ա, էջ 74. «Սամուէլի քահանայի Անեցւոյ, *Հաւաքմունք ի գրոց պատմագրաց*», հրատ. Ա. Տեր Միքելյանի, էջ 68. «*Հաւաքումն պատմութեան Վարդան վարդապետի*», Վենետիկ, 1862, էջ 49 (գլ. ԻԴ)։

նախատնակ մասն է Սասանյանների շրջանը և հատկապես Տրդատի թագավորությունից սկսած»՝ այդ խոստովանում է մինչև իսկ Խորենացու Պատմության ամենաջերմ ջատագով Ստ. Մալխասյանը[1]։ Միանգամայն անվստահելի է նաև Կորյունի ժամանակագրական վերջաբանը, որի մեջ գրերի գյուտը ենթադրվում է Հազկերտ Ա-ի (399—420 թ.) ութերորդ տարում, մինչդեռ Կորյունի բուն բնագրից մեզ հայտնի է, որ այդ գյուտը տեղի էր ունեցել Վռամշապուհի թագավորության հինգերորդ կամ վեցերորդ տարում, այսինքն՝ Պարսից Վռամ Դ Կրմանի (388/9—399 թ.) ժամանակ։ Ուշագրավ է, որ Խորենացու Պատմության մեջ ևս, համապատասխան Կորյունի վերջաբանի, Մեսրոպյան նշանագրերի բերվելը Հայաստան մասնանշված է Թեոդոսիոս Փոքրի (408—450 թ.) և Հազկերտ Ա-ի (399—420 թ.) ժամանակ[2]։ Առանձնապես հետաքրքիր է նաև այն, որ հետնագույն ժամանակների հայ մատենագիրներից և ոչ մեկը՝ ո՛չ Ստեփանոս Տարոնեցին, ո՛չ Սամուել Անեցին և ո՛չ էլ Վարդան վարդապետը, ըստ երևույթին, ծանոթ չեն եղել Կորյունի վերջաբանին և գիտեն միայն նրա բուն բնագրի վկայությունները։

Ըստ այսմ՝ աչքի առաջ ունենալով վերոհիշյալ նկատառումները, ինձ թվում է, կարելի է հետևություն անել, որ Կորյունի աշխատության վերջում գտնվող ժամանակագրական վերջաբանն ընդմիջարկություն է և չէ կարող վերագրվել իրեն՝ Կորյունին։ Իսկ եթե այդ այդպես է՝ հայ գրերի գյուտի ժամանակագրական խնդիրը կարող է ստանալ բոլորովին նոր լուծում։ Ընդունելով ըստ Փարպեցու վկայության և համաձայն վերև ճշտված Հայ Արշակունիների տարեթվերի, որ Վռամշապուհի գահակալության առաջին տարին 388 թվականն է՝ կարելի է վստահ կերպով հետևություն անել, որ Մեսրոպ-Մաշտոցյան գրերի գյուտը, որ տեղի էր ունեցել Վռամշապուհի թագավորության հինգերորդ կամ վեցերորդ տարում՝ պետք է ենթադրել ո՛չ թե հինգերորդ դարի սկզբում, 406 թվականին, ինչպես որոշված է գրեթե բոլոր նախկին աշխատություններում, այլ չորրորդ դարի վերջերում՝ 392 կամ 393 թվականներին։

Հայ նորագյուտ տառերի Վաղարշապատ բերվելուց հետո, ինչպես պատմում է Կորյունը, Հայաստանում ծավալվեց լուսավորական բուռն ոգևորիչ գործունեություն։ Մեսրոպ Մաշտոցը մի քանի անգամ շրջեց Հայաստանի զանազան կողմերը, բացեց դպրոցներ և

---

1 Տե՛ս **Մովսես Խորենացի**, *Հայոց պատմություն, թարգմ. Ստ. Մալխասյանի, Երևան, 1940, էջ 350։*

2 Տե՛ս **Խորենացի**, *III, գլ. ԾԴ։*

*աշխատեց տարածել ամենուրեք գրագիտություն և ուսում մայրենի մատչելի լեզվով։*

*Կորյունն իր աշխատության մեջ մանրամասն պատմում է նույնպես, որ Մեսրոպ Մաշտոցը, ցանկանալով դպրության ու գրագիտության բարիքը տարածել նաև Հարևան երկրներում, Վրաստանում ու Աղվանքում, Հորինել է նշանագրեր վրացերեն ու աղվաներեն լեզուների։*

*Այդ կարևոր ու Հետաքրքիր տեղեկությունները, որ գիտնականներից ոմանք Համարում են վիճելի ու անՀավաստի, ավելորդ չեմ Համարում թարգմանաբար մեջ բերել ընդարձակ բովանդակությամբ։*

*1. Կորյուն, Հրատ. Մ. Աբեղյանի, Երևան, 1941 թ., էջ 62—63՝*

*«Եվ նա [Մաշտոցը] ըստ իրեն տված տիրոջից շնորՀքի սկսեց նշանագրեր Հորինել վրացերեն լեզվի Համար։ Գրեց, կարգավորեց և, ինչպես Հարկն է, Հարդարեց ու, իր լավագույն աշակերտներից մի քանիսին Հետը վերցնելով՝ վեր կացավ, գնաց, իջավ Վրաստանի կողմերը։ Եվ գալով այնտեղ՝ ներկայացավ թագավորին, որի անունն էր Բակուր, և երկրի եպիսկոպոսին, որի անունը Մովսես էր։ Թագավորը և զորքերը, բոլոր գավառներով միասին խիստ Հլու ու Հնազանդ էին նրան ըստ աստվածային օրենքի։*

*Եվ նա իր արվեստն առաջադրելով՝ խրատեց, Հորդորեց նրանց, և ապա բոլորը Հանձն առան նրա խնդրածը կատարել։ Եվ գտնվեց վրացերեն լեզվի թարգման մի մարդ, որն անվանվում էր Ջաղա և որը գրագետ ու ճշմարտաՀավատ մարդ էր։ Այնուհետև վրաց արքան Հրամայեց իր իշխանության զանազան կողմերից և խառնաղանջ գավառներից Հավաքել տղաներ և Հանձնել վարդապետին»։*

*[«Եւ առնոյր կարգեալ նշանագիրս վրացերէն լեզուին, ըստ շնորՀեցելոյ նմա ի Տեառնէ։ Գրէր, կարգէր և օրինօք յարդարէր. և առնոյր ընդ իւր զոմանս լաւագոյնս յաշակերտաց իւրոց, յարուցեալ գնայր իջանել ի կողմանս Վրաց։ Եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին, որում անուն էր Բակուր, և եպիսկոպոսի աշխարՀին՝ Մովսէս։ Եւ առաւելագոյն Հնազանդեալ նմա ըստ օրինացն Աստուծոյ՝ թագաւորին և զօրացն, Հանդերձ ամենայն գաւառօքն։ Եւ նորա զիւր արուեստն առաջի արկեալ՝ խրատէր յորդորելով. յորում և յանձն առեալ ամենեցուն զխնդրելին կատարել։ Եւ գտեալ զայր մի թարգման վրացերէն լեզուին, որ անուանեալ կոչէր Ջաղայ, այր գրագէտ և ճշմարտաՀաւատ. Հրաման տայր այնուՀետև արքայն Վրաց՝*

ի կողմանց կողմանց և ի խառնաղանչ գաւառաց իշխանութեան իւրոյ ժողովել մանկունս և տալ ի ձեռն վարդապետին»]։

2. Նույնը, էջ 68—70՝

«Այդ ժամանակ եկավ, հանդիպեց նրան մի քահանա մարդ, ազգով աղվան, որի անունը Բենիամին էր։ Եվ նա [Մաշտոցը] հարցափորձ արեց և քննեց աղվաներեն լեզվի բարբարոս բառերը, ապա վերնապարգև կորովի իր սովորությամբ նշանագրեր հորինեց և Քրիստոսի տված շնորհքի ներգործությամբ կշռադատեց, կարգավորեց և հաստատեց։

Դրանից հետո նա հրաժեշտ տվեց եպիսկոպոսներին, աշխարհի իշխաններին և բոլոր եկեղեցիներին. նրանց մոտ հավատացյալների համար վերակացուներ թողեց իր աշակերտներից երկուսին, որոնց առաջինի անունը Ենովք էր և երկրորդինը՝ Դանան, կրոնավոր և ավետարանական, սպասավորության մեջ առաջադեմ մարդիկ, որոնց հանձնարարեց աստուծու շնորհքին և տեղավորեց այնտեղ։ Եվ ինքը շատ աշակերտներով եկավ, անցավ Մեծ Հայաստանի կողմերը և, հասնելով Նոր Քաղաքը՝ ներկայացավ սուրբ եպիսկոպոս Սահակին և Հայոց թագավորին, որի անունն էր Արտաշես, և բոլոր բանակին։ Եվ նա պատմեց նրանց աստուծու շնորհքի ներգործությամբ այն կողմերում կատարած գործերը. մի քանի օր նա մնաց այնտեղ և սիրտ տվեց, որ հոգևոր կարոտալի սեր տարածեն։

Եվ ապա դրանից հետո նրանց հրաժեշտ տվեց, որովհետև գնալու էր Աղվանքի կողմերը։ Եվ գնաց իջավ նրանց աշխարհը և, հասնելով թագավորական տեղերը, տեսավ աղվանների սուրբ եպիսկոպոսին, որի անունը Երեմիա էին ասում, և նրանց թագավորին, որի անունն Արսվաղ էր, որոնք բոլոր ազատանիների հետ միասին մեծ խոնարհությամբ ընդունեցին նրան Քրիստոսի անվան համար։ Ապա երբ նրանք հարցրին՝ նա բացատրեց, թե ինչու համար է եկել։ Եվ նրանք, երկուսը միասին, եպիսկոպոսը և թագավորը, հանձն առան ընդունել դպրությունը։ Նրանք հրաման տվին նաև, որ իրենց իշխանության գավառներից ու տեղերից դպրության արվեստի համար բազմաթիվ տղաներ բերեն և հավաքեն, հարմարավոր ու պատեհ տեղերում մաս մաս տեղավորեն դպրոցներում և նրանց ապրուստի համար կարգեն թոշակներ»։

[«Յայնմ ժամանակի եկեալ դիպէր նմա այր մի երէց աղուան ազգաւ, Բենիամէն անուն, և նորա հարցեալ և քննեալ զբարբարոս զբանս աղուաներէն լեզուին, առնէր ապա նշանա-

գիրս ըստ վերնապարգև կորովի սովորութեան իւրում և յաջողութեամբ Քրիստոսի շնորհացն կարգեալ և հաստատեալ կշըռէր։ Յետ այնորիկ հրաժարեալ յեպիսկոպոսաց, յիշխանաց աշխարհին և յամենայն եկեղեցեաց. առ որս թողեալ վերակացուս հաւատացելոցն՝ զերկուս ոմանս յիւրոց աշակերտացն, որոց առաջնոյն Ենովք անուն էր, և երկրորդին Դանան, արք կրօնաւորք և յառաջադէմք յաւետարանական սպասաւորութեանն. զորս յանձն արարեալ շնորհացն Աստուծոյ՝ անդէն զետեղէր։ Եւ ինքն բազում աշակերտօք գայր, անցանէր ի կողմանս Հայոց Մեծաց և հասեալ ի Նոր Քաղաքն՝ յանդիման լինէր սրբոյ եպիսկոպոսին Սահակայ և թագաւորին Հայոց, որում անուն Արտաշէս կոչէին, և ամենայն բանակին։ Եւ պատմեալ նոցա զգործս կողմանցն այնոցիկ ըստ աջողութեանց շնորհացն Աստուծոյ, ղաղարէր անդ աւուրս ինչ, մխիթարէր վասն հոգևոր անձուկն սփռելոյ։

Եւ ապա յետ այնորիկ հրաժարեալ գնալ ի կողմանս Աղուանից։ Եւ երթեալ իջանէր յաշխարհն և հասեալ ի թագաւորական տեղին, տեսանէր զսուրբ եպիսկոպոսն Աղուանից, որում անուն Երեմիա կոչէին, և զնոցին թագաւոր, որում Արսվաղ էր անուն, ամենայն ազատօք հանդերձ, որոց առաւել հպատակութեամբ ընկալեալ վասն անուանն Քրիստոսի։ Ապա հարցեալ ի նոցանէ, առաջի եդեալ վասն որոյ եկեալն էր։ Եւ նոցա երկոցունց զուգակցելոց, եպիսկոպոսին և թագաւորին, յանձն առեալ դպրութեանն հնազանդելոյ. տային ևս հրաման՝ ի գաւառաց և ի տեղեաց իշխանութեանն իւրեանց բազմութիւն մանկանց յարուեստ դպրութեանն ածել և գումարել՝ ըստ արժանաւոր և պատեհ տեղեաց, դասս դասս դպրոցաց և ռոճիկս կարգել ի դարմանս»]։

Կորյունի պատմական երկի այս տեղեկությունները մեջ են բերված նաև Մովսես Խորենացու մոտ, որն անում է նաև լրացումներ, որոնք, ըստ երևույթին, քաղված են ուրիշ աղբյուրներից։

3. Խորենացի, III, գլ. 54՝

«Իսկ Մեսրոպը, գնալով Վրաց աշխարհը՝ իրեն վերուստ տրված շնորհով նրանց համար ևս ստեղծեց նշանագրեր, մի ոմն Ջաղայի հետ միասին՝ հունարեն և հայերեն լեզուների թարգմանչի, և աջակցությամբ նրանց Բակուր արքայի ու Մովսես եպիսկոպոսի։ Նա ընտրեց տղաներ, բաժանեց երկու խմբի և նրանց համար իբրև ուսուցիչներ թողեց իր աշակերտներից տեր Խորձենացուն և Մուշե Տարոնացուն։

Եվ ինքն իջավ Աղվանք, սրանց Արսվաղեն թագավորի և Երեմիա եպիսկոպոսապետի մոտ, որոնք կամովին հանձն առան նրա ուսումը և տվին նրան ընտիր տղաներ։ Եվ նա կանչեց մի ոմն Բենիամին անունով շնորհալի թարգմանչի, որին անհապաղ ուղարկել էր Սյունիքի տեր երիտասարդ Վասակն իր Անանիա եպիսկոպոսի ձեռքով։ Նա [Մեսրոպը] նրանց օգնությամբ ստեղծեց նշանագրեր Գարգարացիների այն կոկորդային, կոպիտ, խժական, բեկբեկուն լեզվի համար։

[«Իսկ Մեսրոպայ երթեալ յաշխարհն Վրաց՝ առնէ և նոցա նշանագիրս տուեցելովն ի վերուստ շնորհաւն, հանդերձ Ջաղայիւ ումամբ թարգմանաւ հելլէն և հայ լեզուի, ձեռնտու լինելով արքայի նոցա Բակրոյ և եպիսկոպոսին Մովսիսի։ Եւ ընտրեալ մանկունս և յերկուս բաժանեալ դասս՝ վարդապետս թողու նոցա յաշակերտաց իւրոց զՏէր Խորձենացի և զՄուշէ Տարօնացի։

Եւ ինքն յԱղուանս իջեալ առ Արսվաղէն թագաւոր նոցա և առ եպիսկոպոսապետն Երեմիայ. որոց կամաւ յանձն առեալ զվարդապետութիւն նորա՝ ետուն մանկունս ընտիրս։ Եւ կոչեալ զԲենիամին ոմն շնորհաւոր թարգման, զոր անդանդաղ արձակեաց մանուկն Վասակ Սիւնեաց տէր, ի ձեռն Անանիայի եպիսկոպոսի իւրոյ. որովք ստեղծ զնշանագիրս կոկորդախօս աղխազուր խժական խեցբեկագունին այնորիկ Գարգարացւոց լեզուին»][1]։

Կորյունի և Մովսես Խորենացու այս վկայությունները, հատկապես Մեսրոպ Մաշտոցի հորինած վրացական այբուբենի մասին, ինչպես հայտնի է, ոմանք համարում են թերի և նույնիսկ անհավաստի, որովհետև այդ հաղորդումները, ինչպես մատնանշում են վրացագետները, չեն համապատասխանում հին վրացական աղբյուրների տվյալներին։ Եվ, իրոք, վերոհիշյալ վկայությունների ուշադիր քննարկման ժամանակ, որոնք, ըստ երևույթին, ենթարկվել են խմբագրական վերամշակման՝ ծագում են վարանումների առիթ տվող հարցեր, որոնք պետք է նախապես ուսումնասիրվեն և քննադատորեն լուծվեն։ Այդ խնդիրները, որ բարդ են և դժվար, կարոտ են, անշուշտ, հատուկ քննության։

Սակայն, չնայած Կորյունի մի քանի պնդումների վիճելիության՝ ընդհանրապես և ամբողջությամբ առած, նրա պատմածը, ինձ թվում է, տեղիք չէ տալիս կասկածանքի։ Նրա հաղորդագրու-

[1] **Խորենացի**, հրատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913, III, գլ. ԾԴ, էջ 328—329։

թյան պատմական արժանահավատությունը, ի միջի այլոց, հաստատվում է նրանով, որ հենց ճիշտ հինգերորդ դարի սկզբում, ինչպես հայտնի է «Պետրոս Իբերի Վարք»-ից[1], Վրաստանում թագավորում էր, իրապես, Կորյունի հիշատակած Բակուրը՝ Պետրոս Իբերի հայրը։ Օգտվելով Բակուրի, ինչպես և Աղվանքի թագավոր Արսվաղենի աջակցությունից՝ Մեսրոպ Մաշտոցը, ինչպես ակներև է, տարածելիս է եղել և՛ Վրաստանում, և՛ Աղվանքում դպրություն ու լուսավորություն տեղական լեզուներով։

Կորյունի վկայություններից, ինչպես տեսնում ենք, պարզվում է, որ Հայաստանի հետ սերտ ու եղբայրական ընկերակցությամբ զարգացնում էին իրենց մոտ գրագիտությունն ու գրականությունը և պաշտպանում էին կուլտուրական իրենց անկախությունը նույնպես և անդրկովկասյան պետությունները։

Չորրորդ և հինգերորդ դարերում պայքարը մազդեականության և Սասանյան Պարսկաստանի համաձուլարար ագրեսիայի դեմ, ակներևորեն, ընդհանուր գործ էին համարում Անդրկովկասի բոլոր երեք եղբայրական ժողովուրդները։ Այս ժողովուրդները, որոնք իրենց նախնիներից, հավանորեն, նախախեթերից և սուբարի-խուրրիներից, ժառանգել էին նրանց հին կուլտուրան և ունեին որոշ չափով և ընդհանուր ծագում, անտարակույս, իրար հետ սերտ կապված էին նաև իրենց պատմական բախտի նույնությամբ կամ նմանակերպությամբ։ Ինչպես շատ ճիշտ դիտել է Ն. Մառը, հայերը և վրացիները, չնայած իրենց այլալեզվության, քրիստոնեության սկզբնական շրջանում կազմում էին մի անբաժան ամբողջություն[2]։ Նրանց հետ սերտ կապը և կուլտուրական մերձակցությունը, ինչպես տեսնում ենք, որոշակի մատնացույց են արված Կորյունի պատմական երկում, որը դպրության ու լուսավորության տարածումը նրանց մոտ չորրորդ և հինգերորդ դարերում նկարագրում է իբրև մի իրողություն, որն ուներ կարևոր ու ընդհանուր նշանակություն։

Ընդհանուր այդ անդրկովկասյան գործում Մեսրոպ Մաշտոցը կատարել էր, անշուշտ, ականավոր դեր։ Կորյունի վկայություններից կարելի է հետևցնել, որ հայ գրերի հանճարեղ հորինողը եղել է միաժամանակ տաղանդավոր քաղաքագետ և խոշոր կազմակերպիչ։ Պայքար մղելով Սասանյան Պարսկաստանի և Հռոմեական

---

1 Տե՛ս „Житие Петра Ивера", Изд. Н. Марра, Православный Палестинский Сборник, 47 вып., СПб., 1896, էջ 82—85։

2 Տե՛ս *Н. Марр*, Кавказ и памятники его духовной культуры, Петроград, 1919, էջ 6։

կայսրության դեմ հայ ժողովրդի կուլտուրական ներքին անկախության համար, Մեսրոպ Մաշտոցն աշխատել էր անվտանգ դարձնել իր երկրի հյուսիսային թիկունքը և, ըստ երևույթին, նպատակ էր ունեցել ստեղծելու պաշտպանության լայն կուլտուրական անդրկովկասյան ճակատ ընդդեմ ընդհանուր արտաքին թշնամիների։

Իբրև Անդրկովկասի եղբայրական ժողովուրդների ընդհանուր շահերի պաշտպան և իբրև նրանց ինքնուրույն գրականության ու կուլտուրայի ազատ զարգացման հոգատար՝ Մեսրոպ Մաշտոցը, անտարակույս, նույնպիսի իմաստուն քաղաքական գործիչ էր, ինչպիսիք էին հետսելջուկյան շրջանի Վրաստանի հեռատես քաղաքագետները, որոնք, վերանվաճելով մահմեդականներից հայկական երկրները, ամեն կերպ աջակցեցին թե ինքնուրույն Հայաստանի վերականգնմանը և թե նրա ազգային կուլտուրայի վերածնությանը։

Մեսրոպ Մաշտոցի լուսավորական գործի հետ ծանոթանալիս՝ աչքի է ընկնում այն փաստը, որ նորաստեղծ հայ տառերի մուտքը և տարածումը Արևմտյան Հայաստանում տեղի ունեցան բավական ուշ՝ գրերի գյուտից մոտավորապես երեսուն տարի հետո։ Իմ կարծիքով՝ բացատրվում է այդ նրանով, որ իրենց կուլտուրական-վերանորոգչական գործունեության ժամանակ Պարսկական Հայաստանում Սահակը և Մաշտոցն անհրաժեշտ էին համարել, քաղաքական նկատառումներով, խույս տալ ու երես դարձնել Հռոմեական կայսրությունից։

Նրանք ուզում էին, ըստ երևույթին, ցրել պարսիկների կասկածանքները և համոզել նրանց, որ դպրության ստեղծումը հայերեն լեզվով հնարավորություն կտա հայերին խզելու իրենց կապը հույների հետ։ Հավանորեն, հենց դրանով պետք է բացատրել և այն, որ հայերեն նշանագրերը հորինված էին Ասորիքում՝ գործակցությամբ ասորիների, որոնք կողմնակիցներ էին Սասանյան Պարսկաստանի։

Երբ Հայաստանի պարսկական մասում ամեն տեղ ստեղծված էին դպրոցներ մայրենի լեզվի ուսուցման համար՝ Մեսրոպ Մաշտոցը,— ասում է Կորյունը[1]

> «այնուհետև մտածեց Հայոց կես ազգի համար, որ հռոմների թագավորության իշխանության տակ էր»։

Իր աշակերտների մի մասի հետ նա գնաց հռոմեական կողմերը և այնտեղ մեծ պատվով ընդունեցին նրան աշխարհի եպիս-

---

[1] Կորյուն, հրատ. և թարգմ. Մ. Աբեղյանի, էջ 64—65։

կոպոսները, իշխանները, ժողովուրդը և, մանավանդ, հռոմեական արևելյան զորքերի զորավար Անատոլիոսը[1]։

Արևմտյան կամ Հռոմեական Հայաստանը, ինչպես հայտնի է, ենթարկված չէր Սահակ կաթողիկոսի իշխանությանը, որի աթոռանիստը գտնվում էր Պարսկական Հայաստանում։ Որպեսզի Հայաստանի նաև այս մասում կարելի լիներ հայկական դպրոցներ բաց անել մայրենի լեզվով գրագիտություն տարածել՝ անհրաժեշտ էր նախապես ստանալ Թեոդոսիոս Բ կայսրի համաձայնությունը։ Ուստի և Մեսրոպ Մաշտոցն իր աշակերտների մեծագույն մասը տարավ Մելիտենե քաղաքը և հանձնեց տեղական Ակակիոս եպիսկոպոսին, իսկ ինքն իր աշակերտների մի փոքր խմբի հետ գնաց կայսեր մոտ Կոստանդնուպոլիս։

Կայսերական մայրաքաղաքում նրան անձամբ ընդունեցին Թեոդոսիոս Բ-ը և Ատտիկոս պատրիարքը (405/6—425), և նրա խնդիրքը, ինչպես պատմում է Կորյունը, բավարարվեց։ Կայսերական հատուկ հրամանով կարգադրվեց Արևմտյան Հայաստանում ևս բաց անել հայկական դպրոցներ ու դրանց ծախսը հոգալ պետական միջոցներով։

Կորյունի հաղորդած այս տեղեկությունները մեջ են բերված նաև Խորենացու մոտ։ Բայց վերջինս, ըստ երևույթին, օգտվել է նաև մի ուրիշ մեզ անհայտ աղբյուրից, որի վկայությունները նա, ըստ իր սովորության, հռետորական վերամշակման ենթարկելով՝ պատմում է իրեն հատուկ եղանակով։

Խորենացին, որ Կորյունից վերցրել էր իր պատմվածքի միմիայն հենքը՝ շեղվելով նրանից, հաղորդում է, որ սկզբում տեղական հռոմեական իշխանությունները թույլ չէին տվել Մաշտոցին Արևմտյան Հայաստանում բաց անել հայկական դպրոցներ և նորաստեղծ տառերով հայերեն սովորեցնել հունարենի փոխարեն։ Խորենացու ասելով՝ ինքը՝ Թեոդոսիոս Բ կայսրը նույնպես դժգոհ

---

[1] Կորյունի ձեռագրերն ունեն տարբեր ընթերցվածներ՝ «Անտիոխ, Անատող, Անտիոք, Անտեսխս, Անտեսի» (տե՛ս հրատ. Աբեղյանի, էջ 64)։ «Месроп Маштоц» ռուսերեն իմ աշխատության մեջ (էջ 38, ծան. 2) ես ենթադրել էի, որ Կորյունի բնագրում «Անտիոխ» ընթերցվածը գրիչներն ուղղել են «Անատոլիս»՝ Խորենացու ազդեցությամբ։ Իմ այս ենթադրության հիմք էր ծառայել Կուլակովսկու ցուցումը, որը նշում է, որ Անատոլիոսը հռոմեական զորքի հրամանատար էր Արևելքում ոչ թե այս ժամանակ, այլ **438—443** թվերին (տե՛ս Ю. *Кулаковский*, История Византии, т. I, էջ 272)։ Ինձ թվում է այժմ, որ այս խնդիրը կարոտ է հատուկ նոր քննության։

էր և մեղադրում էր Սահակ կաթողիկոսին, որ նա, արհամարհելով հույն գիտնականներին՝ «ինչ-որ ասորիների մոտ էր որոնել իմաստության գյուտը»[1]։

Խորենացու այս վկայությունները, իմ կարծիքով, չեն կարող կամայական հերյուրանքներ լինել և, հավանորեն, հիմնված են հավաստի ավանդության վրա։ Հռոմայեցիներին, իհարկե, չէր կարող հաճելի լինել, որ Արևմտյան Հայաստանում հունարեն լեզուն իր տեղը պետք է զիջեր հայերենին, ինչպես եկեղեցական արարողությունների ժամանակ, նույնպես և դպրոցներում։ Կայսրության եկեղեցական գործունեությունը, անկասկած, սերտ կերպով կապված էր նրա քաղաքական գործունեության հետ։ Այն տեղերում, ուր հաստատվում էր հունական քրիստոնեությունը, և ամրանում էր կայսրության քաղաքական տիրապետությունը՝ նրա քաղաքական այդ ազդեցությունը հարակցված էին լինում, ինչպես և Սասանյան Պարսկաստանում, նաև նրա բացահայտ ասիմիլատորական հավակնությունները։ Ուստի և հասկանալի է, որ հռոմեական կառավարությունը չէր կարող հեշտությամբ հաշտվել Մեսրոպ Մաշտոցի լուսավորական գործունեության հետ Արևմըտյան կամ Հռոմեական Հայաստանում։

Սակայն ազրեսիվ քաղաքականություն նա չէր կարող այն ժամանակ Արևելքում վարել, որովհետև սկսած չորրորդ դարի վերջերից նրան սպառնում էր լուրջ վտանգ հյուսիս-արևմուտքից՝ քոչվոր հոների կողմից։ Թեոդոսիոս Բ-ի բարեհաճ ու կարեկից վերաբերմունքը Մեսրոպ Մաշտոցի միջնորդությանը վերագրվելու է, հավանորեն, ո՛չ թե կայսերական կառավարության իմաստուն հեռատեսությանը կամ «հույների ազնիվ նկատառումներին», ինչպես այդ ենթադրում են մի քանի գիտնականներ[2], այլ արտաքին քաղաքական այն պայմաններին, որոնք վտանգում էին կայսրության գոյությունը հինգերորդ դարում։

Մեսրոպ Մաշտոցի կայսերական մայրաքաղաքը գնալու տարեթիվը և Արևմտյան Հայաստանում մայրենի լեզվով դպրության ու լուսավորության հաստատման ժամանակը կարելի է ճշտել, հիմնվելով Կորյունի արժանահավատ վկայությունների վրա[3]։

---

[1] Խորենացի, III, գլ. ԾԷ։

[2] *N. Gelzer,* Abriss der byzantinischen Geschichte, էջ 916, (տե՛ս *K. Krumbacher,* Geschichte des byzantinischen Literatur, München, 1897) և *А. Аннинский,* История Армянской церкви, Кишинев, 1901 էջ 38։

[3] *Այդ թվականները ճիշտ են որոշված Ադոնցի վերահիշյալ հոդվածում. տե՛ս «Հանդէս Ամսօրեայ», 1925, № 9—10. էջ 435—437։*

Ինչպես ասացինք, Կոստանդնուպոլիս մեկնելուց առաջ Մեսրոպ Մաշտոցն իր աշակերտներից շատերին թողել էր Մելիտենում Ակակիոսի խնամակալության տակ, որը եպիսկոպոս էր ձեռնադրվել մոտավորապես 419/420 թվականին։ Պարզ է, ուրեմն, որ Մաշտոցի ուղևորությունը Թեոդոսիոս Բ-ի և Ատտիկոս պատրիարքի մոտ պետք է ենթադրել 419/420 թվականից հետո։ Մեզ հայտնի է նմանապես, որ Կոստանդնուպոլսի Ատտիկոս պատրիարքը վախճանվել էր 425 թվի հոկտեմբերի 10-ին։ Դժվար չէ, ուրեմն, հետևցնել, որ Մաշտոցի ճանապարհորդությունը Կոստանդնուպոլիս պետք է տեղի ունեցած լիներ 419/420—425 թվականների ժամանակամիջոցում։ Ինձ թվում է, կարելի և նաև վստահորեն ենթադրել, որ Մաշտոցը կարող էր գնացած լինել հռոմեական կողմերը պարսկա-հռոմեական պատերազմի տարիներում՝ 420—422 թվականներին, երբ Հայաստանի պարսկական մասը, որն ուներ հռոմեական կողմնորոշում, աշխատել էր, հավանորեն, կապեր հաստատել կայսրության հետ, հույս ունենալով ազատագրվելու Պարսկաստանից։

Նախապես ստացած լինելով Թեոդոսիոս Բ-ի թույլտվությունը՝ Մեսրոպ Մաշտոցը եռանդուն կերպով սկսեց տարածել հայկական դպրությունը նաև Արևմտյան Հայաստանում, ուր կայսրի հրամանով բացվել էին հայկական դպրոցներ։ Այսպիսով, շնորհիվ հայերեն այբուբենը ստեղծողի անխոնջ ու բեղմնավոր գործունեության, պահպանեցին իրենց լեզուն և իրենց կուլտուրական ինքնուրույնությունը թե Պարսկական և թե Հռոմեական Հայաստանի հայերը։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# ԱՐՏԱՇԵՍ ԵՎ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՎԵՐՋՆԱԿԱՆ ԱՆԿՈՒՄԸ

**Հայոց թարգմանական հին գրականությունը։— Կրոնական ազատությունը Հազկերտ Ա-ի թագավորության առաջին շրջանում։— Հռոմեական կայսրության բաժանումը երկու մասերի։— Խոսրով Դ։— Շապուհ՝ որդի Հազկերտ Ա-ի։— Հազկերտ Ա-ի նոր քաղաքականության նպատակը Հայաստանում։— Հալածանքներ Պարսկաստանի քրիստոնեության դեմ։— Պատերազմ կայսրության դեմ։— Պարսկական զորքերի պարտությունն Աղձնիքում։— Խաղաղության դաշնագրի կնքումը և նրա պայմանները։— Եռեքամյա անտերնչությունը Հայաստանում։— Արտաշես՝ որդի Վռամշապուհի։— Նրա գահընկեցությունը հայ նախարարների ամբաստանության պատճառով։—Արշակունյաց թագավորների իշխանության վերացումը Պարսկական Հայաստանում։— Պարսկական Հայաստանի քաղաքական դրությունը 428 թվից հետո։— Արևելյան Հայաստանը Սասանյան Պարսկաստանի մարզ։**

*Մայրենի լեզվով դպրության ստեղծումն առաջ բերեց Հայաստանում սրտալիր ուրախություն և ցնծալի ոգևորություն։*

> *«Յայնմ ժամանակի,— ասում է Կորյունը,—երանելի և ցանկալի աշխարհս Հայոց անպայման սքանչելի լինէր»*[1]։

*Եվ այնուհետև, սկսած չորրորդ դարի վերջերից՝ հայերեն դպրության տարածման հենց սկզբնական շրջանում, արագ կերպով սկսեց զարգանալ, նախ և առաջ, Հայոց թարգմանական հին գրականությունը։ Դեռևս Մեսրոպ Մաշտոցի և Սահակ կաթողիկոսի կենդանության ժամանակ թարգմանվեցին հայերեն, բացի Աստվածաշնչից և եկեղեցական պաշտամունքի գրքերից, նաև բազմաթիվ այլ կրոնական երկեր։ Հնագույն այս ժամանակաշրջանի թարգմանություններից առանձնապես կարևոր են եկեղեցա-պատմական և պատմական երկու գրվածքներ՝* **Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցա-**

---

[1] Կորյուն, *Հրատ. և թարգմ. Մ. Աբեղյանի, էջ 56*։

կան պատմություն»-ը և «Ժամանակագրությունը»-ը, որոնք հիմք ծառայեցին պատմագիտության զարգացմանը Հայաստանում։

Առաջինը, ինչպես վկայում է Մովսես Խորենացին[1], թարգմանել էր տվել Մաշտոցը։ Գ. Տեր-Մկրտչյանը Խորենացու այս վկայությունը համարում է ճիշտ և, հիմնվելով այդ երկի հայերեն թարգմանության կարևոր մի վկայության վրա՝ պարզել է, որ այդ գիրքը թարգմանված է 416—420 քառամյակում[2]։ Պետք է սակայն նշենք, որ թարգմանությունը կատարված է ո՛չ թե գրերի գյուտից անմիջապես հետո, ինչպես ենթադրում է Տեր-Մկրտչյանը, այլ գյուտից մոտ քսանհինգ տարի հետո։

Ուշագրավ է, որ հատկապես Վռամշապուհի թագավորության տարիներում (387/8—413/4 թ.) Պարսկական Հայաստանը հնարավորություն էր ստացել լայն կերպով ծավալելու լուսավորական և դրական-գիտական գործունեություն, որովհետև, ինչպես տեսանք, Վռամ Դ Կրմանի (388/9—399 թ.) ժամանակ և Հազկերտ Ա-ի (399—420 թ.) թագավորության առաջին շրջանում թուլացել էր հալածանքը քրիստոնեության և քրիստոնեական երկրների վերաբերմամբ։ Վռամ Դ-ը հաշտ էր կայսրության հետ, բայց անխնա կռիվ էր մղում Պարսից ազնվականության և հոգևորականության դեմ։ Իսկ նրա որդին և հաջորդը, Հազկերտ Ա-ը, որին պարսիկներն անվանում են «մեղավոր» (bazakar), ինչպես հայտնի է, մինչև իսկ խնամակալն էր դառել անչափահաս Թեոդոսիոս Փոքր կայսրի։ Հազկերտ Ա-ի հրամանով Պարսկաստանի քրիստոնեությանը շնորհվել էր կրոնական ազատություն, նրանց թույլ էր տրվել վերակառուցել քանդված եկեղեցիները և ընտրել իրենց համար կաթողիկոս (410 թ.)։

Վռամշապուհի թագավորության ժամանակ տեղի ունեցան փոփոխություններ նաև Հռոմեական կայսրության մեջ։ 395 թվին վախճանվեց Միլանում Թեոդոսիոս Ա-ը և նրան հաջորդեցին նրա երկու որդիները՝ Արկադիոսը (395—408 թ.), որն ստացավ կայսրության արևելյան մասը, և Հոնորիոսը (395—423 թ.), որն ստացավ արևմըտյան մասը։ Կայսրության այս երկու մասերն այնուհետև այլևս հնարավոր չեղավ միացնել իրար հետ, և նրանք մնացին բաժանված։ Պատմագետներից ոմանք, օրինակ՝ Գելցերը[3] և Կուլակով-

---

[1] Խորենացի, II, գլ. ծ։

[2] Տե՛ս Գ. Տեր-Մկրտչյան, Հայ մատենագրութեան հնագոյն թուականները, «Շողակաթ», էջմիածնի հայագիտական ժողովածու, Վաղարշապատ, 1913, էջ 159—163։

[3] Տե՛ս Krumbacher, Geschichte der byzantinischen Literatur, էջ 911—912։

սկին[1], Արևելյան Հռոմեական կայսրությունը, որի մայրաքաղաքը և տնտեսական ու մտավոր կենտրոնն էր Բյուզանդիոնը կամ Կոստանդնուպոլիսը, չորրորդ դարի վերջերից սկսած անվանում են Բյուզանդական կայսրություն և Արկադիոսի գահակալության 395 թվականը սկիզբն են համարում բյուզանդական պատմության[2]։

Չորրորդ դարի վերջերում և հինգերորդ դարի սկզբներում խաղաղությունն աշխատում էր պահպանել արևելյան իր սահմաններում նույնպես և Հռոմեական Արևելյան կայսրությունը։ Սա ևս գրեթե ամբողջովին զբաղված էր իր ներքին, գլխավորապես, կրոնական գործերով։ Բայց կրոնական քաղաքականությունը Թեոդոսիոս Ա-ի և Արկադիոսի նման չէր Հազկերտ Ա-ի հանդուրժամիտ քաղաքականության։ Թեոդոսիոս Ա-ը պետական պարտադիր կրոն հայտարարեց Նիկիական տիեզերական ժողովի դավանանքը ու անհաշտ կռիվ մղեց հերձվածների և հեթանոսության դեմ, որոնք արգելվեցին և ենթարկվեցին կատաղի հալածանքների։ Կրոնական անհամբերատարությունը և մոլեռանդությունը դառան այնուհետև բնորոշ առանձնահատկությունները բյուզանդական եկեղեցու։

Մոտավորապես 414 թվին վախճանվեց Վռամշապուհ թագավորը, որի անվան հետ անջնջելի կերպով կապված են հայ գրերի գյուտը և կուլտուրական մեծ հեղաշրջումը հայկական կյանքում։

Նրա Արտաշես որդին դեռևս փոքր էր, ուստի և նախարարները խնդրեցին Հազկերտ Ա-ին, որ նա կրկին թագավոր կարգե Պարսկական Հայաստանի ծերունի Խոսրով Դ-ին, որը թագավորել էր Վռամշապուհից առաջ։ Հազկերտ Ա-ը կատարեց նրանց խնդիրքը, բայց Խոսրով Դ-ը թագավորեց միայն ութ ամիս և մոտավորապես 415 թվին վախճանվեց։

Հազկերտ Ա-ի նպաստավոր ու բարեհաճ քաղաքականությունը քրիստոնեության և, մասնավորապես, Պարսկական Հայաստանի վերաբերմամբ փոփոխություն կրեց նրա թագավորության վերջին տարիներում։ Խոսրով Դ-ի մահից հետո Հազկերտ Ա-ը Հայաստանի գահն այլևս չուզեց թողնել Հայ Արշակունիների ձեռքում և Խոսրով Դ-ի հաջորդ նշանակեց իր Շապուհ որդուն (շուրջ 416—420 թ.)։

---

[1] *Ю. Кулаковский*, История Византии, т. I, второе издание, Киев 1913, էջ 155 ևն.։

[2] Այս պերիոդիզացիան, իհարկե, պայմանական է և բոլորովին կամայական։ Վիճելի այս խնդիրը, որ Հայաստանի պատմության հետ կապ չունի, կարոտ է հատուկ ուսումնասիրության։

Հազկերտ Ա-ը, որ իրազեկ էր, անշուշտ, Պարսկական Հայաստանի ներքին դրության՝ հայ դպրության տարածման և քրիստոնեության արմատացման ընդդեմ իրանական կրոնի, ըստ երևույթին, աշխատել էր, հենվելով պարսկական կուսակցության վրա, չեզոքացնել Պարսկաստանի թշնամի տարրերը և մեղմ ու աստիճանաբար ուժեղացնել Հայաստանում իրանական կուլտուրան և պարսկական պետականության կարգերը։

Հազկերտ Ա-ի թաքուն նպատակը պարզաբանված է միանգամայն ճիշտ Ղազար Փարպեցու ընդարձակ մի վկայության մեջ, որը կարևոր եմ համարում մեջ բերել ամբողջությամբ։

«Պարսից թագավոր Վռամի մահից հետո,—պատմում է Փարպեցին,—Պարսից աշխարհում թագավորեց Վռամի եղբայր Հազկերտը, որը Շապուհի որդին էր։ Եվ Հազկերտը, չկամենալով Հայոց աշխարհին թագավոր տալ Արշակունիների տոհմից՝ հայերի վրա թագավոր կարգեց իր որդուն, որի անունն էր ըստ իր հոր անվան Շապուհ։ Իր մտքում նա չար խորհուրդ էր խորհում՝ նախ այն, որ Հայոց աշխարհը մեծ է և օգտակար, սահմանակից է և հարևան Հունաց իշխանության, որի ձեռքի տակ են և որին հնազանդ են Արշակունիների տոհմից շատերը. գուցե այդ տոհմերը, որ մեր ու Հունաց իշխանության տակ են, սեր ու կարեկցություն զգալով դեպի միմյանց որպես եղբայրներ, երբևիցե համերաշխ կերպով իրար հետ խոսքերը մեկ անեն և, համաձայնության գալով՝ Հունաց թագավորի հետ խաղաղություն անեն և, կամենալով նրան հնազանդվել՝ մեզ դեմ ապստամբվեն։ Եվ ինչպես որ շատ անգամ մեզ գլխացավանք են պատճառել՝ ավելի ևս անհանգիստ կանեն մեզ պատերազմով, միանալով նրանց հետ։ Բացի այդ, նրանք անբարեհաճ են և ատելությամբ լցված են դեպի մեր կրոնը, իսկ հույների հետ ընդհանուր հավատ ունեն և պաշտամունք։ Արդ՝ եթե մեր ազգից մեկը թագավոր լինի Հայոց աշխարհում՝ մեր թագավորությունը բոլոր այդ տեսակ կասկածանքներից ապահով կլինի, և նրանք միշտ կծառայեն մեզ ահով ու դողով և չեն ունենա դեպի մեզ թշնամական ու վնասակար որևէ դիտողություններ։ Եվ հնարավոր է, որ նրանք հետըզհետե կընտելանան և կգտնան մեր կրոնին շնորհիվ մշտական իրար հետ խոսակցությունների, ամենօրյա բարեկամության, որսերի զվարճությունների և խաղերի, որ կլինեն իրար հետ։ Նաև ազգականություն հաստատելով իրար հետ երկ-

*կողմանի ամուսնություններով՝ նրանք այնուհետև կանչատ-վեն և կհրաժարվեն հույների կրոնից ու բարեկամությունից»։*

*[«Եւ յետ մահուան Վռամայ արքային Պարսից թագաւորէր Յազկերտ եղբայր Վռամայ որդի Շապհոյ ի վերայ աշխարհին Պարսից։ Եւ ոչ կամեցեալ Յազկերտի թագաւորեցուցանել ի վե-րայ աշխարհիս Հայոց յազգէն Արշակունեաց՝ թագաւորեցու-ցանէր ի վերայ սոցա զիւր զորդին, որում անուն էր Շապուհ, ըստ անուան հօր իւրոյ. խորհեալ չարաչար իմացմունս առնն ի միտս իւր. առաջին՝ զայս, եթէ աշխարհն Հայոց մեծ է և օգ-տակար, սահմանակից և դրակից է Յունաց իշխանութեանն, ընդ որոյ ձեռամբ բազումք են հնազանդեալք յազգէն Արշա-կունեաց. որոց գուցէ զորովեալ առ միմեանս ազգացն, ըստ օրինի եղբարց, որք ընդ մերով և ընդ Յունաց իշխանութե-ամբն են, և հաւանեալ երբէք սիրով ընդ միմեանս և եկեալք ի միաբանութիւն՝ խօսեսցին ի խաղաղութիւն ընդ թագաւորին Յունաց, և ընդ նորա հնազանդութեամբ յօժարեալք՝ ապըս-տամբեսցին ի մէնջ։ Եւ որպէս կարեւոր է զմեզ բազում անգամ յաշխատութեան՝ առաւել ևս յաւելուածով նոցա՝ անհանգիստ առնիցեն զմեզ պատերազմաւ։ Եւ երկրորդ՝ զի յօրինացս մեր օտար են և ատեցողք, և միահաւան ունին զպաշտօն նո-ցա և զօրէնս։ Արդ՝ ի թագաւորել յազգէս մերմէ ի վերայ աշ-խարհին Հայոց՝ յամենայն այդպիսի կասկածանաց անհոգա-ցեալ լինի թագաւորութիւնս մեր. և նոքա ցանկ երկիւղիւ և դողութեամբ ծառայեն մեզ և օտարոտիս ինչ և վնասակարս ինչ ոչ խորհին։ Է զի և սովորութիւն առնուն յանկչել յօրէնս մեր, հանապազ խօսիւք ընդ միմեանս և ընդելական բարե-կամութեամբ, ի զբօսմունս որսոց և ի խաղս, որ լինին ի միջի նոցա. այլ և ամուսնութեանց տուրևառիւք հաղորդեալք առ միմեանս՝ զատուցեալք այնուհետև որոշին ի սիրոյ նոցա և յօրինացն»]*[1]։

*Պարսկաստանի այս փորձն ապարդյուն անցավ, որովհետև 420 թվին սպանվեցին թե Յազկերտ Ա-ը և թե Շապուհը, որը Հա-յաստանից Տիզբոն էր գնացել իր հոր գահը ժառանգելու։*

*Հազկերտ Ա-ն իր թագավորության վերջին տարիներում Պարս-կաստանի քրիստոնյաների դեմ հարուցեց հալածանքներ, որոնց*

---

[1] Փարպեցի, *I, գլ. ժԲ, էջ 18—19։*

առիթ տվողը հենց իրենք՝ քրիստոնյա հոգևորականներն էին։ Շոշաստանի Հորմիզդ-Արտաշիր քաղաքում Հաշու անունով մի քահանա Աբդավ եպիսկոպոսի համաձայնությամբ քանդել ու ավերել էր եկեղեցու մոտ գտնվող կրակատուն-տաճարը։ Հալածանքների պատճառը մոլեռանդական այդ ծանր հանցանքն էր։

Քրիստոնյաներից ոմանք փախան Բյուզանդական կայսրության երկրամասերը, և Պարսկաստանը պատգամավորություն ուղարկեց Թեոդոսիոս Բ կայսրի մոտ և պահանջեց, որ փախստականները ետ ուղարկվեն։ Այս պահանջը մերժելուց հետո՝ բյուզանդական կայսրը թույլ տվեց (420 թվի մայիսի 5-ի օրենքով), որ Մերձավոր Արևելքի երկրներն ասպատակություններից ու հարձակումներից պաշտպանվելու համար կառուցեն պարսպապատված ամրություններ։

420 թվի վերջերին Հազկերտ Ա-ին հաջորդեց նրա որդին՝ Վռամ Ե Գոռը (420—438/9 թ.), և հալածանքները Պարսկաստանում քրիստոնյաների դեմ ավելի ևս սաստկացան։ 421 թվի գարնանը Վռամ Գոռի զորավար Միհր-Ներսեհը պատերազմ սկսեց կայսրության դեմ։ Հարաբերությունները Սասանյան Պարսկաստանի և Բյուզանդական կայսրության միջև չափազանց սրված էին, ինչպես ենթադրում է Նյոլդեկեն, հավանորեն Պարսից մեծամեծների դրդումով, քրիստոնյաների հալածանքներն ավելի շուտ պատերազմի առիթ էին, քան պատճառ։

Պատերազմի գլխավոր բեմը դառավ նախկին հայկական Աղձնիքը և հյուսիսային Միջագետքը։ Բյուզանդական զորքերն Արդաբուրիոս զորավարի առաջնորդությամբ ներխուժեցին Աղձնիք, և այնտեղ 421 թվի օգոստոս կամ սեպտեմբեր ամսին տեղի ունեցավ մեծ ճակատամարտ։ Պարսկական զորքերը այս ճակատամարտում ծանր պարտություն կրեցին, և Միհր-Ներսեհը ստիպված եղավ նահանջել Մծբին քաղաքի կողմերը[1]։ Արդաբուրիոսն այնուհետև պաշարեց Մծբինը, սակայն պաշարումը շուտով վերացրեց, որովհետև Մծբինին մեծ զորքով օգնության հասավ ինքը՝ Վռամ Ե Գոռը։

Պատերազմը շարունակվեց նաև 422 թվին, և բյուզանդական զորքերը դարձյալ մի քանի հաջողություններ ունեցան, բայց դրանք վճռական հաղթություններ չէին, և շուտով Թեոդոսիոս Բ-ը խաղաղության բանակցություններ սկսեց։ Վռամ Ե-ը, որը նույնպես ցանկանում էր հաշտություն կնքել, ուղեց նախապես որևէ հաջողու-

[1] Տե՛ս Socrates, Hist. Eccles., VII, cap. 18 (համեմատե՛ նաև «Սոկրատայ Սքոլաստիկոսի, Եկեղեցական պատմութիւն», հրատ. Մ. Տեր-Մովսեսյանի, Վաղարշապատ, 1897, էջ 602—609). Theodoretos, Hist. Eccl., V, cap. 37 և ուրիշն.։

*թյուն ունենալ, ուստի և, բյուզանդական պատգամավորությունն իր մոտ պահելով՝ կարգադրեց իր անմահների զորամասին, որ բյուզանդական զորքին դարան գործեն։*

*Բյուզանդացիները, ինչպես վկայում է Սոկրատը*[1], *հանկարծակիի բերվեցին, սակայն պատահաբար հենց այդ ժամանակ մոտենում էր պարսիկների թիկունքից մի նոր զորամաս Պրոկոպիոս զորավարի առաջնորդությամբ։ Պարսից զորքն այս անգամ ևս պարտության մատնվեց, և Վռամ Ե-ը ստիպված եղավ խաղաղության դաշն կնքել։ Համաձայն այդ դաշնագրի, որը կնքվեց Թեոդոսիոս Բ-ի իշխանության տասնչորսերորդ տարում և երեքհարյուրերորդ Օլիմբիատում (=422 թ.) Պարսկաստանում քրիստոնյաներին կրոնական ազատություն տրվեց, իսկ կայսրությունը պարտավորվեց, ինչպես որոշված էր և նախկին դաշնագրերում, տալ յուրաքանչյուր տարի որոշ գումար Կովկասյան մեծ լեռնանցքի ամրացման ու պաշտպանման համար։ Բայց պետք է ասել, որ դաշնագրի այդ երկու կետն էլ հետագայում շարունակ խախտվում էին և պատճառ էին դառնում դժգոհությունների։*

*Շապուհ թագավորի Հայաստանից հեռանալուց հետո, ինչպես վկայում է Խորենացին*[2], *Պարսկական Հայաստանը երեք տարի (հավանորեն, 420—423 թվականներին) մնաց անտերունչ վիճակում։ Այս վկայությունը, իմ կարծիքով, կարելի է համարել հավաստի և արժանահավատ։ Այդ երեքամյա անտերնչության ժամանակ, ինչպես ասացինք, հավանական է ենթադրել Մեսրոպ Մաշտոցի ուղևորությունը Կոստանդնուպոլիս Թեոդոսիոս Բ-ի մոտ։*

***421—422** թվականների անհաջող պատերազմը Բյուզանդիայի դեմ հարկադրեց Վռամ Ե Գոռին զիջումներ անել Պարսկական Հայաստանում, որը սահմանակից էր հաղթական կայսրության։ Սակայն այս զիջումները ո՛չ անկեղծ էին այժմ, ո՛չ էլ հարատև։ Պատերազմի ընթացքում Պարսկաստանը հասկացել էր արդեն, որ արևմտյան իր սահմանների պաշտպանությունը թույլ է ու անբավարար։ Ուշագրավ է, որ 421 թվին պարտություն էր կրել այստեղ հենց այն Միհր-Ներսեհը, որը Վարդանանց 450—451 թ. ապստամբության ժամանակ գլխավոր խորհրդատուն էր Հազկերտ Բ-ի **(438/9—457)**[3]։*

---

[1] ***Տե՛ս** Socrates*, Hist. Eccles., VII, cap. 20.

[2] **Խորենացի**, *III, գլ. ԾԶ։*

[3] *Ուշադրության արժանի է այս տեսակետից Միհր-Ներսեհի մասին Փարպեցու հետևյալ վկայությունը. «Եւ էր Յազկերտի արքայի հազարապետ մի Միհրներսեհ անուն, այր չարահնար և դժնամիտ որոյ արկեալ ի միտս*

*423 թվին Վռամ Ե-ը, որը հայերի նկատմամբ սկզբում հարկադրված էր վարել զուսպ ու զգուշավոր քաղաքականություն՝ հայ նախարարների խնդիրքով Պարսկական Հայաստանի թագավոր նշանակեց Վռամշապուհի որդուն՝ Արտաշեսին։ Բայց միաժամանակ աջակցելով ու պաշտպանելով պարսկասեր նախարարներին, որոնք կողմնակից էին սերտ մերձեցման Պարսկաստանի հետ՝ աշխատեց սերմանել երկրում գժտություն ու թշնամություն։*

*Արտաշես թագավորը (423—428 թ.), որը դեռևս անփորձ պատանի էր, շուտով զոհ դառավ նենգ դավադրությունների։ Երիտասարդ թագավորի դեմ խարդավանքների առիթ ծառայեց այն, որ նա զեխ ու անառակ կյանք էր վարում։ Նախարարները հայտնեցին Սահակ կաթողիկոսին, որ իրենք չեն կարող տանել թագավորի անօրեն ու պիղծ գործերը, և առաջարկեցին իրենց հետ Պարսից թագավորին դիմել և խնդրել, որ Արտաշեսը գահընկեց արվի։*

*Սահակ կաթողիկոսը, պատմում է Փարպեցին, տեսնելով, որ Արտաշեսի գահընկեցությամբ վտանգվելու է Հայոց թագավորության գոյությունը՝ ամեն կերպ աշխատեց համոզել նրանց, որ ետ կենան իրենց այդ մտադրությունից։ Բայց նրա բոլոր հորդորները զուր եղան։*

*Նախարարները սպառնալով, որ նրան այլևս կաթողիկոս չեն ճանաչելու՝ գնացին Վռամ Ե-ի մոտ և, ամբաստանելով Արտաշես թագավորին՝ խնդրեցին որ նա գահազուրկ արվի։ Պարսից թագավորը կանչեց իր մոտ Արտաշես թագավորին ու Սահակ կաթողիկոսին և առաջինին զրկեց թագավորական իշխանությունից, իսկ երկրորդին՝ կաթողիկոսությունից։ Հանդիսավոր նրանց դատապարտումը բազմամարդ ատյանում, որ ընդարձակ կերպով նկարագրված է Փարպեցու մոտ, ավելորդ չեմ համարում թարգմանաբար մեջ բերել։*

*«Թագավորը [Վռամ Ե-ը] զրգռված ու սաստիկ զայրացած,—պատմում է Փարպեցին,—հրաման տվեց այնուհետև, որ նախարարներին և Արտաշեսին հարցաքննեն բազմամարդ ատյանի առջև։ Եվ Հայոց իշխաններն իրենց թագավորի վրա բարդեցին շատ աղտեղաբանություններ ու զանազան անարժան բամբասանքներ։ Նրանք ո՛չ թե այն էին պատմում, որ նա էր արել՝ այլ թշնամաբար նրա վրա բարդում էին շատ մեղադրանքներ ուրիշ ևս ավելացումներով. և թեպետ Արտաշեսը հերքում էր, թե այդպես չէ՝ լսողները նրան չհավատա-*

---

*ի շատ ամաց զխորհուրդս անօրէնութեան, ի կործանում և ի կորուստ թուլամիտ ոգւոց (II, գլ. Ի, էջ 39)։*

ցին, որովհետև նպատակ էին դրել իրենց՝ Արշակունիների ազգի թագավորությունը մեջտեղից վերացնել։ Մանավանդ երբ Արյաց թագավորն արքունիքի բոլոր ավագանու հետ միասին Արտաշեսին մեղադրողներից լսեցին՝ թե «Իսկի էլ այլևս թագավոր պետք չէ, այլ ժամանակ առ ժամանակ պարսիկ որևէ իշխան կգա և մեզ վերակացու կլինի. մեզանից ամեն մեկին նա իրազեկ կդառնա և ձեզ կզեկուցե»։

Եվ երբ Վռամն իր արքունիքի ավագանու հետ այս լսեց՝ շատ ուրախացավ։ Եվ նա իսկույն այնուհետև հրաման տվեց թագավորությունն Արտաշեսից վերցնել ու նաև հարքունիս գրավել սուրբ Սահակի կաթողիկոսական գույքը, որովհետև նա չէր համաձայնել վկայություն տալ հայ նախարարների հետ միասին։ Երբ այսպես դատը վերջացավ՝ Պարսից թագավորի հրամանն ի կատար ածվեց։ Դրանից հետո թագավորությունն Արշակունիների ազգից առնվեց Արտաշեսի իշխանության վեցերորդ տարում, համաձայն աստուծու երանելի մարդու Ներսես մեծ քահանայապետի ասածի. և Հայոց աշխարհն ընկավ Պարսից անօրեն իշխանության ծառայության լծի տակ։ Հայոց իշխանները ստացան Պարսից թագավորից Արտաշեսի մատնության համար իրենց վարձը՝ պատիվներ ու մեծարանքներ, նման այն արծաթին, որ ստացել էին եղբայրները Հովսեփի համար, որին մատնել էին իսմայելացի վաճառականների ձեռքը. և նրանք այսպիսով հրաժեշտ տալուց հետո արքունիքին՝ եկան իրենց աշխարհը»։

[«Ի ցասումն զայրացման գրգռեալ թագաւորն՝ հրաման տայ այնուհետև յանդիման բազմամբոխ ատենին հարցանել զնախարարսն Հայոց և զԱրտաշէս։ Եւ կուտեալ իշխանացն Հայոց բազում աղտեղաբանութիւնս և ազգի ազգի խօսս անարժանութեան ի վերա թագաւորին իւրեանց. քանզի ոչ եթէ ի նմա եղեալ զիրսն խօսէին, այլ ևս յաւելուածովք ըստ օրինի թշնամութեան կուտէին ի վերայ նորա բազում վնաս. որ թէպէտ և յուրաստ եղեալ Արտաշէսի, թէ չէ այդպէս՝ ոչ հաւատացին լսողքն, եղեալ զկամս իւրեանց՝ բառնալ ի միջոյ զթագաւորութիւնն յԱրշակունեաց ազգէն։ Մանաւանդ զի լուաւ թագաւորն Արեաց ամենայն աւագանեօք դրանն ի դատախազացն Արտաշէսի, թէ բնաւ զի՞ իսկ ևս պիտոյ է թագաւոր, այլ իշխան պարսիկ ըստ ժամանակի եկեալ վերակացու լիցի մեզ, որ և զիւրաքանչիւր ուրուք ի մէնջ ծանուցեալ զհպատակութիւն և զանհպատակութիւն՝ ցուցցէ ձեզ։

Եւ լուեալ զայս Վռամայ հանդերձ աւագանւով դրանն՝ յոյժ ուրախանայր. և այնուհետև հրաման տայր վաղվաղակի ի բաց առնուլ զթագաւորութիւնն յԱրտաշեսէ. ընդ նմին և զատինն կաթողիկոսական ի սրբոյն Սահակայ՝ յարքունիս ունել, փոխանակ զի ոչ միաբանեցաւ տալ վկայութիւն ընդ նախարարսրն Հայոց։ Եւ այսպէս վճարեալ՝ հրաման Պարսից թագաւորին ի գլուխ ելանէր։ Յայնմհետէ բարձաւ թագաւորութիւն յազգէն Արշակունեաց ի վեցերորդ ամի Արտաշեսի, ըստ բանի երանելւոյ առն Աստուծոյ մեծի քահանայապետին Ներսէսի, և անկաւ աշխարհս Հայոց ընդ լծով ծառայութեան անօրէն իշխանութեան Պարսից։ Եւ առեալ զինս իշխանացն Հայոց ի թագաւորէն Պարսից, ընդ մատնութեանն Արտաշեսի, պատիւս և մեծութիւնս, նման արծաթոյն զոր առին ընդ Յովսեփայ եղբարքն, ըստ մատնութեանն խմայէլացի վաճառականացն, և այսպէս հրաժարեալք ի դրանէ՝ եկին յաշխարհն իւրեանց»][1]։

Ինչպես պարզ երևում է Ղազար Փարպեցու այս վկայությունից, հայ նախարարներն իրենք էին հոժարակամ ցանկացել ենթարկվել Սասանյան Պարսկաստանի անմիջական իշխանության և իրենք էին դիմել Պարսից թագավորին ու խնդրել վերջին Հայ Արշակունի թագավորի՝ Արտաշեսի գահընկեցությունը։ Արշակունյաց թագավորների իշխանության վերացումը, ինչպես մատնանշված է իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ[2], բնավ չէր շոշափում նրանց իրավունքներն ու արտոնությունները։ Կարելի է վստահորեն ենթադրել, որ 428 թվից հետո Պարսկական Հայաստանի ներքին կազմակերպության մեջ գրեթե փոփոխություններ չեղան։

Հայագիտական նորագույն երկերում ենթադրվել է հաճախ, ինչպես, օրինակ, Գյուտերբոկի «Բիզանդիոն և Պարսկաստան» աշխատության մեջ[3], որ 428 թվից հետո Պարսկական Հայաստանը կորցրել էր իր ինքնավարության մնացորդները և միացվել Սասանյան Պարսկաստանին իբրև պարսկական մի նահանգ։

Այս պնդումը ճիշտ չէ։ Արշակունի Արտաշեսի անկումից հետո, ինչպես վկայում է Եղիշեն՝ «ի նախարարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն»։

«Երբ Արշակունիների ցեղը վերացավ,—պատմում է Եղիշեն,—Հայոց աշխարհին տիրեց պարսիկ Սասանի ցեղը, որ իր իշխանությունը վարում էր մոգերի կրոնի համաձայն և

---

[1] Փարպեցի, I գլ. ԺԴ, էջ 24—25։

[2] Երևան, 1934, էջ 281—282։

[3] Թարգմ. Հ. Համբարյանի, Վիեննա, 1911, էջ 99։

*շատ անգամ կռիվ էր մղում նրանց հետ, ովքեր չէին ընդունում նույն կրոնը. սկսելով Տիրանի որդի Արշակ թագավորի օրերից՝ կռվում էր մինչև Վռամշապուհի որդի Հայոց Արտաշես արքայի վեցերորդ տարին։ Եվ երբ սրան էլ զրկեց թագավորությունից՝ թագավորությունն անցավ Հայոց նախարարներին. որովհետև թեպետև հարկը Պարսից արքունիքն էր գնում, սակայն Հայոց հեծելազորն ամբողջապես նախարարներն էին առաջնորդում պատերազմի ժամանակ»*[1]։

[*«Քանզի ի բառնալ ազգին Արշակունեաց, տիրեցին աշխարհիս Հայոց ազգն Սասանայ Պարսկի, որ վարէր զիւր իշխանութիւնն օրինօք մոգաց. և բազում անգամ մարտնչէր ընդ այնոսիկ, որ ոչ ընդ նովին օրինօք մտանէին. սկիզբն արարեալ յամացն Արշակայ արքայի որդւոյն Տիրանայ, և կռուէր մինչև յամն վեցերորդ Արտաշիսի արքայի Հայոց, որդւոյն Վռամշապհոյ։ Եւ իբրև զնա ևս մերժեաց ի թագաւորութենէն, ի նախարարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն, զի թէպէտ և գանձն յարքունիս Պարսից երթայր, սակայն այրուձին Հայոց բովանդակ ի ձեռն նախարարացն առաջնորդէր ի պատերազմի»*][2]։

*Որ Արշակունյաց վերջին թագավորի գահընկեցությունից հետո հայ նախարարները պահպանել էին անփոփոխ իրենց տիրական ու անգամ «գործակալական» իշխանության գրեթե բոլոր իրավունքները՝ այդ երևում է ո՛չ միայն Եղիշեի, այլ նաև մատենագրական ուրիշ վկայություններից։ Հայտնի է, որ Մամիկոնյանները մնում էին դարձյալ իբրև Պարսկական Հայաստանի սպարապետներ, Վահան Ամատունուն հանձնված է եղել «հազարապետութեան գործակալութիւն»-ը, իսկ դատավարության իշխանությունը, ըստ երևույթին, մնացել էր բարձր հոգևորականության ձեռին։*

*Ուշադրության արժանի է նույնպէս, որ Շահապիվանի* **443** *թվի ժողովի կանոնադրության մեջ հիշատակված են դարձյալ հետևյալ «գործակալութիւն»-ները՝*

*«Վասակայ Սիւնւոյ մարզպանութիւն Հայոց, Վահանայ Ամատունւոյ հազարապետութիւն և Վրվայ Խոռխոռունւոյ մաղխազութիւն»*[3]։

---

[1] *Տե՛ս «Եղիշեի Վարդանանց պատմությունը», թարգմ. Ե. Տեր-Մինասյանի, Երևան, 1946, էջ 101։*

[2] Եղիշե, *Վենետիկ, 1864, էջ 11։*

[3] *Տե՛ս «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 59։*

Հենց ինքնին այն փաստը, որ Շահապիվանի ժողովում, նախարարների և մանր ազնվականության մասնակցությամբ, սահմանվել էին պարտադիր կանոններ, որոնք վերաբերում էին բացի հոգևորականներից նաև հանցապարտ աշխարհականներին՝ մի ապացույց է Եղիշեի վերոհիշյալ վկայության ճշտության։

Այս բոլորը, ուրեմն, պարզ ցուցումներ են, որ 428 թվից հետո Պարսկական Հայաստանի նախարարական ինքնավար կազմակերպության մեջ զգալի փոփոխություններ չէին եղել։

Եթե Սահակ կաթողիկոսը համառ կերպով հակառակում էր նախարարներին և դեմ էր Արտաշեսի գահընկեցության՝ այդ, ըստ երևույթին, բացատրվում է նրանով, որ նա ու նաև հայ ժողովրդի յուսավորյալ մասը դեռևս հույս ունեին, որ հայերին կարող էր հաջողվել ապագայում վերականգնել իրենց համազգային պետությունը և նախկին անկախությունը։

Արտաշես թագավորին գահից զրկելուց հետո՝ Վռամ Ե Գոռը Հայաստանի բարձրագույն կառավարիչ նշանակեց պարսիկ Վեհմիհրշապուհ մարզպանին և Արևելյան Հայաստանը դառավ Սասանյան Պարսկաստանի մարզերից մեկը (428)։ Հայ նախարարների ակնկալությունները վերջ ի վերջո սխալ դուրս եկան։ Հայ Արշակունի թագավորության վերացումից հետո, ինչպես պետք էր սպասել, Սասանյան Պարսկաստանը աշխատեց վերացնել նաև հայ նախարարությունների իրավական արտոնությունները։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# ԱՐՇԱԿՈՒՆՅԱՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ՏՐԴԱՏ Գ-Ի ԵՎ ՆՐԱ ՀԱՋՈՐԴՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ ՄԻՆՉԵՎ 363 ԹԻՎԸ

**Արշակունյաց թագավորության սահմանները 298 թվից հետո։— Հարավ-արևելյան սահմանները Ուրմիա լճի կողմերում։— Փավստոսի վկայությունները «Գանձակ Ատրպատական»-ի մասին։— Արշակունիների երկրամասն Ատրպատականում։— Փավստոսի վկայությունների սխալ մեկնությունը նորագույն երկերում։— Արշակունյաց Հայաստանի սահմանն էր Ուրմիա լճի արևելակողմում Paresaca կայարանի շրջանը։— Ուրմիա լճի հարավ-արևմտակողմում Արշակունյաց Հայաստանի սահմաններն էին Զինթա ամրոցի և Զարասպ լեռան շրջանները։— Զինթա ամրոցի տեղադրության խնդիրը.— Ադոնցի ենթադրությունը։— Զինթան, հավանորեն, այժմյան Զիրան է։— Նոր-Շիրական սահմանակալ իշխանության կամ բդեշխության տեղադրությունը։— Նոր-Շիրականի մասին ընդհանրացած սխալ կարծիքները։— «Շիգրիանական երկիրը» և «Շիրազանները»։— Նոր-Շիրականը կապ չունի Նոտ-Արտաշիրականի հետ։— «Շիգոոյ» գավառի հիշատակությունը Ղևոնդ պատմիչի մոտ։— Արշակունյաց Հայաստանի մյուս բդեշխությունները հարավում։— Սահմանակալ երկրորդ իշխանությունը կամ բդեշխությունը հարավում։— Մարկվարտի սխալ կարծիքն այս բդեշխության մասին։— Սահմանակալ իշխանությունը «յԱսորեստանեաց կողմանէն» Կորդվաց բդեշխությունն էր։— Երրորդ սահմանակալ իշխանը «յԱրուաստան կողմանէն» Աղձնյաց բդեշխն էր։— Ծայրագավառներ Դասնը, Տմորիքը և Կորդիքը։— Արշակունյաց Հայաստանի սահմանը Կորդուքի, Աղձնիքի և Մեծ Ծոփքի կողմերում։— Արշակունյաց Հայաստանի արևմտյան սահմանները։— Նրա ծայրագավառները Ծովք լճի հարավակողմից մինչև Դաստեյրա-Դոստալ։— Դարանաղի, Եկեղիք, Դերջան և Սպեր։— Արշակունյաց Հայաստանի սահմանները Ճորոխ և Կուր գետերի վերին հոսանքի կողմերում։— Գուգարաց սահմանակալ իշխանության գավառները։— Ծոբափոր, Կողբափոր և Ձորոփոր գավառների տեղադրությունը։— Հնարակերտ քաղաքը։— Արշակունյաց թագավորության սահմանները Հնարակերտ քաղաքից դեպի արևելք։— Սահմանագլուխ գավառներ Կողթը, Գարդմանաձորը, Շակաշենը և Ուտի-Առանձնակը։— Ծայրագավառները Ուտի—Առանձնակի արևելակողմում։— Կասպից աշխարհը և Փայտակարան քաղաքը։— Արշակունյաց թագավորության մեջ էին գտնվում Սարանդ գավառը և նրա հյուսիսակողմում ու հյուսիս-արևմտակողմում գտնվող շրջանները մինչև Կասպից ծովը։— Արշակունյաց Հայաստանը իր ընդարձակ սահմաններում գրեթե համապատասխանում էր Արտաշեսյան Հայաստանին։**

Պատմական Հայաստանի սահմանները նույնը չեն եղել զանազան դարաշրջաններում և հաճախ ենթարկվել են զգալի փոփոխությունների։ Մենք վերև տեսանք, որ Արշակունյաց Հայաստանը վերահաստատվել էր իր ընդարձակ հին սահմաններում Դիոկլետիանոս կայսեր ժամանակ, որի զորավար Գալերիոս Մաքսիմիանոսը 297 թվին հայերի օգնությամբ ծանր պարտություն էր մատնել Պարսից թագավոր Ներսեհին։ Այս պարտությունից հետո Ներսեհը ստիպված եղավ զիջել Հռոմեական կայսրությանը Հայաստանի հարավային շրջանները՝ Ծոփքը, Անգեղտունը, Աղձնիքը, Կորդուքը, Մոկքը, Ծավդեքը և Ռեհիմենան, իսկ իբրև Հայաստանի սահման Ատրպատական-Մարաստանի կողմից, համաձայն 298 թվի դաշնագրության, որոշվեց Զինթա ամրոցը[1]։

Արշակունյաց Հայաստանի սահմանները 298 թվից հետո՝ բազմիցս քննության են ենթարկվել Հյուբշմանի, Ադոնցի և Մարկվարտի աշխատություններում, բայց մինչև վերջին ժամանակները հաստատուն կերպով որոշված չէին և համարվում էին վիճելի։

Այդ սահմաններից, հատկապես, հարավ-արևելյանը, որը գտնըվում էր Ուրմիա լճի արևելակողմում և հարավ-արևմտակողմում, մանրամասն լուսաբանված է նաև աշխարհագրական իմ աշխատություններում (տե՛ս «Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի», Երևան, 1936 թ., էջ 165—171, նաև «Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ», Երևան, 1945 թ., էջ 15—45)։ Մեր եզրակացությունները անհրաժեշտ ենք համարում համախմբել այստեղ ամփոփ բովանդակությամբ, ավելացնելով նաև մեր նոր դիտողություններն Արշակունյաց թագավորության նույն ժամանակաշրջանի հարավային, արևմտյան և հյուսիսային սահմանների մասին։

Ինչպես հայտնի է, աշխարհագրական բոլոր նորագույն երկերում Արշակունյաց Հայաստանի ու Պարսկաստանի չորրորդ դարի սահմանը ենթադրվում է Ատրպատականի Գանձակ քաղաքի մոտ[2]։ Այս խնդիրն այնքան հետաքրքիր է ու կարևոր Հայաստանի պատմական աշխարհագրության համար, որ մենք անհրաժեշտ ենք համարում մեջ բերել Փավստոսի բոլոր համապատասխան վկայությունները, որոնք հիմք են ծառայել այդ ենթադրության։

---

[1] Տե՛ս *Petrus Patricius*, fragm. 14 (Dindorf, Historici graeci minores, I).

[2] Տե՛ս *Markwart*, Eranschahr, Berlin, 1901, էջ 109, Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, թարգմ. Պիլեզիկճյանի, էջ 90—91. *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 226 և ուրիշ.։

1. Փավստոս, III, գլ. Է՝

«Եվ նրանք՝ թափառական ցեղերը եկան, լցվեցին և ծածկեցին Հայոց ամբողջ երկիրը. քանդեցին, գերեցին և բոլորովին ավերեցին. ցրվեցին, տարածվեցին բոլոր սահմաններում ծայրե ի ծայր ծավալվեցին մինչև Սատաղ փոքրիկ քաղաքը և մինչև Գանձակ Ատրպատականի սահմանները»։

[«Եւ ելին լցին ծածկեցին զամենայն երկիրն Հայոց. քանդեցին, գերեցին, առ հասարակ աւերեցին. սփռեցան տարածեցան զսահմանօքն, լի և լի ծաւալեցան մինչև՝ի փոքր քաղաքիկն Սատաղու և մինչև ի Գանձակ սահմանս Ատրպատական»][1]։

2. Նույնը, IV, գլ. ԻԱ՝

«Իսկ Հայոց թագավորի [Արշակ Բ-ի] սահմանապահները, որոնք նստած էին Գանձակ Ատրպատականում՝ վաղօրոք այս բանը իմաց տվին Արշակ թագավորին, դեռ նա [Շապուհ Բ-ը] Ատրպատականի սահմանները չհասած»։

[«Իսկ սահմանապահքն թագաւորին Հայոց, որ նստէին ի Գանձակ Ատրպատականի, վաղ ազդ առնէին նմա զիրսն մինչև հասեալ էր նա ի սահմանս Ատրպատականի»][2]։

3. Նույնը, V, գլ. Ա՝

«Երբ առաջապահը եկավ հասավ Հայաստանի միջնաշխարհը՝ Մուշեղը սպանեց Պարսից Կարեն և Զիկ զորագլուխներին և բոլոր զորքերը սրի անցկացրեց ու ոչ ոքին կենդանի չթողեց։ Եվ մինչև բուն սահմանները, Գանձակ Ատրպատականի նրանց երկիրը դուրս քշելով՝ ամբողջը տիրեց»։

[«Իբրև գայր առաջապահն հասանէր ի միջնաշխարհն Հայոց՝ սպանանէր Մուշեղ զզօրագլուխն Պարսից զԿարէնն և Զիկն, և զամենայն զզօրսն արկանէր ի սուր սուսերի իւրոյ, և ոչ մի զոք ապրեցուցանէր։ Եւ մինչև ի բուն ի սահմանսն ի Գանձակ Ատրպատականի զերկիրն յիւր վտարեալ՝ բռնացեալ ունէր»][3]։

4. Նույնը, V, գլ. Դ՝

«Այնուհետև Հայոց զորքերը փախչողներին հետապնդեցին և Պարսից զորքերին հալածեցին մինչև Գանձակ Ատրպատական՝ մինչև Հայաստանի սահմանները»։

[«Ապա զհետ լինէին փախստէիցն զօրքն Հայոց, և մինչև ի

---

1 Փավստոս, էջ 16։

2 Նույնը, էջ 141։

3 Նույնը, էջ 191։

*Գանձակ յԱտրպայական ի սահմանս Հայոց հալածէին զզօրսն Պարսից»]*[1]։

*5. Նույնը, V, գլ. Ե՝*

*«Այն ժամանակ Հունաց սպարապետը կազմակերպեց զորքերը, որ իր ձեռքի տակ էին, և շարժեց տարավ ու գնաց Գանձակ կողմի Ատրպատական աշխարհից Հայաստանի սահմանները»։*

*[«Ապա սպարապետն Յունաց կազմեաց զօրս իւր, որ ընդ իւրով ձեռամբ էին, և խաղացոյց տանել գնալ ի սահմանս Հայոց ի Գանձակէ կուսէ յԱտրպայական տանէ»]*[2]։

*6. Նույնը, V, գլ. ԼԴ՝*

*«Եվ խորհուրդ էր անում [Մուշեղը] Հունաց իշխանների հետ և նրանց միջոցով կայսեր հետ, թե նրանց անհրաժեշտ է Հայոց երկրում քաղաքներ շինել յուրաքանչյուր գավառում՝ տեղ-տեղ մի-մի քաղաք և տեղ-տեղ երկ-երկու, ամուր պարիսպներով պատած, և դարձնել իբրև զորանիստ տեղեր ամբողջ Հայոց երկրում՝ մինչև Գանձակ սահմանային երկիրը, որը Պարսից կողմումն է և Հայոց սահմանն է»։*

*[«Խորհէր ևս ընդ իշխանսն Յունաց, և նոքօք ընդ կայսերն, թէ պարտ է նոցա քաղաք մի շինել յերկրին Հայոց, ի մի մի գաւառսն, որ մին մի քաղաքս, որ երկուս երկուս ամուր պարսպաւորս՝ զօրանիստս հաստատել ընդ ամենայն երկիրն Հայոց, մինչև ի Գանձակ սահման երկիրն, որ Պարսից կուսէ էր, Հայոց սահման էր»]*[3]։

*Մեջ բերված այս վկայությունները հասկանալու համար պետք է նկատի ունենալ, որ բացի «Գանձակ Ատրպատական»-ից, Փավըստոսը հիշում է նաև մյուս Ատրպատականը, որը պատկանել է Արշակ Բ-ին։ Հյուսիսային այս Ատրպատականը, որի միջով անցնում էր Պևտինգերյան քարտեզի* Gobdi—Paresaca *ճանապարհագիծը*[4], *հիշատակված է նրա հետևյալ վկայության մեջ։*

*Փավստոս, V, գլ. Ը՝*

*«Ապա, երբ պատերազմը Պարսից կողմից դադարեց և պատերազմական գործողությունները այն կողմից խափանվեցին՝ այնուհետև Հայոց Մուշեղ սպարապետը սկսեց չարդել նրանց,*

---

[1] Փավստոս, *էջ 202*։

[2] *Նույնը, էջ 205*։

[3] *Նույնը, էջ 241*։

[4] *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի, Երևան, 1936, էջ 161—172*։

*ովքեր ապստամբել էին Արշակունիների թագավորության դեմ։ Ամենից առաջ ջարդեց Հայոց թագավորի երկրամասը, որը գտնվում էր Ատրպատականում»։*

*[«Ապա իբրև դադարեաց պատերազմն ի կողմանցն Պարսից, և յապահովեցան իւք ճակատուն յայնմ կողմանէ, և այնուհետև սկսանէր սպարապետն Հայոց Մուշեղ հարկանէր զայնոսիկ՝ որք ապստամբ եղեն ի թագաւորութենէն Արշակունեաց։ Նախ հարկանէր զտուն թագաւորին Հայոց, որ յԱտրպայականին էր»]*[1]։

*Ինչպես տեսնում ենք, Փավստոսի մոտ պարզ կերպով հիշատակված են երկու Ատրպատական՝ մեկն իբրև Արշակունյաց Հայաստանի մաս, իսկ մյուսը, Սասանյան Պարսկաստանի։ Միանգամայն պարզ է, բացի այդ, որ հարավային Ատրպատականը, որն անհրաժեշտ էր տարբերել հյուսիսային Ատրպատականից, Փավստոսի վկայություններում անվանված է «Գանձակ Ատրպատական»։ Այս վերջինը «Գանձակ Ատրպատական» է կոչվել, անշուշտ, Գանձակ քաղաքի անունով, որը եղել է այս երկրի կենտրոնավայրը։*

*Որ Փավստոսի Պատմության մեջ «Գանձակ»-ը կամ «Գանձակ Ատրպատական»-ը ոչ թե քաղաքի, այլ հարավային Ատրպատականի անունն է՝ այդ պարզ ու որոշ մատնանշված է վերոհիշյալ գրեթե բոլոր վկայություններում։ Հատկապես վեցերորդ վկայության մեջ պարզ շեշտված է, որ «Գանձակ սահման երկիրն» «Պարսից կուսէ» էր։*

*Այդ՝ կարելի՞ է միթե վերոհիշյալ վկայություններից որևէ կերպ հետևցնել, որ Ատրպատականի Գանձակ քաղաքը գտնվել է Արշակունյաց Հայաստանում, ինչպես ենթադրում են Մարկվարտը, Հյուբշմանը, Ադոնցը և ուրիշները։*

*Ընդհանրացած ու սովորական այս պնդումը, որը հիմնված է վերոհիշյալ երկրորդ վկայության վրա, անշուշտ, ակներև մի թյուրիմացություն է։ Այդ երկրորդ վկայության մեջ, ինչպես և Փավստոսի մյուս հատվածներում, «Գանձակ»-ը պարզապես ո՛չ թե քաղաքի անունն է, այլ այն «Գանձակ սահման երկիրն» է, որի մոտ են գտնվել «սահմանապահքն թագաւորին Հայոց»։ «Նստէին ի Գանձակ Ատրպատականի» նշանակում է ըստ իս «նստէին ի [սահմանս] Գանձակ Ատրպատականի»։ Իսկ սովորական ու ընդունված մեկնությունը, որ իբր թե «Հայոց թագավորի սահմանապահները*

---

[1] Փավստոս, էջ 213։

կնոտերին» Գանձակ քաղաքում, ոչ միայն անհավանական է, այլև պարզապես սխալ։

Որ մեր այս մեկնությունն է ճիշտ՝ այդ անուղղակի կերպով հաստատում են հենց միևնույն հեղինակի երկու ուրիշ վկայությունները, որ վերաբերում են Թավրիզ քաղաքին (IV, գլ. ԻԵ, Վենետիկ, 1889, էջ 149 և IV, գլ. ԼԹ, էջ 157)։ Այդ երկու վկայությունների մեջ պարզ ասված է, որ Թավրիզը գտնվել է Սասանյան Պարսկաստանում։

Ուրեմն՝ ինքնըստինքյան հետևում է նաև այդ վկայություններից, որ Ատրպատականի Գանձակ քաղաքը, որը գտնվում էր Թավրիզի հարավում և նրանից մի քանի հարյուր կիլոմետր հեռավորության վրա՝ չէր կարող լինել Արշակունյաց Հայաստանում։

Արշակունյաց Հայաստանի սահմանն Ուրմիա լճի արևելակողմում որոշվում է բավական ճշգրիտ կերպով Պևտինգերյան քարտեզի Gobdi—Paresaca ճանապարհագծի ուշադիր քննությամբ։ Ինչպես մատնանշել ենք «Հայաստանի գլխավոր ճանապարհները» մեր աշխատության մեջ՝ Trispeda կամ Tarspedo կայարանին հաջորդող Paresaca կայարանից հետո, որը գտնվել է այժմյան Դիզա Տավիշից 45 հռոմեական մղոն կամ մոտ 67 կիլոմետր հեռավորության վրա՝ միջկայարանային հեռավորությունները Պևտինգերյան քարտեզում նշանակված են պարսկական պարասանգներով[1]։

Ուշագրավ այս փաստից, որով բացատրվում է Հայաստանի պատմական աշխարհագրության կարևորագույն խնդիրներից մեկը՝ մինչև վերջին ժամանակները դեռ չէին արվել համապատասխան ու անհրաժեշտ հետևությունները։

Մղոնաչափերի փոփոխությունը մի պարզ ակնարկ է, որ ճանապարհագիծը մինչև Paresaca գտնվել է Արշակունյաց Հայաստանում, իսկ Paresaca-ից հետո՝ Սասանյան Պարսկաստանում։ Կարելի է նույնիսկ ենթադրել, որ հիշյալ կայարանն անվանվել է Paresaca (=հավանորեն, Պարսք), որովհետև նա գտնվել է Պարսկաստանի սահմանում։

Իսկ այս լուսաբանությունից ինքնին արդեն հետևում է, որ ըստ Պևտինգերյան քարտեզի, որը կազմված է եղել, ըստ երևույթին, չորրորդ դարի երկրորդ քառորդում, Արշակունյաց Հայաստանի սահմանը որոշվելու է Tarspedo—Տավիշից 45 հռոմեա-

---

[1] Տե՛ս *Miller Konrad*, Itineraria Romana, Römische Reisewege an der Hand der Tabula Peutingeriana, Stuttgart, 1916, էջ 781—784։

*կան մղոն կամ մոտ 67 կիլոմետր դեպի հարավ-արևելք՝ այժմյան Աջի-չայ գետի մոտ։*

*Արդ՝ ընդունելով Աջի-չայ գետն իբրև սահմանագիծ Արշակունյաց Հայաստանի և Սասանյան Պարսկաստանի միջև՝ Թավրիզի տեղը լինելու էր, իրոք, Պարսկաստանում, ինչպես այդ վկայում է նաև Փավստոսը։*

*Եվ ինձ թվում է, որ Պետինգերյան քարտեզի և Փավստոսի վկայությունների համերաշխությունն ինքնին արդեն հաստատուն մի նեցուկ է մեր եզրակացությունների հավաստիության և միաժամանակ ուշագրավ մի նոր ապացույց է, որ Փավստոսի վերոհիշյալ վկայությունները սխալ են եղել մեկնված աշխարհագրական նախորդ աշխատություններում։*

*Համաձայն հռոմեական-պարսկական 298 թվի դաշնագրության՝ Արշակունյաց Հայաստանի սահմանն էր լինելու, ինչպես արդեն հիշված է, Զինթա ամրոցը, որը գտնվում էր Մեդիայի սահմանում։ Իսկ հայկական ավանդությունը, որը մեզ է բերված Սեբեոսի և Խորենացու պատմություններում*[1]*, Հայաստանի հարավ-արևելյան հին սահմանը Ատրպատական-Մեդիայի կողմում համարում է Զարասպ լեռը։ Այս երկու ցուցումները, ինչպես մանրամասն պարզել եմ իմ «Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ»*[2] *աշխատության մեջ, իրար համապատասխան են և իրար լրացնում են։*

*Զարասպ լեռան տեղը, ինչպես միանգամայն ճիշտ մատնանշել է Ալիշանը*[3]*, հավանական է ենթադրել Զագրոս լեռների շրջանում և այժմյան Ռևանդուզի հյուսիս-արևելակողմում։ Նույն կարծիքը հայտնել է նաև Գ. Հոֆմանը*[4]*, որը Զարասպի տեղը մատնանշել է Թուրքիան և Պարսկաստանը իրարից բաժանող այժմյան Քանդիլ-կուհ կամ Քանդիլ-դաղ լեռնաշղթայի շրջանում, ուր Ռևանդուզի և այժմյան Ուշնու գյուղի միջև գտնվում է Կելիշինը։*

*Ավելի դժվար է որոշվում Զինթա ամրոցի տեղը։ Ռ. Կիպերտի ընդարձակ քարտեզում Նինվեից հյուսիս Ակրայի մոտ մատնացույց է արված Զինդու* (Zindu) *վայրը*[5]*, սակայն այս Զինդուն,*

---

[1] **Սեբեոս**, *Պատմություն, Երևան, 1939, գլ. Բ, էջ 9 և գլ. Թ, էջ 38—39։* **Խորենացի**, *Պատմութիւն, I, գլ. ԺԴ էջ 44։*

[2] *Երևան, 1945, էջ 9—18։*

[3] **Ալիշան**, *Տեղագիր Հայոց Մեծաց, Վենետիկ, 1855, էջ 11։*

[4] **Տե՛ս** *G. Hoffmann*, Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer, Leipzig, 1880, **էջ 231 և հետ.։**

[5] **Տե՛ս** *R. Kiepert*, Atlas von Kleinasien in 24 Blättern, Berlin, 1902.

ինչպես շատ ճիշտ նկատել է Ադոնցը[1], հազիվ թե որևէ կապ ունենա վերոհիշյալ Զինթայի հետ։

Ադոնցը ինքը թեական կերպով ենթադրում է, որ Զինթա ամրոցը կարող է թերևս նույնացվել այժմյան Սիննա քաղաքի հետ, որը գտնվում է Համադանի և Սուլեյմանիայի միջև։ Հ. Կիպերտի քարտեզից երևում է, որ սա ևս Սիննայի հին անունը ենթադրում է Sintha[2]։ Հնարավոր համարելով Զինթայի և Սիննայի նույնացումը՝ Ադոնցը նկատի է ունեցել Փավստոսի Պատմության ակնարկներն այն մասին, որ իբր թե Պարսից թագավոր Շապուհ Բ-ը խոստացել էր ամբողջ Ատրպատականը տալ կամ նույնիսկ իբր թե տվել էր իբրև նվեր Արշակ Բ-ին[3]։ Հիմնվելով Փավստոսի վկայությունների վրա՝ Ադոնցը տրամադիր էր կարծելու, որ այդ վկայությունները, չնայած իրենց հեքիաթային բնույթին, կարծես թե հաստատում են, որ Ատրպատականի կողմից Հայաստանի սահմանը կարող էր լինել, իրապես, Զինթան՝ այժմյան Սիննան։

Ադոնցի այդ ենթադրությունը պարզապես սխալ է և դրա գլխավոր պատճառն այն է, որ նա, համամիտ լինելով Մարկվարտին և Հյուբշմանին, ենթադրել է, որ Ատրպատականի Գանձակ քաղաքը ու նաև Ատրպատականի որոշ մասերը Ուրմիա լճի հարավ-արևելյան ափերի երկարությամբ գտնվել են Արշակունյաց Հայաստանում։ Այս պնդումը, ինչպես տեսանք, ակներև մի թյուրիմացություն է։ Ըստ Պետինգերյան քարտեզի՝ Արշակունյաց Հայաստանի սահմանը, իրապես, ոչ թե Ատրպատականի Գանձակից հարավ էր ընկնում, այլ Թավրիզից հյուսիս՝ այժմյան Աջի-չայ գետի մոտ։ Շատ պարզ է, ուրեմն, որ Զինթա ամրոցի տեղն անկարելի է ենթադրել այժմյան Սիննայում, որը գտնվում է Համադանից Սուլեյմանիա գնացող ճանապարհի վրա։

Զինթա ամրոցի տեղը որոշելիս՝ պետք է նկատի ունենալ, որ Սասանյան Պարսկաստանի 297 թվի պարտությունից հետո Հայաստանը ստացած պիտի լիներ Ատրպատական-Մեդիայի կողմում իր ընդարձակ հին սահմանները։ Իսկ մենք տեսանք, որ այդ կողմում Հայաստանի ծայրագույն սահմանն էր Զարասպը, այսինքն՝ Ուշնուի արևելակողմում գտնվող լեռնային շրջանը, ուր, ինչպես մանրամասն ցույց է տրված իմ «Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ»-ում (էջ 4—7), հավանորեն, պետք է

---

[1] *Адонц,* Армения в эпоху Юстиниана, *էջ 227, ծնթ. 1։*

[2] **Տե՛ս** *H. Kiepert*, Atlas antiquas, zwölf Karten zur alten Geschichte, Berlin, Tab II:

[3] **Փավստոս**, *IV, գլ. ԺԸ, էջ 128 և Խ, էջ 136։*

լիներ՝ Բեհիստունի և ասորեստանյան սեպագիր արձանագրություն-ների մեջ հիշատակված Izitu կամ Izirtu-ի տեղը։

Հիմնվելով կարևոր այս ցուցումների վրա՝ Զինթայի անվան ու տեղադրության նկատմամբ ես առաջարկել էի մի լուսաբանություն[1], որ համարում էի և համարում եմ հավանական։ Zintha անվան ուղիղ ընթերցվածը կարելի է, իմ կարծիքով, ենթադրել Zirtha։ Իսկ այս սրբագրությունից հետո Զինթան կարող է համապատասխան լինել և ծագած լինել հին Իզիրտու անունից։

Ասորագետ Շտրեքը վկայում է, որ Իզիրտու քաղաքի անունը ասորեստանյան արձանագրությունների մեջ գրվում է երբեմն ի հավելվածով, իսկ երբեմն առանց այդ ձայնավորի՝ Զիր-տու կամ Զիրտա։ Այդ տեղանվան բուն մասն է Իզիր- կամ Զիր-, իսկ տու կամ տա ասորեստանյան հատուկ վերջավորություն է[2]։ Դժվար չէ, ուրեմն, համոզվել, որ Զինթայի նույնացումը Զիրտու կամ Զիրտայի հետ միանգամայն հնարավոր է։

Անհավանական չէ ըստ իս նաև այն, որ այժմյան Զիրան[3], որը գտնվում է Ռևանդուզից Պարսկաստան գնացող ճանապարհի վրա և Զագրոս լեռների այն մասում, որը մենք համապատասխան համարեցինք հայկական աղբյուրներում հիշատակված Զարասպին՝ թե իր անունով և թե իր տեղադրությամբ կարող է նույնպես համապատասխան լինել Զինթա—Զիրտային։

Եթե իմ այս դիտողությունները Զինթայի մասին ընդունելի համարվեն՝ այդ դեպքում կարելի կլինի ենթադրել, որ 298 թվի դաշնագրությունից հետո Արշակունյաց Հայաստանի հարավ-արևելյան սահմանը հասնում էր Ուրմիա լճի հարավ-արևմտակողմում մինչև Զագրոս լեռները Ռևանդուզի արևելակողմում։

Արշակունյաց Հայաստանի հարավ-արևելյան այս սահմանում, ուր, ըստ վերոհիշյալ մեր ենթադրության, գտնվում էին Զարասպ լեռը և Զինթա կամ Զիրթա ամրոցը՝ Փավստոսի ու Ագաթանգեղոսի մոտ մատնացույց է արված Հայաստանի չորս բդեշխություններից մեկը՝ Նոր-Շիրականը, որի իշխանության տակ են եղել ըստ Փավստոսի՝ Նոշիրական (Նորշիրական, Նոր-Շիրական), Մահկերտուն,

---

[1] Տե՛ս «Պատմական-աշխարհագրական մանր հետազոտությունները», էջ 18։

[2] Տե՛ս Մ. Շտրեք. Հայաստան, Քրդստան և արևմտեան Պարսկաստան բաբելոնական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն, թարգմ. Պիլեզիկճյանի. Վիեննա, 1901, էջ 98։

[3] Տե՛ս Карта Главного Управления Геодезии и Картографии при СНК СССР—«Иран и Афганистан»:

Նիհորական և Դասն երկրները[1]։ Այս բդեշխության տեղադրության մասին, որը Արշակունյաց Հայաստանի սահմանապահ իշխանություններից մեկն էր՝ պատմագիտական և աշխարհագրական երկերում հայտնված են հակասական կարծիքներ, որոնք մանրամասն քննության են առնված իմ «Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ»-ում (էջ 19—34)։

Հիմնվելով, գլխավորապես, Ագաթանգեղոսի վկայությունների վրա, Նոր-Շիրականի տեղը Հյուբշմանը որոշել է Մծբին-Արվաստանի և Կորդուքի միջև, այն է՝ Մծբինի արևելակողմում[2]։ Մոտավորապես նույն կարծիքին է նաև Ադոնցը, որը Նոր-Շիրականի տեղը ենթադրում է Կորդուքից հարավ, Ադիաբենի հյուսիս-արևմըտյան ծայրում՝ այժմյան Խուբուր-սու գետի հովտում[3]։ Նոր-Շիրականի թե անվան և թե տեղադրության մասին բոլորովին նոր ու արտասովոր կարծիք հայտնել է Մարկվարտն իր վերջին շրջանի աշխատություններում[4]։

Իր նոր աշխատություններում Մարկվարտը վճռական կերպով պնդում է, որ Փավստոսի և Ագաթանգեղոսի վկայությունները, որոնց համաձայն Նոր-Շիրականի բդեշխությունը Արշակունյաց Հայաստանի չորս սահմանակալ իշխանություններից մեկն է համարվում՝ ճիշտ չեն և չունին պատմական արժեք։ Նոր-Շիրական է անվանվել, նրա ասելով, ամբողջ Ադիաբենը, որն անանջատ մասն է եղել Սասանյան Պարսկաստանի։ Այդ երկիրը Հայաստանի գերիշխանության տակ է եղել միայն Տիգրան Մեծի ժամանակ։

**1931** թվին, Մարկվարտի մահից հետո, լույս է տեսել նրա ուշագրավ մի աշխատությունը. «Ցուցակ Երանշահրի շրջանային մայրաքաղաքների»[5], որի մեջ նա, ինչպես ինձ հայտնի եղավ Մինորսկու հոդվածից, հիմնվելով Տաբարիի և Իբն-Խորդադբեհի վկայությունների վրա՝ Նոր-Շիրականը բացատրել է իբրև կրճատված ձև Not-Artaschirakan անվան, որը, ըստ Տաբարիի, Արտաշիրի հիմնած ութ քաղաքներից մեկն էր և գտնվում էր Մոսուլի շրջանում[6]։

---

[1] Փավստոս, *IV, գլ. Ծ, էջ 163*։

[2] *Տե՛ս* Հյուբշման, *Հին Հայոց տեղւոյ անունները, թարգմ. Պիլեզիկճյանի, էջ 180—181*։

[3] *Տե՛ս Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 227*։

[4] *Տե՛ս Markwart*, Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, *էջ 68—70 և* Südarmenien und die Tigrisquellen, *էջ 379*։

[5] *J. Markwart*, A Catalogue of the provincial capitals of Persia, Anecdota Orientalia, III, Rome, 1931.

[6] *Տե՛ս V. Minorsky*, The Guran, Bulletin of the School of Oriental and African Studies (University of London), vol. XI, Part, 1, 1948, *էջ 103*.

Ինձ թվում է, որ Նոր-Շիրականի մասին վերոհիշյալ կարծիքները ճիշտ չեն և չեն համապատասխանում սկզբնաղբյուրների վկայությունների ցուցումներին, որ, ինչպես կտեսնենք, կարող են մեկնվել նաև այլ կերպ։

Պետք է ասել, որ Նոտ-Արտաշիրական երկիրը, ինչպես մանրամասն ցույց եմ տվել իմ «Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ»-ում, հիշատակված է նաև Խորենացու Աշխարհացույցի կարևոր մի վկայության մեջ, որը սխալ է հասկացվել աշխարհագրական բոլոր նոր աշխատություններում։ Իբրև Պարսկաստանի արևմտյան կողմի երկրներ Աշխարհացույցի մեջ հիշատակված են Նոտարտայ և Շիրական[1], որոնց տեղադրությունն աշխատել են որոշել Մարկվարտը և Ադոնցը։

Մարկվարտն իր Eranschahr աշխատության մեջ «Նոտարտայ» և «Շիրական» ենթադրել էր իբրև երկու տարբեր երկրներ[2]։ «Նոտարտայ»-ն նա համապատասխան էր համարել Մոսուլի շրջանում գտնվող Բեթ-Նոհադրեին, իսկ «Շիրական»-ի տեղադրությունը նա ենթադրում է այժմյան Ուշնուի, հին Շնավհ գավառի շրջանում, ուր գտնվում էր Թեոփիլակտոս Սիմոկատտեսի հիշատակած Սիրագանների գյուղը[3]։

Այս եզրակացություններն ընդունելի էր համարել նաև Ադոնցը, որը, ի լրումն Մարկվարտի պնդումների, իր կողմից ավելացնում է, որ Աշխարհացույցում Նոհատրա է անվանվում, հավանորեն, ամբողջ Ադիաբենը, իսկ Շիրականը կարող է լինել Նոհատրա տեղանվան հայկական հոմանիշը[4]։ Իմ կարծիքով, «Նոտարտայ»-ի և «Շիրական»-ի մասին այս ենթադրությունները ճիշտ չեն։

«Նոտարտայ»-ն և «Շիրական»-ը, որ երկու առանձին տեղանուն են համարվում, իրապես, պետք է միացվեն և կարդացվեն «Նոտարտա[յ]շիրական», այսինքն՝ «Նոտ-Արտաշիրական», որը Պարսից աշխարհի երկիր էր։ Ըստ իս Նոր-Շիրականը բնավ կապ չունի Նոտ-Արտաշիրականի հետ, այլ, ինչպես ճիշտ վկայում են իրարից անկախ Փավստոսը և Ագաթանգեղոսը, նա Արշակունյաց Հայաստանի չորս բդեշխություններից մեկն է, որի տեղը, ինչպես կտեսնենք, հնարավոր է հաստատուն կերպով որոշել։

---

1 Տե՛ս Խորենացի, *Աշխարհացոյց*, հրատ. Սուքրյանի, Վենետիկ, 1881, էջ 40 և նույնը, Վենետ. հրատ. 1843, էջ 643։

2 Տե՛ս *Markwart*, Eranschahr, էջ 23։

3 Տե՛ս Theoph. Sim., 5, 8, 9:

4 Տե՛ս *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 228—230։

Հոֆմանը, մատնացույց անելով Թեոփիլակտոսի վերոհիշյալ վկայությունը «Սիրագանների գյուղի» մասին, որը Ռաուլինսոնը համարել է Tepe Sirgân-ի հետ այժմյան Ուշնուի մոտ[1], հարց էր հարուցել, թե արդյոք չի՞ կարող այս Sirgân-ը նույնացվել հայկական պատմագիրների Նոր-Շիրականի հետ, որի տեղը պետք է լիներ Ուրմիա լճի մոտերքում[2]։ Ինձ թվում է, որ Հոֆմանի այս կռահումը հաստատվում է, իրապես, ուշագրավ տվյալներով։

Շատ հետաքրքիր է, որ Նոր-Շիրականի պրոբլեմի լուծման համար բանալի է ծառայում հենց իր՝ Մարկվարտի հմտալից ուսումնասիրությունը «Շիգրիանական երկրի» մասին, որ ընդարձակ կերպով մեջ է բերված նրա աշխատությունների մեջ[3]։ Խիստ տարօրինակ է սակայն, որ ինքը՝ Մարկվարտը չի նկատել, որ հենց Շիգրերն ու Շիգրիանական երկիրն են, որ Թեոփիլակտոսի մոտ անվանված են «Շիրագաններ», իսկ հայ պատմիչների մոտ՝ «Նոր-Շիրական»։

Շիգրերի մասին խիստ կարևոր է Պլինիուսի ուշագրավ մի վկայությունը[4]։ Սիգիկներից վերև այժմյան Ուշնուի կողմերում կամ թերևս մի փոքր ավելի դեպի հյուսիս-արևմուտք Պլինիուսի մոտ հիշատակված Sitrae ցեղը, որի անունը Մարկվարտը համարում է աղավաղված և առաջարկում է ուղղել և կարդալ Sigrae։ Այս ուղղումը, որ միանգամայն հավանական է ու ընդունելի, խիստ կարևոր է այն տեսակետից, որ շնորհիվ այս սրբագրության պարզ կերպով որոշվում է Sigrae ցեղի «Սիգրիանե» կամ «Սիգրիանիկե» անվանված երկրի տեղը, որը հիշատակված է Ստրաբոնի մոտ և Պտղեմեոսի հին քարտեզում։ «Սիգրիանե» երկիրը, ինչպես երևում է Պլինիուսի վկայությունից, գտնվում էր այժմյան Սիդիկանի և Ռևանդուզի հյուսիսակողմում և Մեծ Զավ գետի վերին հոսանքի շրջաններում։

Եվ ինձ թվում է, դժվար չէ կռահել, որ սիգրերի (շիգրերի) Սիգրիանը, կամ ավելի ճիշտ՝ Շիգրիանը, այն երկիրն է, որ Շիրակ կոչվող ցեղի անվան ազդեցությամբ և բաղաձայնների գրափոխությամբ (metathesis) հին հայերենում դառել է Նոր-Շիրական, իսկ Թեոփիլակտոսի մոտ, որը յոթերորդ դարի առաջին կեսի բյուզանդական հեղինակ է՝ Siragan։

---

[1] Տե՛ս Jour. of Roy. Geogr. Soc., X, 18, 19.

[2] Տե՛ս *Hoffmann*, Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer, Leipzig, 1880, էջ 249։

[3] Տե՛ս „Untersuchungen zur Geschichte von Eran", Leipzig, 1905, էջ 25 և-ն., „Eranschahr", էջ 32 և „Südarmenien", էջ 337, 393, 399, 401 և-ն.։

[4] *Plin*., Nat. Hist., VI, էջ 118։

Առանձնապես ուշագրավ է ու հետաքրքիր, որ հռոմեական-հունական հեղինակների մոտ հիշատակված նույն այս Շիգրիան երկիրը, որը համապատասխան է իմ կարծիքով Նոր-Շիրականին, հիշատակված է նաև Ղևոնդ պատմիչի մոտ։ Վերջինս, խոսելով Գագիկ Արծրունու ասպատակությունների մասին հարևան Ատրպատականի կողմերում հիշատակվում է «Շիգրոյ» գավառը[1], որը պարզապես Պլինիուսի վկայության Sigrae կամ Շիգրերի ցեղի երկիրն է։

Ղևոնդի վկայությունը, ինչպես տեսնում ենք, ցույց է տալիս, որ Նոր-Շիրականի հին Շիգրիան—Շիգռո անունը պահպանվել էր մինչև ութերորդ դարը՝ մինչև Ղևոնդ պատմագրի ժամանակը։

Մեր այս նոր դիտողությունները Նոր-Շիրականի մասին, համաձայն որոնց նրա տեղը որոշվում է Սիդիկանից և Ռևանդուզից հյուսիս գտնվող Շիգրերի երկրում, ուր հիշատակված է վերոհիշյալ «Շիրականների գյուղը»՝ հիմք են տալիս ենթադրելու, որ այս բդեշխությունը, որ սահմանակալ իշխանություն էր՝ Հայաստանի սահմանները պաշտպանելու էր ո՛չ թե Ասորեստանի կողմից, ինչպես այդ մատնացույց է արել Մարկվարտը[2], այլ Մեդիա-Ատրպատականի կողմից, որտեղից թշնամի զորքերը կարող էին ներս խուժել Հայաստան Զարասպի վրայով և Կելիշին ու Կելխսիփան լեռնանցքներով։

Մեր այս նոր եզրակացության կռվան է ծառայում Ագաթանգեղոսի վկայությունը Արշակունյաց Հայաստանի չորս բդեշխների մասին, որոնք Տրդատ Մեծի հետ գնացել էին Բյուզանդիա։

«Իսկ զինվորականության կողմից [գնացին նրա հետ],— ասում է Ագաթանգեղոսը,—նրա պալատի չորս գահերեց իշխանները, որոնց անվանում էին բդեշխ. առաջինը՝ սահմանակալը Նոր-Շիրականի կողմերում, երկրորդը՝ սահմանակալը Ասորեստանի կողմերում, երրորդը՝ Արվաստանի կողմերում և չորրորդը՝ Մասքթաց կողմերում»։

[«Եվ ի զինուորական կողմանէն՝ զչորեսին գահերէցսն իւրոյ տաճարին, որ բդեաշխքն կոչին. զառաջին սահմանակալն ի Նոր-Շիրական կողմանէն, և զերկրորդ՝ սահմանակալն յԱսորեստանեայց կողմանէն, և զերրորդն՝ յԱրուաստան կողմանէն, զչորրորդն՝ ի Մասքթաց կողմանէն»][3]։

---

[1] Ղևոնդի վկայության մեջ (Ս.-Պետերբուրգ, 1887, գլ. ԼԲ, էջ 133—134), փոխանակ «ի Բուտակս և ի Ջիգռոյ», Եզյանի ձեռագիրն ունի «ի Բուղակս և ի Շիգռեց»։ Ուղիղ ընթերցվածը պետք է լինի «ի Բուղակս և ի Շիգրոյ»։

[2] Տե՛ս *Markwart*, Eranschahr, էջ 165—179։

[3] Ագաթանգեղոս, գլ. ԾԻՋ (873), էջ 440, Թիֆլիս, 1914։

Մեջ բերված այս վկայությունից պարզ երևում է, որ Արշակունյաց Հայաստանի հարավ-արևելյան ու հարավային սահմաններում Ագաթանգեղոսին հայտնի են եղել երեք բդեշխություններ՝ Նոր-Շիրականի, Ասորեստանի և Արվաստանի կողմերում։

Եվ առանձնապես ուշագրավ է, որ նա Նոր-Շիրականի կողմը տարբեր է համարում Ասորեստանի կողմից, որի դիմաց, ինչպես նա մատնանշում է, գտնվել է երկրորդ սահմանակալ իշխանությունը։

Ագաթանգեղոսի այս վկայությունը, ինչպես տեսնում ենք, շատ որոշ է ու պարզ։ Սակայն Մարկվարտի թե հին և թե նոր ենթադրությունները Նոր-Շիրականի մասին հակասում են այս վկայությանը։ Իր նորագույն աշխատություններում Մարկվարտը, ինչպես տեսանք, ենթադրում է, որ Նոր-Շիրական կամ Նոտ-Արտաշիրական Ադիաբենի պաշտոնական անունն էր։ Արդ՝ եթե այս կարծիքը ճիշտ համարվի՝ անհասկանալի կլինի, թե ինչո՛ւ Ագաթանգեղոսը Նոր-Շիրականի և Ադիաբեն-Ասորեստանի կողմերը համարում է իրարից տարբեր և մատնացույց է անում տարբեր շրջաններում։

Ինչպես հայտնի է, Ագաթանգեղոսի վերոհիշյալ վկայությանը Մարկվարտն այլ լուսաբանություն էր տվել իր Eranschahr աշխատության մեջ։ Ընդունելով, որ Նոր-Շիրականն Արշակունյաց Հայաստանի չորս բդեշխություններից մեկն էր՝ Մարկվարտն իր հնագույն այս ուսումնասիրության մեջ այդ բդեշխությունը, հակառակ Ագաթանգեղոսի վերևում բերված վկայության, համարել էր սահմանակալ իշխանություն «յԱսորեստանեայց կողմանէն»։ Իսկ մյուս բդեշխությունը, որն ըստ Ագաթանգեղոսի երկրորդ սահմանակալ իշխանությունն էր, «յԱսորեստանեայց կողմանէն», նա, «յԱսորեստանեայց»-ը ուղղելով «յԱսորւոց», ենթադրել էր ո՛չ թե Ադիաբեն-Ասորեստանի, այլ Ասորիքի կողմում։ Ուստի և նա կարծել է, որ «երկրորդ սահմանակալ»-ը և բդեշխը Ծահունից Ծոփաց իշխանն էր։

Մարկվարտի այս եզրակացությունները, որ տիրող ու ընդհանրացած են և որ ես ևս ընդունելի էի համարել իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ (էջ 35), ինձ թվում է այժմ, որ ո՛չ միայն վիճելի են, այլև անհավանական։

Այդ եզրակացությունները չեն կարող ընդունելի համարվել, նախ և առաջ, այն պատճառով, որ Մարկվարտը աչքաթող է արել, որ Տրդատ Մեծի և Արշակ Բ-ի ժամանակ, երբ Ծահունից Ծոփքը և նրա հարևան երկրները գտնվում էին Հռոմի բարձրագույն իշխանության տակ, այս կողմերում կարիք չկար սահմանների պաշտպանության։ Եվ, իհարկե, միանգամայն անհավանական է ենթա-

գրել, որ սահմանապահ բդեշխություն գոյություն է ունեցել նաև այստեղ։ Մարկվարտի դիտողությունը, որ Շահունոց Ծոփքի բդեշխությունը հիմնված է եղել Արշակունյաց Հայաստանի սահմանները Սելևկյանների հարձակումներից պաշտպանելու համար՝ բոլորովին համոզիչ չէ, որովհետև Ագաթանգեղոսի վերոհիշյալ վկայությունը վերաբերում է ո՛չ թե Սելևկյան, այլ Արշակունյաց ժամանակաշրջանին։

Ինձ ավելի հավանական է թվում այժմ, որ Արշակունյաց Հայաստանի չորս բդեշխությունները, որոնք անվանվում են «սահմանապահք», «սահմանակալք», նաև «կողմնապահք» կամ «կողմնակալք», գտնվում էին Հայաստանի հետևյալ սահմանային շրջաններում։ Նոր-Շիրականի բդեշխն իշխում էր այժմյան Ռևանդուզի ու Սիդիկանի հյուսիսակողմում և պաշտպանելու էր, ուրեմն, Հայաստանի հարավ-արևելյան սահմանները Մեդիա-Ատրպատականի կողմից։ Սրան հարևան մյուս բդեշխը, որն Ագաթանգեղոսի մոտ անվանված է «երկրորդ սահմանակալ», ըստ երևույթին, Կորդվաց իշխանն է, որի իշխանության տակ են եղել, հավանորեն, նաև Տմորիքը և Կորդիքը։ Հասկանալի է դառնում այսպիսով, որ այս բդեշխը, իրապես, «երկրորդ սահմանակալ»-ն էր և պաշտպանելու էր Հայաստանի սահմանները «յԱսորեստանեայց կողմանէն»։ Արշակունյաց Հայաստանի հարավային սահմանում «յԱրուաստան կողմանէն», այսինքն՝ Միջագետքի և Մծբինի հյուսիսակողմում, իշխում էր Աղձնյաց բդեշխը, որն ըստ Ագաթանգեղոսի «երրորդ սահմանակալն» էր։ Իսկ հյուսիսում «ի Մասքթաց կողմանէն», այսինքն՝ Վրաստանի Մեսխեթի շրջանի դիմաց, իշխում էր «չորրորդ սահմանակալ»-ը՝ Գուգարքի բդեշխը։

Բդեշխությունների տեղադրության որոշմամբ մոտավոր կերպով ճշտվում են նաև Արշակունյաց թագավորության սահմանները։

Ուրմիա լճի հարավ-արևմտակողմում Արշակունյաց թագավորության սահմանումն էր գտնվում, ինչպես վերև տեսանք, Նոր-Շիրականը։ Այնուհետև Արշակունյաց Հայաստանի ծայրագավառներն էին այս կողմերում Դասնը, Տմորիքը և Կորդիքը։ Դասնի տեղադրությունը հաստատուն կերպով որոշված է։ Այս երկիրը, ինչպես մանրազնին հետազոտությամբ որոշել է Հոֆմանը, գտնվել է Մեծ Զավ գետի արևմտակողմում և այժմյան Ամադիայի ու Գարա լեռների կողմերում[1]։ Իմ «Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ»-ում մանրամասն ցույց է տրված, որ Դասնը համա-

[1] Տե՛ս Hoffmann, Auszüge, էջ 202—207։

պատասխան է իր տեղադրությամբ Ստրաբոնի հիշատակած Կալաքենեին, որի տեղը ենթադրվում է նույնպես Մեծ Զավ գետի արևմտակողմում, այդ գետի և Խաբուր-սուի միջև։ Ստրաբոնի վկայությամբ՝ հին Կալաքենեն, որը գտնվում էր Ադիաբեն-Ասորեստանի հյուսիսում, արմենների հին գաղթավայրերից մեկն էր։

«Ադիաբենի մեծագույն մասը,— ասում է Ստրաբոնը,— դաշտային է։ Լինելով Բաբելոնիայի մասը՝ սա ունի իր սեփական կառավարիչը. բայց երբեմն միացված է եղել Արմենիային։ Մեդացիները, արմենները և բաբելոնացիները, որոնք ամենամեծ թիվը կազմող ժողովուրդներն էին միշտ այստեղ, սկզբից հենց այնքան էին հակառակ իրար, որ հարմար դեպքում իրար վրա հարձակվում ու նորից հաշտվում էին»[1]։

Ստրաբոնի թե այս և թե այլ վկայություններից երևում է, բացի այդ, որ արմենական այս հեռավոր գաղթավայրը շարունակ ձեռքից ձեռք էր անցել և կազմել էր մաս կամ Հայաստանի և կամ Ատրպատականի։

«Մեդիա-Ատրպատականի հզոր հարևաններն են,—ասում է Ստրաբոնը,—արմենները և պարթևները, որոնք հափշտակում էին հաճախ նրա երկրամասերը։ Սակայն սա դիմադրում էր և ետ էր առնում խլվածը»[2]։

Ինչպես տեսնում ենք, Արմենական Կալաքենե հին գաղթավայրը, որը Փավստոսի մոտ անվանված է Դասընտրե և Եղիշեի մոտ՝ Դասն[3], ծայրամասն էր Արշակունյաց Հայաստանի։ Դասնի հարևան գավառներն ու ծայրամասերն էին Արշակունյաց թագավորության Տմորիքը և Կորդիքը, որոնք գտնվում էին այժմյան Խաբուր-սուի վերին հոսանքի շրջանում՝ հին Ալկի կամ այժմյան Էլք քաղաքի հարավակողմում։

Իսկ ավելի դեպի արևմուտք այժմյան Բոհտան-սուի հարավակողմում գտնվում էր Կորդուքը, որի հարավային սահմանն էր Խաբուր-սուն, իսկ հարավ-արևմտյանը՝ Տիգրիս գետը[4] և նրա ափին գտնվող հին Բեզաբդեն (այժմյան Ջեզիրեն), որը նշանավոր բերդ էր «Ծաղէից աշխարհ»-ում։ Այսպիսով, ընդունելով համաձայն

---

[1] *Strabo*, XVI, 1, 19.

[2] Նույնը, XI, 13, 2։

[3] Տե՛ս Փավստոս. IV, գլ. Ծ և Եղիշե, էջ 80։

[4] Պետք է սակայն նշել, որ 359 թվին, ինչպես վկայում է Ամմիանոսը (XVIII. 6, 20). Կորդուքը կամ, հավանորեն, նրա մի մասը, գտնվել է Պարսից իշխանության տակ։

*Փավստոսի Կորդուքն իբրև Հայաստանի ծայրաշխարհ՝ Արշակունյաց թագավորության սահմանը և հավանական կլինի ենթադրել Կորդուքի հարավակողմում Խաբուր-սու գետի հոսանքի երկարությամբ։*

*Արշակունյաց Հայաստանի սահմանը Տիգրիս գետի աջ կողմում, հավանորեն, հասնում էր մինչև Մասիոս լեռնաշղթան և Իզալա լեռները։ Հայաստանի ծայրաշխարհներն էին այստեղ, ինչպես կարելի է եզրակացնել Ագաթանգեղոսի, Փավստոսի և Զորանամակի*[1] *վկայություններից՝ «Ծաղէից աշխարհ»-ը* (Zabdicena). *Աղձնիքը և Մեծ Ծոփքը, հատկապես, այժմյան Մարդինից մի քանի կիլոմետր հեռավորության վրա գտնվող Արշակունյաց թագավորների Բնաբեղ բերդը (այժմյան Բիննեբիլ Իզալա լեռների շրջանում), որի մեջ պահվում էին արքունի գանձերը։*

*Ուշագրավ է սակայն, որ Խորենացին, որը լուրջ ու հմտալից քննությամբ տվել էր իր Աշխարհացույցի մեջ Հայաստանի քաղաքական աշխարհագրությունը նրա բաժանումից առաջ, հակառակ մեր վերոհիշյալ եզրակացության, ենթադրել է, որ «Մարդէ բերդ»-ը և «Բզաբդէ»-ն գտնվել են Հայաստանի հարևան «Միջագետք աշխարհ»-ում*[2]*։*

*Արշակունյաց թագավորության սահմանները, սկսած Իզալա լեռների շրջանից մինչև Եփրատ գետի ծունկը Ծովք լճի հարավակողմում՝ այժմյան Թելեկի մոտ, անորոշ են և կարոտ են հատուկ քննության։ Հ. Կիպերտի քարտեզում Հայաստանի սահմանն այս կողմում համարվում է Եփրատ գետը՝ սկսած Սամոսատ քաղաքի հյուսիսակողմերից (Սամոսատից մոտ 50 կիլոմետր դեպի հյուսիս) և Հայաստանի մեջ է ենթադրվում Սևավերակը և Արքանեն*[3]*, սակայն Հյուբշմանն իրավացի կերպով մատնանշում է, որ Մեծ Ծոփքի հարավ-արևմտյան սահմանները պարզ չեն*[4]*։*

*Սկսած Ծովք լճի հարավակողմից մինչև Դաստեյրա (այժմյան Դոստալ)*[5]*, որը գտնվում էր Զիմարայի հարավ-արևելակողմում,*

---

[1] *Տե՛ս* Ագաթանգեղոս, *գլ. ԾԺԲ (795).* Փավստոս, *IV, գլ. Ծ և V, գլ. ԺԶ—ԺԷ.* *Адонц*, Армения в эпоху Юстиниана, **էջ 251, 256, 293. Ստ. Կանայանց,** *Անյայտ դաւառներ Հին Հայաստանի, Էջմիածին, 1914, էջ 9—16.* Հյուբշման, *Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 182—184։*

[2] *Տե՛ս «Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ», հրատ. Ա. Սուքրյանի, էջ 37։*

[3] ***Տե՛ս** H. Kiepert*, Atlas antiquas, elfte Auslage, Tab. iV.

[4] Հյուբշման, *Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 143։*

[5] ***Տե՛ս** Манандян*, Маршруты Понтийского похода Помпея и путь отступления Митридата в Колхиду, „Вестн. др. ист.", 1940, № 3—4, *էջ 91 և-ն.։*

Արշակունյաց Հայաստանի սահմանը կազմում էր Եփրատ գետը։ Հայաստանի արևմտյան այս սահմանի վրա գտնվում էին, սկսած հարավից դեպի հյուսիս՝ հետևյալ հին ու նաև հետնագույն ժամանակի գավառները, որ հիշատակված են Խորենացու Աշխարհացույցի մեջ՝ ա) Հանձիթ, որի մեջ էին Մազարան (այժմյան Մեզրեն), Խարբերդը և Տոմիսան, բ) Գորեք՝ Արածանիի հարավակողմում և Եփրատի արևելակողմում, գ) Դեգիք՝ Արածանիի հյուսիսակողմում և դ) Մզուր կամ Մծձուր, որը գտնվում էր Մուզուր լեռների հարավակողմում և որի մեջն էր Ակնը՝ այժմյան Էգինը։

Սկսած Դաստեյրա-Դոստալի կողմերից՝ Եփրատ գետի ամբողջ վերին հոսանքը մինչև նրա ակունքները գտնվում էր Արշակունյաց Հայաստանի մեջ։ Դոստալի մոտ գտնվող այժմյան Ղուրուչայ գետի արևելակողմում և Մուզուր լեռների հյուսիսակողմերումն էր Արշակունյաց Հայաստանի պատմական նշանավոր ծայրագավառ Դարանաղին, որը ձգվում էր դեպի հյուսիս-արևելք մինչև Գոհանամ կամ Սեպուհ լեռը։ Այս գավառի մեջ էին Անի-Կամախ հին բերդաքաղաքը, Թորդան ավանը, ուր գտնվում էին Գրիգոր Լուսավորչի տոհմի գերեզմանները և Լինչի քարտեզի մեջ նշանակված Մեծ և Փոքր Բագառիչ գյուղերը։

Գոհանամ լեռան արևելակողմում գտնվում էր Արշակունյաց թագավորության մյուս նշանավոր ծայրաշխարհը՝ Եկեղյաց գավառը, ուր, ինչպես տեսանք, 384/5 թվականին ապաստան էր գտել Արշակ Գ թագավորը։ Այս գավառի մեջ էին Երեզը կամ Երիզան (այժմյան Երզնկան), Թիլ ավանը՝ Գոհանամ լեռան արևելյան ստորոտում, Խախ գյուղը՝ Թիլի հյուսիս-արևմտակողմում, և Վասակերտ (այժմյան Վազկերտը)՝ Երեզի հյուսիսակողմում[1]։ Արևելյան կողմից Եկեղյաց գավառը, ինչպես ենթադրում է Ադոնցը, հասնում էր մինչև Եփրատ գետի ոլորտը և նրա ափին գտնվող Կոթեր ավանը[2]։

Եկեղյաց գավառին արևելյան կողմից սահմանակից էր Արշակունյաց թագավորության Դերջան ծայրագավառը, որը հասնում էր մինչև Եփրատ գետի հյուսիսակողմում և Սերշեմե-սուի արևմտակողմում գտնվող Խաղտոյառիճ գյուղը (այժմյան Գաղտառիճ)։ Այս գավառի մեջն էր հայտնի հին «Բագայառիճ» կամ «Բագառիճ» գյուղը (այժմյան Պեկերիչը)։

Դերջանի հյուսիս-արևելակողմում գտնվում էր Արշակունյաց Հայաստանի Սպեր ծայրագավառը, որը, ինչպես վկայում է Փա-

---

[1] Տե՛ս Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 129—131։

[2] *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 48 և հետ.։

*վրատոր, Արշակունյաց տոհմի թագավորների թագադիրների, Բագրատունիների, երկիրն էր*[1]*։ Այս գավառի կենտրոնավայրն էր Սպերը (այժմյան Իսպիրը)՝ Ճորոխ գետի վրա։*

*Վերոհիշյալ հինգ ծայրագավառները՝ Մզուրը, Դարանաղին, Եկեղիքը, Դերջանը և Սպերը՝ Խորենացու Աշխարհացույցը համարում էր Բարձր Հայք աշխարհի գավառներ։*

*Սպեր գավառի հյուսիս-արևելյան կողմերում Արշակունյաց թագավորության սահմաններն էին համարվում, ինչպես վկայում են հայ պատմագիրները և Խորենացու Աշխարհացույցը, Պարխար լեռները, որոնք Ստրաբոնի մոտ անվանված են Պարիադրես, և, հատկապես, «Արսեացփոր» գավառը, որի միջով Ճորոխ գետը հոսում էր դեպի Կղարջք*[2]*։*

*Պարխար լեռների և Ճորոխ գետի կողմերից Արշակունյաց թագավորության սահմանը թեքվում էր Կղարջքի վրայով դեպի հին Խորձյան* (Chorzene) *գավառը, որը, ինչպես մանրամասն ցույց է տրված իմ աշխատություններից մեկում*[3]*՝ միացված էր Մեծ Հայաստանին դեռևս երկրորդ դարի առաջին կեսում մեր թվականությունից առաջ, Արտաշես Ա-ի ժամանակ։ Խորձյան գավառի մեջն էր Կուր գետի վերին ընթացքը։*

*Արշակունյաց Հայաստանի հետևյալ ծայրագավառն էր Խորձյանից հետո Ջավախքը, որը տարածվում էր Կուր գետի երկարությամբ դեպի հյուսիս-արևելք։ Այս գավառի մեջ կային բազմաթիվ ձկնաշատ լճեր, որոնցից ամենանշանավորն էր Փարվանա լիճը։ Հին Ջավախքում կարևոր կենտրոնավայր է եղել Պևտինգերյան քարտեզի* Caspiae*-ն (այժմյան Խոսպիա), որը գտնվում էր այժմյան Ախալքալաքից մի քանի կիլոմետր դեպի հարավ։*

*Պոմպեոսի անդրկովկասյան արշավանքների լուսաբանության վերաբերող ընդարձակ իմ հոդվածում ես մանրամասն ցույց էի տվել, որ Տիգրան Բ-ի (95—55 թ. մեր թվ. առ.) ժամանակ Մեծ Հայաստանի մեջ էին Պևտինգերյան քարտեզի ոչ միայն* Caspiae

[1] *Տե՛ս* Փավստոս, *V, գլուխ ԽԴ, էջ 263։*

[2] *Տե՛ս* Փարպեցի, *II, գլ. ԽԱ, էջ 74—75,* Եղիշե, *էջ 224, Brosset,* Description géographique de la Georgie, St-Petersbourg, 1842, I, *էջ 41 և 69. «Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ», հրատ. Սուքրյանի, էջ 35 և ուրիշ.։ Համեմատե՛ նաև Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 115—118 և 244. Markwart,* Südarmenien, *էջ 77. Адонц,* Армения в эпоху Юстиниана, *էջ 27, ծան. 1, և-ն.։*

[3] *Տե՛ս* „Маршруты понтийского похода Помпея", „Вестн. др. ист.", 1940, № 3—4, *էջ 99։*

կայարանը, այլ նաև Ad Metcurium-ը, այսինքն՝ «Կուրի գետանցքի մոտ» կայարանը, որը գտնվում էր այժմյան Ախալցխայից մոտ 8 կիլոմետր դեպի հարավ-արևելք[1]։ Հավանորեն, Կուր գետի նույն այս կողմերում պետք է լինեին նույնպես և Արշակունյաց Հայաստանի սահմանները։

Խորենացու Աշխարհացույցի մեջ վերոհիշյալ երեք գավառները՝ Կղարջքը, Խորձյանը (Աշխարհացույցի մեջ անվանված է Արտահան) և Ջավախքը՝ մատնանշված են իբրև գավառներ Գուգարաց աշխարհի, որը, ինչպես տեսանք, Արշակունյաց թագավորության բդեշխություններից մեկն էր և, լինելով սահմանակալ իշխանություն, պահպանում էր Հայաստանի սահմանները հյուսիսարևմտյան կողմից։

Նույն այս Գուգարաց բդեշխության մեջ էին գտնվում, ըստ Խորենացու Աշխարհացույցի, նաև Հայաստանի հյուսիսային ծայրագավառները, որոնք սահմանակից էին Վրաստանին՝ Թռեղքը (Վրաց Թրիալեթի, այժմյան Ծալկան), որը գտնվում էր Փարվանա լճի հյուսիսակողմում, Ծոբափորը, Կողբափորը, և Ձորոփորը[2]։ Ուշագրավ է սակայն, որ Փավստոսի վերև հիշված վկայության մեջ Արշակ Բ-ի դեմ ապստամբած իշխանների թվում իրարից անկախ հիշատակված են՝ «Գուգարաց բդեաշխն և յետ սորա Ձորայ գաւառին տէրն և Կողբայ գաւառին տէրն»[3]։

Վերոհիշյալ Ծոբափոր, Կողբափոր և Ձորոփոր գավառների տեղադրության խնդիրը դեռևս հաստատուն ու վերջնական կերպով որոշված չէ։ Հյուբշմանը, ընդունելով համաձայն Հովհաննես Դրասխանակերտցու վկայության[4], որ Կայան բերդը, որի տեղը ենթադրվում է Աղստև գետի աջ ափին, գտնվում էր Ձորոփոր կամ Ձորափոր գավառում՝ այս վերջինի տեղը որոշել է Աղստև գետի ավազանում[5]։ Մարկվարտը, համաձայնելով Հյուբշմանի հետ, ենթադրում է նաև, որ Կողբոփորի կամ Կողբափորի տեղադրությունը պետք է լիներ Ձորոփորի արևմտակողմում։ Իսկ Ծոբափորը, որը

---

[1] Տե՛ս Манандян Я., Круговой путь Помпея в Закавказье, „Вестн. др. ист.", 1939., № 4, էջ 74—77. Նաև՝ Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի, էջ 131։

[2] Տե՛ս «Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ», հրատ. Սուքրյանի, էջ 34։

[3] Փավստոս, IV, գլ. Ծ, էջ 163։

[4] Տե՛ս «Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ, Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1912, էջ 310։

[5] Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 235։

հիշատակված է միայն Խորենացու Աշխարհացույցի մեջ, նա ենթադրում է այժմյան Դեբեդի կամ Ձորագետի հովտում[1]։

Սակայն աշխարհագրական հայկական երկերում, օրինակ՝ Ալիշանի, Լալայանի և ուրիշների մոտ, Դեբեդ գետի հովտում ենթադրվում է ոչ թե Ծոբափորը, այլ Ձորոփորը[2]։

Այս վերջին կարծիքին նեցուկ կարող են ծառայել Գրիգորիս քահանա Երզնկյանցի տեղագրական ցուցումները, ըստ որոնց Կայան բերդի տեղադրությունը ենթադրվում է Ձորագետի արևելակողմում գտնվող Հաղբատի մոտերքում[3]։

Ձորոփորի, Ծոբափորի ու նաև Կայան բերդի տեղադրության մասին, ինչպես տեսնում ենք, հայտնված են տարբեր կարծիքներ, որ կարոտ են հատուկ քննության։ Մինչև վիճելի այս խնդրի վերջնական լուծումը՝ Արշակունյաց թագավորության հյուսիսային սահմանը, մենք ենթադրում ենք, իհարկե, որոշ վերապահությամբ, ըստ Խորենացու Աշխարհացույցի, որը վկայում է, որ Կուր գետը, իջնելով Տփղիս քաղաքի կողմից՝ Պարվար գավառն անցնելուց հետո հոսում է այնուհետև

«զԾոփոփոր և զԿողբոփոր և զՁորոփոր հոմանուն գետօք, մինչև զՀնարակերտ քաղաք, զորս ի Հայոց հանեալ է»[4]։

Այս վկայությունը, որ համապատասխանում է Հյուբշմանի և Մարկվարտի վերոհիշյալ ենթադրություններին, ցույց է տալիս, որ Խրամի գետաբերանից սկսած հյուսիսում Արշակունյաց Հայաստանի սահմանն էր կազմում Կուր գետը։

«Ըստ այսմ,— ասում է Հյուբշմանը,— ստացվում է հետևյալ եզրակացությունը. Ձորոփորը գտնվում էր Աղստև գետի վրա, սրա հյուսիսային կողմումն էր Կողբոփորը, իսկ վերջինիս հյուսիսակողմումն էր Ծոբոփորը[5]։ Արևելյան կողմից սրանք երեքն էլ սահմանակից էին Կուր գետին և գտնվում էին Կուրի բազուկների վրա, որոնք իրենց անունները ստա-

---

[1] Տե՛ս *Markwart*, Das Itinerar von Artaxata nach Armastica auf der römischen Weltkarte, Wien, 1928, էջ 28։

[2] Տե՛ս Ալիշան, *Տեղագիր Հայոց Մեծաց*, Վենետիկ, 1855, էջ 62. Ե. Լալայան, «Ազգագրական Հանդէս», Թիֆլիս, 1901. VII—VIII, էջ 275. Ս. Կանայանց. *Անյայտ գաւառներ Հին Հայաստանի*, Էջմիածին, 1914, էջ 152 և ուրիշ։

[3] Տե՛ս Գ. Ք. Երզնկյանց, *Կայան բերդ և Կայենո ձոր*, «Ազգագրական Հանդէս», Գ գիրք, 1898, էջ 316—328։

[4] «Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ», հրատ. Սուքրյանի, էջ 28։

[5] Հյուբշմանի թարգմանության բնագրում Ձորոփորից հետո գրված է Ծոբոփորը և ապա Կողբոփորը, որ, անշուշտ, պետք է համարել վրիպակ։

դել էին նույն այդ գավառների անուններից։ Սրանց հյուսիսակողմումն էր գտնվում Պարվար գավառը, որի մեջ էր Տփղիսը»[1]։

Աշխարհացույցի վկայություններից, ինչպես տեսանք, երևում է, որ Հնարակերտ քաղաքը գտնվել է Ծոբոփոր, Կողբոփոր և Ձորոփոր գետերի ու գավառների հարավ-արևելակողմում։ Այս քաղաքի տեղադրության մասին ևս հայտնված են հակասական կարծիքներ։

Մակար եպիսկ. Բարխուդարյանը իր «Արցախ» գրքում մատնանշել է, որ Հնարակերտ ամրոցը գտնվում էր Կուր և Խրամ գետերի միջև և նրանց գետախառնուրդի մոտ, ուր կան և այժմ այդ մեծ բերդի ավերակները[2]։ Այս կարծիքը, ինչպես ցույց է տվել Մարկվարտը, ճիշտ չէ։

Հիմնվելով արաբական աշխարհագրագետ Իստախրիի վկայությունների վրա[3], որի մոտ տարածությունը Տփղիսից մինչև Գարդման ցույց է տրված 12 փարսախ (մոտ 69 կիլոմետր), իսկ Գարդմանից մինչև Խունան, որը նա համապատասխան է համարում հին Հնարակերտին (կամ Հունարակերտին), 10 փարսախ՝ Մարկվարտը միանգամայն ճիշտ եզրակացրել է, որ Բարխուդարյանի մատնանշած բերդը, որն այժմ կոչվում է Ղըզ-Ղալա՝ հին Գարդմանն է, Խունան-Հնարակերտը, որն ըստ Իստախրիի գտնվում էր Շամքորից 11 փարսախ հեռավորության վրա՝ պետք է լիներ սրա և Գարդմանի գրեթե բուն մեջտեղում[4]։

Որ Մարկվարտի այս եզրակացությունը ճիշտ է, այդ պարզ երևում է Խորենացու Աշխարհացույցի վերոհիշյալ վկայությունից, ըստ որի Հնարակերտի տեղադրությունը մատնանշված է Կուր գետի ափին Ծոբոփոր, Կողբոփոր և Ձորոփոր գետերի ու համանուն գավառների հարավ-արևելակողմում, այսինքն՝ Աղվանից աշխարհի արևմտյան ծայրում։

Հնարակերտ քաղաքից հետո Արշակունյաց թագավորության սահմանները, ինչպես վկայում է Փավստոսը, հասնում էին մինչև Կուր գետը և այստեղ սահմանագլուխ գավառներ էին Կողթը, Գարդմանաձորը, Շակաշենը և Ուտի Առանձնակը։ Հիշատակելով Արշակ Բ-ի դեմ ապստամբած այս գավառները, որ Պապ թագավորի ժա-

---

[1] Հյուբշման, *Հին Հայոց տեղւոյ անունները*, էջ 238։

[2] Մակար Բարխուդարյանց, *Արցախ, Բաքու*, 1895, էջ 398—399 և 436։ Տե՛ս նաև *Laurent J.*, L'Arménie entre Byzance et l'Islam, Paris, 1919, էջ 29 և նրա քարտեզը։

[3] Տե՛ս *al Istachri*, éd de Goeje, էջ 193։

[4] Տե՛ս *Markwart*, Das Itinerar von Artaxata nach Armastica, Wien, 1928, էջ 30—31։

*մանակ վերանվաճել էր Մուշեղ Մամիկոնյանը՝ Փավստոսը դրանց մասին տալիս է հետևյալ կարևոր տեղեկությունները.*

*«Նա [Մուշեղը] պատերազմեց նաև Աղվանից երկրի դեմ և նրանց սաստիկ ջարդ տվեց։ Նա ետ խլեց նրանցից շատ գավառներ, որ վերցրել էին իրենցից՝ Ուտին, Շակաշենը, Գարդմանաձորը, Կողթը և սրանց շուրջը գտնվող սահմանակից գավառները։*

*Եվ սահման դարձրեց իրենց երկրի և Աղվանքի միջև Կուր գետը, ինչպես որ առաջ էր»։*

*[«Առնէր պատերազմ ընդ երկիրն Աղուանից. հարկանէր զնոսա ի հարուածս անհնարինս։ Եւ թափէր ի նոցանէ բազում գաւառս, զոր հատեալ էր նոցա ի նոցանէն՝ զՈւտի, զՇակաշէն և զձորն Գարդմանայ, զԿողթ և այլ որ շուրջն էին զնովաւ սահմանք գաւառք։ Եւ զԿուր գետ՝ որպէս և յառաջն լեալ էր, ընդ երկիրն Աղուանից և ընդ երկիրն իւրեանց սահման արարեալ կացուցանէին»]*[1]*։*

*Ապստամբած Աղվանից գավառների հաջորդականությունը հավանական է ենթադրել արևմուտքից դեպի արևելք հետևյալ կարգով՝ նախ Կողթը, որը լինելով, ըստ Խորենացու Աշխարհացույցի, Արցախի ամենահյուսիսային գավառը՝ սահմանակից է եղել, ըստ երևույթին, Գարդմանաձորին։ Այս վերջինը, հարկավ, ոչ մի կապ չունի Գարդման բերդի հետ, որը, ինչպես տեսանք, գտնվում էր Կուր և Խրամ գետերի միջև։*

*Գարդմանաձոր գավառի մեջն էր հին Գարդման ավանը, որի ավերակները հայտնի են այժմ Գրթմանիք անունով և գտնվում են Շամքոր գետի արևելյան մի բազկի վրա՝ այժմյան Գետաբեկի հարավ-արևելակողմում*[2]*։*

*Գարդմանին սահմանակից էր Արշակունյաց թագավորության Շակաշեն ծայրագավառը, որի մեջ իններորդ դարում հիմնադրված էր նշանավոր Գանձակ քաղաքը։ Իսկ Շակաշենի արևելակողմումն էր Արշակունյաց Հայաստանի Ուտի ծայրագավառը, որը Խորենացու Աշխարհացույցի մեջ անվանված է Ուտի Առանձնակ։ Այս գավառի մեջն էր Կավատ Ա-ի (488—531 թ.) վերանորոգած ու ամրացրած Պարտավ կամ Պերոզ-Կավատ քաղաքը*[3]*, որը հետագայում դառավ Առան-Աղվանքի գլխավոր քաղաքը։*

---

[1] Փավստոս, *V, գլուխ ԺԳ, էջ 215։*

[2] *Տե՛ս* Մ. Բարխուդարյանց, *Արցախ, էջ 301—302։*

[3] *Տե՛ս Markwart*, Eranschahr, Berlin, 1901, *էջ 118։*

*Սկսած Ուտի Առանձնակից՝ Արշակունյաց թագավորության սահմանը ձգվում էր հյուսիս-արևելքից դեպի հարավ-արևելք մինչև Կասպից ծովը Կուր գետի երկարությամբ։*

*Իսկ Արշակունյաց թագավորության ծայրագավառներ Մ. Բարխուդարյանցը այս կողմերում համարում է «Աղուէ», Ռոցպատյան, Արանռոտ և Մուխանք գավառները*[1]*, որոնցից առաջին երեքը Խորենացու Աշխարհացույցի մեջ համարվում են Ուտի աշխարհի գավառներ, իսկ վերջինը՝ Արցախի։ Պետք է սակայն ասել, որ Աղվանքի հին աշխարհագրությունը դեռևս գրեթե ուսումնասիրված չէ, ուստի և Բարխուդարյանցի կռահումները, որ հիմնավորված չեն, կարոտ են հաստատման փաստական ապացույցներով։*

*Փավստոսի մոտ Արշակունյաց թագավորության հյուսիս-արևելյան կողմերում որպես սահմանագլուխ երկիր հիշատակված է Կասպից աշխարհը, որի մեջ էր Փայտակարան քաղաքը։*

*1. Փավստոս, IV, գլ. Ծ, էջ 164, Վենետիկ, 1889՝*

*«Հայոց թագավորից [Արշակ Բ-ից] անջատվեց նաև Կազբից աշխարհը»։*

*[«յետս եկաց յարքայէն Հայոց և աշխարհն Կազբից»]։*

*2. Փավստոս, V, գլ. ԺԴ, էջ 215՝*

*«Կասբերի մասին։— Ապա Մուշեղ սպարապետը խստիվ վրեժ առավ Պարսից երկրից (՞), Փայտակարան քաղաքից, որովհետև նրանք ևս ապստամբել էին և դավաճանել Հայոց թագավորին։ Սպարապետ Մուշեղ զորավարը, հասնելով այնտեղ՝ նրանցից շատերին պատժեց և գլխատեց, շատերին գերի վերցրեց, մնացածներին էլ հարկատու դարձրեց ու նրանցից պատանդներ վերցրեց և այնտեղ վերակացու կուսակալներ թողեց»։*

*[«Յաղագս Կասպից։— Ապա խնդրէր զվրէժն մեծապէս սպարապետն Մուշեղ յերկրէն Պարսից և ի Փայտակարան քաղաքէ, փոխանակ զի և նոքա նշկահեցին ստեցին արքային Հայոց։ Հասեալ զբազումս ի նոցանէ գլխով պատուհաս առնէր սպարապետն զօրավարն Մուշեղ, զբազումս ի նոցանէ գերէր, և զմնացորդսն ի հարկի կացուցանէր և առնոյր պատանդս ի նոցանէն և անդ ոստիկանս վերակացուս թողոյր»]։*

*Արշակ Բ-ի դեմ ապստամբած Կասպից երկիրը, որ Արշակունյաց թագավորության հյուսիս-արևելյան ծայրամասն էր՝ Խորենացու Աշխարհացույցի մեջ անվանված է Կասպից աշխարհի մայրաքաղա-*

---

[1] Տե՛ս Մ. Բարխուդարյանց, *Պատմութիւն Աղուանից, Վաղարշապատ, 1902, «Աղուանից երկիր» քարտեզը։*

քի անունով՝ Փայտակարան աշխարհ։ Համաձայն Աշխարհացույցի՝ Փայտակարանն ունեցել է տասներկու գավառ. մատնանշված այդ գավառների տեղերը, բացի Վարդանակերտից, դեռևս որոշված չեն։

Փավստոսի մոտ հիշատակված հին Փայտակարան քաղաքը, ինչպես մատնացույց է արել Մինորսկին[1], գտնվել է այժմյան Շուշի քաղաքից դեպի հարավ-արևելք ավերակների այն վայրում, որ այժմ անվանվում է Միլ-ի Բայլաքան։ Իսկ Վարդանակերտ քաղաքը, որի անունով է կոչվում Փայտակարանի Վարդանակերտ գավառը, ինչպես ենթադրում է դարձյալ Մինորսկին[2], գտնվել է Արաքս գետի աջ ափին, այժմյան Ալտան կոչվող ավերակների վայրում (մոտավորապես 70—80 կիլոմետր Կուրի և Արաքսի միախառնման տեղից դեպի հարավ-արևմուտք)։ Արաբական աշխարհագրագետ Իստախրիի մոտ տարածությունը Վարսան-Վարդանակերտի և Բայլաքան-Փայտակարանի միջև ցույց է տրված 7 արաբական փարսախ, այսինքն՝ մոտ 40 կիլոմետր[3]։

Որոշվում են մոտավորապես նաև Փայտակարանում գտնվող երեք գավառների՝ Աթշիբագավանի, Սպանդարանպերոժի, Որմըզդպերոժի տեղերը, որոնք Ղևոնդի Պատմության մեջ անվանված են՝ Ըթշիբագուան, Սպատարոմն-Փերոզ և Որմիզդ-Փերոզ[4]: Ղևոնդ պատմագրի վկայության բովանդակությունից երևում է, որ նաև այս երեք գավառները, ինչպես և վերոհիշյալ Վարդանակերտը, գտնվել են Արաքս գետի ստորին հոսանքի հարավ-արևելյան կողմում։

Մենք տեսանք, որ Արշակունյաց թագավորության սահմանը Ուրմիա լճի արևելակողմում մոտ էր Թավրիզ քաղաքին և հասնում էր մինչև այժմյան Աջի-չայ գետը։ Վստահորեն կարելի է, ուրեմն, ենթադրել, որ Արշակունյաց Հայաստանում գտնվում էին ոչ միայն Մարանդ գավառը, որը Խորենացու Աշխարհացույցի մեջ հիշատակված է իբրև Վասպուրական աշխարհի գավառ, այլև Մարանդ գավառի հյուսիսակողմում գտնվող ամբողջ այժմյան Ղարադաղը և սրանից դեպի արևելք գտնվող շրջանները, ըստ երևույթին, մինչև Կասպից ծովը։

Արշակունյաց թագավորությունը, որը հռոմեական-պարսկական 298 թվի դաշնադրությունից հետո վերահաստատվել էր իր

---

[1] Տե՛ս *Hudud al Atam*, The regions of the world, translated and explained by V. Minorsky, London, 1937, էջ 398։

[2] *Նույնը, էջ 395*։

[3] Տե՛ս *al Istachri*, éd. de Goeje, էջ 192։

[4] *«Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Ս.-Պետերբուրգ 1887, գլ. ԺԸ, էջ 101—102*։

հին ընդարձակ սահմաններում, ինչպես տեսնում ենք, լայն ու արձակ երկիր էր։ Եվ ուշագրավ ու հետաքրքիր է այն, որ Հայաստանն իր վերոհիշյալ սահմաններում մոտավոր կերպով համապատասխանում է Արտաշեսյան կամ ավելի ճիշտ՝ Տիգրանյան ժամանակաշրջանի Հայաստանին, որի սահմանները նկարագրել է Ստրաբոնը հետևյալ իր վկայության մեջ.

«Հայաստանի հարավային մասերը,—վկայում է Ստրաբոնը,— տարածվում էին մինչև Տավրոսը [=Մասիոսը], որը բաժանում էր այն ամբողջ Եփրատի ու Տիգրիսի միջև գտնվող երկրից, որ կոչվում է Միջագետք. նրա արևելյան մասերը հասնում են մինչև Մեդիա և Ատրպատական. հյուսիսում գտնվում են Կասպից ծովի վերևի Պարախոաթրաս լեռները, նաև աղվաններն ու իբերները և Կովկասը, որն ընդգրկում է այդ ժողովուրդները ու հասնում մինչև Հայաստան. նա ձգվում է նույնպես մինչև Մոսխիկյան ու Կողքիսյան լեռները և կից մոտենում է Տիբարանյաններ կոչվող ցեղերին. իսկ արևմտյան կողմից Հայաստանի սահմանն են կազմում նույն այդ ցեղերը և Պարիադրեսն [=Պարխարը] ու Սկյուդիսեսը մինչև Փոքր Հայքը և Եփրատի հունը, որը Հայաստանը բաժանում է Կապադովկիայից և Կոմմագենից»[1]։

Հայաստանի այս նկարագրությունը, ինչպես կարծում են, Ստրաբոնը տվել է, հետևելով Թեոփանես Միտիլենացուն, որը մասնակցած լինելով Պոմպեյոսի արևելյան արշավանքներին՝ նկարագրել է Հայաստանը և Անդրկովկասյան երկրները որպես ականատես։

Աշխարհագրական վերոհիշյալ մեր դիտողությունները ցույց են տալիս, որ Արշակունյաց Հայաստանը 298 թվականից հետո ունեցել է գրեթե նույն սահմանները, ինչ որ Տիգրան Մեծի ու Պոմպեյոսի ժամանակ։ Ավելի ևս ուշագրավ է այն, որ պատմական Հայաստանի աշխարհագրական նկարագրությունը տվել է ճշգրիտ կերպով, գրեթե նույն սահմաններում, Աշխարհացույցի հեղինակ Մովսես Խորենացին, որն իր այդ աշխատությունը գրել էր Արշակունյաց Հայաստանի անկումից մի քանի հարյուր տարի հետո։

[1] *Strabo*, XI, 14, 1.

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ

# ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԱՐՇԱԿՈՒՆՅԱՑ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Ֆեոդալիզմի ընդհանուր գաղափարը։— Խոշոր կալվածատիրության և ազնվականության գերակշռող դերը։— Նախարարական իշխանությունները։—«Նախարար» բառի ստուգաբանությունը։—Նախարարների դասի տարբեր շերտերը։— Բդեշխություններն իբրև ամենաբարձր կարգի իշխանություններ։— Բդեշխների և առաջին կարգի մեծամեծ նախարարների «աշխարհակալք» կամ «աշխարհատեարք» տիտղոսը։— «Բիւրաւորք» և «հազարաւորք»։— «Աւագ» և «կրտսեր» նախարարներ։— Նախարարությունների թիվը։— Առանձին նախարարությունների ներքին կազմակերպությունը։— «Տանուտէր», «տէր» կամ «նահապետ»՝ իբրև նախարարական տոհմի գլխավոր։— «Աւագ տանուտէր»։— «Սեպուհ» և «աւագ սեպուհ» իբրև նախարարական տոհմի անդամներ։— «Տանուտէր»-ների կամ «նահապետ»-ների բնտրության կարգը և նրանց իշխանությունը։— Զորանամակ։— Նախարարական երկրների ամրոցներն ու բերդերը։— «Գահ» կամ «Գահոյք»։— Նախարարները որպես վասալներ և «արքունի գործակալներ»։ «Արշակունիների «ոստան»-ը։— Նրանց թագավորական իշխանությունը։— Նախարարական «ծառայութիւն»-ը։— Գլխավոր «գործակալութիւն»-ները.— «մարդպետութիւն».— «մաղխազութիւն.— «հազարապետութիւն».— «սպարապետութիւն.— «մեծ դատաւորութիւն»։— «Մեծի դատաւորութեան գործակալութիւնն» իբրև «ձեռական իշխանութիւն»։—Պալատական այլևայլ պաշտոններ։— «Աշխարհաժողով»-ներ։**

*Արշակունիների թագավորության ժամանակաշրջանում, ինչպես հայտնի է մեզ հին հայ աղբյուրների հաղորդած տեղեկություններից, Հայաստանում զարգացել և վերջնականապես ձևակերպվել էր նախարարական կամ ֆեոդալական կազմակերպությունը։*

*Տնտեսագիտական նորագույն երկերում մատնանշվում է, սովորաբար, որ ֆեոդալիզմի տնտեսական հիմքը կազմում է արտադրության ֆեոդալական եղանակը՝ բնական կամ նատուրալ տնտեսությունը, որը պետք է հակադրել ո՛չ թե փողային, այլ ապրանքային տնտեսությանը։ Ֆեոդալիզմի ժամանակ թեև գոյություն են ունեցել փոխանակություն, փող, քաղաքներ և առևտուր, սակայն սրանց*

նշանակությունը եղել է երկրորդական։ Արտադրող հիմնական դասակարգը եղել է գյուղացիությունը, որը, մեծ մասամբ, գտնվել է ճորտական վիճակում, և, որոշ չափով, նաև արհեստավորությունը։

Բացի տնտեսական այդ հիմքից, իբրև ֆեոդալիզմի էական ու գլխավոր հատկանիշ մատնացույց է արվում խոշոր կալվածատիրության և ազնվականության գերակշռող դերը՝ թե տնտեսական և թե պետական-իրավական։

Ֆեոդալական պետությունները բաժանված են եղել բազմաթիվ մեծ և փոքր շրջանների, որոնց մեջ պետական իշխանությունը պատկանել է, գլխավորապես, կալվածատեր իշխաններին, որոնք անվանվել են սենյորներ։ Հողատիրությունը պարունակել է, ուրեմըն, իր մեջ թե մասնավոր և թե հանրային իրավունքի տարրեր, և խոշոր կալվածատերերը եղել են ո՛չ միայն հողատեր, այլև դատավոր, կառավարիչ, իսկ հաճախ լիակատար պետ և իշխան իրենց երկրների սահմաններում։ Առանձին ու ինքնիշխան այս շրջաններն անվանվել են Ֆրանսիայում՝ seigneurie, Անգլիայում՝ manor, Գերմանիայում՝ Grundherrschaft և Ռուսաստանում՝ боярщина: Հասկանալի է, իհարկե, որ խոշոր կալվածատեր սենյորը, օժտված լինելով պետական կարգի իրավունքներով, եղել է անմիջական տեր ու տնօրեն այն բնակչության, որը գտնվել է նրա երկրամասում։

Գյուղացիության նախումը նրանից ունեցել է, ինչպես իրավացի կերպով շեշտում են տնտեսագետները, արտատնտեսական բնույթ՝ պայմանավորված անմիջական իշխանությամբ ու հպատակությամբ[1]։

Արդ՝ ֆեոդալական հասարակարգի գլխավոր ու անհրաժեշտ այս հատկանիշներն ուներ Արշակունյաց Հայաստանում նախարարական կազմակերպությունը։ Այստեղ ևս իշխող դասը բաղկացած էր խոշոր կալվածատերերից, որոնք իրենց երկրներում ունեին քաղաքական իշխանություն և «տէրական», այսինքն՝ սենյորական, իրավունքներ։ Ազնվականների այս բարձր դասը, որ համապատասխանում է միջնադարյան Եվրոպայի սենյորներին, անվանվում է հնագույն հայ աղբյուրներում՝ «նախարարք», «նախարարազունք» և «ազգք», «տոհմք» կամ «տունք նախարարացն», իսկ նրանց պետական կարգի իշխանությունը, նաև այդ իշխանության տակ գտնվող երկրներն անվանվում են «նախարարութիւնք»։

«Նախարար» բառի ստուգաբանությունը և ծագումը երկար ժա-

---

[1] Տե՛ս Մանանդյան Հ., Ֆեոդալիզմը Հին Հայաստանում (Արշակունիների ու մարզպանության շրջան), Երևան, 1934, էջ 24—25։

մանակ մնում էին մութ և անհասկանալի։ Գիտական հնագույն երկերում այդ բառը սովորաբար մեկնել են իբրև նախ-արար և համապատասխան են համարել լատինական prae-fectus բառին։ Ինճիճյանն իր հնախոսության մեջ կարծում է, որ

> «անունս նախարար ինքնին յայտ առնէ ածանցեալ յանուանցըս նախ և արար. իբր նախկին ի յարարս, կամ նախակարգեալ իշխան, որպիսի էր և առ լատինս անունս prea-fectus, ցուցանելով զյառաջագահութիւն և զնախադասութիւն քան զայլս»[1]։

Էմինը Խորենացու ռուսերեն իր թարգմանության հավելվածում ընդունել էր նույն այս մեկնությունը[2]։

Նախարար բառի այդ հին ստուգաբանությունն առաջին անգամ մերժել է Ն. Մառը և մատնանշել, որ այդ բառի սկզբնական ձևը եղած պիտի լիներ նահարար, համապատասխան նահապետ և նահանգ բառերին։ Նախարար, այսինքն՝ նահարար, նրա կարծիքով, նշանակում է երկրի, շրջանի (=nah) տեր, գլխավոր (=rar=պրս. radh, զնդ. ratu)[3]։ Նիկ. Ադոնցը, ընդունելով Մառի այս մեկնությունը՝ կարծում է, որ նահարար բառի երկրորդ մասը ծագում է ո՛չ թե ratu, այլ պրսկ. dar արմատից[4]։

Մառի և Ադոնցի ենթադրությունները նախարար բառի ծագման մասին nahadar-ից՝ վերջերս վերջնականապես հաստատվեցին։ Ուղիղ մեկնությունը տվել է Մեյեն սոգդիերեն լեզվի օգնությամբ, որի մեջ պահպանվել է nâfdâr բառը «ժողովրդի կամ ցեղի պետ» նշանակությամբ։ Նույն բառի պարթևական ձևը նա ենթադրում է nâfadâra՝ náfa «պորտ, ցեղ» և dâra՝ «պետ, գլխավոր»։

Պարթևական nâfadâra-ն, նրա կարծիքով, հայերենում դառել է նահարար, սակայն ժողովրդական ստուգաբանությամբ նահ-ը վերածվել է նախ-ի և ստացվել նախարար ձևը[5]։ Ուշագրավ է սակայն, որ Benveniste հյուսիս-արևմտյան պահլավերեն բարբառում մատնանշվում է naxva-dâra բառի գոյությունը, որն ըստ հայկական ձայնական օրենքների կարող է դառնալ նախարար[6]։

---

1 Ղ. Ինճիճյան, *Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի*, հատ. Բ, էջ 77։

2 *Н. Эмин*, История Армении Моисея Хоренского, М., 1893, էջ 298։

3 Տե՛ս „Зап. Вост. Отд. Имп. Рус. Арх. Общ.", т. XI, 1898, էջ 170—173։

4 *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 451։

5 „Revue des études arméniennes", II, fasc. I, Paris, 1922 էջ 1—3։

6 Հ. Աճառյան, *Հայերեն արմատական բառարան*, է հատոր, Երևան, 1935, էջ 170։

Նախարարությունները Արշակունյաց Հայաստանում իրենց մեծությամբ ու նշանակությամբ տարբեր էին իրարից, ինչպես և սենյորիաները միջնադարյան Եվրոպայում։

Ֆեոդալական պետության վերին շերտը կազմում էին Արևմտյան Եվրոպայում խոշոր և առաջնակարգ իշխանությունները, որոնք փաստորեն գրեթե անկախ էին թագավորից կամ կայսրից։ Ժէ. դարում սրանք անվանվում էին Ֆրանսիայում դքսություններ (duchés), կամ կոմսություններ (comtés)։ Սրանցից ներքև գտնվում էին երկրորդ կարգի խոշոր սենյորիաները, որոնք անվանվում էին բարոնություններ (baronnies)։ Սրանք, մեծ մասամբ, խոշորագույն իշխանությունների ֆեոդալներն էին։ Ավելի ցածումն էին դերակոմսությունները (vicomtés) և դղեկատերերը (châtellenies), իսկ բոլորովին ներքևում՝ բազմաթիվ մանր սենյորիաները, որոնք վասալներն էին վերոհիշյալ ավելի զորեղ ֆեոդալների։

Այս դասակարգությունը կամ աստիճանավորումը («հիերարխիան»), որ կարևոր մի հատկանիշն էր Արևմտյան Եվրոպայի ֆեոդալիզմի, գոյություն է ունեցել նաև Հին Հայաստանում։

Առաջին կարգի մեծ իշխանություններին համապատասխանում են այստեղ բդեշխությունները։ Քաղաքականապես սրանք գրեթե անկախ իշխանություններ էին, բայց գտնվում էին Հայ Արշակունիների գերիշխանության տակ։

Բդեշխների իշխանություններն ընդարձակ երկրներ էին Հայաստանի սահմանային շրջաններում։ Նրանց պարտականությունն էր Հայաստանի սահմանների պաշտպանությունն արտաքին թշնամիներից և այդ պատճառով նրանք անվանվում էին «սահմանապահք», «սահմանակալք», նաև «կողմնապահք» և «կողմնակալք»։

Ագաթանգեղոսի և Փավստոսի վկայություններից, ինչպես տեսանք, հայտնի է, որ Արշակունիների ժամանակ Հայաստանում կային չորս բդեշխություններ՝

> «առաջինը՝ սահմանակալը Նոր-Շիրականի կողմում, երկրորդը՝ սահմանակալը Ասորեստանյայց կողմում, երրորդը՝ Արվաստանի կողմում և չորրորդը՝ Մասքթաց կողմում»[1]։

Ագաթանգեղոսը և Փավստոսը վկայում են, որ բդեշխները «գահերէց» իշխաններ էին «արքունի տաճարին»։ Պարզ է, որ սրանք իբրև «գահերէց» իշխաններ՝ իրենց դիրքով բարձր են եղել մյուս նախարարություններից։ Նիկ. Ադոնցը նույնիսկ ենթադրում է, որ նրանք չէին մուծված նախարարությունների համար սահմանված

[1] Ագաթանգեղոս, գլուխ ՃԺԶ (873), էջ 459—560, Տփղիս, 1909։

գահակարգի շարքը, որովհետև համարվել են գրեթե հավասար թագավորին։ Ադոնցի կարծիքով՝ բդեշխները նախկին փոքր ու ինքնուրույն թագավորությունների միապետներն էին, որոնք Տիգրան Մեծից սկսած ճանաչել էին հայ թագավորների քաղաքական գերիշխանությունը[1]։

Որ բդեշխները, իբրև թագավորներին գրեթե իրավահավասար իշխաններ, նախարարական կազմի շրջանակից դուրս են համարվել՝ այդ երևում է, ի միջի այլոց, նրանից, որ նրանք Արշակունյաց թագավորության մեջ չեն վարել գործակալական պաշտոններ։

Իբրև ամենաբարձր կարգի իշխաններ՝ աղբյուրների մեջ բդեշխներն անվանվում են «աշխարհատերք» կամ «աշխարհակալք»։ Այսպես էր անվանվում իշխանական ամենաբարձր խավը նաև Սասանյան Պարսկաստանում։ «Աշխարհակալ»-ները (=sathradhâr), լինելով վասալներ Պարսից թագավորների, գրեթե անկախ իշխաններ էին և անվանվում էին նույնիսկ թագավորներ, որովհետև իրենց սյուզերենի պաշտոնական տիտղոսն էր «թագավորների թագավոր»[2]։

Այս լուսաբանությունը հիմնապես տարբեր է Ադոնցի տված բացատրությունից։ Ադոնցի կարծիքով՝ šathradhâr Սասանյան Պարսկաստանի ո՛չ թե սատրապների և շրջանների կառավարիչների, այլ ավելի շուտ սոցիալական կամ դասային խմբի անուն է և համարժեք է նախարար գաղափարին[3]։ Այս ենթադրությունը, որ հակասում է պատմական աղբյուրների վկայություններին, միանգամայն անհավանական է։

«Աշխարհակալ» և «աշխարհատէր» կամ «գաւառակալ» և «գաւառատէր» Հին Հայաստանում, բացի բդեշխներից, անվանվել են նաև առաջին կարգի մեծամեծ նախարարները։ Այդպես են անվանված, օրինակ, Փավստոսի մոտ Մանաճիհր Ռշտունին, «նահապետն Որդունւոց տոհմին» և «իշխանն Մանաւազեան տոհմին»։ Պարզ է, որ վերոհիշյալ հոմանիշները գործ են ածվել առաջնակարգ նախարարական տոհմերի նաև մյուս մեծամեծների համար։

Նկատի ունենալով «աշխարհակալ» կամ «աշխարհատէր» իշխանների զինվորական ուժը՝ աղբյուրները նրանց անվանում են երբեմն «բիւրաւորք» և «հազարաւորք»։

«Բիւրաւորք» են նրանք, որոնց զինվորական ուժը 10.000-ի չափ էր, իսկ «հազարաւորք» նրանք, որոնց զինվորական ուժը հա-

---

1 *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 283։

2 *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, Copenhague, 1944, էջ 101։

3 *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 442 և 450—451։

զարից պակաս չէր։ Այս տերմինների իմաստն ուղիղ է մեկնված հայագիտական թե հին և թե նոր երկերում։

Սենյորական դասի ստորին կարգերը կազմում էին Հին Հայաստանում «կրտսեր» նախարարները։

Աղբյուրների մեջ հիշվում են «աւագ և կրտսեր նախարարք» և «մեծամեծ աւագանի»-ն։ Ինճիճյանի և Ադոնցի կարծիքով՝ նախարարները համարվել են «աւագ» կամ «կրտսեր» իրենց հզորության կամ կարևորության համեմատ[1]։ Կ. Կոստանյանցն իր «Հիսուածք»-ի մեջ տալիս է հետևյալ տարբեր լուսաբանությունները, էջ 28—29.

> «Երկու կարգի նախարարներ կային՝ ավագ և կրտսեր. առաջին կարգից էին այն նախարարները, որոնք Հայոց ամենահին ազնվական կամ նահապետական ցեղերից էին առաջացել. իսկ երկրորդ կարգից էին նրանք, որոնց նախահայրերը հասարակ մարդիկ են եղել առանց ազնվածագումի և նախարարություն են ստացել թագավորներից իրենց մի նշանավոր ծառայության կամ հավատարմության համար»[2]։

Մյուս մեկնությունը գտնվում է դարձյալ «Հիսուածք»-ում, էջ 36՝

> «յուրաքանչյուր նախարարության մեջ կար ավագ նախարար՝ տանուտերը, և կրտսեր նախարար՝ սեպուհները»։

Վերոհիշյալ ենթադրություններից անհիմն է և անհավանական Կոստանյանցի և Էմինի կահումը, որ իբր «կրտսեր» նախարարների կարգին պատկանել են «հասարակ մարդիկ առանց ազնվական ծագումի», որոնք նախարարություն էին ստացել թագավորից իրենց ծառայության կամ հավատարմության համար։ Այդ մասին աղբյուրների մեջ ո՛չ վկայություններ կան, ո՛չ էլ որևէ ակնարկ։

Նախարարությունների բաժանումն «աւագ» և «կրտսեր» խմբերի, ինչպես մատնանիշ է արել Ջավախովը[3], բավարար կերպով լուսաբանված է Ղազար Փարպեցու մի վկայության մեջ։ Փարպեցու պատմելով, Վարդան Մամիկոնյանը Պարսից արքունիքում արտասանած իր ատենախոսության ժամանակ ի միջի այլոց ասում է.

---

[1] Տե՛ս Ինճիճյան, Հնախօսութիւն, II, էջ 90. Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 453։

[2] Կար. Կոստանեանց, Հիսուածք, գիրք Գ, Վիեննա, 1877, էջ 29։ Համեմատե՛ս նաև Н. Эмин, История Армении Моисея Хоренского, М., 1893, էջ 298։

[3] И. Джавахов, Государственный строй древней Грузии и Армении, СПб., 1905, էջ 110։

«Բազումք են յայս երից աշխարհաց յազատորերոյ, որք են աւագ քան զիս և գահու և աւուրբք»[1]։

Այս վկայությունից դժվար չէ հետևցնել, որ «աւագ» են համարվել նախարարները կամ «գահու», կամ «աւուրբք»։ Եվ, իրոք, աղբյուրների վկայություններում, որ բերված են իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ (էջ 43—44), «աւագ» մակդիրը գործ է ածված հենց այդ երկու իմաստով։

Հայտնի է արդեն, որ Արշակունյաց թագավորության, ինչպես և Սասանյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ, հաջորդական կարգով որոշված էին նախարարական տոհմերի գահերն այդ տոհմերի հզորության կամ կարևորության համեմատ։ Գոյություն է ունեցել գահերի կարգը որոշող հատուկ ցուցակ, որն անվանվում էր Գահնամակ։ Ըստ այսմ՝ «աւագ»-ների խմբին են պատկանել այն հզոր ու առաջնակարգ նախարարները, որոնք «գահերէց» էին, իսկ «կրտսեր»՝ նրանք, որոնց գահերը եղել են երկրորդական կարգի։

Բացի այդ՝ վկայությունների մեջ երբեմն «աւագ» նախարար է անվանվում նախարարական տոհմի մեջ տարիքով մեծը, այսինքն՝ նահապետը կամ տանուտերը[2]։

Ազնվականության ամենաստորին շերտը կազմում էին Հին Հայաստանում «ազատ»-ները, որոնք վասալներն էին Արշակունիների կամ «աւագ» և «կրտսեր» նախարարությունների։

Պետք է առանձնապես նշել, որ աղբյուրների մեջ հիշատակվում են նախարարություններ, որոնք ենթարկվում էին բդեշխներին[3], և մանր իշխանություններ, որ խմբված էին մեծ նախարարությունների շուրջը։

Կալվածատեր ազնվականության ստորադաս խավերի վասալական կապը և կախումն ավելի բարձր և զորեղ սյուզերեններից Հին Հայաստանում անվանվել է «ծառայութիւն»։

Հիմնվելով աղբյուրների սխալ հասկացված վկայությունների վրա, պատմագիտական ու բանասիրական աշխատություններում նախարարությունների թիվը Հին Հայաստանում ենթադրում էին 900 կամ 400։ Սակայն Ն. Ադոնցը մանրախույզ կերպով ուսումնասիրել է այս խնդիրը և, օգտվելով աղբյուրների արժանահավատ

[1] Ղազար Փարպեցի, Տփղիս, 1904, գլ. ԻՁ, էջ 49։

[2] Խ. Սամվելյանի առարկությունները այս լուսաբանության դեմ (տե՛ս «Հին հայ իրավունքի պատմությունը», Երևան, 1939, էջ 210—211) ճիշտ չեն և հակասում են աղբյուրների վկայություններին։

[3] Տե՛ս Մանանդյան Հ., Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 44—45. նաև Փավստոս, IV, գլ. Ծ և V, գլ. ԺԵ։

տեղեկություններից, պարզել է արդեն, որ Հին Հայաստանում նախարարական տոհմերի թիվը, որոնք այս կամ այն չափով հայտնի են եղել, պետք է հաշվել մոտավորապես մինչև հիսուն։

* * *

Ինչպես տեսանք, Արշակունյաց Հայաստանի ֆեոդալական կազմակերպության գլխավոր և էական հատկանիշն այն էր, որ նախարարական խոշոր կալվածքները ո՛չ թե սոսկ հողային գույք էին (земельное имущество, Grundvermögen), այլ պետական կարգի հողային «տէրութիւն»-ներ (земельное господство, Grundherrschaft)։

Ակադ. Ի. Ջավախիշվիլին ենթադրում է, որ Հին Հայաստանում և Վրաստանում, ինչպես նաև Արևելքի ուրիշ ժողովուրդների մոտ, պետական ու սոցիալական կազմակերպության վերաբերյալ տերմինները ծագել են, մեծ մասամբ, նախորդ շրջանից[1]։

Եվ իրապես, յուրաքանչյուր նախարարական երկիր, որ անվանվում էր «աշխարհ» կամ «գաւառ», պահպանել էր Հայաստանում նաև տոհմական նախորդ շրջանի «տուն» անունը։ Իշխանությունն ամեն մի նախարարության մեջ պատկանում էր նախարարական տոհմի ներկայացուցչին, որ կոչվում էր «տանուտէր», «տէր» կամ «նահապետ»։

Հոմանիշ այս անուններից «տանուտէր»-ը և «տէր»-ը տոհմական հնագույն շրջանի և արմենական գաղթականության անվանումներ են, իսկ «նահապետ»-ը փոխառություն է պարթևերենից և համապատասխանում է պրթ. nâfapati բառին, որ նշանակում է տոհմի, ցեղի պետ[2]։

«Տանուտէր»-երի կամ «նահապետ»-ների տիրական իշխանությունը, նաև նրանց իշխանության տակ գտնվող երկրամասը, անվանվել են «տանուտէրութիւն», «տէրութիւն» կամ «նահապետութիւն»։

Որ «նահապետ»-ները կամ «տանուտէր»-երը իշխանական իրավունքներ են ունեցել իրենց երկրներում՝ այդ երևում է, ի միջի այլոց, նրանից, որ աղբյուրների մեջ նրանք անվանվում են ոչ միայն «տանուտէր», «տէր» կամ «նահապետ», այլև «իշխան», իսկ նրանց երկրները՝ նաև «իշխանութիւն»,

Աղբյուրների մեջ հիշատակվում են երբեմն «աւագ տանու-

---

[1] *И. Джавахов*, Государственный строй древней Грузии и древней Армении.

[2] Տե՛ս *A. Meillet*, Revue des études arméniennes, II, fasc. I, էջ 1—3։

*տէր»-երը։ Մենք տեսանք, որ նախարարներն «աւագ» են համարվել կամ «կրտսեր» «գահու և աւուրբք»։*

*Համապատասխան նախարարների այդ բաժանման՝ «աւագ տանուտէր» ևս անվանվել են, ինչպես այդ ուղիղ դիտել է Ջավախիշվիլին*[1]*, այն «տանուտեր»-երը, որոնք իրենց գահով, դիրքով կամ տարիքով ավելի բարձր էին կամ մեծ։*

*Նախարարական տոհմի անդամները, որոնք գտնվում էին «տանուտէր»-ի կամ «նահապետ»-ի իշխանության տակ, անվանվում էին «սեպուհ»։*

*Ուշադրավ է առանձնապես «սեպուհ» բառի ստուգաբանությունը, որ առաջարկել է Մառը։ Մառի կարծիքով՝ «սեպուհ»-ը (=սեպուրհ, համեմատե՛ վրց.* sazepuro*) հայերենում իրանական փոխառություն է և համապատասխանում է զենդ.* vīsaputhra *բառին, որ նշանակում է տոհմի, ցեղի որդի։ Ուրեմն՝ նախարարական տոհմի առաջնորդն ու գլխավորն անվանվել է «նահապետ»=*nâfapati*, որ նշանակում է տոհմի, ցեղի պետ, իսկ մյուս անդամները՝ «սեպուհ»=*vīsaputhra, *այսինքն՝ տոհմի, ցեղի որդի*[2]*։*

*Մեր նախորդ աշխատություններից մեկում մենք մատնանշել էինք, որ «սեպուհ» են կոչվել ո՛չ միայն նախարարական տոհմերի, այլև Արշակունյաց թագավորական տոհմի անդամները*[3]*։ Փավստոսի Պատմության մեջ Գնելը, Արշակ թագավորի եղբոր որդին, անվանված է «մեծ սեպուհ Արշակունի» (IV, գլ. ժե)։*

*Բացի «սեպուհ»-ից, Ղազար Փարպեցու Պատմության մեջ հիշվում է հաճախ նաև «աւագ սեպուհ» տերմինը։ Այս վերջին անունը քննության է առնված Ջավախիշվիլու և Ադոնցի վերոհիշյալ աշխատություններում։ Ջավախիշվիլու ենթադրությամբ՝ «աւագ սեպուհ» անվանվել են կամ նախարարական տոհմի կարևորության համաձայն և կամ ըստ տարիքի*[4]*, իսկ Ադոնցի կարծիքով՝ «աւագ սեպուհ»-ը տարիքով ավագագույնն էր նախարարական տոհմում,*

---

[1] „Государственный строй", *էջ 110։*

[2] ***Քրիստենսենը** կարծում է, որ Սասանյան **Պարսկաստանում*** vāspuhrān *անվանվում էին մեծ տոհմերի գլխավորները կամ, գուցե, ընդհանրապես անդամները։ Ինձ թվում է, որ ճիշտ է ո՛չ թե նրա առաջին, այլ երկրորդ ենթադրությունը։ Տե՛ս A. Christensen,* L'Iran sous les Sassanides, Copenhagu, 1944, *էջ 100 և 103—110։*

[3] **Մանանդյան Հ.**, *Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին, Երևան, 1925, էջ 12։*

[4] „Государственный строй", *էջ 127։*

որը «տանուտէր»-ի կամ «նահապետ»-ի մահից հետո ժառանգելու էր նրա իշխանությունը[1]։

Ինձ թվում է, որ այս երկու ենթադրությունն էլ հավանական են։ Փարպեցու վկայություններից, որ մեջ են բերված իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ (էջ 51—52), կարելի է կռահել, որ «աւագ սեպուհ» կոչվել է կամ որևէ ավագ նախարարության «սեպուհ»-ը և կամ նախարարական տոհմի մեջ «սեպուհ»-ներից տարիքով ավագը։

Ուշագրավ է նաև այն, որ «աւագ սեպուհ»-ները մասնակցություն են ունեցել պետական գործերում։ Փարպեցու վկայություններից երևում է, որ նրանք «տանուտէր»-երի հետ միասին հրավիրվում էին Պարսից արքունիք, մասնակցում էին «աշխարհաժողով»-ներում և կնքում էին «մատանեաւ» կարևոր գրությունները։ Նրանց գործակցությունը և այլ կառավարական խնդիրներում միանգամայն հավանական է, որովհետև «աւագ սեպուհ»-ները՝ որպես տանուտերության գահաժառանգներ, ստանձնելու էին նախարարական երկրի իշխանությունը։

Փավստոսը վկայում է, որ նախարարական շրջաններում Հայ Արշակունիներն իրենք էին կարգում «տանուտէր»-եր կամ «նահապետ»-ներ։ Սակայն Արշակունիների այդ միջամտությունը, ինչպես ցույց են տվել Ջավախիշվիլին և Ադոնցը, եղել է սոսկ ձևական[2]։ Արշակունիները ճանաչում էին միայն կամ հաստատում օրինական ժառանգների իրավունքները։

Յուրաքանչյուր «տանուտէր» կամ «նահապետ»՝ իբրև լիազոր տեր և կառավարիչ նախարարական երկրի, ուներ թե վարչական և թե դատական իշխանություն։ Հպատակ հարկատու բնակչությունից իր գործակալների միջոցով նա ստանում էր հարկեր և տուրքեր, ուներ սեփական զորք և առանձին դրոշ։ Փավստոսը, օրինակ, անվանում է «նահապետ»-ներին «գնդից և դրօշուց տեարք»[3]։

Գլխավոր իշխանությունների և նրանց վասալների զորքերի քանակի մասին պահպանվել է մի հին ցուցակ, որը հրատարակել էր Հ. Շահխաթունյանն իր «Ստորագրութեան» մեջ[4]։ Նույն ցուցակը, որ անվանվում է Զորանամակ, վերահրատարակված է նաև Ալի-

---

[1] „Армения в эпоху Юстиниана“, էջ 472։

[2] „Государственный строй“, էջ 101—103 և „Армения в эпоху Юстиниана“, էջ 464—465։

[3] Փավստոս, IV, գլ. Գ։

[4] «Ստորագրութիւն կաթողիկէ էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ, էջմիածին, 1842, II, էջ 58—59։

*շանի «Այրարատ»-ում (էջ 424), Կոստանյանցի «Հիւսուածք»-ում (III, էջ 32) և Ադոնցի* «Армения в эпоху Юстиниана» *աշխատության մեջ (էջ 251—252)։*

*Համաձայն այդ ցուցակի՝ պատերազմի ժամանակ հազար կամ հազարից ավելի զորք տալիս էին իշխանական 29 խոշոր շրջան, հինգ հարյուր կամ հինգ հարյուրից ավելի՝ 10 շրջան և հիսունից մինչև երեք հարյուր՝ 53 շրջան։ Զինվորական ցուցակի այդ տեղեկությունները, դժբախտաբար, վավերական չեն, խիստ աղճատված են և, Ադոնցի կարծիքով (էջ 252—297), հորինված են արվեստորեն VII դարից հետո, հավանաբար, գրավոր հնագույն աղբյուրների օգնությամբ։ Այնուամենայնիվ, նախարարական զորքերի թվի մասին հաղորդված վկայությունները, ինչպես ենթադրում է Ադոնցը, կարող են մասամբ ճիշտ լինել, որովհետև այդ տվյալները մոտավորապես համապատասխանում են Խորենացու, Զենոբի և Փավստոսի ցուցումներին։*

*Նախարարական իշխանություններն ունեին իրենց սեփական ամրոցները և բերդերը, որոնք վտանգի ժամանակ ծառայում էին իբրև ապաստարան։ Այդ ամրությունները էին նրանց հենարանը և հույսը պատերազմի և ապստամբությունների ժամանակ։*

*Ինչպես հայտնի է Փավստոսի վկայություններից, մեծ խռովությունների ընթացքում, որ բռնկվել էին Հայաստանում Տիրան թագավորի ժամանակ, Արտավազդ և Վասակ Մամիկոնյանները պատսպարվել էին իրենց բերդերում, որ գտնվում էին Տայքում*[1]*։ Ղազար Փարպեցին ևս վկայում է, որ Վարդանանց կռիվների ժամանակ*

> *«սեպուհ մի ուրծացի, որում անուն էր Վարազներսեհ, ....... նենգեալ ուխտին սրբոյ՝ երթեալ աւերէր զշահաստանն Բռնաւվիժի և առեալ զամենայն կարասի շահաստանին՝ դիմեալ ամրանայր ի բերդն, որ անուանեալ կոչի Սագրայ բերդ՝ որ էր բերդ ամուր իշխանութեանն իւրեանց»*[2]*։*

*Բազմաթիվ նաև ուրիշ վկայություններից երևում է, որ բերդերը և ամրությունները, լինելով նեցուկ և հենարան ավատական առանձնացման՝ նույնպիսի կարևոր դեր են կատարել Հին Հայաստանում, ինչպես և միջնադարյան Եվրոպայում։*

*Նախարարական ամեն մի իշխանություն ուներ իր հատուկ*

---

[1] Փավստոս, *III, գլ. ԺԸ, էջ 47 և IV, գլ. Բ, էջ 67։*

[2] Փարպեցի, *III, ԿԷ, էջ 121։*

կենտրոնատեղին, որ կոչվել է «գահ» կամ «գահույք», այսինքն՝ տեղ կամ «գահ»՝ աթոռանիստ կենտրոնի իմաստով։

Փավստոսի մոտ, օրինակ, Մանավազյան տոհմի իշխանի կենտրոնն անվանված է «բուն գահոյից գեւղն»[1]։

* * *

Նախարարությունները Արշակունյաց Հայաստանում, լինելով ինքնուրույն իշխանություններ, գտնվում էին միաժամանակ իբրև վասալներ Հայ Արշակունիների իշխանության տակ։ Իրենք՝ Արշակունիները նույնպիսի միահեծան «տէր» էին իրենց բնիկ երկրում, ինչպես «տանուտէր»-երը կամ «նահապետ»-ներն իրենց շրջաններում։

Արշակունիների բուն երկիրը, որ իր տարածությամբ շատ ավելի ընդարձակ էր, քան նախարարական «տէրութիւն»-ները, կոչվում էր «ոստան»։

Ն. Ադոնցը կարծում է, որ «ոստան» նշանակում է արքունիք, բառացի՝ շեմք, համապատասխանում է միջնադարյան Եվրոպայի curtis dominicalis-ին և իբր թե այդպես են անվանվել նախարարական և արքունի երկրների կենտրոնները[2]։ Նրա ենթադրությունը, ըստ երևույթին, հիմնված է Հայկազյան լեզվի նոր բառգրքի վրա, որը «ոստան» բառի դիմաց դրվել է նույնպես «սեամ, դուռն արքունի» բացատրությունը։ Սակայն հիմնավոր և համոզիչ է ո՛չ թե այս բացատրությունը, այլ այն մեկնությունը, որ տվել է «ոստան» բառին Հյուբշմանը[3]։ Նրա լուսաբանությամբ՝ «ոստան» բառի ծագումն անպայման պարսկական է. չորրորդ դարում «ոստան» անվանվել է այն երկիրը կամ քաղաքը, որ գտնվել է Արշակունի թագավորի (կամ Արշակունյաց թագավորական տան որևէ իշխանի) իշխանության տակ։ «Ոստան» էին, ինչպես հայտնի է, Արտաշատը, Վաղարշապատը և հետագայում նաև Դվինը։

Աղբյուրների վկայություններից դժվար չէ նաև հետևցնել, որ ո՛չ թե հին շրջանում, այլ միմիայն հետագա դարերում «ոստանը» գործ է ածվել նաև նախարարական կենտրոնների, օրինակ՝ Նախճավանի, Հաղամակերտի և Դարույնքի համար։ [«Ոստան» էին սակայն չորրորդ դարում ո՛չ միայն Արշակունիների կենտրոնավայրերը, այլև Արշակունիների «բնիկ սեփական» Այրարատ գա-

---

1 Փավստոս, *III*, *գլ. Դ*, *էջ 10*։

2 *Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 463*։

3 Հյուբշման, *Հին հայոց տեղւոյ անունները*, *էջ 393—394*։

վառը, նաև նրանց անմիջական իշխանության տակ գտնվող արքունի ամբողջ երկիրը][1]։

Արշակունիները, լինելով անմիջական «տէր» արքունի երկրի կամ «ոստանի», միաժամանակ բարձրագույն սենյորներ էին նախարարական ամբողջ Հայաստանի։ Իբրև միապետներ, որոնց ստորադրված էին բդեշխությունները և բոլոր նախարարությունները՝ նրանք անվանվում էին «թագաւոր» կամ «արքայ Հայոց Մեծաց», իսկ նրանց իշխանությունը՝ «տէրութիւն թագաւորութեանն Հայաստան երկրին»[2]։

Նախարարությունները ճանաչում էին Արշակունիներին իրենց «տէր» և «թագաւոր Հայոց Մեծաց» բարձրագույն սենյորի իմաստով, ճիշտ այնպես, ինչպես և ֆեոդալական Եվրոպայում։ Նրանք գործակցում էին Արշակունիներին, երբ հարկավոր էր պաշտպանել Հայաստանն արտաքին հարձակումներից։ Թագավորը համարվում էր ընդհանուր ներկայացուցիչ միջազգային հարցերում. նա հայտարարում էր պատերազմ, կռում էր դաշինք, ուղարկում ու ընդունում էր դեսպանություններ և պահպանում հարաբերություններ օտար պետությունների հետ։ Հավանական է սակայն ենթադրել, որ այս հարցերն անգամ քննվում էին սովորաբար «աշխարհաժողով»-ներում։

Համեմատելով նախարարությունների պարտականություններն Արշակունիների հանդեպ՝ Արևմտյան Եվրոպայի ֆեոդալների համապատասխան պարտականությունների հետ, դժվար չէ համոզվել, որ վասալական այդ հարաբերություններն ունեին ընդհանուր նման գծեր, որ ակներև են և անժխտելի։

Ուշագրավ է ամենից առաջ, որ Արշակունյաց Հայաստանում ևս ֆեոդալական դասակարգության ամեն մի ստորին խավի կապը և կախումն ավելի բարձր շերտից՝ արտահայտվել է նույն տերմիններով, ինչպես և միջնադարյան Եվրոպայում։ Հայ նախարարները, ինչպես հայտնի է, անվանվում էին «ծառայ» Հայ Արշակունիների։ Այն պարտականությունները, որ նրանք ունեին թագավորի հանդեպ, կոչվում էին «ծառայութիւն»։ Այս «ծառայ» և «ծառայութիւն» տերմինները, ինչպես ցույց է տվել Ադոնցը, համապատասխանում են ֆեոդալական Եվրոպայի servus, servitium և Ռուսաստանի слуга, служба բառերին[3]։

Արևմտյան Եվրոպայում ֆեոդալական իշխանությունները

---

[1] Փավստոս, IV, գլ. ԺԹ և V, գլ. ԺԸ, էջ 133, 217։

[2] Նույնը, IV, գլ. Բ, էջ 67։

[3] *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 459։

պարտավոր էին — և այդ նրանց հիմնական պարտականությունն էր — պատերազմի ժամանակ տրամադրել սենյորին իրենց զինվորական ուժերը։ Նույն պարտականությունն ունեին Արշակունյաց Հայաստանում նախարարությունները Արշակունյաց թագավորների հանդեպ։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ Հայաստանում ևս, ինչպես և ֆեոդալական Եվրոպայում, նախարարական իշխանությունները պարտավոր էին պաշտպանել իրենց սենյորի բերդերը և հարկավոր դեպքերում նրան տրամադրել իրենց սեփական ամրությունները։

Միջնադարյան Եվրոպայում վասալների գլխավոր պարտականություններից մեկն էր նաև նրանց պարտադիր ծառայությունն արքունիքում կամ սենյորական պաշտոնավայրում։ Նրանք ո՛չ միայն իրենց ներկայությամբ առանձին փայլ էին տալիս սենյորի պետական մեծ հանդեսներին, այլև գործակցում էին նրանց քաղաքական ու կառավարական գործերում, մասնակցում էին կարևորագույն հարցերի քննությանը հատուկ ժողովներում և վարում էին նույնիսկ արքունի որոշ պաշտոններ։

Նույնը մենք տեսնում ենք նաև նախարարական Հայաստանում, գլխավորապես, Արշակունյաց թագավորության ժամանակ։

Նախարարների և «ազատ»-ների մեծ ու փոքր պաշտոններն արքունիքում և «ոստան»-ում անվանվում էին «գործ» կամ «գործակալութիւն», իսկ նախարարներն ու «ազատ»-ներն իբրև արքունի պաշտոնյաներ իրենք կոչվում էին «գործակալ»-ներ։

Ամենակարևոր «գործակալութիւն»-ներն Արշակունյաց Հայաստանում, որ հանձնարարված էին ավագ նախարարություններին և կաթողիկոսությանը, անվանվում էին աղբյուրներում՝ «թագակապ ասպետութիւն», «մարդպետութիւն», «մաղխազութիւն», «սպարապետութիւն», «հազարապետութիւն» և «մեծ դատաւորութիւն»։

«Թագակապ ասպետութեան» իշխանությունը հանձնված էր Բագրատունիներին։ Իբրև «թագադիր» նրանք գահակալության ժամանակ թագ էին դնում թագավորի գլխին։

Պարթևների թագավորության մեջ, ինչպես և Սասանյան Պարսկաստանում, թագադրության այդ իրավունքը տրված է եղել ազնվական ամենաբարձր տներին, որ ազգական էին թագավորական ընտանիքին։ Համաձայն Թեոփիլակտոսի Պատմության վկայության՝ թագադրի պաշտոնը հանձնված է եղել Սասանյան Պարսկաստանում Արգապետների ընտանիքին[1]։

---

[1] Տե՛ս Theophylaktos Simokattes, III, 8.

Բագրատունիների «ասպետ» տիտղոսի մասին, որ դեռ վերջնական կերպով մեկնված չէ, ուշագրավ է Սեբեոսի (Անանունի) վկայությունը, որը թեև առասպելական բնույթ ունի, սակայն հետաքրքիր լուսաբանություն է տալիս «ասպետության» բարձր պաշտոնին։

«Այն ժամանակ,— ասում է Սեբեոսը,— Արշակը իր որդուն, որի անունն էր Արշակ Փոքր, թագավոր կարգեց Հայոց աշխարհի Մծբին քաղաքում։........ Սրան ընդառաջ եկավ զորքով Արմենակի որդիներից մեծ նախարար Բագարատ Փառազյանը։ Սա մատուցեց նրան իբրև նվեր ոսկի ու արծաթ, զարդարեց նրան սաղավարտով ու վակասով, պսակեց նրան հայրենի թագով, նստեցրեց ոսկիապատ ու ակներով զարդարված գահի վրա և ամուսնացրեց նրան իր աղջկա հետ։

Արշակ թագավորը նրան դարձրեց ասպետ Հայաստան երկրի, և նա եղավ իշխան ու հրամանատար՝ ամբողջ թագավորության հրամանների գլխավոր. և նա տվեց նրան այն տերության վրա իշխանությունը»։

[«Յայնմ ժամանակի թագաւորեցոյց Արշակ զորդի իւր զԱրշակ Փոքր կոչեցեալ ի վերայ աշխարհիս Հայոց ի Մծբին քաղաքի........ Սմա ընդ առաջ ելանէ Բագարատն Փառազեան յորդւոցն Արամենակայ նախարար մեծ հանդերձ զաւրու։ Մատուցանէ նմա պատարագ ոսկի և արծաթ. և զարդարէ զնա ի սնդր և ի վակաս. պսակէ զնա ի թագ հայրենի և նստուցանէ զնա ի վերայ ոսկիապատ ականակուռ գահոյիցն. և տայ նմա զդուստր իւր ի կնութեան։

Զսա արար Արշակ արքայ ասպետ Հայաստան երկրին, որ էր իշխան և հրամանատար, ամենայն թագաւորութեանն հրամանաց գլուխ, և հայր արքայի, և եղբայր. որում ետ իշխանութիւն տէրութեանն այնորիկ»][1]։

«Գործակալ»-ական մեծ իշխանություն էր արքունիքում «մարդպետությունը»։ Ադոնցի ենթադրությամբ՝ «մարդպետ» նշանակել է սկզբում «մարդ» ցեղի պետ, այն հայտնի ցեղի, որ ապրում էր **Մարդաստանում**։ Հետագայում «մարդպետ»-ը դառել է նախարարական տոհմի տիտղոս[2]։ Համաձայն տոհմային այդ տիտղոսի՝ «մարդպետ»-ներին հանձնված արքունի «գործակալութիւն»-ն անվանվել է «մարդպետութիւն»՝ ճիշտ այնպես, ինչպես և Բագրա-

---

[1] **Սեբեոս**, *հրատ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1939, գլ. Բ, էջ 9—10։*

[2] *Адонц,* Армения в эпоху Юстиниана, էջ 3.

տուններն տոհմային «ասպետ» տիտղոսի համաձայն վերոհիշյալ «գործակալություն»-ը կոչվել էր «ասպետություն»։

«Մարդպետութեան» մեծ իշխաններին հանձնարարված են եղել Արշակունիների կանանոցի և արքունիքի վերակացությունը, թագավորական ամրությունների և բերդերի պահպանությունը և արքունի գանձերի ու կալվածքների վերահսկողությունը։ Նրանց բարձր դիրքը և բացառիկ հեղինակությունն արքունիքում պարզ երևում է նրանից, որ Փավստոսի մոտ նրանք անվանվում են «հայր» կամ «հայր թագաւորի», իսկ նրանց պաշտոնը՝ «հայրութիւն»։

«Մարդպետութեան» վերաբերյալ աղբյուրների կարևորագույն վկայությունները մեջ են բերված իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ (էջ 66—67)։

Իբրև առանձին «գործակալութիւն» աղբյուրների մեջ հիշվում է նաև «մաղխազութիւն»-ը։ «Մաղխազ», ինչպես ցույց է տվել Ն. Ադոնցը[1], նշանակում է «տէր, իշխան, թագաւոր» (=ասոր. malxazu)։

Մատենագրական վկայություններից հայտնի է, որ «մաղխազ»-ը տոհմային տիտղոսն էր Խորխոռունիների[2]։ Պարզ է, ուրեմն, որ արքունի այս «գործակալութիւն»-ը հանձնված է եղել Խորխոռունիների նախարարական տոհմին և անվանվել է «մաղխազութիւն» ըստ նրանց տոհմային տիտղոսի՝ միանգամայն համապատասխան վերոհիշյալ «գործակալութիւն»-ներին, որոնց անունները ևս, ինչպես տեսանք, ծագել էին «ասպետ» և «մարդպետ» տոհմային տիտղոսներից։

«Մաղխազութեան» պաշտոնը, ինչպես ենթադրում են, վերաբերվել է թագավորի անձի պաշտպանությանը։ «Մաղխազ»-ը որպես արքունի «գործակալ», Խորենացու վկայության համաձայն[3], թիկնապահների գլխավորն էր։

Նույն պաշտոնը Սասանյան Պարսկաստանում անվանվել է puštighbān-sālār, այսինքն՝ փուշտիպանների կամ թիկնապահների հրամանատար[4]։

Մեծ «գործակալութիւն» էր նաև «հազարապետութիւն»-ը, որին, հավանորեն, հանձնարարված է եղել արքունի երկրի տնտեսական բարեկարգման և գյուղացիական ու ելմտական գործերի վարչությունը։

---

[1] „Армения в эпоху Юстиниана", էջ 400։

[2] **Մանանդյան Հ.**, Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 68—69։

[3] **Խորենացի**, II, գլ. է, Տփղիս, 1913, էջ 110։

[4] *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, 1944, էջ 132, 395, 400։

«Հազարապետ»-ի պարտականությունն էր, ըստ երևույթին, աջակցել երկրի շինարարական աշխատանքներին և շինական տնտեսության զարգացմանը։ «Հազարապետութեան» այս պարտականությունները կապված էին հարկահանության գործի հետ։ Հողի մշակությունը, ոռոգման գործը և, ընդհանրապես, երկրի շեն վիճակը նշանակություն ունեին՝ իբրև հիմք և աղբյուր պետական բարեկեցության և պետական եկամուտների։

«Հազարապետ»-ի աշխարհախնամ գործունեության կարևոր այս կողմը շեշտված է, հատկապես, Փավստոսի Պատմության հետևյալ հատվածում.

«Եվ հազարապետության առաջին գործակալությունը տրվեց շինականներին շենացնող Գնունիների տոհմին՝ բոլոր երկրի հազարապետին, որը հոգատարությամբ խնամելու էր աշխարհը, երկիրը շեն պահող ու սնուցանող գյուղացիությունը»։

[«Եւ սկիզբն գործակալութեանն հազարապետութեանն աշխարհատեսն խնամակալութեանն, աշխարհաշէն աշխարհահատած դեհկանութեան, շինականաշէն ազգն Գնունեաց՝ հազարապետն երկրին»][1]։

Իսկ նույն պաշտոնի ֆինանսական բնույթը կարելի է ենթադրել Նոր Կտակարանի հայերեն թարգմանությունից, որի մեջ հազարապետ՝ բառը համապատասխանում է հունարեն οἰκονόμος («տնօրեն, տնտես») բառին[2]։

Իբրև մեծ «գործակալություն» աղբյուրների մեջ հաճախ հիշատակվում է «սպարապետություն»-ը, որը կոչվում է նաև «զորավարություն» և «սորատելատություն»։

Չորրորդ և հինգերորդ դարերում «սպարապետութեան» պաշտոնը ժառանգաբար վարել են Մամիկոնյանները։ Փավստոսի վկայությամբ՝ նրանք ընդհանուր հրամանատարներ էին։

«Ի վերայ իշխանութեանն բովանդակ՝ ի վերայ ամենայն զօրաց զօրավարութեանն բազմութեանն Հայոց Մեծաց»[3]։

Ալիշանի կարծիքը, որ «սպարապետ»-ը գերագույն առաջնորդն էր հետևակ զորքի, իսկ «ասպետ»-ը հեծելազորքի, սխալ է և անընդունելի[4]։ Աղբյուրների վկայություններից երևում է, որ պատերազմի ժամանակ Հայաստանի ամբողջ զորքը՝ արքունի տան և

---

1 Փավստոս, IV, գլ. Բ, էջ 67։

2 Տե՛ս Ա. Պետ. Դ, 10. Ա. Կորնթ. Դ, 1 և 2։

3 Փավստոս, IV, գլ. Բ, էջ 68։

4 Ալիշան, Այրարատ, էջ 423։

*թե նախարարական իշխանությունների՝ կռվել է «սպարապետ»-ի ընդհանուր հրամանատարության տակ։*

*«Սպարապետ»-ները, լինելով վերին հրամանատարներ «ի վերայ իշխանութեանն բովանդակ»՝ ունեին, բնականաբար, մեծ կշիռ և բարձր հեղինակություն։*

*Փավստոսի Պատմության մեջ մի ագամ միայն հիշվում է նաև «գործակալութիւն մեծի դատաւորութեանն» հետևյալ հատվածում.*

> *«Բայց այդ ժամանակ դեռևս կենդանի էր սուրբ և մեծ ծերունի Դանիել քորեպիսկոպոսը, որ սքանչելի մարդ էր։ Սա եղել էր մեծն Գրիգորի աշակերտ և վերակացու ու գլխավոր Տարոն նահանգի եկեղեցիների. Գրիգորի ձեռական իշխանության՝ այդ մասի, կողմերի մեծ դատավարության գործակալության իշխանությունը նա ուներ առանձին. բայց, բացի այդ, նա վերակացու ու հրամանատար էր, տեսուչ ու հոգաբարձու էր Մեծ Հայքի բոլոր եկեղեցիների ամեն տեղ»։*
>
> *[«Բայց յայնժամ դեռ ևս կենդանի էր ծերունի սուրբն մեծն քորեպիսկոպոսն Դանիէլ, այր սքանչելի։ Աշակերտ եղեալ էր սա մեծին Գրիգորի, վերակացու և գլխաւոր եկեղեաց նահանգին Տարօնո, Գրիգորի ձեռական իշխանութեանն՝ կողման մասին գործակալութեանն մեծի դատաւորութեանն՝ ունէր զիշխանութիւնն զայն առանձինն. այլ վերակացու և հրամանատար, տեսուչ և հոգաբարձու ամենայն եկեղեցեացն Հայոց Մեծաց ընդ ամենայն տեղիս»]*[1]*։*

*Այս հատվածից երևում է, որ «մեծի դատաւորութեանն» «գործակալութիւն»-ը հանձնված է եղել հոգևորական բարձր իշխանության։ Պետք է սակայն նկատի ունենալ, որ դատական մի շարք հատուկ գործեր, ինչպես դժվար չէ կռահել աղբյուրների վկայություններից, վերաբերվել են, հավանորեն, թագավորի, իշխանների և նրանց ներկայացուցիչների անմիջական իրավասության։*

*Փավստոսի վկայության մեջ առանձնապես ուշագրավ է, որ «մեծի դատաւորութեանն» «գործակալութիւն»-ը անվանված է նաև «Գրիգորի ձեռական իշխանութիւն»։ Արդ՝ եթե «ձեռական» իշխանությունը հոմանիշ է «գործակալական» իշխանության՝ կարող ենք հաստատապես պնդել, որ «ձեռական իշխանութեան» վերաբերյալ Փավստոսի մի ուրիշ վկայություն սխալ է մեկնվել և հիմք է ծառայել շփոթ և անընդունելի ենթադրությունների պատմական և հայագիտական թե հին և թե նոր աշխատություններում։*

---

1 **Փավստոս**, *III, գլ. ԺԴ, էջ 36։*

Կարևոր այդ մյուս վկայությունը գտնվում է Փավստոսի Պատմության հետևյալ հատվածում.

«Այն ժամանակները սուրբ Ներսեսը շրջում էր իր ձեռական իշխանությունների մեջ. որովհետև տասնևհինգ գավառ ձեռական այն իշխանությանը ունեին իբրև ի բնե սեփական, որ առանձին ու ջոկ էր նրանց հատկացված։ Եվ այն երկրի գլխավոր գավառներն այս էին՝ Այրարատ, Դարանաղի, Եկեղյաց, Տարոն, Բզնունիք, Ծոփք և նրանց մեջ ու նրանց շուրջը եղածները»։

[«Զայնու ժամանակաւ սուրբն Ներսէս շրջէր ընդ իւր ձեռական իշխանութիւնն. զի հնգետասան գաւառ զայն ձեռական իշխանութեան ունէին իբրև սեպհական ի բնմէ, առանձին առոշոգի նոցա էր կարգեալ։ Եւ յայն գաւառ գլխաւոր գաւառք այս էին՝ Այրարատ, Դարանաղէ, Եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք և որ ընդ մեջ նոցա և որ շուրջ զնոքօք»][1]։

Հիմնվելով Փավստոսի այս վկայության վրա՝ ենթադրել են, որ վերոհիշյալ 15 գավառները պատկանել են կաթողիկոսներին իբրև տոհմային սեփականություն[2]։ Միանգամայն անժխտելի է, իհարկե, որ Գրիգոր Լուսավորչի տոհմն ունեցել է գյուղեր և կալվածքներ Հայաստանի զանազան մասերում, սակայն ենթադրել, որ հիշյալ 15 գավառները, այսինքն՝ Արշակունիների գրեթե ամբողջ «ոստան»-ը, կաթողիկոսական տան կալվածքներ էին՝ այդ, անշուշտ, չափազանցություն է և ակներև խեղաթյուրում Փավստոսի վկայության։ Խնդիրը շատ պարզ է։ Փավստոսի թե առաջին և թե այս երկրորդ վկայության մեջ «ձեռական իշխանութիւն» է անվանված «մեծի դատաւորութեան» «գործակալութիւն»-ը, որը «սեպհական» էր, այսինքն՝ ժառանգական և տոհմային, իբրև կաթողիկոսական տան հանձնված առանձին կամ «առոշոգի» իշխանություն։

«Հնգետասան գաւառ»-ները, ուրեմն, արքունի երկրի կամ «ոստան»-ի այն շրջաններն էին, որ տրված էին կաթողիկոսներին իբրև «մեծի դատաւորութեան» «գործակալական» իշխանության շրջաններ։

Բացի վերոհիշյալ մեծ «գործակալութիւն»-ներից, Արշակունյաց Հայաստանում գոյություն են ունեցել, նաև միջնադարյան Եվրոպային, պալատական զանազան պաշտոններ, որ հանձնված են

---

1 Փավստոս, IV, գլ. ԺԴ, էջ 117։

2 Ինճիճյան, Հնախօսութիւն, Գ, էջ 275—276. Գարագաշյան, Քննական պատմութիւն, Բ, էջ 7. Markwart, Südarmenien, էջ 63 և ուրիշներ։

եղել «կրտսեր նախարարություն»-ներին, «սեպուհ»-ներին և կամ մանր ազնվականությանը։

Աղբյուրների մեջ այդ պաշտոններից հիշվում են, օրինակ, «սենեկապետ արքային», «շահախռապետ», «որսապետ», «տակառապետ», «զինակիր», «կարապետ արքայի»։

Նախարարական Հայաստանին վերաբերյալ կարևորագույն ընդհանուր խնդիրները, ինչպես երևում է աղբյուրների վկայություններից[1], քննվում էին «աշխարհաժողով»-ներում, որոնց սկզբնական ծագումը հավանական է ենթադրել նախկին տոհմային կյանքի հնագույն շրջանում։

Աղբյուրների մեջ հիշատակված ժողովների մեծագույն մասը գումարված է եղել կաթողիկոսի ընտրության համար[2]։

Կաթողիկոսական իշխանությանը, ինչպես հայտնի է, ենթակա էին թե արքունի «ոստան»-ի և թե նախարարական շրջանների եպիսկոպոսները։ Հասկանալի է, ուրեմն, որ կաթողիկոսական ընտրությունն ընդհանուր մի խնդիր էր, որ վերաբերում էր ո՛չ միայն արքունի երկրին, այլև նախարարական ամբողջ Հայաստանին։

Ավելի քան հավանական է ենթադրել, որ նման ընդհանուր ժողովներ, որոնց մասնակցում էին «նախարար»-ները, «ազատ»-ները և «գործակալ»-ները, հատկանշային էին և սովորական Հայաստանում, և, հավանորեն, այդ ժողովներում քննվում էին Հայաստանի նաև ներքին և արտաքին կյանքի կարևորագույն հարցերը։

Ագաթանգեղոսի վկայությունների մեջ (գլ. ՃԸ, էջ 403—404) մասնանշված է, օրինակ, որ հեթանոսության վերացումը Հայաստանում որոշված է եղել «ամենեցուն հաւանութեամբ»։ Փավստոսի կարևոր մի վկայության մեջ (III, գլ. ԻԱ) մասնացույց է արված, որ ժողովի հավաքման նպատակն է եղել խնդրել օգնություն Բյուզանդիայից ընդդեմ Սասանյան Պարսկաստանի։ Համաձայն Փավըստոսի մի այլ վկայության (IV, գլ. ԾԱ)՝ նախարարները որոշում են «միաբան, համօրէն, աշխարհօրէն» դադարեցնել կռիվը Պարսկաստանի դեմ[3]։

Ըստ երևույթին, հենց նույն աշխարհաժողովներում մշակվել և ընդունվել են պարտադիր ընդհանուր կանոններ նախարարական

---

[1] Մանանդյան Հ., Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 80—81։

[2] Փավստոս, III, գլ. ԺԷ, IV, գլ. Գ և-ն.։

[3] Ուշագրավ է առանձնապես, որ թե՛ այս և թե՛ նախորդ վկայության մեջ մասնանշված են, բացի բարձր և ստորին ազնվականությունից, նաև «ռամիկշինական»-ները և «դասապետք շինականաց», որոնք ներկա են եղել այս աշխարհաժողովներում։

*ամբողջ Հայաստանի համար։ Սրան ապացույց կարող է ծառայել Շահապիվանի 443 թվի ժողովը։ Եթե նկատի առնվի, որ Շահապիվանի այս ժողովը տեղի էր ունեցել Արշակունյաց թագավորության անկումից 14 տարի հետո, կարելի է վստահորեն ենթադրել, որ կանոնադիր այս «աշխարհաժողով»-ը չէր կարող լինել մի նորմուծություն. նման ժողովներ սովորական են եղել հավանորեն, նաև Արշակունյաց ժամանակ։*

*Նախարարների «գործակալական» պաշտոնների մասին արքունիքում, նրանց մասնակցության մասին «աշխարհաժողով»-ներում՝ աղբյուրների հաղորդած տեղեկությունները շատ չեն և իրենց բովանդակությամբ էլ հաճախ անորոշ են։*

*Ավելի մանրամասն ու ընդարձակ են աղբյուրների վկայությունները հատուկ պարգևների և արտաքին զարդարանքների մասին, որ նախարարները և «գործակալ»-ները ստանում էին թագավորներից։ Այդ պարգևները և զարդարանքները, որ հիշատակված են Ինճիճյանի Հնախոսության մեջ (Բ, էջ 284—287), անվանվում էին «պատիւ» (=*honor*)։ Բացի այդ՝ ամեն մի պաշտոն ևս կոչվում էր «գործ», «գործակալութիւն» (=*office*) և կամ «պատիւ»։ «Պատիւ» են անվանվել, ինչպե՛ս երևում է աղբյուրների վկայություններից[1], նմանապես թագավորական և նահապետական բարձրագույն իշխանությունները։*

[1] *Տե՛ս* Մանանդյան *Հ., Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 84։*

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՅՈԹԵՐՈՐԴ

# «ԱԶԱՏ»-ՆԵՐԸ, «ՈՍՏԱՆԻԿ»-ՆԵՐԸ ԵՎ ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐԸ

«Ազատ»-ները՝ իբրև մանր ազնվականներ։— «Ոստանիկ» տերմինի սխալ մեկնությունները։— Նույն բառի ուղիղ մեկնությունը։— «Ոստանիկ»-ների «արքունի» կամ «յարքունի տանէ» մակդիրի Խորենացու սխալ ըմբռնումը։— Ադոնցի կարծիքը, որ «ոստանիկ» են անվանվել Արշակունյաց տոհմի սեպուհները՝ ճիշտ չէ։— «Ազատ»-ների և «ոստանիկ»-ների փաստական դրությունը և դերը։— Մանր ազնըվականները իբրև զինվորական դաս կամ «ազատազորք»։— «Խոստակ»—feod-ի գոյությունը Հին Հայաստանում։— «Ռամիկ հեծելազորք»-ը։— «Ազատ»-ների մասնակցությունն աշխարհաժողովներին։— «Ազատ»-ների «գործակալական» պաշտոնները։— Փավստոսի համապատասխան վկայության նոր մեկնությունը։— «Ազատ»-ների և «շինական»-ների վճարած դրամատուգանքների 2 առ 1 հարաբերությունը։— «Ազատ»-ների և «ոստանիկ»-ների տնտեսական, իրավական, և կենցաղային կացությունը։— Եկեղեցականների դասը որպես «ազատաց տոհմ»։— Եկեղեցու նախարարականացումը։— Հոգևոր պաշտոնների ժառանգականությունը։— Հոգևորականների ապահարկությունը։— Հոգևորականությանը հատկացված «խոստակ»-ները։—«Հող երդոյ» Ագաթանգեղոսի և Փավստոսի վկայություններում։— «Հող երդոյ» որոշ չափի հողաբաժին է։— «Հող երդոյ» իբրև պայմանական «խոստակ»։— Եկեղեցական կալվածատիրությունը։— Եկեղեցական անշարժ գույքերի անընդհատ աճումը։— Եկեղեցու ստացած տուրքերը և այլ եկամուտները։— Պայքարը եկեղեցու տնտեսական և քաղաքական զորեղացման դեմ։— Հայ հոգևորականության զինվորային բարքերը։— Եկեղեցու մաքառումը դրա դեմ։—
Ընդհանուր եզրակացություն։

Նախարարական կազմակերպությունը, ինչպես տեսանք, հիմնըված էր Արշակունյաց Հայաստանում կալվածատիրության վրա։ Նախարարական տոհմերը ոչ միայն խոշոր կալվածատերերն էին Հին Հայաստանի, այլև, լինելով տեր ընդարձակ երկրների, ունեին այդ երկրներում քաղաքական իշխանության իրավունքներ։

Աղբյուրների վկայություններից դժվար չէ նաև հետևցնել, որ բացի ազնվական այս բարձր խավից, գոյություն է ունեցել մի մեծ շերտ կալվածատեր մանր ազնվականության, որ անվանվում էր

«ազատ» և «ոստանիկ»։ Որ «ազատ»-ները և «նախարար»-ները Արշակունյաց Հայաստանի ազնվականության տարբեր շերտերն էին, այդ երևում է աղբյուրների մի շարք վկայություններից[1], որոնց մեջ նրանք հիշվում են «նախարար»-ներից հետո՝ իբրև բնակչության ինքնուրույն ու առանձին մի խմբակցություն։

Ուշագրավ է, որ «ազատ» բառը ևս, ինչպես և «նախարար» ու «նահապետ», պարթևական բառ է և փոխառություն է հայերենում պարթևերենից (=պհլ. âzât, պրսկ. âzâd)։

Պետք է ասել, որ «ազատ» անունն ունեցել է, բացի վերոհիշյալ սովորական իր նշանակությունից, նաև ավելի լայն իմաստ, և «ազատորեար» ու «ազատանի» տերմինները գործ են ածվել նաև «նախարար»-ների նկատմամբ[2]։

Թե մատենագրական մի քանի հին աղբյուրներում և թե բանասիրական ու պատմագիտական նորագույն երկերում, ինչպես մենք մանրամասն ցույց ենք տվել նախորդ աշխատություններից մեկում[3], սխալ է հասկացվել «ոստան» և «ոստանիկ» բառերի նշանակությունը։ Այս վերջին բառի նշանակությունն ըստ իս անհաջող է լուսաբանված դեռ Խորենացու մոտ, որն իր Պատմության մեջ «ոստանիկ»-ների դասը համարել է «թագաւորական զարմ», որ ծագել է Հայկ նահապետի և Տիգրանի քրոջ Տիգրանուհու սերունդներից[4]։

Ղ. Ինճիճյանը, հետևելով Խորենացուն, «ոստանիկ»-ներին նույնպես համարում է «ի հին զարմից թագաւորացն որ ի Հայկայ» և «ի զարմից Տիգրանուհւոյն», սակայն ենթադրում է իր կողմից, որ «ոստանիկ» կոչվել են «նաև այլ թագաւորազունք Արշակունեաց, սերեալք յարքայորդւոց», որոնց հատկացված են եղել բնակության համար Հաշտյանք, Աղիովիտ և Առբերանի գավառները[5]։

Ն. Ադոնցը ևս այս խնդրում, ընդհանուր առմամբ, համամիտ է Խորենացու հետ։ Նա ևս ընդունում է, որ «ոստանիկ»-ները թագավորական սերունդ են, սակայն ծագել են ո՛չ թե հին թագավորներից, այլ Արշակունիներից։ Նրա կարծիքով՝ «ոստանիկ»-ների կապը թագավորական ընտանիքի հետ նույնը եղած պիտի լիներ.

---

[1] Տե՛ս Փավստոս, IV, գլ. ԺԵ. Ագաթանգեղոս, ՃԺԱ, էջ 412, Ղազար Փարպեցի, Ա, էջ 2, նույնը I, է, էջ 10., նույնը, III, ՀԱ, էջ 128. Եղիշե, VIII, էջ 343 (1852)։

[2] Տե՛ս Խորենացի, III, գլ. Ի. Փավստոս, III, գլ. Ի և Փարպեցի, II, գլ., ԻՋ և ԾԵ։

[3] «Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում», էջ 7—13։

[4] Խորենացի, II, գլ. է, էջ 111—112 և I, գլ. Լ, էջ 82—83։

[5] Ղ. Ինճիճյան, Հնախօսութիւն, II, էջ 132—133 և 160—162։

ինչ որ «սեպուհ»-ների կապը նախարարական ընտանիքների հետ։ «Ոստանիկ»-ները, ուրեմն, նրա ենթադրությամբ, թագավորական տոհմի «սեպուհ»-ներն են։ Սակայն, բացի այդ, հետագայում, «ոստանիկ»-ներ են համարվել նաև նրանք, որոնք իրենց հատուկ ծառայությունների համար ստացել էին Այրարատում որոշ կալվածքներ Արշակունիներից։ Իսկ Արշակունյաց թագավորության անկումից հետո «ոստանիկ» դասի մեջ ներմուծվել են նաև Արշակունիների արքունիքում ծառայող ազատ մարդիկ[1]։

Հիմնական կետում, ինչպես տեսնում ենք, Ադոնցը Խորենացու լուսաբանությունը համարում է ճիշտ և միայն իր կողմից անում է որոշ լրացումներ ու ուղղումներ։

Ինչպես տեսանք, «ոստան» բառի ուղիղ մեկնությունը տվել է Հյուբշմանը, որն այդ բառը համապատասխան է համարում պհլ. ōstān բառին, որ նշանակում է «արքունիքին պատկանող երկիր կամ քաղաք»։ Ընդունելով «ոստան»-ի նշանակությունն իբրև «արքունի երկիր», Հյուբշմանը «ոստանիկ» բառը միանգամայն ճիշտ բացատրել է իբրև արքունի կամ թագավորական երկրից ծագող ազնվականներ կամ զորագնդեր[2]։

Կարևոր են «ոստանիկ»-ի իմաստը որոշելու համար Եղիշեի ու Փարպեցու հետևյալ վկայությունները.

1. Եղիշե, Վասն պատերազմին Վարդանանց, I, էջ 18 (Վենետիկ, 1864)՝

«Գունդ կազմէր [Հազկերտ Բ] ի Հայոց Մեծաց զազատ և զազատորդի և յարքունի տանէ զոստանիկ մարդիկ»։

2. Նույնը, IV, էջ 160՝

«Բազում և այլ ազատ մարդիկ, զոր ոստանիկան անուանին յարքունի տանէ»։

3. Փարպեցի, II, ԽԱ, էջ 73 (Տփղիս, 1904)՝

«Քանզի բազմութիւն փախստէիցն Հայոց, նախարարք և սեպուհք, ոստանիկք և ռամիկք, դիմեալ ի յերկիրն Տայոց՝ ժողովէին առ Հմայակ եղբայր սրբոյ զօրավարին Վարդանայ»։

4. Եղիշե, III, էջ 126՝

«Թէպէտ և ոչ ունէին թագաւոր առաջնորդ, և ոչ յարտաքուստ օգնական զօրք յօտարաց, սակայն անձանց առաքինութեամբ և սուրբ վարդապետաց մխիթարութեամբ համագունդ ամենայն զօրօք նախարարացն յիւրաքանչիւր տանէ ի

---

[1] *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 477—479։

[2] *H. Hübschmann*, Armenische Grammatik, Leipzig, 1895, էջ 215։

*մի վայր գային հասանէին վաղվաղակի. բազում և այլ այ-բուձի, որ յարքունի տանէ անտի էր*[1]»։

*Այս վկայությունների մեջ ամենից կարևորը երկրորդն է, որի մեջ պարզ ասված է, որ «ոստանիկ» են անվանվել «ազատ մարդիկ.... յարքունի տանէ»։ Ուշագրավ է և այն, որ «ոստանիկ»-ների «յարքունի տանէ» զորագունդը հակադրվում է առաջին և չորրորդ վկայությունների մեջ մյուս զորքին, որն անվանված է «գունդ.... ի Հայոց Մեծաց ազատ և ազատորդի» կամ «զորք նախարարացն յիւ-րաքանչիւր տանէ»։*

*Շատ պարզ է, որ «արքունի տուն» չի նշանակում վերոհիշյալ վկայություններում արքայական ընտանիք, այլ գործ է ածված արքունի երկրի համար, որը եղել է ոչ թե նախարարական սեփա-կանություն, այլ թագավորական։*

*«Ոստանիկ»-ները Փարպեցու վկայության մեջ հակադրվում են նաև «սեպուհ»-ներին, որոնք ծագում էին նախարարական տոհ-միցւ*

*Այս վերջին փաստը, որ «ոստանիկ»-ների դասը չի ծագել նա-խարարական տոհմերից, ըստ երևույթին, հայտնի է եղել նաև Խորենացուն։ Խորենացին էլ, ինչպես երևում է նրա վկայություն-ներից, գիտեր, որ «ոստանիկ»-ները եղել են «ազատ մարդիկ», բնակություն են ունեցել ո՛չ թե նախարարական շրջաններում, այլ արքունի երկրում, որ նրանցից կազմված է եղել այն հատուկ զորագունդը, որ կոչվել է «արքունի» կամ «յարքունի տանէ», սա-կայն իրական ու պատմական ծագումն այդ դասի Խորենացու ժա-մանակ եղել է մութ և անհասկանալի։*

*Նրա բացատրությունը, որ «ոստան ազատութիւն»-ը ծագում է թագավորական հին զարմերից, հավանորեն, հիմնված է ո՛չ թե պատմական հաստատ ու որոշ փաստերի վրա, այլ, մոտավորապես, նույն տվյալների վրա, որ հայտնի են և մեզ։ Անհավանական չէ, որ Խորենացին կարող էր արքայական ընտանիքի նեղ իմաստով հասկացած լինել «ոստանիկ»-ների «արքունի» մակդիրը և նրանց ծագումը «յարքունի տանէ»։*

*Այսպես է մեկնել «արքունի տուն»-ը և Գ. Ինճիճյանն իր «Հնա-խօսութեան» մեջ։ Հենվելով Եղիշեի վկայությունների վրա՝ նա էլ վստահաբար հետևցրել է, իբր թե «ոստանիկ»-ներին «այլ պատմա-*

---

[1] *Մատենագրական վկայությունները մանրամասն մեջ են բերված «Ֆեո-դալիզմը Հին Հայաստանում» իմ աշխատության մեջ, էջ 97—98։*

գիրք յայտնի յարքունի տանէ լեալ յիշեն, սովիմք իմանամք զենիկ հայկական զարմն արքայական, որպէս էր ցեղն առաջին»[1]։

Եթե «յարքունի տանէ» իմաստի այս վերջին հասկացողությունն է եղել Խորենացու ենթադրության հիմքը, պարզ է, որ այդ ապացույցն ավելի քան թույլ է, որովհետև «յարքունի տանէ», ինչպես տեսանք, գործ է ածված «ոստանիկ»-ների նկատմամբ արքունի երկրի և ոչ արքունական ընտանիքի նշանակությամբ։

Համոզիչ չեն կարող համարվել և Ադոնցի եզրակացությունները, որովհետև նրա պնդումների միակ ու գլխավոր կռվանը Խորենացու վկայություններն են, որ նա հիմնական կետերում համարել է ընդունելի և արժանահավատ։

Նրա այն ուղղումը, որ «ոստանիկ» են անվանվել ո՛չ թե հնազույն թագավորական սերունդները, այլ Արշակունյաց տոհմի «սեպուհ»-ները և իբր թե «սեպուհ» անունը գործ է ածվել միմիայն նախարարական ընտանիքների անդամների համար՝ ճիշտ չէ[2]։ Մենք տեսանք, որ Փավստոսի Պատմության մեջ Գնելը, Արշակ Բ-ի եղբոր որդին, անվանված է «մեծ սեպուհն Արշակունի»։

Ինչպես տեսնում ենք, «ոստանիկ»-ների թագավորական զարմ լինելը՝ հին թագավորների կամ Արշակունիների, հավանական չէ։ Իրապես, «ոստանիկ» են անվանվել Արշակունյաց բուն երկրի՝ «ոստան»-ի «ազատ»-ները, որոնցից կազմված գունդն անվանվել է «արքունի» կամ «յարքունի տանէ»։

«Ազատ» և «ոստանիկ» տերմինների նշանակությունը որոշելուց հետո՝ պետք է պարզել մանրամասնորեն նրանց սոցիալական դրությունը և փաստական դերը Արշակունյաց Հայաստանում։

Կարևոր այս խնդրի քննությունը ևս ցույց է տալիս, որ Արշակունյաց Հայաստանի նախարարական կազմակերպության նմանությունն ու համապատասխանությունն Արևմտյան Եվրոպայի ֆեոդալիզմին շատ ավելի մեծ է և ակնհայտ, քան մինչև այժմ ենթադրել են։

Արևմտյան Եվրոպայում սենյորների իշխանությանը ենթարկված էին մանր ազնվականները, որոնք, ստացած լինելով սենյորներից որոշ հողաբաժիններ և համարվելով նրանց վասալները, պարտավոր էին ստանձնել հողատու իրենց «տէր»-երի հանդեպ զինվորական և այլ պատվավոր ծառայության պարտականություններ։ Այս մանր ազնվականությունը, որոնցից կազմված էր

---

[1] Ինճիճյան. *Հնախօսութիւն, II, Վենետիկ, 1835, էջ 161—162։*

[2] *Տե՛ս Адонц,* Армения в эпоху Юстиниана, *էջ 451։*

անձյորների զորքը, անվանվում էին հեծյալներ կամ ձիավորներ (chevaliers, Ritter)։

Ճիշտ և ճիշտ նույնը մենք գտնում ենք նաև Արշակունյաց Հայաստանում։

Այստեղ ևս «ազատ»-ներից և «ոստանիկ»-ներից, որ գտնվում էին բդեշխությունների, նախարարությունների կամ Արշակունիների իշխանության տակ՝ կազմված էր նախարարական և արքունի շրջանների հեծելազորքը։ Մատենագրական աղբյուրների մեջ այդ զորքն անվանվում է «ազատազօրք», «ազատագունդ զօրք», «ազատագունդ բանակ» կամ «ազատախումբ բանակ»։

Քրիստենսենը մատնացույց է արել, որ Սասանյան Պարսկաստանում ևս «ազատ»-ների դասին պատկանել են ձիավորները (chevaliers), որոնք զորքի լավագույն մասն էին։ Այս ձիավորների մեծագույն մասը խաղաղ ժամանակ ապրում էին սեփական կալվածքներում, մշակում իրենց հողերը և զբաղվում իրենց գյուղացիական գործերով[1]։

Նույն դրությունը, հավանորեն, եղած պիտի լիներ նաև Արշակունյաց Հայաստանում։

Հայաստանի նախարարական կազմակերպության առանձնահատկություններն ուսումնասիրելիս՝ առանձնապես կարևոր էր պարզել «ազատ»-ների և «ոստանիկ»-ների հողատիրության խնդիրը և, մանավանդ, պայմանական հողատիրության՝ feod-ի կամ Lehn-ի, գոյությունը Հին Հայաստանում։ Արևմտյան Եվրոպայում, ինչպես հայտնի է, feod-ը կամ Lehn-ը կազմում էր միջնադարյան ֆեոդալիզմի հիմնական հատկանիշներից մեկը։ Հարկավոր էր, ուրեմն, որոշել, թե արդյոք գոյություն չե՞ն ունեցել նախարարական Հայաստանում ևս արևմտյան feod-ը կամ նման հողատիրական կարգեր։

Այս խնդիրը մանրամասն քննված է իմ «Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության» աշխատության մեջ[2]։ Ինչպես մանրամասն ցույց եմ տվել այդ աշխատության մեջ, Ստեփանոս Օրբելյանի Պատմության մեջ բերված նվիրագրերի բովանդակությունների ուշադիր քննությամբ ո՛չ միայն որոշվում է պայմանական հողատիրության գոյությունը նախարարական Հայաստանում, այլև պարզվում է, որ միջնադարյան feod (ֆրանս. fief, գերմ. Lehn) տերմինին Հայաստանում համապատասխանում

[1] Տե՛ս Christensen, L'Iran sous les Sassanides, էջ 111—113։

[2] Տե՛ս «Տեղեկագիր» պետ. համալսարանի, Երևան, 1928, № 4, էջ 43—52. նաև՝ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», էջ 104—118։

էր «խոստակ» բառը, իսկ feudatarius-ին (գերմ. Lehnshalter)՝ «խոստակդար»-ը։ Բացի այդ, հիմնվելով մեր ստացած ուշագրավ ու կարևոր եզրակացությունների վրա՝ կարելի էր միանգամայն հավանական համարել, որ նախարարական Հայաստանում «ազատ»-ների և «ոստանիկ»-ների մեծագույն մասը եղել են «խոստակդար»-ներ, այսինքն՝ ստացած են եղել նախարարական շրջաններում և արքունի երկրում որոշ հողաբաժիններ կամ անշարժ գույք օգտատիրության իրավունքով (dominium utile) և հատուկ պայմանով, որ հողատու իրենց «տէր»-երի հանդեպ ստանձնելու էին զինվորական և այլ պատվավոր «ծառայութեան» պարտականություններ։ «Ազատ»-ներին և «ոստանիկ»-ներին տրված «խոստակ»-ները, ինչպես մենք ենթադրել էինք, համարվել են ժառանգական և «հայրենի»։

Պետք է սակայն մատնանշել, որ Սասանյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ, բացի «ազատազորք»-ի, մարզպանական Հայաստանում գոյություն է ունեցել նաև հատուկ հեծելազորք, որ կազմված է եղել «ռամիկ»-ներից[1]։

Ինձ թվում է, որ այս «ռամիկ այրուձին», որը կարող է որևէ առնչություն ունենալ Փավստոսի հիշատակած «կարճազատ»-ների հետ, առանձնապես կարևոր նշանակություն էր ստացել, գլխավորապես, այս ժամանակաշրջանում։ Սասանյան Պարսկաստանը, ինչպես հայտնի է, հայկական հեծելազորքն ուղարկում էր հաճախ պատերազմելու իր հեռավոր արևելյան սահմանները։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ հայ ազնվականությունն ամեն կերպ աշխատելու էր խուսափել ու ազատվել այդ նոր ու խիստ ծանր պարտականությունից։ Հայ «ազատազորք»-ը հենց ինքը, հավանորեն, շահագրգռված էր, որ այդ ծանր զինապարտությանը մեծ չափերով մասնակից լինեն նաև «ռամիկ»-ները։

Այս «ռամիկ» զինվորները, ըստ երևույթին, սոցիալական ավելի բարձր դիրք են ունեցել, քան հասարակ «շինական»-ները։ Այդ կարելի է կռահել Ատովմի, նրա որդու ու ընկերների վկայաբանության վրացերեն թարգմանությունից, որի մեջ հիշված են այս «ռամիկ հեծեալ»-ները և «ռամիկ» բառը թարգմանված է «չինեբուլի», որ նշանակում է «ականավոր»[2]։

Միջնադարյան Եվրոպայում վասալները, ստանալով սենյոր-

---

[1] Տե՛ս Փարպեցի, III, գլ. ՀԸ, էջ 144 և «Կանոնք Դունայ ժողովոյն», Վաղարշապատ, 1905, էջ 23։

[2] Տե՛ս Джавахов, Государственный строй древней Грузии и древней Армении, էջ 133։

ներից օգտատիրության իրավունքով հատուկ հողաբաժիններ կամ անշարժ գույք՝ ոչ միայն ստանձնում էին իրենց «տէր»-երի հանդեպ զինվորական պարտականություններ, այլև պարտավոր էին օգնել նրանց խորհուրդով (consilio) ժողովներում, նաև մասնակցելու էին սենյորիայի վարչական ու դատական գործերին։ Ավատառուների այս պարտականությունները, որ տարբեր էին գյուղացիության ու ռամիկ ժողովրդի պարտականություններից, համարվում էին ազնիվ «ծառայութիւն»։

Արդ՝ ուշագրավ է խիստ ու հետաքրքիր, որ նախարարական Հայաստանում ևս նման պարտականություններ ունեցել են «ազատ»-ները և «ոստանիկ»-ներն իրենց «տէր»-երի հանդեպ։

Վերև մենք տեսանք, որ ընդհանուր աշխարհաժողովներին նախարարների հետ միասին մասնակցում էին նաև «ազատ»-ները։ Պետք է ենթադրել, որ նախարարական երկրներում ևս գումարվել են նույնպես տեղական ժողովներ՝ մասնակցությամբ «ազատ»-ների։

Մենք հիշել էինք նույնպես, որ Արշակունյաց արքունի ամենակարևոր «գործակալութիւն»-ները հանձնարարված են եղել «աւագ նախարարութիւն»-ներին և կաթողիկոսությանը, իսկ «գործակալական» մանր պաշտոնները՝ մանր ազնվականությանը։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ նախարարական երկրները ևս ունեցել են իրենց «գործակալութիւն»-ները, որոնք, հավանորեն, հանձնված են եղել, գլխավորապես, «սեպուհ»-ներին և «ազատ»-ներին։

Փավստոսը, նկարագրելով Արշակունյաց թագավորության վերանորոգումն Արշակ Բ-ի ժամանակ՝ արքունի «գործակալ»-ների մասին տալիս է հետևյալ կարևոր վկայությունը.

> «Եվ Հայաստան երկրի թագավորությունը,— ասում է Փավստոսը,—նորոգվեց ու զվարթացավ ինչպես առաջ՝ մեծամեծներն իրենց գահերում, գործակալներն իրենց աստիճաններում։.... նաև ուրիշներն այս տոհմերից ու ավելի ցածրերից, որոնք, գործակալ անունը կրելով՝ բազմում էին բարձերի վրա թագավորի առջև պատիվները գլուխներին,— բացի մեծամեծ նահապետներից ու տանուտերերից՝ միայն նրանք. որոնք գործակալ էին՝ կազմում էին ինը հարյուր բարձ, որ ներս էին բերվում պալատական ուրախության հրավիրախրախճույքների ժամանակ՝ առանց հաշվելու այն անձերին, որոնք ոտնկա սպասավորության գործակալներ էին»։

[«Եւ նորոգեցաւ զուարթացաւ տէրութիւնն թագաւորութեանն Հայաստան երկրին որպէս և զառաջինն՝ մեծամեծքն

յիւրաքանչիւր գահու և գործակալքն յիւրաքանչիւր չափու:.... Եւ այլ յայսմ ազգաց և ի խոնարհ, որ գործակալս անուն բարձիւք առաջի արքային պատիւ ի գլուխ բազմէին, թող զնահապետս մեծամեծս և զտանուտեարս՝ որք գործակալք միայն էին, ինն հարեւր բարձ, որ մտանէր ի ժամ տաճարին ուրախութեանն բազմակալացն կարգելոց. թող զոտնկայս գործակալութեանն սպասու»][1]:

Հիմնվելով այս վկայության վրա՝ բանասերներից ոմանք ենթադրել են, որ Արշակունիների ժամանակ գոյություն է ունեցել Հայաստանում մոտ 900 նախարարական ընտանիք:

Ադոնցը թեև ընդունում է նույնպես, որ Փավստոսի այս տեղեկությունը վերաբերում է բացառապես նախարարական դասին, սակայն չափազանցություն է համարում Փավստոսի 900 թիվը և միաժամանակ մատնացույց է անում, որ նախարարական միևնույն տոհմից կարող էին լինել մի քանի «գործակալ»-ներ[2]:

Արդ՝ ճի՞շտ է արդյոք, որ Փավստոսի վկայությունը վերաբերում է բացառապես նախարարական տոհմերին և նրանց թվին: Հավանակա՞ն է արդյոք, որ վերոհիշյալ արքունի «գործակալ»-ները եղել են, անպայման, նախարարական դասից:

Ենթադրել, որ պալատում ներկա գտնվող բոլոր «գործակալ»-ները նախարարներ էին, այդ, անշուշտ, բռնազբոսիկ մի բացատրություն է, որ բնավ չի հետևում Փավստոսի վկայության բովանդակությունից: Ըստ իս՝ Արշակունյաց արքունիքում և արքունի երկրում Հայաստանի ավագ նախարարներին հանձնված են եղել միմիայն ամենաբարձր «գործակալութիւն»-ները, իսկ երկրորդական կարգի պաշտոնները վարել են, գլխավորապես, «ազատ»-ները կամ «ոստանիկ»-ները:

Հավանական է, ուրեմն, որ Փավստոսի հիշած «գործակալ»-ների մեծագույն մասը ո՛չ թե նախարարներ էին, այլ մանր ազնվականներ: Հետաքրքիր է առանձնապես, որ Սասանյան Պարսկաստանում ևս, ինչպես մատնացույց է արել Քրիստենսենը, վարչական ստորին պաշտոնները վարում էին «ազատ»-ները[3]:

Շահապիվանի ԺԶ կանոնում ասված է, որ

«առանց գաւառի եպիսկոպոսին չ՛իշխէ լինել եպիսկոպոս կամ երէց, կամ ազատ ոք դատաւորաց»[4]:

---

1 Փավստոս, IV գլ. Բ, էջ 67—68:

2 Տե՛ս *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 239 և 467—468:

3 Տե՛ս *Christensen*, L'Iran sous les Sassanides, էջ 111—113:

4 Տե՛ս «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, Թիֆլիս, 1913, էջ 76:

Այս հատվածում, ինչպես տեսնում ենք, իբրև դատավորներ հիշվում են, հատկապես, «ազատ»-ները։

«Ազատ»-ների և «ոստանիկ»-ների սոցիալական ու տնտեսական դրությունը պարզելու համար կարող են իբրև կռվան ծառայել Շահապիվանի կանոնները տուգանքների մասին, որ վճարելու էին հանցապարտ «ազատ»-ները և «շինական»-ները։

Համաձայն այդ ժողովի կանոնների՝ սահմանված էին դրամատուգանքներ հետևյալ հարաբերությամբ.

1. Ամուսնությունը պոռնկությամբ պղծող «ազատ»-ից 200 դրամ, իսկ «շինական»-ից՝ 100 դրամ, որ տրվելու էր կարոտյալներին (կանոն Գ)։

2. Ամուսնական կնոջից բաժանվող «ազատ»-ից 1200 դրամ, իսկ «շինական»-ից՝ 600 դրամ, որ տրվում էին կնոջը (կանոն Ե)։

3. Աղջիկ առևանգող «ազատ»-ից 1200 դրամ («փոխանակ անարգանացն»), իսկ «շինական»-ից՝ 600 դրամ (կանոն Է)։

4. Հարցուկներին դիմող «ազատ»-ից 200 դրամ, իսկ «շինական»-ից՝ 100 դրամ, որ տրվելու էին կարոտյալներին (կանոն Թ)։

5. Մեռելների վրա կոծ դնող «ազատ»-ից 100 դրամ, իսկ «շինական»-ից՝ 50 դրամ, որ բաշխվելու էին աղքատներին (կանոն ԺԱ)։

Բոլոր հիշյալ դեպքերում տուգանքների հարաբերությունն է 2 առ 1։ Այս հարաբերությունը կարող է, անշուշտ, ուշագրավ մի նշան համարվել, որ հինգերորդ դարի առաջին կեսում, երբ սահմանված էին այդ կանոնները, «ազատ»-ների սոցիալ-տնտեսական դրությունը թեև տարբեր է եղել «շինական»-ների դրությունից, սակայն այդ տարբերությունը մեծ չէ եղել։

«Ազատ»-ների և «ոստանիկ-ների մեծագույն մասը, որոնցից կազմված է եղել Արշակունյաց Հայաստանի հեծելազորքը և ստորին պաշտոնեությունը՝ ունեցել է, ըստ երևույթին, համեմատաբար փոքր «խոստակ»-ներ կամ կալվածքներ։ Տնտեսական իր հզորությամբ այս դասը կարող է մոտավորապես համեմատվել միջնադարյան Անգլիայի eorl-երի հետ, որոնց վճարում էին արնագին երկու անգամ ավելի շատ, քան գյուղացիներին կամ eorl-երին։

«Ազատ»-ների ու «շինական»-ների իրավական ու կենցաղային տարբեր կացության մասին մատենագրական աղբյուրների մեջ կան միայն մի քանի միջանկյալ, բայց հետաքրքրական ցուցումներ։

Հանցավոր «ազատ»-ները, ինչպես պարզ վկայում են Շահապիվանի կանոնները, չեն ենթարկվել մարմնական պատիժների։

*Նմանապես՝ նրանց չէր կարելի ուղարկել աշխատանքի գողենոց կամ ուրկանոց։ Հանցանք գործելիս՝ նրանք վճարում էին միայն դրամատուգանքներ*[1]*։*

*Ուշադրության արժանի է նաև, որ Փարպեցու ու Եղիշեի մոտ «ազատ»-ներն անվանվում են «որսատենչ»*[2]*, «փափկացեալ»*[3]*։ Իրենց արտաքին տեսքով, ինչպես վկայում է դարձյալ Փարպեցին, «ազատ»-ները տարբերվել են «շինական»-ներից*[4]*։*

* * *

*Միջնադարյան Եվրոպայում ֆեոդալական աշխարհիկ կարգերը և ֆեոդալականացման զորեղ հոսանքը խորապես ազդել էին քրիստոնեական եկեղեցու զարգացման վրա, տալով նրա վարչական ու տնտեսական կազմակերպությանը ֆեոդալական ձևակերպում և հատուկ գունավորում։*

*Նույնը, բնականաբար, մենք տեսնում ենք նաև Հին Հայաստանում։*

*Այստեղ ևս, ինչպես մատնացույց է արել Ադոնցը*[5]*, հայ եկեղեցին, գտնվելով նախարարական Հայաստանի միջավայրում, մեծ չափերով ենթարկվել էր նախարարական կարգերի ազդեցության։*

> *«Եկեղեցու ազգայնացումը,— ասում է Ադոնցը,— համազոր էր նրա նախարարականացման կամ ֆեոդալականացման, որովհետև քաղաքական վարչակարգը Հայաստանում ուներ ֆեոդալական բնույթ և իշխանությունը բաժանված էր բազմաթիվ իշխանական տոհմերի մեջ, բնականաբար, նաև եկեղեցական իշխանությունը պետք է համակերպվեր ներգործող միջավայրին և ընդուներ նույն միջավայրի պատրաստի ձևերը»*[6]*։*

*Եվ իրոք՝ ինչպես քաղաքական իշխանությունը, նույնպես և եկեղեցականը Հին Հայաստանում ապակենտրոնացած և բաժանված են եղել ըստ նախարարությունների, և, բացի արքունի երկրից ու «ոստան»-ից, նաև մյուս մեծ ու առաջնակարգ «տէրութիւն»-ներում գոյություն են ունեցել առանձին եպիսկոպոսություններ։*

*Համաձայն Ադոնցի քննության՝ այդ եպիսկոպոսներից արքու-*

---

1 *Տե՛ս «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ղլտճյանի, էջ 63, 65, 68, 70, (կանոն Գ, Ե, Ժ, ԺԲ)։*

2 Փարպեցի, *I, Է, էջ 10։*

3 Եղիշե, *III, էջ 115, Վենետիկ, 1864։*

4 Փարպեցի, [illegible], էջ [illegible]։

5 *Адонц*. Армения в эпоху Юстиниана, *էջ 322—370։*

6 *Նույնը, էջ 361։*

նի «ոստան»-ի եպիսկոպոսապետը կամ կաթողիկոսը մյուս եպիսկոպոսների հանդեպ ունեցել է նույն դերը, ինչ որ թագավորը նախարարական շրջանների իշխանների հանդեպ։ Եպիսկոպոսները, ինչպես և նախարարական երկրների իշխանները անվանվել են «տէր» և համարվել այդ երկրների հոգևոր ներկայացուցիչները։

Նախարարական միջավայրի ազդեցությանը պետք է վերագրել, որ հոգևորականությունը Հին Հայաստանում, ընդհանուր առմամբ, նույնպիսի փակ, կղզիացած մի դաս է եղել, ինչպես և «նախարար»-ների, «ազատ»-ների ու «շինական»-ների դասերը։

Արշակունիների ժամանակ, ինչպես վկայում է Փավստոսը, կաթողիկոսությունը, ավելի ճիշտ՝ եպիսկոպոսապետությունը, ժառանգական է եղել Գրիգոր Լուսավորչի և Աղբիանոսի ընտանիքներում։ Նույնը կարելի է ենթադրել նաև նախարարական ինքնուրույն շրջանների եպիսկոպոսությունների մասին։ Քահանայության ժառանգական լինելը թե հնագույն և թե հետագա դարերում հայտնի է ազգային եկեղեցական ժողովների կանոններից։

Հոգևոր կոչման այդ ժառանգականությունը, որ խիստ օտարոտի էր և արտասովոր քրիստոնեական ընդհանուր եկեղեցու տեսակետից, քննության էր առնվել Տրուլլի 692 թվի ժողովում և անհանդուրժելի համարվել իբրև նմանողություն հրեական սովորույթի։ Իրապես, հայ եկեղեցու այդ առանձնահատկությունը ո՛չ թե հետևողություն էր կամ ազդեցություն հրեական ժառանգական քահանայապետության, ինչպես այդ ենթադրել են Գելցերը[1] և Կարստը[2], այլ արդյունք էր Հին Հայաստանի սոցիալական ու ներքին պայմանների և եկեղեցական դասի ֆեոդալականացման կամ նախարարականացման[3]։

Որ հոգևորականներն առանձին ինքնամփոփ մի դաս էին ընդհանրապես՝ այդ երևում է մասամբ նաև եկեղեցականների վերաբերյալ հատուկ տերմիններից՝ «ժառանգաւորք եկեղեցւոյ», «տոհմ քահանայից», «ժառանգութիւն քահանայական» ևն., որ սովորական են մատենագրական հին աղբյուրներում։

Իբրև սոցիալական անջատ մի խմբակցություն՝ հոգևորականությունը դասված է եղել ազնվականների շարքում և իր ապահարկությամբ հավասարված է համարվել «ազատ»-ների դասին։

---

[1] **Գելցեր**, *Համառօտ պատմութիւն Հայոց, թարգմ. Գր. Գալեմքյարյանի, Վիեննա, 1897, էջ 43։*

[2] *Karst*, Sempadscher Kodex, Strassburg, 1905, Bd. II, էջ *43—44։*

[3] *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ *369։*

Աղբյուրների մեջ շեշտված է հաճախ, որ Տրդատ թագավորը և Գրիգոր Լուսավորիչը Հայոց եկեղեցին համարել են «ազատաց տոհմի» կարգում։ Եկեղեցու այդ «ազատություն»-ը հասկացվել է, գլխավորապես, իբրև ազատություն այն հարկերից, որ պարտավոր էին տալ «շինական»-ները։

Եկեղեցու «ազատություն»-ը և եկեղեցականների «ազատաց տոհմ»-ում կարգվելը, բացի նրանց ապահարկությունից, ունեցել է նաև ուրիշ ուշագրավ հիմքեր։

Հին Հայաստանի եկեղեցական կազմակերպության հիմնական առանձնահատկություններից մեկն այն է եղել, որ եկեղեցու ստորին պաշտոնեությանը ևս, ինչպես և «ազատ»-ներին, տրված են եղել feod—«խոստակ»-ներ։

Ագաթանգեղոսը իր Պատմության մեջ, նկարագրելով քրիստոնեության տարածումը Հայաստանում Գրիգոր Լուսավորչի ու Տրդատ Մեծի ժամանակ, հաղորդում է, որ Տրդատ թագավորը եկեղեցական դասի տնտեսական ապահովության համար հատկացրել էր հատուկ հողամասեր ավաններում և ագարակ տեղերում։

«Դրանից հետո,— վկայում է Ագաթանգեղոսը,— նա [Գրիգոր Լուսավորիչը], գալով Մեծ Հայաստան աշխարհի՝ ամբողջ երկրի շրջանները, շինեց եկեղեցիներ բոլոր աշխարհներում, գավառներում, կողմերում, քաղաքներում, ավաններում, շեներում, գյուղերում ու ագարակներում։ Նույնպես և թագավորը իր ամբողջ իշխանության մեջ, առհասարակ, տվեց քահանայական պաշտոնեության սպասարկման համար բոլոր ագարակ տեղերում չորս չորս «հող երդոյ», իսկ ավաններում՝ յոթ յոթ «հող երդոյ», որ մատուցեց Աստուծուն որպես նվեր պտղի»։

[«Յետ այսորիկ հասեալ նմա բովանդակ ի վերայ ամենայն երկրին սահմանացն Հայոց Մեծաց աշխարհին, շինելով եկեղեցիս յամենայն աշխարհս, ի գաւառս, ի կողմանս, ի քաղաքըս, յաւանս, ի շէնս, ի գեօղս և յագարակս։ Սոյնպէս և թագաւորն յամենայն իշխանութեան իւրում առ հասարակ՝ գրեաց չորս չորս հողս երդոյ՝ յամենայն ագարակ տեղիս, իսկ յաւանսն եօթն եօթն հողս երդոյ՝ ի ծառայութիւն սպասաւորութեան քահանայութեանն, նուէր պտղոյ Տեառն մատուցանէր»][1]։

Փավստոսը ևս նույն այս հողերի մասին ունի հետևյալ ուշագրավ վկայությունը.

«Եվ բացի այդ,— ասում է Փավստոսը,— Պապ թագավորը

[1] Ագաթանգեղոս, գլ. ծժթ, 837, էջ 436։



23—340

բանագրավեց եկեղեցու հողերը, որ Մեծն Գրիգոր քահանայապետի ժամանակ Տրդատ թագավորը տվել էր եկեղեցուն Հայոց ամբողջ երկրում պաշտամունքի սպասավորության համար, որովհետև յոթ հողից հինգը գրավեց արքունիք և միայն երկու հող թողեց։ Եվ հողի համեմատ յուրաքանչյուր գյուղում թողեց երկուական անձ՝ մի երեց և մի սարկավագ, իսկ մյուսներին՝ երեցների ու սարկավագների եղբայրներին ու որդիներին, վերցրեց իր մոտ սպասակալական ծառայության համար»։

[«Եւ հատ ևս յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ի սպաս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց։ Զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, եւ զերկուսն միայն թողոյր երկուս հողս։ Եւ ըստ հողոյն թողոյր երկուս երկուս առ գիւղ մի երէց և սարկաւագ, և զայն ի սպասու կացուցանէր յիւր ի ծառայութեան զեղբարս և զորդիս երիցանցն և սարկաւագացն»][1]։

Ինչպես տեսնում ենք, Ագաթանգեղոսի և Փավստոսի այս հատվածները հիմնական խնդրում, որ Տրդատ թագավորը գյուղական եկեղեցիներին տվել էր հատուկ հողեր, միանգամայն իրար համապատասխանում են։ Ուշագրավ այս փաստը, որի մասին հաղորդում են իրարից անկախ և՛ Ագաթանգեղոսը, և՛ Փավստոսը, պետք է ընդունել իբրև հավաստի ու ստույգ։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ Տրդատ Մեծը տնտեսապես պետք է ապահովեր գյուղական հոգևորականներին, և շատ բնական է, որ հոգևորականության վարձատրման ամենահավանական միջոցը կարող էր լինել այդ ժամանակ այն հողաբաշխումը, որ վկայված է հիշյալ հեղինակների մոտ։

Ագաթանգեղոսի վկայությամբ՝ գյուղական հոգևորականությանը հատկացված են եղել «չորս չորս հողս երդոյ յամենայն ագարակ տեղիս, իսկ յաւանսն եօթն եօթն հողս երդոյ»։ Իսկ Փավստոսի վկայության մեջ հիշատակված են միայն յոթը հողերը, որոնցից Պապ թագավորը հինգը գրավել էր «յարքունիս»։ Ագաթանգեղոսի վկայությունը, որ այս կետում ավելի ընդարձակ է ու որոշ, ամենայն հավանականությամբ պետք է համարվի նաև ավելի ուղիղ։ Շատ հավանական է, որ ագարակ տեղերում, ուր եկեղեցու սպասավորների թիվը ավելի պակաս կլիներ, քան ավաններում, հողաբաժինները ևս պետք է լինեին ավելի քիչ։

---

[1] Փավստոս, V, գլ. ԼԱ, էջ 237։

Արդ՝ ի՞նչ է նշանակում «Հող երդոյ»։ Հունարեն Ագաթանգեղոսում «Հողս երդոյ» թարգմանված է ؛ χἄρουρας Հունարեն ἄρουρα բառը նշանակում է վարելահող կամ հողի տարածության որոշ չափ, ինչպես հռոմեական jugerum-ը կամ գերմանական Hufen-ը։ Ուրեմն՝ Ագաթանգեղոսի թարգմանը «հող երդոյ» հասկացել է կամ վարելահողի իմաստով, կամ համարել է իբրև որոշ չափի հողաբաժին։ Երկրորդ ենթադրությունն ավելի հավանական է, որովհետև ἄρουρα բառը հողաբաժնի հատուկ իր նշանակությամբ ավելի է համապատասխանում «հող երդոյ» հայերեն բնագրին, քան վարելահողի ընդհանուր իր նշանակությամբ։ Հիմնվելով Ագաթանգեղոսի հունարեն թարգմանության վրա՝ կարելի է, ուրեմն, ենթադրել, որ «հողք երդոյ» որոշ չափի հողաբաժիններ են։

Իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ ես ցույց էի տվել[2], որ այս հողամասերը հատկացվել էին գյուղական հոգևորականությանը, որպես «խոստակ»-ներ, այսինքն՝ ժառանգական օգտատիրության իրավունքով (dominium utile)։ Նույն հողերի նկատմամբ գերագույն սեփականության իրավունքը dominium directum) պատկանել է եկեղեցուն։ Հողատիրության այդ ձևը պայմանական էր. ուստի՝ եթե հոգևորականների «ծառայությունն» անհնարին էր դառնում նրանց տգիտության կամ ծանր հանցավորության պատճառով՝ եկեղեցին իրավունք ուներ «խոստակ»-ները ետ գրավել և տալ «արժանաւոր»-ներին։

Պարզ է, ուրեմն, որ ավատականությունն այնքան խոր արմատներ էր ունեցել նախարարական Հայաստանում, որ անգամ գյուղական հոգևորականության՝ տնտեսական ապահովումը հողամասերով հարմարեցված է եղել ավատական ընդհանուր կարգերին։ Հոգևորականությունը ոչ միայն ապահարկ է համարվել «ազատ»-ների նման, այլև ավատառու է եղել, ինչպես և «ազատ»-ների հոծ բազմությունը։

Հայաստանի նախարարական կազմակերպության ազդեցությունը հայ եկեղեցու վրա, ինչպես տեսնում ենք, եղել է ավելի մեծ և խորաթափանց, քան միջնադարյան ֆեոդալական Արևմուտքում։

Բացի ավաններում և ագարակներում հոգևորականությանը տրված հողերից, եկեղեցին ունեցել է նաև ուրիշ կալվածքներ, որոնց մասին կան մի քանի կարևոր վկայություններ Ագաթանգեղոսի և Փավստոսի Պատմություններում։

[1] Տե՛ս *Paul de Lagard*, Agathangelus und die Akten Gregors von Armenien, Goettingen, 1887, էջ 76։

[2] Տե՛ս էջ 104—109։

Ագաթանգեղոսի հաղորդած տեղեկությունների համաձայն՝ հայ եկեղեցին քրիստոնեության տարածման սկզբնական իսկ շրջանում ստացել էր հեթանոսական մեհյանների ոսկին, արծաթը, նաև գյուղերը և կալվածքները։

1. Ագաթանգեղոս, ԾԸ, 781, էջ 406 (Տփղիս, 1909)՝

«Զդաստակերտսն և զսպասաւորսն քրմօքն հանդերձ [«Անհատական դիցն», «Տրի դից»—Արտաշատում] և նոցին գետնովքն և սահմանօքն ի ծառայութիւն նուիրեցին եկեղեցւոյ սպասաւորութեանն»։

2. Նոյնը, ԾԹ, 784 էջ 408՝

«Եւ զգեօղն (Թորդան) ամենայն դաստակերտօքն հանդերձ և սահմանօքն յանուն եկեղեցւոյն նուիրէին»։

3. Նոյնը, ԾԹ, 785, էջ 409՝

«Եւ զաւանն ամրականաւն հանդերձ [«ամուր տեղին Անի»] ի ծառայութիւն եկեղեցւոյն նուիրէին»։

4. Նոյնը, ԾԹ, 786, էջ 410՝

«Եւ զգանձս երկոցուն մեհենացն [«Անահտական»՝ «յԵրէզն աւանի» և «Արամազդայ»՝ «ի Թիլն աւանի»] աւարեալ ժողովեալ՝ ի նուէր սպասուց սուրբ եկեղեցւոյն Աստուծոյ թողուին տեղեօքն հանդերձ»։

5. Նոյնը, ԾԺ, 790, էջ 412՝

«Եւ զգանձսն մթերեալս [«Միհրական մեհենին»՝ «ի Բագայառիճն»] աւար հարկանէին և աղքատաց բաշխէին և զտեղիսն նուիրէին եկեղեցւոյ»։

Փավստոսը, խոսելով Արիստակեսի թաղման մասին՝ վկայում է, որ «տարան զնա ի Ծոփաց գաւառէ, և եդին զնա յԵկեղեաց գաւառի, ի Թիլն աւանի, ի կալուածս Գրիգորի հօրն իւրոյ»[1]։

Նույն պատմիչը, նկարագրելով Ներսես կաթողիկոսի թունավորումը և թաղումը, վկայում է դարձյալ, որ կաթողիկոսի մարմինը «բարձին յաւանէն ի խախ գեղջէ, ուր գործն կատարեցաւ, տարան ի Թիլն յաւան յիւր գեւղն»[2]։ Իբրև կաթողիկոսական կալվածքներ Փավըստոսի մոտ հիշվում են Աշտիշատը և Ամոք գյուղը[3]։ Իսկ Հովհաննես կաթողիկոսը հաղորդում է, որ Արամոնք գյուղը Կոտայքում

«սեպհական էր տան կաթողիկոսարանի նախ քան զլարշարանս սրբոյն Գրիգորի յարքայէն Տրդատայ նմա իսկ հոգե-

---

[1] Փավստոս, III, գլ. Բ, էջ 6։

[2] Նույնը, V, գլ. ԻԴ, էջ 223։

[3] Նույնը, IV, գլ. ԺԴ, էջ 117 և V, գլ. Զ, էջ 274։

ցատուր պայմանաւ ընձեռեալ, որոյ և յետկար վճռան պահի մինչև ցայսօր ժամանակի»[1]։

Ինձ թվում է, որ Արշակունյաց ժամանակ ո՛չ միայն Թիլը, Աշտիշատը, Ամոքը և Արամոնքը, այլև Ագաթանգեղոսի մոտ հիշված բոլոր մեհենական կալվածքները գտնվել են Գրիգոր Լուսավորչի տոհմի տնօրինության տակ։

Թեև եկեղեցականների կալվածատիրության մասին մատենագրական աղբյուրների տեղեկությունները խիստ աղքատիկ են և կցկտուր, սակայն պատահական այս վկայություններից անգամ կարելի է կռահել, որ, բացի կաթողիկոսական տնից, խոշոր կալվածքներ ունեցած պիտի լինեին նաև մյուս եպիսկոպոսությունները։

Եվ իրավի, Փավստոսի պատմելով՝ Խոսրով Կոտակի թագավորության ժամանակ, երբ բնաջինջ էին արվել Մանավազյանների և Որդունիների նախարարական տոհմերը, նրանց կալվածքները՝ «Մանավազակերտը յուր բոլոր սահմաններով ու նրա շուրջը եղած գավառակով» ստացել էր, ինչպես վերև տեսանք, Աղբիանոսը, իսկ «Որդորու գյուղը յուր բոլոր սահմաններով»՝ Բասենի եպիսկոպոսը[2]։

Փավստոսի մի ուրիշ վկայությունից հայտնի է դարձյալ, որ Հովհան եպիսկոպոսը, Փառեն կաթողիկոսի որդին, խաղ ու կատակով զվարճացնում էր Հայոց թագավորներին և փոխարենը ստանում նրանցից գյուղեր և ագարակներ[3]։

Ինքնըստինքյան պարզ է, որ հոգևորականության տնօրինության տակ գտնվող հողային եկեղեցապատկան սեփականությունը ժամանակի ընթացքում պետք է անընդհատ աճեր և բազմապատկվեր, որովհետև եկեղեցին շարունակ ստանում էր իբրև նվեր նոր հողեր և կալվածքներ, ինչպես առանձնապես շեշտված է «Հայոց կանոնագիրք»-ում[4]։

Նվիրատվությունների մասին, որ ստացել էին եկեղեցիները և քահանայապետերը Մանուել սպարապետից՝ հաղորդում է նաև Փավստոսն իր Պատմության հետևյալ հատվածում.

«Բազում մասունս յընչից իւրոց տայր յեկեղեցիս և ի վկայանոցս, և բազում գանձս տայր ցքահանայապետսն. և ապա ինքն մեռանէր»[5]։

Եկեղեցական կալվածքներից պետք է տարբերել կաթողիկոս-

---

[1] Հովհաննես կաթողիկոս, Թիֆլիս, 1912, էջ 104—105։

[2] Փավստոս, III, գլ. Դ, էջ 10։

[3] Նույնը, VI, Ժ, էջ 277—278։

[4] Տե՛ս «Կանոնագիրք», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 45։

[5] Փավստոս, V, ԽԴ, էջ 266։

ների և մյուս հոգևորականության այն անշարժ գույքը, որ պատկանել է նրանց իբրև անձնական սեփականություն։ Ղազար Փարպեցու Պատմության մեջ հիշատակված է, օրինակ, Սահակ կաթողիկոսի անձնական անշարժ սեփականությունը, որ նա տվել էր իբրև ժառանգություն Համազասպ Մամիկոնյանի որդիներին «մինչև ցյաւիտեան»[1]։

Հայ եկեղեցին, որ հարուստ էր հողերով և կալվածքներով, ուներ և ուրիշ արտոնություններ։

Ֆինանսական տեսակետից եկեղեցուն ենթարկված էր ամբողջ երկիրը, որ տալիս էր նրան տասանորդ, պտուղ և հաս։ Արշակունյաց ժամանակ կաթողիկոսներին էր հանձնված, ինչպես տեսանք, «մեծի դատաւորութեան գործակալութիւն»-ը, որը նույնպես կարևոր եկամտի մի աղբյուր էր։

Շատ պարզ է, որ եկեղեցու տնտեսական այս ուժը հիմք էր ծառայելու նաև նրա քաղաքական հզորության։

Եկեղեցու այս զորեղացումը, նրա հողատիրության անընդհատ աճումը պետք է, բնականաբար առաջ բերեին մեծ դժգոհություն և հարուցանեին աշխարհական իշխանությունների բուռն դիմադրությունը։ Ինչպես Արևմտյան Եվրոպայում Կարոլինյան Կարլ Մարտելի ժամանակ, նաև միջնադարյան մի շարք մյուս երկրներում, նույնպես և նախարարական Հայաստանում, եկեղեցական և վանքապատկան հողերի կուտակման դեմ ձեռք էին առնվել կտրուկ միջոցներ։

Փավստոսի վկայությունից հայտնի է[2], որ Պապ թագավորը գյուղական եկեղեցիներին հատկացված յոթական հողաբաժիններից հինգը գրավել էր «յարքունիս»։ Բացի այդ, նա հրամայել էր վերացնել տասանորդի և պտղի եկեղեցական տուրքերը և ոչնչացնել Ներսես կաթողիկոսի հիմնած բարեգործական զանազան հաստատությունները։ Սակայն Պապի ձեռք առած այդ միջոցները կրում էին միայն ժամանակավոր բնույթ։

Պապից հետո եկեղեցու դրությունը նորից սկսել էր ամրանալ թե տնտեսապես և թե քաղաքականապես։

Հայ հոգևորականության համար բնորոշ էր, հատկապես, որ նա, հավասարեցված լինելով «ազատ»-ների դասին, իր կենցաղի ու վարքուբարքի նկատմամբ ենթարկվել էր մեծ չափով զինվորական այդ ազնվականության ազդեցության։

Զինվորական դասի անդամներն էին հաճախ, որ հոգևորական

[1] Ղազար Փարպեցի, I, ԺԸ, էջ 37։
[2] Փավստոս, V, գլ. ԼԱ, էջ 234—237։

էին դառնում և ստանձնում բարձր պաշտոններ եկեղեցու ղեկավարության մեջ, նաև վանքերում։

Մինչև հոգևորական ձեռնադրվելը զինվորական էր, ինչպես տեսանք, Ներսես Ա կաթողիկոսը։ Նրա հայրը և հորեղբայրը՝ Աթանագինեսը և Պապը՝ չկամեցան ստանձնել իրենց հոր հոգևորական բարձր պաշտոնը և գերադասեցին մնալ զինվորական ծառայության մեջ։ Կորյունի վկայությունից հայտնի է նույնպես, որ Մեսրոպ Մաշտոցը հոգևորական դառնալուց առաջ դիվանադպրի պաշտոնով ծառայում էր արքունիքում և առաջադեմ էր նաև զինվորական արվեստում։

Թե որքան մեծ է եղել զինվորական կենցաղի ազդեցությունը եկեղեցականների վրա՝ երևում է Փավստոսի հետաքրքրական մի տեղեկությունից։ Նրա պատմելով՝ չորրորդ դարում Ջավեն կաթողիկոսը կարգադրած է եղել, որ քահանաները հագնեն զինվորական զգեստ[1]։ Ուշագրավ է նաև այն, որ հոգևորական դասի անդամները, որոնք մեծ մասամբ «խոստակդար» էին և համարվում էին իրավապես «ազատաց տոհմ»-ում, թողնում էին հաճախ իրենց կարգը և ծառայում հեծելազորքի մեջ։ Հայտնի է նույնպես, որ հայ եկեղեցին, դեմ լինելով հոգևորականության զինվորամոլ այդ բարքերին. համաձայն եկեղեցական ժողովների հատուկ կանոնների, որ մեջ են բերված իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ[2], արգելում էր թե, ընդհանրապես, զինվորների սպասավորությունը եկեղեցիներում և թե վերոհիշյալ սովորությունները։

Ամփոփելով մեր ասածները եկեղեցական դասի մասին՝ կարող ենք եզրակացնել, որ հայ եկեղեցու ֆեոդալականացումը նախարարական Հայաստանի ուշագրավ երևույթներից մեկն է։ Եկեղեցական դասի հզորությունը թե Հայաստանում և թե միջնադարյան Եվրոպայում հիմնված է եղել կալվածատիրության վրա։ Հայ հոգևորականությունը, համասարեցված լինելով «ազատ»-ների դասին, Արշակունյաց ժամանակ ունեցել է ապահարկության նման արտոնություններ, ինչպես և ավագականների իշխող դասը։ Ուշագրավ են, մասնավորապես, եկեղեցական պաշտոնների ժառանգական լինելը որոշ տոհմերում և feod-«խոստակ»-ների գոյությունը, որոնք ժառանգական օգտատիրության իրավունքով տրվում էին հոգևորականներին։

Այս վերջին երկու առանձնահատկությունները հայ եկեղեցու նախարարականացման ամենացայտուն ցուցանիշներն են։

---

[1] **Փավստոս**, *VI, գլ. Բ, էջ 271։*

[2] *Տե՛ս էջ 145—146։*

# ԳԼՈՒԽ ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ

## «ՌԱՄԻԿ»-ՆԵՐԸ ԵՎ «ՇԻՆԱԿԱՆ»-ՆԵՐԸ

Շինականությունը՝ իբրև Հին Հայաստանի տնտեսական գլխավոր նեցուկը։— «Ռամիկ» և «շինական» տերմինների տարբերությունը։— «Շինական»-ների սոցիալական դրությունը։—Նրանց «ծառայութիւն» ու «սարկութիւն»-ը.—«ի հարկի ծառայութիւն»-ը՝ որպես «շինական»-ների գլխավոր պարտականությունը։— «Շինական»-ների իրավական դրությունը։— Ղազար Փարպեցու վկայությունն իր ծագման մասին.— այդ վկայության սխալ մեկնությունը.— Փարպեցին Փարպի գյուղի «անազատ շինական» էր։— «Շինական»-ների ճորտանման վիճակը։— Գյուղացիների նման վիճակը Սասանյան Պարսկաստանում։— Խորենացու «փախչողք ի ժառանգութենէ» վկայությունը կարող է վերաբերել «շինական»-ներին։— Ազատ գյուղացիության մնացորդներ։— Խորենացու վկայությունը գյուղերի ու գավառների «առանձնականութեանց» մասին։— «Բնակք», «ձեռատունկք» և «կրտսերք» շինականներ։— «Շինական»-ների վշտաբեր կյանքը։— «գեղջուկ» և «շինական»։— «Շինական»-ների արտաքինը և նրանց ցույց տրվող արհամարհանքը։— «Շինական»-ները ենթակա էին մարմնական պատիժների։— Ճորտ բառի առաձգականությունը՝ կիսազատ և ստրկանման ճորտեր։— Ճորտական գյուղացիության իրավական ու տնտեսական տարբեր դրությունը հողային ու տնտեսային տիրություններում (=Grundherrschaft ու Gutsherrschaft)։— Արշակունյաց Հայաստանի կալվածատիրական սիստեմը հողային տիրություն էր (Grundherrschaft)։— «Շինական»-ների ճորտական վիճակը ժառանգական հպատակություն էր և ոչ ստրկանման ճորտություն։— «Շինական»-ների դրության նմանությունը կոլոնների դրության։— «Շինական»-ների և «ազատ»-ների վճարած տուգանքների հարաբերական չափը։— «Շինական»-ների «քսակագին» հողերը։— Կոլոնները և «շինական»-ները չէին կարող վարել պետական պաշտոններ։— Համայնական հողատիրությունը Հին Հայաստանում։— Հավասար հողաբաժանում «ըստ մարդաքուի».— Խորենացու վկայությունը.— Ադոնցի մեկնությունը։—Հողերի «հասարակ» և «ըստ մարդաքուի» բաժանումը ո՛չ թե «սեպուհական», այլ համայնական հողատիրության կարգ է։— Համայնական հողատիրությունը Վրաստանում։— «Հողք երդոյ», հավանորեն, այն հատուկ հողաբաժիններն են, որ տրվել են «երդ»-երին։— «Կեանք», «արար», «կալուած» և նրանց սխալ մեկնությունը։— «Վիճակ» բառը, որն ունի գյուղացիական հողաբաժնի իմաստ, համայնական հողատիրության տերմին է։— «Շինական»-ների վճարելիք տուրքերը և հարկերը։— Աշխատապարտ ռենտան՝ «կոռ»-ը և «պահակութիւն»-ը.— հայկական «կոռ»-ի մասին Կարստի սխալ ենթադրությունը.— «Կոռ»-ի ընդարձակ նշանակությունը։

Ֆեոդալիզմի շրջանում, ինչպես տեսանք, տնտեսապես և քաղաքականապես առաջնակարգ և գերիշխող դեր էր կատարում խոշոր կալվածատիրությունը։ Նույն շրջանում՝ իբրև արտադրության հիմնական ճյուղ՝ գերակշռող նշանակություն ուներ, բնականաբար, գյուղատնտեսությունը։ Գյուղացիությունն էր, անշուշտ, կամ շինականությունը՝ բնակչության այն արտադրող ու աշխատող և շահագործվող շերտը, որ ապրուստի միջոցներ էր հայթայթում կալվածատեր ազնվականության և հանդիսանում Հին Հայաստանի տնտեսության գլխավոր նեցուկը։

Շինական դասի սոցիալական-տնտեսական վիճակը Հին Հայաստանում հայոց ներքին կյանքի ամենադժվար ուսումնասիրելի խնդիրներից մեկն է։ Մատենագրական աղբյուրները տալիս են այդ դասի մասին պատահական և խիստ աղոտ ու անորոշ վկայություններ։ Աղբյուրների այդ մութ ու վիճելի ակնարկները քննության են առնված «Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում» ընդարձակ իմ աշխատության մեջ[1]։ Նույն աշխատության մեջ խոսել ենք նաև «ռամիկ»-ների մասին։

Կանգ առնենք նախ «ռամիկ» տերմինի վրա, որի ստուգաբանությունը, ծագումը և բուն իմաստը, ինչպես մանրամասն ցույց ենք տվել վերոհիշյալ աշխատության մեջ (էջ 22—25), սխալ են մեկնված նորագույն ուսումնասիրություններում։

Ուղիղ պետք է համարել, անտարակույս, Հյուբշմանի բացատրությունը։

Պրոֆ. Հ. Հյուբշմանը «ռամիկ» բառը թարգմանում է «հասարակ ժողովուրդ, խուժան, աշխարհական, աշխարհիկ մարդ» (gemeines volk, gemein, weltlich, Laie) և կարծում է, որ հայերեն «ռամ» և «ռամիկ»-ը փոխառություն են պարթևերենից (=ramik) և համապատասխանում են նոր պարսկերեն ram և rama բառերին, որ նշանակում են «խումբ, հոտ» (Schar Herde)[2]։ Համաձայն այս բացատրության, «ռամիկ»-ի սկզբնական նշանակությունը պետք է լինի՝ հասարակ կամ խաժամուժ ժողովուրդ։ Եվ իրավի՝ հենց այս նշանակությամբ գործ է ածված «ռամիկ»-ը պատմական ու մատենագրական աղբյուրներում։

Նույն աղբյուրների քննությամբ որոշվում է, որ «ռամիկ»-ները կազմել են Հին Հայաստանի բնակչության ստորին խավը և, որպես

---

[1] Տե՛ս «Պետական Համալսարանի գիտական տեղեկագիր», Երևան, 1925, № 1, էջ 3—45։

[2] *Hübschmann*, Armenische Grammatik, Leipzig, 1895, էջ 233։

այդպիսին, հակադրվել են, ինչպես և «շինական»-ները, «նախարար»-ներին, «սեպուհ»-ներին, «ազատ»-ներին, նաև հոգևորականներին ու «ոստանիկ»-ներին։ Նրանց ստորադաս այդ դրությունը երևում է աղբյուրների վկայություններից, որ մեջ են բերված իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ (էջ 149—150)։

Ուշադրության արժանի է, որ ամեն անգամ, երբ սոցիալական ավելի բարձր դասերի կողքին հիշատակվել են «ռամիկ»-ները, միանգամայն ավելորդ է եղել հիշել նրանց հետ միասին նաև «շինական»-ներին։ Եվ այդ շատ լավ հասկանալի է։ «Ռամիկ» բառն ինքն արդեն նշանակում էր հասարակ ժողովուրդ և մատնանշում էր ժողովրդի ամբողջ բազմությունը, որ չէր պատկանում ազնվական կամ հոգևորական դասերին։ Նույն բառի տակ շատ պարզ է, որ արդեն իսկ հասկացվում էր և շինականությունը։

«Շինական»-ների «ռամիկ» լինելը միանգամայն անվիճելի է, որովհետև մատենագրական վկայությունների մեջ այդ պարզ կերպով շեշտված է. օրինակ, Փավստոսի վկայության մեջ՝ «ի շինականաց անգամ ռամիկ մարդկանն» (III, ԻԱ), կամ Խորենացու մոտ՝ «զռամիկ շինականս» (III, է)։

Բայց կարելի՞ է արդյոք դրանից հետևցնել, ինչպես այդ անում են բանասերները, որ «ռամիկ» բառը և «շինական»-ը հոմանիշներ են և գործ են ածվել սոցիալական միևնույն դասի համար։

Այս եզրակացությունը, որ սովորական է ու ընդհանուր բանասիրական ու պատմագիտական բազմաթիվ աշխատություններում՝ հիմնավոր չէ։ «Ռամիկ» Հին Հայաստանում կոչվել են ո՛չ միայն «շինական»-ները, այլև քաղաքների բնակչության ստորին խավերը, ինչպես այդ երևում է մատենագրական աղբյուրների վկայություններից[1]։

Ուշադրության արժանի է, որ հինգերորդ դարի հայերեն թարգմանություններում «ռամիկ» բառը մեծ մասամբ համապատասխանում է հունարեն δῆμος և δημότης բառերին, որ հետքրիստոնեական մատենագրության մեջ ունեցել են, գլխավորապես, խառնիճաղանջ բազմության, ամբոխի ու հասարակ ժողովրդի իմաստ։

Ուրեմն, ինչպես տեսնում ենք, «ռամիկ»-ը ո՛չ թե հոմանիշ է «շինական» բառի, այլ նրա նշանակությունն ավելի ընդարձակ է ու ընդհանուր։

---

[1] Տե՛ս Ղազար Փարպեցի, III, ՂԹ, էջ 178, Հովհաննես կաթողիկոս, էջ 162 և այլուրեք։

«Ռամիկ» կարող էին անվանվել ո՛չ միայն «շինական»-ները, այլև, ընդհանրապես, ժողովրդի ամբողջ բազմությունը, լիներ նա գյուղացի թե քաղաքացի, եթե նա չէր պատկանում ազնվական կամ հոգևորական դասերին։

Որովհետև Հին Հայաստանը, գլխավորապես, երկրագործական ու գյուղացիական երկիր էր, շատ բնական է, որ այստեղ «ռամիկ»-ների ստվար մեծամասնությունը կազմում էին «շինական»-ները։

Անցնենք այժմ «շինական»-ների դրության որոշմանը Հին Հայաստանում։

«Շինական»-ների սոցիալական դրության մասին պատմական ու մատենագրական աղբյուրների տեղեկությունները թեև շատ քիչ են ու անորոշ, սակայն այդ տեղեկություններից իսկ երևում է, որ «շինական»-ները, լինելով Հին Հայաստանում առանձին դաս՝ կազմել են երկրի գլխավոր հարկատու ուժը։

Ուշադրության արժանի է առանձնապես, որ Դվինի ժողովի իններորդ կանոնում եկեղեցականների «ազատութիւն»-ը հակադրվում է «շինական»-ների անազատ դրության, որ անվանվում է «ծառայութիւն» և «սպրկութիւն»։

«Յորժամ ազատք զիւրեանց զերդ և զմարդ բաժանեն,— ասված է այդ կանոնի մեջ,— յոլովք չարակնութեամբ առնեն. զժառանգաւորս եկեղեցւոյ ջանան ի ծառայութիւն և ի սպրկութիւն արկանել, մոլեալք և մոլորեալք ի քրիստոնէական հաւատոյս»[1]։

Դվինի այս կանոնի շարունակությունից պարզ երևում է, որ երդերի ու մարդկանց այս բաժանումը վերաբերում է «ազատ»-ներին պատկանող «շինական»-ներին։

Արդ՝ ի նկատի ունենալով, որ «շինական»-ները համարվել են կալվածատեր ազնվականության հատուկ գույքը, ինչպես և նույն կանոնի հետաքրքիր ակնարկները «շինական»-ների ծառայութեան և «սպրկութեան» մասին՝ կարելի է հավանական համարել, որ «շինական»-ները պետք է լինեին ճորտացած և կապված հողին[2]։

Որ գյուղական «երդ»-երը, որպես հատուկ գույք, պատկանել են ազնվականներին՝ այդ երևում է նաև Մովսես Կաղանկատվացու վկայությունից Աղվանից Վաչե արքայի մասին։ Այս արքան, հրա-

---

[1] «Կանոնք Դունայ», Վաղարշապատ, 1905, Թ, էջ 19։

[2] Տե՛ս J. Karst, Sempadscher Kodex, zw. Band, Strassburg, 1905, էջ 44—42։ Համեմատե՛ նաև Խ. Սամվելյան, Մխիթար Գոշի դատաստանագիրքը Վիեննա, 1911, էջ 297—299։

ժարվելով գահից, խնդրում է Պարսից Պերոզ (459—484) թագավորից տալ իրեն սեփական իր բաժինը, որ հորից էր ստացել՝ հազար «երդ», այսինքն՝ 1000 տուն «շինական»-ներ[1]։

Իմ կարծիքով, «շինական»-ների «ծառայութեան» տնտեսական կողմը շատ լավ արտահայտված է հայ մատենագրության ուշագրավ մի դարձվածքում, որը մեկնված է իմ վերոհիշյալ աշխատության մեջ[2]։

Փավստոսը, նկարագրելով Արշակունյաց Հայաստանի ապըստամբ ծայրագավառների նվաճումը Մուշեղ Մամիկոնյանի ջանքերով, նրանց բնակչության մասին մի քանի անգամ կրկնում է հետևյալ դարձվածքը.

1. Փավստոս, V, գլ. Թ, էջ 214՝

«Եւ զբնակիչս երկրին ի հարկի ծառայութեան կացուցանէր»։

2. Նույնը, V, գլ. ԺԹ, էջ 217՝

«Ի հարկի ծառայութեան թագաւորին Հայոց Պապայ զամենեսեան առ հասարակ կացուցանէր»։

3. Նույնը, V գլ. ԺԸ, էջ 217՝

«ԵՒ ինքեանք կային ի հարկի ծառայութեան»։

Նիկ. Ադոնցը ենթադրում է, որ «ի հարկի կացուցանել» կամ ավելի լրիվ՝ «ի հարկի ծառայութեան կացուցանել» նշանակում է ո՛չ թե հարկ դնել, այլ հնազանդեցնել[3]։ Այս ենթադրությունը միանգամայն անհաջող է։ Ադոնցը հենց ինքը շատ ճիշտ դիտել է, որ Փավստոսը երկու ուրիշ հատվածում «ի հարկի ծառայութեան կացուցանէր» դարձվածքի փոխարեն ունի՝ «դնէր հարկ մնացորդացն»[4]։

Փավստոսի համապատասխան հատվածների համեմատությունից պարզ երևում է, որ «ի հարկի կացուցանէր» կամ «ի հարկի ծառայութեան կացուցանէր» դարձվածքները գործ են ածված հարկ դնելու և ոչ հնազանդեցնելու իմաստով[5]։

Ինչպես տեսնում ենք, «ընդ հարկօք» կամ «ի հարկի ծառայութիւն»-ը հատուկ ու առանձին մի տերմին է, որով որոշվում էր «շինական»-ների «ծառայութեան» հիմնական բնույթը։ «Ընդ հարկօք» կամ «ի հարկի ծառայութիւն»-ը, լինելով «շինական»-ների

[1] Մովսես Կաղանկատվացի, I, գլ. Ժ, էջ 14, Մոսկվա, 1860։

[2] Տե՛ս «Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին», էջ 28—30։

[3] *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 480։

[4] Փավստոս, V, գլ. Ժ, էջ 214 և ԺԱ, էջ 214։

[5] Համեմատե՛ նաև Ներսէս Բյուզանդացի, Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւն, Տփղիս, 1900, էջ 367։

գլխավոր պարտականությունը՝ տարբերվել է «նախարար»-ների ու «ազատ»-ների «ծառայութիւն»-ից հատկապես նրանով, որ նրա սոցիալական-տնտեսական հիմքը կազմել է հարկատվությունը, որից ազատ են եղել ազնվական արտոնյալ դասերը։ Այս վերջինների «ծառայութիւն»-ը ինչպես երևում է աղբյուրների վկայություններից, համարվել է «ի սպասու ծառայութիւն», իսկ ստորուկներինը՝ «ի ստրկաց կարգի ծառայութիւն» կամ «ծառայութիւն ստրկութեան»[1]։

Բացի տնտեսական դրությունից, հարկավոր է հանգամանորեն որոշել նաև «շինական»-ների իրավական դրությունը։

Ակադ. Ջավախիշվիլին, քննության առնելով այս խնդիրը, հանգել է այն եզրակացության, որ «շինական»-ներն ազատ չեն եղել, այլ ստորադրված են եղել ազնվականներին։ Նրա եզրակացության գլխավոր ու միակ հիմքը այն է, որ մատենագրական աղբյուրներում «շինական»-ները հակադրվել են «ազատ»-ներին և անվանվել «անազատ»[2]։

Իմ կարծիքով, միակ այս ապացույցն ամուր ու հաստատուն չէ։ Միանգամայն ճիշտ է, որ «շինական»-ները Հին Հայաստանում եղել են «ազատ»-ներին հակադիր առանձին դաս և աղբյուրներում կոչվել են «անազատ»-ներ, սակայն այդ փաստն ինքնին դեռ բավական չէ, որ նրանց կարելի լինի համարել ոչ ազատ այդ բառի այժմյան իրավական իմաստով։ «Ազատք» և «անազատք» թեև թարգմանվել են ռուսերեն՝ свободные և несвободные, սակայն այդ թարգմանության դեմ կարող են լինել լուրջ առարկություններ։ Ավելի ուղիղ կլինի այդ բառերը թարգմանել՝ азаты և неазаты։

Անթույլատրելի է, ընդհանրապես, հայոց իրավական ու սոցիալական հին տերմինները, ինչպես՝ «անազատ», «ազատ», «սեպհական», «սեպհականութիւն» և այլն, թարգմանել կամ լուսաբանել այդ բառերի ժամանակակից աշխարհաբար իմաստի համեմատ, այլ հարկավոր է ամեն անգամ որոշել իրավական այն հատուկ բովանդակությունը, որ նրանք ունեցած պիտի լինեին Հին Հայաստանում։

Որպեսզի կարելի լինի ցույց տալ «շինական»-ների անազատ լինելն այդ բառի այժմյան հասկացողությամբ՝ անհրաժեշտ է ուսումնասիրել նրանց իրավական դրության վերաբերյալ նյութերը շատ ավելի մանրազնին կերպով, քան այդ արել է Ջավախիշվիլին։

---

[1] Տե՛ս «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», էջ 156—157։

[2] *И. Джавахов*, Государственный строй..., էջ 134։

Մատենագրական աղբյուրները, դժբախտաբար, հնարավորություն չեն տալիս քննության առնելու և լուսաբանելու այդ խնդիրը հանգամանորեն, իր բոլոր մանրամասնություններով, ինչպես այդ արված է նորագույն ուսումնասիրություններում Արևմտյան Եվրոպայի և Ռուսաստանի գյուղացիության նկատմամբ։ Աղբյուրների մեջ կան միայն կողմնակի մի քանի ցուցումներ, որոնցից, իմ կարծիքով, կարելի է հետևցնել, որ նախարարական Հայաստանում ես «շինական»-ները գտնվել են, ընդհանուր առմամբ, ճորտանման վիճակում։

Այդ ցուցումներից ամենից ուշագրավն է, բացի Դվինի վերոհիշյալ իններորդ կանոնից, նաև Ղազար Փարպեցու կարևոր մի վկայությունը, որ գտնվում է նրա՝ Վահան Մամիկոնյանին գրած «Թուղթի» մեջ։

Ղազար Փարպեցի, էջ 188 (Տփղիս, 1904)՝

«Արդ՝ իմ նախորդ վարք ու բարքը գիտեն տեր Ներսեհը և Հրահատ Կամսարականը, նաև Սյունյաց աշխարհի վերոհիշյալ եպիսկոպոսը։ Եվ դու եկար ու ինձ փնտրեցիր և, գտնելով այն աշխարհում՝ տարար տուն՝ ոչ իբրև աղքատ տնից կամ մանկտիներից մեկին և ոչ իբրև քեզ օտար մեկին կամ որևէ մեկի ծառայի. որովհետև պարեգոտավորները [=եկեղեցականները] ազատ են Քրիստոսի սիրում։ Իսկ նա, որ ինձ պարեգոտ տվեց և զատեց աշխարհի ծառայությունից և առիթ եղավ մեզ ազատության, տեր Աղանը՝ քո, տյառն, քեռին էր»։

[«Արդ՝ զառաջին կելոյն իմոյ զվարս տէր Ներսեհ և Հրահատ Կամսարական գիտեն, զՍիւնեացն՝ յառաջագրեալ եպիսկոպոսն աշխարհին։ Եւ դու յայց ելեալ խնդրել զիս, և գտեալ յաշխարհին յայնմ՝ ածեր ի տուն, ոչ իբրև զաղքատ զոք ի կազմածէն և ի մանկտւոյն, և ոչ իբրև զօտար զոք ի քէն և կամ զծառայ ուրուք. քանզի պարեգօտաւորք ազատեալ են ի Քրիստոս։ Իսկ որ զառոյցն զիս պարեգօտիւք ի ծառայութենէ աշխարհիս և ազատութեան եղև մեզ առիթ, տէր Աղան՝ քո տեառն քեռի էր»]։

Կարևոր այս վկայությունը, ինչպես ես մատնանշել էի, սխալ է մեկնված Զարբանալյանի հին գրականության պատմության մեջ։ Հիմնվելով այս հատվածի վրա՝ Զարբանալյանը ենթադրել է, որ Ղազար Փարպեցին «ընտիր և ազնուական ցեղէ էր»[1]։ Իսկ Փարպե-

[1] Տե՛ս Զարբանալյան, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ, 1897, էջ 392։

*ցու այն վկայությունը, որ ինքը Գուգարաց Աշուշա բդեշխի տանը սնվել ու դաստիարակվել էր Վահան Մամիկոնյանի և նրա եղբայրների հետ*[1]*, առիթ է տվել նրան նույնիսկ կարծելու, որ Փարպեցին, հավանաբար, ազգական է եղել Մամիկոնյանների տոհմի։*

*Գրիգոր Խալաթյանցը ևս Փարպեցուն համարում է «ազատ կամ յազգէ ազնուաց», «որդի առն ունևորի» և հնարավոր է համարում նրա «մերձավոր կամ հեռավոր ազգակցությունը» Մամիկոնյանների հետ*[2]*։*

*Այս ենթադրություններից և ոչ մեկը հավանական չէ։ Վերոհիշյալ հատվածում «ոչ օտար զոք ի քէն» խոսքերով Փարպեցին ակնարկում է, որ ինքն օտար չէ Վահանին, իբրև նրա սննդակիցը մանկության հասակում։ Որ այդ խոսքերը չեն կարող այլ կերպ հասկացվել և հիմք ծառայել Փարպեցու ազնվական ծագման՝ այդ ավելի քան պարզ երևում է նույն հատվածի վերջին պարբերությունից, որի մեջ Փարպեցին իր ծագման մասին վկայում է, որ իրեն, հոգևորական դարձնելով, ծառայությունից զատուցել և ազատության առիթ էր եղել Տեր Աղսնը, Վահան Մամիկոնյանի քեռին։*

*Եթե Փարպեցին «ազատ»-ների կարգն էր անցել հոգևոր կոչում ընդունելուց հետո, սակայն միևնույն ժամանակ, ինչպես ինքն է վկայում, չէ եղել «ծառայ ուրուք»*[3]*, ոչ էլ «աղքատ ոք ի կազմածէն և ի մանկտւոյն», կարելի է վստահ կերպով ենթադրել, որ նա եղել է, հավանորեն, «շինական» Փարպի գյուղից։*

*Փարպեցու ծագման մասին այս նոր ու կարևոր ենթադրությամբ ո՛չ միայն որոշվում է նրա շինական ծագումը, այլև լուսաբանվում է «շինական»-ների իրավական դրության հետաքրքիր մի առանձնահատկությունը։*

*Որպեսզի Փարպեցին կարողանար հոգևորական դառնալ և ստանալ «ազատութիւն», որ հատուկ էր եկեղեցականներին, ինչպես տեսնում ենք, հարկավոր է եղել նրան «ծառայութիւն»-ից զատել։ Եթե «շինական»-ները լինեին ազատ՝ դժվար թե հարկավոր լիներ նրանց ազատագրումը նախկին «ծառայութիւն»-ից։*

*Փարպեցու վկայության մեր նոր մեկնությունը մոտավորապես պարզում է «շինական»-ների սոցիալական ընդհանուր դրությունը Հին Հայաստանում։*

---

[1] **Փարպեցի,** *Թուղթ, էջ 188, Տփղիս, 1940։*

[2] **Գր. Խալաթյանց,** *Ղազար Փարպեցի և գործք նորին, Մոսկվա, 1883։*

[3] *«Ծառայ»՝ Փարպեցու այս հատվածում նշանակում է ըստ իս ստրուկ։*

Ըստ երևույթին, նրանք, իբրև «անազատ»-ներ, հարկատու հատուկ «ծառայությամբ» կապված են եղել իրենց հողի և «տէր»-երի հետ։ Նրանց «ծառայության» մանրամասնությունները թեև մութ են մնում ու անհայտ, սակայն ընդհանուր գծերով հաստատվում է, որ նրանց «ի հարկի ծառայութեան» վիճակն ունեցել է, հավանաբար, որոշ չափով ճորտության բնույթ։

Հավանական է նույնպես, որ շինականությունը, լինելով իր մեջ պարփակված առանձին դաս, որից դուրս գալը հնարավոր է եղել, ինչպես տեսանք, կալվածատիրոջ համաձայնությամբ, իր իրավունքներին ու պարտականություններին կապված էր մնում ժառանգաբար։ Ինչպես «ազատ»-ների դասի մեջ ժառանգական է եղել զինվորական ծառայությունը, հոգևորական դասի մեջ՝ քահանայական պաշտոնը, այնպես էլ շինական դասի համար, ըստ երևույթին, ժառանգական եղած պիտի լիներ նրան հատուկ հարկատու «ծառայութիւն»-ը։

Ուշագրավ է, որ սոցիալական նման վիճակում եղել են նաև Սասանյան Պարսկաստանի գյուղացիները, որոնց մասին մի քանի կարևոր տեղեկություններ տալիս է Տանսարը Տաբարիստանի թագավորին գրած իր նամակում[1]։ Խրիստենսենի կարծիքով, այդ նամակը գրված պիտի լինի Խոսրով Ա-ի հաղթություններից հետո, 557—570 թվականներին[2]։

Տանսարն իր այդ նամակում մատնանշում է, որ Պարսկաստանում «ամեն մեկը պետք է զբաղվեր այն գործով, որի համար ստեղծված նրան ստեղծել էր»[3]։ Ընդհանրապես փոխադրումը մի դասից մյուսն արգելված է եղել, սակայն կարող էր այդ տեղի ունենալ բացառաբար և միայն այն դեպքում՝ երբ գյուղացին աչքի էր ընկնում իր ընդունակություններով։

> «Այդ դեպքում,— վկայում է Տանսարը,— զեկուցանում են այդ մասին թագավորին և երկար հարցափորձից հետո մոգպետների ու հերպետների մասնակցությամբ՝ եթե սրանք ընդունում էին թեկնածուի արժանիքը, փոխադրում էին նրան ուրիշ դասի մեջ»[4]։

[1] Տե՛ս հրատարակությունն և թարգմանությունն J. Darmesteter-ի, „Journal Asiatique“, I, էջ 200 շարուն. և 502 շար.։

[2] Տե՛ս Christensen, L'empire des Sassanides, Kobenhavn, 1907, էջ 112։

[3] Տե՛ս Christensen, L'empire des Sassanides, էջ 46, նաև Lettre de Tansar, էջ 215 և 520։

[4] Christensen, էջ 46, Tansar, էջ 214 և 519։

Հիմնվելով Տաբարիի վկայության վրա[1]՝ Խրիստենսենը ենթադրում է նաև, որ Սասանյան Պարսկաստանում գյուղացիները, լինելով անազատ, ամրացած էին կալվածատիրոջ հողին և պարտավոր էին կատարել նրա մոտ «կոռ»-ի աշխատանքներ[2]։

Գյուղացիության ճորտական այդ դրությունը Սասանյան Պարսկաստանում և նրանց դասային փակ ու կաստայական վիճակը՝ դարձյալ կարևոր ցուցմունքներ են, որ անուղղակի կերպով հաստատում են «շինական» դասի կացության նման պայմանները նաև նախարարական Հին Հայաստանում։

«Շինական»-ների սոցիալական դրության պարզաբանումն այնքան կարևոր խնդիր է, որ ավելորդ չի լինի մեջ բերել նաև Խորենացու կարևոր մի վկայությունը՝ իբրև նեցուկ և կռվան վերոհիշյալ եզրակացության։

Նկարագրելով իր «Ողբ»-ի մեջ հայ ժողովրդի զանազան խավերի արատավոր բարքերը՝ ժողովրդականների մասին Խորենացին ասում է հետևյալը.

«Ժողովրդականք վէսք, ստահակք, արբեցողք, վնասակարք, փախչողք ի ժառանգութենէ»[3]։

Մ. Էմինը «փախչողք ի ժառանգութենէ» թարգմանել է «чуждающийся духовного звания», իսկ Խորեն Ստեփանեն, հետևելով նրան, թարգմանել է՝ «եկեղեցական կոչումից փախչող»[4]։

Այս թարգմանությունները միանգամայն անհաջող են ու անիմաստ։ Հոգևոր կոչումը ինչպես հայտնի է, կապված էր տնտեսական ու սոցիալական այնպիսի արտոնությունների հետ, որ անհեթեթ կլիներ կարծել, որ իբր թե այդ կոչումից ժողովրդականները տրամադիր կլինեին խուսափել։

Հանգուցյալ միաբան Գալուստ Տեր-Մկրտչյանը, որքան հիշում եմ, «փախչողք ի ժառանգութենէ» խոսքերը վերագրում էր «շինական»-ներին և ենթադրում, որ «ժառանգականութեան» տակ պետք է հասկանալ այն հողը և «շինական ծառայութեան» այն ծանր վիճակը, որից «շինական»-ները աշխատել են խուսափել և ազատվել փախուստի միջոցով։ Այս երևույթը, ինչպես գիտենք, ճորտական գյուղացիության համար սովորական է եղել նաև ուրիշ երկրնե-

---

1 Տե՛ս *Th. Nöldeke*, Tabari, Leiden, 1879, էջ 122։

2 *Christensen*, L'empire des Sassanides, էջ 46։

3 **Խորենացի**, *III, ԿԸ*, էջ 364։

4 Տե՛ս „История Армении Моисея Хоренского, новый перевод Эмина", М., 1893, էջ 215 և «Մովսէս Խորենացու Հայկական պատմութիւն», թարգմ. Խ. Ստեփանեի, Ս. Պետերբուրգ, 1889, էջ 350 և ծանոթ. 814, էջ 290։

*րում։ Եթե Տեր-Մկրտչյանի մեկնությունն ընդունելի համարվի, այդ դեպքում «շինական»-ների մասին վերոհիշյալ մեր ենթադրությունը հաստատված կլինի նաև Խորենացու վկայությամբ։*

*«Փախչողք ի ժառանգութենէ» խոսքերից կարելի կլինի հետևցընել, որ «շինական»-ները, լինելով «անազատ», գտնվել են Խորենացու ժամանակ ճորտական վիճակում։ Այդ դրությունը, ինչպես տեսնում ենք, անվանված է «ժառանգութիւն», ուստի և պետք է ենթադրել, որ «շինական»-ների հատուկ «ծառայութիւն»-ը կրել է ժառանգական բնույթ, ինչպես և Սասանյան Պարսկաստանում։*

*Հավանական համարելով ճորտական գյուղացիության գոյությունը Հին Հայաստանում, չպետք է, իհարկե, կարծել, որ Հայաստանի ողջ գյուղացիությունը նախարարական զանազան երկրաշրջաններում ունեցել է միակերպ ու նույնանման վիճակ։*

*Հայաստանի նման նախարարական մի երկրում, որ բաժանված էր անջատ ու գրեթե անկախ իշխանությունների, շատ բնական է, որ կլինեին «զանազան սովորութիւնք գաւառաց և աշխարհաց»։ Կարող էին լինել ճորտական գյուղացիությունից դուրս նաև ազատ գյուղացիության մնացորդներ։ Մենք վերև տեսանք, որ Փավստոսի մոտ[1] հիշատակված են Հացեկաց գյուղի «կարճազատ»-ները, որոնք, հավանորեն, ազատ գյուղացիներ էին։*

*Որ գյուղերի ու «շինական»-ների իրավական ու տնտեսական դրության մեջ կարող էին լինել տարբերություններ՝ այդ մենք կարող ենք գուշակել Խորենացու ուշագրավ մի վկայությունից։ Հանդիմանելով նախնի հայերի անիմաստասիրությունը, որոնք թերացել են գրի առնել տալու իրենց ժամանակվա պատմական անցքերը, Խորենացին կարծում է, որ չէ կարելի արդարացնել նրանց, ասելով՝ որ իբր թե շարունակ զբաղված են եղել կռիվներով և կամ չեն ունեցել գիր ու դպրություն։*

> *«Բայց իրավացի չի լինի,— ասում է Խորենացին,— այսպես կարծելը, որովհետև պատերազմներից հետո եղել են ընդմիջումներ և գոյություն են ունեցել Պարսից և Հունաց գրեր, որոնցով գրված այժմ գտնվում են մեզ մոտ մեծ թվով պատմողական հուշագրեր, որ վերաբերում են գյուղերի ու գավառների և ամեն մի տան առանձնահատկություններին, նաև բոլոր հակառակություններին ու դաշինքներին, մանավանդ սեփական ազատության ժառանգմանը»։*

*[«Այլ ոչ արդարև այսոքիկ կարծեցեալ լինի. քանզի գտա-*

---

[1] Փավստոս, *III, գլ. ԺԹ, էջ 49։*

նին և միջոցք լեալ պատերազմացն, և գիր Պարսից և Յունաց, որովք այժմ գիւղից և գաւառաց, ևս և իւրաքանչիւր տանց առանձնականութեանց, և հանուրց հակառակութեանց և դաշանց այժմ առ մեզ գտանին անբաւ զրուցաց մատեանք, մանաւանդ որ ի սեպհական ազատութեան պայազատութիւն»][1]։

«Գիւղից և գաւառաց, ևս և իւրաքանչիւր տանց առանձնականութեանց, և հանուրց հակառակութեանց և դաշանց» Խորեն Ստեփանեն թարգմանել է «զանազան գիւղերի, գաւառների և առանձին տների վեճեր ու դաշինքներ»[2]։ Այս թարգմանության մեջ անտես է արված «առանձնականութեանց» բառը, որի իմաստը, ըստ երևույթին, չէ հասկացվել։

Ակադ. Մառը «առանձնականութեանց և հանուրց հակառակութեանց և դաշանց» թարգմանել է «о частных (личных) и общих тяжбах и примирениях»[3]։ Ադոնցը, համաձայն չլինելով Մառի հետ, կարծում է, որ «առանձնական» էին դառնում այն «սեպուհ»-ները, որոնք բաժանվում էին ընտանիքից ու ստանում իրենց ժառանգական բաժինը։ Ուրեմն, «առանձնականութիւն», նրա կարծիքով, նշանակում է և ցույց է տալիս «սեպուհ»-ների «առանձնական» դրությունը, որի պատճառով ծագում էին վեճեր և հակառակություններ[4]։

Իմ կարծիքով, այս երկու ենթադրությունն էլ վիճելի են։ «Առանձնականութիւն» բառը, ինչպես կարելի է տեսնել հունաբան թարգմանություններից, ամենայն հավանականությամբ նշանակում է՝ առանձին, հատուկ վիճակ կամ առանձնահատկություն։ Խորենացին ուզում է, ըստ երևույթին, ասել, որ գյուղերի, գավառների ու առանձին տների (տոհմերի) դրությունը եղել է հաճախ «առանձնական» ու տարբեր և նրանց այդ առանձնահատուկ վիճակի, ինչպես և հակառակությունների ու դաշինքի համար եղել են իր ժամանակ «անբաւ զրուցաց մատեանք», որոնք գրված են եղել հունարեն կամ պարսկերեն։

Գավառների ու գյուղերի մասնակի «առանձնականութիւն»ները, որ գոյություն են ունեցել ֆեոդալական երկրներում գրեթե ամեն տեղ, չեն կարող, իհարկե, բացասել ոչ նախարարական իրավակարգի ընդհանուր էությունը, ոչ էլ շինական դասի հոծ բազմու-

---

1 **Խորենացի**, *I, գլ. Գ, էջ 11*։

2 **Խ. Ստեփանե**, *Մովսէս Խորենացու Հայկական պատմութիւն, Ս.-Պետերբուրգ, 1889, էջ 8. համեմատե՛ նաև էմինի ռուսերեն թարգմանությունը, էջ 4*։

3 *Տե՛ս* „Журнал Министерства Народн. Просв.“, 1908, *էջ 2*։

4 *Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 475*։

*թյան իրավական դրության գլխավոր հատկանիշները՝ «ի հարկի ծառայություն»-ը և ճորտական վիճակը, որոնք իրենց հիմնական գծերով, ըստ երևույթին, միևնույն բնույթը պիտի ունենային նախարարական Հայաստանում։*

*Իսկ գյուղացիության իրավական ու տնտեսական դրության մասնակի տարբերությունները և առանձնահատկությունները, որ հավանական է ենթադրել նաև նախարարական Հայաստանում, դժբախտաբար, մնում են մութ՝ փաստական տեղեկությունների բացակայության պատճառով։*

*Հետաքրքիր է սակայն, որ մատենագրական աղբյուրների մեջ «շինական»-ներն անվանվում են երբեմն «բնակք»[1], «ձեռատունկք» կամ «ձեռասունք»[2] և «կրտսերք»[3], բայց թե արդյոք տարբե՞ր էին սրանք իրենց իրավական դրությամբ՝ այդ մնում է անորոշ։*

*«Շինական»-ների ու «ազատ»-ների կենցաղային տարբեր կացության մասին հետաքրքիր են Եղիշեի վկայությունները, որոնց մեջ համեմատության է առնված նրանց առօրյա կյանքը։ Նկարագրելով «ազատ»-ների ու նրանց կանանց կրած նեղությունները կրոնական հալածանքի ժամանակ՝ Եղիշե պատմագիրն ասում է, որ*

> *«Այնուհետև տերը ծառայից ավելի չէր երևում և ոչ էլ փափկակյաց ազատը վշտացած գեղջուկից»։*
>
> *[«Ոչ երևէր այնուհետև առաւել տէր քան զծառայ, և ոչ ազատ փափկացեալ քան զգեղջուկ վշտացեալ»][4]։*

*Մի ուրիշ տեղ, շեշտելով Հայոց աշխարհի փափկասուն տիկնանց թշվառ ու դժբախտ դրությունը՝ նա դարձյալ համեմատում է նրանց այդ վիճակը «շինական»-ների առօրյա կյանքի հետ, որը նա համարում է վշտաբեր ու տանջալից։*

> *«Բոլորովին չհիշեցին,— ասում է Եղիշեն,— իրենց մայրենի ազատության փափկության անունը, այլ իբրև մարդիկ, որոնք սկզբից ևեթ վշտամբեր են եղել ըստ շինականների սովորությունների և իրենց կյանքը վարել են տանջվելով ավելի մեծ վշտերի, քան նրանք, հանձն առան համբերել»։*
>
> *[«Ոչ ինչ յիշեցին ամենևին զանուն փափկութեան մայրենի ազատութեանն, այլ իբրև մարդք՝ որ վշտամբերք լեալ իցեն անդստին ի շինական սովորութեանցն տանջելով վարեալ*

---

1 **Ագաթանգեղոս**, *ԺԲ, 131, էջ 75։*

2 *Նույնը, էջ 75 և 76։*

3 **Փարպեցի**, *III Դե, էջ 173։*

4 **Եղիշե**, *III, էջ 115 (Վենետիկ, 1864)։*

զկեանս աշխարհիս, անդրադոյնք ևս քան զնոսա յանձն առին զհամբերութիւն վշտաց»][1]։

Այս վկայությունների մեջ ուշագրավ է և այն, որ առաջին հատվածում «վշտացեալ» է անվանված «գեղջուկ»-ը, իսկ երկրորդում՝ «վշտամբեր» է անվանված «շինական»-ը։

Նորագույն մի քանի աշխատություններում անհաջող մի փորձ է արված «շինական»-ներին և «գեղջուկ»-ներին իրարից զանազանելու՝ իբրև իրենց ծագումով և տնտեսական ու իրավական դրությամբ տարբեր դասեր[2]։ Միանգամայն անընդունելի ու անհիմն մի կարծիք է այդ, որ բոլորովին հիմնավորված չէ փաստական համոզիչ վկայություններով։ «Շինական» և «գեղջուկ» բառերը, ինչպես երևում է թե այս և թե ուրիշ բազմաթիվ վկայություններից, պարզապես հոմանիշներ են, որ գործ են ածվել սոցիալական միևնույն դասի համար։

Փարպեցու անուղղակի մի վկայությունից կարելի է կռահել, որ իրենց արտաքինով ու հագուստով «շինական»-ները տարբերվել են «ազատ»-ներից[3]։

Այդ ավելի քան հավանական է, որովհետև նույն զանազանությունը «շինական»-ների և «ազատ»-ների միջև եղել է նաև Սասանյան Պարսկաստանում։ Տանսարը վերոհիշյալ իր նամակում պարզ վկայում է, որ այդ տարբերությունն ակներև էր նրանց հագուստի, բնակարանի, կանանց ու ընտանիքի նկատմամբ[4]։

Այն արհամարհական վերաբերմունքը, որ ուներ գյուղացիական դասի հանդեպ զինվորական ազնվականությունը միջնադարյան Եվրոպայում, նկատելի է նաև հայկական աղբյուրներում։

Այդ արհամարհանքը որոշակի արտահայտված է, օրինակ, Եղիշեի հետևյալ վկայության մեջ.

«Բայց սեղան նստելու ժամանակ սրբերի մտքում կասկած առաջացավ մի երեցի նկատմամբ, որը նրանց հետ սուրբ կապանքների մեջ էր, որովհետև նա շինական մարդկանց մեջ

---

1 Նույնը, VIII, էջ 355։

2 Տե՛ս Թահարյան, *Անձնական և հողային իրավունքը Հին Հայաստանում*, Թիֆլիս, 1904 և Հ. Մուսայելյան, *Անդրկովկասի հողային պայմանները*, Վաղարշապատ, 1910, էջ 15։

3 Փարպեցի, III, Հե, էջ 142, «քանզի ձևդ ձեր և կերպարան ազատս կարծեցուցանէ զձեզ»։

4 Տե՛ս *Christensen*, L'empire des Sassanides, էջ 45 և Lettre de Tansar, էջ 222 և 527։

էր ապրել ու նաև խիստ ագետ էր ու անտեղյակ սուրբ գրքերի մխիթարանքին»։

[«Բայց ի ժամ բազմականացն կարծիք իմն եղեն ի միտս սրբոցն վասն երիցու միոյ, որ էր ընդ նոսա ի սուրբ կապանսըն. զի ի մէջ շինական մարդկան կեցեալ էր, և ագիտագոյն ևս էր ի գրոց մխիթարութենէ»][1]։

Ինչպես ֆեոդալական գրեթե բոլոր երկրներում, այնպես էլ Հայաստանում «շինական»-ները, իբրև «անազատ»-ներ, գտնվելով ճորտական դրության մեջ, դատարանի վճռով ենթարկվել են մարմնական պատիժների, որոնցից ազատ են եղել ազնվականները[2]։

Հավանական համարելով «շինական»-ների ճորտական դրությունը Հին Հայաստանում՝ անհրաժեշտ է, իհարկե, գեթ մոտավոր կերպով որոշել նրանց այդ դրության առանձնահատկությունները։

Պետք է ասել, որ ճորտ (hörig, зависимый, colonus, leibeigen, крепостной) և ճորտություն (Hörigkeit, зависимость, Leibeigenschaft, крепостничество) բառերը խիստ ճապաղ ու առաձգական գաղափարներ են, որոնց տակ հասկացվել են տնտեսական ու իրավական բավական տարբեր դրություններ։ Ճորտությունը հաճախ այնքան մեղմ է եղել, որ շատ քիչ է տարբերվել ազատ գյուղացիների դրությունից, իսկ երբեմն այնքան ծանր է եղել, որ շատ մոտ է եղել կատարյալ ստրկության։ Ճորտերի առաջին տեսակին պատկանում էին, օրինակ, Բյուզանդական կայսրության կոլոնները, որոնք անձնապես ազատ էին, բայց կապված էին հողին glebae, terrae adscripti, servi terrae ipsius) և չունեին տեղափոխման իրավունք. իսկ երկրորդ տեսակին պատկանում էին ռուսական «крепостной»-ները և գերմանական leibeigen կոչված ճորտերը, որոնց դրությունը խիստ ծանր է եղել, մանավանդ ԺԸ դարում։

Տարբերելու համար այդ երկու կարգի ճորտերին մենք նպատակահարմար ենք համարում կոլոններին և hörig կամ зависимый կոչված ճորտերին անվանել կիսազատ կամ հողատիրոջից կախում ունեցող ճորտեր, իսկ leibeigen կամ крепостной կոչվածներին՝ ստրկանման ճորտեր։

Հիմնական պատճառը ճորտական վիճակի այս զանազանության, ինչպես ցույց են տվել նորագույն ուսումնասիրությունները, եղել է գլխավորապես տնտեսական։

---

[1] Եղիշե, Ը, էջ 270։

[2] Տե՛ս «Կանոնգիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 63 ևն.։

Ճորտական գյուղացիության վիճակը մեծապես կախված է եղել երկու իրարից տարբեր սիստեմներից, որ անվանվում են հողային տիրություն (Grundherrschaft) և տնտեսային տիրություն (Gutsherrschaft)։ Հողային տիրություն է կոչվում սենյորական կազմակերպությունը, երբ սենյորը ստանում է իր գյուղացիներից զանազան տուրքեր ու հարկեր, բայց ինքը չունի իր սեփական մեծ տնտեսությունը, իսկ տնտեսային տիրություն՝ երբ սենյորը թեև նույնպես ստանում է իր գյուղացիներից տուրքեր ու հարկեր, բայց նրա եկամտի գլխավոր աղբյուրը ո՛չ թե այդ վճարումներն են, այլ նրա ինքնուրույն խոշոր տնտեսությունը, որը նա օգտագործում ու մշակում է ճորտական իր գյուղացիների պարտադիր աշխատանքով։

Ագրարային առաջին կարգի երկրներ էին Ֆրանսիան և Արևմտյան Գերմանիան, իսկ երկրորդ կարգի՝ Արևելյան Գերմանիան, Լեհաստանը և Ռուսաստանը։

Ենթադրվում է, որ ագրարային կազմակերպման այս զանազանությունը ճորտական գյուղացիության իրական դրության վրա ունեցել է իր որոշ ակներև ազդեցությունը։

Եվրոպայի արևմտյան երկրներում ճորտական գյուղացիության իրավական ու տնտեսական դրությունը, ընդհանուր առմամբ, ավելի մեղմ է եղել, քան Եվրոպայի արևելյան երկրներում, ուր միևնույն գյուղացիությունը ոչ միայն վճարել է զանազան տուրքեր ու հարկեր, այլև իր ամբողջ ընտանիքով ու ամենամեծ չափերով շահագործվել է նաև իբրև ձրի աշխատող ուժ։

Սենյորական ինքնուրույն խոշոր տնտեսությունների զարգացումը և գյուղացիության պարտադիր ձրի աշխատանքի անչափ շահագործումը տեղի էին ունենում, գլխավորապես, ապրանքային տնտեսության աճման ժամանակ, երբ ցորենը և գյուղական տնտեսության մյուս արտադրությունները ծախվում էին մեծ քանակությամբ ներքին շուկայում կամ արտահանվում դուրս իբրև ապրանք։

Գիտական վերոհիշյալ տեսությունն ագրարային երկու տարբեր սիստեմի մասին, որոնցով մեծապես պայմանավորված է եղել ճորտության տնտեսական ու իրավական դրությունը, ունի նշանակություն թե Հին Հայաստանի և թե, ընդհանրապես, ամեն մի երկրի համար, ուր գոյություն է ունեցել ճորտական գյուղացիություն՝ ստորադրված կալվածատեր ազնվական դասի իշխանությանը։

Վերոհիշյալ բաժանման տեսակետից, ինչպես մենք ենթադրել էինք, Հին Հայաստանի կալվածատիրական սիստեմը համապատասխան պետք է ընդունել հողային տիրության (Grundherrschaft) կոչված սենյորական կազմակերպությանը։

Պատմական աղբյուրներից բնավ չի երևում, որ նախարարներն իրենք ևս եղած լինեին խոշոր գյուղատնտեսներ և ունեցած լինեին սեփական ու ինքնուրույն մեծ տնտեսություններ։ Նրանց եկամըտի գլխավոր աղբյուրը կազմել են, հավանաբար, «շինական»-ներից ստացված տուրքերը և հարկերը։ Ամեն անգամ, երբ մատենագրական աղբյուրների մեջ խոսք է լինում «նախարար»-ների ու «շինական»-ների փոխհարաբերության մասին, հիշվում է միշտ «շինական»-ների հարկատվությունը և «նախարար»-ների հարկապահանջությունը[1]։

«Շինական»-ների տնտեսական ու իրավական դրությունը որոշելու համար անհրաժեշտ է, հարկավ, նախ և առաջ ուշադրության առնել երկրի տնտեսական զարգացման աստիճանը։ Արշակունիների ու նաև մարզպանության ժամանակ, ըստ երևույթին, խոշոր առևտուրը և առևտրական կապիտալը չէին կատարում Հայաստանում առանձին մեծ դեր գյուղատնտեսության նկատմամբ։

Ուշադրության արժանի է այդ տեսակետից, որ Արշակունյաց տոհմի անդամներին, նաև մարզպաններին ու զորքերին, նրանց ռոճիկը (=պրս. lôzi «օրական ուտեստ», պհլ. rôtschîk)[2], այսինքըն օրապահիկը և պարենը, ինչպես երևում է մատենագրական աղբյուրների վկայություններից[3], տրվել է կենսամթերքներով։

Հավանական է, ուրեմն, ենթադրել, որ գերակշռող նշանակություն է ունեցել պատմական այս շրջանում բնական տնտեսությունը։

Այդ է, ըստ երևույթին, գլխավոր պատճառը, որ գոյություն չեն ունեցել հնագույն այս շրջանում ոչ ճորտական դաժան այն իրավունքը, որ ԺԵ—ԺԶ դարերից սկսած հետզհետե գոյացել ու զարգացել էր, գլխավորապես, Արևելյան Եվրոպայում, ոչ էլ այդ երկրների крепостной կամ leibeigen կոչված ստրկանման գյուղացիությունը, որը ամենամեծ չափերով ենթարկված է եղել կալվածատեր ազնվականության քմահաճ ու անողոք շահագործման։

---

1 Տե՛ս Փավստոս, IV, գլ. Դ, էջ 77—78 և «Կանոնգիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 35։

2 Տե՛ս Hübschmann, Armenische Grammatik, էջ 234։

3 Տե՛ս Փավստոս, IV, գլ. ԺԲ, էջ 133. Նույնը, V, ԼԸ, էջ 253. Փարպեցի, III, ՂԸ, էջ 177 և Խորենացի, II, Ը, էջ 118 ՀԷ, էջ ՁԱ, էջ 223։

«Չինական»-ների ճորտական «անազատ» վիճակը չպետք է, ուրեմն, հասկանալ իբրև գերմանական Leibeigenschaft, այլ իբրև ժառանգական հպատակություն (Erbunterthänigkeit) և կախումն իրենց ազնվական տերերից, գլխավորապես, տնտեսական ու հարկային։

«Չինական»-ները, ինչպես երևում է Շահապիվանի ժողովի կանոններից, այս շրջանում ունեցել են անձնական իրավունքներ։ Այդ տեսակետից նրանց դրությունը կարելի է մոտավորապես համապատասխան համարել Բյուզանդական կայսրության կոլոնների և Արևմտյան Գերմանիայի hörige անվանված գյուղացիների դրությանը։

Շահապիվանի ժողովի կանոններից երևում է, որ «չինական»-ները, պատկանելով «անազատ»-ների դասին, իրավաբանորեն չեն ունեցել տալ իրենց զավակներին կամ թողնել ժառանգներին։ Հանցանք գործելիս նրանք ենթարկվել են քրեական ու եկեղեցական պատիժների։ Ուշադրության արժանի է, որ «ազատ»-ների վճարելիք դրամական տուգանքները գրեթե միշտ երկու անգամ ավելի են եղել, քան «չինական»-ներինը։

Նույն կանոններից դժվար չէ նաև հետևցնել, որ «չինական»-ները, պատկանելով «անազատ»-ների դասին, իրավաբանորեն չեն գտնվել ստրկության վիճակում, այլ նրանք միայն ծանր հանցագործության դեպքերում ուղարկվել են գողենոց կամ ուրկանոց և աշխատել այնտեղ՝ որպես «աղախին» կամ մտրուկ։ «Ազատ»-ները, որոնց չէր կարելի ուղարկել գողենոց, միևնույն հանցանքների համար գողենոցին վճարել են որոշ տուգանքներ։

Չինական»-ներն իրավունք են ունեցել հայց տալու և դատվելու եկեղեցական դատարաններում։ Հավանական է, որ նրանք նույն իրավունքներն ունեցած կլինեին նաև աշխարհական դատարաններում։ Նրանք կարող էին, բացի այդ ամուսնանալ առանց կալվածատիրոջ համաձայնության։

Սահակ Պարթևին վերագրված կանոններից մեկում (ԻՁ) ամուսնությունը, ծնողների անգամ բռնադատությամբ, համարվում է անթույլատրելի[1]։

Տուգանքների վերաբերյալ Շահապիվանի կանոններից առանձնապես կարևոր է Դ-ը, որի համաձայն՝ ամուսնու կնոջից բաժանվելու դեպքում «ազատ»-ները վճարել են իրենց կանանց «վասն անարգանացն» երկու անգամ ավելի տուգանք, քան «չինական»-ները։

---

[1] Տե՛ս «Կանոնգիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 26։

Անարգանքի համար վճարվող այս տուգանքների տարբերությունը, ինչպես տեսնում ենք, մեծ չէ։

Հին Ռուսաստանում բարձր դասի մարդկանց խոշտանգման համար պահանջվել է ԺԱ դարում 12 գրիվնա, իսկ սմերդների՝ 3 գրիվնա։ Պրոֆ. Սերգեևիչի կարծիքով՝ տուգանքների այս հարաբերական չափն արտահայտություն է սմերդների սոցիալական ցած ու նվաստ դրության[1]։ Անգլիայում իրավունքների խախտման համար eorl-երին վճարում էին երկու անգամ ավելի, քան ազատ գյուղացիներին՝ ceorl-երին։ Է դարից սկսած, երբ գյուղացիների դրությունը դառնում էր Անգլիայում հետզհետե ճորտական՝ ազնվականների արժեքն աստիճանաբար բարձրացել է, և նրանք գնահատվել են 3, հետո 6, իսկ ԺԱ դարում՝ արդեն մոտ 10 անգամ ավելի, քան գյուղացիները[2]։

Նույն անհամաչափությունը գոյություն է ունեցել ֆեոդալական նաև ուրիշ երկրներում, ուր գյուղացիությունը գտնվել է ճորտական ծանր վիճակում։ Վրաստանում, օրինակ, ԺԴ—ԺԵ դարերում բարձր ազնվականի արյան գինը եղել է 20.000, միջին ազնվականինը՝ 12.000, իսկ գյուղացունը՝ միայն 400 դանգ[3]։

Այս համեմատություններից պարզ երևում է, որ «շինական»-ների դրությունը տուգանքների տեսակետից մոտավորապես հավասար է եղել անգլիական ազատ գյուղացիության՝ ceorl-երի դրությանը և երկու անգամ ավելի նպաստավոր է եղել, քան ռուսական սմերդներինը։ Այս փաստը, անշուշտ, կարևոր ու ուշագրավ մի նշան է «շինական»-ների համեմատաբար ավելի բարձր կացության, քան ֆեոդալական այն երկրներում, ուր գոյություն են ունեցել ճորտության ծանր տեսակները։

Դվինի ժողովի կանոններում կա հետաքրքիր մի վկայություն, որից կարելի է եզրակացնել, որ «շինական»-ները կարող էին գնել անշարժ գույք։ Այդ ժողովի ութերորդ կանոնում պարզ ասված է, որ քահանայի անշարժ գույքը չպետք է վաճառվի որևէ «շինական»-ի, այլ միայն հոգևորական դասի անդամներին[4]։ Արդ՝ քանի որ կանոնում «շինական»-ները, հիշատակվում են իբրև հնարավոր

---

[1] Տե՛ս *В. Сергеевич*, Русские юридические древности, I изд. второе, СПб, 1902, էջ 184։

[2] *Кулишер*, Лекции по истории экономического быта Западной Европы, Петроград, 1918, էջ 41։

[3] Տե՛ս *А. С. Френкель*, Сборник законов грузинского царя Вахтанга VI, Тифлис, 1887—законы Агбуги, էջ 96, 98 ևն.։

[4] Տե՛ս «Կանոնգիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 125։

գնորդներ՝ պարզ է, որ նրանց արգելված չէ եղել գնել անշարժ գույք և ունենալ հատուկ «քսակագին» հողեր։

Հետաքրքիր է ու ուշագրավ, որ Սասանյան Պարսկաստանում էլ օրենքները պետք է նախապես կանխեին, որ ազնվականների անշարժ գույքը չանցներ գյուղացիների ձեռքը[1]։

Ինչպես Բյուզանդիայում և Սասանյան Պարսկաստանում, նույնպես և Հայաստանում «շինական»-ներին արգելված է եղել դուրս գալ ինքնակամ իրենց դասից և մտնել ուրիշ դասերի մեջ։ Հայտնի է, որ կոլոնները կարող էին ընդունվել տեղական եկեղեցիների կղերականության մեջ իրենց տերերի հաճությամբ[2]։ Արդ՝ մենք տեսանք, որ Փարպեցին էլ հոգևորական էր դառել և ազատվել «ի ծառայութենէ աշխարհի» Վահան Մամիկոնյանի քեռու՝ Տեր Աղանի հաճությամբ։

Կոլոնների մասին հայտնի է նույնպես, որ նրանք իրավունք չեն ունեցել վարել որևէ պետական պաշտոն՝ նույնիսկ ստորին կարգի[3]։

Նույնը եղած պիտի լիներ նաև Հին Հայաստանում։ Շահապիվանի ժողովի ԺԶ կանոնում ասված է, որ

«առանց գաւառի եպիսկոպոսին չիշխէ լինել եպիսկոպոս կամ երէց, կամ ազատ ոք դատաւորաց»[4]։

Այս հատվածում, ինչպես տեսնում ենք, իբրև դատավորներ հիշվում են հատկապես «ազատ»-ները։ Վերև մենք տեսանք, որ նաև Արշակունյաց «ոստան»-ում «գործակալական» ստորին պաշտոններ վարել են «ազատ»-ները։

Փաստական մեր դիտողություններից երևում է, որ «շինական»-ների իրավական դրությունն Արշակունյաց և մարզպանական շրջանում մոտավորապես որոշվում է։ «Շինական»-ների «անազատ» կոչվելը, ինչպես տեսնում ենք, չպետք է հասկանալ այն իմաստով, իբր թե նրանք եղել են իրավազուրկ կամ ստրկանման ճորտեր, այլ նրանք «անազատ» են անվանվել, իբր «ազատ»-ներից տարբեր ու «ազատ»-ներին հակադիր մի դաս։

Իբրև եզրակացություն մեր քննության՝ կարող ենք նաև հավանական համարել, որ «շինական»-ները հնագույն այս շրջանում, ըստ երևույթին, իրենց իրավական դրության հիմնական գծերով համապատասխանում էին բյուզանդական կոլոններին, Սասանյան

---

[1] *Christensen,* L'empire des Sassanides, էջ 25—26, նաև Lettre de Tansar, էջ 222 և 527։

[2] Տե՛ս *Ю. Кулаковский,* История Византии, т. I, Киев, 1918, էջ 73։

[3] Նույնը, էջ 73։

[4] «Կանոնգիրք Հայոց», էջ 76։

*Պարսկաստանի գյուղացիությանը և գերմանական* hörig *կոչված գյուղացիներին։ Ուրեմն, համաձայն մեր դիտողությունների՝ Հին Հայաստանի «շինական»-ները եղել են պատմական այս շրջանում կիսազատ կամ կալվածատերից կախում ունեցող* (ЗАВИСИМЫЙ) *ճորտեր։*

*«Շինական»-ների տնտեսական կենցաղի նկատմամբ քննության արժանի խիստ կարևոր մի հարց կա, որ հիմնավոր կերպով հարուցված չի եղել հայագիտական նորագույն ուսումնասիրություններում։*

*Արդ՝ համայնական հողատիրության խնդիրն է, որը, ինչպես ենթադրում են, համատարած ու ընդհանուր երևույթ է եղել պատմական զարգացման սկզբնական շրջանում։*

*Որ համայնական հողատիրությունը գոյություն ունեցած պիտի լիներ Հայաստանում՝ այդ նրա անցյալ կյանքի համայնական-տոհմային հնագույն ժամանակաշրջանի համար անժխտելի է։*

*Բայց նախարարական Հայաստանում ևս դժվար թե հողատիրության նախնական կարգերն իսպառ ու անհետ կորած լինեին։ Որքան էլ այդ կարգերը հեղաշրջված ու փոփոխված լինեին Հայաստանի ֆեոդալական նոր պայմաններում, ավելի քան հավանական է, որ պատմական հետագա այս շրջանում ևս նրանցից մնացած պիտի լինեին զգալի հետքեր։*

*Ավելի քան հավանական է նույնիսկ, որ նախկին համայնական-տոհմական կյանքի փոփոխումից հետո համայնական հողատիրությունը՝ որպես երկրագործական արտադրության ձև՝ կարող էր հարմարեցված լինել ֆեոդալական կալվածատիրական նոր պայմաններին և որոշ տեղերում պահպանած լիներ իր գոյությունը, կրելով իր հիմնական բովանդակության մեջ ոչ այնքան խոշոր փոփոխություններ։*

*Ինչպես հայտնի է, Արևմտյան Եվրոպայում ֆեոդալականացման պրոցեսն առաջ էր եկել Հռոմեական կուլտուրական մեծ պետության քայքայման շրջանում, իսկ Հին Հայաստանում նախարարական-ավատական կազմակերպությունը ծնունդ էր առել համայնական-տոհմական կենցաղի աստիճանական զարգացման ու հեղաշրջման ընթացքում։*

*Միանգամայն բնական է, որ այստեղ տոհմական նախորդ շրջանից մնացած ժառանգությունը շատ ավելի մեծ պիտի լիներ և արտահայտված պիտի լիներ ցայտուն կերպով։*

*Հայոց պատմության մատենագրական աղբյուրները, ինչպես տեսանք, չունեն հայերի ներքին կյանքի թե այս և թե նման խնդիր-*

*ների մասին պարզ ու որոշ տեղեկություններ։ Նրանց մեջ կան սակայն միջանկյալ ցուցումներ, որոնք ըստ իս ուշագրավ նշաններ են, որ համայնական հողատիրության վերապրումները գոյություն ունեցած պիտի լինեին Հին Հայաստանում թե Արշակունյաց թագավորության ժամանակ և թե նրա անկումից հետո։*

*Մովսես Խորենացին, խոսելով Արշակունի Տիրան թագավորի մասին, պատմում է, որ*

*«Սրա մոտ եկան Արշակունյաց տոհմի իր հին ազգականները, որոնք ապրում էին Հաշտյանքի կողմերում, և ասացին.— «Ընդարձակիր մեզ մեր ժառանգած կալվածքները, որոնք նեղ են, որովհետև մենք շատ բազմացել ենք»։ Եվ նա հրամայեց, որ նրանցից ոմանք գնան Աղիովիտ և Առբերանի գավառները։ Բայց սրանք ավելի ևս մեծ բողոք բարձրացրին թագավորի առաջ, թե մեզ համար առավել ևս նեղ է այդ. սակայն Տիրանը բնավ նրանց չլսեց, այլ հաստատապես վճիռ կայացրեց՝ չտալ նրանց ուրիշ ժառանգություն, այլ որ նրանք, ինչ որ ունեն, հավասար իրենց մեջ բաժանեն։ Երբ նրանք բաժանեցին ըստ մարդաթվի, պարզվեց, որ Հաշտյանքում բնակվողների ժառանգությունը պակաս է, ուստի և նրանցից շատերը եկան Աղիովիտ ու Առբերանի գավառները»։*

*[«Եւ եկեալ առ նա կանխագոյն իւրոյ ազգին Արշակունեաց, որ էին ի կողմանս Հաշտենից՝ ասեն.— Ընդարձակեա՛ մեզ զժառանգութիւնս, զի նեղ է. քանզի բազմացաք յոյժ։— Եւ նա հրամայէ ոմանց ի նոցանէ երթալ ի գաւառն Աղիովտի և Առբերանւոյ։ Իսկ սոցա առաւել ևս բողոք կալեալ առ արքայի, թէ առաւելագոյն նեղ է մեզ՝ ոչ ինչ ունկնդիր լինի Տիրան, այլ հաստատեալ վճիռ՝ ոչ այլ ժառանգութիւն տալ նոցա, բայց զոր ունէինն՝ հաւասար տրոհել յինքեանս։ Զոր բաժանեալ ըստ մարդաթուի՝ գտաւ պակաս ժառանգութիւն բնակողացն Հաշտենից. վասն որոյ բազումք ի նոցանէ եկին ի գաւառն Աղիովտի և Առբերանւոյ»]*[1]։

*Ադոնցն այս վկայության մեջ հավաստի ու արժեքավոր է համարում հողի բաժանման սովորությունն ըստ մարդաթվի, որ ընդունված է եղել Արշակունիների տոհմում։*

*«Միևնույն սկզբունքները,— ասում է նա,— որ գործադրվել են արքայական տան մեջ՝ գոյություն են ունեցել նաև իշխանական ընտանիքներում. ուստի և պատմագրի մատնանշած*

---

[1] **Խորենացի,** *II, գլ. ԿԲ, էջ 193։*

> *բաժան հողատիրության սովորությունն ունի իր ուժը նաև իշխանական միջավայրի համար։ Բայց այս երևույթը չի վերաբերում Արշակունիների ժամանակին, ինչպես ենթադրում է պատմագիրը, այլ այստեղ մենք գործ ունենք իրեն՝ Խորենացու ժամանակակից կարգերի հետ, որ նա վերագրել է հնագույն ժամանակներին։ Ժառանգական կալվածքի բաժանումն ընտանիքի անդամների մեջ արտահայտություն է սեպուհական իրավունքի։ Այդ իրավունքը զարգացել էր, ըստ երևույթին վեցերորդ դարում»*[1]։

*Ադոնցի այս ենթադրությունից հետևում է, որ Հայաստանում նախարարական տոհմերի մեջ նախ տիրող է եղել միաժառանգության ու մայորատի սկզբունքը։ Արշակունյաց թագավորության անկումից հետո միայն սկսել է հետզհետե փոխվել ժառանգության այս կարգը, և վեցերորդ դարում զարգացել է արդեն բաժան ու անջատ «սեպուհական» հողատիրությունը։ «Սեպուհական» կամ «սեպհական» անվանվել են այնուհետև այն հողաբաժինները, որ ժառանգում էին «սեպուհ»-ները, այսինքն՝ նախարարական տոհմերի «սեպուհ» կոչված անդամները։*

*Ադոնցը ենթադրում է, ուրեմն, որ Խորենացու վերոհիշյալ վկայությունը վերաբերում է նախարարական միջավայրում տեղի ունեցող ժառանգական հողաբաժիններին։*

*Խորենացու մութ ու անորոշ վկայության այս կերպ մեկնումն ունի ըստ իս առարկելի կետեր և թվում է ինձ խիստ վիճելի։*

*Նախ և առաջ, դժվար է համաձայնել Ադոնցի հետ, որ Հայաստանում «սեպուհական» ժառանգման զարգացումը տեղի էր ունեցել վեցերորդ դարում։*

*Ինչպես հայտնի է, վեցերորդ դարից առաջ «սեպհական» կալվածքներ հիշատակված են Փավստոսի Պատմության մեջ*[2]*, որն իր այդ աշխատությունը գրել է հինգերորդ դարում։*

*Ադոնցի վերոհիշյալ լուսաբանությունն առարկելի է նաև այն տեսակետից, որ մատենագրական աղբյուրների մեջ «սեպհական» և «սեպհականութիւն» անվանվում են ո՛չ միայն «սեպուհ»-ների բաժան ու անջատ հողաբաժինները, այլև, ընդհանրապես, թե Արշակունյաց, թե կաթողիկոսության և թե ազնվականության անբաժան ու տոհմային կալվածքները*[3]։

1 *Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 474*։

2 *Տե՛ս* **Փավստոս**, *IV, գլ. ԻԴ և ԾԹ, էջ 144 և 184*։

3 *Տե՛ս* **Փարպեցի**, *I, Ը, էջ 11*, **Խորենացի**, *II, ԺԲ, էջ 122, և ԿԷ, էջ 203 (Տփղիս, 1913)*. **Մովսես Կաղանկատվացի**, *I, ԻԱ, էջ 49, II, ԺԴ, էջ 127*։

Անկախ այս խնդրից՝ վիճելի է թվում նաև Ադոնցի հիմնական այն եզրակացությունը, որ իբր թե Խորենացու վերոհիշյալ հատվածի մեջ ակնարկված է ժառանգական գույքի բաժանման կարգը նախարարական ընտանիքի անդամների, այսինքն՝ «սեպուհ»-ների մեջ։

Ամենաուշագրավը և կարևորը Խորենացու վկայության մեջ ո՛չ այնքան նրա պատմական կողմն է, որ ավելի քան վիճելի է, ո՛չ այն, որ Հաշտյանք, Աղիովիտ ու Առբերանի գավառներում տեղի է ունեցել հողաբաժանում Արշակունիների տոհմի աճած ու բազմացած սերունդների մեջ, այլ գլխավորապես հողաբաժանման այն հատուկ կարգը՝ «հաւասար» և «ըստ մարդաթուի», որը, ըստ երևույթին, գոյություն է ունեցել Հայաստանի իրական կենցաղի մեջ, և, հավանաբար, Խորենացու հենց ժամանակ։

Ադոնցի ենթադրությունը, որ այդ կարգը վերաբերում է «սեպուհական» անջատ հողատիրությանը, ավելի քան վիճելի է։ Դժվար է խիստ ընդունել, որ նախարարական ընտանիքների անդամները կարող էին տոհմային հողերը ժառանգել «հաւասար» և «ըստ մարդաթուի»։ Եթե այդ այդպես լիներ, այդ դեպքում՝ ժառանգատու նախարարների բազմանդամ ընտանիք ունեցող որդիները պետք է ստանային մի քանի անգամ ավելի մեծ հողաբաժիններ, քան նրանց ամուրի որդիները։ Ժառանգության բաժանման այս կարգը խիստ արտասովոր է ու անօրինակ ազնվական դասի համար։

Հողերի «հաւասար» և «ըստ մարդաթուի» բաժանումը, որքան հայտնի է, ո՛չ թե «սեպուհական» ժառանգության, այլ համայնական հողատիրության որոշ կարգ է։

Ճիշտ է, Խորենացու վկայության մեջ պարզ ասված է, որ հողաբաժանումը Հաշտյանք, Աղիովիտ և Առբերանի գավառներում տեղի է ունեցել Արշակունիների տոհմում, սակայն նրա վկայության մեջ ամենից կասկածելի կետը հենց այն է, որ նա համայնական հողատիրության վերաբերող հատուկ կարգերը վերագրել է նաև Արշակունիների տոհմի աճած ու բազմացած ժառանգներին։

«Հաւասար» և «ըստ մարդաթուի» հողաբաժանման սկզբունքը եղել է, ըստ երևույթին, Խորենացու ժամանակ իրական ու հանրածանոթ մի փաստ, և Խորենացու վկայության մեջ մատնանշված կարևոր այդ փաստը կարող է ընդունվել, որպես ուշագրավ մի ակնարկ, որ Հին Հայաստանում գոյություն են ունեցել, հավանաբար, հողատիրության որոշ կարգեր և «հաւասար» հողաբաժանումն «ըստ մարդաթուի»։

Խորենացու նույն այդ վկայությունը մեկնելիս նկատի պետք է ունենալ նաև այն, որ նա թագավորական սերունդ է համարել «ոստանիկ»-ների դասը։

Այս կարևոր հանգամանքը հիմք կարող է ծառայել ենթադրելու, որ նրա վկայությունը վերաբերում է, իրոք, ո՛չ թե Արշակունիների տոհմի աճած սերունդներին, այլ «ոստանիկ» դասին։

Մենք տեսանք, որ «ոստանիկ» են անվանվել Արշակունիների բուն երկրի «ազատ»-ները, որոնցից կազմված զորքն անվանվել է «արքունի» կամ «յարքունի տանէ»։ Դժբախտաբար, աղբյուրների վկայություններից չի որոշվում, թե այդ «ոստանիկ» դասին չե՞ն պատկանել արդյոք նաև ազատ գյուղացիներ, որոնք, հավանորեն, գոյություն էին ունեցել Հին Հայաստանում։

Խորենացու ակնարկած «հաւասար» և «ըստ մարդաթուի» հողաբաժանումը նոր ու հավանական լուսաբանություն կստանար, եթե կարևոր այդ խնդրի մասին գտնվեր մատենագրական աղբյուրների մեջ հաստատուն որևէ մի ցուցում կամ ակնարկ։

Որ համայնական հողատիրությունը տարածված երևույթ է եղել և գոյություն է ունեցել նաև Հին Հայաստանի հարևան երկրներում՝ այդ մասին կարևոր մի վկայություն ունի Ստրաբոնն իր Աշխարհագրության մեջ։ Խոսելով Վրաստանի սոցիալական կազմակերպության մասին՝ Ստրաբոնը վկայում է, որ

> «գույքերը նրանց [այսինքն՝ Իբերիայի բնակչության] ընդհանուր են ըստ տոհմերի. կառավարում է և տնօրինում յուրաքանչյուր գույք [ամեն մի տոհմի] ավագը»[1]։

Հիմնվելով Ստրաբոնի այս վկայության վրա՝ Ջավախիշվիլին ենթադրում է, որ առաջին դարում, Քրիստոսից հետո, Վրաստանում գույքերը համարվել են տոհմական ընդհանուր սեփականություն։ Գույքերի կառավարումը տոհմի ավագ անդամի տնօրինությամբ, Ջավախիշվիլու կարծիքով, մի պարզ ցուցումն է, որ նույն գույքերի օգտագործման ձևը եղել է համայնական-տոհմական[2]։

Դժվար չէ կռահել, որ նման կազմակերպություն ունեցած պիտի լիներ Հին Հայաստանն իր զարգացման հնագույն տոհմական շրջանում, ուստի և միանգամայն հավանական է, որ նաև հետագա

---

[1] *Strabo, XI*, գլ. III.

[2] *И. Джавахов*, Государственный строй древней Грузии и древней Армении, էջ 9։

դաշտերում համայնական հողատիրության որոշ կարգեր պետք է պահպանված լինեին ֆեոդալական Հայաստանում։

Բացի Խորենացու ակնարկած «հասասար» և «ըստ մարդաթուի» հողաբաժիններից, Ագաթանգեղոսի մոտ ևս, ինչպես տեսանք, հիշատակվում են

«չորս չորս հողս երդոյ յամենայն ագարակ տեղիս, իսկ յաւանսն եօթն եօթն հողս երդոյ»[1],

որ հատկացվել էին հոգևորականներին նրանց հոգևոր «ծառայութեան» համար։ Հիմնվելով Ագաթանգեղոսի հունարեն թարգմանության վրա, որի մեջ «հողս երդոյ» թարգմանված է ἄρουρα վերև ես ենթադրել էի, որ «հողք երդոյ» այն հատուկ հողաբաժիններն են, որոնք ավաններում և ագարակներում տրվել են «երդ»-երին։

Եթե իմ այս բացատրությունն ընդունելի համարվի, այդ դեպքում որոշվում է հողաբաժանության նաև մի այլ կարգ, որ գոյություն է ունեցել Հին Հայաստանում Արշակունյաց թագավորության ժամանակ և որը, հավանաբար, հարատևած պիտի լիներ նաև Արշակունյաց թագավորության անկումից հետո։

Արդ՝ եթե ուղիղ է մեր այս ենթադրությունը, որ հողաբաժանման վերոհիշյալ կարգերը պահպանված են եղել ֆեոդալական Հայաստանում՝ կարևոր է նաև որոշել, թե ո՞րն է գրաբար լեզվի մեջ այն հատուկ բառը, որ ունեցել է գյուղացիական հողաբաժնի իմաստ։

Ադոնցը վերոհիշյալ իր աշխատության մեջ կարծում է, որ գյուղացիական հողաբաժինն (крестьянский надел) անվանվել է Հին Հայաստանում «կեանք», «արար» կամ «կալուած»։ Հատկապես «կալուած» բառը նա համապատասխան է համարում ֆեոդալական շրջանի tenure բառին[2]։

Նույն այդ բառերը, որ ունեն գյուղացիական հողաբաժնի իմաստ, գործ են ածվել, նրա կարծիքով, նաև իշխանական և եկեղեցական կալվածքների համար։

Ադոնցի այս կարծիքը, ինչպես մանրամասն ցույց է տրված իմ աշխատություններում[3], ընդունելի չէ։

«Արար» և «կեանք», ինչպես ցույց են տալիս մեր հին մատենագրության մի շարք վկայությունները, ունեն ո՛չ թե անշարժ գույքի իմաստ, այլ շարժական։

---

[1] Ագաթանգեղոս, ԾԺԹ, էջ 436։

[2] *Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 480։

[3] Տե՛ս «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», էջ 198—201 և «Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին», էջ 17—19։

«Արար» բառը գործ է ածված հենց այդ նշանակությամբ Աբրահամ Խոստովանողի «Վկայք Արևելից» երկում։ Եզանդուխտի վկայաբանության մեջ մոգպետը, կամենալով հրապուրել քրիստոնյա կնոջը, հրամայում է՝

«Զի զերանելին Եզանդուխտ տարեալ անցուցանիցեն առ դրաւք ապարանից իւրոց, և ցուցցեն նմա զամենայն արարս նորա, և զբազմութիւն ծառայից նորա և զաղախնանց, զի հանցեն առաջի նորա, զի տեսանելով զբազմութիւն ստացուածոց նորա, հաւանեսցի լինել նմա կնութեան»[1]։

Շատ պարզ է, որ «արարս» այս հատվածում ո՛չ թե մոգպետի հողաբաժիններն են, այլ ապարանքում գտնվող շարժական գույքը։

Նույն իմաստն ունի «արար» բառը նաև Ղազար Փարպեցու Թղթի և Եղիշեի Պատմության մեջ[2]։

Որոշ է նաև «կեանք» բառի նշանակությունը, որը նույնպես չունի ո՛չ հողաբաժնի իմաստ, ո՛չ էլ անշարժ գույքի։ Նրա բուն նշանակությունը պարզ երևում է Ավետարանի գրաբար թարգմանությունից, ուր կյանքը համապատասխանում է հունարեն βίος, լատին. victum և ռուս. пропитание բառերին։ Ուրեմն «կեանք» բառը, ինչպես տեսնում ենք, ունեցել է շարժական գույքի և, հատկապես, կենսամթերքների իմաստ։

Անհավանական ու անընդունելի պետք է համարել Ադոնցի կարծիքը նաև «կալուած» բառի մասին։

«Կալուած», ճիշտ է, քերականորեն համապատասխանում է ֆրանսերեն tenure բառին, սակայն այդ նմանությունը միայն արտաքին է, մինչդեռ նրանց բովանդակությունը բոլորովին տարբեր է։ Tenure ֆեոդալական Ֆրանսիայում մատնանշում է հողերի տիրապետության եղանակները (tenure à cens, tenure à champart, tenures roturières, tenures viloines), իսկ Հայաստանում «կալուած»-ը, ինչպես երևում է մատենագրական վկայություններից, չի ունեցել այդպիսի հատուկ իմաստ, այլ ընդհանուր մի բառ է, որ գործ է ածվել զանազան տեսակ անշարժ գույքերի համար։ Հինգերորդ դարի գրաբար թարգմանություններում, սովորաբար, նա համապատասխանում է հունարեն κατάσχεσις բառին, որ նշանակում է ունեցվածք, ստացվածք կամ տիրություն։ Հայոց մատենագրության

[1] Տե՛ս Աբրահամ Խոստովանող, Վկայք Արևելից, աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի, Էջմիածին, 1921, էջ 162։

[2] Տե՛ս Փարպեցի, էջ 197 և Եղիշե, էջ 246։

հնագույն երկերում և ոչ մի դեպք ինձ հայտնի չէ, որ «կալուած» բառն ունենար գյուղացիական հողաբաժնի հատուկ իմաստ։

Ինչպես ես հավանական էի համարել իմ նախորդ աշխատություններում[1], գյուղացիական հողաբաժինը կոչվել է Հին Հայաստանում ո՛չ թե «կեանք», «արար» կամ «կալուած», ինչպես այդ ենթադրել է Ադոնցը, այլ «վիճակ»։

Քրիստոնեության շրջանում, ինչպես հայտնի է, «վիճակ» և «վիճակաւոր» բառերը գործ են ածվել կղեր և կղերականի իմաստով (հունարեն κλῆρος և κλήρικος Այդպես էին անվանվում հոգևորականությունը և հոգևորականները, որովհետև «Գործք առաքելոց»-ի վկայությամբ, Մատթևոսն առաքյալ էր ընտրվել վիճակի միջոցով[2]։

Որ «վիճակ» բառն ունեցել է հողաբաժնի իմաստ, այդ երևում է հայոց հնագույն մատենագրության մի շարք հատվածներից։

«Վիճակ» բառի տակ Հայկազյան լեզվի նոր բառգրքում առաջ է բերված Մխիթար Գոշի Երեմիայի մեկնությունից հետևյալ վկայությունը՝ «Վիճակ զանդաստանս սովոր են ասել. և մեք սովոր եմք զժողովուրդս վիճակ կոչել»։ Այս վկայությունը պարզ ցույց է տալիս, որ «վիճակ»-ը, սովորաբար, գործ է ածվել անդաստանների, այսինքն՝ արտերի կամ վարելահողերի համար։ Հենց նույն այդ իմաստն ունի «վիճակ»-ը Հին Կտակարանի հայերեն թարգմանության զանազան հատվածներում[3]։

«Վիճակ» բառի գործածությունը գյուղացիական հողաբաժնի համար հաճախակի մի երևույթ է եղել նաև Արևմտյան Եվրոպայի և Ռուսաստանի գյուղական համայնքներում։ Ֆրանկների Lex Salica օրենսդրական գրվածքում գյուղացիական հողաբաժինները անվանվել են sors, գերմանական երկրներում՝ Loos, Հունաստանում և Հռոմեական կայսրության հելլենականացման ենթարկված մասերում՝ κλῆρος, Հին Ռուսաստանում՝ жеребье։

Ինչպես տեսնում ենք, այս տերմինները միևնույն նշանակությունն ունեն և միանգամայն համապատասխանում են հին հայերեն «վիճակ» բառին։ Պետք է ենթադրել, որ այս բառը համայնական հողատիրության հնագույն շրջանի տերմին է։ Հավանական է նաև, որ նախնական այդ շրջանում հողերի պարբերական վերաբաժանումները կատարվել են վիճակարկությամբ և այդ, ըստ

---

[1] Տե՛ս «Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին», էջ 19—21 և «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», էջ 201—204։

[2] «Գործք առաքելոց», Ա, 23—26։

[3] Ծն. ԻԳ, 9. Թագ. Բ, ԺԳ, 30 ևն.։

*երևույթին, սովորական մի կարգ է եղել գյուղական նախնական համայնքներում։*

*Ուշադրության արժանի է նաև այն, որ «վիճակ» բառը Հին Կտակարանի գրաբար թարգմանության մեջ համապատասխանում է հունարեն* σχοινισμός, σχοίνισμα *բառերին, որ նշանակում են՝ չափում լարի, չվանի միջոցով կամ լարով, չվանով չափված հողաբաժին։*

*Կարող ենք, ուրեմն, վստահորեն եզրակացնել, որ Հին Հայաստանում գյուղացիական հողաբաժիններն անվանվել են «վիճակ», որն իր նշանակությամբ համապատասխան է եղել* sors, Loos, κλῆρος *և* жеребье *բառերին։ Այս վերջին բառերի նման «վիճակը» ևս, հավանաբար, հատուկ մի տերմին է, որ տոհմական հնագույն ժամանակաշրջանում գործ է ածվել համայնական հողատիրության միջավայրում։*

*«Շինական»-ները, ստանալով կալվածատեր ազնվականներից հատուկ հողաբաժիններ, վճարելու էին նրանց զանազան տուրքեր, որոնց մասին, դժբախտաբար, մատենագրական հնագույն աղբյուրները չեն տալիս և ո՛չ մի վկայություն։*

*«Շինական»-ներն էին, ինչպես վերև ասացինք, այն արտադրող հիմնական դասը, որի աշխատանքն ապրուստի միջոցներ էր հայթայթում թե կալվածատեր ազնվականության և թե հոգևորականության։ Ուստի և դժվար չէ, իհարկե, կռահել, որ նաև Հայաստանում, ինչպես և ֆեոդալական այլ երկրներում, գոյություն էին ունեցել Արշակունյաց ժամանակ թե աշխատապարտ և թե արդյունավճար ռենտա։*

*Ինչպես և ֆեոդալական Եվրոպայում, նույնպես և Հին Հայաստանում ազնվականները, հոգևորականները և «շինական»-ները երեք գլխավոր դասերն էին, որոնցից առաջինը՝ իբրև գերազանցորեն զինվորական ուժ՝ պատերազմում էր, երկրորդը՝ աղոթում և երրորդը՝ աշխատում։*

*Աղբյուրների վկայություններից երևում է, որ «շինական»-ները հարկատու են եղել ո՛չ միայն կալվածատիրոջ, այլև արքունիքին։*

*Արքունի այդ հարկերի մասին կան միայն մարզպանության շրջանում հիշատակություններ, գլխավորապես, Եղիշեի պատմության մեջ, որ մենք մանրամասն քննության էինք առել մեր նախորդ աշխատություններից մեկում*[1]*։ Հավանական կարելի է համա-*

---

[1] *Տե՛ս «Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում», «Տեղեկագ. Գիտ. և Արվ. Ինստիտուտի», Երևան, 1926, № 1, էջ 3—44։*

րել, անշուշտ, որ մոտավորապես նման հարկեր, որ վճարում էին արքունիքին, գոյություն ունեցած պիտի լինեին և Արշակունիների իշխանության ժամանակ։

«Շինական»-ների տնտեսական կացության ամենակարևոր խնդիրներից մեկն է նաև աշխատապարտ ռենտայի կամ «կոռ»-ի խնդիրը պատմական հնագույն այս շրջանում, որը քննության է առնված նույնպես վերև հիշված իմ աշխատության մեջ[1]։

«Կոռ»-ը հիշատակված է Դվինի 645 թվի ժողովի ԺԱ կանոնում։ Այդ վկայությունը, որ ամենահինն է ու կարևորը, անհայտ էր մնացել, որովհետև «կոռ»-ի վերաբերյալ հատվածը կանոնում աղճատվել ու փոփոխման է ենթարկվել ագետ գրիչների կողմից։ Աղճատումն ակներև է դառնում, երբ դեմ առ դեմ ենք դնում Դվինի ժողովի ԺԱ կանոնը և Մխիթար Գոշի Դատաստանագրքի Բ մասի ԺԳ կանոնը, որը Դվինի ժողովի նույն կանոնն է Գոշի խմբագրությամբ[2]։ Համեմատությունը պարզ ցույց է տալիս, որ Դվինի կանոնում բնագիրն աղճատված է և «կոռով ու պատուհասիւ» խոսքերը, որ անտեղի են ու անհարմար, ծագել են «կոռով և պահակութեամբ» ուղիղ ընթերցվածի աղավաղումից։

Կարևոր է հիշել, որ «կոռ»-ը մարզպանության ժամանակ գոյություն էր ունեցել նաև Սասանյան Պարսկաստանում։ Դրա մասին Տաբարիի Պատմության մեջ կա ուշագրավ մի վկայություն։ Խոսելով երկարատև սովի ու ժողովրդի ծանր դրության մասին Սասանյան Պերոզ թագավորի ժամանակ (457—484 թ.)՝ Տաբարին հաղորդում է, որ Պերոզ թագավորը

> «Նամակների միջոցով հայտարարում է իր ամբողջ ժողովրդին, որ ազատում է նրան հողային հարկից և գլխահարկից, հանրօգուտ նպատակների համար ծանրություններից և կոռից, որ նրանց շնորհում է լիակատար ազատություն և հրամայում է, որ նրանք հոգան ու մտածեն իրենց սնունդի և պահպանության մասին»[3]։

Վերոհիշյալ վկայություններում «կոռ»-ը, անտարակույս, այն պարտադիր աշխատանքներն էին, որոնք, ինչպես միջնադարյան corvea-ն, գերմ. Frohndienst-ը և ռուս. барщина-ն, կատարվելու էին ձրի՝ կալվածատիրոջ մոտ։

---

[1] Նույնը, էջ 37—44։

[2] Տե՛ս «Կանոնգիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 127—128 և Մխիթար Գոշ, Դատաստանագիրք Հայոց, հրատ. Վ. Բաստամյանցի, Վաղարշապատ, 1880, էջ 412։

[3] Nöldeke, Tabari, էջ 112։

*Միանգամայն սխալ է, անշուշտ, ու անհիմն Կարստի ենթադրությունը, որ իբր թե «կոռ»-ը Հայաստանում ինչպես և արևելյան սլավոնների ու ռուսների մոտ, առաջ է եկել բյուզանդական ազդեցությամբ և իբր թե այդ է պատճառը, որ հայկական «կոռ»-ը և, ընդհանրապես, հարկային սիստեմը նմանություն ու պարզություն ունեն արևելյան սլավոնականի ու, մոտավորապես, ռուսականի հետ, որոնք նույնպես ենթարկվել են Բյուզանդիայի ազդեցությանը*[1]*։*

*Այդ ենթադրությունը, անշուշտ, ճիշտ չէ, որովհետև թե ինքը՝ ֆեոդալիզմը և թե նրա առանձնահատուկ տնտեսական կարգերը՝ ազատ գյուղացիության ճորտացումը և օգտագործումը, որպես աշխատող ձրի ուժ, ո՛չ թե իրավական փոխառություններ են, ինչպես լեզվի որոշ բառապաշարը, այլ ամեն մի երկրի տնտեսական ու ներքին զարգացման արդյունք։*

*«Կոռ»-ի բովանդակությունն ու տևողությունն Արշակունյաց ժամանակաշրջանում մնում են, դժբախտաբար, անորոշ։ Սակայն, նկատի առնելով հայ «շինական»-ների համեմատաբար բարեկեցիկ դրությունը հնագույն ժամանակներում, ինչպես կարելի էր եզրակացնել Շահապիվանի ժողովի կանոններից, նաև աչքի առաջ ունենալով բնական տնտեսության գերակշռող դերն այս շրջանում, ինչպես և կալվածատիրական խոշոր տնտեսությունների բացակայությունը՝ պետք է ենթադրել, որ «կոռ»-ը պատմական այս շրջանում կարող էր համեմատաբար մեղմ եղած լինել։*

*Դվինի ժողովի վերոհիշյալ ԺԱ կանոնում, ինչպես տեսանք, բացի «կոռ»-ից հիշատակված է նաև «պահակութիւն»-ը, որը, ինչպես երևում է այդ բառի այժմյան իսկ նշանակությունից, ըստ երևույթին, պարտադիր ձրի աշխատանքներն էին՝ պահպանության ու հսկողության, որ գոյություն են ունեցել նաև Արևմտյան Եվրոպայում։*

*Որ «պահակութիւն»-ը «կոռ»-ի հատուկ մի տեսակն է և գոյություն է ունեցել հինգերորդ դարում, և, անշուշտ, նաև Արշակունյաց թագավորության ժամանակ՝ այդ կարելի է գուշակել Նոր Կտակարանի հայերեն թարգմանությունից, որի մեջ հունարեն* ἀγγαρεύω *(լատ.* angario*) բառի դիմաց, որ գործածական էր պարտադիր, ձրի աշխատանքների համար, հայերենն ունի «պահակ ունել»*[2] *կամ «տարապարհակ վարել»*[3] *համապատասխան թարգմանությունը։*

---

[1] *Տե՛ս Karst,* Sempadscher Kodex, II, *էջ 12։*

[2] *Մատթ., Իէ, 32. Մարկ., ԺԵ, 21։*

[3] *Մատթ., Ե, 41։*

«Կոռ»-ի նշանակության վերաբերմամբ կա մի ընդհանուր հարց ևս, որ կարոտ է բացատրության։

Ֆրանսիական corvée-ն և գերմանական Erohndienst-ը, ինչպես հայտնի է, ունեցել են լայն իմաստ և գործ են ածվել նաև պետական ու հասարակական բնույթ ունեցող աշխատանքային պարտականությունների համար։

Այդպիսի աշխատանքներ էին, օրինակ, ճանապարհների շինությունն ու նորոգումը (corvée des routes), փոխադրական միջոցների հայթայթումը ևն.։ Ռուսաստանում, ընդհակառակը, барщина կոչվել են միայն այն պարտադիր ձրի աշխատանքները, որ կատարվել են կալվածատիրոջ օգտին։

Արդ՝ ուշագրավ է, որ հայկական «կոռ»-ը ունեցել է նույնպիսի ընդարձակ իմաստ, ինչպես corvée-ն և Erohndienst-ը։

Ինչպես մատենագրական աղբյուրների աղքատիկ ու պատահական նյութերի մեր այս քննությունը ցույց է տալիս, «շինական»-ների տնտեսական ու իրավական դրությունը, թեև շատ կողմերով մնում է մութ ու մասամբ էլ վիճելի, սակայն ընդհանուր գծերով բավականաչափ որոշվում է իբրև սոցիալական մի երևույթ, որ նման ու համապատասխան էր գյուղացիության դրությանը ֆեոդալական այլ երկրներում։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ

# ԱՌԵՎՏՈՒՐԸ, ՔԱՂԱՔՆԵՐԸ, ԱՐՀԵՍՏԱՎՈՐՆԵՐԸ ԵՎ ՍՏՐՈՒԿՆԵՐԸ

**Քաղաքների դերը և նշանակությունը Հին Հայաստանում:— Արևմուտքի միջազգային առևտուրը Արևելքի հետ:— Միջազգային առևտրական հարաբերությունների մեծ զարգացումը Արշակունյաց թագավորության սկզբնական շրջանում:— Ստրաբոնի վկայությունը:— Տնտեսական վերելքը Պոնտոսում և Հայաստանում:— Հայաստանի նշանավոր քաղաքները գտնվում էին տարանցիկ առևտրի գծի մոտ:— Պևտինգերյան քարտեզը՝ իբրև հիմնական աղբյուր Հայաստանի հին ճանապարհների:— Հայաստանի հինգ գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի:— Այդ ճանապարհների առևտրական և ռազմական նշանակությունը:— Արտաշատը՝ իբրև միջազգային առևտրի կենտրոն:— Մատենագրական աղբյուրների մեջ առևտրականներն առանձին չեն հիշատակված:— Սեմական գաղթականության առևտրական մեծ դերը Հին Հայաստանում:— Ներքին առևտուրը և դրամական շրջանառությունը:— Առևտրական փոխանակության վայրերը:— «Քաղաք» բառի սկզբնական նշանակությունը:— Արտահանության ապրանքները Հայաստանից:— Փաստական բավարար տեղեկությունների բացակայությունը:— Արշակունյաց Հայաստանի արհեստավորությունը:— Մառի կարծիքն արհեստակցական եղբայրությունների մասին:— Տնայնագործական արհեստների մասին Ագաթանգեղոսի և Եղիշեի վկայությունները:— Օտարազգի որակյալ արհեստավորները:— Քաղաքների երկրագործական բնույթը:— Քաղաքների բնակչության իրավական դրությունը:— Ստրկությունը Հին Հայաստանում:— «Ծառայ», «ստրուկ» և «աղախին» տերմինները:— Ստրկության գլխավոր աղբյուրները:— Գերեվարությունը:— Վաճառք և գնում:— Անվճարունակ պարտապաններ:— Ստրուկ գյուղացիներ:— Ստրկության տնտեսական երկրորդական դերը:— Ստրուկների իրավական դրությունը:**

*Հին Հայաստանի քաղաքների, ինչպես և Հայաստանի միջով անցնող տարանցիկ ճանապարհների ու միջազգային առևտրի խնդիրը մանրամասն ուսումնասիրված են իմ երկու աշխատությունների մեջ, որ լույս են տեսել Երևանում 1930 և 1936 թվերին*[1]։

[1] *Տե՛ս* ***Я. А. Манандян***, О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен, Ереван, 1930 *և* **Հ. Մանանդյան**, *Հայաս-*

Այստեղ մենք նույն խնդիրները քննության ենք առնելու համառոտաբար, ինչ չափով որ քաղաքների և առևտրի խնդիրը լուսաբանում է Արշակունյաց Հայաստանի սոցիալական ներքին կազմակերպության էությունն ու առանձնահատկությունները։

Հետաքրքիր է նախ և ուշագրավ, որ ֆեոդալական հասարակարգում քաղաքների դերը և նշանակությունը տարբեր են եղել ֆեոդալիզմի զարգացման զանազան շրջաններում և ֆեոդալական առանձին երկրների տեղական ուրույն պայմաններում։ Միջերկրական, Հյուսիսային և Բալթյան ծովերի ափերում, ինչպես և Մերձավոր Արևելքում ու, մասնավորապես, նաև Հին Հայաստանում՝ ֆեոդալիզմի զարգացման նախկին իսկ շրջաններում քաղաքները եղել են համեմատաբար խոշոր և բազմամարդ ու կարևոր դեր են կատարել՝ իբրև արտաքին առևտրի կենտրոններ։ Նույն այդ քաղաքները եղել են, մեծ մասամբ, նաև նշանավոր կենտրոններ արհեստների ու ներքին փոխանակության զարգացման։ Արտաքին առևտուրը՝ թեև առանձնապես չէր քայքայում ֆեոդալական հասարակարգի բնական-տնտեսական հիմքերը, սակայն նա որոշ ազդակ էր, անշուշտ, փոխանակության ու դրամական շրջանառության աճման։

Ֆեոդալական հասարակարգում, ինչպես տեսանք, գլխավոր արտադրողը գյուղացին էր, և արտադրության գերիշխող ձևը բնական տնտեսությունն էր։ Սակայն անժխտելի է նույնպես, որ նույն հասարակարգում որոշ չափով զարգացած են եղել քաղաքային տնտեսությունը, արհեստագործական արդյունաբերությունը, նաև առևտուրը և դրամական շրջանառությունը։

Հայկական ֆեոդալիզմի ուսումնասիրության համար քաղաքների ու քաղաքային տնտեսության խնդիրն արժանի է առանձին ուշադրության։ Լինելով ֆեոդալական հասարակարգի կարևոր ու էական տարրը՝ ֆեոդալական քաղաքը պարունակում էր իր մեջ նոր հասարակարգի այն ներհակ ու ընդդիմադիր սաղմերը, որ նախապայմանն էին ֆեոդալիզմի քայքայման։

Հռոմեական կայսրության գրաված՝ Միջերկրական ու Սև ծովերի մոտ գտնվող շրջանները նրան ծառայում էին իբրև հենարան ո՛չ միայն նվաճումների ու հարձակողական առաջխաղացման, այլև լայն ու աշխույժ արտաքին առևտրի։ Արշակունյաց թագավորության միջով էր անցնում, ինչպես մանրամասն ցույց է տրված վերոհիշյալ իմ աշխատություններում, միջազգային մեծ առևտրի

---

տանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան. քարտեզի, Երևան, 1936։ Համեմատե՛ նաև «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», էջ 212—240։

հյուսիսային գիծը, ուստի և Հայաստանը ևս որոշ մասնակցություն ուներ տրանզիտային այդ առևտրին։ Արշակունյաց հին մայրաքաղաք Արտաշատը, ինչպես կտեսնենք, հանդիսանում էր տրանզիտային ապրանքների պահեստավայր և առևտրական փոխանակությունների կենտրոնատեղի։

Դեռևս Օգոստոս կայսեր ժամանակ սկիզբ էր դրվել առևտրական կայուն և կանոնավոր հարաբերությունների Արևելքի հետ։ Պլինիոս Մեծի (23—79 թ.) վկայությամբ, Արևելքից բերված ապրանքների համար, որ ներմուծվում էին Իտալիա, Հռոմեական կայսրությունը յուրաքանչյուր տարի վճարում էր Հնդկաստանին, Արաբիային և Չինաստանին 100 միլիոն սեստերտիուս (=մոտ 10 միլիոն ոսկի ռուբլու)։

«Այդքան մեզ թանկ էին նստում,—ասում է Պլինիուսը,—մեր փարթամությունը և մեր կանայք»[1]։

Հնդկաստանից Արևմուտք բերվող գլխավոր ապրանքներն էին այն ժամանակ՝ բրինձը, բամբակը և բամբակեղեն կտորները, պղպեղը, դարչինը, համեմունքները, թանկագին քարերն ու մարգարիտը, զանազան տեսակի անուշահոտ խունկերը, փղոսկրը և ներկերը, իսկ Չինաստանից՝ գլխավորապես մետաքսը և մետաքսե գործվածքները։ Փոխարենը Հռոմեական կայսրությունն Արևելք էր արտահանում՝ արճիճ, պղինձ, անագ, եգիպտական ու սիրիական գործարանների ոսկեթել ու նախշավոր գործվածքներ, Աղեքսանդրիայի ապակյա իրեր, Ասորիքի ապակեղեն և այլն։ Բայց այդ արտահանությունը ետ էր մնում ներմուծումից, ուստի և տարբերությունը ստիպված էին վճարել կանխիկ դրամով։ Գիտնականներից ոմանց կարծիքով՝ Պլինիուսի մատնանշած գումարը ցույց է տալիս ո՛չ թե ներմուծումների արժեքը, այլ այն գումարը, որ յուրաքանչյուր տարի կայսրությունը լրացուցիչ կերպով վճարում էր փողով[2]։

Պետք է առանձնապես նշել, որ Տրդատ Ա-ի գահակալությունից ու հանդիսավոր թագադրությունից հետո (66 թ. մեր թվ. հ.) խաղաղությունը Մերձավոր Արևելքում չխախտվեց և պահպանվեց մոտ հիսուն տարի։ Երկարատև այդ խաղաղությունը, ինչպես և Հռոմեական կայսրության ու Պարթևական թագավորության միջև հաստատված բարեկամությունը համաշխարհային առևտրական հարաբերությունների զարգացման վրա ունեցան, բնականաբար, խիստ բարենպաստ ազդեցություն։

---

[1] Տե՛ս *Plin.*, Nat. hist., XII, 41.

[2] *Norman H. Baynes*, The Byzantine empire, London, 1925, էջ 207. *E. Speck*, Handelsgeschichte des Altertums, Bd. III, էջ 930։

Պետք է նկատի ունենալ նաև, որ Ներոն կայսեր (54—68 թ.) և Փլավյանների դինաստիայի ժամանակ (69—96 թ.) հռոմայեցիները տիրել էին Սև ծովի թե հյուսիսային և թե արևելյան առափնյա շրջաններին և հնարավորություն էին ստացել վերահսկողություն սահմանելու միջազգային առևտրի տարանցիկ ճանապարհի վրա, որը Տանայիսից Սև ծովի ափերով իջնում էր Հայաստան և այստեղից Մեդիայի վրայով գնում էր Բաբելոնիա և Միջին Ասիա։

Հռոմի իշխանության հաստատումը այս մագիստրալ ճանապարհագծի վրա, ինչպես և հռոմեական անընդմեջ օղակի անցկացումը Սև ծովի շուրջը, որը դառել էր հռոմեական ներքին ծով՝ կայսրության համար ուներ, իհարկե, առևտրական-տնտեսական բացառիկ մեծ նշանակություն։ Եվ միանգամայն հասկանալի է, որ հենց շնորհիվ Ներոնի և երեք Փլավյանների տնտեսական հեռատես քաղաքականության, միջազգային առևտուրը և համաշխարհային հարաբերությունները հասան մեր թվականության առաջին դարի վերջերում զարգացման ամենաբարձր աստիճանի։

Հռոմեական արտաքին առևտրի ծաղկման շրջաններ էին առաջին և երկրորդ դարերը։ Երրորդ դարում սկսված երկարատև ներքին խռովությունները և, մանավանդ, երրորդ դարի երկրորդ կեսի դրամական ճգնաժամը մեծ հարված հասցրին Հռոմեական կայսրության տնտեսական կենցաղին և զգալի չափով պատճառ եղան նաև արտաքին առևտրի քայքայման։ Սակայն այդ ժամանակավոր կանգառում էր։ Շուտով միջազգային առևտրական հարաբերությունները նորից վերակենդանացան Հռոմեական-Արևելյան կայսրության մեջ և այնուհետև հետզհետե մեծապես զարգացան բյուզանդական-սասանյան ժամանակաշրջանում։

Միջազգային առևտրական հաղորդակցությունը, ինչպես ասացինք, մեծ զարգացում էր ստացել նաև Արշակունյաց Հայաստանի միջով, որը իբրև տրանզիտային երկիր էր ծառայում փոխադրման համար չինական մետաքսի և մյուս թանկարժեք ապրանքների, որոնք Չինաստանից, Միջին Ասիայից և հյուսիսային Հնդկաստանից արտահանվում էին Արևմուտք։

Հայաստանի առևտրի մասին հռոմեական-պարթևական շրջանում, Արշակունյաց թագավորության հիմնադրումից մի փոքր առաջ, ամենահին տեղեկությունը գտնում ենք Ստրաբոնի մոտ։ Նկարագրելով Կոմանա քաղաքը, իբրև Պոնտոսի կրոնական կարևոր կենտրոն, Ստրաբոնը, ի միջի այլոց, նշում է նրա առևտրական սերտ կապը Հայաստանի հետ։

*«Կոմանան,— ասում է նա,— բազմամարդ քաղաք է և վաճառատեղի է Հայաստանից եկած ապրանքների»*[1]։

*Հիմնվելով այս տեղեկության վրա և նկատի ունենալով հռոմեական ճանապարհացույցների անուղղակի ցուցումները՝ կարելի է հետևություն անել, որ մեր թվականության առաջին դարի սկզբներում ճանապարհն Արտաշատից դեպի Սև ծով անցնում էր Սատաղի և Կոմանայի վրայով։ Տրապիզոնը չէր կարող տրանզիտային առևտրում դեր կատարել Ստրաբոնի ժամանակ, որովհետև Սատաղից Տրապիզոն գնացող ճանապարհը հռոմայեցիներն անցկացրել էին Պոնտոսյան լեռնակույտի միջով առաջին դարի երկրորդ կեսում։ Հեռավոր-արևելյան առևտրի համար Տրապիզոնը հետզհետե նշանակություն էր ստացել սկսած, հավանորեն, երկրորդ դարից, երբ Հադրիանոս կայսեր (117—138 թ.) կարգադրությամբ այնտեղ կառուցել էին հարմար նավահանգիստ։*

*Միջազգային առևտրի զարգացման մասին այս կողմերում վկայում է և այն փաստը, որ Հռոմեական կայսրությունն Ասորիքի, Կապադովկիայի և Պոնտոսի համար կտրում էր արծաթ փողեր, որոնք իրենց կշռով հավասար էին Արշակունիների դրամներին։ Հետաքրքիր է նույնպես, որ հռոմեական տիրապետության առաջին դարերում՝ միջազգային առևտրական հարաբերությունների բուռն զարգացման ժամանակ՝ Պոնտոսում, ինչպես և Արշակունյաց Հայաստանում, նկատելի է կուլտուրական- տնտեսական վերելք. հենց այս ժամանակներում հյուսիսային շրջաններում հիմնվել էին նոր քաղաքներ, Փոքր Հայքում և Պոնտոսում՝ Նիկոպոլիսը, Նեոկեսարիան և Սեբաստիան, իսկ Հայաստանում՝ Վաղարշապատը և Մծուրնը։*

*Ինչպես մեր ուսումնասիրությունները պարզ կերպով ցույց են տվել, Հին Հայաստանի առևտրական նշանավոր քաղաքները՝ Արտաշատը, Երվանդաշատը, Զարեհավանը, Զարիշատը և Թեոդոսուպոլիսը գտնվել են կարավանների մեծ ճանապարհների մոտ։*

*Առևտրական ու ռազմական այդ հին ճանապարհների ուսումնասիրության համար միակ հիմնական աղբյուրն է հռոմեական հին քարտեզը, որն անվանվում է այժմ* Tabula Peutingeiana *այսինքն՝ «Պևտինգերյան Տախտակներ»։*

*Ինչպես հայտնի է, այդ քարտեզը 16-րդ դարում գտել էր վիեննացի հումանիստ Կոնրադ Կելտեսը և հանձնել Աուգսբուրգի գիտնական Պևտինգերին, որի անունով և կոչվում է «Պևտինգերյան»։*

---

[1] *Տե՛ս* *Strabo*, XII, 3, 36 (559).

Պետք է սակայն մատնանշել, որ գրավոր այս հուշարձանը, որն անվանվում է նաև «հռոմեական աշխարհաքարտեզ», իրապես, ո՛չ թե քարտեզ է այժմյան իմաստով, այլ հին աշխարհի ճանապարհների մանրամասն մի նկարագրություն է և հատուկ մի ուղեցույց, որի վրա նշանակված են առանձին գծերով ու նկարներով Բրիտանիայի, Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի հաղորդակցության հին ճանապարհները, այդ ճանապարհների վրա գտնվող քաղաքներն ու կայարանները, և միաժամանակ — և այդ առանձնապես կարևոր է— նաև տարածությունները յուրաքանչյուր կայարանից մինչև մյուս կայարանը, որոնք ցույց են տրված, գլխավորապես, հռոմեական մղոններով, իսկ երբեմն նաև այլ չափերով։

Քարտեզի վրայի նկարներից, ինչպես մատնանշել է Կոնրադ Միլլերը[1], պարզ երևում է, որ նրա հորինման ժամանակ Հռոմը, Կոստանդնուպոլիսը և Անտիոքը եղել են միաժամանակ կայսերական գահանիստ քաղաքներ, իսկ այս, անշուշտ, ուշադրության արժանի ու խիստ կարևոր մի ապացույց է, որ քարտեզը կազմված պիտի լիներ չորրորդ դարում՝ Կոստանդիանոս Մեծից (324—337 թ.) հետո և Թեոդոսիոս Մեծից (370—395 թ.) առաջ։ Քննության առնելով քարտեզի նաև մյուս մանրամասնությունները՝ Կ. Միլլերը նրա հորինման ժամանակը ենթադրում է չորրորդ դարի վաթսունական թվականների սկզբներին։

Պևտինգերյան քարտեզում նշանակված են Արշակունյաց Հայաստանի հինգ մեծ ճանապարհները, որոնց միավորման ու հանդիպման կետը եղել է Արտաշատ քաղաքը։ Գլխավոր այդ հինգ ճանապարհներն են՝

1. Արտաշատ—Սատաղ, 2. Արտաշատ—Տիգրանակերտ, 3. Արտաշատ—Սեբաստոպոլիս, 4. Արտաշատ—Համադան և 5. Արտաշատ—[Արմաստիկա]։

Այս ճանապարհներից հինգերորդը մանրամասն քննված է Մարկվարտի աշխատության մեջ, որը լույս էր տեսել Վիեննայում 1928 թվին[2]։ Իսկ առաջին չորս ճանապարհները քննության են առնըված և որոշված աշխարհագրական վերոհիշյալ իմ մեծ աշխատության մեջ[3]։

---

[1] *K. Miller*, Itineraria Romana, Römische Reisewege an der Hand der Tabula Peutingeriana, Stuttgart, 1916, էջ XXIX—XXXVI.

[2] **Տե՛ս** *Markwart*, Das Itinerar von Artaxata nach Armastica, Wien, 1928, *համեմատե՛ նաև «Հանդէս Ամսօրեայ», 1927, № 11—12, էջ 826—866.*

[3] **Մանանդյան,** *Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի, Երևան, 1936։*

1. Արտաշատ—Սատաղ։— Արտաշատից այս գծի ուղղությունը որոշվում է Փառախոտի (Paracata, այժմյան Բուլաղբաշ), Զողկերտ-Ցոլակերտի (*Zolocerta, Կարվանսարայի ավերակների հյուսիսակողմում) վրայով և Կարվանսարայի կամ Կուչախի լեռնանցքով ու Հառիճի (Hariza, այժմյան Արուճ) մոտով դեպի Բագավան (*Bagauna, այժմյան Ուչքիլիսե) ու այնուհետև Հայկական Պար կամ Աղրի-դաղ լեռնաշղթայի հարավային կողմով և Խադդայի (Chadas, այժմյան Խասստուր, Խաղդար), Արամանայի (Armanas) և Անտաքի (Andaga կամ Andacas) վրայով մինչև այժմյան Քեփրիքեոյ (Adconfluentes) և ապա Խաղտոյառիճի (*Chalchdiara, այժմյան Գաղտառիճ), Sinara-յի և Lucus Basaro-յի վրայով այժմյան Սատաղ (Satala)։

2. Արտաշատ—Տիգրանակերտ։—Արտաշատից Տիգրանակերտ գնացող այս ճանապարհն իջնում էր նախորդ ուղեգծի կայարաններով և Կարվանսարայի կամ Կուչախի լեռնանցքով Բագավան և այնտեղից թեքվում էր դեպի հարավ։ Բագավանից ճանապարհը գնում էր Տիգրանակերտ Դիդիմայի (Didyma, այժմյան Դիդեմ գյուղն Արածանի գետի ձախ ափի մոտ), Արաքիայի (Arachia, համեմատե՛ Archene=Հարք), Ծումբի (*Tsumbo), Եղեգականի (*Elegacana), Դոնեվանքի (Dagnevana) ու Բաստավանի (Vastauna կամ Bastavena, այժմյան Բոստաքենդ) վրայով մինչև այժմյան Մշո դաշտը և այստեղից Պատրանսավանի (Patransana), այժմյան Կիլդիզի (*Cyldiza) և Zônîgart — «Զինկերտ»-ի (Zanserio կամ Zancerion) վրայով հասնում էր Տիգրանակերտ։

3. Արտաշատ—Սեբաստոպոլիս։— Հյուսիսային այս ճանապարհն Արտաշատից գնում էր Սեբաստոպոլիս Աշտարակի (Strangira կամ Stranguria), այժմյան Կոնդախսազի (Condeso), Գանլիճայնի (*Canlita, այժմյան Ղանլիճա), այժմյան Փոգայի (Pagas), Արուլի (Apulum) ու Խոսպիայի (Caspiae) վրայով դեպի Մտկուարի—Կուրի գետանցքը (Ad *Metcurium) և այստեղից այժմյան Ախալցխայի, Աբասթումանի վրայով ու Զեգառի լեռնանցքով դեպի Ռիոն գետը և այնուհետև կամ դեպի Սեբաստոպոլիս—Փոթի և կամ դեպի Սեբաստոպոլիս—Իսկուրիա։

4. Արտաշատ—Խոյ—Պարեսակա։ Այս ճանապարհը, ինչպես պարզ երևում է Պետինգերյան քարտեզի նկարից, Արտաշատից դեպի Պարսկաստան էր գնում հին Կոգովիտ գավառի

միջով և հին Որտսպուի (Catispi, հավանական է ուղղել *Ortispi կամ *Ortispu), Արտազի (Anteba, հավանորեն պետք է ուղղել *Artaza) և «Նուարսակ»-ի (Nasabi) վրայով այժմյան Խոյ (Gobdi կամ Gobdie) և այստեղից Տարսվիչի (Trispeda, Tarspedo, այժմյան Տասվիչ, Տասուջ կամ Տեր-սուջ) և Պարեսակայի (Peresaca, հավանորեն՝ Պասք) վրայով, որը գտնվում էր այժմյան Աջի-չայ գետի աջ կողմում, դեպի հին Եկբատանա (Ecbatanis, այժմյան Համադան)։

5. Արտաշատ—[Արմաստիկա]։— Այս ճանապարհագծի ուղղության մասին նոր լուսաբանություն է տվել, ինչպես տեսանք, Մարկվարտը։ Բաղդատելով իրար հետ Պևտինգեր-յան քարտեզի և անանուն Ռավեննացու աշխարհագրության վկայությունները՝ Մարկվարտը հանգել է այն եզրակացու-թյան, որ հռոմեական քարտեզի մեջ նշված անանուն մեծ քա-ղաքն Իբերիայի գլխավոր քաղաք Արմաստիկան կամ Արմո-զիկեն է։ Շրջանային այս ճանապարհը նա մատնացույց է անում Արտաշատի հյուսիսակողմում՝ Սևանա լճի և Կուր գետի ավազանի միջև։ Ճանապարհի ուղղությունը նա ենթա-դրում է այժմյան Դիլիջանի վրայով և Աղստև գետի երկա-րությամբ մինչև Ղազախ ու այստեղից դեպի Տփղիս և ապա Դեբեդ գետի երկարությամբ և այժմյան Կիրովականի վրայով ու Դիլիջանի շրջանով նորից դեպի Արտաշատ։

Այս մագիստրալ ճանապարհներով, ինչպես ցույց եմ տվել իմ աշխատություններում կատարվել են ո՛չ միայն միջազգային առևտրական հարաբերությունները և կարավանների շարժումները, այլև հայկական, հռոմեական, պարթևական և սասանյան զորքերի տեղաշարժումները։ Պետք է սակայն ասել, որ պատերազմող զոր-քերի հարձակման ու նահանջի հին ճանապարհները, որոնք անորոշ ու անցողակի կերպով հիշված են մատենագրական հայ և օտար երկերում, մեծ մասամբ, սխալ էին լուսաբանվել պատմագիտա-կան երկերում։

Արշակունիների հին մայրաքաղաք Արտաշատում, ինչպես երևում է Պևտինգերյան քարտեզի վկայություններից, խաչաձև-վում էին առևտրական ճանապարհները և նա, իբրև հանգուցային կետ, ինչպես վկայում է Հուստինիանոսի օրենսգրքի 408/409 թվի կայսերական էդիկտը, եղել է միջազգային առևտրի ու փոխանա-կության կայան ու կենտրոն[1]։ Էդիկտի բովանդակության քննու-

[1] Cod. Justin., IV, 63, 4.

*Թյունից կարելի է հետևցնել, որ համաձայնությունն այդ մասին Սասանյան Պարսկաստանի հետ կայացել էր, հավանորեն, 387 թվի դաշնագրությամբ՝ Հայաստանի բաժանումից հետո*[1]*։ Ուշագրավ այս փաստը, որ հենց Հայաստանի բաժանումից անմիջապես հետո Արտաշատը ճանաչված է եղել իբրև միջազգային առևտրի գլխավոր վայրերից մեկը՝ կարևոր մի ակնարկ է, որ նա նույն միջազգային նշանակությունն ունեցած պիտի լիներ նաև Արշակունյաց թագավորության ժամանակ։*

*Իբրև հատուկ մի վայր, ուր թույլ էր տրված առևտուր անել երկու կողմերի վաճառականներին, Արտաշատը, իսկ հետո Դվինը, բնականաբար, ստացած պիտի լինեին միջազգային կենտրոնների բնույթ։*

*Բյուզանդական կայսրության կողմից միջազգային այս առևտրի վրա, որը բացի Արտաշատից տեղի էր ունենում նաև հռոմեական Կալլինիկոնում և Պարսից իշխանության տակ գտնվող Մծբինում, հսկողություն ունեին հատուկ պաշտոնյաներ, որ կոչվում էին* comites commerciorum[2]*։ Մենանդրի պատմությունից հայտնի է նույնպես, որ առևտրական հաղորդակցության այս վայրերն անվանվել են* δεκατεντήριον*, այսինքն՝ «տասանորդարաններ»։ Կ. Գյուտերբոքը հունարեն այս բառից հետևցնում է, որ*

> *«երկու պետությունների համար էլ որոշված էր ներմուծության մաքսը վաճառքին արժեքին տասը առ հարյուրը»*[3]*։*

*Առևտրական փոխանակության սահմանումը որոշ կետերում միանգամայն հասկանալի է, որովհետև հին այս ժամանակներում երթևեկության ազատություն այժմյան իմաստով գոյություն չուներ։ Հռոմեական ու, անշուշտ, նաև պարսկական օրենքների համաձայն՝ ազատ մուտքը մի պետությունից մյուսը խստիվ արգելված էր. ուստի և Սասանյան Պարսկաստանի և Բյուզանդական կայսրության վաճառականները չէին կարող գնալ և իրենց ապրանքները տանել Կոստանդնուպոլիս կամ Տիզբոն։ Նրանք իրար հետ պետք է հարաբերություն ունենային և առևտուր անեին միայն այն քաղաքներում, որոնք որոշված էին հատուկ դաշնագրերով։*

*Ցնայած միջազգային առևտրի կարևոր նշանակությանը Արշակունյաց Հայաստանի տնտեսական կյանքում՝ տարօրինակ է խիստ, որ հայ մատենագրական աղբյուրները կատարելապես լուռ են ու*

---

[1] Տե՛ս Կ. Գյուտերբոք, *Բյուզանդիոն և Պարսկաստան, թարգմ. Հ. Համբարյանի, Վիեննա, 1911, էջ 96—98։*

[2] Տե՛ս Cod. Just., IV, 63, 6.

[3] Գյուտերբոք, *Բյուզանդիոն և Պարսկաստան, էջ 102։*

մունք և չունեն անգամ աղոտ վկայություններ այդ առևտրի, Հայաստանի քաղաքների ներքին կացության և նրանց առևտրական կամ արհեստագործ բնակչության մասին։

Ուշադրության արժանի է նաև, որ առևտրականները և արհեստավորներն առանձնապես չեն մատնանշվում նաև աղբյուրների այն վկայություններում, որոնց մեջ հիշատակված են նախարարական Հայաստանի մյուս դասերը և համայն բնակչությունը։

Այդ պարզ երևում է, օրինակ, հետևյալ վկայություններից.

1. Ագաթանգեղոս, ԺԲ, էջ 73 (Թիֆլիս, 1914)՝

«Տրդատ արքայ Հայոց Մեծաց, առ մեծամեծս և առ իշխանս և առ նախարարս և առ գործակալս և առ այլ մարդիկդ, որ ընդ իմով իշխանութեան էք, յաւանս, ի շէնս, ի գեօղս, յագարակս, առ ազատս և առ շինականս, միանգամայն իսկ առ ամենեսեան, ողջոյն»։

2. Փավստոս, V, գլ. Լ, էջ 233 (Վենետիկ, 1889)՝

«Եւ սգային [զՊապ] ամենայն ազատք և շինականք ծագէ ի ծագ ամենայն սահմանաց երկրին Հայոց, ազատք և շինականք ամենայն բնակիչք տանն Թորգոմայ, հայ լեզուն առհասարակ»։

3. Նույնը, III, գլ. ԻԱ, էջ 54՝

«Ապա առաւել ժողովեցան ի մի ժողով միաբանութեանն մարդիկ աշխարհին Հայաստան երկրին. նախարարք մեծամեծք, աւագք, կուսակալք, աշխարհակալք, ազատք, զօրագլուխք, դատաւորք, պետք, իշխանք, բայց ի զօրավարացն, այլ և ի շինականաց անգամ ռամիկ մարդկանն»։

Քրիստենսենի ասելով՝ քաղաքացիներն և արհեստավորներն աղբյուրների մեջ չեն հիշատակվում առանձին նաև Սասանյան Պարսկաստանում, այլ նրանք և երկրագործները միացած են միշտ այս վերջին դասի մեջ, որ անվանվում է vâstryôshân[1]։

Նույնը մենք նկատում ենք հայկական ֆեոդալիզմի հնագույն այս շրջանում. այստեղ ևս, ինչպես տեսանք, քաղաքաբնակ հասարակ ժողովուրդը և արհեստավորները «շինական»-ների հետ միասին կազմում էին «ռամիկ» դասը։

«Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին» մեր աշխատության մեջ մատնանշել էինք, որ Տիգրան Մեծի, ինչպես և Արշակունյաց թագավորության ժամանակ, նաև, հավանորեն, մարզպանության շրջանում, Հին Հայաստանի առևտրական կյանքում ղեկա-

---

[1] Տե՛ս Christensen, L'empire des Sassanides, էջ 19։

վարող դեր էին կատարում ո՛չ թե իրենք՝ հայերը, այլ սեմական գաղթականությունը, գլխավորապես հրեաները և ասորիները։

Թե որքան մեծ է եղել այդ գաղթականության առևտրական դերը Հին Հայաստանում՝ այդ երևում է, ի միջի այլոց, գրաբար լեզվի բառապաշարից, որի մեջ ամենասովորական տերմինները, որոնք կապ ունեն վաճառականության հետ, ինչպես՝ «գաղութ», «գումար», «խանութ», «կշիռ», «հաշիվ», «շուկա» են՝. փոխառություններ են ասորերենից[1]։

Սեմական այդ գաղթականության մասին, ինչպես տեսանք, ուղղակի ցուցումներ ունեն Փավստոսը և Խորենացին, որոնք հիշատակում են նրանց գաղթեցումը Հայաստան Տիգրան Մեծի արշավանքների ժամանակ, նաև նկարագրում են նրանց գերեվարությունը և բնակեցումը Պարսկաստանում Շապուհ Բ-ի ժամանակ՝ 368—369 թվականների պարսկական արշավանքներից հետո։

Այս գաղթական բնակչության իրավական դրության մասին Հայաստանում մատենագրական աղբյուրները, դժբախտաբար, չեն տալիս նույնիսկ աղոտ տեղեկություններ։ Կարելի է միայն ենթադրել, որ կրոնական տեսակետից նրանք ապրել են առանձնացած և ունեցել են, ըստ երևույթին, իրենց հատուկ աղոթարանները։

«Գիրք թղթոց»-ի վկայություններից հայտնի է, օրինակ, որ վեցերորդ դարում քաղաքբնակ գաղութների բնակչության մի մասը կազմել են նեստորականները, որոնք ունեցել են իրենց սեփական եպիսկոպոսը[2]։

Օտարազգի բնակիչների մեծ թիվը հայկական քաղաքներում և նրանց գերիշխող դերն ուշադրության արժանի մի փաստ են, որով բացատրվում է ըստ իս հայ մատենագիրների անհասկանալի լռությունը Հին Հայաստանի առևտրի ու վաճառականության մասին։

Ըստ երևույթին, այդ օտար գաղութները կողմնակի մի զանգված էին Հին Հայաստանի ֆեոդալական կյանքում և ձևականորեն չէին համարվում կարևոր ու անհրաժեշտ տարր նախարարական կազմակերպության։ Հավանական է, իհարկե, որ իրենք՝ հայերը ևս որոշ դեր կատարում էին առևտրի ու վաճառականության մեջ, սակայն հնագույն այս շրջանում, ըստ երևույթին, դեռևս չէր առաջացել առանձնապես շերտավորված կամ զորեղացած հայ առևտրական այն դասը, որ հիշատակվում է մատենագրական աղբյուրներում Բագրատունյաց շրջանում։

---

[1] Տե՛ս „О торговле и городах Армении", էջ 69։

[2] Տե՛ս «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 70։

Խոսելով «շինական» դասի մասին՝ վերև մենք շեշտել էինք, որ պատմական այս շրջանում գերակշռող էր Հին Հայաստանում բնական տնտեսության դերը։

Արդ՝ ինչպե՞ս հասկանալ այդ։ Կարելի՞ է արդյոք դրանից հետևցնել, որ առևտուրը և փողային շրջանառությունը չեն ազդել և չեն անդրադարձել նույն շրջանի տնտեսական կյանքի վրա։

Նման ենթադրությունները կլինեին, իմ կարծիքով, ավելի քան անհավանական։

Ճիշտ է, միջազգային տարանցիկ առևտուրը կարող էր և չունենալ խոր և անմիջական ազդեցություն գյուղական տնտեսության վրա, սակայն ներքին առևտուրը, որ բավական զարգացած է եղել այս շրջանում, կարևոր մի ազդակ էր, որ որոշ չափով խախտում էր բնական տնտեսության հիմքերը և նպաստում դրամական շրջանառության ծավալման անգամ «շինական» տնտեսություններում։

«Շինական»-ները, ինչպես հայտնի է Շահապիվանի ժողովի կանոններից, վճարելու էին դրամական տուգանքներ. օրինակ՝ պոռնիկ «շինական»-ը՝ 100 դրամ, ամուլ կնոջ արձակող կամ աղջիկ առևանգող «շինական»-ը՝ 600 դրամ ևն։

Այս տուգանքները, որ գոյություն ունեին Շահապիվանի 443 թվի ժողովից հետո՝ ավելի քան հավանական է, որ գոյություն ունեցած պիտի լինեին նաև Արշակունյաց թագավորության ժամանակ։ Դրամական այդ վճարումները ցույց են տալիս, որ Հայաստանը հին այս ժամանակներում իր տնտեսական զարգացման ու դրամական շրջանառության տեսակետից գտնվել է համեմատաբար բարձր աստիճանի վրա։

Ընդունելով բնական տնտեսության գերիշխող նշանակությունը Հին Հայաստանում, չպետք է, ուրեմն, աչքաթող անել, որ այդ տնտեսության կողքին աճում էին և զարգանում դրամական շրջանառության ու դրամական փոխանակության նոր ձևերը։ Իսկ տնտեսական այդ նոր ձևերն անուղղակի ապացույցներ են ներքին շուկաների գոյության, որտեղ «շինական»-ները կարող էին վաճառել իրենց տնտեսության որոշ արտադրանքները։

Ինչպես և միջնադարյան Եվրոպայում, Հին Հայաստանում ևս այդ փոխանակությունը տեղի էր ունենում, գլխավորապես, ֆեոդալական շրջանների կենտրոնավայրերում, որոնք դժվարամատչելի բերդեր էին ու ամրություններ և պատերազմի ժամանակ ծառայում էին իբրև պատսպարան շրջակա բնակչության համար։

Ենթադրում են նույնպես, որ հենց իրենք՝ առևտրական հին քաղաքներն առաջ էին եկել նախկին բերդերի ու ամրացած տեղերի

մոտ, որոնք բնակավայրեր էին ազդեցիկ մեծավորների։ Ուշագրավ է այդ տեսակետից, որ հին հայերենում «քաղաք» բառի սկզբնական նշանակությունն է՝ «պատնեշ, ամրություն»։

Նրա այդ նշանակությունը համապատասխանում է ռուսերեն городище բառին, ինչպես այդ պարզ երևում է հետևյալ վկայություններից.

1. Եղիշե, V, էջ 184 (Վենետիկ, 1864)՝

«Եվ գավառում այնտեղ կանգ առնելով՝ նա [Պարսից զորագլուխը] բանակ դրեց, փոս փորեց, պատնեշ կանգնեցրեց, ցցապատեր շինեց և ամեն պատրաստությամբ ամրացրեց իբրև քաղաք»։

[«Եւ անդէն ի գաւառին զտեղի առեալ նորա՝ բանակ բոլորէր, փոս հատանէր, պատնէշ կանգնէր, շերտաւոր փակէր, ամրացուցանէր իբրև զքաղաք ամենայն պատրաստութեամբ»]։

2. Փավստոս, V, գլ. ԼԴ, էջ 241 (Վենետիկ 1889)՝

«Նա [Մուշեղը] խորհրդակցում էր Հունաց իշխանների հետ և նրանց միջոցով նաև կայսեր հետ, թե անհրաժեշտ է շինել Հայոց երկրում, ամեն մի գավառում, ամուր պարիսպներով շրջապատված քաղաքներ՝ յուրաքանչյուր գավառի մեջ կամ մի մի քաղաք, կամ երկ-երկու, և հարկավոր է դրանց հաստատել Հայոց ամբողջ երկրում, իբրև զորանիստ կայաններ»։ [«Խորհէր եւ [Մուշեղ] ընդ իշխանսն Յունաց, և նոքօք ընդ կայսերն, թէ պարտ է նոցա քաղաք մի շինել յերկրին Հայոց, ի մի մի գաւառսն, որ մին մի քաղաքս, որ երկուս երկուս ամուր պարսպաւորս զօրանիստ հաստատել ընդ ամենայն երկիրն Հայոց»]։

Ուրեմն, ինչպես տեսնում ենք, գիտական այն նորագույն տեսությունը, որ քաղաքների ծագումը բացատրում է ավաններից, որոնք գտնվել են բերդերի, ամրոցների, բուրգերի և այլ ամրությունների շուրջը, կատարելապես հաստատվում է նաև հայկական աղբյուրների տվյալներով։

Լուսաբանել պատմական այս շրջանի ներքին առևտրի վերաբերյալ մանրամասնությունները, դժբախտաբար, հնարավոր չէ՝ աղբյուրների ու նյութերի աղքատության պատճառով։ Նույնը պետք է ասել նաև արտաքին առևտրի մասին։

Կողմնակի մի քանի ցուցումներից կարելի է միայն կռահել, որ Հին Հայաստանը, որի միջով անցնում էր միջազգային առևտրի հյուսիսային գիծը և որի մայրաքաղաքը այդ առևտրի կենտրոնա-

վայրն էր, հավանորեն, ինքը ևս արտահանել է արտաքին շուկաներն իր տնտեսության նաև սեփական արտադրանքները։

Գ. Խալաթյանցի կարծիքով՝ արտահանության գլխավոր առարկաներն էին Հայաստանից. «Ձիեր, ջորիներ, մետաղներ, ներկեր (գլխավորապես՝ այսպես կոչված «Հայկական ներկը»— սանդիկ, որ նման էր ծիրանի ներկի), հացահատիկներ, գինի, յուղեր, նմանապես զանազան տեղական բանվածքներ»[1]։ Դժբախտաբար, Խալաթյանցի այս ամփոփումը խիստ վիճելի է, որովհետև նրա ենթադրություններն արտահանության մի քանի առարկաների նկատմամբ հիմնավորված չեն և չեն հաստատվում աղբյուրների վկայություններով։

Ինչպես ցույց ենք տվել մեր աշխատությունների մեջ, որոշ տեղեկություններ Հայաստանի արտաքին ապրանքափոխանակման մասին տալիս են, գլխավորապես, արաբական աղբյուրները, իսկ հնագույն մատենագիրները միջանկյալ կերպով միայն հիշատակում են երբեմն այն հազվագյուտ առարկաները, որոնք արտահանվել են Հայաստանից։

Պլինիուսը, օրինակ, իր «Բնական պատմության» մեջ հիշում է Հայաստանի հետևյալ բույսերը, ներկերը և քարերը՝ adamantis բույսը, laser՝ որ հյութն էր laserpitium-ի, որը բուսնում էր Պարսկաստանում, Մեդիայում և Հայաստանում և, իբրև բժշկական բույս՝ արտահանվում էր Հռոմ. Հայաստանում պատրաստվող մի ներկ, որը նկարիչներն անվանում էին orobitis. Հայաստանից ստացվող մի քար, որ կոչվում էր armenium և ներկում ոսկեբորակի (chrysocolla-ի) նման. alumen շիբ և սրոցաքարեր[2]։

Բժիշկ Դիոսկորիդը, որ ապրում էր առաջին դարում Քրիստոսից հետո, հաղորդում է, որ «ամենալավ amomum-ը (համեմը) համարվում է հայկականը»[3], իսկ Թեսսալոնիկեի մետրոպոլիտ Եվստաթիոսը, որն օգտվել է հին աղբյուրներից, վկայում է, որ հայերի մոտ արդյունահանվում էին քարեր, որոնցով փորագրում և պատրաստում էին կնիքներ[4]։

---

[1] *Г. Халатьянц*, Очерк истории Армении, М., 1910, էջ 170, նաև *Брюсов В.*, Летопись исторических судеб армянского народа, М., 1918, էջ 32։

[2] *C. Plinii Secundi*, Naturalis historiae, XIX, 15,2. XXIV, 102,2. XXXIII, 27, 1. XXXV, 28, 1 և 52,2. XXXVI, 47,1. տե՛ս հրատ. Littré, t. I—II, Paris, 1883:

[3] Տե՛ս *Латышев*, Известия древних писателей о Скифии и Кавказе, I, СПб., 1890, էջ 507։

[4] Նույնը, էջ 205:

Բժշկական բույսերի և «որդան կարմիր» ներկի մասին, որ վաճառվում էին և թերևս նաև արտահանվում, տալիս է մի քանի տեղեկություններ Ղազար Փարպեցին։

1. Ղազար Փարպեցի, I, գլ. է, էջ 9 (Տփղիս, 1904)՝

«Այնտեղ [Այրարատյան գավառում] գտնվում են նաև զանազան տեսակ բույսերի արմատներ օգտակար դեղերի պետքերի համար, որ ճարտարագետ, տեղյակ ու հմուտ բժիշկների պատրաստուկներ են՝ արագ բուժող ու ցավերն ամոքող սպեղանիներ, և կամ իբրև խմելիք՝ բուժում են երկարատև հիվանդությունները»։

[«Անդ գտանին և ազգի ազգի արմատք բուսոց ի պէտս օգտակարութեան դեղոց, ըստ ճարտարագէտ ճանաչողութեան ստուգահմուտ բժշկացն յօրինուածոցն, երագահաս ախտահալած սպեղանիք, և կամ արբմամբ յերկարելոցն ի ցաւս պատահացուցաննեն առողջութիւն»]։

2. Նույնը, I, գլ. է, էջ 10՝

«Նաև եղեգնյա բույսերի արմատներ ամենաբաղձալի Այրարատյան դաշտը սնուցանում է իր մեջ ո՛չ իզուր, այլ նրանցից առաջանում են որդեր կարմիր տեսք ունեցող գունավոր զարդարանքի համար, որ շահասեր մարդկանց օգուտ է տալիս և շքեղություն»

[«Նաև զարմատս եղէգնասեր բուսոցն ոչ ընդունայն սնուցանէ յինքեան ամենաբաղձ դաշտն Այրարատոյ, այլ և ի նմանէ ծնեալ որդունս, ի զարդ կարմրատեսիլ գունոց, ընծայէ օգտասիրացն շահս և շքեղութիւնս»]։

Բացի օտար աղբյուրների և Փարպեցու մոտ հիշատակված ներկերից, բժշկական բույսերից և քարերից՝ հավանական է նույնպես, որ Հայաստանից արտահանվել են ձիեր, ջորիներ, գինիներ ո՛չ միայն Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության շրջանում[1], այլև հետագա դարերում։

Կասկածելի է սակայն և անապացույց հացահատիկների և յուղերի արտահանումը Հայաստանից, որ մատնացույց է արված Խալաթյանցի և Բրյուսովի մոտ։

Հնարավոր է, իհարկե, և ավելի քան հավանական, որ Հայաստանից դուրս են տարվել և վաճառվել, բացի վերոհիշյալ առարկաներից, նաև երկրի տնտեսության ավելի էական ու կարևոր արտա-

---

[1] Տե՛ս „О торговле и городах Армении“, էջ 10—12։

գրանքները, սակայն այդ մասին մատենագրական աղբյուրների մեջ չկան փաստական տեղեկություններ։

Համառոտ մեր այս դիտողությունները, որ հիմնված են աղբյուրների պատահական ու կցկտուր տեղեկությունների վրա, թեև չեն տալիս պարզ և լրիվ պատկերը Հին Հայաստանի ներքին և արտաքին առևտրի, սակայն, այնուամենայնիվ, նրանք հաստատում են այդ առևտրի կարևոր նշանակությունը Հայաստանի տնտեսական կյանքում և բացատրում փողային շրջանառության այն լայն տարածումը պատմական այս շրջանում, որ մենք մատնանշել էինք։

Միանգամայն անբավարար են մատենագրական աղոտ ու պատահական վկայությունները նաև Արշակունյաց Հայաստանի արհեստավորության մասին։

Անհրաժեշտ է նախ մատնանշել, որ հին հայերենում արհեստ և արվեստ բառերն իրարից չէին տարբերվում։ Թե արհեստով և թե արվեստով պարապողներին անվանում էին «արուեստաւոր», սակայն, երբ մատնանշում էին արհեստների հատուկ բնույթը՝ այս վերջիններն անվանվում էին երբեմն «ձեռական արհեստք» կամ «անբան արհեստք», իսկ արհեստավորները՝ նաև «արուեստաւոր գործաւոր» կամ «արուեստագործ»։

Բացի սովորական արհեստներից, Հին Հայաստանում, ինչպես և Աղվանքում, զարգացած է եղել նաև մետաղագործությունը՝ «գիտութիւն ոսկեծնութեան և արծաթահանութեան և երկաթահանութեան և պղնձագործութեան»՝ որի մասին ունեն ուշագրավ վկայություններ Ղազար Փարպեցին և Մովսես Կաղանկատվացին[1]։

Նիկ. Մառի կարծիքով, թե հին հայերը և թե կովկասյան մյուս ժողովուրդները կուլտուրական իրենց կյանքի որոշ կողմերը, ի միջի այլոց, նաև մետաղագործությունը՝ ժառանգել էին հաբեթական բնիկներից, որոնց մոտ մետաղագործության արհեստները զարգացած էին դեռ հնագույն շրջանում[2]։ Մառը ենթադրում է բացի այդ, որ արհեստներով և նյութական կուլտուրայի առարկաների զանազան տեսակ արտադրություններով զբաղվել են տարբեր ցեղեր և այդ որոշ տեղերում պահպանվել է մինչև մեր օրերը[3]։ Նա ընդունում է նույնպես արհեստագործության ժառանգական լինելը, արհեստակցական եղբայրությունների գոյությունը և ընտրական

---

[1] Տե՛ս Ղազար Փարպեցի, I, գլ. է, էջ 10, և Մովսես Կաղանկատվացի, հրատ. Մ. Էմինի, Մոսկվա, 1860, II գլ. ԺԶ, էջ 131։

[2] Տե՛ս *Н. Марр*, Кавказский культурный мир и Армения, Петроград, 1915, էջ 30։

[3] Նույնը, էջ 16։

սկզբունքների կիրառումն այս կազմակերպություններում, որոնք հետագայում վերածվել են համքարությունների[1]։

Մառի այս ենթադրությունները հնարավոր ու հավանական կռահումներ են, որ կարոտ են սակայն վերահաստատման փաստական վկայությունների օգնությամբ։

Որ տնայնագործական արհեստները լայն կերպով տարածված են եղել ո՛չ միայն «շինական»-ների, այլև ազնվականների ընտանիքներում՝ այդ երևում է Եղիշեի հետևյալ վկայությունից.

«Իսկ կալանավորների կանայք,— ասում է Եղիշեն,— հոժարաբար զսպեցին իրենց մարմնավոր ցանկությունները և հաղորդակից եղան սուրբ կալանավորների չարչարանքներին. իրենց կյանքում նմանվեցին մահացած քաջ նահատակներին և հեռվից մխիթարող վարդապետներ դառան բանտարկյալներին։ Աշխատեցին և կերակրվեցին իրենց ձեռքերով և այն ռոճիկը, որ նրանց նշանակված էր արքունիքից, ամեն տարի թողակ էին դարձնում և տալիս էին, որ տանեն նրանց մխիթարելու համար»։

[«Իսկ կանայք կապելոցն կամօք կապեցին զմարմնաւոր ցանկութիւնս, և եղեն կցորդ չարչարանաց սուրբ կապելոցն. ի կեանս իւրեանց նմանեցին քաջ նահատակացն մահուամբ, և ի հեռաստանէ եղեն վարդապետք մխիթարիչք բանդարգելեացն։ Մատամբք իւրեանց վաստակեցին և կերակրեցան, և զկարգեալ ռոճիկ նոցա յարքունուստ՝ ամ յամէ թողակ առնէին և տային տանել նոցա ի մխիթարութիւն»][2]։

Արհեստների վերաբերյալ հմտությունը՝ որպես ապրուստի հայթայթման միջոց՝ մատնանշված է նաև Ագաթանգեղոսի Պատմության մեջ։

«Այն ժամանակ,—վկայում է Ագաթանգեղոսը,— նրանք [Գայանեն ընկերուհիների հետ] եկան հասան Հայոց երկիրը՝ Այրարատ գավառը, Վաղարշապատ քաղաքը, որ անվանում են նաև Նորաքաղաք, Հայոց թագավորների նստավայրը։ Այնուհետև, երբ նրանք եկան՝ մտան այգեստանի խաղող կոխելու տեղը, որ շինված էր հյուսիս-արևելյան կողմում. և նրանք կերակրվում էին, ծախելով քաղաքում իրենց ունեցվածքը. իրենց հետ ուրիշ որևէ ծախսելու փող չունեին՝ բայց միայն մեկը նրանցից գիտեր ապակեգործության արհեստը և

---

[1] Նույնը, էջ 17։

[2] Եղիշե, Ը, էջ 359։

*ապակեղեն ուլունքներ պատրաստելով՝ տալիս էր իբրև վճար սնունդի՝ իբրև ամենօրյա ուտելիքի օրաժախք»։*

*[«Յայնմ ժամանակի գային հասանէին յերկիրն Հայոց, յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, զոր և Նորաքաղաքն կոչեն, ի նիստս Թագաւորացն Հայոց։ Այնուհետև եկեալ մտանէին ի հնձանայարկս այգեստանւոյն, որ կան շինեալ ի հիւսիսոյ յարևելից կուսէ. և կերակրէին ընչիւք իւրեանց ի վաճառաց քաղաքին. և ոչ ինչ այլ ինչ գոյր թոշակ ընդ նոսա զոր ունէին, բայց մի ոմն ի նոցանէ ունէր արուեստ ապակագործութեան առնել ուլունս ապակեղէնս, և տալ գինս ընդ կերակրոյ աւուրն պարենի ռոճկի»]*[1]։

*Մենք տեսանք, որ Հին Հայաստանի քաղաքների բնակչության մի ստվար մասը կազմում էին օտարազգի գաղթականները։ Ինչպես մեր աշխատությունների մեջ մատնացույց ենք արել՝ հելլենիստական քաղաքների բնակչության գաղթեցումը Հայաստան տեղի էր ունենում Հայաստանի հելլենականացման ու կուլտուրական զարգացման նպատակով*[2]*։ Տեղահանված նոր բնակչությունը ոչ միայն նպաստել էր առևտրի բարգավաճմանը, այլև արհեստների ու արդյունագործության։*

*Ավելի քան հավանական է, ուրեմն, որ Հին Հայաստանի քաղաքբնակ օտարազգիների մի խոշոր մասը բաղկացած պիտի լիներ որակյալ արհեստավորներից։*

*Ընդունելով, որ առևտուրը և արհեստները բավականաչափ զարգացած են եղել Արշակունյաց Հայաստանի քաղաքներում՝ չպետք է սակայն գերագնահատել քաղաքների նշանակությունը պատմական այս շրջանում և վերագրել նրանց տնտեսական ու քաղաքական այն մեծ դերը, որ ունեին Արևմտյան Եվրոպայի քաղաքներն ուշ միջնադարում։*

*Օտարազգի գաղութները քաղաքներում չունեին, բնականաբար, այն սոցիալական կշիռն ու նշանակությունը, որ հետագայում Բագրատունյաց ժամանակ սկսել էր հետզհետե ձեռք բերել բնիկ հայկական բուրժուազիան։ Բացի այդ, պատմական այս շրջանի քաղաքները՝ անգամ Արտաշատը, որ միջազգային առևտրի խոշոր կենտրոն էր, չէին կորցրել իրենց գյուղական և երկրագործական բնույթը և նրանց բնակչության մի ստվար մասը շարունակում էր զբաղվել երկրագործությամբ։*

---

1 Ագաթանգեղոս, *Թիֆլիս, 1914, գլ. ԺԳ, էջ 84։*

2 *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Տիգրան Բ և Հռոմը, Երևան, 1940, էջ 62 և ուրիշներ։*

Քաղաքների բնակչության իրավական դրության մասին մատենագրական հնագույն աղբյուրները չեն տալիս և ոչ մի տեղեկություն. միայն հետագա պատմիչների վկայություններից կարելի է կռահել, որ քաղաքացիներն ունեցել են ինչ-որ արտոնություններ, որոնք մնում են սակայն մութ ու անորոշ։

Խոսելով Վաղարշակ թագավորի սահմանած կարգերի մասին՝ Խորենացին ակնարկում է, որ քաղաքացիներն իրենց սոցիալական դրությամբ ավելի բարձր են դասված եղել, քան գեղջուկները։

«Հրաման է տալիս [Վաղարշակը],—ասում է Խորենացին,— որ քաղաքացի մարդիկ ավելի հարգված ու պատված լինեն, քան գյուղացիները և որ գյուղացիները պատվեն քաղաքացիներին, ինչպես իշխաններին, իսկ քաղաքացիները շատ չպարծենան գյուղացիների մոտ, այլ նրանց հետ վարվեն եղբայրաբար, որպեսզի պահպանվի բարեկարգությունը և աննախանձ կյանքը, որ պատճառ են բարեկեցության և կենաց խաղաղության»։

[«Հրաման տայ՝ և քաղաքացեաց մարդկան արգոյ և պատիւ լինել առաւել քան զգեղջկաց. և գեղջկաց պատուել զքաղաքացիս որպէս զիշխանս և քաղաքացեաց մի կարի առ գեղջկօքն պերճանալ, այլ եղբայրաբար վարիլ, վասն բարեկարգութեան և աննախանձու կենաց, որ է շինութեան և խաղաղութեան կենաց պատճառք»][1]։

Կարևորն այս վկայության մեջ ո՛չ թե նրա պատմական կողմն է, այլ այն, որ Խորենացու ժամանակ քաղաքացիներն ավելի հարգված ու արտոնված դաս են համարվել, քան գյուղացիները։

Քաղաքացիների այս արտոնյալ դրությունը մատնացույց է արված նաև Հովհաննես Դրասխանակերտցու ուշագրավ մի վկայության մեջ։ Խոսելով Զվարթնոց եկեղեցու շինության մասին՝ նա հաղորդում է, որ Ներսես Գ կաթողիկոսը

«Ազատ ժամանակ գտնելով՝ իր շինած հրաշակերտ եկեղեցու դրսի կողմը փակում ու ամրացնում է պաշտպանող շրջապարիսպով և բնակվելու տուն է կառուցում իրեն համար սրա ներսում կոփած հաստահեղույս քարերից։ Այլև նույնպես հաստատում ու բնակեցնում է այնտեղ երգերի մարդկանց բազմությունը քաղաքների բնակչության պայմանով»։

[«Բայց հայրապետն Ներսէս պարապ անձին գտեալ՝ զարտաքոյս հրաշակերտ եկեղեցւոյն, զոր իւր իսկ էր շինեալ՝

[1] **Խորենացի,** *II, գլ. Ը, էջ 117—118։*

շուրջանակի պատուար պարսպով փակեալ ամրացուցանէր, յօրինեալ ի նմա յարկս բնակութեան ինքեան հաստահեղոյս կոփածոյ քարամբք։ Այլ և կարգեալ կացուցանէր ի նմա ամբոխութիւնս երդու մարդաց ըստ պայմանի քաղաքականաց»]¹։

Կարելի է ավելի քան հավանական համարել, որ երդերի բնակեցման կարգը քաղաքների բնակչության պայմանով, որ պարզապես հատուկ մի արտոնություն էր, գոյություն է ունեցել ո՛չ միայն մարզպանության, այլև Արշակունյաց թագավորության ժամանակ։

Առևտրի, քաղաքների ու արհեստների խնդիրը լուսաբանելուց հետո՝ անհրաժեշտ է քննության առնել նաև ստրկության հարցը, որի գոյությունը ժխտվել է հաճախ հայագիտական նորագույն ուսումնասիրություններում։

Իհարկե, խոսք անգամ չի կարող լինել, որ իբր թե Հին Հայաստանում գոյություն չեն ունեցել ստրուկներ և որ Հայաստանն այդ տեսակետից բացառիկ մի երկիր է եղել Մերձավոր Արևելքում։

Ստրկությունը համատարած ու ընդհանուր մի երևույթ էր հին աշխարհում, ուստի և ինքնըստինքյան հասկանալի է, որ բացառություն չէր կարող կազմել նաև Հին Հայաստանը։

Եվ իրավի՝ որ հին հայկական կյանքում ևս ստրկությունն անխուսափելի էր, ինչպես և մյուս երկրներում, այդ հաստատում են հենց մատենագրական հայ աղբյուրները, որոնց մեջ ստրուկների մասին կան պարզ ու որոշ վկայություններ, որ հաճախ անտես են արվել նախորդ աշխատություններում։

Բայց նախ քննենք այն տերմինները, որ հին հայերենում նշանակել են ստրուկ կամ ստրկություն։

Վերև մենք տեսանք, որ նախարարական Հայաստանում «ծառայ» էին անվանվում թե ստրուկները և թե ֆեոդալական սանդուղքի ստորադրյալ դասերն իրենց սենյորների կամ «տէր»-երի հանդեպ։ Մատենագրական աղբյուրների մեջ հիշատակված են երեք տարբեր տեսակի «ծառայութիւն»՝ «ի սպասու ծառայութիւն», «ընդ հարկօք» կամ «ի հարկի ծառայութիւն» և «ի ստրկաց կարգի» կամ «ստրկութեան ծառայութիւն»։

«Ծառայութիւն» և «ծառայ» տերմիններին այս վերջին իմաստով համապատասխանել են հին հայերենում նաև «ստրկութիւն» և «ստրուկ» բառերը։

---

¹ Հովհաննես կաթողիկոս Դրասխանակերտցի, Թիֆլիս, 1912, էջ 88։

*Ուշագրավ է սակայն, որ «ծառայ» և «ստրուկ» անվանվել են այր ստրուկները, իսկ կին ստրուկները կոչվել են «աղախին»։ Ուրեմն՝ «ստրուկ» և ստրկություն գաղափարների համար գործ են ածվել հին հայերենում հետևյալ բառերը՝ «ծառայ», «ստրուկ», «աղախին» և «ծառայութիւն», «ստրկութիւն» ու «աղախնութիւն»։*

*Արդ՝ աղբյուրների վկայություններից միանգամայն պարզ երևվում է, որ «ծառայ» կամ «ստրուկ» և «աղախին» ունեցել են պատմական հին շրջանում և՛ Արշակունիները, և՛ նախարարները, և՛ մյուս ազնվականները։*

*Իբրև ստրկատիրության տարածման ապացույց կարող են ծառայել հետևյալ վկայությունները*[1].

*1. Փավստոս, IV, գլ. ԺԵ, էջ 127 (Վենետիկ, 1889)՝*

*«Իսկ սուրբ Ներսես կաթողիկոսն Արշակ թագավորի երեսն այլևս չտեսավ մինչև նրա կորստյան օրը։ Ուստի Ներսեսի փոխարեն քրիստոնեության գլուխ նշանակեցին Չունակ անունով մեկին, որը ստրուկ էր և արքունի ստրուկներից էր»։*

*[«Այլ սուրբ կաթողիկոսն Ներսէս այլ ոչ ևս յաւել տեսանել զերեսս թագաւորին Արշակայ մինչև յօրն նորին կորստեան. այլ փոխանակ Ներսիսի զՉունակ ումն անուն, և կացուցին փոխանակ նորա գլուխ քրիստոնէութեանն. և էր ստրուկ ի ստրկաց արքունի»]։*

*2. Խորենացի, I, գլ. ԺԲ, էջ 41 (Տփղիս, 1913)՝*

*«Սրան [Սիսակին] է տալիս [Գեղամը] իր գույքի մեծ մասը և «ծառայ»-ներ, բազմաթիվ անձինք, ու նրան ժառանգության սահման է կտրում ծովից դեպի արևելք»։*

*[«Սմա զմեծ մասն ընչից իւրոց տուեալ և ծառայս անձինս բազումս՝ սահմանս հատանէ նմա ժառանգութեան ի ծովէն ընդ արևելս»]։*

*3. Նույնը, II, գլ. ԽԸ, էջ 175՝*

*«Եվ ապա ավար է առնում [Սմբատը] Երվազի գանձերը և հինգ հարյուր հոգի «ծառայ»-ներ, նաև մեհյանների գանձերից ամենաընտիրները և բերում է Արտաշեսին։ Եվ Արտաշեսը պարգևում է Սմբատին Երվազի «ծառայ»-ներին»։*

*[«Եւ ապա աւար առեալ զգանձսն Երուազայ, և ծառայս անձինս հինգ հարիւր, նա և զընտիր ընտիր գանձուցն մեհե-*

[1] *Մանրամասն վկայություններ մեջ են բերված իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ (էջ 234—239)։*

*նից՝ բերէ Արտաշիսի։ Եւ Արտաշէս պարգևէ Սմբատայ զծառայսն Երուազայ»*]։

4. *Եղիշե, VII, էջ 235 (Վենետիկ, 1864)՝*

*«Նրա [Վասակի] դեմ ամբաստանություններ մեջ բերեց նույնպես և Մուշկան Նյուսալավուրտը և պատերազմակից իր ընկերների հետ հայտնեց, թե պատերազմը վերջանալուց հետո էլ Վասակը շատ արյուն թափել տվեց. թե ինչպես նա սուտ երդումներով խաբում ու ամրոցներից ցած էր իջեցնում. ոմանց արքունի «ծառայ»-ներից ու «աղախին»-ներից նա կոտորում էր, ոմանց էլ գերի էր տանում»։*

[*«Նա և ի մէջ իսկ բերէր զամբաստանութիւն նորա Մուշկան Նիւսալաւուրտ, և յայտ առնէր պատերազմակից ընկերօքն իւրովք, որ և յետ վճարելոյ պատերազմին բազում արիւն ետ հեղուլ Վասակ. թէ որպէս սուտ երդմամբք խաբէր և իջուցանէր յամրոցաց անտի. էր՝ զոր կոտորէր և էր՝ զոր գերի տանէր զծառայս և զաղախնայս արքունի»*]։

5. *Նույնը, VII, էջ 247՝*

*«և փախան նրանից [Վասակից] նրա ձեռնասուն «ծառայ»-ները։*

[*«և փախստական եղեն ի նմանէ ձեռնասուն ծառայք նորա»*]։

*Բոլոր այս վկայություններում «ծառայ», «ստրուկ» և «աղախին» նշանակում են, հավանորեն, ստրուկ։*

*Մատենագրական աղբյուրներում պարզ ու որոշ մատնանշված են նաև ստրկության գլխավոր աղբյուրները։*

*Ստրկության աղբյուրներից ամենահիմնականը պետք է համարել, անշուշտ, գերեվարությունը, որի մասին հետաքրքիր ու խիստ կարևոր մի վկայություն ունի Անանիա Շիրակացին իր «Յաղագս հարցման և լուծման» գրվածքում։*

*«Ներսեհ Կամսարական՝ որդի Արշավրի, այս Ներսեհի անվանակիցը և նախնին, հաղթելով պատերազմում բահլուճներին՝ վերցնում է խիստ շատ գերիներ։ Հասնելով թագավորական արքունիքը՝ գերիների կեսը նա նվիրում է Պարսից թագավորին։ Այնուհետև, հաշվելով մյուս կեսը՝ թագավորի որդուն ևս նվիրում է գերիների յոթերորդ մասը։ Ապա, հրաժեշտ տալով նրանց՝ ճանապարհ է ընկնում դեպի իր աշխարհը և, գալով Դարիկպետի տունը, խիստ մեծարվում է սրանից՝ ո՛չ որպես նախարար, այլ որպես մի ինչ-որ թագավոր. Ուստի և տալիս է նրան գերիների ութերորդ մասը։ Գա-*

լով սպայապետի մոտ, որն անվանվում էր Խորավարան՝ առավել ևս սրանից է մեծարվում, ուստի սրան ևս տալիս է գերիների տասնչորսերորդ մասը։ Ավելի առաջ գալով՝ հասնում է իր աշխարհը և այստեղ ընդառաջ է գալիս իր փոքր եղբայր Հրահատը. Նրան տալիս է գերիների տասներեքերորդ մասը։ Երբ ավելի առաջ է գալիս՝ նրան դիմավորում են հայ ազատները, որոնց տալիս է գերիների իններորդ մասը։ Գալով Վաղարշապատ՝ սուրբ եկեղեցիներին տալիս է գերիների տասնվեցերորդ մասը։ Ապա գալիս է իր մեծ եղբայր Սահակը և նրան ևս տալիս է գերիների քաներորդ մասը, և մնում է իրեն հինգհարյուր յոթանասուն հոգի։ Արդ՝ իմացի՛ր, թե որքան էին բոլոր գերիները»։

[«Ներսեհ Կամսարական որդի Արշաւրի, անուանակից և նախնի այսմ Ներսեհի, ի յաղթել պատերազմաւ բահլճացն առնու գերի սաստիկ յոյժ. և հասեալ ի դուռն արքունի՝ ընծայեցուցանէ թագաւորին Պարսից զհասարակ գերւոյն. և թուեալ զհասարակն՝ ևս ընծայէ որդւոյ արքայի զեաւթներորդ մասն. և հրաժարեալ ի նոցանէ, դառնայ յաշխարհն իւր և եկեալ ի տուն Դարիկպետի՝ յոյժ մեծարի ի նմանէ, ոչ որպէս զնախարար, այլ որպէս զմի ոք ի թագաւորաց. և սա տայ նմա զութերորդ մասն գերւոյն. և եկեալ առ սպայապետն, զոր Խորաւարանայ կոչեն, և առաւել ևս ի նմանէ մեծարեալ՝ տայ նմա զչորեքտասաներորդ մասն գերւոյն. և ևս յառաջ եկեալ հասանէ յաշխարհ իւր, և ընդ առաջ լինի նմա եղբայր իւր կրտսեր Հրահատ, և տայ նմա զերեքտասաներորդ մասն գերւոյն. և ևս յառաջ եկեալ՝ ընդ առաջ լինին նմա ազատք Հայոց և տայ նոցա զիններորդ մասն գերւոյն. և եկեալ ի Վաղարշապատ՝ տայ ի սուրբ եկեղեցիսն զվեշտասաներորդ մասն գերւոյն և եկեալ Սահակ աւագ եղբայր իւր՝ տայ նմա զքսաներորդ մասն գերւոյն. և իւր մնաց հինգհարևր և եաւթանասուն անձն։ Արդ գիտեա՛ թէ ընդ ամենայն քանի՞ է լեալ»][1]։

Հարցման լուծումից իմանում ենք, որ իր Հրահատ եղբորը Ներսեհը տվել է 60 գերի, «ազատ»-ներին՝ 80, Վաղարշապատի եկեղեցիներին՝ 40 և իր Սահակ եղբորը՝ 30 գերի, իսկ գերիների ընդհանուր թիվը եղել է՝ 2240։

---

[1] Տե՛ս „Вопросы и решения“, изд. И Орбели, Петроград, 1918, էջ 26, ԻԱ հարցումն։

Անանիա Շիրակացու այս վկայությունը ո՛չ միայն ցույց է տալիս ստրկության հիմնական աղբյուրը, այլև հաստատում է նույնպես, որ ստրուկներ ունեցել են բացի ազնվականներից նաև եկեղեցիները։

Ստրկության մի ուրիշ կարևոր աղբյուր էր վաճառքը և գնումը, որի մասին կան որոշ վկայություններ Կանոնագրքում[1]։

Աղբյուրների վկայություններից պարզ երևում է նաև, որ Հին Հայաստանում ևս, ինչպես և Ռուսաստանում ու Միջնադարյան Եվրոպայում, ստրուկ էին դառնում նաև ազատ մարդիկ, որոնք չէին կարող վճարել իրենց պարտքերը։ Ստրկության այս երրորդ աղբյուրը մանրամասն կերպով նկարագրված է, օրինակ, Հովհան Մանդակունու «Վասն փոխոց և վաշխից» ճառում[2]։

Ստրուկների աշխատանքից օգտվել են, ինչպես երևում է աղբյուրների վկայություններից, գլխավորապես ընտանիքներում։

Բայց Խորենացու Պատմության մեջ կան մի քանի ակնարկներ, որոնցից կարելի է թերևս կռահել, որ գերիներին երբեմն բնակեցրել են գյուղերում և օգտագործել նրանց երկրագործական աշխատանքներում։ Աղոտ ակնարկներ այդ մասին գտնվում են Խորենացու հետևյալ վկայություններում.

1. Խորենացի, II, գլ. ԽԸ, էջ 175 (Տփղիս, 1913)՝

«Այն ժամանակ Սմբատը Երվազի ծառաներին, որ գերի էր բերել Բագարանից, տարավ բնակեցրեց Մասիսի թիկունքում տալով ձեռակերտին միևնույն Բագարան անունը»։

[«Յայնժամ Սմբատայ զծառայսն Երուազայ, զոր գերեացն ի Բագարանէ, տարեալ բնակեցուցանէ ի թիկանց Մասեաց, ի նոյն անուն Բագարան կոչելով զձեռակերտն»]։

2. Նույնը, II, գլ. ԾԳ, էջ 183՝

«Արտաշեսի հրամանով բնակություն է հաստատում [Սմբատը] Տմորիքում, որն այժմ կոչվում է Կորդրիք, և գերիների բազմությունը նստեցնում է Ալկիում»։

[«Հրամանաւ Արտաշիսի բնակէ ի Տմորիս, որ այժմ կոչի Կորդրիք, ի յԱլկի նստուցեալ զբազմութիւն գերւոյն»]։

Խորենացու այս վկայությունները մեկնելիս՝ նկատի պետք է ունենալ ո՛չ թե նրանց պատմական ճշտությունը, այլ գերիների

---

[1] Տե՛ս «Կանոնգիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 65, 108 և 115։

[2] «Յովհաննու Մանդակունւոյ Հայոց հայրապետի, ճառք», երկ. տպ., Վենետիկ, 1860, էջ 65—66։

բնակեցումը գյուղերում, որ կարող է իրական փաստ լինել նախարարական Հայաստանի կենցաղում։

Եթե հնարավոր լինի ապագայում հիմնավորել մեր դիտողությունն ավելի հաստատուն փաստերով՝ այդ կարող է թերևս լինել մի ապացույց, որ Հին Հայաստանում ևս գոյություն են ունեցել ստրուկ գյուղացիներ, որոնք սոցիալական իրենց կացությամբ տարբերվել են, հավանորեն, «շինական»-ներից։

Ընդունելով ստրկության գոյությունը նախարարական Հայաստանում՝ չպետք է, իհարկե, նրա նշանակությունը գերագնահատել և համարել ստրկական աշխատանքը հիմնական ու առաջնակարգ ազդակ Հայաստանի տնտեսական զարգացման։

Հին Հայաստանում, ինչպես և արևելյան մյուս երկրներում, ստրկությունը բնավ չի խաղացել այն դերը, որ նրան սխալմամբ վերագրել է Բորյանը[1]։ Միանգամայն պարզ է, որ նախարարական Հայաստանի տնտեսական հիմքը կիսազատ «շինականն» էր և ոչ ստրուկը, որի տնտեսական դերը պետք է համարել երկրորդական։

Ստրկությունը Հին Հայաստանում չի կարող, անշուշտ, համեմատվել իր ծավալով և իր տնտեսական նշանակությամբ Հին Հունաստանի կամ Հռոմի ստրկության հետ, ուր ստրուկները կազմում էին բնակչության ստվար մեծամասնությունը և գլխավոր արտադրող տարրն էին ո՛չ միայն արդյունագործության մեջ, այլև գյուղատնտեսության։

Ստրուկների իրավական դրության մասին պատմական այս հին շրջանում մեզ ոչինչ հայտնի չէ։

Ստրկական աշխատանքի շահագործման աստիճանը և ձևը, ինչպես հայտնի է, կախված են եղել յուրաքանչյուր երկրի տնտեսական միջավայրից և ապրանքափոխանակության նվազ կամ լայն զարգացումից։

Մենք տեսանք, որ պատմական այս հին շրջանում թեև զարգանում էին Արշակունյաց Հայաստանում թե առևտուրը և թե դրամական շրջանառությունը, սակայն ոչ այն մեծ ծավալով ինչպես Հունաստանում կամ Հռոմում։ Ֆեոդալիզմի այս շրջանում գերակշռող նշանակություն ուներ Հայաստանում բնական տնտեսությունը։ Իրենք՝ հայ նախարարները, որ մեծ մասամբ զինվորականներ էին, չունեին, ինչպես տեսացինք, սեփական ու ինքնուրույն խոշոր

---

[1] *Б. А. Борьян*, Армения, международная дипломатия и СССР, М., 1928, часть I, *էջ 72—111*։

տնտեսություններ։ Բացի այդ, ցորենը և գյուղատնտեսության մյուս արտադրանքները չէին դառել լայն շուկայի ապրանք։

Հասկանալի է, որ տնտեսական այս պայմաններում չկար դեռևս ստրկական աշխատանքը շահագործելու այն խթանը, որ գոյություն ուներ ապրանքային ու փողային տնտեսության լայն զարգացման շրջաններում։

Այդ է պատճառը, որ պատմական այս շրջանում ստրուկների իրավական դրությունը մենք ենթադրում ենք համեմատաբար ավելի մեղմ, քան հանրապետական Հռոմում կամ կապիտալիստական երկրներում։

# ՀԱՄԱՌՈՏ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԵՎ ՑԱՆԿ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ

### Ա. ՊԱՏՄԱԿԱՆ ԵՐԿԵՐ


*Aslan Kévork*, Études historiques sur le peuple arménien, Paris, 1909.

*Baynes Norman H.*, Cambridge Medieval Hisfory, vol. I, Cambridge, 1936.

**Բասմաջյան Կ. Յ.**, *Իսկական պատմություն Հայոց, Կ. Պոլիս, 1914։*

*Брюсов В.*, Летопись исторических судеб армянского народа, Ереван, 1940.

**Գաբրճյան Հ.**, *Տիեզերական պատմություն, հատ. Բ, Վիեննա, 1852։*

**Գարագաշյան Ա. Մ.**, *Քննական պատմություն Հայոց, Բ և Գ, Թիֆլիս, 1895։*

**Գելցեր Հ.**, *Համառոտ պատմություն Հայոց, թարգմ. Գր. վ. Գալեմքյարյանի, Վիեննա, 1897։*

*Gutschmid Alf. von*, Geschichte Irans und seiner Nachbarländer von Alexander dem Grossen bis zum Untergang der Arsaciden, Tübingen, 1888.

**Դոլենս Ն. և Խաչ Ա.**, *Պատմություն հին հայերի, պրակ երրորդ, ֆրանս. բնագր. թարգմ. Ռ. Քաջբերունի, Թիֆլիս, 1910։*

*Lebeau*, Histoire du Bas-Empire, nouvelle édition par Saint-Martin, t. I—IV-Paris, 1824.

**Լեո**, *Հայոց պատմություն, հատ. Ա, Թիֆլիս, 1917։*

*Халатьянц Г.*, Очерки истории Армении, М., 1910.

*Christensen A.*, L'Iran sous les Sassanides, Copenhague, 1944,

Cambridge Ancient History, vol. XI, Cambridge, 1936 (*գլուխ* III—M. Rostovtzeff, *գլուխ* V *և* VI—R. P. Longden, *գլուխ* VIII *և* IX—W. Weber).

*Նույնը*, vol. XII, Cambridge, 1939:

*Костанянц К.*, История Армении, Краткий очерк, М., 1911.

Homo Léon, Histoire générale *Գլոցի*, Histoire ancienne, troisième partie, Histoire Romaine, t. III, Le Haut-Empire, Paris, 1933.

*Манандян Я.*, Краткий обзор истории древней Армении, М., 1943.

**Մանանդյան Հ.** *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Ա, սկզբից մինչև Արշակունիների հաստատումը Հայաստանում (66 մ. թ. հ.), Երևան, 1944։*

*Mommsen Th.*, Römische Geschichte, Bd. V, dritte Auflage, Berlin, 1886.

*Morgan J.*, Histoire du peuple arménien, Nancy—Paris—Strasbourg, 1919.

*Justi F.*, Geschichte Irans, Grundriss der Iranischen Philologie, II, Band 5. Lieferung, Strassburg, 1903.

*Nöldeke Th.*, Aufsätze zur persischen Geschichte, Leipzig, 1887.

**Չամչյան Մ.**, *Պատմութիւն Հայոց, հատ. Ա., Վենետիկ, 1784։*

*Rostovtzeff M.*, Gesellschaft und Wirtschaft im römischen Kaiserreich, Bd. II. übersetzt v. L. Wickort, Leipzig.

*Sandalgian Jos.*, Histoire documentaire de l'Arménie, t. II, Rome, 1917.

*Tournebize F.*, Histoire politique et réligieuse de l'Arménie, Paris, 1900.

## Բ. ԱՅԼԵՎԱՅԼ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

**Աբեղյան Մ.**, *Հայոց հին գրականության պատմություն, գիրք առաջին, Երևան, 1944։*

*Адонц Н.*, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908.

**Ասատուրյան Հ. Յ.**, *Քաղաքական վերաբերութիւններ ընդ մէջ Հայաստանի և Հռովմայ 190-էն ն. Ք. մինչև 428, յ. Ք., Վենետիկ, 1912։*

*Dulaurier Ed.*, Recherches sur la chronologie arménienne, Paris, 1859.

**Ինճիճյան Ղ.**, *Հնախօսութիւն Հին Հայաստանի, հատ. Ա—Գ, Վենետիկ, 1835։*

*Lehmann-Haupt C. F.*, Armenien einst und jetzt, Bd. I, Berlin, 1910.

*Халатьянц Г.*, Армянский эпос в истории Армении Моисея Хоренского, М., 1896.

*Его же*, Армянские Аршакиды в истории Армении Моисея Хоренского, М., 1903.

*Кулаковский Ю.*, История Византии, т. I, второе издание, Киев, 1913.

*Krumbacher K.*, Geschichte der buzantinischen Litteratur, München, 1897

**Հյուբշման Հ.**, *Հին Հայոց տեղւոյ անունները, թարգմ. Հ. Բ. Պիլեզիկճյան, Վիեննա, 1907, Ազգ. մատեն., ՄԳ։*

*Hübschmann H.*, Armenische Grammatik, Leipzig, 1895

*Манандян Я. А.*, О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен (V в. до н. эры—XV в. н. эры), Ереван, 1930.

**Մանանդյան Հ.**, *Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, Երևան, 1934։*

**Նույնի**, *Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի, Երևան, 1936։*

*Markwart J.*, Eranschahr nach der Geographie des Ps. Moses Choren, Berlin, 1901.

**Նույնի**, Die Entstehung und Wiederherstellung der Armenischen Nation. Potsdam, 1919.

**Նույնի**, Untersuchungen zur Geschichte von Eran, I, Göttingen, 1896, *տե՛ս նաև* Philologus, Bd. 54 *և* 55.

**Նույնի**, Untersuchungen zur Geschichte von Eran, II, Leipzig, 1905, *տե՛ս նաև* Philologus, Supplementband, X, Heft I.

**Նույնի**, Südarmenien und die Tigrisquellen nach griechischen und arabische Geographen, Wien, 1930.

*Miller Konrad*, Itineraria Romana, Römische Reisewege an der Hand der Tabula Peutingeriana, Stuttgart, 1916.

*Chapot V.*, La frontière de l'Euphrate de Pompée a la conquête arabe, Paris, 1907.

**Տաշյան Հ.**, *Արշակունի դրամներ, Վիեննա, 1919։*

## ԳԼՈՒԽՆԵՐ Ա—Դ

**Ա. Տրդատ Ա-ը և նրա հաջորդները:— Բ. Տրայանոսի հայկական և պարթևական արշավանքները և ապստամբությունները հռոմայեցիների դեմ:— Գ. Վաղարշ Ա Սոհեմոս, Բակուր և հռոմեա-պարթևական պատերազմը Մարկոս Ավրելիոսի ժամանակ:— Դ. Հայաստանը Սեպտիմոս Սևերոսի և Անտոնինոս Կարակալլայի արշավանքների ժամանակ:**

*Տրդատ Ա-ից սկսած մինչև Սասանյանների տիրապետության հաստատումը Պարսկաստանում (62—226) հայ ժողովրդի պատմությունը մեզ մանրամասն հայտնի չէ։ Այս ժամանակաշրջանի համար հիմնական աղբյուրներ են հունա-հռոմեական պատմական երկերը, որոնց հաղորդած տեղեկությունները Հայաստանի մասին, ինչպես հայտնի է, աղքատիկ են ու կցկտուր։ Սակայն, զուգադրելով ու քննադատաբար համեմատելով այդ տեղեկությունները հայկական աղբյուրների մեջ պահպանված պատմական հիշողությունների հետ՝ հնարավոր է տալ Տրդատ Ա-ի և նրա հաջորդների պատմությունն ավելի ճշգրիտ և ավելի հիմնավոր կերպով, քան այդ արված է պատմագիտական նախկին աշխատություններում։*

*Ա—Դ գլուխների համար կարևորագույն օտար աղբյուրներն են Կասսիոս Դիոնի (մոտավ. 155—235 մեր թվ. հ.) «Հռոմեական պատմությունը», որի մեջ նկարագրված են քաղաքական անցքերն Էնեասից սկսած մինչև 229 թիվը, և Փլավիոս Արրիանոսի (II դար մեր թ. հ.) «Պարթևական պատմությունը»* ( Παρθικά ), *որից պահպանվել են միայն սակավաթիվ հատուկտոր քաղվածքներ այլևայլ երկերում։ Արրիանոսի կորած այս երկից Արշակունյաց շրջանի Հայաստանին վերաբերող մի քանի կարևոր վկայություններ գտնվում են տասներորդ դարի հեղինակ Սուիդասի բառգրքում՝* ἀμφίλογον, γνῶσις, ἐπίκλημα, παραβάλων, ἀμφίβολοι, Μάρτιος *և մի քանի այլ բառերի տակ։*

*Հատկապես Տրդատ Ա-ի ժամանակ տեղի ունեցած պատմական անցքերի մասին մի քանի թռուցիկ, բայց արժանահավատ վկայություններ տալիս են առաջին դարի հրեական պատմագիր Հովսեպոս Փլավիոսն իր «Հրեական պատերազմի» մեջ և հռոմեա-*

կան մատենագիր Սվետոնիոսը (մոտավ. 70—160 թթ.), որը գրել է առաջին տասներկու կայսրերի կենսագրությունները (մինչև Դոմետիանոսը)։ Իսկ Սանատրուկ թագավորի մասին, որ հաջորդած պիտի լիներ Տրդատ Ա-ին 75—110 թվականների միջև, բացի Կասսիուս Դիոնի և Սուիդասի բառգրքի հաղորդած ուշագրավ տեղեկություններից, մեծ կարևորություն ունեն նաև Փավստոս Բուզանդի ու «Մարաբաս փիլիսոփաս Մծուրնացւոյ» գրքից քաղված Սեբեոսի վկայությունները։

Աշխադարի, Պարթամասիրի ժամանակաշրջանի մի քանի անցքերը հիշատակված են Ֆրոնտոնի (II դար), Եվտրոպիոսի (IV դարի երկրորդ կես), Ռուփուս Ֆեստուսի (IV դարի երկրորդ կես) և Թեմիստիոսի (IV դար) երկերում։

Երկրորդ և երրորդ դարերի համար մենք ունենք նաև մի այլ աղբյուր՝ Historia Augusfa, այսինքն՝ ժողովածու հռոմեական կայսրերի կենսագրությունների, սկսած Հադրիանոսից մինչև Նումերիանոսը (117—284)։ Այդ կենսագրությունների հեղինակներ են համարվում Էլիուս Սպարտիանուսը, Յուլիուս Կապիտոլինուսը, Վուլկատիուս Գալլիկանուսը, Էլիուս Լամպրիդիուսը, Տրեբելլիուս Պոլլիոնը և Փլավիուս Վոպիսկուսը։

Երրորդ և չորրորդ գլուխների համար, որոնց մեջ լուսաբանված են Վաղարշ Ա-ի, Սոհեմոսի, Վաղարշ Բ-ի և Խոսրով Ա-ի ժամանակաշրջանի պատմական անցքերը, կարևոր աղբյուրներ են բացի Կասսիուս Դիոնից, Փլավիոս Արրիանոսից և Historia Augusta կենսագրություններից, նաև հունական մատենագիրներ Հերոդիանոսի (երրորդ դարի առաջին կես), Լուկիանոսի (երկրորդ դար) և Փոտիոսի (իններորդ դար) երկերը, իսկ հայ պատմագիրներից Մովսես Խորենացին, որն իր Պատմության երկրորդ գրքի ԿԵ գլխում, որ վերաբերում է Վաղարշ Ա-ին և Խոսրով Ա-ին, օգտվել է ասորի մատենագիր Բարդածանի (154—222) կորած պատմական երկից։

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐ


*Ammiani Marcellini* rerum gestarum libri qui supersunt, rec. V. Gardthausen, 2 vol.

*Aristides,* Orat. sacra, I, հրատ. Dindorf-ի։

*Arriani* scripta minora, ed. Eberhard.

*Dionis Cassii Cocceiani,* Historia Romana, ed. Dindorf, vol. I—V, Lipsiae 1863—1865.

*Eutropii,* Breviarium hist. Rom., rec. Fr. Ruehl, Lipsiae.

*Zonarae* epitome historiarum, ed. L. Dindorfius, 6 vol., Lipsiae.

*Themistii* orationes ex codici Mediolanensi emendatae a G. Dindorfio, Lipsiae, 1832.
*Luciani Samosatensis* opera, ex rec. C. Jacobitz, Lipsiae, 3 vol., Teubn.
*Herodiani* ab excessu divi Marci libri octo, ed. K. Stavenhagen, Lipsiae, 1922.
*Malalas*, Chronographia, rec. L. Dindorf, Ronnae, 1831, **տե՛ս նաև** *Migne*, 97։
*Josephi Flavii*, opera omnia, recogn. Imman Bekker., Bibl. Teubn։
*Plinii Secundi*, Epistolae **տե՛ս նաև** *Плиний Младший*, Переписка с Траяном. Вестник древней истории, 1946, № 2։
*Rufi Festi*, Breviarum rerum gestarum populi Romani, ed. Förster, 1874.
„Scriptores Historiae Augustae", ed. E. Hohl. vol. I. Lipsiae, 1927.
*Suetoni Tranquilli*, De vita caesarum libri VIII, ed. M. Ihm, Lipsiae, 1923.
*Suidae*, lexicon, rec. G. Bernhardy, 2. vol., Halis et Brunswigae, 1834—1853.
*Taciti Cornelii*, libri qui supersunt, ed. C. Halm. I—II, Lipsiae, Teubn.
*Photii*, Bibliotheca, ed. J. Bekker, 2 vol., Berol. 1824.
*Frontonis M. Cornelii et M. Aurelii* imperatoris epistolae, recen. S. A, Naber, Lips. 1867.
Fragm. hist. graec., *հրատ.* C.Müller-*ի*, III։
**Գրիգոր Դարանաղցի**, *Ժամանակագրութիւն, Երուսաղեմ, 1915։*
«**Մովսիսի Խորենացւոյ**, *Պատմութիւն Հայոց», աշխատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913։*
**Մովսես Խորենացի**, *Հայոց պատմություն, թարգմ. Ս. Մալխասյանի, Երևան, 1940։*
«**Սեբէոսի եպիսկոպոսի**, *Պատմութիւն», հրատ. Ս. Մալխասյանցի, Երևան, 1939։*
*«Վկայաբանութիւն սրբոյն Թադէոսի առաքելոյ և Սանդխտոյ կուսին», «Սոփերք Հայկականք», Ը, Վենետիկ, 1853։*
«**Փաւստոսի Բուզանդացւոյ**, *Պատմութիւն Հայոց», երկ. տպ., Վենետիկ, 1889։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**Աբեղյան Մ.**, *Հայ ժողովրդական առասպելները, Վաղարշապատ, 1901։*
*Амиранашвили А.*, Иберия и римская экспансия в Азии, Вест. древн ист., 1938, № 4(5).
**Անդրիկյան Ն.**, *«Բազմավէպ», 1906 (Աշխադարհի մասին)։*
*Baumstark* A., Geschichte der syrischen Literatur, Bonn, 1922.
*Boissevain U.*, Ein verschobenes Fragment des Cassius Dio, Hermes, Bd, 25, 1890.
*Gutschmid Alf. von*, Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroëne, Mém. de l'Acad. Impér. des sciences de St.-Pet., 1887.
**Նույնի**, Agathangelos, ZCMG, Bd. XXXI, 1877։
*Dessau H.*, Inscriptiones latinae selectae, vol. I—III, Berolini, 1892—1916.
Corpus inscriptionum graecarum.
Corpus inscriptionum latinarum, III.
*Longden R. P.*, The wars of Trajan, Cambr. Anc. His., vol. XI, chapter VI.
**Նույնի**, Notes of the Parthian campaigns of Trajan, Journal of Roman Studies, XXI, 1931։
**Մանանդյան Հ.**, *Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, Երևան, 1945։*

*Манандян Я. А* Цель и направление подготовлявшегося Нероном Кавказского похода, Вопросы истории, 1946, № 7.

**Նույնի,** О местонахождении Caspia via и Caspiae portae, Исторические записки. 25, 1948:

*Markwart J.*, Beiträge zur Geschichte und Sage von Eran, Zeitsch. d. Morgenl, Gesell., XLIX, 1895.

**Նույնի,** *Էջ մը Հայ Արշակունեաց հնագոյն պատմութենէն, «Հանդ. Ամս.», 1905, փետրվար։*

**Շուր Վերներ,** *Ներոն կայսեր արևելեան քաղաքականութիւնը, թարգմ. Մ. Հապոզյան, Վիեննա, 1930։*

*Rawlinson G.*, The sixth great oriental monarchy, London, 1873.

*Ростовцев М.*, Апаранская греческая надпись царя Тиридата, СПб., 1911

**Նույնի,** Известия археологической комиссии, вып. 33, 1909:

**Սամվելյան Խ.,** *Հին հայ իրավունքի պատմություն, հատ. Ա, Երևան, 1939։*

*Հայ ժողովրդի պատմություն, ձեռնարկ միջնակարգ դպրոցների համար, Ա, Երևան, 1943։*

Տաշյան Հ., *Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին և ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց, Վիեննա, 1891։*

*«Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Ֆէթթէրի», թարգմ. Հ. Տաշյան, Վիեննա, 1895։*

## ԳԼՈՒԽՆԵՐ Ե—Է

**Ե. Սասանյան Պարսկաստանը և Հայաստանի համար ստեղծված նոր կացությունը։—Զ. Տրդատ Բ-ը և նրա մասնակցությունը հռոմեական-սասանյան կռիվներին։—Է. Հայաստանի քաղաքական դրությունը Տրդատ Բ-ից հետո մինչև Տրդատ Գ-ի գահակալությունը։**

*Երրորդ դարի առաջին կեսի պատմական անցքերը Հայաստանում, ինչպես դժվար չէ համոզվել, խճճված են ու խառնակված պատմագիտական գրեթե բոլոր երկերում։ Խառնաշփոթումներն առաջ են եկել պարզապես այն պատճառով, որ Ագաթանգեղոսի Պատմության Խոսրով Մեծի և Տրդատ Մեծի մասին վիպական բնույթ ունեցող վկայությունները համարվել են ստույգ և պատմական։ Մեր աշխատության մեջ երրորդ դարի անցքերը լուսաբանված են հունա-հռոմեական և հայկական աղբյուրների համեմատական ուսումնասիրությամբ և որոշված են ըստ հնարավորության այն իրական պատմական հիշողությունները, որ պահպանված են հայ վիպական ավանդության մեջ։*

*Հռոմեական-սասանյան կռիվների և պատմական այլ անցքերի մասին երրորդ դարի առաջին կեսում կարևոր վկայություններ ունեն հռոմեական մատենագիրներ Էլիուս Լամպրիդիուսը և Ավրելիուս Վիկտորը (չորրորդ դարի երկրորդ կես), որը գրել է*

հռոմեական կայսրերի պատմությունը մինչև Կոստանդիանոս Մեծը, հույն պատմագիր Հերոդիանոսը (III դ.) և բյուզանդական մատենագիրներ Զոսիմոսը (VI դ.), Եվագրիոսը (VI դ.) և Զոնարասը (XII դ.)։ Հայկական ավանդությունը հռոմեական-սասանյան վերոհիշյալ պատերազմների մասին թեև ենթարկվել է վիպական-բանաստեղծական մշակման, սակայն, այնուամենայնիվ, ունի պատմական արժեք։ Աղբյուրների ուշադիր քննությունից երևում է, որ կռիվները տեղի էին ունեցել Արտաշիր Ա-ի և Շապուհ Ա-ի դեմ ո՛չ թե Խոսրով Մեծի ժամանակ, ինչպես այդ վկայում է հայ ժողովրդական էպոսը, այլ Տրդատ Բ-ի թագավորության ընթացքում 228 և 252/3 թվականների ժամանակամիջոցում։

Տրդատ Բ-ի փախուստը և Հայաստանի հպատակումը Շապուհ Ա-ին որոշակի մատնանշված է Զոնարասի Պատմության մեջ, իսկ Տրդատ Բ-ի հաջորդ Արտավազդը հիշատակված է Տրեբելլիուս Պոլլիոնի գրած Վալերիանոս կայսեր կենսագրության մեջ։

Երրորդ դարի երկրորդ կեսի պատմությունը ամենամութ շրջաններից մեկն է հռոմեական պատմության։ Այս ժամանակաշրջանի գլխավոր աղբյուրն են համարվում հռոմեական կայսրերի կենսագրությունները (Scriptores Historiae Augustae), որոնց արժանահավատությունը համարվում է կասկածելի։ Կցկտուր են և աղքատիկ նաև այս ժամանակաշրջանին վերաբերող հռոմեական մյուս աղբյուրների և բյուզանդական ժամանակագրությունների վկայությունները։ Հիշատակության արժանի են Վոպիսկուսի, Ավրելիուս Վիկտորի, Ամմիանոս Մարկելլինոսի և բյուզանդական պատմագիր Զոսիմոսի հաղորդած տեղեկությունները։

Սասանյան Պարսկաստանի կրած ծանր պարտությունը 297 թվին՝ Դիոկղետիանոս կայսեր ժամանակ, նկարագրված է ո՛չ միայն Եվտրոպիուսի, Ռուփուս Ֆեստուսի և Ավրելիուս Վիկտորի պատմական երկերում, այլ նաև Փավստոսի Պատմության մեջ։ Իսկ 298 թվի խաղաղության դաշնագիրը, որի համաձայն Արշակունյաց Հայաստանը, ազատագրվելով Պարսից իշխանությունից, վերահաստատվեց իր ընդարձակ հին սահմաններում, հիշատակված է Պետրոս Պատրիկիոսի (VI դ.) Պատմության մեջ, որից պահպանվել են սակավաթիվ հատվածներ։

Տրդատ Գ-ի գահակալության մասին մանրամասն տեղեկություններ հաղորդում են հայկական աղբյուրները՝ Ագաթանգեղոսը, Մովսես Խորենացին, Սեբեոսը և Ուխտանեսը։

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

Agathangelus und die Akten Gregors von Armenien, neu herausgegeben von *Paul de Lagarde,* Göttingen, 1887.

*Agathias,* Histor., ed. B. G. Niebuhr, Bonn, 1828.

*Ammiani Marcellini* rerum gestarum libri qui supersunt, rec. V. Gardthausen, 2 vol., Lipsiae, Teubn.

*Aurelii Victoris* liber de Caesaribus, rec. F. Pichlmayz, Lips., 1911, Teubn.

*Georgii Syncelli,* Chronographia, ed. G. Dindorf, 2 vol., Bonnae, 1829.

*Euagrios,* Historia ecclesiastica, ed. H. Valesii.

*Eutropii,* Breviarium histor. Rom., rec. Fr. Ruehl, Lipsiae, Teubn.

*Zosimi,* Historia nova, ed. L. Mendelssohn, Lipsiae, 1887.

*Zonarae* epitome historiarum, ed. L. Dindorfius, vol. III, Lipsiae, 1870.

*Herodiani,* Ab excessu divi Marci libri octo, ed. K. Stavenhagen, Lipsiae, 1922.

*Masoudi,* Les Prairies d'or, Paris, 1861—1877.

*Orosii Pauli,* Historiarum adversus paganos libri VII, recen. C. Zangemeister, Teubn.

Panegyrici Latini, ed. G. Baehrens, Lipsiae, 1911.

*Petrus Patricius,* fragm. 14, *տե՛ս* Dindorf, Historici graeci minores, I:

*Plinius,* Naturalis historiae, libri XXXVII, ed. Janus et Mayhoff, vol. I—V Lipsiae, 1892—1907, Teubn.

*Procopii Caesariensis,* Opera omnia, ed. Haury, vol. III, Lipsiae, 1916. Ср. *Прокопий,* О постройках, перев. с греческого С. П. Кондратьева. Вестник древн. ист., 1939, 4(9).

*Rufi Festi,* Breviarium rerum gestarum populi Romani, ed. Förster, 1874.

"Scriptores historiae Augustae", ed. Hohl, vol. II, Lipsiae, 1927.

*Synesii Cyrenaei* orationes et homiliarum fragm., rec. Krabinger, Landshut 1850, *տե՛ս նաև Migne,* t. 66, 1859:

«Ագաթանգեղայ, *Պատմութիւն Հայոց», աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանցի, Տփղիս, 1909։*

«Եղիշէի, *Վասն պատերազմին Վարդանանց», Վենետիկ, 1852։*

«Մովսիսի Խորենացւոյ, *Պատմութիւն Հայոց», աշխատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913։*

«Յովհան Մամիկոնեան, *Պատմութիւն Տարօնոյ», աշխատ. Աշ. Աբրահամյանի, Երևան, 1941։*

«Ուխտանէս, *Պատմութիւն Հայոց», Վաղարշապատ, 1871։*

«Սեբէոսի եպիսկոպոսի, *Պատմութիւն», հրատ. Ս. Մալխասյանցի, Երևան, 1939։*

«Փաւստոսի Բուզանդացւոյ, *Պատմութիւն Հայոց», երկ. տպ., Վենետիկ, 1889։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Адонц Н.,* Начальная история Армении у Себеоса, Визант. врем., т. VIII., № 1-2, 1901.

*Его же,* Фауст Византийский как историк, Христ. Восток, 1917—1920, т. VI, вып. III, Петроград, 1922.

*Adontz N.*, Histoire d'Arménie, Les origines du X[e] siècle au VI[e] (av. J. C.), Paris, 1946.

**Ալիշան**, *Այրարատ, Վենետիկ, 1890։*

***Аннинский А.***, Древние армянские историки как исторические источники, Одесса, 1899.

*Gelzer H.*, Eznik und die Entwicklung des persischen Religionssystems. Zeitschrift für armenische Philologie, I, Marburg, 1903.

**Գյուտերբոք Կ.**, *Հռոմեական Հայաստան և հռոմեական սատրապությունները Դ—Զ դարերում, թարգմ. Մ. Նորշունի, Վիեննա, 1914։*

*Cutschmid Alf.*, Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroëne, St.-Pétersbourg, 1887:

**Նույնի**, Agathangelos, *Z*DMG, Bd. XXXI, 1877:

*Christensen A.*, Sassanid Persia, Cambridge Ancient History, vol. XII, cap. IV (1939).

**Կոգյան Ս.**, *Կամսարականները, «Տեարք Շիրակայ և Արշարունեաց», պատմական ուսումնասիրություն, Վիեննա, 1926։*

**Մանանդյան Հ.**, *Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, Երևան, 1945։*

**Նույնի**, *Գառնիի հունարեն արձանագրությունը և Գառնիի հեթանոսական տաճարի կառուցման ժամանակը, Երևան, 1946։*

**Նույնի**, Новые заметки о греческой надписи и языческом храме Гарни.

*Markwart J.*, Beiträge zur Geschichte und Sage von Eran, ZDMG, XLIX, 1895.

**Մելիք-Օհանջանյան Կ.**, *Տիրան-Տրդատի վեպը ըստ Փավստոս Բուզանդի, «Տեղեկագիր Հայկական ՍՍՀ Գիտությունների ակադեմիայի», հասարակական գիտություններ, 1947, № 6 և № 7։*

**Տաշյան Հ.**, *Ագաթանգեղայ առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին և ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց, Վիեննա, 1891։*

## ԳԼՈՒԽՆԵՐ Ը—Ժ

**Ը. Տրդատ Գ և քրիստոնեության տարածումը Հայաստանում:—Թ. Խոսրով Գ ու Տիրան և պարսկա-հռոմեական կռիվների վերսկսումը:—Ժ. Պարսկա-հռոմեական կռիվները Արշակ Բ-ի ժամանակ և Հայաստանի ավերումը:**

*Տրդատ Գ-ի ժամանակաշրջանի պատմության համար կարևոր աղբյուր է Ագաթանգեղոսի Պատմությունը, որից մեծ չափով օգտվել էին թե Մովսես Խորենացին և թե մյուս հայ պատմագիրները։ Ինչպես հայտնի է, Ագաթանգեղոսի և Խորենացու մոտ Տրդատ Գ-ի մասին պատմական հիշողությունները ծագում են, առավելապես, ժողովրդական ավանդությունից կամ հին հայ վեպից։ Անշուշտ, վեպի ազդեցությանը պետք է վերագրել, որ հայ պատմագրության մեջ Տրդատ Ա-ը, Տրդատ Բ-ը և Տրդատ Գ-ը միաձուլվել և դառել են մի անձն՝ Տրդատ Մեծ։ Բարեբախտաբար, անձերի ու պատմական անցքերի շփոթումները, որ հատուկ*

են հայկական ավանդության, հնարավոր է ուղղել արտաքին հավաստի աղբյուրների օգնությամբ։

Տրդատ Գ-ի ժամանակ տեղի ունեցած պատմական մի քանի անցքեր հիշատակված են երեք հունարեն արձանագրությունների մեջ։ Նրա վերադարձի և թագավորման մասին Հայաստանում ուշագրավ տեղեկություններ է տալիս Ցարկին-Տիգրանակերտ քաղաքի պարսպի վրա գտնված 298 թվի արձանագրությունը։ Աբարանի հունարեն արձանագրության բովանդակությունից և Թովմա Արծրունու ու Ստեփանոս Օրբելյանի վկայություններից կարելի է հետևցնել, որ Տրդատ Գ-ի ժամանակ որոշ փոփոխություններ էին տեղի ունեցել նախարարական կալվածատիրության մեջ ու նաև, հավանորեն, նախարարական տոհմերի դաhերեցության նկատմամբ։ Առանձնապես հետաքրքիր է նորերս գտնված նրա Գառնիի հունարեն արձանագրությունը։

Տրդատ Գ-ի հաջորդների պատմության համար, սկսած Խոսրով Գ-ից (շուրջ 330—338 թ.) մինչև 387 թվի Հայաստանի բաժանումը, գլխավոր աղբյուրներից մեկն է Փավստոսի Պատմությունը։ Այս աղբյուրը, որին հիմք է ծառայել, գլխավորապես, հայ ժողովրդական վեպը, պետք է օգտագործել, իհարկե, ամենամեծ զգուշությամբ։ Հարկավոր է ո՛չ միայն վերացնել անախրոնիզմները, այլև որոշել պատմական եղելությունների ճիշտ ժամանակը։ Պետք է, անշուշտ, մերժել նաև Փավստոսի Պատմության միտումնավոր լուսաբանությունները ի նպաստ եկեղեցական ու Մամիկոնյան կուսակցության և, այդ քննական աշխատանքը կատարելիս՝ անհրաժեշտ է դիմել արտաքին աղբյուրների օգնության։

Հիմնական ու վստահելի արտաքին աղբյուրներն են այս ժամանակաշրջանի Ամմիանոս Մարկելլինոսի և Հուլիանոս կայսեր երկերը։ Այս հեղինակներից առաջինը, ինչպես հայտնի է, գրել է Տակիտոսի Պատմության շարունակությունը, սկսած Ներվայից մինչև Վաղես կայսեր մահը (96—378 թթ.)։ Նրա Պատմության 31 գրքից մեր ձեռքը հասել են վերջին 18 գրքերը (14—31), որոնց մեջ պատմական անցքերը շարադրված են 353 թվից մինչև 378 թիվը։ Ամմիանոսը զինվորական պաշտոնյա էր Արևելքում 357 թվից սկսած և անձամբ մասնակցել էր պարսկա-հռոմեական կռիվներին։ Իմ աշխատության մեջ Ամմիանոսի վկայությունները որ միանգամայն արժանահավատ են ու վստահելի, բաղդատված են Փավստոսի վկայությունների հետ, և պատմական անցքերը կարելիի չափ ճշտված են և վերականգնված։

*Ժամանակակից կարևոր աղբյուր են չորրորդ դարի անցքերի նույնպես Հուլիանոս կայսեր (331—363) երկերը, և Հայաստանում տեղի ունեցած անցքերը հիշատակված են, գլխավորապես, նրա ճառերում։*

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐ


*Ammiani Marcellini* rerum gestarum libri qui supersunt, rec. V. Gardthausen, 2 vol., Teubn.

*Anonymus Valesianus*, տե՛ս Chron. min. I, ed. Mommsen, p. 7 են.։

*Aurelii Victoris*, Epitome de Caesaribus, rec. Fr. Pichlmayz, Lips, 1911.

*Zosimi* historia nova, ed. Z. Mendelssohn, Lipsiae, 1887.

*Theophanis* chronographia, ed. C. de Boor. 2 vol., Leipzig, 1883—1885.

Chronicon Paschale, Corpus scriptorum historiae byzantinae, ed. L. Dindorf, 2 vol., Bonn, 1832.

Codex Theodosianus.

*Juliani* imperatoris quae supersunt omnia, rec. F. C. Hertlein, 2 vol., Lipsiae, Teubn.

Notitia dignitatum, ed. Seeck, 1872.

*Procopii Caesariensis*, Opera omnia, ed. Haury, Lipsiae, 1916. տե՛ս նաև *Прокопий*, о постройках, перев. С. П. Кондратьева, Вестн. древн. ист., 1939, 4(9)։

*Sozomeni*, Historia ecclesiastica, Migne, t. 67.

*Taciti Cornelii*, Libri qui supersunt, ed. C. Halm, I—II, Lipsiae, Teubn.

Fragmenta historicorum graecorum, ed. K. Müller, t. IV.

«Ագաթանգեղայ, *Պատմութիւն Հայոց», աշխ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանցի, Տփղիս, 1909։*

«Եղիշէի, *Վասն պատերազմին Վարդանանց», Վենետիկ, 1864։*

*«Եւսեբիոս Կեսարացի, Պատմութիւն եկեղեցւոյ, թարգմանեալ ի նախնեաց ճ դարուն և հրատարակեալ համդերձ նոր թարգմանութեամբ ի յունարենէ ի Հ. Ա. Ճարեան», Վենետիկ, 1875։*

«Թովմայի վարդապետի Արծրունւոյ, *Պատմութիւն տանն Արծրունեաց», Ս. Պետերբուրգ, 1887։*

«Մովսիսի Խորենացւոյ, *Պատմութիւն Հայոց», աշխատ., Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913։*

*«Պատմութիւն սրբոյն Ներսիսի Պարթևի հայոց հայրապետի», «Սոփերք հայկականք», Զ, Վենետիկ, 1853։*

«Սեբէոսի եպիսկոպոսի, *Պատմութիւն», հրատ. Ս. Մալխասյանցի, Երևան, 1939։*

«Ստեփաննոսի Օրբելեան *արքեպիսկոպոսի Սիւնեաց, Պատմութիւն նահանգին Սիսական», Թիֆլիս, 1911։*

«Փավստոսի Բուզանդացւոյ, *Պատմութիւն Հայոց», Վենետիկ, 1889։*

Փավստոս Բուզանդ, *Հայոց պատմություն, թարգմ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1947։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


*Адонц Н.*, Фауст Византийский как историк, Христ. Восток, 1917—1920, т. VI, вып. III, Петроград, 1922.

*Аннинский А.*, Древние армянские историки как исторические источники, Одесса, 1899.

*Бердзенишвили Н.*, *Джавахишвили И.*, *Джанашиа С.*, История Грузии, ч. 1, Тбилиси, 1946.

*Bury J. B.* The date of the Battle of Singara, Byzantinische Zeitschrift, V, 1896.

*Gelzer H.*, Die Anfänge der armenischen Kirche, Sitzungsberichte der Kön. Sächs. Gesellschaft der Wissenschaften, Leipzig, 1895.

**Նույնի**, Zur armenischen Götterlehre, Sonderabdruck aus d. Berichten der Kön. Sächs. Gesellschaft der Wissenschaften, Seitzung von 7 Dez. 1895:

**Գյուտերբոք Կ.**, *Հռովմէական Հայաստան և հռովմէական սատրապությունները Դ—Զ դարերում, թարգմ. Մ. Նորշուանի, Վիեննա, 1914։*

*Duchesne L.*, Histoire ancienne de l'Eglise, vol. II.

*Энгельс,* К истории раннего христианства, **նաև** Бруно Бауэр и ранее христианство. Сочинения Маркса и Энгельса, т. XV и т. XVI, ч. II։

**Ինճիճյան Ղ.**, *Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, հատ. Գ, Վենետիկ, 1835։*

*Lehman—Haupt C. F.*, Armenien einst und jetzt, Bd. I, Berlin, 1910.

*Harnack A.*, Mission und Ausbreitung des Christentums in den drei ersten Jahrhunderten, Leipzig, 1902.

*Honigmann E.*, Die Ostgrenze des Byzantinischen Reiches, Bruxelles 1935.

**Մալխասյանց Ստ.** *«Երբ են հայերն ընդունել քրիստոնեությունն», «Էջմիածին», 1944, № 1։*

**Մանանդյան Հ.**, *Արմավիրի հունարեն արձանագրությունները նոր լուսաբանությամբ, Երևան, 1946։*

**Նույնի**, *Գառնիի հունարեն արձանագրությունը և Գառնիի հեթանոսական տաճարի կառուցման ժամանակը, Երևան, 1946։*

***Նույնի,*** Новые заметки о греческой надписи и языческом храме Гарни Ереван, 1951:

***Նույնի,*** Месроп-Маштоц и борьба армянского народа за культурную самобытность, Ереван, 1941:

*Markwart J.*, Die Entstehung der armenischen Bistümer, Rom, 1932 (Orientalia Christiana, vol. XXVII, 2).

**Մեյիէ-Օճանջանյան Կ.**, *Տիրան-Տրդատի վեպը ըստ Փավստոս Բուզանդի, «Տեղեկագիր Հայկական ՍՍՀ Գիտությունների ակադեմիայի», 1947, № 6 և № 7։*

**Միաբան (Գ. Տեր-Մկրտչյան)**, *Խորենացու պատմութեան ուսումնասիրութիւն, Վաղարշապատ, 1896։*

*«Յաղագս մահուան Տրդատայ թագաւորի՝ հզօրի, քաջի և առաքինոյ», «Բազմավէպ», 1851։*

*Ростовцев М.*, Апаранская греческая надпись царя Тиридата, СПб., 1911

**Սամվելյան Խ.**, *«Արեան վրէժ և փրկանք», տե՛ս «Ազգագրակ. Հանդէս», գիրք Ժ, Թիֆլիզ, 1903։*

*Vasiliev A. A.*, Histoire de l'empire byzantin, traduit du russe par P. Brodin, A. Bourguina, t. I, Paris, 1932.

**Տաշյան Հ.**, *Ագաթանգեղոս առ Գէորգայ սարկի եպիսկոպոսին և ուսումնասիրութիւն Ագաթանգեղայ գրոց, Վիեննա, 1891։*

**Օրմանյան Մ.**, *«Տրդատէ Արտաշէս ժամանակագրական դիտողութիւններ», «Հանդ. Ամս.», 1909, № 7 և 8։*

## ԳԼՈՒԽ ԺԱ—ԺԴ

**ԺԱ. Հայաստանի դրությունը Պապի թագավորության ժամանակ և նրա վարած արտաքին ու ներքին քաղաքականությունը։—ԺԲ. Վարազդատ, Արշակ Գ, Խոսրով Դ և Հայաստանի բաժանումը։—ԺԳ. Վռամշապուհ և հայ գրերի գյուտը։—ԺԴ. Արտաշես և Արշակունիների թագավորության վերջնական անկումը։**

*Հայաստանում տեղի ունեցած պատմական անցքերն Արշակ Բ-ի հաջորդների՝ Պապի ու Վարազդատի ժամանակ, խիստ դժվար է լուսաբանել, եթե նկատի չառնվեն Հռոմեական կայսրության և Սասանյան Պարսկաստանի քաղաքական փոխհարաբերությունները այդ ժամանակներում։ Միջազգային այդ դրությունը, որ կազմում էր կարևոր հանգույցը նաև Հայաստանում տեղի ունեցած իրադարձությունների, մեզ հայտնի է արտաքին աղբյուրներից և, գլխավորապես, Ամմիանոս Մարկելլինոսի արժանահավատ վկայություններից։ Թեև Փավստոսի նկարագրությունները նույնպես պատմական կարևոր հիշողություններ են, սակայն դրանց աղբյուրը, ինչպես ասացինք, վիպական-բանաստեղծական ավանդությունն էր, որի մեջ մեծ տեղ էին բռնում հեքիաթային ու առեղծական տարրերը։*

*Մեր աշխատության մեջ Փավստոսի Պատմության հակապատմական մանրամասնությունները ընդարձակ կերպով քննարկված են և ըստ հնարավորության ճշտված են Ամմիանոս Մարկելլինոսի հաղորդած ճշգրիտ տեղեկությունների օգնությամբ։*

*Տասներկուերորդ գլխի համար ուշագրավ աղբյուրներ են, բացի Ամմիանոսից և Փավստոսից, նաև բյուզանդական մատենագիրներ Եվնապիոսի (V դարի սկիզբ) ու Զոսիմոսի (V դարի երկրորդ կես) պատմական երկերը և Թեմիստիոսի (IV դ.) ճառերը։*

*Հայաստանի բաժանման խնդրի համար, որ տեղի ունեցավ 384—387 թվերին, հիմնական աղբյուրներ են հայ պատմագիրները՝ Փավստոսը և Ղազար Փարպեցին։*

*Վերոհիշյալ տասներեքերորդ գլխի համար միակ աղբյուրներն են հայ մատենագիրների երկերը։ Պետք է ասել, որ նույնիսկ ամե-*

Նախական խնդիրներից շատերը հայերեն գրերի գյուտի մասին մինչև այժմ դեռ մութ են և մնում են վիճելի։ Այդ խնդիրների լուսաբանության համար գլխավոր աղբյուրներն են, անշուշտ, Կորյունի, Ղազար Փարպեցու և Մովսես Խորենացու պատմական երկերը։ Սակայն ուշագրավ տեղեկություններ գրերի գյուտի մասին հաղորդում են մեջընդմեջ նաև ավելի ուշ շրջանի հայ հեղինակները։

Մեր աշխատության մեջ սկզբնաղբյուրների բոլոր վկայությունները ենթարկված են ուշադիր համեմատական քննության։

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐ


*Ammiani Marcellini* rerum gestarum libri qui supersunt, rec. V. Gardthausen. 2 vol., Teubn.

*Eunapios*, տե՛ս *Müller*, Fragm. hist. gr., IV, 7—56 և Historici graeci minores, ed. Dindorfius, I, 205—274։

*Themistii* orationes ex codici Mediolanensi emendatae a G. Dindorfio, Lipsiae, 1832.

*Theodoretos*, Hist. Eccles., տե՛ս *Migne*, Patrologiae cursus completus, series Graeca, t. 80—84։

*Malalas*. Chronographia, rec. L. Dindorf, Bonnae, 1831, տե՛ս նաև *Migne*, 97։

*Orosii Pauli*, Historiarum adversus paganos, libri VII, recen. C. Zangemeister, Teubn.

*Procopii Caesariensis*, Opera omnia, ed. Haury, Lipsiae, 1916. տե՛ս նաև *Прокопий*, О постройках, перевод С. П. Кондратьева, Вестн. древн. ист., 1939, 4 (9)։

*Socrates*, Ecclesiastical History, ed. W. Bright, Oxford, 1893. տե՛ս նաև «Սոկրատայ Սքոլաստիկոսի, *Եկեղեցական պատմութիւն*», *հրատ. Մ. Տեր-Մովսեսյանի, Վաղարշապատ, 1897*։

«Ագաթանգեղայ, *Պատմութիւն Հայոց*», *աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանցի, Տփղիս, 1909*։

«Եղիշէի, *Վասն պատերազմին Վարդանանց*», *Վենետիկ, 1864*։

Եղիշեի *Վարդանանց պատմությունը, թարգմ. Ե. Տեր-Մինասյանի, Երևան, 1946*։

*«Կանոնգիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, Թիֆլիս, 1914*։

Կորյուն, *Վարք Մաշտոցի, հրատ. և թարգմ. Մ. Աբեղյանի, Երևան, 1941*։

«Ղազարայ Փարպեցւոյ, *Պատմութիւն Հայոց և թուղթ առ Վահան Մամիկոնեան*», *աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Մալխասյանցի, Տփղիս, 1904*։

«Մովսիսի Խորենացւոյ, *Պատմութիւն Հայոց*», *աշխատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913*։

Մովսես Խորենացի, *Հայոց պատմություն, թարգմ. Ստ. Մալխասյանի, Երևան, 1940*։

*«Պատմութիւն սրբոյն Ներսիսի Պարթևի», «Սոփերք հայկականք», Զ, Վենետիկ, 1853*։

*«Պատմութիւն սրբոյն Ներսիսի և գիւտ նշխարաց», «Սոփերք հայկականք», Է, Վենետիկ, 1853*։

«Սամուէլի քահ. Անեցւոյ, *Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Հրատ. Ա. Տեր-Միքելյանի, Վաղարշապատ, 1893։*
«Սեբէոսի եպիսկոպոսի, *Պատմութիւն» Հրատ. Ս. Մալխասյանցի, Երևան, 1939։*
«Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան, *Պատմութիւն տիեզերական», Ս.-Պետեր-բուրգ, 1885։*
«Վարդանայ վարդապետի, *Հաւաքումն պատմութեան», Վենետիկ, 1862։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Աբրահամյան Ա. Գ., *«Նախամեսրոպյան հայկական գրականության հարցը», Պետական Մատենադարանի գիտական ժողովածու, № 1, Երևան, 1941։*
Նույնի, *Անանիա Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944։*
Ադոնց Ն., *Անծանօթ էջեր Մաշտոցի և նրա աշակերտների կեանքից ըստ օտար աղբիւրների, «Հանդ. Ամս.», 1925, № 5—12։*
Աճառյան Հ., *Երկու ուղղում Կորյունի մեջ, «Տեղեկագիր ԱրմՖանի», 1941, № 1 (6)։*
Նույնի, *Երեք հարց Մեսրոպյան այբուբենի շուրջը, «Էջմիածին», 1946, օգոստոս—հոկտեմբեր։*
*Аннинский А.*, История армянской церкви, Кишинев, 1900.
*Gelzer H.*, Abriss der byzantinischen Kaisergeschichte. *տե՛ս K. Krumbacher*, Geschichte der byzantinischen Litteratur, zw. Auflage, München, 1897:
Գյուտերբոք Կ., *Հռոմէական Հայաստան և հռոմէական սատրապութիւնները Դ—Զ դարերում, թարգմ. Մ. Նորշուանի, Վիեննա, 1914։*
Նույնի, *Բիւզանդիոն և Պարսկաստան, թարգմ. Հ. Համբարյանի, Վիեննա, 1911։*
*Dulaurier Ed.*, Recherches sur la chronologie arménienne, Paris, 1859.
*Эмин Н.*, Исследования и статьи, М., 1896, „Житье Петра Ивера": изд. Н. Марра, Православный Палестинский Сборник, 47, вып., СПб., 1896.
*Labourt J.*, Le Christianisme dans l'empire perse, Paris, 1904.
*Kuhn E.*, Die städtische und bürgerliche Verfassung des Römischen Reiches, Erster Teil, Leipzig, 1864.
Մալխասյանց Ստ. *Ուսումնասիրութիւն Փաւստոս Բիւզանդի Պատմութեան, Վիեննա, 1896։*
Մանանդյան Հ., *Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում, Երևան, 1925։ Տե՛ս նույնը, «Տեղեկագիր Պետ. Համալսարանի», № 1, Երևան, 1925։*
*Манандян Я. А.*, Месроп-Маштоц и борьба армянского народа за культурную самобытность, Ереван, 1941.
Մարկվարտ Հ., *Պատմութիւն հայերէն նշանագրերու և վարուց ս. Մաշթոցի, թարգմ. Ա. Վարդանյանի, Վիեննա, 1913։*
*Markwart J.*, Die Entstehung der armenischen Bistümer, Rom, 1932 (Orientalia Christiana, vol. XXVII, 2).
*Марр Н.*, Тексты и разыскания по армяно-грузинской филологии, V. СПб, 1903.
*Նույնի,* Кавказский культурный мир и Армения, Петроград, 1915:
*Նույնի,* Кавказ и памятники его духовной культуры, Петроград, 1919:

Մուրադյան Ն., *Քննական պատմութիւն Արշակ Երկրորդի և անոր Պապ որդւոյն*, Աղեքսանդրիա, 1900։

Նորայր Բյուզանդացի, *Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւնք*, Տփղիս, 1910։

*Chabot J. B.* Synodicon orientale, Paris, 1902.

*Виллемс П.*, Римское государственное право, перевод с французского под редакцией П. Н. Бодянского, вып., I и II, Киев, 1888—1890.

Տեր-Մկրտչյան Գ., *Դավիթ Հարքացի*, Վաղարշապատ, 1903։

Նույնի, *Հայ գրերի 1500-ամյակի առթիվ*, «Արարատ», 1912, մայիս-հունիս։

Նույնի, *Հայ մատենագրության հնագույն թվականները*, «Շողակաթ», Վաղարշապատ, 1913։

*Тер-Мовсесян М.*, История перевода Библии на армянский язык, СПб., 1902.

Օրմանյան Մ., *Տրդատ Արտաշէս ժամանակագրական դիտողութիւններ*, «Հանդ. Ամս.», 1909, № 8։

Նույնի, *Ազգապատում*, Կ. Պոլիս, 1912։

## ԳԼՈՒԽ ԺԵ—ԺԹ

**ԺԵ. Արշակունյաց Հայաստանի սահմանները Տրդատ Գ-ի և նրա հաջորդների ժամանակ մինչև 363 թիվը:—ԺԶ. Ֆեոդալական հարաբերությունների զարգացումը Արշակունյաց Հայաստանում:—ԺԷ. «Ազատ»-ները, «ոստանիկ»-ները և եկեղեցականները:—ԺԸ. «Ռամիկ»-ները և «շինական»-ները:—ԺԹ. Առևտուրը, քաղաքները, արհեստավորները և ստրուկները:**

*Ինչպես մանրամասն ցույց է տրված մեր այս աշխատության մեջ, հռոմեական-պարսկական 298 թվի դաշնագրությունից հետո Արշակունյաց թագավորությունը վերահաստատվել էր իր ընդարձակ սահմաններում և մոտավոր կերպով համապատասխանում էր Արտաշեսյան ժամանակաշրջանի Հայաստանին, որի սահմանները նկարագրված են Ստրաբոնի Աշխարհագրության մեջ։*

*Այս խնդրի լուսաբանության համար կարևորագույն աղբյուրն է, նախ և առաջ, Մովսես Խորենացու Աշխարհացույցը, որից, ինչպես հայտնի է, պահպանվել են երկու համառոտված տարբեր խմբագրություններ (տե՛ս «Մովսէսի Խորենացւոյ մատենագրութիւնք», Վենետիկ, 1843 և «Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ», հրատ. Ա. Սուքրյանի, Վենետիկ, 1881)։*

*Ուշագրավ վկայություններ ունեն Հայաստանի հնագույն սահմանների մասին նաև հայ պատմագիրները՝ Ագաթանգեղոսը, Փավստոսը, Մովսես Խորենացին, Սեբեոսը և ուրիշներ։*

*Բացի հայ պատմագիրներից ու մատենագիրներից, հիմնական աղբյուրներ են Հին Հայաստանի աշխարհագրության ուսում-*

*նասիրության համար նաև Հունա-հռոմեական աշխարհագրական և պատմական երկերը և, գլխավորապես, Ստրաբոնի (մոտավորապես 64 թ. մեր թվ. առաջ—19 թ. մեր թվ. հ.), Պլինիուս Մեծի (I դ. մեր թվ. հ.) և Պտղեմեոսի (II դ.) աշխատությունները, ինչպես և IV դարի առաջին կեսի հռոմեական քարտեզը, որն անվանվում է այժմ* Tabula Peutingeriana *(«Պևտինգերյան տախտակներ»)։*

*Հին Հայաստանի նախարարական կազմակերպության ուսումնասիրության համար կարևորագույն աղբյուրներն են, նախ և առաջ, հին հայ մատենագիրները՝ Փավստոսը, Ագաթանգեղոսը, Կորյունը, Ղազար Փարպեցին և Եղիշեն։ Սրանց երկերը, որ գրված են մարզպանության շրջանում՝ V և VI դարերում, իրենց մեջ, բնականաբար, արտացոլում են նախարարական Հին Հայաստանի կենցաղը, աշխարհայեցողությունը և հատուկ կարգերը։ Վերոհիշյալ հեղինակներից առաջին երկուսը՝ Փավստոսը և Ագաթանգեղոսը՝ տալիս են մեզ ուշագրավ տեղեկություններ նախարարական Հայաստանի մասին Արշակունյաց թագավորության հետին շրջանում, իսկ մյուսները՝ Կորյունը, Ղազար Փարպեցին և Եղիշեն՝ հայկական ֆեոդալիզմի կարևորագույն աղբյուրներն են մարզպանական շրջանի։*

*Ամենամեծ չափերով պետք է օգտվել, իհարկե, Փավստոսի Պատմությունից, որն անփոխարինելի ու անգնահատելի աղբյուր է ֆեոդալական հին կենցաղի և պարունակում է իր մեջ միջանկյալ հարուստ ու բազմատեսակ նյութեր ավատական հարաբերությունների, բարքերի ու Արշակունյաց նախարարական պետության կարևոր առանձնահատկությունների մասին։ Եթե Փավստոսի մոտ պատմական փաստերը և ժամանակագրությունը կարոտ են միշտ ճշտման արտաքին աղբյուրների օգնությամբ՝ նրա կենդանի ու պատկերավոր լեզվով նկարագրած միջավայրն իր հատուկ բարոյական ու իրավական հայացքներով իրական կյանքի ճշգրիտ պատկերացումն է, որ միանգամայն վստահելի է իբրև առաջնակարգ նյութ հայկական ֆեոդալիզմի ուսումնասիրության։*

*Նախարարական կազմակերպության հնագույն շրջանի ուսումնասիրության համար ո՛չ պակաս էական նշանակություն ունեն հայկական ծագում ունեցող այն կանոնադրությունները, որոնց ժամանակը հավանական է ենթադրել արաբական տիրապետությունից առաջ մարզպանության շրջանում։ Հայկական այս կանոնադրությունները հետևյալներն են.*

1. Շահապիվանի ժողովի կանոնները, որ ընդունված էին հինգերորդ դարի քառասնական թվականներին։

2. Սահակ կաթողիկոսին (+439 թ.) վերագրված կանոնադրությունը.

3. Ներսես կաթողիկոսի (548—557) և Ներշապուհ Մամիկոնեից եպիսկոպոսի անունով կանոնադրությունը.

4. Հովհան Մանդակունուն վերագրված կանոնադրությունը և

5. Դվինի 645 թվի ժողովի կանոնադրությունը։

Այս կանոնադրություններում կանոնների մեծագույն մասը վերաբերում են կամ եկեղեցական դասին և կամ դավանանքի ու պաշտամունքի ծիսական խնդիրներին։

Սակայն նրանց մեջ հանդիպում են, բարեբախտաբար, նաև այնպիսի վկայություններ, որոնք լուսաբանում են նախարարական Հայաստանի կամ սոցիալական-իրավական հարաբերությունները և կամ ուրիշ կարևոր պրոբլեմներ։

Բացի հայկական վերոհիշյալ կանոնադրություններից, ուշադրության արժանի է, իբրև օժանդակ աղբյուր, նաև Աղվանից Վաչագան արքայի կանոնադրությունը, որն ընդունված է եղել «Աղուէն»-ի ժողովում ո՛չ թե 488 թվին, ինչպես սովորաբար ենթադրում են, այլ, հավանորեն, յոթերորդ դարի սկզբներում։

Նախարարությունների թիվը, գահերեցությունը և զինվորական ուժը որոշելու համար կարևոր աղբյուրներ են Գահնամակն ու այսպես կոչված Զորանամակը։ Այս երկու գրությունը, թեև ուշ ժամանակի խմբագրություններ են, սակայն ինչ չափով որ այդ վավերագրերի տեղեկությունները քաղված են հին աղբյուրներից՝ նրանք որոշ նշանակություն ունեն նաև հայկական ֆեոդալիզմի հնագույն շրջանի ուսումնասիրության համար։

Հայկական հնագույն ֆեոդալիզմի մասին մի քանի կարևոր վկայություններ տալիս են, բացի այդ, օտար աղբյուրները և, մասնավորապես, այն հունարեն արձանագրությունները, որոնք գտնված են Հայաստանում։

Բացի վերոհիշյալ հիմնական աղբյուրներից, նախարարական կազմակերպության հնագույն շրջանի ուսումնասիրության համար կարևոր օժանդակ աղբյուրներ են մատենագրական այն երկերը, որոնք գրված են մարզպանության շրջանում և պարունակում են իրենց մեջ միջանկյալ տեղեկություններ և հատուկ տերմիններ ֆեոդալական կարգերին վերաբերող։ Այս խմբի աղբյուրներից կարևոր են, օրինակ, Գիրք թղթոցի հնագույն մասերը և Հովհան

Մանդակունուն վերագրված ճառերը, որ համարվում են այժմ, գլխավորապես, Հովհան Մայրագոմեցու ճառեր։

Օժանդակ աղբյուրներ են, նմանապես, արաբական և Բագրատունյաց ժամանակի և անգամ ավելի ուշ շրջանի հայկական մատենագրության երկերը։ Ֆեոդալիզմը Հին Հայաստանում գոյություն էր ունեցել մինչև ուշ միջնադարը։ Նախարարական հին կազմակերպության կարգերը չէին, բնականաբար, չքացել նաև հետին դարերում, այլ նրանք որոշ փոփոխություններ կրելով կամ երբեմն նույնությամբ պահպանվել էին այդ դարաշրջաններում։ Հասկանալի է, իհարկե, որ նաև այս կարգի աղբյուրները, եթե նրանք օգտագործվեն զգուշությամբ և քննադատորեն, կարող են կռվան ծառայել որոշ խնդիրների լուսաբանման, որ վերաբերում են նախարարական կազմակերպության հնագույն շրջանին։

Հայկական ֆեոդալիզմը, որ Արշակունյաց թագավորության և Սասանյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ ենթարկվել էր պարթևական ու սասանյան պետականության ազդեցությանը, իր էությամբ նման էր իրանական ֆեոդալիզմին։ Այդ ազդեցությունը պարզ երևում է Հին Հայաստանի նախարարական կազմակերպությանը վերաբերող սոցիալական հենց այն տերմիններից, որ իրենց ծագումով, մեծ մասամբ, պարթևական են կամ իրանական։ Ֆեոդալական հարաբերությունները վերոհիշյալ երկրներում այնքան նման են եղել իրար, որ իրանական ֆեոդալիզմին վերաբերող աղբյուրները, կարող են, բնականաբար, օժանդակ աղբյուրներ համարվել նաև հայկական ֆեոդալիզմի ուսումնասիրության համար։ Այդ օտար աղբյուրները և նրանց հաղորդած վկայությունները, որ, դժբախտաբար, շատ չեն, հիշատակված են Christensen-ի „L'Iran sour les Sassanides" (Copenhague, 1944) աշխատության մեջ։

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐ


«**Ագրանգամ Խոստովանող**, *Վկայք Արևելից*», *աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի, Էջմիածին, 1921։*

«**Ագաթանգեղայ**, *Պատմութիւն Հայոց*», *աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանցի, Տփղիս, 1909։*

„Agatangelus und die Akten Gregors von Armenien", hrsgg. von Paul de Lagarde, Goettingen, 1887.

*Ammiani Marcellini* rerum gestarum qui supersunt, rec. V. Gardthausen, 2 vol., Teubn.

*«Գիրք Թղթոց», Թիֆլիս, 1901։*

«**Եղիշէի վարդապետի**, *Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին*», *Վենետիկ, 1864։*

*Theophylacti Simocattae* historiae, ed. de Boor, Lipsiae, 1887, Teubn.
*Istachri*, Livre des routes et des royaumes, éd. de Goeje, BGA, I.
*«Կանոնագիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, Թիֆլիս, 1914։*
*«Կանոնք Դունայ ժողովոյն», հրատար. Մխիթար վարդապետի և Սիրական Տիգրանյանի, Վաղարշապատ, 1905։*
*Հին Կտակարան և Նոր Կտակարան։*
Corpus juris civilis, ed. Th. Mommsen, P. Krüger, R. Schöll, Berlin, 1872—1895.
*Hudud al-Alam*, The regions of the world, translated and explained by V. Minorsky, London, 1937.
«Ղազարայ Փարպեցւոյ, *Պատմութիւն Հայոց և թուղթ առ Վահան Մամիկոնեան», աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Մալխասյանի, Տփղիս, 1904։*
*«Պատմութիւն* Ղևոնդեայ *մեծի վարդապետի Հայոց», երկ. տպ., Ս. Պետերբուրգ, 1887։*
«Միխիթարայ Գօշի, *Դատաստանագիրք Հայոց», հրատ. Վահան Բաստամյանցի, Վաղարշապատ, 1880։*
«Մովսիսի Խորենացւոյ, *Պատմութիւն Հայոց», աշխատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913։*
«Մովսէս Խորենացու *հայկական պատմութիւն», թարգմ. Խ. Ստեփանեի, Ս.-Պետերբուրգ, 1889։*
История Армении *Моисея Хоренского*, перев. Н. Эмина, Москва, 1893.
«Մովսէսի Կաղանկատուացւոյ, *Պատմութիւն Աղուանից աշխարհի», հրատ Մկրտիչ Էմինի, Մոսկվա, 1860։*
«Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ, *Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1912։*
Յովհաննու Մանդակունւոյ, *Հայոց հայրապետի, ճառք», երկ. տպագր., Վենետիկ, 1860։*
*Petrus Patricius*, տե՛ս *Dindorf*, Historici graeci minores, I:
*C. Plinii Secundi*, Naturalis historiae, տե՛ս Histoire naturelle be Pline, avec la traduction en français, par M. E. Littré, t. I—II, Paris, 1883.
«Սեբէոսի եպիսկոպոսի, *Պատմութիւն», հրատ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1939։*
*Strabonis*, Geographica, recogn. A. Meineke, vol. I—III, Lipsiae, 1915—1925.
Sempadscher Kodex aus dem 13 Jahrhundert, hrsgg., übersetzt und erklärt von *J. Karst*, Bd. I und II, Strassburg, 1905.
Lettre de *Tansar*, au roi de Tabaristan, publ. et traduite par Darmesteter, „Journ. Asiat.", 1894.
«Փաւստոսի Բուզանդացւոյ, *Պատմութիւն Հայոց», Վենետիկ, 1889։*
*«Աշխարհացոյց* Մովսէսի Խորենացւոյ. *տե՛ս* «Մովսէսի Խորենացւոյ *Մատենագրութիւնք», Վենետիկ, 1843։*
*«Աշխարհացոյց* Մովսէսի Խորենացւոյ», *հրատ. Սուքրյանի, Վենետիկ, 1881։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ալիշան, *Այրարատ, Վենետիկ, 1890։*
Նույնի, *Տեղեկագիր Հայոց Մեծաց, Վենետիկ, 1855։*
Աճառյան Հր., *Հայերեն արմատական բառարան, Երևան, 1926—1935։*

Բահարյան, *Անձնական և հողային իրավունքը Հին Հայաստանում, Թիֆլիս, 1914։*
*Baynes Norman H.*, The Byzantine empire, London, 1925.
Բարխուդարյանց Մ., *Արցախ, Բաքու, 1895։*
Նույնի, *Պատմութիւն Աղվանից, Վաղարշապատ, 1902։*
*Борьян Б. А.*, Армения, Международная дипломатия и СССР, часть 1, М., 1928։
*Brosset M.*, Description géographique de la Géorgie par le Tsarévitch Wakhoucht. St.-Pétersbourg, 1842.
Գյուտերբոք Կ., *Բիւզանդիոն և Պարսկաստան և անոնց դիւանագիտական և ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանու ժամանակ», թարգմ. Հ. Համբարյանի, Վիեննա, 1911։*
*Джавахов И.*, Государственный строй древней Грузии и древней Армении, СПб., 1905.
Երզնկյան Գ., *Կայան բերդ և Կայենո ձոր, «Ազգագրական Հանդէս», գ. 1898։*
Զարբանալյան Գ., *Հայկական հին դպրութեան պատմութիւն, երրորդ տպագր., Վենետիկ, 1897։*
Ինճիճյան Ղ., *Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, հատ. Ա—Գ, Վենետիկ, 1835։*
Լալայան Ե., *«Բորչալուի գաւառ», «Ազգագր. Հանդ.», VII և VIII գիրք. Թիֆլիս, 1901։*
*Латышев В. В.*. Известия древних писателей греческих и латинских о Скифии и Кавказе, СПб., 1890.
*Laurent J.*, L'Arménie entre Byzance et l'Islam, Paris, 1919.
Խալաթյանց Գր., *Ղազար Փարպեցի և գործք նորին, Մոսկվա, 1883։*
Կանայանց Ստ. *Անհայտ գաւառներ Հին Հայաստանի, Էջմիածին, 1914։*
Карта Главного Управления Геодезии и Картографии при СНК СССР — „Иран и Афганистан".
*Kiepert H.*, Atlas antiquus, zwölf Karten zur alten Geschichte, Berlin.
*Kiepert Richard,* Atlas von Kleinasien in 24 Blättern, Berlin, 1902—1906.
Կոստանյանց Կ., *Հիւսուածք, գիրք Գ, Վիեննա, 1877։*
*Кулишер И. М.*, Лекции по истории экономического быта Западной Европы, Петроград, 1918.
*Hoffmann G.*, Aüszüge aus syrischen Akten persischer Märtyrer, Leipzig, 1880.
Մանանդյան Հ., *Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում, Երևան, 1925. տե՛ս նույնը, «Տեղեկ. Պետ. Համալսարանի», № 1, Երևան, 1925։*
Նույնի, *Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում, Երևան, 1926, տե՛ս նույնը՝ «Տեղեկ. Գիտ. և Արվ. ինստիտուտի», Երևան, 1926 № 1։*
Նույնի, *Նյութեր Հին Հայաստանի տնտեսական պատմության, II, Երևան, 1928. տե՛ս նույնը՝ «Տեղեկագիր Պետ. Համալսարանի», Երևան, 1928, № 4։*
Նույնի, *Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության, I. տե՛ս «Տեղեկագիր Գիտ. և Արվ. ինստիտուտի», Երևան, 1927, № 2։*
*Манандян Я. А.*, Круговой путь Помпея в Закавказье, „Вестн. древн. ист.", 1939, № 4.
Նույնի, *Տիգրան Բ և Հռոմը, նոր լուսաբանությամբ ըստ սկզբնաղբյուրների, Երևան, 1940։*

*Նույնի,* Маршруты понтийского похода Помпея и путь отступления Митридата в Колхиду, „Вестн. древн. истории", М., 1940, № 3—4 (12—13),

Նույնի, *Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, Երևան, 1945։*

*Манандян Я.*, О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен, Ереван, 1930.

*Markwart J.*, Das Itinerar von Artaxata nach Armastica auf der römischen Weltkarte, Skizzen zur historischen Topographie und Geschichte von Kaukasien, Wien, 1928. *տե՛ս Նույնը, «Հանդէս ամսօրեայ»* 1927, № 11—12:

Նույնի, A Catalogue of the provincial capitals of Persia, Anecdota Orientalia, III, Rom, 1931:

*Марр Н.*, Этимология двух терминов армянского феодального строя, Зап. Вост. Отд. Рус. Арх. Общ., т. XI, 1897—1898.

Նույնի, *Քննություն Ջավախովի* „Государственный строй древней Грузии и древней Армении *աշխատության· տե՛ս* Журн. „Мин. Нар. Просв.", 1908

*Նույնի,* Кавказский культурный мир и Армения, Петроград, 1915:

*Meillet A.*, De quelques mots parthes en arménien, „Revue des études arméniennes", t. II, fasc. 1, Paris, 1922.

*Miller Konrad,* Itineraria Romana, Römische Reisewege an der Hand der Tabula Peutingeriana, Stuttgart, 1916.

*Minorsky V.*, The Guran, Bulletin of the School of Oriental and African Studies (Universitv of London), vol. XI, Part 1. 1943.

Մուսայելյան *Հ., Անդրկովկասի հողային պայմանները, Վաղարշապատ, 1910։*

*Noeldeke Th.*, Tabari, Geschichte der Perser und Araber zur Zeit der Sassaniden, Leyden, 1879.

Նորայր Բյուզանդացի, *Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւնք, Տփղիս, 1910։*

Շահխաթունյան *Հ., Ստորագրութիւն կաթուղիկէ էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ, հատ. I և II, էջմիածին, 1842։*

Շտրեկ Մ., *Հայաստան, Քրդաստան և արևմտյան Պարսկաստան բաբելոնական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն, թարգմ. Բ. Պիլեզիկճյանի, Վիեննա, 1904։*

*Rawlinson H.*, Journal of the Royal Geogr. Society, X.

Սամվելյան Խ., *Մխիթար Գօշի Դատաստանագիրքը ու Հին Հայոց քաղաքացիական իրավունքը, Վիեննա, 1911։*

Նույնի, *Հին հայ իրավունքի պատմությունը, հատոր I, Երևան, 1939։*

*Сергеевич В*, Русские юридические древности, т. 1, изд. второе, СПб, 1902.

*Speck E.*, Handelsgeschichte des Altertums, Bd. III, Leipzig, 1905.

„Вопросы и решения вардапета *Анания Ширакци*", изд. и перев. И. А. Орбели, Петроград, 1918.

*Френкель* А. С., Сборник законов грузинского царя Вахтанга VI, Тифлис, 1887.

